# ԺԱՄԱՆԱԿԱԳՐՈՒԹԻՒՆ

# ՏԵԱՌՆ ՄԻԽԱՅԷԼԻ

## ԱՍՈՐԻՈՑ ՊԱՏՐԻԱՐՔԻ

# ԺԱՄԱՆԱԿԱԳՐՈՒԹԻՒՆ
# ՏԵԱՌՆ ՄԻԽԱՅԷԼԻ
## ԱՍՈՐԻՈՑ ՊԱՏՐԻԱՐՔԻ

ՀԱՆԵԱԼ Ի ՀՆԱԳՈՅՆ ԳՐՉԱԳՐԷ

Ի ՀԱՅՐԱՊԵՏՈՒԹԵԱՆ Ս. ԷՋՄԻԱԾՆԻ
Տ. Տ. ԳԷՈՐԳԱՅ
ՎԵՀԱՓԱՌ ԿԱԹՈՂԻԿՈՍԻ

ՀՐԱՄԱՆԱՒ

ՊԱՏՐԻԱՐՔԻ ՍՐԲՈՑ ԵՐՈՒՍԱՂԷՄԻ
Տ. ԵՍԱՅԵԱՅ
ՍՐԲԱԶԱՆ ԱՐՔԵՊԻՍԿՈՊՈՍԻ

ԵՒ Ի ՊԱՏՐԻԱՐՔՈՒԹԵԱՆ Կ. ՊՕԼՍՈՅ
Տ. ՄԿՐՏՉԻ
ՍՐԲԱԶԱՆ ԱՐՔԵՊԻՍԿՈՊՈՍԻ

---

ԵՐՈՒՍԱՂԷՄ
Ի ՏՊԱՐԱՆԻ ՍՐԲՈՑ ՅԱԿՈՎԲԵԱՆՑ
1871

# Ի ՅԻՇԱՏԱԿ

# ՄԵԾԱՀԱՄԲԱՒ ՏԱՆՆ

# Ա Բ Գ Ա Ր Ե Ա Ն

# ՈՐ Ի ՀՆԴԻԿՍ

ՆՈՒԻՐԷ

ԳԵՐԱՄԵԾԱՐ ԵՒ ԱԶՆՈՒԱԿԱՆ

ՊԱՐՈՆ ՄԻՔ Յ. ԱԲԳԱՐԵԱՆՑ

ՀՆԱՐՀԱՊԱՐՏ ԵՒ ՅԱՐԳԱԿԱՆ

ԶԳԱՑՄԱՄԲՔ ՈԳՒՈՑ

ԱՌԱՔԵԼԱԿԱՆ ԱԹՈՌՈՑՍ ՍՐԲՈՑ

ԵՐՈՒՍԱՂԷՄԻ ՊԱՏՐԻԱՐՔ

ԵՍԱՅԻ ԱՐՔԵՊԻՍԿՈՊՈՍ

# ՅԱՌԱՋԱԲԱՆ

Յետ տպագրութեան մեր զժամանակագրութիւն Մատթէոսի Ուռհայեցւոյ, պատշաճագոյն համարեցաք զՄ՚իխայելի Ասորւոյ պատրիարքի զպատմութեան գիրս ածել 'ի հրապարակ, որ իբրեւ զառաջինն չեւ է տեսեալ տակաւին զլոյս, և ոչ արտաքս քան զսեամս ազգային գրադարանաց անցեալ, թէպէտ և օտարազգիք կանխեցին քան զմեզ տալ զնորին ընթերցումն 'ի բարբառ Գաղղիացւոց եթէ ամբողջապէս և եթէ ըստ մասանց (1), որք հարկադրեցին զմեզ զմասնաւոր գիտողութիւնս մեր 'ի բաց թողեալ փութալ 'ի տպագրութիւն սորին՝ առօք ինչ յառաջագոյն մտադիր եղելոյ մեր 'ի սոյն։ Այլ որովհետեւ կրկին օրինակք են առ մեզ զանազան և տարբեր թարգմա-

(1) Մասնական Թարգմանութիւնս արար Ե. Տիւլօրիէ, հրատարակեալ յԱսիական օրագրին, յամի 1849։

նութեանց , մին սովորական (1) որ առ բու-
զումս գտանի , յորմէ փոխեալ է և Գաղղի-
երէնն . միւսն փոքր մի համառօտեալ , այլ
գլխովին տարբեր Թարգմանութիւն , զոր
'ի դէպ համարեցաք տպագրել , իբրեւ միակ
օրինակ որպէս համարիմք , որ և բազում ու-
թեք օգնէ 'ի լուսաբանել զմիւսն : Զսոցանէ
հարկ է մեզ տալ լիովին տեղեկութիւն . այլ
նախ 'ի դէպ համարիմք խօսել կարճառօտիւք
զհեղինակէ գրոցս որչափ ինչ գտանեմք յա-
ռաջնոցն քան զմեզ խօսեցեալ հետախոյզ
քննութեամբ :

Ծնաւ Մխիթարն , որպէս կարծի , 'ի յԱն-
տիոք քաղաքի , յամի 1126 , 'ի յԱսորի ծնողաց
Յակոբիկ կոչեցելոց . անուն հօր նորա Եղի-
ա երեց 'ի Մելետինոյ , 'ի Գանախեան տոհ-
մէ : Կեանք նորա անտիրական անծանօթ է ա-
մենեւին . յերեսուն և վեց ամաց հասակի ե-
կաց նա վանահայր մենաստանի սրբոյն Գարսա-
մայ Շանայի , մերձ 'ի Մերաքին , ուր է այ-
ժըմ աթոռ կաթողիկոսութեան Աղուաց :
Զկնի վախճանի Յովհաննու ԺԱ. Պատրի-
արքի , ընտրեցաւ սա ինքն Մխիթարն յաջորդ
Աթոռոյն 'ի ժողովս եպիսկոպոսաց , գումա-

(1) Սովորական օրինակն ամօք ինչ յառաջագոյն տպա-
գրեցաւ 'ի Ս. Աթոռս , այլ հրատարակութիւն նորա յետս
թողաւ ցարդ . ապաստեալ զերկոսին օրինակն միանգամայն
հանել 'ի հրապարակ .

րելոյ ՚ի վանս Փշնի, և է նա հարիւրերորդ-
՚ի շարս աԹոռակալացն. օծաւ ՚ի 18 ամսեա-
նըն հոկտեմբերի, 1166։ Ի սկիզբն անդ գա-
հակալուԹեանն ըստ վաղեմի սովորուԹեան
ազգին, որպէս գրէ նա ինքն (յեր. 472) ա-
ռաքէ զգիր դաւանուԹեան իւրոյ առ Ս.
Ներսէս Շնորհալի, և զաԹոռն պատրիարքա-
կան՝ որ էր յայնժամ ՚ի յԱմիԹ քաղաքի, փո-
խադրէ ՚ի վանս Մար Հանանայ (Ս. Անանի-
այ) մերձ ՚ի Մերտին քաղաք։ Յետ այնորիկ
եւ Միխայէլ յայցելուԹիւն վանացն, հաս-
տատէր վանահայրս, և քաղաքաց քաղաքաց
կարգէր եպիսկոպոսունս։ Նմին եւ և յԵրու-
սաղէմ յերկրպագուԹիւն սուրբ Տեղեացն, և
դարձաւ անտի յԱնտիոքայ ամի 1168։ Ի միւ-
սում տարւոջ առաքեցաւ առ նա Քրիստա-
փոր հանդերձ ԹղԹով ՚ի կողմանէ Մանու-
էլ կայսեր վասն խնդրոյ միաբանուԹեան (1)։
Ի նոյն նպատակ որդէն իսկ սկիզբն լեալ էր
ԹղԹակցուԹեան ՚ի մէջ Ս. Ներսեսի Շնոր-
հալւոյ և Կայսեր, որ վասն եկեալ էր ՚ի Հը-
ռոմկլա երկիցս անգամ Թէորիանէ և Յով-
հաննէս վարդապետ յունակրօն առ յիշեալ
ԿաԹողիկոսն. յորմէ հրաւէր հասեալ և առ
Միխայէլ Պատրիարք երԹալ առ նոսա ՚ի
ժողովն Հայոց, նա փոխանակ առաքէ յա-

(1) Մէջ. Չամչեան. Հտ. Գ. յեր. 107.

ուղենամ նուագի զՅովհաննէս եպիսկոպոս Քեսնոյ, և յերկրորդումն զԹէոդորոս Բար-Սեհերան կոչեցեալ, տալ պատասխանի բանից Թէորիանեայ ։ Մանուէլ գովութեամբ յիշատակէ 'ի պատմութեան իւրում (400) զՅովհաննէս եպիսկոպոս տարի, մինչև յաղթահարել նորա բանիւք զիմաստասէրն Յունաց։ Նա կասկածեալ զՆերսէս,զոր յանդէպս համարէր նա հակամէտ լինել ընդունելոյ զդաւանութիւնն յունական եկեղեցւոյն, հրաժարեալ 'ի ժողովոյն դառնայ յետս ։ Յետ ընդունելոյ Կայսեր զԹուղթ խոստովանութեան Հայոց, փոյթ խնդրէ և 'ի Մանուէլէ . և նորա առաքեալ զդաւանութիւն հաւատոյն, կնքէ զբանսն յայտնելով եթէ ցանկալի է նմա կալ ընդ Յոյնս 'ի սէր միաբանութեան առանց հեռանալոյ յուղղափառութենէ հարց իւրոց և 'ի հայրենաւանդ ծիսից։ Այսպէս խնդիրն միաբանութեան մնայր առանց յաջողելոյ որպէս ընդ Հայս՝ նոյնպէս և ընդ Ասորիս ։

Միխայէլ Պատրիարք այր հաստատամիտ և կապեալ սիրով ընդ հայրենի կրօնս իւր, սիրող էր և պայծառութեան եկեղեցւոյն իւրոյ · քանզի մինչդեռ ընդ Շնորհալւոյն թղթակցէր վասն վերոյիշեալ խնդրոյն, 'ի նմին ժամանակի ձեռն արկանէր 'ի շինութիւն եկեղեցւոյ վանացն Ապու–Քաղերայ մերձ 'ի

Կարկառ։ Յերկրորդում ամի 1170, գտանէր նա 'ի վանս Մար Հանանայ, 'ի ժամանակի յորում շարժն ահագին սասանեցուցանէր զքաղաքս Ասորւոց (463)։ Եւ ինքն Միխայէլ ոչ դլայր դադարէր յայցելութեանց իւրոց և 'ի շինութենէ եկեղեցեաց ընդ պաշտպանութեամբ խնամոց քրիստոնեայ իշխանացն Փռանկաց, յորոց ձեռս էր յայնժամ իշխանութիւն քաղաքացն Ասորեաց։

Յաւուրց անտի գահակալութեան իւրոց ունէր Միխայէլ յիշխանութեան իւրոյ թեկնածու և նախանձաւոր յեպիսկոպոսաց անտի, որք ընդ ակամբ հայէին 'ի նա, վասն որոյ և 'ի պատեհ առեալ զբացակայութիւն նորա յաթոռոյն, ընտրեն 'ի ժողովի եպիսկոպոսաց զնախայիշատակեալն Թէոդորոս Բար-Վահեբուն, որ կոչեցաւ Յովհաննէս. և այսպէս յերկուս ճեղքէր պատրիարքութիւնն՝ ունելով իւրաքանչիւր զինձանս առանձին։ Իսկ Միխայէլ գումարեալ զեպիսկոպոսունս իւր, ընկենու զՅովհաննէս յԱթոռոյն. և նա, ընդ գրելոյ Ասեմանեայ, յետ ոչ բազում ամաց հատաւոր յիշխանութեան իւրում 'ի ձեռն Լեւոնի Բ. 'ի սահմանս Կիլիկիոյ. այլ ոչ տեւեալ առաւել քան զամս 13, խափանի աթոռ նորա և դադարէ երկպառակութիւնն (1)։ Այսպէս

(1) Տե՛ս. Չամչեան. Հտ. Գ. եր. 153։

Միխայէլ բազմահոգ և բազմայած կենօք եւ յընտանի խոնարհութիւնս անցուցեալ զաւուրս իւր՝ վախճանի յամի 1199, ՚ի հասակի 73 ամաց, կացեալ յաթոռն ամս 33. և մարմին նորա ամփոփի յեւրաշէն եկեղեցւոջ վանացն սրբոյն Պարսամայ, յայրի միում զոր իւր էր փորեալ ՚ի կենդանութեանն։

Ոչ դուզնաքեայ ոք էր Միխայէլ յազգի անդ իւրում և առաջի եկեղեցւոյն, այլ զօրաւոր բանիւք եւ լի ազդեցութեամբ. յամբառնալ իւրում յաթոռն թէպէտ և ունէր անձին հակառակորդս, այլ նա ամենայնի յաղթէր. որպէս և զեղբօրորդի իւր ըզՅեսու, որ գաղտ խորամանկէր ՚ի ծերութեան նորին զբարձրագոյն աթոռոյն թեկնանելով, նախատակեծ արարեալ ցրուէր զխորհուրդս նորա զամենայն։ Ի համարումըն և զվարկ ազգին իւրոյ ստացեալ ունէր ՚ի շնորհս հանճարոյ իւրոյ և գիտութեան. եւս առաւել աշխատութեամբք և մեծախորհամ վաստակօքն զոր վաստակէր ՚ի շինութիւնս վանորէից և եկեղեցեաց. այլ առաւել քան զառաւել նշանաւոր էր ՚ի նմա նախանձ ազգային եկեղեցւոյն իւրոյ և հայրենաւանդ ծիսից, որով թերեւս փոքր ինչ քան զչափն անցեալ թուիցի յաչս քննասիրաց, եթէ չէր ակամք և միակողմանի դատիցեն զնորա հակակրութիւնն զոր ցուցա-

նէ յամենայն առիթս ընդդէմ չորրորդ ժո-
ղովոյն և քաղկեդոնականաց, վասն որոյ և սու-
Ս. Ներսէս Շնորհալի գրեալ զգուշացու-
ցանէ զնա ՚ի ժամանակս խնդրոյ միաբանու-
թեանն, յասելն (459). «Այդ կրօնքդ ՚ի մե-
»րըս մերձ է. բայց ես ոչ կամիմ զճշմար-
»տութիւն կրօնից հարցն ձերոց փոխել. զի
»թէ մեծ և կամ փոքր և կամ դաւանութիւն
»փոխէք, երեւի թէ թերի էիք մինչեւ ցայ-
»ժըմ և արդ լցայք, և դեռ կատարեալ ե-
»ղերուք անձն առեալ մարդոյ»: Բանիւ այն
պակասութիւն զոր տեսանեմք ՚ի Միխայէլ,
որ ՚ի մոլեռանդութիւն տանէ զմարդ, բազ-
մապատիկ առաւել տեսանելի է ՚ի Յոյնս և
յեկեղեցականս նոցին, որք որպէս զՀայս
զնոյն օրինակ և զԱսորիս հերետիկոսս հա-
մարէին վասն ոչ ընդունելոյ զչորրորդ ժողո-
վոյն խոստովանութիւն, այն է երկուս բը-
նութիւնս ՚ի Քրիստոս: Այս ուրեմն ոչ է
ստգտանելի պատմագիրս եթէ ՚ի զգուշու-
թիւն եկեղեցւոյն իւրոյ և ապագայ սերըն-
դոյն բազում ինչ և կասկածելիս և դժուա-
րահաւանելի դէպս և արտավէպս ՚ի մէջ
բերէ ՚ի գիրս յայս, որք համարին ստուե-
րածս արկանել զիմաստութեամբ նորին և
զքաջախոհութեամբ:

Միխայէլ ոչ միայն ընդհանուր պատմու-
թեան, այլ և աստուածաբանական խնդրոց

ցուցանէ զինքն հմուտ գոլ, որպէս տեսանեմք 'ի քահանայութե̃ն Ճառին որ յաւարտ պատմութեանս. տեղեակ Թուփնա և յունականն, հռովմէական և Ասորացւոց լեզուաց. իսկ հայերէն բարբառոյ ոչ այնչափ, մանաւանդ եթէ և անգէտ իսկ ազգային պատմութեանըս վարկանի, որպէս երեւի 'ի պատմել անգ զմահուանէ Ներբովմայ, զորմէ ասէ մեռանել ընդ փղատակօք աշտարակին, և այս 'ի գիտնոցն Հայոց անշուշտ տեղեկացեալ ուղղէ զկարծիսն՝ յասելն (16). «Ստուգեցաք յետ ժամանակի պատահել նմա 'ի Հայկայ որդւոյ Թորգոմայ»: Որչափ մեծ է հակակրութիւն նորա առ քաղկեդոնականս, նոյնչափ առաւել համակիր է և համախոհ ընդ եկեղեցւոյն Հայոց և ընդել ընդ ազգին, մինչեւ զԹագաւորութիւն և զքահանայապետութիւն Հայոց պարծանս համարել Ասորւոց, և նոքօք ունել աճումն եկեղեցւոյ իւրեանց 'ի Քրիստոս և սիւն հաստատութեան (Ճառ. բհ. 31,) վասն որոյ և զՃառն իսկ քահանայութեան համարի յօրինեալ 'ի նպաստ և 'ի պարծանս հայկական եկեղեցւոյս զոր և աւարտէ 'ի մեր քահանայապետութիւն, 'ի մէջ բերելով զգաւազանագիրս Կաթողիկոսացն Հայոց մինչեւ ցաւուրս իւր: Այսչափ ինչ զքաղաքավարութենէ կենաց և զանձին յատկութեանց խոստացեալ հեղի-

նակիս, խօսեացուք և զնորին գրոցն պատմութեան։

Որպէս կանխեցաք ասացաք, կրկին են առ մեզ թարգմանութիւնք մի քան զմի զանազանեալք՝ եթէ շարակարգութեամբ պատմելեացն իրաց և եթէ յապաւմամբն և յաւելմամբ ինչ ինչ պարագայից։ Մեք 'ի բազում պատճառաց և 'ի մասանց համարիմք զերկուսն ևս ուրոյն յեղեալ 'ի մեզ յասորի բնագրէն, թէպէտ և 'ի նմին թարգմանչէն և 'ի նմին յարմարողէ ըստ լեզուիս մերոյ. քանզի որչափ տարբեր իցեն թարգմանութիւնքն այնչափ մերձաւորք են միմեանց 'ի յոլով տեղիս աճով ասացուածոյն և բառից ընտրութեամբ և զուգադրութեամբ։ Եւ որ անկասկած առնէ զմեզ 'ի կարծիս մեր զանազան լինել թարգմանութեանցս, այն է զի 'ի համառօտութեանս յայտնիկ գտանին պարագայք և մասնաւոր յիշատակութիւնք բոլորովին այլազգ քան զմիւսն։ Օրինակ իմն զծագմանէ Աբդլմուշեացն խօսելով, որքն նախն մեր ասէ (431) երկուս որդիս ունել Աբդլայի, այն է Աբդլմինի և Ազուբ, որք յանցեալ ընդդէմ պատուոյ հօր իւրեանց՝ փախչէին 'ի կողմն Ափրիկոյ։ Իսկ միւս թարգմանութիւնն ասէ. Ալեայ խալիփային Եւս զխպառոսի էին որդիք երեք, յետ մահուան հօրն երեցն իշխանացեալ՝ խորհէր ապանա-

նել զերկուս եղբարս իւր, որոց ՚իմացեալ զմիտս նորա, փախչին ՚ի Սպանիա. և անուն նոցա Աբգալս և Սամուէնի:

Այդ քանզի չէք ՚ի միջի ատորական բնագիրն՝ որ կորուսեալ համարի իսպառ, դըժուարին է յոյժ գիտել զհարազատ Թարգմանութիւնն. այլ այս իմն անտարակուսելի է, զի երկոքին եւս են ազատ Թարգմանութիւնք, որպէս գրի ՚ի վերջաբան յաւելուածի օրինակիս եթէ (41) «Օ յոլովիւք զանց »արարաք զոր առ մեզ գիւտ էր, և ոչ դը»րեցաք զի մի աւելորդս թուիցիմք աշխա»տել. և էր որ կրկնեցաք զայլոց գրոց ստա»ցեալսն կարճառօտիւք՝ վասն զտեղին ընլոյ »և զոճն պահելոյ»: Այլ որ ինչ առաւել հետազօտութեան և քննայուզելոյ են կարեւորութիւնք առ ՚ի յայտ ածել զերկուց օրինակացս պարծէս, թողեալ կորովամիտ հնախուզից, մեք զմերոյ գրչագրէս տացուք տեղեկութիւն, որ՝ առաւել քան զմիւսոյ Թարգմանութեան զյոլովագոյն օրինակսն գրաւեալ ունի զվարկ մեր: Սիակ օրինակ է մատեանըս, միածալ, բամբակաթուղթ, բոլորագիր, երկսիւնեան, գրեալ ՚ի թուին Հայոց ՉԻԲ, ձեռամբ Գրիգոր վարդապետի միաբանի Ականց Անապատի, որ երեւելի էր ՚ի գաւառն յայնմիկ յաշխարհին Կիւլիկիոյ և հարուստ ձեռագրօքն հռչակաւոր լեալ: Առաջին բնա-

գիրն յորմէ ընդօրինակեալ է երկրորդս այս- գրեալ է քսան և եւթն ամօք յառաջագոյն, այն է 'ի թուին ՈՂԵ, որպէս ցուցանէ մակ- բայս այժմ (507)։ Առաջնոյ ընդօրինակողին է շարայարութիւնն սկսեալ յամէ 1216 մինչև 1229, այն է թիւն Հայոց ՈՀԸ. յորում կրկ- նէ որ ինչ զՕսայեէ և զնորին ամուսնութե- նէ են բանք։ Իսկ Միխայէլ, որ վախճանեալ համարի յամի 1199, որպէս եւայք և մեք, հասուցեալ զպատմութիւն իւր մինչև ց1196 կամ ցՀայ թուականութիւնն ՈԽԵ (603), ա- ւարտէ երիւք ամօք յառաջ քան զԹագա- գրութիւն Լեւոնի Բ. և որ ինչ յետ այ- նորիկ համառօտ բանք զՕսայեէ, համարի և այն յայլմէ յաւելեալ յասորի բնագրին, մինչեւ ցամն ՈՀԸ, յորում ժամանակի էին Օսայեի ուստերք և դստերք 'ի Հեթմոյ։ Այլ թէ ոչ՝ հարկ լինի մեզ ընդունել, եթէ կեանք Միխայելի անցեալ իցեն զհարիւրա- մենիւք, որպէս և Գրիգոր 'ի կրկին յիշատա- կարանս իւր (525. 44) նմա ընծայէ որ ինչ մինչեւ ցՈՀԸ պատմին բանք։

Իսկ թէ ո՞ք թարգմանիչք եղեն կրկին երկասիրութեանցս, ոչ ոք ցարդ ճշգրտա- գոյն ինչ լուսաբանեաց։ Առաջին թարգմա- նութիւնն եղեւ որպէս համարի, ձեռամբ Ի- շօխ քահանայի և Վարդանայ՝ աշակերտի Վա- նականին՝ նմին ստացարչի, որպէս և յօրինակս

ենչ նայն թարգմանութեանն յանուանէ յէջ
շատակի այսպէս . « Այլ և մեք իսկ տառա-
պեալ ոգի Վարդան վարդապետս » (1) : Արա-
րեալ է ըստ խնդրոյ Կոստանդին Ա. Կաթողի-
կոսին յամի 1248 , 'ի թուին Հայոց ՈՂԷ , որ
սուղագոյն հաշուով պատասխանէ 1248
ամին Քրիստոսի (42) : Իշօխ էր ազգաւ Ասո-
րի , որոյ անուն 'ի մեզ Յեսու լսի և ոչ Իսա-
հակ , որպէս ոմանք իմանան : Ի հնագոյն ճա-
ռընտրի միում գտանեմք զճառն Յակոբայ
Մրձեցւոյ 'ի սուրբն Թադէոս և յԱբգար ,
« Թարգմանեալ 'ի թուին ՈՂԷ, յԱսորւոց , 'ի
» ձեռն Իշմնի քահանայի ասորւոյ , հրամա-
» նաւ Վարդան վարդապետի » . առանց տա-
րակուսանաց և սա Իշմնն է Յեսուն . քան-
զի 'ի նմին ձեռագրի յիշատակի դարձեալ 'ի
սկիզբն գրոցն յորում խօսի 'ի վերայ բնու-
թեան աշխարհի և բնական աշխարհագրու-
թեան , անուն հեղինակին Իշօխ քահանայ ,
որ է ասէ՝ ըստ հայումս Յեսու : Այն սա
հաւանիմ ասել՝ եթէ իցէ եղբօրորդի Մի-
խայելի պատրիարքի Յեսու անուն , զոր վե-
րագոյն յիշեցաք , այր գիտնական և հմուտ
բժշկական արուեստի : Արդ յասացելոցս աս-
տի դիւրին է մեզ մակաբերել՝ եթէ թարգ-
մանիչ երկոցունցս իսկ օրինակաց իցէ Իշօխ

(1) Տես յառաջին օրինակի աստուածքին , յեր . 61ա

քահանայ։ Իսկ Վարդան վարդապետ յաւ-
դարից և եթ լեզուին՝ պարզ և ընտանի խօ-
սիւք ժամանակին իւրոյ յարմարեալ։ Քանզի
երկոքին իսկ բնագիրք ասեն թարգմանեալ
հրամանաւ նորին Կաթողիկոսի և 'ի մի և 'ի
նոյն թուականի (41). Նախ զՀամառօտն մեր
զայս, և ապա զմիւսն, որ և տարածեալ կայ
յառաջիս։

Ի տպագրութեանս յայսմիկ կարեւոր դա-
տեցաք դնել 'ի ստորեւ իւրաքանչիւր թղթի
զբազմայայտութիւն մթին խմացուածոց բա-
ռից և իմաստից որք թուին սպրդեալ յա-
ւէտ յաստի թարգմանչէն քան յընդօրինակ-
չէս, քանզի միօրինակ մթութիւնք գտանին
և 'ի միւսում թարգմանութեան մանաւանդ
'ի յատուկ անուանս մարդոց և քաղաքաց,
զոր ուղղեցաք յայլուստ կամ 'ի մէջ փա-
կագծի եդեալ և կամ 'ի ստորեւ։ Այլ ուրեք
եւս հարկ եղեւ մեզ լուսաբանել զպարա-
գայս ինչ դիպաց, յոր հեղինակն կարի ուշ-
տութեամբ խնայեալ էր, մինչեւ անյայտ
մնալ պատմութեան՝ որոց չիցեն տեղեակք։

Երկրորդ գիրք երկասիրութեան Միխա-
յելի է ճառն յաղագս Քահանայութեան,
զոր 'ի վախճան պատմութեան իւրոյ 'ի միւս
թարգմանութեան հայերէնին (532) խոստա-
նայ գրել ասելով. "Դարձեալ նովին յուսով
դ. . . . երկրորդ անգամ ծաւալմաւխ լիցուք

ինչ նոյն Թարգմանութեանն յանուանէ յի-
շատակի այսպէս. «Այլ և մեք իսկ տառա-
պեալ ոգի Վարդան վարդապետս» (1)։ Արա-
րեալ է ըստ խնդրոյ Կոստանդին Ա. Կաթողի-
կոսին յամի 1248, 'ի Թուին Հայոց ՈՂԷ, որ
ստուգագոյն հաշուով պատասխանէ 1248
ամին Քրիստոսի (42)։ Իշխօղ էր ազգաւ Ասո-
րի, որոյ անուն 'ի մեզ Յեսու լսի և ոչ Իսա-
հակ, որպէս ոմանք իմանան։ Ի հնագոյն ձե-
ռագրի միում գտանեմք զձայն Յակոբայ
Արճեցւոյ 'ի սուրբն Թադէոս և յԱբգար,
«Թարգմանեալ 'ի Թուին ՈՂԷ, յԱսորւոց, 'ի
ձեռն Շմոնի քահանայի ասորւոյ, հրամա-
նաւ Վարդան վարդապետի»։ Առանց տա-
րակուսանաց և սա Շմոնն է Յեսուն. քան-
զի 'ի նախին ձեռագրի յիշատակի դարձեալ 'ի
սկիզբն գրոցն յորում խօսի 'ի վերայ բնու-
թեան աշխարհի և բնական աշխարհագրու-
թեան, անուն հեղինակին Իշխօղ քահանայ,
որ է ասէ՝ ըստ հայումս Յեսու։ Այն սա-
հաւանիմ ասել՝ եթէ իցէ եղբօրորդի Մի-
խայելի պատրիարքի Յեսու անուն, զոր վե-
րագոյն յիշեցաք, այր գիտնական և հմուտ
բժշկական արուեստի։ Արդ յասացելոցս ա-
ռի դիւրին է մեզ մակաբերել՝ եթէ Թարգ-
մանիչ երկոցունցս իսկ օրինակաց իցէ Իշխօղ

(1) Տես յառաջին օրինակի ստորագրին, յեր. 61ա

քահանայ։ Իսկ Վարդան վարդապետ յառա-դարիչ և եթ լեզուին՝ պարզ և ընտանի խօսիւք ժամանակին իւրոյ յարմարեալ։ Վասնզի երկոքին իսկ բնագիրք ասեն թարգմանեալ հրամանաւ նորին Կաթողիկոսի և ՚ի մի և ՚ի նոյն թուականի (41). Նախ զհամառօտն մեր զայս, և ապա զմիւսն, որ և տարածեալ կայ յազգիս։

Ի տպագրութեանս յայսմիկ կարեւոր դատեցաք դնել ՚ի ստորեւ իւրաքանչիւր էջի զբացայայտութիւն մթին խմացուածոց բառից և իմաստից որք թուին ապրդեալ յաւէտ յաստի թարգմանչէն քան յընդօրինակչէս, քանզի միօրինակ մթութիւնք գտանին և ՚ի միւսում թարգմանութեան՝ մանաւանդ ՚ի յատուկ անուանս մարդոց և քաղաքաց, զոր ուղղեցաք յայլուստ կամ ՚ի մէջ փակագծի եդեալ և կամ ՚ի ստորեւ։ Նա ուրեք եւս հարկ եղեւ մեզ լուսաբանել զպարագայս ինչ դիպաց, յոր հեղինակին կարի արշ-տութեամբ խնայեալ էր, մինչեւ անյայտ մնալ պատմութեան՝ որոց չիցեն տեղեակք։

Երկրորդ գիրք երկասիրութեան Միխայէլի է Ճառն յաղագս Քահանայութեան, զոր ՚ի վախճան պատմութեան իւրոյ ՚ի միւս թարգմանութեան հայերէնին (532) խոստանայ գրել ասելով. „Դարձեալ նովին յուսով դ. . . . երկրորդ անգամ ծովամուխ լիցուք

» յանհաստական խորս քահանայական կարգաց
» և զարդուց, եթէ ուստի՛ սկսաւ և ո՛ւր ըն-
» ցաւ և յո՛ կատարի : . . . » Ի սմին ճառի
փայլէ առաւելապէս հմտութիւն հեղինա-
կիս յաստուածաբանական գիտութեան և
խորին հանճար նորին : Եւ սկիզբն եդեալ
քահանայութեան զԱդամ, առեալ իջու-
ցանէ մինչեւ 'ի ճշմարիտ քահանայապետն
Յիսուս, և անտի յԱռաքեալսն Խօսի ուրոյն
և զհնգից Աթոռոցն, 'ի մէջ բերեալ և ըզ-
կարգ աթոռակալացն . և կնքէ զճառն 'ի
կաթողիկոսութիւնս Հայոց, հիմն եդեալ
նորա զՅիսուս կամ զԼուսաւորիչն և զԹա-
դէոս առաքեալսն, և զեկեղեցին Հայաստա-
նեայց կոչէ « Պատկերեալ 'ի Փրկչէն անդրա-
նիկ հաստատեալ 'ի ձեռն Աբգարու » (27). և
զգաւազան հայրապետացն հասուցանէ մինչև
'ի Ներսէս Շնորհալի : Ի սմին ճառի առաւել
զգալի ցուցանին տարբերութիւնք թարգմանու-
թեանցն, և է քան զպատմութիւնն առաւել
համառօտեալ, մինչեւ առաջինիս տպագիրն
հազիւ թէ զերրորդ մասն միւս թարգմա-
նութեան կազմէ : Այլ ոճ ասացուածոյ եր-
կոցունցն համեմատ է բարձրութեան իմաս-
տից ճառին, յորմէ յայտնագոյն երեւի լինել
Վարդանայ քան այլոյ ումեք հետեւորդ
մատենագրի, որ և լրացուցանէ զկարգ Կա-
թողիկոսացն մինչեւ ցաւուրս իւր Կոստան-

ղին Ա. զոր ներբողական բանին գրուած է ։

Ընդ Միխայելի և այլ գրաւոր աշխատու-
թիւնք և եկեղեցական մատենագրութիւնք
որք չեն թարգմանեալ 'ի Հայումս ։ Նորա է
դարձեալ և Խոստովանութիւնն հաւատոյ
որ գտանի 'ի միւսում թարգմանութեան
(574) կից ճառին քահանայութեան ։

Իսկ որ ինչ յաղագս Գրիգոր վարդապե-
տի են գիտելիք, որ է գրիչ հայերէն բնա-
գրիս, որ խոստանայ յեր. 528, գրել զանցս
44ից ամաց, սկսեալ յամէ 1248 մինչեւ 1272,
այն է զյարձակումն Թաթարաց 'ի Հայս,
որոյ գործ ընծայի յազգիս մերում Մաղաքի-
այ ուրումն աբեղայի, խօսեցեալ է մեր ար-
դէն 'ի յառաջաբանի նոյն պատմութեան
Թաթարաց տպեալ 'ի սուրբ Աթոռս յա-
մի 1870 ։



# ՏԵԱՌՆ ՄԻԽԱՅԷԼԻ

## ԱՍՈՐԻՈՑ ՊԱՏՐԻԱՐՔԻ

# Ժ Ա Մ Ա Ն Ա Կ Ա Գ Ր Ո Ւ Թ Ի Ւ Ն

յԱդամայ սկսեալ մինչեւ առ մեզ ։



## Ա

ԵՍ, եղբարք աստուածասէրք և ուսումնասէրք, հայելով 'ի բազմութիւն ժամանակագրաց որում կարօտեալ էի, խնայեցի յիմ և յողովելոց լսելիս 'ի յաճախութենէ զրուցաց, և համառօտեցի՝ քաղելով զպիտանին և ըղձահաւորն՝ յեկեղեցականացն և յարտաքնոցն. ընդոստուցանել զմահաբեր ծուլութիւնս բազմաց, և 'ի բաց հանել զանգիտութեանն խաւար, ակն կալեալ վերին հատուցմանն աշխատութեանս մերոյ. Թողլով զսա գանձ Եկեղեցւոյ եւ վարժարան մանկանց Նորոյ Սիոնի, որ զկնի մեր գալոց են ։

Նաև պարտ է մեզ սկիզբն գրոցս դնել զըս-կիզբնն մարդկութեանս զԱդամ, զի շինուա-ծըն հաստատեսցի հիմամբ. և է այսպէս ա-գուստ աստղացս և լողացն. Բայց պարտ է նախ դնել զանուանս պատմագրացն՝ ուստի հանդերձեալ եմք ժողովել զնիւթ շինուա-ծոյս մերոյ։

Ափրիկանոս և Յեսու (1), և Հեգսիպոս (Հեգեսիպպոս) և Յովսեպոս հրեայքն գրե-ցին մինչեւ ՚ի գալուստն Քրիստոսի։

Անանոս կրօնաւոր աղէքսանդրացի, գը-րեաց ՚ի յԱդամայ մինչեւ ՚ի Կոստանդիանոս Թագաւորն։

Եւսեբիոս Պամփիլեայ, յորոց գրոց ժո-ղովեաց զիւրն և անուանեաց Եկեղեցական։

Զօսիմոս և Սոկրատ և Թէոդորետոս հերետիկոս, ՚ի Կոստանդիանոսէ սկսեալ մինչ ՚ի Թէոդոս (փոքրն) գրեցին։

Յովհաննէս Անտիոքայ և Ճեպելու (2), և Թէոդորէ գրակարդացն Կոստանդնուպօլսոյ, և Զաքարիա եպիսկոպոս Մելտենոյ, գրեցին ՚ի Թէոդոսէ մինչև ՚ի Յուստինիանոս Ծերն։

Յովհաննէս ասիացին գրեաց յԱնաստա-սայ մինչ ՚ի Մօրիկ։

(1) Յեսուայ՝ կամ ըստ բնագրին Յեսուեայ պատմագրի գործք կորուսեալ համարին. նոյնպէս և Աքիւա երէց Մելիտի-նոյ և Դիոնեսիոս Աղեքսանդրիոյ են խաւարա մեզ անծանօթք։

(2) Ճեպել քաղաք է ՚ի սահմանս Լիբանանու։

Կաւրա (Կորիա կամ Կիւրոս), 'ի Յուստինիանոսէ մինչ 'ի Հերակլ գրեաց, և վասն մտանելոյն Տաճկաց յերկիրն Ասորւոց, որ եղեւ 'ի ժամանակս Հերակլեայ:

Եւ սուրբն Յակոբ ուռհայեցին համառօտ ընդ ամենն էանց:

Եւ Դիոնէսիոս պատրիարքն գրեաց 'ի Մօրկէ մինչ 'ի Թէոփիլէ Թագաւորն Յունաց, և մինչ 'ի յԱհարոն (Հարուն) ամիրայն Տաճկաց:

Իգնատիոս եպիսկոպոս Մելտենոյ, և Սլիբա երէց Մելտենոյ և Յովհաննէս 'ի Քեսնոյ, և Դիոնէսիոս (Աղէքսանդրացի) Սալիպին որդին, արարին հարուստ պատմագրութիւն յԱդամայ մինչև յիւրեանց ժամանակն:

Արդ՝ ասացեալ ժամանակագիրքդ հայելով 'ի յօժարութիւն ուսումնասէր լսողաց ժամանակին՝ փարթամագոյնս գրեցին. իսկ մեք 'ի յերեկոյացեալ ժամանակս հայելով 'ի ծուլութիւնս մեր, կարճագոյն և թեթեւակի անցցուք ընդ իւրաքանչիւրսն:

Այլ և արդ է ուսումնասէր արանց ոչ տկարանալ վասն աւելի և պակաս դնելոյն զթիւ ժամանակաց, զի ճշմարիտ է բանն Տեառն, թէ Հայր եդ յիւրում իշխանութեան զգիտութիւն ժամուց և ժամանակաց: Զի յոլով զանազանութիւն գտանի Եւթանասնիցն թարգմանութիւնն, և զոր

ունին Ասորիք, զայն որ Եղիազար աբբայ եւս թարգմանել, և ստուգեաց Յակոբ Ուռհայեցի հնարիւք լեալ խրթիւ զմի 'ի Հրէից զի մի թագուսցեն զճշմարտութիւն 'ի նմանէ։

Արդ՝ ըստ Եւթանանիցն՝ Ադամ լեալ երկերիւր և երեսուն ամաց, ծնաւ զՍէթ. և եկեաց այլ եւս չորեքհարիւր վաթսուն ամ։ Եւ լինին ամենայն ժամանակք կենաց նորա ինն հարիւր երեսուն ամ, մինչեւ 'ի հարիւր երեսուն և եւթն ամն Մաղաղիէլի. և մեռաւ վաթսուն ամաւ յառաջ քան զծնունդն Ենովքայ. և է միջոցն սխալ և ոչ իմանան։ Իսկ ըստ Ասորւոցն՝ Ադամ լեալ հարիւր երեսուն ամաց, ծնաւ զՍէթ. և եկաց այլ եւս ութ հարիւր ամ, որ ճշմարտապէս ինն հարիւր երեսուն ամ է։ Ենանոս կրօնաւոր առնու վկայութիւն յԵնովքայ գրոցն, թէ Ադամ յետ ելանելոյն 'ի դրախտէն, զկնի եւթանասուն ամի գիտաց զԵւա, և ծնաւ ըզԿայեն, և յետ եւթն ամի ծնաւ զԱբէլ. և զկնի յիսուն և երեք ամի ծնանելոյն զԱբէլ, սպան զնա Կայեն. և սգային զԱբէլ Ադամ և Եւա հարիւր ամ, և ապա ծնաւ զՍէթ որդի մխիթարութեան։

Եւ Մադիդիոս (Մեթոդիոս) պատարիացի ասէ, թէ յետ երեսուն ամի ելիցն 'ի դրախտէն՝ ծնաւ զԿայեն և զԿլիմիա քոյր իւր., և զկնի երեսուն ամի ծնաւ զԱբէլ և զԼե-

լուդա քոյր իւր. և զկնի հարիւր երեսուն ամի սպանաւ Աբէլ, և յերկերիւր և երեսուն ամին Ադամայ ծնաւ Սէթ։ Իսկ այսու գիտասցես զանհամանութիւն պատմագրացն։

ՅԱդամայ մինչեւ Յարեդի վեցերորդ-ծնունդն ժողովին ամք ինն հարիւր երեսուն։ Յայսքան ժամանակս ոչ գոյր թագաւոր, զի Ադամ ձեռագործ Աստուծոյ յերկիւղ և 'ի խրատ կարգաւորութեան բաւական էր նոցա. և յետ նորա մահուանն իշխէր Սէթ հարիւր եւթանասուն և ութ ամ։ Իսկ 'ի ժամանակս Սեթայ յիշեցին որդիքն նորա զկեանս դրախտին և հրաժարեցին յամուսնանալոյ, և ելին 'ի լեառնն Ահերմոնի, և կային ժուժկալութեամբ, և վասն այնորիկ անուանեցան Որդիք Աստուծոյ և հրեշտակք։

Սէթ՝ ըստ Եւթանասնիցն կեցեալ ամս երկերիւր և հինգ, ծնաւ զԵնովս, և ըստ Ասորւոցն հարիւր յիսուն ամ. և լինին աւուրք ժամանակաց նորա ինն հարիւր եւթանասուն ամ ըստ Յունաց և Ասորւոց։

Ենովս՝ ըստ Ափրիկանոսի և Անանոսի ծնաւ որդի 'ի (հասակի) հարիւր իննսուն ամաց. և ըստ Ասորւոցն՝ իննսուն ամաց։ Սա յուսացաւ կոչել զանուն Տեառն Աստուծոյ, և յորդորէր զմարդիկ 'ի գործս բարեաց. և լինին ամք նորա ինն հարիւր և հինգ։

Կայենան հարիւր եւթանասուն ամաց

ծնաւ որդի ըստ Եւթանասնիցն, և ըստ Ասորւոց՝ եւթանասուն ամաց. և ամենայն ամք նորա ութ հարիւր յիսուն։

Մաղաղիէլ հարիւր վաթսուն և հինգ ամաց ծնաւ որդի ըստ Եւթանասնիցն, և ըստ Ասորւոցն վաթսուն և հինգ ամաց. և ամենայն ամք նորա ութ հարիւր իննսուն և ութն ամ։

Արեդ՝ ըստ Եւթանասնիցն և ըստ Ասորւոցն հարիւր վաթսուն և երկու ամաց ծնաւ որդի, և ըստ Սամարացւոցն վաթսուն և երկու ամաց. և լինին ամենայն ժամանակք նորա ինն հարիւր վաթսուն և երկու ամ, մինչև 'ի վեց հարիւր ամն Նոյի։

Ի քառասուն ամին Արեդի լցաւ հազար ամն։ Եւ յայսմ ամի ձանձրացեալ որդիքն Սեթայ իջին 'ի լեռնէն Ահերմոնի, և անկան 'ի ցանկութիւն կանանց, և էին թուով երկերիւր։ Եւ 'ի նոյն ժամանակս կացուցին թագաւոր՝ որում անունն էր Սամարիոս (1). և վասն այսորիկ պատմէ Ենանոս, թէ յիջանելն 'ի լեռնէն և 'ի հրեշտակական վարուցն որդւոցն Սեթայ, բարկացան եղբարք իւրեանց, և ոչ ետուն նոցա կանայս։ Եւ նոքա գնացին առին 'ի դստերացն Կայենի զորս ընտրեցինն. և ծնան 'ի նոցանէ հսկայք անբարտաւանք, փառասակարք և սպանողք։ Եւ

(1) Աղուլֆարաճ Սամիրաս կոչէ զսա. իսկ Վարդան և միւս թարգմանութիւնն Սամիրոս կամ Սամիրա։

մինչ 'ի յայս ժամանակս կայր երկիւղ Աս-տուծոյ և խաղաղութիւն, և առատ բարձաւ, և կալաւ զնոսա խռովութիւն և պատե-րազմ և սպանութիւն։ Եւ լուան զայս որդի-քըն Սեթայ որ կային յերկրորդ կլիման, որ է բաժին, և եդին և նոքա իւրեանց թա-գաւոր 'ի Քաղդէացւոց երկիրն՝ զԱղորոս (1)։ Սա եգիտ զաստեղագիտութիւնն և զթիւս կենդանակերպից և մոլորակաց և զշրջմունս նոցա. և 'ի սմանէ անուանեցաւ քաղդէ-ութիւն։ Եւ սա թագաւորեաց ամս իննսուն և ութ։ Եւ զկնի նորին որդի իւր Ալփարոս թագաւորեաց ամս քսան և ինն և աւուրս երկերիւր յիսուն և հինգ։ Եւ զհետ նորա թագաւորեաց Ալմիոն քաղդէացի 'ի Փու-դիւիլոն քաղաքէ, ամս հարիւր քսան և ութ և աւուրս ութսուն։

Չորրորդ թագաւոր՝ Ամանոն քաղդէա-ցի թագաւորեաց ամս հարիւր ութևտասն, և աւուրս հարիւր երեսուն։

Հինգերորդ՝ Ամակարոս քաղդէացի թա-գաւորեաց ամս հարիւր եւթանասուն և եւթն, և աւուրս հարիւր իննսուն և եւթն։

Վեցերորդ՝ Դինաս հովիւ քաղդէացի թա-գաւորեաց ամս իննսուն և ութ, և աւուրս երկերիւր երեսուն։

(1) Եւսեբի այսպէս ունի զկարգն զանուանս թագաւորացն. Ալորոս, Ալապարոս, Ամելոն, Ամմենոն, Ամեգալարոս, Դաւոս

Եւթներորդ՝ Եւտուրինքոս քաղդէացի թագաւորեաց ամս հարիւր եւթանասուն և հինգ, և աւուրս հարիւր իննսուն և հինգ։

Ութերորդ՝ Ամփիոս քաղդէացի ի Լանարքան քաղաքէ, թագաւորեաց ամս հարիւր իննսուն և հինգ, և աւուրս երկերիւր երեսուն։

Իններորդ՝ Ոտիարտոս ՚ի Լանարքան քաղաքէ, թագաւորեաց ամս եւթանասուն և ութ, և աւուրս երեք հարիւր երեսուն։

Տասներորդ՝ Քսիսութրոս որդի նորա թագաւորեաց ամս հարիւր եւթանասուն և եւթն, և աւուրս հարիւր իննսուն և հինգ։ Ժողովին ամք հազար հարիւր ութսուն և երեք, և աւուրք երկերիւր և հինգ։ Եւ յաւուրս սորա եղեւ ջրհեղեղն ըստ քաղդէացի գրոց։

Արդ ժամանակ թագաւորացս հազար հարիւր ութսուն և երեք[1], և զառանց թագաւորութեան ժամանակն հազար յիսուն և երկու, և առնի ըստ ամենայնն մինչ ՚ի ջրհեղեղն՝ երկու հազար երկերիւր քառասուն և երկու ամք ըստ Աստուածաշունչ գրոց։

Իսկ Եղնալք եղեալ հարիւր վաթսուն և

նոս, Եդորանքոս, Ամենփսինոս, Ոտիարտէս, Քսիսութրոս՝։

(1) Միւս թարգմանութիւնն ունի 1180 ամ, իսկ զանիշխանութեան ժամանակն դնէ 1062, որով գումարքն նշանակեալ ամացն 2242։

հինգ ամաց՝ ծնաւ որդի ըստ Եւթանասնիցն (զՄաթուսաղա), և ըստ Ասորւոցն վաթսուն և հինգ ամաց։ Սա եգիտ գիր, որով Քաղդեացիքն վարին։ Եւ հաճոյ եղեալ Աստուծոյ զերկերիւր ամ, փոխեցաւ, որպէս գիտէ փոխողն Աստուած՝ ուր կայ։ Ոմանք ասեն թէ ՚ի դրախտն ուստի ել Ադամ։

Մաթուսաղա լեալ ամաց հարիւր ութսուն և եւթն՝ ծնաւ որդի ըստ Եւթանասնիցն և Ասորւոցն։ Եւսեբի և Ենանոս հարիւր վաթսուն և հինգ ամաց ասեն, իսկ Սամարացիքն վաթսուն և երկու։ Իննին ամենայն ժամանակք նորա ինն հարիւր վաթսուն և երկու, մինչեւ յիննսուն և ութ ամին Սեմայ։

Ղամէք լեալ ամաց հարիւր ութսուն և ութից, ծնաւ որդի ըստ Եւթանասնիցն, և ըստ Ասորւոցն հարիւր ութսուն և երկու ամաց, և ըստ Սամարացւոցն յիսուն և երեք ամաց։ Եւ լինին ամենայն ժամանակք նորա եւթն հարիւր եւթանասուն և երեք ամ, մինչեւ ՚ի վաթսուն և հինգ ամին Սեմայ. և սա մեռաւ նախ քան զհայրն քսան և հինգ ամաւ։

Ի հազար վեց հարիւր վաթսուն և վեց ամի ելիցն Ադամայ ծնաւ Նոյ, այր արդար ՚ի ծնողացն իւրոց, և պահեաց հինգ հարիւր ամ, և ըստ Ասորւոցն հինգ հարիւր երկու ամ. և յերեքհարիւր յիսուն և ութերորդ ամին նորա կատարեցան երկու դարք։

Ասէ Անիանոս, թէ 'ի յաճախել մեղաց մարդկան, թողեալք եղեն 'ի ձեռաց Աստուծոյ. և յորդեցին 'ի նոսա պատերազմունք և կռիւք, և լցաւ երկիր ոսկերօք ըսպանելոց, և կուտեալ լինէին իբրև զբլուրս. և բարկացեալ Տեառն Աստուծոյ՝ ած ջրհեղեղ 'ի վերայ նոցա, և կորոյս զնոսա յերկրորդ ամսեանն Խար ԻԷ: Եւ տևեաց ջուրն ամ մի, մինչև 'ի նոյն ամիսն և 'ի նոյն քանիս աւուրն. և ելին հրամանաւ Աստուծոյ Նոյ և որդիք իւր կանամբք իւրեանց 'ի տապանէն. և մատոյց Նոյ պատարագ Աստուծոյ 'ի սուրբ անասնոցն, և հոտոտեցաւ Տէր 'ի հոտ անուշից: Եւ էր Նոյ դարագլուխ երրորդ: Յովսեպոս ասէ, թէ տապանն մնաց յԱւփիլմէ լեառն 'ի Կորդուացւոց երկիրն. բայց ճշմարտապէս կայ 'ի Հայք մեծ, 'ի լեառն Արարադայ, որ է Մասիս ըստ բնագրացն:

Եւ էին որդիք Նոյի Սեմ Յաբեթ, Քամ. յիննսուն և ութ ամին Սեմայ եղեւ ջուրն, և հարիւր ամաց ծնաւ որդի: Եւ բաժանեաց Նոյ որդւոց իւրոց զերկիր. և ետ Սեմայ զՊարսից աշխարհն, և զՊեկտուրա մինչև 'ի Հնդիկս, Ռինոյ-Կորուրա, որ է Նեղոս: Եւ Քամայ ետ Ռինոյ-Կորուրայէ մինչև 'ի Գադիրոն: Յաբեթի ետ 'ի Մադիէ մինչև 'ի Գաթիրան հիւսիսոյ:

Ազգն Յաբեթի ունին յանկնէն Տիգրիս

գետոյ, որ բաժանէ ընդ Մադէ (1) և ընդ Պարսս ։ Եւ ազգն Սեմայ բնակեցին յարեւելից և յարեւմտից Եփրատայ և Դկլաթու ։ Եւ ազգն Քամայ ունին զԳեհոն գետ, որ բաժանէ զսահմանս նոցա ։ Եւ որդիք Յաբեթի են Հայք և Մակեդոնացիք և Մադացիք և Յոյնք և Լատինացիք և Վրացիք և Ալանք ։ Եւ որդիք Քամայ են Հնդկացիք, Եգիպտացիք, Հեթացիք, Յեբուսացիք, Հաբաշիք՝ որ են Քուշացիք, Գերգեսացիք, Արութացիք ։ Եւ որդիք Սեմայ՝ Աթուրացիք, Քաղդէացիք՝ որք են Ասորիք, Եբրայեցիք, Փռանգք, Պարսիկք ։ Եւ Սեմացիք ունին յարեւելից մինչեւ յարեւմուտք ընդ մէջս երկրի ։ Եւ որդիք Յաբեթի ունին զհիւսիս յարեւելից մինչեւ յարեւմուտս ։ Եւ որդիքն Քամայ զհարաւ ունին ։

Եւ զի ետես Նոյ նախ քան զՋրհեղեղն մեծ՝ զպատերազմունս եւ զապանութիւս կորուսելոցն, վասն այն պատճառի բաժանեաց նոցա զերկիր, և եդ նզովս զի մի զրկեսցեն զմիմեանս վիճակօք ։

Զի յետ Ջրհեղեղին ասեն՝ թէ որդի եղեւ Նոյի Մանտինոս (2) անուն, որ յայնկոյս ծովուն առ զսահմանս իւր ։ Եւ խնդրեաց ՚ի հօրէն յոսկերացն Ադամայ, և ետ նմա

(1) Յօրինակին Մադդէ ։
(2) Միւս թարգմանութիւնն Մանեթոն ։

զկառուցս ծնողացն 'ի յիշատակ ։ Եւ սա ա-ճեցոյց զաստեղագիտութիւնն ։

Սէմ լեալ հարիւր երեսուն ամաց ծնաւ զԱրփաքսադ ըստ Եւթանասնիցն, և ըստ Ասորւոց հարիւր ութ ամաց ։ Արփաքսադ հարիւր երեսուն և հինգ ամաց ծնաւ զԿայնան ։ Զայս Կայնան և զժամանակս իւր Եւսեբի ոչ յիշէ ։ Այս Կայնան բազմացոյց ըզ-Քաղդէացւոցն զմոլորութիւնն և զկախարդութիւնն ըստ աստեղացդ ըղձութեան ։ Եւ որդիքն նորա իբրեւ Աստուծոյ երկրպագեցին նմա, և կանգնեցին նմա պատկեր 'ի կենդանութեանն իւրում, և այս է սկիզբն կռոց երկրպագութեան ։ Սա շինեաց քաղաք և անուանեաց Խառան 'ի վերայ անուան որդւոյ իւրոյ ։ Եւ Ղուկաս յիշէ զսա յԱւետարանին, և Մովսէս ոչ յիշէ վասն պատճառիդ ։

Արփաքսադ լեալ ամաց չորեքհարիւր վաթսուն և հնգից, և ըստ Ասորւոցն չորեքհարիւր երեսուն և ութ ամաց՝ (մեռաւ)։ Կայնան լեալ ամաց հարիւր երեսուն և ինից՝ ծնաւ զՍաղա ։ Սաղա հարիւր երեսուն ամի ծնաւ զԵբեր, և եկաց չորեքհարիւր վաթսուն ամ. և ըստ Ասորւոց երեսուն ամաց ծնաւ, և եկաց չորեքհարիւր երեսուն և երեք ամ և մեռաւ ։

Եբեր հարիւր երեսուն և երեք ամի ծը-

նաւ զՓաղէկ, և ապա զԵնկոսն ըստ Անա-
նոսի ժամանակագրէ, իսկ ըստ Ասորւոցն ե-
րեսուն և չորս ամաց. և եկաց երեք հարիւր
քառասուն և երեք ամ. և են որ ասեն, թէ
սովաւ կոչեցան Եբրայեցիք, զի 'ի հարիւր
քսան ամի Փաղեկայ բաժանեցաւ երկիր յա-
ճախել ազգին:

Ի սկզբան աւուրցն Ռաւագայ սկսան շի-
նել զաշտարակն յերկիրն Սենաար: Եւ Ներբ-
րովթ հսկայ որսայր շինողացն որս, և կերա-
կրէր զնոսա: Եւ շինեցին զամս քառասուն՝
երկուցեալք 'ի նզովիցն Նոյի., զի անցին
զերդմամբ և զնզովիւք նորա, և զլկեցին
զիրեարս և ամն ունէին ջրոյ. և զայս հնարք
իմացան, զի ապրեսցին սովաւ: Եւ իջեալ
Տէրն բաժանեաց զլեզուս նոցա, զմի լեզուն
յեւթանասուն և երկու լեզուս: Եւ Եբեր
այր ծեր և աստուածապաշտ՝ ոչ միաբանեաց
ընդ նոսա, և ասեն՝ թէ բուն լեզուն Ադա-
մայ առ նմա մնաց: Եւ նա անուանեաց զեր-
կիրն զայն Բաբելոն, որ թարգմանի աներումն
ըստ Քաղդէացւոց լեզուին՝ որ է Ասորւոցն:
Եւ սուրբն Յակովբ և սուրբն Եփրեմ և
սուրբն Վասիլ և սուրբն Գրիգոր Նիւսա-
ցին վկայեն այսմ, թէ առ Եբեր մնաց լե-
զուն Ադամայ: Եւ սուրբն Յակովբ ուռ-
հայեցին և Յովհաննէս իթրացին և այլք
ասեն թէ, այն է լեզուն Ադամայ. որ մնաց առ

Եբեր, զոր այժմ Հրէայք ունին, և ոչ Քաղդէ-ացւոցն զոր Ասորիք ունին(1)։ Բայց զարմանամ թէ որպէս ծածկեցաւ այս 'ի նոցանէ, որ ըս-կիզբն ազգին Իսրայէլի Յակոբ է, և յորժամ անցին ընդ ծովն, ապա անուանեցան Եբ-րայեցիք. Եւ ոչ վասն Եբերայ, զի Եբրայե-ցին անցին թարգմանի, և 'ի յանցանել ծովուն առին նոր լեզու որպէս զայլ պարգևսն, ըստ Սաղմոսին որ ասէ. "Յելանելն յերկրէն

(1) Մթին են բանքս, թուի եթէ ասիցէ՝ առ Քաղդէացւոցն։ Սոյն այս հաստուած բանիցս գտանի 'ի գիրս Ապուլֆարա-ճայ, առեալ 'ի բնագրէն պատմութեան Միխայելի. "Վարդա-պետաց մեր Վասիլ և Եփրեմ ասեն, եթէ յԱդամայ մինչև յԵբեր միմիայն լեզու էր մարդկան, ասորականն, զոր ընդ Ադամայ խօսեցաւ Աստուած։ Եւ լեզուս այս բաժանեցաւ յերրեակ բարբառս, յորս ընտրելագոյնն է արամեանն զոր Եդեսացիք, Խառանացիք և բնակիչք ներքին Ասորւոց 'ի կիր առնուն։ Երկրորդն է Պաղեստինեանն զոր Դամասկա-ցիք, բնակիչք Լիբանանու և մնացեալ մասն բնակաց ներքին Ասորւոց խօսին։ Երրորդ բարբառն որ է խստագոյնն, է Քաղդէացւոյն Նաբաթեանց, որ 'ի գործ ածի 'ի լերինս Ա-սորեստանի և յաւանս Իրաքայ։ Յովհաննէս եդեսացի հաս-տատէ, եթէ ազգ մարդկան ոչ դադարեաց երբէք 'ի խօսե-լոյ զլեզու եբրայական յետ խառնակութեան լեզուացն 'ի Բա-բելոն։ ("Պատմ. Հարստութեանց. յեր. 11)։ Եւ 'ի Տօնէգիրքն ասորական (յեր. 9), ասէ. "Սուրբն Բարսեղ և սուրբն Եփ-րեմ ասեն, եթէ նախ քան զբաժանումն լեզուացն՝ առաջին լեզուն էր ասորականն, որպէս երևի 'ի բանէս Բաբելոնաց-ւոց՝ խառնակումն։ Իսկ սուրբն Յակոբ և սուրբն Յովհաննէս մեղացի ասեն՝ Հրէիցն լինել այն լեզու որ մնաց առ Եբեր, որ էր այր արդար և ոչ միաբանեաց ընդ նոսա 'ի շինութեան աշտարակին Բաբելոնի։"

Եգիպտացւոց, լեզու զոր ոչ գիտէր՝ լուաւ։ Եւ առաջին լեզու քաղդէացին է, ուստի Իսրայելացիք են, և ունէին զհինն՝ մինչև ըզնորն առին, ապա առաջինն բարձաւ 'ի նոցանէ, և այլ ոչ կալան զայն։

Փաղէկ լեալ ամաց հարիւր երեսնից ծընաւ զԱրգաւ, և ըստ Ասորւոցն երեսուն ամաց. և եկաց երեքհարիւր քառասուն և երեք ամ, իսկ ըստ Ասորւոցն երկերիւր երեսուն և ինն ամ։

Ի ջրոյն մինչ 'ի բաժանումն լեզուացն ըստ Եւթանասնիցն վեց հարիւր վաթսուն ամէ, նոյնպէս և ըստ Ասորւոցն։

Արգաւ լեալ ամաց հարիւր երեսուն և երկուց՝ ծնաւ զՍերուք, և ըստ Ասորւոցն՝ յիսուն և երկուց ամաց. և եկաց երեքհարիւր երեսուն և ինն ամ, իսկ ըստ ասորի գրոց՝ երկերիւր երեսուն և ինն ամ։ Ի ժամանակս յայս Նեբրովթ շինեաց երիս քաղաքս, զԱրեգ, զՈւռհա և զՄծբին։ Եւ զկնի ցրուելոյ յաշտարակէն, որդիքն Քամայ եկին յերկիրն Փղշտացւոց և Քանանու. և հայեցեալ 'ի պարարտութիւն երկրին և 'ի վայելչութիւն, հաճեցան և բնակեցան անդ, և ոչ գնացին 'ի վիճակն իւրեանց որ կայր յարեւմտից Եգիպտոսի, և ժառանգեցին զկրկնակի նզովքն Նոյի, զծիծաղելոյն և զսահմանափոխութեանն զօր

'ի բաժանել վիճակին նոցա եդ ։

Ի յեւթանասուն և չորրորդ ամին Աբրահամու լցաւ երեք դարն, որ է երեք հազար ամ, և 'ի յեւթանասուն ամին Նորա շինեցաւ աշտարակն. և զկնի քառասուն ամի շինուածոյն ցրուեցան ընդ երկիրն ամենայն. և լցաւ երկիր պատերազմօք, և որ յաղթէր, պատկեր յաղթութեան կանգնէին նմա և երկրպագէին ։ Ի հարիւր և տասըն ամին Աբրահամու անկաւ աշտարակն ։ Զկնի ջրոյն առաջին թագաւորեաց 'ի Բաբելոն Նեբրովթ. և 'ի քառասուն ամին Աբրահամու թագաւորեաց Նեբրովթ. և 'ի սաստիկ շնչմանէ աստուածառաք հողմոյն շրջեցաւ աշտարակն, և մեռաւ Նեբրովթ սպանմամբ աշտարակին զարկուցմանէ [1], և են ժամանակք թագաւորութեան նորա վաթսուն և ինն ամ ։ Որպէս Մենանդրոս պատմէ մոգն, և յերկրորդ գիրքն Յովսեփայ [2] պատմի, թէ թագ նորա հիւսածոյ էր և ոչ կռանակոփ ։

Ի մեռանելն Փաղեկայ տեսին որդիքն Եկտանայ եղբօր Փաղեկայ, թէ նոցա ոչ

(1) Միւս թարգմանութիւնն զայս օրինակ պատմէ. «Որմանք ասեն զՆեբրովթ 'ի յաշտարակին անկմանէն մեռանիլ. բայց մեք ասուցեալք յետ ժամանակի սպանանիլ նմա 'ի Հայկայ որդւոյ Թորգոմայ ։ . . . . »

(2) Վկայութիւն Յովսեփայ երկրորդ Գրոցն ոչ յիշէ 'ի միւս թարգմանութեանն. և Յովսեփին կարծի Յովսեպոսն լինել ։

տուեալ ժառանգութիւն, զայրացան և ե-
դին իւրեանց երիս գլխաւորս, զՍաբա,
զՈւփիր և զԵւիլա. և հնարիմացութեամբ
կազմեցին զէնս, Թուր, աղեղն, զրահս, սա-
ղաւարտս, վահան, և սկսան այսու յաղթել
ամենեցուն. և փախչէին առաջի նոցա: Եւ
վասն զերծման և ապրելոյ 'ի նոցանէ, սկը-
սան շինել բերդս և ամրոցս. և այս եղեւ
պատճառ և սկիզբն զինագործութեան: Եւ
'ի յաղթահարիլն բազմաց՝ աղաչէին զորդի-
սն Եկտանայ, տանել իւրեանց ժառան-
գութիւն զոր և կամիցին, և խաղաղանալ 'ի
պատերազմելոյ ընդ նոսա: Եւ էառ Սաբայն
զհնդկաքեր երկիրն, զոր Սաբա կոչեաց յիւր
անուն: Եւ Ուփիր զաշխարհն ոսկեհանաց,
որ է Հնդիկք: Եւիլա՝ զպատուական ականց
երկիրն, որ Եւիլատ կոչեցաւ յանուն նորա:

Սերուք լեալ ամաց հարիւր երեսնից՝ ծը-
նաւ զՆաքովր ըստ Եւթանասնիցն, և ըստ
Եբրայեցւոցն և Ասորւոցն հարիւր ամ պա-
կաս գայ 'ի Ջրոյն մինչեւ ցայս վայր: Եւ ե-
կեաց Սերուք երեք հարիւր երեսուն ամ. և
յաւուրս նորա իմացեալ եղեւ դահեկանի և
դրամի շինուած անուամբ դրոյ Թագաւորա-
ցըն: Եւ Սերուք շինեաց զՍրուճ յանուն իւր:

Յայսմ ժամանակի երեւեցան Ամազոնու-
քըն յազգէն Թորգոմայ այսպիսի պատճա-
ռաւ: Եղեւ զի կին մի մնաց ժառանգ Թա-

գաւորութեանն Թէոդոմայ, և ոչ կամեցաւ այր առնուլ. և էր յաղթող, և ելանէր աւերէր զբազում աշխարհս: Եւ եղեւ նենգութիւն ինչ 'ի զօրաց նորա, և զայրացեալ կոտորեաց զարուական զօրս իւր, և արար զօր կանանցի. և միանգամ յամին առ սակաւ սակաւ երթային խառնէին ընդ արս յայլ աշխարհ, և գնեալ էգսն ապրեցուցանէին և զարուսն սպանանէին: Եւ զայն տեսեալ ժողովեցան յամենայն աշխարհէ մետասան թագաւորութիւնք, և աւերեցին զամրոց թագաւորութեան նոցա զՍլիուն քաղաք 'ի կողմն հիւսիսի, և ապա բարձաւ անկարգութիւնն, և արքն առին զիշխանութիւնն որք ծնեալ էին 'ի կանանց անտի, օրինօք ամենայն երկրի, և ապրէին արուքն և լցաւ աշխարհն:

Զկնի քառասուն ամի մահուանն Նեբրովթայ և խափանելոյ թագաւորութեանն յորդւոցն Քամայ 'ի Բաբելոն, թագաւորեաց Կամբիւրոս քաղդէացի 'ի ժամանակս Սերուքայ, 'ի յիսուն և վեց ամին: Սա շինեաց զՀռոչ քաղաք[1], որ ասեն զՍպահան. և յայսմ ժամանակի տարածեցաւ զինագործութիւնն, և սկսան գերել զմարդիկ և վաճառել: Ի յեւթանասուն ամին Սերուքայ Կամբիւրոս արքայ քաղդէացի, պատերազ-

(1) Վարդան Նեբրովթայ տայ շինել զՀռոչ: Պատմ. Եր. 21. Տպ. Մոսկուայ:

մեալ ընդ Կլաւատու ազգին(1), յաղթահարեաց զնոսա և ելին 'ի լերինս ։ Սերուք ուսոյց Նաքովրայ զաղանդն Քաղդէացւոց կախարդել և հմայել 'ի նշանս աստեղաց ։ Կամբիւրոս թագաւորեալ ամս ութսուն եւ հինգ . զկնի նորա երրորդ թագաւորեաց 'ի Բաբելոն Սամիրոս 'ի հարիւր և վեց ամին Սերուքայ, ամս եւթանասուն և երկու ։ Սա պատերազմեցաւ ընդ Յոյնս և ընդ Փրանգս և ընդ Քանանացիս , և 'ի ներքոյ հարկի կացոյց զնոսա . և շինեաց բազմութիւն քաղաքաց յաշխարհին Քաղդէացւոց և Պարթեւաց . և սա սկսաւ չափ և կանգուն և կշիռ ( սահմանել )։ Եւ սա եւս դնել խայտուածս և պատկերս 'ի կտաւս , և զտաւղարուեստ սպրիչում գործելոյ(2). և զամենայն գոյնս ներկուածոյ սա սահմանեաց ։ Եւ զայս ասաց Սամանոքոս(3) մոգ յիւր պատմութեանն վասն նմա , եթէ երեք աչք ունէր և եղջիւր . և սա էր հսկայ քաջ , որ և եհան 'ի Քաղդէացւոցն զՆեբրովթեանն , և ընջեաց զազգն նորա անուն ։ Նաքովր լեալ ամաց եւ-

(1) Ի միւս Թարգմանութեան՝ Սամիրոսի ասէ տուեալ, պատերազմ ընդ ազգին Կալատու ( Գաղատացու )։

(2) Միւս Թարգմանութիւնն յուղագործութիւն դնէ , որ զնոյն նշանակէ . որպէս ունի և Վարդան . իսկ 'ի տպեալն առաջին՝ անգիտաբար փոխեալ է 'ի կրաստագործութիւն ։

(3) Յոբինակիս Սամարու ։

րահամու մօրն Մալխա Բուէր անուանն (1). և յետ տասն ամի ծննդեանն Աբրահամու ծնաւ Սարա դուստր Թարայի ի Օրուբայ (2) կնոջէ՝ և ոչ ի մօրէն Աբրահամու, որպէս ինքն ասէ առ Փարաւոն և առ Աբիմելէք. (Թէ քոյր իմ է (3)) ՚ի հօրէ և ոչ ՚ի մօրէ։

Եւ Աբրահամ եղեալ եւթնևտասան ամաց, սկսաւ ՚ի կամաց իւրոց խնդրել զԱստուած։ Յայսմ ժամանակի եղեւ բարկութիւնն Աստուծոյ ՚ի վերայ Քաղդէացւոցն։ Զի թռչունք զոր ճայ կոչեն, ուտէին զանդաստանս նոցա. և իւրաքանչիւր ոք այնչափ հերկէր և ցանէր, զոր պահել կարէր ՚ի բաց քշելով զթռչունսն. և ՚ի պահելն Աբրահամու զանդաստանս հօր իւրոյ, ձանձրանայր ՚ի հալածելոյ զձագսն. և խնդրեաց օգնութիւն յամենայն անուանեալ աստուածոցն, և ոչ եգիտ. և յարեգակնէ և ՚ի լուսնէ և յաստեղաց և յերկնէ հայցեաց և ոչինչ օգտեցաւ. ապա ասաց. «Ո՛վ հասանելի Աստուած՝ ամենից վերագոյն և արարիչ այս թռչնոց և անդաստանաց, յայտնեա զքեզ ինձ և հալածեա զնոսա։» Եւ վաղվաղակի վերացան թռչունքն, և այլ ոչ դարձան յանդաստանսն։ Յայն ժամն ծագեաց շնորհ ողորմութեանն Աստուծոյ ՚ի

(1) Վարդան ունի «Մալքաթա էր անուանն». Ածր։
(2) Ոմանք յօրինակաց Ի Զրուբայ։
(3) Ծննդոց. Ի. 12։

սիրտն Աբրահամու, և ասաց. “Գտայ զԱստուած զարարիչն ամենայն արարածոց:” Եւ յաճախեաց Աբրահամ 'ի խնդրուածսն երեւիլ նմա Աստուծոյ (1):

Յայնմ ժամանակի Թագաւորն Վիլոս մեռաւ, և թագաւորեաց Նինոս որդի նորա ամս յիսուն և երկու, երկրորդ (կեալ) Թագաւոր Աթուրացւոց: Նա շինեաց զՆինուէ, և փոխեաց զաթոռ թագաւորութեանն իւրոյ յԱթուրեայ 'ի Նինուէ. և կարգեաց կուռս մեծ արկածու (2), հօր իւրոյ Բիլոսի (Վիլոս) ոսկեղէն, և ետ երկրպագել նմա: Եւ յայնժամ շինեցան Ասաքողթ և Ասան և Բաղանէ. և աստ շինեցաւ Եռուսաղէմ: Եւ Աբրահամ զտուն կռոց հօր իւրոյ որ կայր 'ի Խառան, այրեաց, և Առան եղբայր իւր ջանաց փրկել զկուռսն յայրմանէ, և ընդ նմին այրեցաւ: Եւ 'ի վախճանն ամին Աբ-

(1) Ի գիրս Ծննդոց համառօտակի խօսի զկոչմանէն Աբրահամու. իսկ 'ի գիրս արտաքնոց պատմագրաց. Հրէից և Ասորւոց. գտանին բանք երկարապատումք զԱբրահամէ, առանստոյգս համարեալ. որպէս և Գիրքն Արդարոյ կոչեցեալ. յորոյ հանեալ է և Միխայէլ զոր ինչ առաւելաբանութեանք խօսի զվարուցն Աբրահամու: Ի միւսում թարգմանութեան յաւելեալ տեսանին և այլ պարագայք, յորում և զվարուցն Մելքիսեդեկի բանք լինին՝ հետեւելով անստոյգ պատմութեանցն րաբունեաց Հրէից:

(2) Միւս թարգմանութեան օրինակքն ունին նուազ մեծարժէս կամ մեծ ակռաչու՞ ոսկեղէն. Եւ թերեւս իցէ նշանաւ

րահամ և Թարա հայր իւր և Նաքովր (1) եղ-
բայր իւր և Ղովտ որդի Առանայ, յՈւռհա-
յէ Քաղդէացւոց ելեալ եկին բնակեցան ՚ի
Խառան ամս չորեքտասան. և հրամանաւ
Աստուծոյ ելեալ Աբրահամու եկն բնակե-
ցաւ յերկիրն Քանանացւոց։ Եւ լեալ Աբրա-
համ ութսուն և հինգ ամաց, մնաւ յԵգիպ-
տոս, և ծնաւ զԻսմայէլ ՚ի Հագարայ աղախ-
նոյ իւրոյ։ Եւ եկաց Իսմայէլ հարիւր երե-
սուն և եւթն ամ, մինչեւ ՚ի վաթսուն ամն
Յակովբու։ Յայսմ ժամանակի թագաւո-
րեաց Շամիրամ կինն Նինոսի ՚ի վերայ Ա-
թուրացւոց՝ ամս քառասուն և վեց։ Եւ սա
շինեաց թլեր՝ բլուր ՚ի հողոյ կուտեալ ամ-
բոց։ Բայց մեք գտաք այլ պատճառ թլա-
ցըղ, թէ ՚ի յաճախել պատկերապաշտու-
թեան յամենայն տեղիս, եհան Աստուած
հողմն փոթորիկ յերկիր, որ առեալ զկուռա-
սըն թաղեաց ՚ի տեղիս տեղիս հողակուտօք։
Եւ բնակեալ ՚ի նոսա դեւքն, կան ՚ի սան-
ջանս ՚ի նոսին կուռսն. և մինչեւ ցայսօր
դիւթք և կախարդք առ թլովքդ գործելով
զարուեստս իւրեանց, լսեն ձայն որ գայ
՚ի դիւացն։

Աբրահամ իննսուն և ինն ամաց եղեալ
թլփատեցաւ. և հարիւր ամաց լեալ՝ ծնաւ
նմա Իսահակ ըստ աւետեացն Աստուծոյ։

(1) Յօրինակի միւսում Նաքովր։

Եւ ամք ծառայութեան նոցա յԵգիպտոս՝ չորեքհարիւր և երեսուն ամ ըստ Առաքելոյն։ Եւ սկսանի ժամանակ պանդխտութեան նոցա յեւթնամեան և եւթն ամն Աբրահամու, յորժամ ել ՚ի տանէ հօր իւրոյ, որպէս հրամայեցաւ ՚ի Տեառնէ ։ Ի հարիւր հնգետասան ամին եհան զԻսահակ ՚ի զենումն. և հնգետասան ամաց էր Իսահակ, և այլք երեսուն ամաց ասեն, և մեք հաւանիմք հնգետասան ամին ։ Եւ եկաց Աբրահամ հայր իւր եւթնասուն և հինգ ամ, մինչեւ յերեսուն և հինգ ամն Յակոբայ ։ Ի յիսուն ամին Իսահակայ պատմեցաւ Աբրահամու՝ թէ ծնան որդիք ՚Նաքովրայ եղբօր քո ։ Ի հարիւր երեսուն և չորս ամին Աբրահամու և յերեսուն և եւթն Իսահակայ, մեռաւ Սառա հարիւր քսան և եւթն ամաց։ Եւ առեալ Աբրահամու զՔետուրա ՚ի կնութիւն ։ և էր Աբրահամ հարիւր քառասուն և երկու ամաց ։ Յերեսուն և ութ ամին Իսահակայ էառ զՌեբեկա ՚ի կնութիւն ։ և ՚ի վաթսուն և ՚ի մի ամին(1) Իսահակայ յղացաւ Ռեբեկա ։ և զնոյն Ռեբեկա առ Մելքիսեդեկ աղօթիւք խնդրել յԱստուծոյ զպատասխան վիճման մանկանցն որ յորո

(1) Աստանօր ասորերէն օրինակս մեր ՚ի պատմութենէ սուրբ գրոց, յորում ասի քառասնամենայ առնուլ Իսահակայ զՌեբեկա և վաթսնամենայ ծնանել որդիս Ծնն. ԻԵ. 20-26։

վայնի նորա, զի գիտացէ՝ յայտնելով նմա Աստուծոյ։ Եւ նա առեալ հրաման ՚ի Տեառնէ՝ ասէ. «Երկու ազգ են յարգանդի քում, և երկու ժողովուրդք. և ժողովուրդ զժողովրդեամբ ել և ելանիցէ, և երէցն կրսերոյն ծառայեսցէ (1)։» Ենանոս ասէ, ՚ի վաթսուն ամին Իսահակայ ծնաւ Ռեբեկա, և այլք հարիւր ամաց ասեն։ Երէցն Եսաւ՝ որ է Եդոմ, ՚ի նմանէ Եդոմայեցիք՝ որ են Փռանկք. կրսերն Յակոբ, յորմէ Իսրայէլացիք։

Ի յեւթանասուն և ՚ի վեց ամին Իսահակայ մեռաւ Աբրահամ. ՚ի հնգետասան ամին Յակոբայ Իսահակ եկաց հարիւր ութսուն ամ, մինչև յերեսուն և մի ամն Ղեւեայ։ Եւ էր Աբիմելէք Թագաւոր քաղդէացի, որ է Գերերա փղշտացւոց, բարեկամ տանն Աբրահամու։ Եւ լեալ Յակոբ եւթանասուն և եւթն ամաց, ՚ի հարիւր երեսուն և եւթն ամին Իսահակայ գնաց ՚ի Խառան օրհնութեամբ հօր իւրոյ. և եկաց Յակոբ հարիւր քառասուն և եւթն ամ, մինչև յերկոտասան ամն Կահաթու. և մեռաւ զկնի երկերիւր երեսուն և երկուց ամաց խոստմանն Աստուծոյ տալ որդւոց նորա զժառանգութիւն երկրին. և յԵգիպտոս եկաց ամս եւթնևտասան։ Եւ Եսաւ էառ կանայս ՚ի դստերաց Քանանացւոցն. և յորժամ գի-

(1) Ծնն. ԻԵ. 23.

տանց թէ չէ հաճոյ հօրն, էառ զՄաղայեթ դուստր Իսմայելի ։

Յայսմ ժամանակի շինեաց Եմովր հայր Սիւքեմայ՝ քաղաք, և կոչեաց զնա յանուն որդւոյ իւրոյ Սիւքեմ, յորմէ յափշտակեցաւ Դինա երկոտասան ամաց. և որդիքն Յակովբայ սպանին վասն նախանձու քեռն իւրեանց երեք հազար անձինս ։ Եւ Եսաւ բնակեցաւ 'ի Սէիր ։ Յակովբ ութսուն ամաց եղեալ՝ առ զԼիա, և ութսուն և հինգ ամաց եղեալ՝ ծնաւ նմա Ռուբէն, և ութսուն և եւթն ամաց եղեալ՝ ծնաւ Շմաւոն, և յութսուն և ինն (ամաց՝) ծնաւ Ղեւի ։ Յերրորդ ամին Ղեւեայ և յիննսուն և մի ամին Յակովբայ ծնաւ Յովսէփ. և 'ի տասն ամին Ղեւեայ եկ Յակովբ առ Իսահակ հայր իւր. և 'ի քսան ամին Ղեւեայ վաճառեցաւ Յովսէփ. և յերեսուն և մի ամին Ղեւեայ մեռաւ Իսահակ հարիւր և ութսուն ամաց ։ Զկնի մահուանն Իսահակայ վարձեցին որդիքն Եսաւայ զորդիսն Ըմմոնայ և Մովաբու և զԱրամ, և եկին 'ի Քեբրոն պատերազմել ընդ Յակովբայ և ընդ որդիս նորա ։ Եւ խոցեալ Յակովբու՝ եհար նետիւ և սպան զԵսաւ. և փախեան եկեալքն 'ի վերայ նոցա ։ Յակովբ հարիւր երեսուն ամաց եղեալ՝ էջ յԵգիպտոս, յերկրորդ ամի սովոյն և 'ի յինն ամի իշխանութեանն Յովսեփու ։ Իսա

Ասորւոցն եւթանասուն ոգի մտին յԵգիպ-տոս, և ըստ Եւթանասնիցն և ըստ սրբոյն Ստեփաննոսի նախավկայի՝ եւթանասուն և հինգ։ Եւ այս է պատճառն. զի Ասորին զՅով-սէփ և զերկուս որդիս Յովսէփու միայն հա-շուէ, և Եւթանասունքն զորդիս որդւոցն Յովսէփու՝ որք դեռ չէին ծնեալք՝ թուեն։

Ղեւի լեալ քառասուն և վեց ամաց ծնաւ զԿահաթ. ոմանք զՅովբայ փորձանքն յայսմ ժամանակի ասեն։ Կահաթ լեալ վաթսուն ամաց՝ ծնաւ զԱմրամ. և եկաց հարիւր երե-սուն և երեք ամ, մինչեւ յերրորդ ամն Մով-սիսի։ Ամրամ եւթանասուն ամաց ծնաւ ըզ-Մովսէս. և յերեսուն և. հինգ ամի իշխա-նութեանն Յովսեփու թագաւորեաց Ա-թուրայցւոցն Աղապարոս (1)։ Եւ յերեսուն և ութ ամի իշխանութեանն Յովսեփու թագաւորեաց Եգիպտացւոցն ·Բեբրոն՝ ա-մըս երեքտասան։ Եւ մեռաւ Ամրամ յԵ-գիպտոս նախ քան զելանելն Իսրայէլի ե-րեքտասան ամաւ, կեցեալ ամս հարիւր ե-րեսուն և հինգ։ Եւ եկաց Յովսէփ հարիւր և տասն ամ, և մեռաւ 'ի վեց ամին Ամրամայ և խոստմանն Աստուծոյ յերկերիւր ութսուն և վեց (ամին). և զկնի մահուան նորա մտին ազգ նորա 'ի ծառայութիւն։ Եւ յայնմ ժամա-

(1) Ըստ Սամուէլի Աղպադարոս որ տիրեաց ամս 32։

նակի Թագաւորեաց Ամափթիս[1] Եգիպտո-սի ամս քառասուն և երեք։ Սա սկսաւ հեղ-ձուցանել զորդին Իսրայելի 'ի Նեղոս գետ։

Եւ ծնաւ Մովսէս յեւթանասուն ամին Ամրամու, և յերեքհարիւր յիսուն ամի խոստա-մանն Աստուծոյ։ Եւ ընկեցեալ 'ի գետն, դուստրն Թագաւորին՝ Թերմութիս, և Եբ-րայեցին կոչէ զնա Մարիա, զոր Քանթարա Թագաւորն Մեմփիս քաղաքի առ 'ի կնու-թիւն, սա առ զՄովսէս 'ի ջրոյն, և եղեւ տան ամայ՝ սնաւ յուսմունս յԱնէան և յԱմրէան, և նոքա ուսուցին զնա։

Ի մտէն յԵգիպտոսի մինչեւ յելն՝ երկու հարիւր հնգետասան ամ։ Ի քսան և երկու ամին Մովսիսի նեղել սկսաւ Թագաւորն զԻսրայէլ շինուածովք քաղաքաց։ Եւ 'ի քսան և ութ ամին Մովսիսի շինեցին զՀերմուպօ-լիս[2]. և արարին պատերազմ Քուշացիք ընդ Եգիպտացիսն, և յաղթեցին և տարան գե-րի զՀասքուսա մայրգերն Մովսիսի, և առին 'ի կնութիւն։ Եւ յերեսուն և եւթն ամին Մովսիսի ծնաւ Յեսու որդին Նաւեայ, և Մովսէս շինեաց զՀերմուպօլիս, և պատե-

(1) Ըստ Եւսեբեայ Ամենոֆթիս, որում տայ ամս 30 կամ 31։ Քրոն. Հտ. յեր. 24. 96։

(2) Վարդան (Պատմ. յեր. 28). Թերմուպօլիս անուանէ յանուն Թերմութեայ մայրապետին Իւրոյ. և այս մեզ ուղ-ղագոյն Թուի։

րազմեցաւ ընդ Եթիովքաս Թագաւորն Փը-ղշտայւոյ (1) զտասն ամ, և յաղթեաց նմա, և առ 'ի նմանէ զՀռաքուսս. և Քամփա-րայ՝ (2) այրն Թերմութեայ ոխացաւ ընդ Մով-սիսի, և կամէր սպանանել զնա. և զչարէր վասն յաղթութեանն նորա, և չկարէր մեղան-չել նմա վասն Թերմութեայ անուանեալ մօրն Մովսիսի, զոր Մովսէս դարձոյց 'ի գերու-թենէն. և յորժամ մեռաւ կինն այն, առա-քեաց զԽանեթիս սպանանել զՄովսէս. և Մովսէս իմացաւ զայն և փութացաւ սպան-զնա. և ինքն փախեաւ, և գնաց յԱրաբիա առ Րագուէլ Մադիանացին:

ՅԱբրահամէ և 'ի Կենդուրայ ծնաւ Յեկ-սան (3), և յԵկսանայ ծնաւ Դադան, և 'ի Դա-դանայ ծնաւ Րագուէլ, և յՐագուելայ ծնաւ Յոթոր, և 'ի Յոթորայ ծնաւ Յոբաբ: Եւ առ Մովսէս զՍեփովրա դուստր Յոթարայ իւր 'ի կնութիւն. և քառասուն ամաց էր Մովսէս:

Յայսմ ժամանակի երեւեցաւ Ասկղեպի-դէս բժիշկ. և աստ էր Կեկրոփս, որ թագա-ւորեաց յԱտիկէ, որ է յԱդփիլատոս (4): Վասն

(1) Միւս թարգմ. ընդ Եթովպացիսն ասէ տասեալ Մով-սէսի պատերազմ. և զԹագուհին նոցա զԹարբիս վարեալ 'ի գերութիւն. իսկ Հռաքուսսն՝ նոյն է զոր և Թերմութիս կոչէ:
(2) Նոյն է զոր վերագոյն կոչեաց Քանեփրոս. իսկ միւս թարգմանութիւնն ունի Քանեփրոս:
(3) Նոյն է որ 'ի սուրբ գիրս Յեկսան կոչի: Ծննդ. ԻԵ. 2:
(4) Յօրինակիս Թուրին բառք վրիպեալք 'ի գրչէ. քանզի

սմա ասեն թէ յառաջին ամին Գրդոնիէլի թագաւորեաց. և Յոյնք ասեն թէ սա շինեաց զԱթէնս յանուն կնոջ իւրոյ Աթենայ։ Սա տիրեաց ամենայն Ասիոյ, և անուամբ նորա կոչեցաւ գաւառն Կապադովկիա։ Եւ յաւուրս սորա երևեցաւ ձիթենի 'ի դղեկին Աթենայ. և սա արար գիր Յունաց յԵգիպտացի գրոյ, զի գիտէր զերկուցն լեզուն։ Սա եբեր զբնակիչս Մեմփիս քաղաքի և բնակեցոյց յԱթէնս, ուստի սերմանեցաւ իմաստութիւնն 'ի կողմանս հիւսիսոյ։

Իսկ Մովսէս եւթանասուն և ութ ամաց եղեալ, երևեալ խօսեցաւ ընդ նմա Աստուած 'ի լեառն Սինեայ։

Յայսմ ժամանակի յԵգիպտոս թագաւորէր Փառնոս. ծնաւ սմա որդի, և անուանեաց զնա Ռամասիս։ Եւ սա արար մեծ նեղութիւն Իսրայելացւոցն. եւ սա կոչեաց զանուն իւր երկրին Եգիպտոս, զի նախ Աերիա կոչէր (1)։ Եւ 'ի չորս հարիւր և երեսուն ամի խոստմանն Աստուծոյ, որ է ութսուն ամ Մովսիսի, արժանի եղեւ երևմանն Աստուծոյ. և առ հրաման հանել զԻսրայէլ յԵգիպտոսէ։ Եւ անցին Եբրայե-

Կեկրոփս թագաւորեաց յԱտտիկէ, և ըստ սմանց՝ նախ յԵգիպտոս թագաւորել սա։ Տես և յԵւսեբիոս, 'ի Քրոն. Հտ. Բ. էր. 100։

(1) «Եգիպտոս որ յառաջագոյն Աերիա կոչէր, յԵգիպտոսէ արքայէ անուանեցաւ։» Եւսեբ. Քրոն. էր. 108։

ցիքն ցամաքաւ ընդ ծովն, և ընկղմեցաւ փառնոս Թագաւոր զօրօք հւրովք. Եւսեբիոս ասէ, թէ Կանաքարիս (Քենքերէս) կոչէր ընկղմեալն փարաւոն և ոչ Փառնոս. և որք ոչ էին (գնացեալ) զկնի փարաւոնի, ամենայն ոք զգործն յորում կայր՝ աստուածացոյց, որպէս պատճառ փրկութեան անձանց իւրեանց եղեալ։

Յայսմ ժամանակի եմուտ աստեղագիտութիւնն 'ի Պարս և կախարդութիւնն. և աստ շինեցաւ տաճարն Ապողոնի յԱթէնըս, և կոչեցաւ Արիսպագոս՝ որ է տուն դատաստանի։ Եւ աստ շինեցաւ Կորնթոս քաղաք, որ նախ Եուրիա (1) կոչէր։ Եւ յայսմ ժամանակի երևեցան փիւնիկ և Հերակլէս(2) իմաստասէրք։ Եւ նախ քան զԿեկրոպս Ակտէ կոչէր աշխարհն, որ յանուն նորա կոչեցաւ Կապադովկիա։ Եւ աստ եղեւ հարուածն Եգիպտոսի շարժմամբ, որ և եւթն ամիս 'ի տուն և 'ի քաղաք ոչ իշխէին մտանել, այլ վրանօք արտաքոյ և բացօթեայք կային։ Եւ զկնի հեղձմանն Թագաւորեաց յԵգիպտոս Աքարոս։ Զկնի վեց ամի ելիցն Իսրայելի

(1) Միւս Թարգ. Եփրա։ Միւնկեղաս դնէ Եփիրա։

(2) Եւսեբիոս ('ի Քրոնիկոնի յէր. 106) ասէ, 'ի ԽԸ ամին Կեկրոպայ "Հերակղէս 'ի փիւնիկէ ճանաչէր Դեսանդրաս յորջորջեալ. որ և ցայժմ իսկ 'ի Գադիրաց և 'ի Հերակղեացւոց անուանի։"

Թագաւորեաց 'ի վերայ Աթենացւոցն Կրանաս(1), և անուն դստերն նորա Ատիկէ, յորոյ անուն կոչեցաւ Ատտիկէ աշխարհն ։

Յադամայ մինչև 'ի Մովսիսի ութսուն ամն և յելսն յԵգիպտոսէ Իսրայելի՝ լինին ամք երեք հազար ութ հարիւր քառասուն և երկու, և 'ի յութսուն ամին Մովսէս ետ պատերազմ ընդ Ամաղեկայ ։ Ի նմին ամին յերկրորդ ամիսն ել 'ի լեառնն և ընկալաւ զօրէնս։

Ասողոմէս իմաստասէր եբրայեցի ասէ , թէ Մովսէս սորա զգիրն Եբրայեցւոց . և աստի երեւի թէ գիր և լեզու եբրայեցւոց կրտսեր է քան զԱսորւոցն ։

Յութսուն և յերկու ամին Մովսիսի կանգնեաց զխորանն , և 'ի նմին տարւոջ բերին լրտեսքն զողկոյզն 'ի ձորոյն Բէթղահեմի . և 'ի գալ տարւոյն առաքեաց Բաղակ զԲաղաամ մոգ , անիծանել զԻսրայէլ ։ Եւ եղեալ Մովսէս հարիւր և քսան ամաց կատարեցաւ ։ Նա գրեաց հինգ գիրս . և յետ սորա կացին դատաւորք Իսրայելի , և առաջինն Յեսու՝ որդին Նաւեայ , որ ա՛ռ զգաւազանն Մովսիսի և զիշխանութիւնն՝ ութսուն և երեք ամաց . և. նա էած զԻսրայէլ յերկիրն Քանանեաց ։ Սատակեաց եւթն ազգս քանանացիս , և զերկիր նոցա ժառանգեցոյց

(1) Եւսեբիոս Կրանոս անուանէ, և զանուն դստերն՝ Ատթիս

որդւոյն Իսրայելի. և դատեաց զնոսա քսան և եւթն ամ. և կատարեցաւ հարիւր և եւթն ամաց: Եւ սմա և զԳոդոնիէլի միջոցն այլ ոք չասէ ինչ, բայց Ափրիկանոս ասէ՝ երեսուն ամ: Այս Գոդոնիէլ եկաց դատաւոր քառասուն ամ. բայց ութ ամ ծառայեցին Քուսասարթեմայ, զոր սպան Գոդոնիէլ, այն ութն սմա է համարեալ. և Յոյնք յիսուն ամ ասեն զորս դատաւորութիւնս:

Յաւուրս սորա շինեցան քաղաքքն Տիթանիոյ՝ Մալոս, Պարոս, Թէասոս, Ալկիոնէ, Մարունտաս: Եւ աստ շինեցան և 'ի Միկիլա քաղաքք: Յայսմ ժամանակի թագաւորեաց Արգիացւոցն Պոլամպոս (1), որ է սկիզբն թագաւորութեան նոցա: Ի նոյանէ էր Փիլոտեհոսն՝ բարոյախօսն անասնոց և թռչնոց: Յետ Գոդոնիէլի ծառայէ Իսրայէլ Եգղոմայ մովաբացւոյ ութևտասն ամ, զոր յարեալ (են) յամս Աւովդայ եփրեմացւոյ, որ դատեաց ութսուն ամ: Նոր շինեցաւ Ակադմոն քաղաք 'ի Կադամոսէ (2). և յութ ամին սորա թագաւորեաց Աթենայ Արքիաթոս (3): Եւ 'ի քսան

(1) Ըստ Եւսեբեայ՝ Պէղոփսոր թագաւորեայ Արգիացւոց յեւթներորդ ամի դատաւորութեան Աւովդայ (Քրոնիկ. 114):

(2) Կադամոս երեւի թէ իցէ ընթեռնլի Կադմոս. իսկ զԱկադմոն՝ անուն անծանօթ, մարթ է ուղղել և ընթեռնուլ Լակեդեմոն, քանզի և ըստ Աբուլֆարաճայ՝ առ դատաւորութեամբ Աւովդայ հիմնեցաւ Լակեդեմոն (Քրոն. ասոր. էր. 16):

(3) Ըստ Եւսեբեայ Երեքթէոս:

ամի սորա թագաւորեաց Անթուրացւոցն Լամբարիդոս՝ (1) ամս երեսուն և երկու։ Եւ սա շինեաց Բալաքսէ 'ի թագաւորէն Անթուրացւոց։ Եւ սա կատարեաց չորս դարըն, որ է չորս հազար ամ։

ՅԱդամայ մինչև 'ի Մովսէս քսան և եւթն ծնունդ է, և 'ի Մովսիսէ մինչև սա ոչ զծընունդն թուէ, այլ զանուանս դատաւորացն միայն։ Զկնի Աւովդայ ծառայեցին Յաբինայ ամս քսան։ Եւ զօրացաւ Սամեգար, որ սպան 'ի Փղշտացւոց վեց հարիւր այր մաճով արօրոյն։ Եւ եկն Սիսարա ինն հարիւր կառօք երկաթի. և զօրացաւ. Բարակ Դեբովրայիւ և յաղթեաց նմա։ Եւ Յայել կին Քաբերայ վարեաց խոփ ընդ ծամելիւն Սիսարայ և սպան զնա։ Եւ ամք դատաւորութեանն Բարակայ են քառասուն։

Ի յԱւոդայ երեքտասաներորդ ամին եկին Կադմոս և Փիւնիկոս 'ի Թեբայեցւոցն յԱսորիս, և թագաւորեցին Տիրոյ և Սայդոյ։ Եւ ասեն ոմանք՝ թէ Կադմոս արար գիր Յունաց յեգիպտացի գրոյն։

Պաղոմպիս (Պելոպս) կալաւ զթագաւորութիւն Արգիացւոցն, որ նախ Մուկեացիք(2) կոչէին մինչև յիջանելն առ Նոսա յորդւոցն

(1) Ըստ Եւսեբեայ Ղամբրիդէս։

(2) Մուկեացիք կամ ուղղագոյն ևս Միւկէացիք են բնակիչք Միկէն քաղաքի որ յԵլլադա ։

Հերակլեայ։ Յայսմ ժամանակի Իլիոն քաղաք յԻլոսէ շինեցաւ։ Եւ յայսմ ժամանակի Աքա-յիա՝ յԱքէոյ շինեցաւ։ Եւ աստ երեւեցաւ կինն Սաբիլէ, որ մեկնեաց զհարիւր իմաս-տասիրին երազսն, որ միապէս տեսին եւթն արեգակն, և էին 'ի Հռովմ տեսողքս երա-զոյն եւթն արեգականն։ Աստ Թագաւորեաց Սիդոս 'ի վերայ Աֆրիկեցւոցն։

Ի քսան և յութ ամին Բարակայ Թագաւո-րեաց Աթուրացւոցն Պանեաւոս(1), ամս քառա-սուն և հինգ։ Եւ աստ ասաց զօրհնութիւնն երգով Դեբովրա։ Զկնի Բարակայ իշխեցին Մադիանացիք Իսրայէլի ամս եւթն։ Եւ Գե-դէոն և կոտորեաց զնոսա Աստուծով զօրա-ցեալ. և դատեաց զԻսրայէլ ամս երեսուն և երեք. դիր զծառայութիւն եւթն ամին 'ի սմա ժամանակս, լինի քառասուն։ Յերրորդ ամին Գեդէոնի Թագաւորեաց Աթենաց-ւոց Իգոս(2) ամս քառասուն և ութ. և յերե-սուն և յերեք ամին Գեդէոնի Թագաւորեաց Աթուրացւոց Սուսարմոս՝ ամս ինն և տասն։ Եւ աստ Թագաւորեաց 'ի Թաբայիմ (Թեբէ) Ապողոն երաժիշտ, որ ասեն Թէ շարժէր զքա-րինսն նուագօք գեղեցկօք. և յայլ գիրս գտաք Թէ յԱթէնս Թագաւորեաց երկրորդ Կիկրո-պըս։ Գեդէոն ծնաւ որդիս եւթանասուն, և

(1) Ըստ Եւսեբեայ Պանիաս։

(2) Ըստ Եւսեբեայ և Թովմ. Արծ. Էգէոս . . . Սովորաբար

զկնի մահուանն Գեդէոնի սպան Աբիմելէք հարճորդի նորա զեւթանասուն որդիսն Գեդէոնի, և դատեաց զԻսրայէլ ամս երիս։ Եւ զկնի նորա Թովղա ամս քսան և երկու։ Ի սորա ութ ամին Թագաւորեաց Աթենացւոցն Թեսեւս՝ ամս երեսուն, և Աթուրացւոցն Ակիթրոս՝ ամս քսան և եւթն։ Ի քսան և մի ամին սորա շինեցաւ Տարսոս ՚ի Կիլիկիա ՚ի Բրիսոսէ (Պերսէոս) որդւոյ Տանայի. և սա շինեցաւ Կարքեդոն, և Իլոն առաւ։ Զկնի Թովղայ Յայիր գաղատացի՝ ամս քսան և երեք։ Ի վեցերորդ ամին սորա Թագաւորեաց Ամուկասս (1) յԵգիպտոս ամս քսան և վեց։ Ի չորեքտասան ամին սորա Թագաւորեաց Աթուրացւոցն Տուտոս ամս երեսուն և մի. Յոյնք սմա Տիթունիս ասեն. և ոմանք ասեն թէ սա էառ զԻլիոն քաղաք և աւերեաց։ Ի սորա վեշտասան ամին Թագաւորեաց Աթենացւոցն Մնեսթոս (Մենեսթէ), ամս քսան և երիս։

Զկնի Յայիրայ ծառայեցին Այլազգեաց ամս ութևտասն. և առ զդատաւորութիւնն Յեփթայի ամս վեց. քսան և չորս ամ համարին սմա։ Եւ զերաժիշտն Փիլիմոն(2) սոա ասեն, որ արար դասս երաժշտաց. և սա արար պատկեր շարժուն ատիւք։ Նա շինեցաւ Կիւրինէ քաղաք և Սուր, յառաջ քան զշինութիւն Տաճարին չորեքհարիւր քառասուն ամաւ։

(1) Ըստ Եւսեբեայ Ամենոփիս (2) Միւս Թարգմ. Փիլոն։

Ի չորրորդ ամին Յեփթայեայ թագաւորեաց 'ի վերայ Աթենացւոցն Դիմափոս(1) ամս երեսուն և երիս։ Իսկ 'ի վերայ Եգիպտացւոցն Դիւուսքուլուլոտէ (2), և այլք ընդ նմա 'ի կարգին՝ հարիւր եւթանասուն և ութ ամ։ Իսկ աստ թագաւորեցին Լատինացիքն որ կոչեցան Հռովմայեցիք. առաջին թագաւորն Անիաս՝ ամս երեք։ Զկնի Յեփթայեայ ոմանք զԵլոն ասեն դատաւոր. և Եւթանասունք զԱբդոն դնեն, որ դատեաց ամս եւթն։ Իսկ զկնի Աբդոնի Փղշտացիքն տիրեցին ամս քառասուն. Իսկ զկնի Ելոնի և Աբդոնի՝ Սամփսոն յազգէ Դանայ. սա դատեաց զԻսրայէլ ամս քսան. և յերրորդ ամի իշխանութեանն պատերազմէր ընդ Փղշտացիս։ Իսկ 'ի հինգ ամին սորա եղեւ իրքն Հռութայ։ Իսկ յերկրորդ ամին սորա թագաւորեաց Աթուրացւոցն Տուտէոս (3) ամս քառասուն։ Իսկ յինն և տասներորդ ամին Սամփսոնի մեռաւ Զեւս, և թաղեցաւ 'ի Կրիտոս՝ կեցեալ ամս ութ հարիւր ութսուն. և վասն բազմակեցութեանն Զեւս կոչեցաւ յանուն աս-

(1) Ըստ Եւսեբեայ՝ Դիմաֆոս (Դիմոֆոն) ոչ առ Յեփթայեաւ՝ այլ առ Աբդոնաւ ասէ թագաւորեալ։

(2) Դիւուսքուլուլիւէ ոչ թագաւորի՝ այլ հարստութեան է անուն, Դիոսպոլիտացւոց կոչեցեալ յԵւսեբեայ. որ եղեւ քսաներորդ հարստութիւն, և տեւեաց ամս 178։ Քրոն. էր. 124։

(3) Միւս թարգ. Տուտէմէոս։ Եւսեբիոս ունի Տէւտէոս. (Քրոն. Հտ. Բ. էր. 99)։

տեղն, որ նախ Գլոս կոչէր 'ի ծնողացն ։

Իսկ զկնի Սամփսոնի կեցին որդիքն Իսրայելի ամս երկոտասան ։ Յովհաննէս պատմագիրն գրէ, թէ Սամեգարն եղեւ զկնի Սամփսոնի՝ ամս քառասուն. և Ափրիկանոս ասէ, թէ չգոյր նոցա դատաւոր. և էր խաղաղութիւն, և ոչ նեղէին յաւուրսն յայնոսիկ ուստեք ։ Հեղի դատեաց զԻսրայէլ ամս քսան ըստ Եւթանասնիցն, և ըստ Ասորւոցն ամս քառասուն. և ամենայն ժամանակըն Հեղեայ եւթանասուն և ութ ամ։ Յերեսուն և յութերորդ ամին (կենաց իւրոց) Հեղի եղեւ իշխան, և յեւթնևտասներորդ ամի իշխանութեան նորա ծնաւ Սամուէլ. և 'ի քսան ամին ընծայեցաւ Սամուէլ 'ի խորանն։ Իսկ զկնի մահուանն Հեղեայ եղեւ Տապանակն 'ի տան Ամինադաբայ ամս քսան ։ Իսկ 'ի քառասուն և երկրորդ ամի կենացն Սամուէլի, և 'ի քսան ամի իշխանութեան նորա խնդրեցին որդիքն Իսրայելի թագաւոր ։ Իսկ աստ կատարեցաւ ժամանակ դատաւորացն, և սկըսաւ թագաւորութիւն նոցա 'ի Սաւուղայ ։

Առաջին թագաւոր Սաւուղ՝ ամս քառասուն, և յերրորդ ամի թագաւորութեան իւրոյ յաղթեաց Ամաղեկացւոցն. և 'ի տասներորդ ամի սորա ծնաւ Դաւիթ, և 'ի քսան և երրորդ ամի թագաւորութեանն Սաւուղայ օծաւ թագաւորն Դաւիթ 'ի Սամուելէ։ Իսկ

էր Սամուէլ վախճանն և հինգ ամաց և Դաւ-ւիթ երկոտասան ամաց . և ՚ի քսան և ութ ամին իւրոյ սպան զԴողիադ . և յերեսուն և մի ամին եղեւ տօն ՚ի Նաւադ Հռամայ , և մարգարէանայր ընդ մարգարէսն Սաւուղ , թէ Դաւիթ է թագաւորելոց . մարգարէու-թիւն չար տան իւրոյ : Եւ յերեսներորդ ա-մի ծննդեանն Դաւթի մեռաւ Սամուէլ մար-գարէ : Եւ զկնի հինգ ամի մահուան Սամու-էլի սպանաւ Սաւուղ և Յովնաթան որդի իւր , թագաւորեալ ամս քառասուն :

Եւ Դաւիթ թագաւորեաց ՚ի Քեբրոն ամս եւթն : Ապա շինեաց զՍիոն , և յԵրուսա-ղէմ թագաւորեաց երեսուն և երիս ամս . ՚ի տասներորդ ամի թագաւորութեանն իւրոյ եհան զՏապանակն , և եհար Նմա վրան : Եւ ՚ի բերելն զՏապանակն, շնորհն Աստուծոյ որ ՚ի Նմա՝ գթացաւ յԱդամ , և անկաւ ՚ի վերայ գերեզմանին Ադամայ . և մեռաւ Ո-զիա , զի արգելուլ կամէր ՚ի սիրելոյն իւրմէ : Ասէ զայս Յակովբ ուռհայեցին :

Նաթան մարգարէն էր ՚ի Դաբաւոնայ , որ խնամէրն զԴաւիթ , և ՚ի մեղանչելն Դաւ-թի ՚ի Բերսաբէ (1) , նախ իմացաւ Նաթան մարգարէ և եկն ապրեցուցանել զԴաւիթ , և ՚ի գալն հանդիպեցաւ մեռեալ մի , և մինչ թաղեցին զնա և եկն առ Դաւիթ՝ գործե-

(1) Յօրինակին ՚ի Գէբէոնայ . . . ՚ի Բեղաքէլէ .

ցաւ շնութիւնն, և դարձաւ տրտմութեամբ. և 'ի սպանանելն զՈւրիա, ապա եկն յանդիմանել զնա յերկուց չարացն վերայ, և ետ նմա նշան զմահ առաջին որդւոյն Բերսաբէի. և երկեաւ Դաւիթ յԱստուծոյ և ապաշաւեաց: Յերեսուն և հինգ ամի թագաւորութեան իւրոյ Դաւիթ ընտրեաց 'ի Ղեւտացւոցն արս հարիւր ութսուն և ութ, և արար զնոսա դասս քսան և չորս: Երկոտասան այր 'ի դաս մի, սպասաւորս Տապանակին և Սաղմոսացն: Եւ ետ պատերազմ ընդ շուրջակայ ազգացն, և յաղթեաց ամենեցուն. և եկաց ամս եւթանասուն, և թագաւորեաց ամս քառասուն:

Եւ թագաւորեաց Սողոմոն ամաց երկոտասանից, և քառասուն ամ թագաւորեաց. և եհան նա զԱբիաթար քահանայ, և ըսպան զԱդոնիա և զՅովաբ: Եւ 'ի չորրորդ ամի թագաւորութեանն իւրոյ սկսաւ շինել զտաճարն, և կատարեաց զնա յութ ամ, 'ի լեառն Ամուրհացւոց, որ է այժմ Երուսաղէմ: Եւ գրեալ է 'ի գիրս Թագաւորացն, թէ յետ չորեքհարիւր և ութսուն ամի ելանելոյն յԵգիպտոսէ՝ շինեցաւ տաճարն. ըստ նոյն ասէ և Պօղոս, թէ «Ետ նոցա դատաւոր չորեքհարիւր և յիսուն ամ, մինչեւ 'ի Սամուէլ մարգարէ.» և Թողլին 'ի ժամանակ ծառայութեան Այլազգացն ամս երեսուն: Յե-

րեսուն և 'ի չորս ամին իւրոյ Սաղոմոնի չէ-
նեաց տուն կռոց Քամովսայ մովաբացւոց
և Մեղքոմայ ամոնացւոց, ուր կայր տունն
Աֆրոդիտեայ աստուածուհւոյն Յունաց.
Մովաբացւոցն տաճարն յեւթն ամն չինե-
ցաւ, և Ամոնացւոյն՝ յերեքտասան. քար-
ձրութիւն նոցա երեսուն կանգուն և լայ-
նութիւնն յիսուն. և արար նոցա զարդ ու-
կւոյ յոլով, և ծով պղնձի և եզինս: Եւ քա-
կեաց (Սաղոմոն) զԱնտիոք և չինեաց զԹե-
մուր մերձ Համայ, և զԱսոր և զՀետուր և
զՄակդուր և զԳազարէ և զԲեդուր՝ ըզ-
ներքին և զվերին, և զԲեղէովթ, եւթն
քաղաքս: Եւ յառաջին ամի թագաւորու-
թեան իւրոյ եղեւ նմա որդի Ռոբովամ 'ի
Նամայէ ամոնացւոյն: Եւ 'ի Դամասկոս
թագաւորեաց Հադադ, ոսոխ Սաղոմո-
նի: Եւ ամենայն ժամանակն Սաղոմոնի յի-
սուն և երկու ամ: Եպիփան ասէ, թէ Աքիա
մարգարէացաւ Սաղոմոնի, թէ հանդեր-
ձեալ ես բարկացուցանել զԱստուած. նոյն-
պէս և զՌոբովամ յանդիմանեաց՝ թէ նեն-
գութեամբ գնաս ընդ Աստուծոյ: Եւ սա (Ա-
քիա) ետես տեսիլ, որ լուծք եզանց կախէին
զԻսրայէլ և զքահանայսն, և ասաց ցՍաղո-
մոն, թէ կանայք հեռացուցանեն զքեզ 'ի
Տեառնէ: Եւ սա յանդիմանեաց զՌոբովամ
զորդին Նաբատեայ վասն երնջոցն և մեռաւ,

և թաղեցաւ 'ի Սելով առաջի կաղնոյն [1]։

Եւ զկնի մահուանն Սաղոմոնի բաժանեցան երկոտասան ցեղքն, և եղեն ընդ Րոբովամայ Նաբատեան, որ թագաւորեաց ամս քսան և երկու. և ընդ Ռոբովամայ մնացին երկու ազգն, և կոչեցան Յուդա և Իսրայէլ։ Ռոբովամ թագաւորեաց յԵրուսաղէմ ամս եւթնևտասն, և եկաց յիսուն և ութ ամ։ Նա էր մարգարէն Սամեա, որ երկրորդ անգամ յանդիմանեաց զՌոբովամ 'ի վերայ սեղանոյն. և սա ասաց Յուդայի, թէ «Մի կռուիք ընդ Իսրայէլի, զի 'ի Տեառնէ եղեւ բաժանումնդ։» Եւ սա պատառեաց զհանդերձն յերկոտասան մասն, և զտասն ետ Րոբովամայ Նաբատեան և զերկուսն ետ Ռոբովամու որդւոյն Սաղոմոնի։ Եպիփան ասէ, թէ Իուդ էր անուն մարգարէին, և էր յերկրէն Սամարացւոց, և սպան զնա առիւծն, զի խոտորեցաւ 'ի բանէն Տեառն։ Զկնի Ռոբովամայ թագաւորեաց Աբիա որդի նորա ամս երիս. և ել 'ի վերայ նորա Րոբովամ ութսուն հազարաւ, և Աբիա ընդդէմ ել նմա քառասուն հազարաւ. և սպան յԻսրայէլէ յիսուն հազար այր։ Եւ առ Աբիա կանայս չորեքտասան, և եղեն նմա

(1) Աստանօր միւս թարգմանութիւնն 'ի մէջ բերէ հարցմունս ինչ դշխոյին Սաբայ ընդ Սաղոմոնի 'ի վերայ այլ և այլ նիւթոց, որ գտանին առանձինն և 'ի գրչագիր մատեանս։

որդիք քսան և չորս և դստերք վեշտասան։

Զկնի Աբիայ Թագաւորեաց որդի նորա Ասա ամս քառասուն և մի, և եկեաց ամս վաթսուն։ Սա փորեաց ջրհոր մերձ ՚ի Մա-սեփա յահէ Թագաւորին Իսրայելի։ Սա ՚ի հնգետասան ամին այրեաց զգտեալ կուռսն և եբարձ զպոռնկութիւն յերկրէ, և զմայր իւր եհան ՚ի տիկնութենէ զի պաշտէր զԱս-տարտն, և այրեաց զկուռսն մօր իւրոյ։ Ի քսան և ինն ամին սորա Թագաւորեաց Ելա ՚ի վերայ Իսրայելի երկուս ամս, և Զամբրի ծառայն իւր սպան զնա և Թագաւորեաց եւ-թըն օր[1]։ Եւ բաժանեցաւ Իսրայէլ, ոմանք երթային զհետ Ամրեայ, և ոմանք զկնի Թա-պնեայ. և յաղթեալ Ամրեայ, Թագաւո-րեաց երկոտասան ամ։ Եւ սա գնեաց ըզ-լեառն Սամարիա ՚ի Սամարայ տեառնէ նորա, և շինեաց անդ քաղաք և անուանեաց Սա-մարիա, որ յետոյ կոչեցաւ Սեբաստիա, որ այժմ ասի Սամլուղ։ Իսկ Թապնի տեսեալ թէ յաջողեցաւ Ամրեայ, այրեաց զարքու-նիսն, և ինքն ընդ նմին այրեցաւ։

Ի քառասուն և մի ամին Ասայի Թագա-ւորեաց յԵգիպտոս Փարքիրիս[2] ամս չորս։ Եւ զկնի Ասայի Թագաւորեաց Յովսափատ

(1) Միւս Թարգմ. յաւելու աստ. «Եւ յարեան երկու արք՝ Ամրի և Թապնի Թագաւորել։»

(2) Ըստ Եւսեբեայ Նեփերքերէս.

ամս քսան և ինն։ Յերրորդումն ամի սորա Թագաւորեաց Իսրայելի Աքաաբ որդին Ամ-րեայ՝ ամս քսան և երկու։ Սա էառ կին զԵ-զաբէլ դուստր Իթէբլի[1] (Եթբաաղ) Թագա-ւորին Արոյ և Սեդայի (Սիդոն)։ Եւ սա շի-նեաց զԵրիքով զնզովեալն Յեսուայ որդւոյ Նաւեայ՝ Աբիրոնաւ անդրանկաւ իւրով և Զերծելաւ կրսերաւ. Աբիրոնաւ հիմն եարկ նմա, և Զերծելաւ կրսերաւ կախեաց ըզ-դուռնն՝ ըստ բանին Յեսուայ։ Եւ այլք զանազան ասեն շինիչ հրամանաւ Աքաաբու, և զորդիսն սմա ասեն՝ Աբիրոն և Զերծել։

Յերկրորդ ամին Յովսափատու Թագա-ւորեաց ՚ի վերայ Լատինացւոցն Կարպան-դոս ամս երեքտասան։ Եւ ՚ի չորրորդ ամին Յովսափատու Թագաւորեաց ՚ի վերայ Ա-Թուրացւոցն Սեբրանոտիոս[2] ամս յիսուն. և յերեքտասան ամին Նորա Թագաւորեաց յԵգիպտոս Իսկոզորոս ամս վեց։ Եւ ՚ի չոր-րորդ ամին Նորա Թագաւորեաց Աթենաց-ւոցն Ամկապոս[3] երեսուն ամ։ Յիննևտասա-ներորդ ամի Նորա Թագաւորեաց յԵգիպ-

(1) Վարդան դնէ ՔԲԻլ։ Պատմ. էր. 36։

(2) Ըստ Սամուէլի Ոփրապանէս, որպէս և Խոնթորեան կո-չէ Ոստոնէր։

(3) Եւսեբիոս և Սամուէլ ուղղագոյնս գրեն՝ Մեգակլէս, որ էր քսաներորդ երրորդ Թագաւոր Աթենացւոցն հարբու-թեան՝ սկսեալ յԻնաքոսէ։

տոս Բասանկըքոս[1] ամս ինն ։ Եւ ՚ի քսան և երեք ամի նորա Թագաւորեաց ՚ի վերայ Լատինացւոցն Ագրիպաս՝ ամս քառասուն և մի։ Եւ ՚ի քսան և ինն ամի սորա Թագաւորեաց ՚ի վերայ Իսրայէլի Ոքոզիա ամ մի ։ Եւ ըզկնի նորա Յովրամ եղբայր նորա ամս երկոտասան . և ՚ի նոյն ամի Թագաւորեաց ՚ի վերայ Յուդայի Յովրամ ամս ութ . և զհետ նորա Ոքոզիա ամ մի։ Յովրամ արքայ Յուդայ որդի Յովսափատու առ զԳոդողիա քոյր Աքաաբու իւր ՚ի կնութիւն, և սպան զեղբարսն իւր . և եհար զնա Տէր բարկութեամբ և մեռաւ, և առ զԹագաւորութիւնն Ոքոզիա։ Եւ առաքեաց Եղիսէէ օծանել զՅէու որդի Ամղի[2] ՚ի վերայ Իսրայէլի, որ սպան զՅովրամ զորդին Աքաաբու, և զՈքոզիա արքայ Յուդայ . և Եզաբէլ հնգետասան ամաւ յետոյ սպանաւ քան զԱքաաբ զայրն իւր ։

Եւ զկնի մահուանն Ոքոզիայ արքայի Յուդայ, Գոդողիա մայր նորա կորոյս զամենայն զաւակ Թագաւորութեանն . բայց մանուկ մի պահեցաւ առ Յովիդեայ քահանայի . և Թագաւորեաց ինքն Գոդողիա վեց ամ։ Եւ Յէու Թագաւորեաց ՚ի վերայ Իսրայէլի քսան և ութ ամ։ Եւ զտաճարն Բահաղու որ կոչի յուղ, այրեաց համդերձ

(1) Ըստ Եւսեբեայ փոխնակէս ։
(2) Յօրինակին Ամշէ ։

պաշտօնէիւքն ։ Քահանայապետն Յովիդեա սպան զԳողոզիա և Թագաւորեցոյց զՅովաս վեցամեայ 'ի վերայ Յուդայ, որ Թագաւորեաց քառասուն ամ ։

Յերրորդ ամին Յովասայ Թագաւորեաց Գիոգենիս(1) 'ի վերայ Աթենացւոցն ամս քսան և ութ ։ Եւ 'ի տասներորդ ամին Թագաւորեաց Աթուրացւոցն Ակրագանիս քսան և երկուս ամս ։ Եւ 'ի քսան և երկրորդ ամին Յովասայ Թագաւորեաց Եգիպտոսի Եմնուքոս(2) ամս քսան և մի ։ Եւ 'ի քսան և երրորդ (ամին) Թագաւորեաց 'ի վերայ Լատինացւոցն Ռոմեղոս(3), ամս ինն և տասն ։ Այս Ռոմեղոս յոյժ ամբարտաւանեալ 'ի վարս իւր՝ երկնառաք հրով այրեցաւ արքունեօք իւրովք։ Ի յերեսուն և եւթներորդ ամին Յովասայ մեռաւ Եղիսէէ, զկնի յիսուն ամի համբարձմանն Եղիայի ։ Ի քսան և եւթներորդ ամին Յովասայ Թագաւորեաց 'ի վերայ Իսրայելի Յովաքազ՝ ամս եւթնևտասն ։ Եւ յերեսներորդ առաջներորդ ամին Յովասայ եղեւ դատաւոր Ա-

(1) Եւսեբիոս կոչէ Դիոգնէտոս, որում տայ 25 ամս. իսկ Սամուէլ Դիոգնիտէս կոչէ, և համաձայնի Միխայելի՝ տալով 28 ամս ։

(2) Եւսեբիոս զսա Սեսոնքոսիս անուանէ, և սա է լինել առաջին Թագաւոր ԻԲ. հարստութեան Բուբաստացւոց ։

(3) Եւսեբիոս այլափոխեալ ունի զանունս, զոր կոչէ Արեմուղոս Սիլվիոս ։

*Թենացւոցն Պարակլիս*[1] *ամս ինն և տասն ։ Յովաս զկնի մահուանն Յովիդեայ 'ի բաց եկաց 'ի Տեառնէ. և սպան զԶաքարիա որդի Յովիդեայ 'ի տաճարին, և ինքն սպանաւ 'ի ծառայից իւրոց ։*

*Եւ թագաւորեաց որդի նորա Ամասիա ամս քսան և ինն ։ Սա յաղթեաց Եդովմայեցւոցն, և բերեալ զաստուածս նոցա պաշտէր. սա եկաց ամս յիսուն և չորս ։ Ի սորա տասներորդ ամին թագաւորեաց Իսրայէլի Յովաս ամս վեշտասան. և 'ի վերայ Լատինացւոցն թագաւորեաց Աւենտինոս*[2], *ամս երեսուն և եւթն ։ Եւ յերրորդ ամին Ամասիայ թագաւորեաց Եգիպտոսի Եսթրան՝ ամս եւթն և տասն ։ Եւ աստ եղեւ. դատաւոր Աթենացւոցն Արիփոն*[3] *ամս քսան ։ Իսկ յեւթն և տասներորդ ամին Ամասիայ թագաւորեաց Աթուրացւոցն Թոնոս Կոնկողերոս*[4], *որ կոչի յունարէն Սարդանապալոս, ամըս քսան ։ Ի սորա ժամանակին գնաց Յու-*

(1) Այն է փեռէկլըս կամ փարակլըս ըստ Եւսեբեայ և Սամուէլի ։

(2) Եւսեբի փոքր մի ուղղագրէ զանունս կոչելով Աւէնդինոս փոխանակ Աւէնդինոսի ։ Նոյնպէս ղԵռմիլոսն կոչէ Ռոմուլոս որոյ ուղիղն է Ռոմոսն ։

(3) Ատտանօր օրինակս մեր շփոթեալ ունէր զկարգ բանիցս. զոր ուղղեցաք ըստ Եւսեբեայ ։ Սա ղԱրիփոն ուղղագոյն եւս գրէ Արիփրոն ։

(4) Օրինակս մեր, որպէս և միւս թարգմ. գրեն Թո-

նան քարոզել ՚ի Նինուէի։ Սա (Սարդանաբա-ղոս) զղջացաւ և դարձաւ առ Տէր ապաշխարութեամբ. և զկնի զղջմանն եղեւ նմա պատերազմ ընդ Վարբակէս(1) մարացին, որ են Մարք, և տեսեալ թէ յաղթի ՚ի Մարէն, այրեաց զանձն։ Ամք թագաւորութեան Աթուրացւոց բովանդակն լինի հազար հարիւր իննսուն և վեց, որ եղեւ զկնի խափանելոյ թագաւորութեանն Նաբեղացւոց։ Իսկ յառաջին ամէն Վաղոսի (Բելոս) հօրն Նինոսի՝ լինին ամք հազար երեքհարիւր։ Իսկ Վարբակէս մադացին օգնութեամբն Հայոց եբարձ զթագաւորութիւնն Աթուրացւոց և փոխեաց ՚ի Մարս(2)։ Զկնի մահուանն նորա եկաց թագաւոր ՚ի Նինուէ յազգէ քաղդէացի Փուլ անուն նորա Իփուա(3). և ՚ի սմանէ սերեցան Թագղաթփաղասար, Սաղմանասար, Սենեքերիմ, որ յիշէ զնոսա աստուածային Գիրք։ Իսկ սոքա իշխեցին Կիլիկեցւոց և Փիլիպեցւոց. և ՚ի սոցանէ են Նաքոնոս և Նաքուբողոս և Նաբուպալասար և Նաբուգոդոնո-

նախնեաց կոչէրս, կամ Թոնոսխոն կոչէրս։

(1) Երկոքին Թարգմանութիւնք այլակերպեալ ունին զանունն՝ գրելով Արտոյ ՆԷ կամ Արբակէս. և Արբակէս։

(2) «Վարբակէս մար քակեալ զթագաւորութիւն Ասորեստանեայց՝ ՚ի Մարս փոխադրեաց։» (Եւս. Քրոն. Հտ. Բ. Եր. 166)։

(3) Արմնութիւն համարի Փուլ կամ Փուա անուանս "Փուլայ-ան փեշտաւան. ՚ի սորա փեշտաւան ամին եղաւ առաջին Բ-ղանկախաթն." (Սամուէլ. ՚Ն Գրաբէր)։

սուր. և թուին ամք սոցա ՚ի Փուայէ մինչև Աղէքսանդր մակեդոնացին չորեքհարիւր քսան և չորս ամ։ Եւ զկնի մահուանն Աղէքսանդրի թագաւորեցին Սելևկոս, Անտիոքոս, Կիլիքոս՝ որ զԿիլիկիա շինեաց. Սուրոս՝ որ զՍուրիա շինեաց, յորմէ Ասորիք կոչեցան, որ մինչև ցնա Բաղդեացիք կոչէին. և Սելևկոս զՍելևկիա շինեաց. Անտիոքոս զԱնտիոք շինեաց զկնի աւերմանն Սաղաւմոնի։ Նոյնպէս և զՈւռհա զշինեալն ՚ի Նեբրովթայ և զքակեալն ՚ի Սենեքերիմայ՝ Սելևկոս շինեաց հրամանաւ Աղէքսանդրի։ Եւ այս Սելևկոս բնակեցոյց զմարդկան բազմութիւն ՚ի Տարսոն Կիլիկեցւոց, զի վասն վատախառնութե՟ տեղւոյն չբնակէին անդ զառաջինն։

Յութևտասներորդ ամին Ամասիայ թագաւորին Յուդայ թագաւորեաց ՚ի վերայ Իսրայէլի Յերոբովամ ամս քառասուն. և Եգիպտոս թագաւորեաց Տուլօթիս (1) ամս երեքտասան։ Եւ կռուեցաւ Ամասիա ընդ Յովասա արքային Իսրայէլի, և հարեալ մեռաւ ՚ի նմանէ։ Եւ եկեալ Երուսաղէմ Իսրայելացիքն քակեցին ՚ի պարսպէն չորեքհարիւր գիրկ, և առին ոսկի և արծաթ որ կայր ՚ի տան Տեառն և ՚ի տան թագաւորին, և դարձան ՚ի Սամարիա. և Ամասիա բերեալ Երուսաղէմ՝ թաղեցաւ։ Եւ թագաւորեաց

(1) Եւսեբիոս Տոյեդոյս կոչէ։

Նզարիա որդի նորա ամս յիսուն և երկու, և եկաց ամս վաթսուն և ութ՝ և մեռաւ։

Յառաջին ամին Նզարիայ, որ է Ոզիա, եկաց դատաւոր Նթենացւոցն Թէասպիոս (1) ամս քսան և եւթն։ Եւ յերկրորդ ամին Ոզիայ թագաւորեաց Եգիպտոսի Ոտասիս (2), ամս քսան և հինգ։ Եւ 'ի տասն ամին Ոզիայ թագաւորեաց Լատինացւոցն Փրիկոս ամս քսան և երիս։ Եւ 'ի քսան և եւթն ամին Ոզիայ թագաւորեաց յԵգիպտոս Ոկսրաթոն(3) ամս ինն. զսա անուանեցին Եգիպտացիքն Երակլէս։ Եւ 'ի քսան և ութ ամին Ոզիայ եկաց դատաւոր Նթենացւոցն Ագմիտոր(4) ամս քսան։ Եւ 'ի քսան և ինն ամին Ոզիայ թագաւորի Յուդայ թագաւորեաց 'ի վերայ Իսրայէլի Զաքարիա ամս վեց և ամիս չորս։ Եւ զկնի Զաքարիայ թագաւորեաց Իսրայէլի Սելլում ամիս մի։ Եւ զկնի նորա թագաւորեաց Մանայեմ ամս տասն։ Ի քըսան և չորրորդ ամին իւրոյ, Ոզիա համարձակեալ արկանել խունկ 'ի Տաճարին, և եղեւ բորոտեալ ամենայն մարմնովն. և ար-

(1) Թէսպիէոս ըստ Եւսեբեայ, որ էր, ասէ, որդի Արիփրոնայ։

(2) Միւս թարգմ. ունի Իոխս. իսկ Եւսեբի կոչէ Պետուբաստիս, որ էր 'ի քսաներորդ երրորդ հարստութենէ։

(3) Ոսորգոն ըստ Եւսեբեայ։ Միւս թարգմ. ոչ յիշատակէ զանուն սորա։

(4) Ագամեստոր ըստ Եւսեբեայ։

դելաւ մարգարէութիւնն Եսայեայ զկնի քսան և չորս ամի մարգարէանալոյն իւրոյ, և լռեաց քսան և ութ ամ, մինչեւ մեռաւ Ոզիա, և յետոյ այլ մարգարէացաւ վաթսուն և մի ամ։ Եւ յերեսներորդ երրորդ ամին Ոզիայ թագաւորեաց Լատինացւոցն Ամուլոս(1) ամս քառասուն և երիս։ Եւ յերեսներորդ չորրորդ ամին Ոզիայ եղ Փուա արքայ Բաբելացւոց ՚ի վերայ Սամարիայ, և առեալ ՚ի Մանայեմէ հազար քանքարս ոսկւոյ՝ և դարձաւ։ Յերեսներորդ վեցերորդ ամին Ոզիայ թագաւորեաց Եգիպտոսի Բասմոս(2) ամս տասն։ Եւ ՚ի քառասուն ամին Ոզիայ թագաւորի Յուդայ թագաւորեաց ՚ի վերայ Իսրայելի Փակէէ ամս տասն։ Եւ ՚ի քառասուն և մի ամին Ոզիայ թագաւորեաց Մակեդոնացւոցն Կոնոս(3) երկրորդ թագաւոր՝ ամս երկոտասան։ Եւ ՚ի վերայ Աթուրացւոցն թագաւորեաց Թակղաթփաղասար ամս երեսուն և հինգ։ Եւ ՚ի քառասուն և վեց ամին Ոզիայ թագաւորեաց յԵգիպտոս Կուքրոս(4) ամս քառասուն և չորս։ Եւ ՚ի քառասուն և ութ ամին Ոզիայ թագաւորեաց առաջին թագաւորութիւն Լիւդացւոց։

(1) Ամուլիոս ըստ Եւսեբեայ։ (2) Փամմոս ըստ Եւսեբեայ։
(3) Կոինոս ըստ Եւսեբեայ. ուղղագոյն եւս՝ Կոյենոս։
(4) Բոկքորոս ըստ Եւսեբեայ, առ որով, ասէ, գառն խօսեցաւ։ Հտ. Բ. Եր. 170.

Եւ եւ Թակղաթփաղսար թագաւորն Ա-թուրացւոց և գերեաց զՅուդա և զԻս-րայելի մեծ մասնն. և այս եղեւ սկիզբն գե-րութեանն Իսրայելի ։ Եւ գերեցան իշխանք մեծամեծք, Ինաբէլ[1] Բեթմեքա, Ենոք, Կլանծ, Եսուր [2], Գեղադ, Գաւդի, եւ զերկիրն Նեփթաղիմայ ։ Եւ զկնի մահուանն Ոզիայ երեւեցան փառքն Տեառն ՚ի տաճարին։ Յետ մահուանն Ոզիայ թագաւորեաց Յովաթամ որդի նորա ամս վեշտասան ։ Սա յաղթեաց Ամմոնացւոց և արար ընդ հարկաւ։ Յերրորդ-ամին Յովաթամայ թագաւորեաց երրորդ թագաւոր Մակեդոնացւոցն Տունիոս[3] ա-մըս երեսուն և ութ. սոքա են ազգակից Հա-յոց ։ Զկնի Յովնադանայ թագաւորեաց Ա-քազ որդի նորա ամս վեշտասան, որ արար չար առաջի Տեառն ։

Փակէէ թագաւորն Իսրայելի առեալ ըզ-Հռասոն թագաւորն Դամասկեայ, և եր-թեալ ՚ի վերայ Յուդայ՝ կոտորեաց ՚ի նո-ցանէ երկոտասան բիւր. և Աքազ առա-քեաց վարձեաց զԹակղաթփաղսար, որ եկն

(1) Յօրինակիս անջատ ունէր Ին, Աբէլ, վասն որոյ և ՚ի տպեալն մերս թարգմանութեան սխալմամբ դնէ՝ Էին Աբէլ։

(2) Ոմանք կանծէոր, թերեւս տեղղագոյն եւս իցէ.

(3) Զսա Եւսեբիոս Տիւրիմմոս կոչէ. և տայ նմա երեսուն և երկուս ամս. իսկ Սամուէլ Տիւրիմ կոչէ, և ըստ Միխայե-լի որոշէ նմա ամս երեսուն և ութ.

սպան զՌասոն, և գերեաց զԴամասկացիս և գնաց: Յերկրորդում ամին Աքազու ապստամբեալ Ովսէ 'ի Փակէէ, սպան զնա, և ինքն Թագաւորեաց 'ի վերայ Իսրայէլի ամս ինն: Յութերորդ ամին Աքազու Թագաւորեաց Աթուրացւոցն Սաղմանասար ամս չորեքտասան, և եկն 'ի վերայ Իսրայէլի, և արար ընդ հարկաւ: Եւ յետ ժամանակի ապստամբեալ Ովսիայ, առաքեաց առ Աբդիմելէք քուշացին, որ է Հաբաշի, և կայր նա յԵգիպտոս, գալ օգնել նմա: Եւ յեւթն ամին Ովսիայ, և յութ ամին Աքազու ել Սաղմանասար 'ի վերայ Սամարիայ և պաշարեաց զնա երիս ամս, և առ զՍամարիա և գերեաց զտասն ցեղսն և տարաւ 'ի Բաբելոն: Ամք Թագաւորացն Իսրայէլի երկերիւր յիսուն՝ և բարձաւ. յԱդամայ լինին ամք միահամուռ՝ չորեքհազար երեքհարիւր երեսուն:

Աքազ իջոյց յերկոտասան եզանցն զծովըն պղնձի՝ զարարեալն 'ի Սողոմոնէ արքայէ: Եւ զկնի մահուանն Աքազու Թագաւորեաց Եզեկիա յԵրուսաղէմ ամս քսան և ինն, և եկեաց յիսուն և չորս ամ. և Սամարիա մնաց 'ի հրամանս Աթուրացւոցն: Յութերորդ ամին Եզեկիայ առաքեաց Սաղմանասար պահանորդս Սամարեայ կողմանցն. Եւ մինչեւ ցայս վայր Լատինացիք կոչէին՝ Թագաւորք հնգետասան, և յեւթն ամին Ա-

քաղու Թագաւորեաց Ռոմելոս, և իւր ա-նուամբն շինեաց զՀռոմ քաղաք. ոմանք ա-սեն յանուն դստերն շինեաց՝ որում անուն էր Հռոմէ։ Եւ յայնմ հետէ կոչեցան Հռո-մայեցիք.

Յայսմ ժամանակի շինեցաւ Ռոդոս կղզի, որոյ պտուղք ծառոցն մաղձաքէ են։ Նա շինեցաւ Սալինոս քաղաք ՚ի Սիկիլիա, և ՚ի Պոնտոս շինեցաւ Տրափոր[1] քաղաք, ՚ի Նիւ-Թանիա Կիլիկոն շինեցաւ, և յԻտալիա Կա-լոնոն (Կոլոնիա) և Լուկա (Լուկանիա) շի-նեցան։ Նա կանգնեցան Թագաւորք Լա-կեդեմոնացւոցն, առաջին Աքիոս[2], և այլք որք Թագաւորեցին ամս երեքհարիւր քառա-սուն։ Եւ աստ (՚ի Հռոմ) շինեցան տաճարք քսան և չորս, ատենատեղիք երկու, փողոցք

(1) Անուանք քաղաքացս այլափոխեալ երեւին. Եւսե-բիոս ասէ շինեալ ՚ի Սիկիլիա Ագեղա քաղաք յամի Աբրա-համու 1326. և Փասելիս ՚ի Պամփիլիա. (Քրոն. Եր. 180). Իսկ Աբուլֆարաճ ասէ՝ շինեցաւ քաղաք ՚ի Կիլիկիա Սամինոս անուն։

(2) Աքիոս, կամ ըստ այլոց օրինակաց Աւիոս, է յայտնի սը-խալ ընդօրինակողաց. փոխանակ գրելոյ Եւրոսթէոս. Սամու-էլ անեցի զշարս Թագաւորացն Լակեդեմոնացւոց ՚ի մէջ բե-րէ յիւր Քրոնիկոնին, այսպէս. «Ա. Եւրոսթեւս՝ ամս 42. Բ. Ագիս ամ մի. Գ. Եքեստրատոս՝ ամս 35. Դ. Ղաբոտ-ոս՝ ամս 37. Ե. Դորիսթոլաոս՝ ամս 29. Զ. Ագեսիղա-ւոս՝ ամս 44. Է. Արքեղաւոս՝ ամս 60. Ը. Տելեկղոս՝ ամս 40. Թ. Ալքամենէս՝ ամս 37. Եւ աստուեցան յամս 327.» Տես և յԵւսեբիոս, Հտ. Ա. Եր. 319.

երեքհարիւր քսան և չորք ։ Սկուռք ոսկեղէն ութսուն, և պատկերք վաթսուն և չորք՝ փղոսկրեայք, և տունք երեւելիք քառասուն և վեց հազար վեց հարիւր և երեք. և իշխանաց կայք հազար եւթն հարիւր իննըսուն և հինգ, և կանա՝ (ագուգայք) որ ածէր ջուր ՚ի քաղաքն՝ հազար երեք հարիւր յիսուն և. երկու ։ Խաբազք (1) հացեփեացք երկու հազար եւթանասուն և չորս. տլամերք (տլմմունք) պղնձիք՝ (2) երեք հազար եւթնհարիւր ութսուն և հինգ ։ Եւ յետ բազում ժամանակաց Տիտոս և Վեսպիանոս բերեն զդրունսն Երուսաղէմի և սիւնս ՚ի Տաճարէն և այլ զարդերս, և. յաւելլին ՚ի զարդըն Հռոմայ ։ Եւ արտաքոյ քաղաքին շուրջն գայր քառասուն միլ, և մէջ քաղաքին ՚ի չորից կողմանց՝ երկոտասան միլ. և է միլն երկոտասան ոտն դարձի եզանց հերկողաց ։ Եւ թիւ մարդկանն երկոտասան բիւր. և երկրորդ անգամ թուեալ՝ գտաւ վեշտասան բիւր. և երրորդ անգամ թուեալ՝ 3) քսան և

(1) Խաբազ خباز բառ արաբերէն, նշանակէ հացագործ։

(2) Էին անօթք պղնձիք գրեալք նկարօք և արտաքոյ գըրովք. որ մարդիկ առ ՚ի պահպանութիւն անձանց, և ՚ի բժշկութիւն ՚ի վար առնուին ։ Գտանին և առ մեզ այսօրինակ անօթք պղնձիք արաբացի գրովք ։

(3) Յօրինակիս մեր պակասէր տող մի ։ զոր յաւելաք ՚ի միւս թարգմանութենէն ։

ութն բիւր, և չորրորդ թուեալ՝ քառասուն և վեց բիւր. և հինգերորդ թուեալ՝ չորեքհարիւր վեշտասան. և 'ի թագաւորութեան Կղոդեայ՝ վեց հարիւր իննսուն և չորս բիւր։ Եւ 'ի թագաւորութեանն Օգոստեայ և Երքեղայոսի որդւոյ Հերովդէի եղեւ 'ի Հռոմ սով մեծ, և վաճառէին զմոդ մի ցորեան 'ի քսան և ութն դահեկան և կէս։ Եւ 'ի թագաւորութեանն Տիտոսի եղեւ 'ի Նմա մահ տարաժամ, որ մեռանէր յաւուրն բիւր մի.

Յայսմ ժամանակի զՍամարացիսն ուտէին առիւծք։ Եւ առաքեաց Սաղմանասար 'ի գերելոցն քահանայ մի Եզրաս անուն, և ուսոյց նոցա զօրէնս, և գրեաց նոցա ասորի գրով զհինգ գիրքն Մովսիսի։ Վասն այսորիկ Սամարացիքն այլ գիրս ոչ ընդունին յօրինացն և 'ի մարգարէիցն՝ բաց յԱրարածոցն։

Ի վեց ամին Եզեկիայ թագաւորեաց Աթուրացւոցն Սենեքերիմ. և եկեալ զօրքն նորա յԵրուսաղէմ, կոտորեցան հարիւր ութսուն և հինգ հազար. Սենեքերիմ զկնի ինն ամի թագաւորութեան իւրոյ սպանաւ յորդւոցն, որք գնացին 'ի Հայս. և թագաւորեաց Ասորդան որդի նորա երիս ամս։ Եւ յԵգիպտոս թագաւորեաց Սաւիքոն (1) հնդկացի ամս երկոտասան։ Եւ 'ի վերայ

(1) Ըստ Եւսեբեայ՝ Սաբակոն կամ Աքաղոն եթէովպացի։

Մակեդոնացւոցն թագաւորեաց Փրիտիկոս(1) ամս յիսուն և մի ։ Յութևտասն ամին Եզեկիայ թագաւորեաց Աթուրացւոցն Նել-դան, որ է Նաղոտան ։ Սա առաքեաց պատարագ Եզեկիայ յԵրուսաղէմ վասն դարձի արեգականն, գիտացեալ թէ յԱստուծոյն խաքայելի եղև նշան կենդանութեան Եզեկիայ։ Եւ սա քարոզեաց զանուն Տեառն Աստուծոյ ընդ ամենայն երկիրն Բաբելացւոց և Ասորւոց․ և սա շինեաց պատկեր Ճշմարտին Աստուծոյ և ետ երկրպագել նմա․ և դարձոյց զամենայն աշխարհն իւր 'ի պաշտելոյ զարեգակն։

Ի քսան ամին Եզեկիայ թագաւորեաց Մադացւոց. Կուրտակոս (2) ամս երեքտասան։ Ի քսան և ինն ամին Եզեկիայ թագաւորեաց Եգիպտոս Տորքոս Հնդկացի (3) ամըս քսան ։ Զկնի Եզեկիայ թագաւորեաց Մանասէ ամս յիսուն և հինգ ։ Եւ եկեաց վաթսուն և եւթն ամ ։ Յերրորդ ամի իւրոյ թագաւորութեանն սպան զԵսայի մարգարէ, և բազում արիւն արդար եհեղ․ և թո-

(1) Պերդիկկաս ըստ Եւսեբեայ ։

(2) Զկուրտակոս թագաւորն Մարաց ոչ յիշատակէ Եւսեբի․ այլ առաջին թագաւոր դնէ Մարաց զԴիոկէս՝ տալով նմա ամս 54․ իսկ Միխայէլ ասորին յիշէ և զԴիոկէս իշխեալ 'ի չորրորդ ամէ Մանասէի․ իսկ զանունն այլակերպեալ դնէ Դիոկլոսս․

(3) Եւսեբիոս ուղղագրէ կոչելով Տարակոս փոխանակ Թարաքոյ․ Միխ․ թարգմանութիւնն դնէ Տարկոս․

զաւ 'ի ձեռաց Աստուծոյ և անկաւ 'ի ձեռս Ասորւոց զօրացն, և տարան զնա գերի յԱթուր, և եդին 'ի հոր կապանօք. և ասաց զպատուական աղօթման ապաշխարութեան առ Տէր ամենակալն. և ընկալաւ Աստուած զաղաչանս նորա և արձակեաց զնա յերեսուն և եւթն ամին իւրոյ : Եւ Եսայի մարգարէն եդաւ 'ի Սելով, և տուաւ 'ի պատիւ մարգարէին շնորհք բժշկութեան. և Սելով տառափեալ ասի, մի՝ վասն Եսայեայ որ առաքեալ ասի վասն բանին որ ասաց. « Աւասիկ եմ՝ Տէր առաքեա զիս » (1). և միւս՝ զի 'ի գալ Այլազգացն արգելոյր ջուրն, և յորժամ Եսայի մարգարէն գայր ժողովրդեամբն, առաքեալ լինէր յԱստուծոյ 'ի պաշարման Երուսաղէմի յԱսորւոցն :

Ի չորրորդ ամին Մանասէի թագաւորեաց Մադայեցւոցն Դիուքղայոս (2) ամս յիսուն և չորս : Ի քսան և մի ամին Մանասէի թագաւորեաց յԵգիպտոս Սարտիս (3) ամս երկու : Ի քսան և հինգ ամի Մանասէի թագաւորեաց Մակեդոնացւոցն Արգէոս՝ ամս երեսուն և ութ. և յերեսուն և երրորդ ամին Մանասէի թագաւորեաց յԵգիպտոս Ստեփանթոս (4) ա-

(1) Եսայի. Զ. 8.
(2) Տես 'ի վեր՝ յեր. 54. ծանօթութիւն 3.
(3) Եւսեբիոս դնէ 'ի նմին ամի թագաւորեալ Ամերիս Եթովպացի՝ ամս 12 :
(4) Ըստ Եւսեբեայ Ստեփինաթիս.

մըս հինգ։ Իսկ 'ի քսան և վեց ամին Մանասէի Թագաւորեաց Նարուոյ փոքր Սենեքերիմ՝ ամս երեսուն և հինգ։ Իսկ 'ի քառասներորդ ամին Մանասէի Թագաւորեաց Հռոմայեցւոցն Տակղոս(1) ամս երեսուն և երիս։ Սա էր որ եգիտ զհանդերձն ծիրանի և զգաւազանն ոսկի Թագաւորական ։ Ըստ մեզ Տուլլոս է սա։ Սա Թագաւորեաց Եգիպտացւոցն Նեքոն (2), ամս ութևտասն ։ Ի քառասուն և չորս ամին Մանասէի Թագաւորեաց Եգիպտոսի Փսամմիտիկոս (3) ամս քառասուն և չորս։ Յայսմ ժամանակի եղեւ առաջին շինութիւնն Բիւզանդի՝ ձեռամբ Բիւզոսի իշխանի. և զկնի ինն հարիւր և եւթանասուն ամի մեծացաւ՝ նորոգեալ 'ի Կոստանդիանոսէ, և եառ անունն Կոստանդնուպօլիս ։ Իսկ աստ վըճարեցան Թագաւորք և դատաւորք Աթենացւոց ։

Զկնի Մանասէի Թագաւորեաց Ամոն 'ի վերայ Յուդայ ամս երկոտասան. և յերրորդ

(1) Ըստ Եւսեբեայ Տուղոս Ոստղոսս ։ փոքր մի յետոյ Տուլլոս կոչի. Օրինակս մեր ունէր 'ի իԸ ամին Մանասէի ։

(2) Եւսեբիոս զերկուս անձինս կարգէ յայսմ վայրի. Նեքեփսոս՝ որում յաջորդէ Նեքաւով. որ է Նեքաւն Միխայելի. և ժամանակ իշխանութեան երկոցունցն՝ դնէ ամս չորեքտասան ։ Իսկ միւս Թարգմ. նոյնացուցանէ զերկոսին անուանս և տայ նմա ամս վեց ։

(3) Եւսեբիոս դնէ զսա 'ի յիսներորդ չորրորդ ամին Մանասէի ։

ամի նորա Թագաւորեաց Մադացւոց Նիքեքակտորոս[1] ամս չորեքտասան: Եւ յերկոտասան ամին Ամոնի Թագաւորեաց Աթուրացւոցն Նաբուպալասար՝ ամս երեսուն և երիս. և սա էր մոգ: Եւ ՚ի նմին ամի Թագաւորեաց Մակեդոնացւոց Փիլիպպոս՝ ամս երեսուն և ութ: Յերրորդ ամին Թագաւորութեանն Ամոնայ ծնաւ Ովսիա. և Ամոն պաշտէր զկուռս, և հարին ծառայքն նորա և մեռաւ. և են ժամանակք նորա քսան և չորս ամ:

Եւ Թագաւորեաց Ովսիա որդի նորա յԵրուսաղէմ ամս երեսուն և մի. և եկաց երեսուն և ինն ամ: Եւ եղեն նմա որդիք չորս, Յովհաննէս, Յովակիմ, Յովաքազ, Սեդեկիա: Յայսմ ժամանակի մարգարէանայր Սոփոնիա յազգէ Շմաւոնի: Ի տասն ամին Ովսիայ Թագաւորեաց Հռոմայեցւոցն Մարկոս Անիկոս[2] ամս քսան և չորս: Յերեքտասան ամին Ովսիայ սկսաւ Երեմիա մարգարէանալ: Ի չորեքտասան ամին Ովսիայ Թագաւորեաց Մադացւոցն Կաստանդոս[3] ամս երեսուն և երկու: Սա գնաց և առ զՆինուէ և զԱթուրացիսն: Յերեսներորդ ամին Ովսիայ

(1) Ըստ Եւսեբեայ Փրաորտէս:

(2) Ըստ Եւսեբեայ Անկոս Մարկոս, զորոյ սկիզբն իշխանութեանն դնէ ՚ի չորրորդ ամէն Ովսիայ:

(3) Եւսեբի ուղղէ զանուանս կոչելով զնա Կիաքսարէս:

թագաւորեաց յԵգիպտոս Նեքաւով, որ է Նեփաոս, ամս վեց։ Սա ել ՚ի կողմանս Եփրատայ պատերազմել ընդ Աթուրացիսն ՚ի Մնբէճ։ Եւ ել Յովսիա ընդդէմ նորա առանց հրամանի Աստուծոյ, և սպանաւ ՚ի նմանէ և թաղեցաւ յԵրուսաղէմ. և թագաւորեաց Յովաքազ որդի նորա. և յետ երեք ամսոյ դարձաւ Նեքաւով Կաղն և տարաւ զՅովաքազ յԵգիպտոս, և կացոյց թագաւոր զեղբայր նորա զՅովակիմ, և եդեալ հարկ տասն քանքար ոսկւոյ և հարիւր արծաթոյ։ Սա թագաւորեաց ամս երկոտասան։

Յերրորդ ամին Յովակիմայ թագաւորեաց Հռոմայեցւոցն Տարկինոս Սուբրիկոս(1) ամս երեսուն և ութ։ Ի նոյն ամի թագաւորեաց Աթուրացւոցն Նաբուգոդոնոսոր քաղդէացին որդին Նաբուպալասարայ՝ ամս քառասուն և չորս. որ եկն յԵրուսաղէմ և տարաւ գերի զանօթս տան Տեառն, և եդ հարկս Յովակիմայ, և տարաւ զԴանիէլ և զընկերս իւր։ Եւ յետ քակելոյն ՚ի Նեքաւովէ Մնբէճ քաղաքի՝ շինեցաւ վերըստին յԱթուրացւոցն. և եդաւ անդ կուռքն Կայնանայ։ Եւ կոչեցաւ Յարապօլիս, (Յերապօլիս) որ թարգմանի քահանայից քաղաք(2)

(1) Ըստ Եւսեբեայ Տարկինոս Պրիսկոս։
(2) Ըստ Յունականին տառադարձութեան։

վասն քրմացն կախարդացն, որոց աղանդքն աշակերտեցաւ յետոյ Բարդեծան:

Եւ ել դարձեալ Նիքաւով 'ի կողմանս Եփրատայ և սպանաւ 'ի Նաբուգոդոնոսորայ: Եւ թագաւորեաց Եգիպտոս Փսամթոս (1) ամս եւթնեւտասն: Յութերորդ ամին Յովակիմայ և Նաբուգոդոնոսորայ հինգերորդ ամին եկն Երուսաղէմ Նաբուգոդոնոսոր, և առ զհարկն և դարձաւ: Եւ յութերորդ ամին Նաբուգոդոնոսորայ մեռաւ Յովակիմ, և թագաւորեաց Յովաքիմ որդի նորա, որ է Յեքոնիա, ամիսս երիս, և 'ի բաց եկաց 'ի Տեառնէ: Եւ եկն Նաբուգոդոնոսոր Երուսաղէմ և գերեաց զՅեքոնիա և զմայրն և զիշխանսն, և տարաւ զնոսա 'ի Բաբելոն և եդ 'ի կապանս ամս երեսուն և հինգ: Եւ եդ թագաւոր Երուսաղէմի զՍեդեկիա: Յառաջին գալն հայրն Նաբուգոդոնոսորայ Նաբուպալասար առաքեաց զնա Երուսաղէմ. և յորժամ դարձաւ, մեռեալ էր հայրն, և ինքն առ զթագաւորութիւնն: Յինն և տասներորդ ամի թագաւորութեան Նաբուգոդոնոսորայ եկն Նաբուզարդան և այրեաց զԵրուսաղէմ և զՏաճարն զկնի գերելոյն և մահուանն Սեդեկիայ, որ թագաւորեաց ամս մետասան: Ի չորրորդ ամին Սեդեկիայ թագաւորեաց Մադացւոցն Իւ-

(1) Ըստ Եւսեբեայ Փսամմիթիկոս:

*տիկոս (1), ամս երեսուն և ութ։ Ի մետասան ամին Սեդեկիայ Թագաւորեաց Եգիպտոսի Ափրիս (2) ամս քսան և եւթն։ Եւ 'ի նոյն ամի գերեցաւ Սեդեկիա և ամենայն Հրեայքն, բաց 'ի սակաւուց աղքատաց որ գործէին զգործ արքունի. և նախ քան զաւեր Տաճարին Երեմիա մարգարէն տարապահեաց զտապանակն Տեառն։*

## Ժամանակք նեղելոյն զԵրուսաղէմ։

Ի *չորրորդ ամէն Յովակիմայ, որ առաջին Նաբուգոդոնոսորայ, մինչեւ 'ի մետասան ամն Սեդեկիայ, որ է վերջին աւեր Երուսաղէմի, և զկնի աւերմանն Երուսաղէմի եւ Նաբուգոդոնոսոր 'ի վերայ Սրոյ և քակեաց զնա՝ ծովայոյզ արարեալ զքարինսն. և Սուրացիքն զստացուածս իւրեանց նոյնպէս ծովամոյն արարեալ փախեան նաւով։ Եւ զՔիրամ արքայ Սուրայ սպանին, որ կեցեալ էր զամենայն ժամանակս Թագաւորացն Յուդայ։ Եւ տուաւ Եգիպտոս աւար զօրացն Նաբուգոդոնոսորայ փոխանակ աշխատութեան նոցա 'ի վերայ Սուրայ։*

*Ի քսան և եւթն ամի գերութեանն Երուսաղէմի մեռաւ Նաբուգոդոնոսոր Թա-*

(1) Խառնեալ է Աժդահակ ուղղագրելով յԵւսեբեայ։

(2) Ըստ Եւսեբեայ. Վափրէս․ որպէս այլ ամս 25։

գաւորեալ ամս քսան. և էառ զԹագաւորութիւն նորա Իլմարովդաւկ որդի նորա ամիս երիս: Եւ եհան զԵքոնիա ՚ի բանտէն, և ուտէր ՚ի սեղանն արքունի: Եւ զկնի նորա Բաղտասար ամս երկու: Եւ յառաջին ամին Բաղտասարայ ետես Դանիէլ զտեսիլ չորից կենդանեացն, յորժամ չորս Թագաւորութեանն աշխարհի: Եւ Դարեհ Մադէ, որ է Մար, սպան զԲաղտասար և դարձաւ Թագաւորութիւնն Քաղդէացւոց: Եւ յաւուրս Դարեհի մադացւոյ արկան Դանիէլ ՚ի գուբ զառաջինն, և Դարեհ կացոյց զնա վերագոյն ամենայն իշխանացն: Եւ Կիւրոս պարսիկ սպան զԴարեհ, և եբարձ զԹագաւորութիւն Մարաց և Աթուրացւոց, և արար Կիւրոս զաթոռ Թագաւորութեան իւրոյ ՚ի Բաբելոն, և արար զԴանիէլ հաւատարիմ իւր:

Եւ Դանիէլ նախանձու Աստուծոյ վառեալ կործանեաց զպատկերն Բելայ, զոր կանգնեալ էր յանուն Վիլոսի, և սպան զվիշապն: Եւ զշարեալ ընդ նա՝ արկին երկրորդ անգամ ՚ի գուբ ՚ի մէջ եւթն առիւծուց. և յայնմ (Նուագի) առաքեցաւ Ամբակում յԱստուծոյ՝ բերել կերակուր Դանիէլի. և ապրեալ Դանիէլ կորեան Թշնամիք նորա: Եւ յայսմ ամի մեռաւ Ամբակում. և Դանիէլի տեսեալ տեսիլ, իմացաւ զկատարումն եւԹանասունն ամին զոր վճռեալ էր Աստուած ՚ի

ձեռն Երեմիայ մարգարէի։ Եւ պահեաց քը-սան և մի օր. և ետես 'ի վերայ Տիգրիս գե-տոյ այր մի սպիտակազգեստ, որ ասէր ցնա. «Քսան և մի օր է որ կռուիմ ընդ իշխանին Պարսից, դարձուցանել զորդիս ազգին քո»։ Եւ յառաջին ամին Կիւրոսի դարձան հինգ բիւր, և սկսան շինել զՏաճարն։ Եւ 'ի վախճանն ամի գերութեանն Հրէից սպան զԿիւրոս Մակաստաս (1) կինն իւր, և առ զթագաւորութիւն նորա Կամբիւսէս. և զնան սորա ասեն Եբրայեցիքն՝ թէ կոչէր Նաբուգոդոնոսոր (2), որ սպան զԱրփաքսաթ Մար։ Եւ յաւուրս սորա եղեն իրքն Յուդիթ կի-նոջ, որ սպան զՀոլոփեռնէս, որ էր յազ-գէն Մագոգայ (3), որ են Թուրքք։ Կամբիւ-սէս թագաւորեալ ամս ութ՝ առին զկնի նորա զթագաւորութիւնն երկու եղբարք մոգք, ամիսս եւթն։ Եւ զհետ սոցա թա-գաւորեաց Դարեհ մարդացի ամս երեսուն և վեց։ Եւ 'ի յերկրորդ ամին սորա կատա-րեցաւ երկրորդ եւթանասունն գերութեա-նըն Հրէից յայրմանէ Տաճարին, և առաջին եւթանասունն 'ի վձարէն Երեմիայի էր. վը-

(1) Ջ Միխայէլի ասորւոյն Եւսեբի ուղղէ յանկէն (յէջ 200.) «Տոմիրիս թագուհին Մասսագետացւոց սպան զԿիւրոս։» Զնոյն բանն և Սամուէլ բառ առ բառ 'ի մէջ բերէ յիւր Քրոնիկոնին.

(2) Եւսեբիոս, Քրոն. յէջ. 200.

(3) Յայտնագիրն Մագոգայ.

հայեն Զաքարիա և Ընդէոս, որ ասեն. «Մինչև յերբ ոչ ողորմիս Երուսաղէմի և քաղաքացն Յուդայ . . . . զի այս եւթանասուն ամ է (1)։ » Ժողովելին ամք ՚ի Սաղաթիէլի շինուածոյն մինչև ՚ի վեց ամն Դարեհի հինգ հարիւր ութ(2) ամ։ Ի հնգետասան ամին Դարեհի լցաւ հինգերորդ դարն։ Եւ ՚ի վեշտասան ամին Դարեհի սկսաւ վեցերորդ դարն։

Զկնի Դարեհի թագաւորեաց Քսերքսէս որդի իւր ամս քսան և մի։ Եւ յերկրորդ ամին իւրոյ առ զԵգիպտոս, և ՚ի մետասան ամին առ զԱթէնս և հրով այրեաց զնա. առ և քաղաքս բազումս։ Յաւուրս սորա եղեն իշխք Աթենացւոց և Մակեդոնի և Հռոմանայ, որ էր յառաջէն Եմադեկայ. բայց Յովհաննէս (ասիացին) ոչ հաւանի՝ թէ առաջին Աթենացւոց իշխն, զի թէ եղեալ էր առէ, Եզր ընդէր ոչ գրէր (3)։ Եւ ոմանք ասա

(1) Զաքարիա. Ա. 12.

(2) Ապուլփարաճ համաձայն մերումս դնէ մինչ ցեւթն ամն Դարեհի 508. իսկ ոմանք յօրինակաց մերս թարգմանութեան դնեն 538 ամ.

(3) Զայն կարծիս Յովհաննու և Եւսեբիոս հաստատէ. ոչ զՔսենոփոնեայ՝ այլ զյաջորդեն նորա զԱրիստոտէլէս խօսելով. յասելն. «զԱթենացւոց և զՄակեդոնացւոց իշխն ոմանք առ սովորութեամբ ասեն։ Բայց ես չաւանիմ յանձն։ Քանզի ոչ եթէ լսէին զնորա գործոն՝ Եզրի գիրքն, որ առ սովոր պատմեն զԵզրի և զՆեեմիայ ՚ի Բաբելոնէ ելանելն, և զգործն ՚ի հրեաստան լեալ որ ՚ի նոյն գիրս կրին։» Զայսոսիկ գիտողութիւնս Եւսեբի գատնեմք ՚ի մէջ բերեալ և ՚ի Դաւթագրութեան զորոյն Եսթերայ.

ասեն զդարձն Հրէից և ոմանք առ Դա-րեհիւ։ Զկնի Քամբիւսեայ Թագաւորեաց Ար-տաւանոս հինգ ամիս. և զհետ նորա Ար-տաշէս (Արտաքսերքսէս) Երկայնաբազուկ ամս քառասուն և մի։ Ի յեւթն ամին սո-րա եկ Եզրաս դպիրն շինել զպարիսպն Ե-րուսաղէմի։ Սա գրեաց զհին կտակարանն, շնորհելով նմա յԱստուծոյ. և ի խնամոցն Աս-տուծոյ պահեցան հին օրինակքն ի տեղիս տեղիս, և յետոյ գտան համաձայնք միմեանց։

Եւ ի քսան ամին Արտաշիսի եկ Նէեմի տակառապետն Արտաշիսի հրամանաւ նորին, օգնել Եզրի, որ յամեալ անդէն յԵրուսա-ղէմ ի շինելն ամս երկոտասան(1)։ Եւ արկա-նին հիմն Երուսաղէմի ի քահանայապետութեան Յովիդայեայ որդւոյ Եղիսէի։ Նէեմի եւս բե-րել ի ջրհորոյ ողջակիզացն մոռացեալ, զկնի եւ-թանասուն ամի, և արկեալ ի վերայ սեղա-նոյն իբրեւ զառաջինն (վառեցաւ հուր)։

Զկնի Երկայնաձեռնին Թագաւորեաց Ար-տաշէս միւս երկուս ամիս, և զկնի նորա Սոգդիանոս(2) ամիս եւթն, և յետ նորա Թա-գաւորեաց Դարեհ Նոթոս (հարճորդի) ա-մս իննն և տասն։ Եւ ի հնգետասան ամին սորա ապստամբեաց Եգիպտոս ի Պարսից, և եդին իւրեանց Թագաւոր զՆիոնէսիոս

(1) Նեեմ. Ե. 14։
(2) Ըստ Եւսեբեայ Սոգդիանոս։

զկնի հարիւր քսան և չորս ամի խափանելոյն։ Զկնի Աղէքսանդրի թագաւորեաց Սակեդոնացւոցն Պերտիկոս՝ ամս քսան և ութ. Եւ ՚ի յիննևտասն ամի Դարեհի թագաւորեաց Սակեդոնացւոցն Արխաոս (1), ամս երիս։ Իսկ ՚ի Հռոմ Կապարիոն. և սա պատերազմ եդ ընդ Կպղատաուկք և ընդ Գաղատացիս. Եւ յետ հարիւր ամի յաղթեցան Հռոմայեցիք. և առին զՀռոմ և քակեցին զնա ՚ի հիմանց, և մնաց միայն արքունիքն(2)։ Յայնմ ժամանակի եղեւ շարժ սաստիկ, և քաղաքամ քաղաքս կլաւ երկիր։ Եւ թագաւորեաց Պարսից Արտաշէս ուշեղ՝ ամս քսանսուն։ Եթովպացիքն առ սովաւ ասեն զԵա-թեր։ Ի հնգետասան ամին Արտաշէսի, Սետուկարարն(3) Հռոմայ յԱփրիկէ աւերեաց զԿարքեդոն, և յանուն իւր կոչեաց զնա Աֆրիկէ։ Եւ յԵգիպտոս թագաւորեաց Սեմբետրիս(4), ամս վեց, և Սակեդոնացւոցն թագաւորեաց Աբեղայոս ամս չորս։ Եւ դարձեալ Անտոսոս(5) ամ մի, և ապա Պու-

(1) Ըստ Եւսեբեայ Ոչքէոսէս։

(2) «Գաղատացիք և կեղտացիք զՀռոմ կալան բաց ՚ի կապիտոլինեայն։» Եւսեբի, Քրոն. յեր. 218։

(3) Դիկտատոր Հռոմայեցւոց՝ այն է Սկիպիոնն, որ Աֆրիկեցի կոչեցաւ վասն զԱփրիկէ նուաճելոյ։ Որպէս յայտ է, ՚ի հակառակ միտս առեալ են արտաքնելեանք զգործն Սկիպիոնի։

(4) Ըստ Եւսեբեայ Եւերգետէս, երկրորդ թագաւոր 27 րդ հարստութեանն Եգիպտացւոց։

(5) Ըստ Եւսեբեայ Անտիոքոս . . . Պատմիչս։

տինոս ամ մի, և ապա Ամունդիոս (Ամինդաս) վեց ամ։ Եւ 'ի վեշտասան ամին Արտաշիրի թագաւորեաց Մակեդոնացւոց Արքեղայոս (1), ամս ութ և տասն։ Եւ 'ի քսան ամին Արտաշիսի թագաւորեաց Եգիպտացւոց Փսամմիթոս (2) ամ մի. և զկնի նորա Մարիոս ամ մի. և ապա Նիկտապիոս ամս ութև տասն։ Եւ յերեսուն և հինգ ամին Արտաշիսի թագաւորեաց Մակեդոնի Աղէքսանդր ամ մի. և յետ նորա Պտղոմէոս երեք ամ։ Եւ 'ի քառասուն ամին Արտաշիսի թագաւորեաց Եգիպտացւոց Տէոսս (3) ամս երկու. և զկնի նորա Նենքդեբոս (Նեքտանեբոս) ամս երկոտասան։ Եւ զհետ Արտաշիսի թագաւորեաց Պարսից միւս Արտաշէս Օքոս կոչեցեալ։ Սա հնազանդեաց զԵգիպտոս և եբարձ զթագաւորութիւն նոցա. և Նեկտանաբոս (Նեքտանեբոս) թագաւորն Եգիպտոսի փախեաւ յԵթովպիա (4), աղանդաւ խաբեալ

(1) Ըստ Եւսեբեայ Աշխար. Տեւողութիւն և կարգք ամաց թագաւորացս ոչ համաձայնին Քրոնիկոնին Եւսեբեայ. նաև միւս թարգմանութիւնն խառնակ տարբերի։

(2) Ըստ Եւսեբեայ Փսամմութէս. իսկ զՄարիս ոչ յիշատակէ Եւսեբիոս. այլ յաջորդ դնէ նմա զՆեփերիտէս, թագաւորեալ ամիսս չորս։ Եւ ապա զՆեկտանեբոս, զոր Նեկտապիս անուանէ օրինակս։

(3) Յօրինակիս Տէոս. իսկ միւս թարգմ. Դէոս։

(4) «Ոմանք կարծեն զԵգիպտոս 'ի փախստականութեանն Նեկտանեբայ յԵթովպիա, առ որով դադարեցին թագաւորք Եգիպտացւոց. Եւսեբիոս. Քրն. յեր. 222։

յառաջագոյն զաւերն. և սանն թէ սա է հայրն Աղէքսանդրու, որ է Նեկտանեբոս. և խափանեցաւ թագաւորութիւնն Եգիպտոսի քառասուն և երկու ամ, մինչև 'ի Գունաթիմոս, զոր կոչեն Պտղոմէոս, ոմն 'ի բարեկամացն Աղէքսանդրի:

Արտաշէս Ոքոս թագաւորն Պարսից հընազանդեաց զՀրէայսն, և տարաւ զնոսա բնակեցոյց առընթեր ծովուն Կասբից յՈւռկանս քաղաք: Եւ յայսմ ժամանակի թագաւորեաց Մակեդոնացւոց Փիլիպպոս հայրն Աղէքսանդրի, ամս քսան և եւթն. և անուն կնոջ նորա Ողոմպիադա: Զսա երեւեցաւ Արիստոտէլ և Եպիկուրոս փիլիսոփայք: Ի յերեքտասան ամին Ոքոսի արքայի ծնաւ Աղէքսանդր 'ի յութ ամի թագաւորութեան հօր իւրոյ: Եւ զկնի Ոքոսի թագաւորեաց Պարսից Արիսքոդէս (1) որդի նորա՝ ամս չորս: Եւ զկնի նորա Դարեհ որդի Արտաշրի՝ ամըս վեց:

Եւ յառաջին ամի նորա թագաւորեաց Մակեդոնացւոցն Աղէքսանդր որդի Փիլիպպոսի քսան ամաց. զառաջինն թագաւորեաց յԻլլոա (յԻլլաւոա): Նա էր հասակաւ երեք կանգուն, բայց մեծ խելօք և քաջութեամբ, որ կորոյս յաշխարհէ երեսուն և

(1) Ըստ Եւսեբեայ Արշէս ասէ:

հինգ թագաւորս. և ունէր զօրս երկոտասան բիւր։ Սա և ՚ի վեց ամի թագաւորութեան իւրոյ, և ՚ի վեց ամին Դարեհի պատերազմեցան ՚ի Միս Կիլիկեցւոց, և մեռաւ Դարեհ։ Եւ ՚ի նա կատարեցաւ թագաւորութիւնն Պարսից, տևեալ ամս երկերիւր երեսուն և մի։ Եւ Աղեքսանդր շինեաց երկոտասան քաղաքս յանուն իւր։ Սա եդ զուռըն Հոնաց, չապականել նոցա զերկիր. և էր դուռն երկաթի երեքտասան կանգուն երկայն, և լայն ութ կանգուն։ Սա եկեալ յԵրուսաղէմ պատարագեաց Աստուծոյ, և թոյլ ետուն Հրէայքն, և պատուեաց զքահանայապետն Անդրոմաքոս[1]։ Եւ յորժամ Սամարացիքն սպանին զքահանայապետն Անդրոմաքոս, վասն թոյլ տալոյ նմա հեթանոսին պատարագել Աստուծոյ, լուաւ Աղեքսանդրոս և եկն յԵգիպտոսէ և քակեաց զՍամարիա և ջնջեաց զազգն, և ած Մակեդոնացիս և բնակեցոյց ՚ի Սամարիա. և զկնի երկոտասան ամի և եւթն ամսոյ թագաւորութեան նորա դեղապատուութեամբ մեռաւ ՚ի Բաբելոն։ Սա է առաջին թա-

(1) Եւսեբիոս ուղղելով զանուն քահանայապետին որ էր Օնիա, զԱնդրոմաքոսն ասէ եթէ էր տեսուչ կողմանցն Պաղեստինի յԱղեքսանդրոսէ կացուցեալ, և Սամարացւոց ըսպանեալ զԱնդրոմաքոս, պատժեցան և ինքեանք յԱղեքսանդրէ ՚ի դարձին նորա յԵգիպտոսէ. Քրոն. յեր. 222.

գաւոր Յունաց, և յետ սորա թագաւորեաց յԵգիպտոս Պտղոմէոս, որ եբեր ըզմարմինն նորա յԵգիպտոս և թաղեաց. և կատարեցաւ բանն թէ «Խոյն այծեաց յաղթէ խոյին Դարեհի։ Եւ բարձաւ մի եղջիւրըն և երեւեցան չորս եղջիւրքն, (1)» բարեկամքն։ Եւ յետոյ եղեն տասն եղջիւրքն տասն թագաւորք բաժանեալք.

Իսկ Պտղոմէոս թագաւորեալ ամս քառասուն։ Եւ յառաջին ամին էառ զԵրուսաղէմ նենգութեամբ, և տարաւ գերի յԵգիպտոս առ Ոնիայիւ քահանայապետիւ. և 'ի նմանէ կոչին և այլ թագաւորքն՝ Պըտղոմէոսք։ Ի չորս ամին Պտղոմեայ թագաւորեաց 'ի վերայ ամենայն Ասիոյ Անտիգոնոս՝ ամս ութեւտասն։ Սա դարձեալ շինեաց զԱնտիոք անուամբ որդւոյ իւրոյ Անտիոքու (2)։ Յերեքտասան ամին Պտղոմեայ թագաւորեաց 'ի վերայ Ասորւոց և Բաբելոնի մինչեւ 'ի Հընդիկս Սելեւկոս՝ ամս երեսուն և երիս։ Եւ սա կատարեաց զշինուածն Անտիոքու, և շինեաց զՍելեւկիա, զԼատիկն, զԱփեմիա(3), զԲերիա՝ որ է Հալէպ, զԲալու, զՄարաշ, և

(1) Դան. Ը. 7—8։

(2) «Անտիգոնոս զԱնտիոքացիս առ Օրոնտա գետով շինեաց. բայց Սելեւկոս նորոգեաց և անուանեաց Անտիոքիա Եւսեբիոս» Քրոն. յեր. 226։

(3) Եւսեբիոս (անդ) Ապամիա անուանէ, որ է Համա. իսկ զԲերիա՝ Բերէոյա կոչէ։

ընակեցոյց 'ի Նասա Հրէայս. և պատուեաց զնոսա, և արար մաւտ և եղ առ ինքն ընդ սիրելիս իւր: Սա շինեցաւ մեծ աշտարակն Աղեքսանդրու 'ի մէջ ծովուն Նեփրոսի և անուանեցաւ Պրուտոս (1). և շինեաց զնա Սոստրատոս Կանդիտացի՝ տեղի դիտի Աղեքսանդրու ընդ ծով և ընդ ցամաք (2): Իսկ Սեղեւկոս ըմբռնեաց զԴեմետր 'ի Կիլիկիա, որ թագաւորեալ էր ապստամբութեամբ, և սպան զնա, և ինքն իշխեաց ամենայն Ասիոյ: Իւ սկիզբն թագաւորութեան սորա, որ է զկնի երկոտասան ամի մահուանն Աղեքսանդրու, սկիզբն է թուականութեանն Ասորւոց:

Զհետ առաջին Պտղոմեայ թագաւորեաց յԵգիպտոս Պտղոմէոս Փիլադելփոս՝ ամս երեսուն և ութ: Իւ յառաջին ամին նորա թագաւորեաց Մակեդոնացւոց Պտղոմէոս Կերանոս (3) ամ մի. և զկնի նորա Մեղագարոս (4) ամիս երկու. և Անթիպատրոս աւուրս քսան և վեց. և յետ Անթիպատրեայ Սոսթենէս ամս՝ երկու: Ի հինգ ամին Պտղոմեայ թա-

(1) Ոմանք համարին զՊրուտոս այլափոխեալ 'ի յունական ֆարոս բառէն, որ նշանակէ լապտեր նաւահանգստաց:

(2) «Սոստրատոս Դեքսիփանեայ՝ կնիդացի. կանգնեաց յԱղեքսանդրիա զփառաւորագոյն աշտարակ բարձրագոյն»: Եւսեբի. Քրոն. էր. 228:

(3) Ըստ Եւսեբեայ Կերաւնոս:

(4) Ըստ Եւսեբեայ Մեղեագրոս:

գաւորեաց զկնի Սելեւկիոսի Անտիոքոս Սո-տեր` ամս իննեւտասն . եւ 'ի վեց ամին Պտո-ղոմեայ Թագաւորեաց Մակեդոնացւոցն Ան-տիգոնոս` ամս երեսուն եւ վեց։ Սա 'ի նոյն ամի Թարգմանեցան գրեանքն 'ի Փարոս կղզին յե-րեսուն եւ 'ի չորս թուին(1) Ասորոց. եւթանա-սուն եւերկու Թարգմանիչօք. վեց վեցայր'ի ցե-ղիցն երկոտասան որդւոցն Իսրայէլի , որք են այսոքիկ։ Յազգէն Ռուբենի` Յովսեփոս, Եզե-կիել, Եղիսէէ, Զաքարիա, Յովհաննէս, Եզե-կիել։ Յազգէն Շմաւոնի` Յուդա, Շմա-ւոն, Ադէ, Սամուէլ, Սաթէ, Սաղամիա։ Յազգէն Ղեւեայ` Նեմէի, (Նոյեմի) Յովսէփ, Թէոդոսի, Իասոս, Աւրանիա, Տուկիոս։ Յազ-գէն Յուդայ` Յովնաթան, Աբարի, Եղիսէ, Անանիա, Զաքարիա, Եզեկիա։ Յազգէն Իսա-քարայ` Իսահակ, Յակոբ , Յեսու, Շաբատ, Շմաւոն, Ղեւի։ Յազգէն Զաբուղոնի` Յուդա, Յովսէփ, Շմաւոն, Զաքարիա, Շմաւոն, Սաղամիա։ Յազգէն Գադայ` Սեբաստիա, Սեդեկիա, Յակոբ, Իսահակ, Եսայի, Մատթէոս։ Յազգէն Ասերայ` Թէ-ոդոսի. Իասոն (Յասոն), Յեսու, Թէոդոտոս Յովհաննէս, Յովնաթան։ Յազգէն Դանայ` Թէոփիլէ, Աբրահամ, Իդասոս, Իասոն, Երեմիա, Դանիել։ Ի ցեղէն Նեփթաղիմեայ`

(1) Յօրինակին յայտնի վրիպակաւ գրեալ էր ձեռին նորին երեսուն եւ չորս։

Երեմիա, Ղազար, Զաքարիա, Բանիա, Եղիշէ, Տաթան: Յաղագս Բենիամինի՝ Յովհաննէս, Եշաւոս, Եկգի, Թէոդոսի. Ներսամ. Եզեկիել: Յաղագս Յովսեփայ՝ Բաղէք, Սամուէլ, Յովսէփ, Յուդա, Յովնաթան, Թադդի: Թարգմանեցան 'ի Կիպրոս յունարէն գրով, և տարան յԵգիպտոս և եղան յԱքունիան: Այլք 'ի տեղն սոսն թարգմանեալ և 'ի Փարոն կղզի. այլ այս է ճշմարտութիւն:

Ի թուին Ասորւոց կբ (62), և 'ի հնազանդութեանն Յունաց յետ եւթանասուն և երկուց ամաց, խորհեցան կողմանքն Պարսից և արեւելից, եթէ «Պատուեցան Մակեդոնացիքն 'ի միմեանց և ակարացան, և են հեռաւորք 'ի մէնջ, և խռովութեամբ և չարչարանօք ունին զմեզ. զինչ կայ մեր և նոցա, եկայք դիցուք մեզ ինքնակալ թագաւոր:» Եւ թագաւորեցուցին իւրեանց զԱրշակ քաջ յորդւոցն Աբրահամու որ 'ի Կենդուրայ 'ի Բահլ քաղաքէ, որ է սահմանակից Մասագետաց երկրին. Նմանապէս և աշխարհն Ուրկանացւոց (Վրկանաց), որ կան 'ի հիւսիսոյ կողմանէ Պարսից աշխարհին, յորժամ ետես թէ տունն Պարսից եդին իւրեանց թագաւոր, կանգնեցին և նոքա իւրեանց թագաւոր. երբեմն հնազանդէին Պարթեւաց, և երբեմն ոչ: Նմանապէս և

Հայք զկնի քաջ և յաղթող և տիեզերասասան թագաւորացն հայկազանց. որք բարձին զթագաւորութիւն Ասուրացւոց և հնազանդեալ ունէին զամենայն թագաւորութիւնս հիւսիսի, և զամենայն ազգս շուրջանակի զոր մեք ոչ կարացաք գրով գտանել և տողել զշարս նոցա մինչև Աղէքսանդր՝ որ սպան զՎահէ թագաւոր հայկազնի և եբարձ զթագաւորութիւնն Հայոց մինչև յայսմ ժամանակի. յորում դարձեալ կանգնեցաւ թագաւորութիւն նոցա ՚ի Պաղեստինէ մինչև ՚ի Թետալիա (1), և մինչև ՚ի ծովն Կասպից և յայնկոյս լերինն Կովկասու. ՚ի Վաղարշակայ եղբօրէ Արշակայ սկսեալ. մինչև ՚ի յետին Արշակ (2). զոր մեք թողումք այլոց հաւաստի գրողաց և պատմողաց (3):

Իսկ զկնի Փիլադելփոսի թագաւորեաց յԵգիպտոս Պտղոմէոս Երկադիս (Եւերգետէս): Եւ ՚ի նոյն ամի թագաւորեաց Ասորւոց Սելևկոս Կալանիկոս: Ի նոյն ամի թագաւորեաց Մակեդոնացւոցն Դեմետրիոս Փիլիպպոս: Յայսմ ժամանակի էր քահանայապետն Ոնիա, որդի Սիմէոնի Արդարոյ:

(1) Թետալիա է յերկրին Գաղոնից առ երի Խորասանոյ. ոչ հեռի ՚ի Կասպից ծովէն:

(2) Վերջին թագաւոր Արշակունեաց եղև Արտաշիր և ոչ Արշակ, ըստ պատմութեան Մովսիսի Խորենացւոյ:

(3) Մովսէս Խորենացի. Բ. 1—Ը: —Յովհ. կաթ. և այլք:

Այս Ոնիա ոչ կամեցաւ տալ զհարկն Պտո-ղոմեայ. և նա կամեցաւ գալ յԵրուսաղէմ: Եւ առաքեցին զՅովսեպոս հաշտութիւն առնել. և եգիտ շնորհս առաջի Պտղոմեայ, և առ 'ի նմանէ իշխանութիւն զօրապետու-թեան ամենայն Հրէաստանի(1):

Եւ 'ի ՁԷ (87) թուին Ասորւոց թագա-ւորեաց Սելևկոս Կաւնոս (Կերաւնոս) ա-միս երիս. և յետ նորա թագաւորեաց Անտիոքոս Մեծն՝ ամս երեսուն և վեց: Յայ-սըմ ժամանակի է նահատակութիւնն Մակա-բայեցւոց:

Եւ 'ի ՂԳ (93) թուին թագաւորեաց Ե-գիպտացւոցն Պտղոմէոս Փիլոպատոր՝ ամս եւթնևտասն. և սաստիկ նեղէր զՀրեայ-սըն. և մարտեաւ ընդ նմա Անտիոքոս և յաղթեաց նմա, և զԵգիպտոս արար ընդ իւր իշխանութեամբ. և 'ի դառնալն յԵ-գիպտոսէ առ զԵրուսաղէմ: Եւ աստ վճար էառ առաջին Գիրքն Մակաբայեցւոց:

Ի ՃԺ (110) թուին թագաւորեաց Եգիպ-տացւոց Պտղոմէոս Եպիփանէս՝ ամս քսան և մի: Սա առաքեաց զՍկոպաս զօրավարն(2), և հնազանդեաց զՀրէաստան և զՓղիշտ (փղշ-տացիս). և ելեալ ընդ դէմ նորա Անտիոքոս,

(1) Եւսեբիոս, Քրոն. էջ. 232:

(2) Եւսեբիոս, (Քրոն, էջ. 236) Սկոպաս անուանէ զզօրա-վարն Պտղոմեայ:

կոտորեաց զնա. և առ ինքն դարձոյց զառեալ 'ի նմանէ քաղաքսն : Այս Անտիոքոս արար սալարկ զճանապարհս քաղաքաց : Եւս արար 'ի ճանապարհս նշանս իջևանաց զոր փարսախ կոչեն, և շինեաց համուրջս քառակուսս 'ի վերայ գետոց և յառուս. և արար դիւրագնաց զճանապարհս հարթելովն : Նա 'ի մետասան ամին արար պատերազմ ընդ Հռովմայեցիս և յաղթեցաւ. և եա զորդին պատանդս 'ի Հռովմ՝ տալ հարկս յամենայն ամի հազար քանքար ոսկւոյ. և այս եղև սկիզբն հարկելոյ Ասորւոց ընդ Հռովմովք :

Ի յերրորդ ամին Անտիոքոս Թագաւորեաց Մակեդոնացւոյն Փիլիպպոս՝ ամս քսան և չորս (1). և սա կատարեցաւ մարգարէութիւնն Դանիէլի (2), թէ Թագաւորն հիւսիսոյ տայ պատերազմ ընդ Թագաւորն հարաւոյ, որ է Անտիոքոս ընդ Պտղոմեայ, որ եա նմա զդուստր իւր և դարձաւ առ 'ի նմանէ ըստ ոմանց ասելոյ :

Եւ այս Անտիոքոս մեռաւ յԵլամացւոց աշխարհն (3), քարկոծեալ 'ի տաճարն Նենեայ աստուածուհւոյն իւրեանց, որ (Անտիոքոս) էր

(1) Եւսեբիոս (Քրոն. յեր. 234) տայ սմա ամս քսան և երկուս, յերրորդ ամէ Պտղոմեայ Փիղոպատորի :

(2) Դանիէ. ԺԱ. 11 :

(3) Ելամացւոց երկիրն է յաշխարհէն Պարսից, որոյ գլխաւոր քաղաքն է Շօշ :

տպանկիր. յորմէ հետէ սպանան՝ ի նմանէ Շը-մաւնի եւ որդւոց իւր, որ եւ խրատ առեալ ՚ի գլխաւորացն՝ զի բերցէ զնշխարս սպանելոցն եւ անկեալ առաջի նոցա զզջացի. եւ հրամայեաց բերել առ ինքն։ Եւ յորժամ տանէին յԱնտի-ոք, բարձեալ ՚ի ջորիս անգկօք. եւ հասեալ մօտ ՚ի Հաղախ քաղաք (1), դիպեցան նոցա որք ստացին զմահ Թագաւորին։ Եւ եդան նշխարք նոցա ՚ի տեղւոջն ուր լուանն. որ եւ յետ ժամանակի յայտնեցան սքանչելեօք, եւ շինեցան տեղին վանք, եւ է մինչեւ ցայս-օր ժամանակի։

Զկնի մահուանն Անտիոքու Թագաւո-րեաց Սելեւկիոս. եւ Դիոդորոս հաւատարիմ նորա յոյժ նեղէր զՀրեայսն, եւ պատժեցաւ յԱստուծոյ։

Ի Թուին Յունաց ՃԼԱ (131) Թագաւորեաց Անտիոքոս Եպիփանէս. որդի Անտիոքու որ կայր պատանդ ՚ի Հռոմ՝ ամս մետասան։ Սա գը-նաց ՚ի վերայ Պտղոմեայ յԵգիպտոս, եւ արգե-լին զնա Հռոմայեցիքն. եւ դարձաւ ՚ի Հրէ-աստան, եւ ետ զքահանայապետութիւնն Յասոնի յեղբօրն Ոնիայ (2). եւ վշտացան ընդ միմեանս։ Մատաթէ՝ որդի Յոհաննու որդ-ւոյ Շմաւոնի քահանայի, յորդւոցն Յովիա-

(1) Հաղախ քաղաք մերձ է ՚ի Նփրկերտ։

(2) Եւսեբիոս, Քրոն. յէջ. 238. Յօրինակին տպագրութ. Ոնիա գրի.

քաղաք, նստէր 'ի Մովդիիմ, և ունէր հինգ որդիս, Յովհաննէս, Շմաւոն, Յուդա Մակաբէ, Եղիազար Աւարան, Յովնաթան (1) որ սպան զյանցաւորսն Աստուծոյ, եւ ել որդւովք իւրովք 'ի լեառն ապաստանեալ յԱնտիոքէ։

Ի ճխթ (149) Թուին մեռաւ Անտիոքոս Եպիփանէս 'ի Պարսս հարուածօք հօր իւրոյ 'ի ցասմանէ Աստուծոյ. Քանզի մեծն Անտիոքոս էր որ պղծեաց զՏաճարն կանգնելով պատկեր Զեւսայ 'ի նմա, և 'ի լեառն Գարիզին շինեաց տաճար Զեւսայ Քսանթոսի (2), աղաչեցեալ զնա Սամարացւոցն ։ Ի Պտղոմեայ ութեւտասն ամին Թագաւորեաց Եպիփան Եւպատոր (3) ամս երկու ։ Սա նեղէր զՀր-

(1) Տես 'ի գիրս Բ. Մակաբայեցւոց Ա. 2. յորում առաքինաքանչիւր անուանս զնոին և մականուանս նոցին։

(2) Միւս Թարգմանութիւնն և չաղկապաւ եդեալ՝ երկուս չաստուածս համարի, փոխանակ զմիմեանն՝ կամ ուղղագոյն եւս քսենիոսն մակդիր զնոյն Զեւսայ։ Եւ առաւել Թարգմանիչք, յորմէ առնու և Միխայէլ. հայկական նշանաւորութեամբ զնոյն օտարաւէր. "Անտիոքոս 'ի Համրին (Սամարիա) 'ի Գարիզին լերին Արամազդայ (Զեւսայ) տաճարատրին մեհեան շինէր. և զայն 'ի Համրացւոց տեղւոյ զնա աղաչելոյ. (Քրոն. յէր. 240։)— "Եւ 'ի Համրին զտաճարատրին Արամազդայ։" Սամուէլ.

(3) Համաժամութիւնք են յանուանս։ Եպիփան՝ է Անտիոքոսն՝ յաջորդն Անտիոքայ Եւպատորեայ, զոր բնագիրք Սուրբ գրոց այլափոխեալ կոչեն Ոտրոպոր։ Ա յայտս և անուանս Ղազարու, Թուի Թէ իցէ աստրակայն Հնչումն փոխանակ Գորգիասի եղեալ, որ էր զօրավար ընդ արքայութեամբ Եպիփանայ։ Ա. Մակաբ. Գ. 38։ Զ. 30—45.

րեայն՝ խստագոյնս. և սա առաքեաց զխօռ-ղօրա զօրապետն իւր հարիւր քսան հազա-րաւ 'ի վերայ Երուսաղէմի. և մեռաւ Պա-զարոս (Եղիազար) 'ի ներքոյ փղի, և կոտո-րեցան յոյժ բազմութիւն Հրէից, որ և 'ի Թաղելն զնոսա գտան 'ի ներքոյ հանդերձից նոցա նկարք պատկերաց կռոց [1]:

Յայսմ ժամանակի շինեցաւ տաճար յԵ-լիոպոնտոս[2] Եգիպտոսի յՈնիայէ. նման Տա-ճարին որ յԵրուսաղէմ, առանց հրամանի Աստուծոյ. և առնէին 'ի նմա քահանայագոր-ծութիւն ըստ օրինացն. և զՏաճարն որ յԵ-րուսաղէմ նորոգեաց Յուդա Մակաբէ. և մնաց չէն մինչև 'ի Տիտոս և 'ի Վեսպա-սիանոս: Եւ զկնի Յուդայի եկաց Յովնաթան, որ սպանաւ ընդ Աղէքսանդրու 'ի Տրիփոնայ, և եկաց 'ի տեղի նորա Շմաւոն: Սա առա-քեաց 'ի Հռոմ վահան ոսկեղէն, և եառ բե-րել տախտակ պղնձի նշան ուխտի դաշանց.

(1) Ի գիրս Բ. Մակաբայեցւոց ԺԲ. 40. այսպէս պատ-մի. «Իբրև հասանէին 'ի ճակատու տեղի, գտանէին զեւ-րեանց եղբարց գիակունսն. և 'ի ներքոյ հանդերձից նոցա յուռութ ուրուք և բժժանս յամնեայն կռոց, որ ընդ-անութ ունէին:»

(2) Յելիոպոնտոս է յայտնի սխալ փոխանակ գրելոյ Յելէ-ոպօլիս (Արեգ քաղաք): Իսկ Եւսեբիոս (չէր. 240) կոչէ Ո-նիայօլիս, և Սամուէլ Անեցին: Եւսեբիոս (անդ) որդւոյ Ո-նիայ քահանայապետի ասէ շինեալ յԱրեգ քաղաքի զՈնիայօ-լիս, ուստի ամենայն հաւանութեամբ է ասել եթէ Ոնիասպօլիս կոչեաց յանուն հօր իւրոյ Ոնիայ.

և առաքեաց զՅովհաննէս զորդին իւր և կոտորեաց զզօրսն Անտիոքու (Անտիոքոսի), և ազատեցան 'ի հարկէ նոցա ։ Եւ աստ կատարեցան երկրորդ գիրք Մակաբայեցւոցն ։

Ի ՃՀԴ (174) Թուլին սպանաւ Շմաւոն 'ի Պտղոմեայ, և առ զտեղի նորա Յովհաննէս ։ Յայսմ ժամանակի կանգնեցաւ գլխաւոր Հրեայ 'ի յՈւռհա մինչև 'ի գալ անդ նախնեացն Աբգարու արքայի(1)։ Յայսմ ժամանակի գնաց Յովհաննէս քահանայապետն Հրէից յՈւռկանիա պատերազմիլ ընդ նոսա . և վասն այսորիկ կոչեցաւ նա Հուրկիանոս (Հիւրկանոս ։) Յայսմ ժամանակի Թագաւորեաց Անտիոքոս Ակրիպաս (2), և եկն յԵրուսաղէմ և նեղեաց զնոսա ։ Եւ եբաց Յովհաննէս Հուրկիանոս զգերեզմանն Դաւթի Թագաւորին, և եհան զոսկին և զզարդըն ամենայն Թագաւորացն, և եհան 'ի նմանէ երեք հազար քանքար ոսկւոյ, և ետ 'ի նմանէ երեք հարիւր քանքար Անտիոքու

(1) Չունիմք 'ի պատմութեանց ազգիս հաւաստիք Թագաւորելոյ Հրէից յՈւռհա նախ քան զնախահարս Աբգարու, եթէ ոչ յաւուրս Վաղարշակայ 'ի Բագրատունեաց տանէ զոր գնիցեմք իշխեալ 'ի վերայ Ուռհայու տանուտերական իրաւամբք . և կամ մի ոք 'ի Հրէից գերելոց 'ի Տիգրանայ Բ. որ և բնակեցոյցն զնոսա 'ի Միջագետաց կողմն, ըստ Պլինիոսի, գիրք Զ. Գլ. 28 . Տես և 'ի Պատմ. Հայոց. Հտ. Ա. եր. 570.

(2) Ըստ Եւսեբեայ Անտիոքոս Գրիպոս ։

և գնաց ։ Եւ յայսմ ժամանակի քակեաց Հուրկիանոս զՍամարիա ։

Ի թուին ճՂԶ (196) թագաւորեաց Պտղոմէոս Սովտէր՝ ամս եւթնևտասն ։ Եւ 'ի նոյն ամի գնաց Անտիոքոս և Հուրկիանոս ընդ նմա, և սպանին զՍխատոխս (1) թագաւորն Պարթեւաց ։

Ի չորրորդ ամի Պտղոմեայ թագաւորեաց յԱսորեստան Անտիոքոս Կիւզիկոս՝ ամս ութ և տասն ։ Ի մետասան ամին Պտղոմեայ մեռաւ Յովհաննէս Հուրկիանոս և առ զտեղի նորա Արիստաբուղոս որդի Յովնաթանայ՝ ամ մի ։ Սա առաջին թագ եդ և անուանեցաւ թագաւոր և քահանայապետ ։ Եւ երկու եղբարք սորա Աղեքսանդրոս և Անտիգոնոս նենգիւ սպանին զմիմեանս ըստ մարգարէութեան հօրն իւրեանց, որ Աստուած նովաւ խօսէր ։ Զկնի Արիստաբուղեայ առ զպատիւն Յովհաննէս միւս եղբայրն իւր, որ կոչեցաւ Յաննէ, ամս քսանևեւթն, որ և չարչարէր զազգն իւր զՀրեայս ։

Յայսմ ժամանակի հալածեցաւ Պտղոմէոս 'ի Կղէոպատրեայ մօրէն իւրմէ, և թագա-

(1) Չիք ուրեք 'ի պատմագիրս Սխտոխս անուն թագաւոր Պարթեւաց, ոչ Պարսից և ոչ Հայոց, և ոչ 'ի գիրս Եւսեբեայ յիշատակի այս. վասն որոյ թուի այլափոխութիւն իմն լեալ 'ի բնագիրն Միխայելի, քանզի և երկոքին իսկ թարգմանութիւնք ունին Սխտոխս ։

ւորեաց Պտղոմէոս Աղէքսանդր ամս տասն։ Ի վեց ամին սորա բարձան Թագաւորքն Ասիացւոց և Ասորւոց, և հնազանդեցաւ Անտաք Հռոմայեցւոցն։ Յայսմ տեղւոջ Գիրք հին Կտակարանացն կատարեցան։ ՅԱդամայ լինին ամք հինգ հազար եւթանասուն և երկու, և աստի մինչեւ 'ի ծնունդն Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի՝ ամք հարիւր քըսան և չորս։ Եւ Թիւք ժամանակաց Թագաւորացն Ասիացւոց 'ի Սելեւկոսէ, որ զկնի մահուանն Աղէքսանդրու մինչեւ տիրեցին Հռոմայեցիք՝ ամք երկերիւր և վեշտասան։

Ի Թուին (Ասորւոց) ՄԻԲ (222), դարձաւ Պտղոմէոս հալածեալն՝ յաթոռ իւր, (և եկաց) ամս ութ։ Ի Թուին ՄԼԷ (237) Թագաւորեաց Պտղոմէոս Դիոնէսիոս ամս երեսուն, որ էր որդի Սովտերայ և եղբայր Կղէոպատրեայ (1)։ Ի հինգ ամին Պտղոմեայ մեռաւ Յովհաննէս Անիա որ և Աղէքսանդրոս, և առ զթագաւորութիւնն կին նորին Աղէքսանդրա, որ կոչեցաւ Սաղինէ, ամս ինն, և էր օրինապահ։ Սա ունէր երկս որդիս, Հիւրկիանոս և Արիստաբուլոս և Անտիգոնոս։ Եւ եղեւ Հիւրկիանոս քահանայապետ և եղբայրն վիճէր ընդ նմա մինչեւ առ զթագաւորութիւնն։ Եւ եկն Պոմպէոս զօրավարն Հռոմայ, և

(1) Եւսեբիոս. Քրոն. Հտ. Ա. յեր. 246. ուր զԴիոնէսիոս կոչէ նոր Դիոնիսոս։

տարաւ կապանօք զԱրիստաբուլոս և կացոյց զՀիւրկիանոս քահանայապետ ամս երեսուն և չորս ։ Սա շինեաց զպարիսպն Երուսաղէմի զքակեալն 'ի Պոմպէէ ։ Եւ աստ եղեն Հրեայքն հարկատուք Հռոմայեցւոցն ։ Եւ բազում աշխարհ հաւանեցոյց Պոմպէոս 'ի Հայոց և յԱսորւոց և յԱրաբացւոց. և մեծացաւ Պոմպէոսս այս մինչեւ Տօ-կրատոր (1) անուանեցաւ ։

Եւ յայսմ ժամանակի մեռաւ Պտղոմէոս, և թագաւորեաց Կղէոպատրէ (2) ամս քսանևերկու ։ Ի յերկրորդ ամին սորա ըսպանաւ Պոմպէոս 'ի Գայիոս Յուլիոսէ ։

Յայսմ ժամանակի էր Հերովդէս. և այս է ազգն նորա ։ Այր մի Անթիպատրոս անուն Ասկաղոնացի՝ որդի Հերովդի քրմապետի կռոցն Ապողոնի ։ Այս Անթիպատրոս գերեցաւ յԻդումայեցւոցն, և հայր նորա Հերովդէս չկարաց փրկել զնա, և սնաւ և մեծացաւ յԻդովմայեցիս. և առ 'ի կնութիւն զդուստր Արետայ թագաւորին Արաբացւոց զԿուփրիտէ (3) և սա եղեւ բարեկամ Հիւր-

(1) Ընթերցիր Աւտոկրատոր. Autocrate, որ նշանակէ բացարձակ տէր. զայս անուն տային Հռոմայեցիք ինքնակալաց ։

(2) Այն է յիշատակեալն վերագոյն քոյր Պտղոմէայ Դիոնէսիոսի ։ Յօրինակիս սխալմամբ գնի թագաւորել սորա ամըս երկու փոխանակ գնելոյ քսան և երկու. որպէս եդաք ։

(3) Եւսեբիոս (Քրոն. Հտ. Բ. յեր. 254) զԿիպրէ արաբացի՝ ասէ լինել մայր Հերովդի, և ոչ կին ։ Տես և 'ի Յովսեփ .

կանեայ քահանայապետին, որ և օգնէր նը-
մա ընդ. եղբօրն կռուելով: Գնացեալ վասն
նորա առ Պոմպէոս, և եղեւ ծանօթ Հռո-
մայեցւոց, և կացուցին զնա իշխան Հրէից.
և եղեալ էր նմա որդիք Յովսէփ և Փրօրա
և Փեռաղոս (Փեռայէլ) և Հերովդէս, չորս
որդի և դուստր մի անուն Սողոմէ: Եւ եղեն
Յովսէփ և Փեսաղոս ընդ հօրն եւրեանց իշ-
խանք Հրէից: Եւ ոմն. 'ի Հրէից (1) դե-
ղով սպան զԱնթիպատրոս երկու որդւովքն.
և եղեւ Հերովդէս փոխանակ հօրն իշխան
Հրէից: Եւ 'ի կարեաց ժամու երթայր նա
'ի Հռոմ, և ծանօթացաւ նոցա:

Եւ յայսմ ժամանակի եկն զօրավարն
Հայոց Բարզափրան և գերեաց զՀրէաստան,
և տարաւ դերի զՀիւրկիանոս և զՓրօրա
եղբայրն Հերովդի. և Հերովդէս փախստա-
կան անկանի 'ի Հռոմ: Եւ առ զԹագաւո-

պոռ Փլաւիանոս (Յղ. Պատեր. Հր. ըստ հայ Թարգմանութեան Գիրք. Ա. Գլ. Ձ) որ Կիպարիս անուանէ զմայրն Հերովդեայ:

(1) Յովսեպոս պատմէ (Յղ. պատերազ. Հր: Գրք. Ա. Գլ. Թ. ԺԳ.) եթէ Մաղքոս անուն ոմն դաւաճանեաց ընդ-կեանս Անթիպատրի 'ի կոչունս 'ի ձեռն ծառայից Հիւր-կանեայ, և զՅովսէփ որդի նորա 'ի ձեռն Պապիայ ուրումն անուանելոյ: Իսկ վասն Անտիգոնոսի ասէ, ածեալ զնա Սոփիայ կուսակալն Ասորւոց առ Անտոնիոս, սակրով սպա-նեալ: Զ Հիւրկանեայ ոչ ինչ որոշակի ծանուցանէ Խորենացի. իսկ Յովսեպոս (Յղ. Պատեր. Հր. Գիրք Ա. Գլ. ԺԵ) ասէ, եթէ առ կասկած սրտի իւրոյ փաղաւտելոյ՝ սպան զնա Հե-րովդէս յետ դարձին նորա 'ի գերութենէ Հայոց:

րութիւնն 'ի վերայ Հրէից, և կկեալ սպան զԱնտիգոնոս զոր եդեալ էր Հայոց, և ինքն նստաւ։ Եւ յորժամ դարձաւ Հիւրկիանոս 'ի Բագրատունեաց(1) յարձակմանէ յԵրուսաղէմ, եւ զնա սպան Հերովդէս և զորդի նորա զՅովնաթան։ Եւ աստ կատարեցաւ բանն թէ, «Ո՛չ պակասեսցէ պետ և իշխան 'ի Յուդայէ, մինչեւ եկեսցէ որ իւր է թագաւորութիւնն.»(2) զի աստ պակասեցան պետքն Հրէից։

Եւ եկն Տէրն արքայորդին ծննդեամբ 'ի Բեթղեհէմ, 'ի կատարման եւթներորդացըն Դանիէլի (որ ասէ). «Եւթներորդք եւթըն, և եւթներորդք վաթսուն և երկու.»(3) որ լինին ամք չորեքհարիւր ութսուն երեք՝ սկսեալ 'ի վեց ամէն Դարեհի մինչեւ յաւիտեան։ Որ և կայ 'ի թարգմանութիւնն Եբդարու, թէ Դանիէլ հիւանդացեալ մեռանէր 'ի վերայ Տիգրիս գետոյ, և անկեալ 'ի վերայ երեսացն գոչեաց առ Տէր. «Ցոյց ինձ Աստուած զՔրիստոսն քո, մինչչեւ մեռեալ իցեմ.» և եկն առ նա Գաբրիէլ և ասէ. «Հանգիր դու 'ի խաղաղութիւն, այր ցան-

(1) Առ Հերովդեաւ Արշակունիք և ոչ Բագրատունիք թագաւորէին 'ի վերայ Հայոց. ուստի յայտնապէս սխալ է աստ փոխանակ գրելոյ 'ի Թագաւորաց։

(2) Ծննդոց. ԽԹ. 10։

(3) Դան. Թ. 24—27։ Եւսեբիոս ԻԹ. 20։

կութեանց, զի դեռ չեւ է ժամանակն. այլ մինչեւ կատարին եւթնեքորդքն քո, ապա գայ Քրիստոս և խաչիւ մեռանի. և ազատէ զձեզ 'ի դժոխսն առ ձեզ եկեալ. և արդ մխիթարեա զքեզ յուսով գալստեան նորա:» (1)

Եւ մինչ 'ի տեսիլն Դանիէլի՝ թագաւորացն պատիւն Ռոմբիոս լինէր կոչեցեալ. և աստիսկզբան Աւտոկրատոր (Ինքնակալ) կոչել(2): Եւ յայնմ ժամանակի կուռք՝ որ կայր յՈղիմպիոս, շանթիւք այրեցաւ, յորժամ թագաւորեաց Օգոստոս կայսրն: Եւ նոյն կայսրն զԼուսիտանիա կղզին քակեաց, և սկսաւ զմի մի 'ի կղզեաց քակել. վասն զի գռաւմռոտութիւն (խռովութիւն) 'ի կղզիս(3): Բայց նախ Գայիոս, որ և Յուլիոս կոչեցաւ, կայսր 'ի լեզուն Հռոմայ, զի մօրն մեռելոյ (յարգանդէ) հանաւ կենդանի մանուկն. և քա

(1) Դանիէլ Թ. 21.

(2) Աղօտ են բանք այսր հատուածիս. միւս թարգմանութիւնն փոխանակ Բոմբիոսի՝ ունի Բոբիոս, որ և այն ոչինչ իմաստ ընծայէ: Զկնի Տարկինոսի վերջնոյ թագաւորին Հռոմայ, որ եկաց յաթոռն 'ի փոխանակ դեռութեանն Հռոմէից 'ի Բաբելոնի, նստան հիւպատք բռնաւորանք. և երբեմն ամպերտաւք և դիկտատորք մինչեւ ցՅուլիոս Գայիոս որ կոչեցաւ ինքնակալ. Աւտոկրատ (Autocrate): Իսկ բառս Բոմբիոս մարթ է առնուլ իբրեւ մակդիր և անուն պատուոյ հիւպատիցն. իբր հռոմէական. և առոյգ զայս նշանակութիւն առ բառդ 'ի Լատինականն: Տես և յԵւսեբիոս 'ի Քրոնիկոնին, յեր. 204.

(3) «Կայսր զԼուսիտանիա և զամենայն յԱփրիկեան կղզիս քանդեաց.» Եւսեբ. Քրոն. Հտ. Բ. յեր. 250.

րեքադղ եղեալ Թագաւորեաց, որ խափա-
նեալ էր Թագաւորութիւնն Հռոմայեցւոց
ամս չորեքհարիւր վաթսուն և երկու, 'ի
Տարկիւնոսէ մինչեւ 'ի Գայիոս Յուլիոս։
Եւ 'ի շինելոյն Հռովմայ մինչեւ 'ի կրկնակի
Թագաւորութիւնն եւթն հարիւր և երկու
ամ։ Այս Գայիոս Յուլիոս լինեալ յԵգիպ-
տոս հաստատեաց զԹագաւորութիւնն Կղ-
ղէոպատրեայ կնոջ։ Եւ Գայիոս կոչեան Թարգ-
մանի։ Այսէ Անդրոնիկոս[1] Թէ, հինգ ամ Թա-
գաւորեաց և ապա սպանաւ գաղտ։ Եւ Թա-
գաւորեաց Օգոստոս ամս յիսուն և վեց
և ամիսս վեց։

Ի յութ ամին Օգոստեայ Թագաւորեաց
Հրէից Հերովդէս և խափանեաց զԹա-
գաւորութիւնն և զքահանայութիւն նո-
ցա, զի ընդ ձեռամբ արար զվակամն և
տայր կաշառօք։ Եւ Թագաւորեաց ամս ե-
րեսուն և հինգ. և զառաջինն ոչ ընդու-
նէին զնա յԵրուսաղէմ, մինչեւ արար պա-
տերազմ և քակեաց զերկու պարիսպն, և
զքաղաքն կոտորեաց 'ի Հրէիցն, և ապա
տիրեաց 'ի վերայ նոցա։ Եւ սա արար որ
յամենայն ամի քահանայապետ փոխէր։ Սա

(1) Միւս Թարգմանութիւնն գնէ, «որ է Անդրոնիկոս կոչեցեալ յաժմանցս, իսկ բառդ նոյնոն ոչ ինչ 'ի հայումս նշանակէ. Թերեւս պարտի գրել Գայիոսն, որ և 'ի Ցոյն և 'ի Լատին լեզուին որպէս և առ մեզ՝ նշանակէ գեղարդն, նիզակ.

առաքեաց 'ի Բաբելոն և ետ բերել զԱնա-նէ (1), և արար զնա քահանայապետ ամ մի. որ չէր Ղեւտացի։ Եւ զկնի նորա արար զԱրիստաբուլոս որդի Հիւրկանեայ քահա-նայապետ ոսի զեղբայր կնոջ իւրոյ . և սպան զնա և հաստատեաց զԱնանէ։ Բայց Թէպէտ և փոխեցաւ սահման օրինացն և ամի ամի կաշառօք ունէին և փոխէին զմիմեանս . և այսու պատճառաւ բազում էին քահանայա-պետք , այլ 'ի ժամ մտանելոյ 'ի Սուրբն Սրբո-բոց ոչ ոք 'ի նոցանէ համարձակէր , այլ ըզ-Զաքարիա և զԱբիա կարգէին մտանել , որք չէին այնպիսիք , այլ ըստ օրինացն և արդարք։

Ի յերրորդ ամին Հերովդի եղեւ Սամու-սատ ընդ Հռոմօք , յաղթեալ զօրացն Հայոց որ կային 'ի վերայ Եփրատ գետոյ , և տային հարկս 'ի Միջագետաց (2)։ Յայսմ ժամանա-կի զօրավարն Օգոստեայ Անտոնինոս ապըս-տամբեալ յՕգոստեայ՝ Թագաւորեաց և սի-րեաց զԿղէոպատրա գնալով յԵգիպտոս 'ի համբաւ նորա ։ Եւ եկն 'ի վերայ նորա Օ-գոստոս և ըմբռնեաց զնա և աղաչանօք սին-կղիտոսացն ապրեցաւ և խաղաղացան. և մեծ գերութիւն առաքեաց յայսմ կողմանէ 'ի Հռոմ Օգոստոսն ։ Եւ Կղէոպատրա ունէր նենգութիւն ընդ Հրեայս և ընդ Արաբա-

(1) Ըստ Եւսեբեայ Անանէլոս։
(2) Մովսէս Խորն. Գիրք Բ. Գլ. 21.

ցիս, և խնդրեաց յԱնտոնինոսէ իշխանութիւն ՚ի վերայ նոցա, և ետ նմա. և այս պատճառաւ եղեւ երկրորդ խռովութիւն Օգոստեայ ընդ Անտոնինոսի. և դարձեալ յաղթեցաւ Անտոնինոս և Կղէոպատրա, որք ՚ի միասին ընդդիմացան Օգոստեայ։ Իսկ յորժամ տեսին զպարտութիւն անձանց իւրեանց, անձնասպան եղեն երկոքին՝ Անտոնինոս և Կղէոպատրա. և Օգոստոս սպան զԱրեգակն և զԼուսին զորդիսն Կղէոպատրեայ (1)։ Իսկ յայսմ ժամանակի բարձաւ թագաւորութիւնն Պտղոմեանց յԵգիպտոսէ որ Յունաց կոչէին, տեւեալ ամս երկերիւր իննսուն և վեց, և եղեն ընդ Հռոմօք։ Իսկ են ոմանք որ ասեն թուեն զժամանակն Օգոստեայ, որ կոչեցաւն Սեբաստոս, որ է յաղթող (2), յորժամ սպանան Անտոնինոս և Կղէոպատրա և որդիք իւր։

Իսկ յայսմ ժամանակի երեւեցաւ Յուդա գալիլեացին ՚ի Գամաղա քաղաքէ։ Սա և Սադովկ փարիսացին յարեան և ասացին. «Չէ արժան մեզ հարկս տալ Հռոմոց։» Յիննևտասն ամին Օգոստեայ առաքեաց զՏիբերիոս զօրապետն իւր ՚ի Հայս (3), և

(1) Եւսեբիոս Քրոնիկոն. Հտ. Բ. յեր. 256։

(2) Սեբաստոս կամ Սեւաստոս ըստ Յունաց նշանակէ Ագոստոս, և ոչ յաղթող. զոր Միխայէլ չփոթէ ընդ միմեանս։

(3) Միւս թարգմանութիւն ունի ԺԸերորդ։

առար ընդ նոսա խաղաղութիւն. և դար-
ձեալ 'ի Հայոց՝ գնացեալ 'ի կիւրենական աշ-
խարհն, առար զնոսա հնազանդս, որ է անդր
քան զԵգիպտոս: Յայսմ ժամանակի շինեաց
Հերովդէս զՍամարիա, և Սեբաստիա կո-
չեաց յանուն Օգոստեայ. և շինեաց զՓա-
նիոն 'ի Փանիա (1), և մեծացոյց զարքունի-
սն Երուսաղէմ: Եւ շինեաց զանուանեա-
լն աշտարակ Ստրատոնեան՝ քաղաք, և ա-
նուանեաց Կեսարիա յանուն կայսեր. և
նորոգեաց զԳաբաա 'ի Գալիլեա: Եւ սա
յաձախ առար հեղումն արեանց. և սա ըս-
պան զկին իւր Մարի (2) անուն, և սպան զա-
մենայն օրինագէտ և զիմաստուն այր Հրէ-
այ: Եւ յայսմ ժամանակի եղեն աւետիք
Սրբոյ Կուսին. և յետ ինն ամսոց և հինգ
աւուր՝ ծնունդ կենարար Բանին Աստուծոյ
Տեառն մերոյ ՅԻՍՈՒՍԻ ՔՐԻՍՏՈՍԻ 'ի քառա-
սուն երեք ամին Օգոստեայ և յերեսուն
երեք ամին Հերովդի, և 'ի Թուին Ասորւոց
երեք հարիւր հնգետասան: ՅԱդամայ մին-
չեւ 'ի ծնունդն Քրիստոսի՝ ամք հինգ հա-
զար երկերիւր ութսուն և չորս. այս ըստ
Եւսեբի, իսկ ըստ Եւթանասնիցն՝ ամք հինգ

(1) Եւսեբիոս, Քրոնիկոն. Հտ. Բ. յեր. 258:

(2) Այն է Մարիամնէ կամ Մարիամնէ Թոռն Հիւրկա-
նեայ վերջնոյ, զոր 'ի դրդութենէ քեռ իւրոյ Սաղոմեայ՝ ըս-
պան Հերովդէս: Յովսեպ. Յղ. պատերազմ. Հր. Գիրք. Ա.
Գլ. ԺԷ:

հազար հարիւր իննսուն և ութ . և ըստ Ե-
նանոսի՝ ամք հինգ հազար իննսուն և մի . և
ըստ այլոց՝ հինգ հազար հինգ հարիւր և ե-
րեք . և ըստ Ասորւոցն՝ ամք հինգ հազար քը-
սան և վեց : Եւ էր մուտ տարւոյն երկուշա-
բաթ , և երկոտասանալուսնեայ էր տարին :

Ի քառասուն և երեք ամին Օգոստեայ
առաքեցաւ Կիւրինոս իշխան 'ի Սինկղիտո-
սէն Հռոմայ գրել զազգն Հրէից և դնել
գլխահարկս վասն պատճառի Յուդայի Գա-
լիլեացւոյն և այլոց բազմաց , որք ասէին՝
«Չէ պարտ է մեզ հարկս տալ մահկանացու
մարդոյ [1] : » Եւ լսելի եղեւ բանն 'ի Հը-
ռոմ և բարկացան , և արարին բան զոր չէր
լեալ մինչեւ ցայնժամ , և 'ի նմին ժամանա-
կի յայտնեցաւ Տէրն մեր ծննդեամբ : Յի-
շէ զայս ժամանակս Լուգիանոս հռոմայեցի
որ կայր յայսմ կողմանէ , և գրէր առ կայսր
զպատահեալսն . գրեաց և ասաց , թէ «Պա-
րսիկք եկին մտին յիշխանութիւնքո , և մա-
տուցին պատարագ տղայի միոյ ծնելոյ 'ի
Հրէաստանի . և թէ ով է , կամ ո՞յր որդի ,
դեռ չեմք լուեալ : » Եւ գրեաց կայսրն թէ,
«զՀերովդէսդ արքայ կացուցեալ եմք 'ի վե-
րայ Հրէիցն , նա գրէ առ մեզ : » Եւ եկին
մոգքն յերեսուն և հինգ ամին Հերովդէսի
Եւսեբի և Նիւսացին ասեն , թէ յորդւոցն

(1) Գործ . Ե . 36—37 :

Բաղաամու մոգքն էին, և Յակովբ ուռհայ-
եցին ասէ, թէ յազգէն Իլամայ Սեմացիք
էին. և այլք ասեն, որդիք թագաւորացն
Արաբայ և Սաբայ էին ըստ Դաւթի բանի-
ցըն (1). և երեք թագաւոր էին, զի երեք
ցեղ պատարագ մատուցին: Եւ ոմանք ութ
թագաւոր ասեն, որպէս Միքիա ասէ. «Ութ
վարիչ մարդկանց»(2): Եւ սուրբն Յակովբ եր-
կոտասան իշխան պատէ, որ գտեալ էր գիրք,
թէ երեքհազար ձիաւոր և հինգ հարիւր
հետեւակ ունէին: Եւ յորժամ եկին ՚ի
յԵփրատ գետ, ՚ի տեղին որ ասի Կալանի-
կոս, որ է Սախղա, և լուան թէ սով է
՚ի Հրէաստանի, և թողին անդ զգաղումն, և
երկոտասան իշխան հազար հեծելով գնա-
ցին և տեսին. և յորժամ տեսին, դարձան
առ զօրս իւրեանց, որոց անուանք են այս.
Դահանդուր որդի Արտաւազայ. Շաթէփ
որդի Պուդբարայ. Արշակ որդի Մահդու-
դայ. Զրուանտ որդի Վարիդադայ. Արի-
հու որդի Խոսրովու. Արտաշէս որդի Սու-
լխաթայ. Եշթանքուպա որդի Իշրոնայ.
Մեհդաւք որդի Հաւմայ. Աքշիրիշ որդի
Սահապանայ. Սալտանա որդի Բելտա-
նայ. Մարուդոք որդի Բելայ: Եւ թագա-
ւորին որ առաքեաց զնոսա՝ Փիր-Շապուհ
անուն: Կէսք երկու ամաւ յետ ծնըն-

(1) Սաղմ. ՀԱ. 10: (2) Միքիա Ե. 5.

դեռանն ասեն զգալ մոգուցն. բայց Հայք ասուգեն թէ երկու ամաւ յառաջ գուշակեցաւ աստեղն, և եկին 'ի գալ. և յերեկոյն ծնաւ Տէրն, և մոգքն վաղն եկին: Եւ մնաց Մարիամ Աստուածածինն 'ի Բեթղահէմ զքառասուն օր, և ապա դնաց 'ի Տաճարն. և ընկալեալ 'ի գիրկս իւր զՕծեալն՝ Սիմէոն ծերունին, որ հրամանաւ Հոգւոյն պահեցաւ կենդանի 'ի Պտղոմեայ ժամանակացըն, որ մի էր 'ի Թարգմանչացն, և 'ի գրելն զԵսայի մարգարէ, եկեալ 'ի տեղին որ ասէ. « Ահա կոյս յղասցի և ծնցի [1]. » Եւ յորժամ գրեաց՝ դարձեալ զըջացաւ, և ասաց. « Հեթանոսք զիա՞րդ հաւատան այսմ, այլ ծաղր առնեն զմեզ. » և ջնջեաց առ ժամայն զգրեալն, և դարձեալ տրտմեցաւ և ասաց. « Ապա թէ իմ ընկերքն գրեն, ապայն լինիմ. և լինի հակառակութիւն: » Եւ 'ի տրտմութենէն ննջեցին ինքն և ընկերքն իւր, և 'ի զարթնուլն տեսին գրեալ զարմանալի գրով որպէս ոսկեղինաւ: Եւ խնդացեալ Սիմէոն ելաց և երանեաց զժամանակն կուսածին և զայնս որ տեսանէ և զշուրթն որ համբուրէ զԷմմանուէլին: Եւ ասէ ցնա Հոգին. « Մի՛ տեսցես զմահ մինչեւ տեսցես դու զՕծեալն. » և կատարեցաւ բան Տեառն. Եւ յայն ժամն վաթսուն ամաց էր Սիմէոն.

(1) Եսայ. Է. 14.

և երեքհարիւր քառասուն և չորս ամ այլ առաջնեցաւ մինչ որ հասաւ երանութեանն ։ Իսկ Յովսէփ և Մարիամ հանդերձ մանկամ-բըն գնացին ՚ի Նազարէթ յետ ընծայելոյն . և հրամանաւ հրեշտակին գնացին ՚ի Ե-գիպտոս յետ վաթսուն և երկու ամին ծնըն-դեանն Տեառն , և այլք ասեն՝ թէ զկնի եր-կու ամի գնացին ։

Եւ Հերովդէս կոտորեաց զմանկունսն խաբեալ ՚ի Մոգուցն , և վրդովեալ այրեաց զգրեանն Հրէից , և ջնջեաց զյիշատակ թա-գաւորութեանն և զքահանայութեան՝ զի ինքն իցէ . սեպհական և որդիք իւր ժա-ռանգ թագաւորութեանն ։ Բայց Յովսեպ-պոս և յայլ աշխարհ պահեցան գրեանն խը-նամովն Աստուծոյ ։ Եւ Տէր. եհար զՀերով-դէս չարաչար ցաւօք յոտից մինչեւ ցգլուխ, և տորորեցաւ ամենայն անդամօք , և բժիշկք ոչ կարէին օգնել նմա . և եդին զնա ՚ի ջեր-մին ձէթ ; և խստեաց ցաւն ։ Եւ ըմբըռ-նեալ զգլխաւորս Հրէիցն՝ և եդ ՚ի բանտի , և պատուիրեաց փեսային իւրում Աղեքսին և քեռ իւրում Սողոմէի , զի ՚ի մահուան նորա սպանցեն զնոսա , զի ակամայ Հրեայ-քըն լացցեն յաւուր մահուան նորա . զոր և արարին իսկ ։ Եւ նա մեռեալ ՚ի դառն ցաւոց սպան զանձն , և չարամահ եղեւ յերեսուն և հինգ ամի թագաւորութեան

իւրոյ[1] ։ Եւ կացոյց Օգոստոս Թագաւոր զԱրքեղայոս զորդի Նորա՝ ամս ինն ։ Եւ զկնի ինն ամի տուաւ յաքսորս ՚ի Վիենան քաղաք վասն չարեաց իւրոց[2]․ և առ զիշխանութիւնն Հերովդէս չորրորդապետ ։ Եւ ՚ի նմին ամին մեռաւ Օգոստոս և Թագաւորեաց Տիբեր ամս քսան և երկու ։

Առաջին Հերովդեան ունէր ինն կանայս և ութ որդիս ։ Ի Դոսիթայէ (Դոսիթէա) Անթիպատրոս եղեւ, այն որ սպան զերկուս եղբարս իւր, և սպանաւ ՚ի Հօրէն իւրմէ ։ Եւ ՚ի Մարէ (Մարիամնէ) դստերէ Հիւրկիանեայ[3] ծնաւ զԱղեքսանդրոս և զԱրիստաբուլոս, զոր սպան Անթիպատրոս, և զՀերովդէս՝ որ կոչեցաւ Անթիպատրոս, այն որ ետառ զՀերովդիադա և սպան զՅովհաննէս[4]։ Եւ ՚ի Մեղքասա սամարացւոյն ծնաւ զԱրքեղայոս, որ Թագաւորեաց զհետ Նորա ։ Եւ ՚ի Կղէոպատրեայ երուսաղէմացւոյն միւս Հերովդէս և Փիլիպպոս, որ ունէր զՀե-

(1) Յովսեպոս․ (Յղ․ պատմ․ Հր․ Գիրք Ա․ Գլ․ ԻԱ)։

(2) Յովսեպոս․ (Յղ․ պատմ․ Հր․ Գիրք Բ․ Գլ․ Ը․) և Եւսեբիոս (Քրոն․ յեր․ 262․) կոչէն Նոյնպէս Բիենա կամ Բիէննա․ ՚ի Գաղղիացւոց երկրին․ և այն իսկ է Վիեննա մայրաքաղաքն Աւստրիոյ։

(3) Մարիամնէ ոչ դուստր՝ այլ Թոռն էր Հիւրկանեայ և դուստր Աղեքսանդրի։

(4) Այս Հերովդէս ոչ Թոռն էին Հիւրկանեայ է որդի․ այլ միւս Մարիամնեայ դստեր Սիմոնի քահանայապետին։

բոմդխադա կին ; և առաւ յեղբօրէն . զկնի և ինքն Փիլիպպոս սպանաւ 'ի Նմանէ ։ Եւ 'ի Բաղտայէ՝ Փիլասլոս ( Փասայէլ ) ։ Եւ որդիք որդւոցն Նորա են այսոքիկ . Արիստաբուլեայ եղբօրն Աղէքսանդրի եղեւ որդի Հերովդէս , որ և թագաւորեաց 'ի Գաղիլեա ։ Եւ Ագրիպպաս որ կոչեցաւ Հերովդէս , այն որ սպան զՅակովբ զեղբայրն Յովհաննու , և որդնեռուաց եղեալ մեռաւ ։ Եւ ժանեաց սա զհօրեղբայրն իւր , և էառ զթագաւորութիւնն . և եղեւ սմա որդի Ագրիպպաս , որ թագաւորեաց զկնի Նորա ։ Եւ դստերք Բերինիկէ և Դրուսիլա , որ եղեւ կին Փելիքսայ իշխանին ։ Ի չորեքտասան ամին Տիբերեայ, որ է ՅԼԷ (337) Թուին , առաքեցաւ Պիղատոս իշխան Հրէաստանի , և յետ տարւոյ միոյ , որ է յԱդամայ հինգ հազար հինգ հարիւր երեսուն և եւթն, մկրտեցաւ Տէրն 'ի Յորդանան 'ի Յովհաննէ , յունվարի 'ի վեց և 'ի տիբէթի քսան և մի , յաւուր կիւրակէի ։

Եւ 'ի նոյն ամի Գերմանիկոս կայսրն զօրացաւ 'ի վերայ Պարթեւաց և Տիբեր ընդ Տուբերթէոս (Դրուսոս) արար հաղորդ իշխանութեան իւրոյ և ինքն դեղով մահու սպանաւ . և 'ի նոյն ամի արքունիքն Անտիոքի այրեցաւ[1] . և 'ի Տիբերեայ ժամանակին շինեաց

(1) «Պատմչի Թէոդորեան հրէից եղեւ ։» Եւսեբ. քրոն. յեր. 262 ։

ռաւոր մեծհռչակ ։ Ե․ Փիլիպպոս յաջորդէ Նեկրայ, 'ի Նեգատիքդաւ․ քարոզեաց յԱփ-րիկէ և թաղեցաւ 'ի Փռիգեա ։ Զ․ Բարթո-ղիմէոս յաջորդէն Իսաքարայ յԱդաւբիր գերդէ, քարոզեաց 'ի Հայաստանեայս, և անդ կա-տարեցաւ սքանչելի նահատակութեամբ 'ի Ալբանոս քաղաքի(1), որ այժմ կոչի Հաղբակ, 'ի Սանատրկոյ յամբարշտէ և յանօրէն թա-գաւորէն ։ Է․ Թովմաս յաջորդէն Յուդայ, քա-րոզեաց Պարթևաց և Մարացեաց և Հնդ-կաց, և անդ նահատակեցաւ ։ Ը․ Մատթէոս յաջորդէն Իսաքարայ, 'ի Նազարեթէ, մեռաւ 'ի Բաբաղա և թաղեցաւ յԱնտիոք․ և յետոյ տարաւ յայնկոյս ծովուն ։ Թ․ Սիմոն կա-նանացին յաջորդէն Նեփթաղիմ, ննջեաց 'ի Հռո-մա․ և յայլ տեղ գտաք, թէ 'ի Կիւրիա ։ Ժ․ Յուդա՝ որ կոչեցաւ Թադէ․ որ վասն խնա-տութեան իւրոյ առէին Ղեբէոս, որ է սիրտ և հոգի, քարոզեաց 'ի Հայս և յԱսորիս, և կատարեցաւ 'ի Սանատրկոյ 'ի Հայս, 'ի տեղ-ւոջն յորում եհար զվէմն և բղխեաց աղ-բիւր․ երեքտասան ամն ․ երկոտասանն յա-ռաքելոցն անուն, և միւսն փրկչին մերոյ Յիսուսի Քրիստոսի․ որ կայ մինչև ցայսօր 'ի բժշկութիւն ամենայն ախտից և հիւան-դութեանց ։ Նա է պատուական մարմին և

(1) Այս քաղաք կայ 'ի գիրս Մովսիսի խորենացւոյ Ա-շխարհ․ Թ․ 31 ։

ռաւոր մահուամբ։ Ե. Փիլիպպոս յաջորդէ Անդրեայ, ՚ի Բեթսայիդա. քարոզեաց յԱփրիկէ և թաղեցաւ ՚ի Փռիգիա։ Զ. Բարթողիմէոս յաջորդէն Իսաքարայ յԱդաւիր գեղջէ, քարոզեաց ՚ի Հայաստանեայս, և անդ կատարեցաւ զքանչելի նահատակութեամբ ՚ի յԱլբանոս քաղաքի(1), որ այժմ կոչի Հաղբակ, ՚ի Սանատրկոյ յամբարիշտ և յանօրէն թագաւորէն։ Է. Թովմաս յաջորդէն Յուդայ, քարոզեաց Պարթեւաց և Մարացեաց և Հնդկաց, և անդ նահատակեցաւ։ Ը. Մատթէոս յաջորդէն Իսաքարայ, ՚ի Նազարեթէ, մեռաւ ՚ի Պաքաղա և թաղեցաւ յԱնտիոք. և յետոյ տարաւ յայնկոյս ծովուն։ Թ. Սիմոն Կանանացին յաջորդէն Եփրեմի, ննջեաց ՚ի Հռոմա. և այլ տեղ գտաք, թէ ՚ի Կուրիա։ Ժ. Յուդա՝ որ կոչեցաւ Թադէ. որ վասն խնամութեան իւրոյ առէին Ղեբէոս, որ է սիրտ և հոգի, քարոզեաց ՚ի Հայս և յԱսորիս, և կատարեցաւ ՚ի Սանատրկոյ ՚ի Հայս, ՚ի տեղւոջն յորում եհար զվէմն և բղխեաց աղբիւր. երեքտասան ակն. երկոտասանն յառաքելոցն անուն, և միւսն փրկչին մերոյ Յիսուսի Քրիստոսի. որ կայ մինչեւ ցայսօր ՚ի բժշկութիւն ամենայն ախտից և հիւանդութեանց։ Նա է պատուական մարմինն և

(1) Այս քաղաք կոչի ՚ի գիրս Մովսիսի Խորենացւոյ Արեբանոս. Բ. 31։

նշխարք ոսկերաց նորա և սրբոյն Սանդխտոյ 'ի տեղւոջ նահատակութեան իւրեանց առ փոփեալ։ ԺԱ. Յակոբոս Ալփեայ որդի՝ յազգէ Մանասէի, որ մեռաւ 'ի Սրուճ։ Յուդա մատնիչն յազգէ Դանայ 'ի Սկարիովտայ գեղջէ։ ԺԲ. Մատաթէ փոխանորդն նորա՝ յազգէն Ռուբենի, յերկիրն մարդակերաց։

Գրեաց Յովսեպոս վասն Տեառն մերոյ այսպէս. «Եղեւ եղեալ յաւուրս մեր այր մի որում Յիսուս անէին. և բազում նշանօքն զոր առնէր նա, յայտնի էր՝ թէ նա է Քրիստոսն. և վասն նախանձու մատնեցին զնա Պիղատոսի դատաւորի։ Եւ սպանին զնա խաչիւ. և յետ երից աւուրց տեսին զնա կենդանի. և ոչ մեկնեցան 'ի սիրոյ նորա հաւատացեալքն 'ի նա, և մինչեւ ցայսօր աճէ հաւատ նորա. և ասուեցաւ թէ նա ինքն էր Քրիստոս որդին Աստուծոյ կենդանւոյ (1)։»

(1) Ի բնագրին այսպէս ունի. «Զայսու ժամանակաւ էր այր իմաստուն՝ անուանեալն Յիսուս, և եթէ արժան է զնա այր կոչել զնա. զի էր սքանչելագործ, և ուսուցիչ այնպիսեաց որք յօժարութեամբ ընդունէին զճշմարտութիւնն, և զբազումս 'ի Հրէից անտի և 'ի հեթանոսաց աշակերտս ունէր։ Քրիստոսն իսկ է նա, զոր չարախօսեալ իշխանաց ազգին մերոյ, Պիղատոս եւս զնա 'ի սպանումն խաչի։ Սակայն այնպիսիք որ խանդաղանօք սիրեցին զնա, ոչ դադարեցին 'ի սիրոյ անտի նորա. զի երեւեցաւ նոցա յետ երից աւուրց միւսանգամ կենդանի, որպէս մարգարէքն Աստուծոյ զայս և այլ բազում ինչ սքանչելիս զնմանէ նախ խօսեցան։ Եւ մինչեւ ցայ-

Արդ՝ ըստ Յովհաննու վկայութեանն՝ Տեառն ընկալաւ հաւատ նորա երկոտասան առաքելովքն (1), զոր գրեցաք վերագոյն. և ապա ընտրեցան եւթանասուն և երկու աշակերտքն, որոց անուանքն են այս։ Ա. Ադդէ։ Բ. Ախէ։ Գ. Պաղար։ Դ. Անանիա։ Ե. Յակոբ։ Զ. Եղիա։ Է. Բառնաբա։ Ը. Մոսթենիս։ Թ. Կլէոպակոս։ Ժ. Յովսէփ։ ԺԱ. Նիկոդիմոս։ ԺԲ. Նաթանայէլ։ ԺԳ. Յուդա։ ԺԴ. Յուստոս։ ԺԵ. Շիղա։ ԺԶ. Բառնաբա։ ԺԷ. Յովհաննէս, որ նա ինքն է Մարկոս։ ԺԸ. Ամփոս։ ԺԹ. Նիճէ։ Ի. Յասոն։ ԻԱ. Մանիլ։ ԻԲ. Պուբլիքսիմոս։ ԻԳ. Աղեքսանդրոս. ԻԴ. Շմաւոն։ ԻԵ. Կիւրինէ։ ԻԶ. Լուկիոս։ ԻԷ. Կղէոպա։ ԻԸ. Սիմէոն։ ԻԹ. Յովսա։ Լ. Բուղիոս։ ԼԱ. Պիւսարոս։ ԼԲ. Զաքիդոն։ ԼԳ. Տիտոս։ ԼԴ. Պատրոբաս։ ԼԵ. Երմի։ ԼԶ. Ասինկրիտոս։ ԼԷ. Պըրիսկոս։ ԼԸ. Պուկաս։ ԼԹ. Արիստաբուլոս։ Խ. Պէմաս։ ԽԱ. Տիմոթէոս։ ԽԲ. Պեւլի։ ԽԳ. Եփրեմ։ ԽԴ. Հերմոգէս։ ԽԵ. Ափլուքանոս։ ԽԶ. Նիկիանէս։ ԽԷ. Յովհաննէս։ ԽԸ. Թէոդոս։ ԽԹ. Նիկոս։ Ծ. Մարտուլոս։ ԾԱ. Կասիոն։ ԾԲ. Զաքարիա, որդի այրւոյն, որ յարոյց ՚ի Նային։ ԾԳ. Միմոն բո-

ասը ժամանակի ոչ նուազ ժողովրդեան քրիստոնէից որ ՚ի նմանէ առաւանեալ էր»։ Յովհան. Եղ. պատմ. Հտ. Բ. 10.

(1) Յօրինակին առաքելովքն.

րոսն : ԺԴ. Ստեփանոս : ԺԵ. Ստաքիս : ԺԶ. Ապեղէս. ԺԷ. Իասոն : ԺԸ. Շմաւոն. ԺԹ. Յովսէփ, որ է Բառնաբաս : Ի. Աքիղաս : ԻԱ. Ամփիաս. ԻԲ. Յուլիոս : ԻԳ. Փիլիպպոս : ԻԴ. Պրոքորոն : ԻԵ. Նիկանովր. ԻԶ. Տիմոն : ԻԷ. Պարմենա : ԻԸ. Ագաբոս : ԻԹ. Կեփաս, զորմէ ասաց Պաւղոս՝ թէ ընդդէմ դարձայ նմա։ Եւ ինքն Պաւղոս անօթն ընտրութեան, որ թէպէտ և տրուպ գրէր զինքըն, այլ մեծ էր յամենեսեան :

Յայսմ ժամանակի երեւեցաւ իմաստասէրն Փիլոն, եբրայեցի-աղէքսանդրացի : Սա գրեաց զպատմութիւնս Հրէից և վասն Գայիոսի, որ արար զանձն իւր աստուած. և 'ի միայնակեացն Եգիպտոսի. և վասն արարածոցն մեկնութիւնս. և վասն վաստակոց երկրի. և վասն մնաց արդարոց, որ յորժամ զարթնու՝ աղօթէ : Եւ վասն աւերման լեզուաց. և վասն աշխատելոց 'ի վարդապետութիւնս, և վասն զանազանութեան անուանց գրենոց և երկու Կտակարանաց : Եւ վասն տեսլեանց և երազոց հինգ ճառս. և հինգ վասն ելանելոյ հոգւոյ 'ի մարմնոյ. և չորս վասն օրինացն, և այլս բազումս : Եւ յաւուրս Կղօդեայ կայսեր եղաւ գրեանք նորա 'ի տունն գանձուց թագաւորացն Հռովմայ :

Յայսմ ժամանակի եւթն հերձուած գը-

թուղթ աղաչանաց 'ի ձեռն Անանիայի (Անա-նեփի) հաւատարմին իւրոյ, աշխատել և զաւ-ան նա, և լինել թագաւորակից նմա. և հաւ-ւատաց 'ի նա և երկրպագեաց նմա յառաջ քան զչարչարանսն: Իսկ Յիսուս գրեաց պա-տասխանի և երանեաց զԱբգար, և խոստա-ցաւ յետ յարութեան իւրոյ առաքել նմա քարոզ և պատճառ կենաց զմի յաշակերտաց իւրոց: Նա նա վասն ջերմեռանդութեան սիրոյն զոր ունէր առ Տէր մեր, առաքեաց դար-ձեալ զՅովհաննէս նկարագիր (1), փոխել և բերել զպատկեր նորա, զի զանձն յայնմանէ վայելեսցէ. Իսկ զնացեալ Յովհաննէս ոչ կարէր հաստատել վայելչութեան գեղոյ նո-րա, այլ և փոփոխէր միտաւց 'ի միտս. և Տի-անայր նկարիչն: Իսկ ապա ողորմութեամբ և գթութեամբ աղբիւրն խնդրեաց զդաստա-ռակն և եդ 'ի վերայ երեսացն. և նկարեցաւ տիպն 'ի համաղերձեղէնն: Իսկ էր այս յառաջ քան զչարչարանսն քանն և չորս աւուրբք. և բերաւ և տուաւ Աբգարու: Իսկ մեծամեծ հրաշք և սքանչելիք լինէին 'ի նմանէ, մինչև եկն Թադէոս առաքեալն. Ի նոյն ամի խաչեւ

(1) Մովսէս Խորենացի (Բ. 29) և այլք. ասեն եթէ յա-ռաջնում նուագի յառաքել Աբգարու զԱնանէ պատուիրե-աց նմա հանել և զպատկերն Յիսուսի. բայց զերկրորդ գլխո-լոյն ոչինչ յիշատակեն. և մեւնոր Յովհաննէս 'ի Ցայսմաւուրս (Օգոս. 16) և ևթ զասանի յիշատակն. թերևս 'ի այն գրոց Միխայելի ասելով.

մեռաւ Տէրն և թաղեցաւ , և յարուցեալ երեւեցաւ աշակերտաց իւրոց , և հաստատեալ օրհնեաց զնոսա՝ խոստանալով զՀոգին սուրբ . և ինքն համբարձաւ յերկինս ։ Եւ 'ի նոյն ամի յաւուր Պենտէկոստէին Պեղատոս զպատկեր կայսերն եմոյծ 'ի Տաճարն, որպէս Յովսեպոս գրեաց, և յայնժամ եղեալ ձայն 'ի շնորհացն որ կայր անդ , ասէին .«Գընամք աստի , գնամք . և այլ ոչ եւս դառնամք ։» Յիշէ զայս և Փիլոն յերկրորդ գիրքն իւր ։

Եւ Ագրիպպաս գնաց 'ի Հռոմ ամբաստան զՀերովդէէ հօրեղբօրէ իւրմէ, և ըմբռնեցաւ 'ի Տիբերեայ(1) ։ Առ սա առաքեաց Աբգար արքայ Հայոց երկիցս անգամ վասն Քրիստոսի աստուածութեանն , եւ արտասուօք զՀրէիցն . գրեաց և 'ի Բաբելոն առ Ներսէհ , գրեաց և առ Պարսից թագաւորն(2) ։ Եւ եղեւ այս 'ի խնամոցն Աստուծոյ , զի 'ի նորութեան հաւատոյն հակառակութիւն մի լիցի , և վասն այսորիկ զառաջինն առանց ընդդիմութեան տարածեցաւ սուրբ Աւետարանն , և թուեաւ վաղվաղակի ժամանակ այսր թագաւորաց , որք ոչ հակառակէին վասն Քրիստոսի աստուածութեան , խորտակեալք 'ի յԱբգարու արքայէ , յառա-

(1) Յովսեպոս . Յշ . պատեր . Հր . Գիրք Բ . Գլ . ԺԱ .
(2) Մովսէս Խոր . Բ . 30 .

նրա, և 'ի տաճարս Հրէից պաշտել աստու-ածս (1). և առս կատարեցաւ ասացեալն 'ի Դանիէլէ «Պղծութիւն աւերածոյն (2)։»

Յայսմ ժամանակի Սիմոն և Կերինթոս և Մենանդրոս (3) երեւեցան։ Նոյն յայսմ ժամա-նակի Փիլոն և Պետրոս (առաքեալ) հանդի-պեցան միմեանց 'ի Հռոմ, և խօսեցան ընդ-իրեարս առաջի Կայիոսի։ Նոյն հարցեալ Փի-լոնի զՅովհաննէս աշակերտն Քրիստոսի, թէ «Ո՞ ինչ է Աստուած.» և պատասխանի տուեալ Յովհաննէս ասէ. «Սէր է Աստ-ուած։» Նոյն Փիլոնի հաւանեալ տարաւ 'ի տունն իւր արարեալ սէր. և հաստատեալ մկրտեցաւ։ Իսկ Կայիոս վասն կարի խրա-տութեանն սպանաւ 'ի Ներքինւոյ միոջէ, թագաւորեալ ամս չորս։ Նոյն թագաւորեաց Կղօդիոս ամս չորեքտասան։ Նոյն Ագրիպպաս թագաւորեալ ամս եւթն, և կացեալ չոր-րորդ ամս երիս, որ և ապա առ զՀե-րովդէին հարուած, և եհար զնա հրեշտակ Աստուծոյ և մեռաւ։

(1) Յովսեպոս 'ի գիրս Յղ. պատեր. Հր. Գիրք Բ. Գլ. ԺԲ. մանրամասն պատմէ զայնցս, և զպատճառն հրամանին Գայիոսի, որոյ և մահ' պատահեցեալ Պետրոնեայ վասն հեղ-գացեալ շարժելոյ 'ի կատարումն անիրաւութեան հրամանացն. և քան զդատապարտութեան մահուն' վաղ հասեալ առ նա լուր մահուան կայսերն. ազատի 'ի տառապալից կորստենէ։

(2) Դանիէլ. Թ. 27։

(3) Եւսեբիոս. Պատմ. Եկեղ. Գ. 26. 28։

Յամս Կղօդեայ 'ի սոնի Օստկին յանկարծ եղեւ ամբոխ յԱնդրուսաղէմ 'ի Տաճարին. և կոխեալ զմիմեանս մեռան երեսուն հազար անձինք։ Եւ Կղօդիոս կայսր Թագաւոր Հրէից զԱգրիպպաս որդի Ագրիպպայ, և ըզՓելիքս առաքեաց դատաւոր Գաղիլեացւոց և Սամարացւոց։ Եւ Թագաւորեալ Կղօդիոս ամս երեքտասան, մեռաւ 'ի տան իւրոյ։ Եւ ա՛ռ զԹագաւորութիւն Ներոն ամս երեքտասան։ Եւ սա առաքեաց զՓեստոս և եհան զՓելիքս, որոյ առաջի եկաց Պաւղոս։ Եւ դարձեալ եհան Ներոն զՓեստոս, և ետ 'ի տեղի նորա զԱլբինոս (1). և զսա ևս եհան և ետ զՖլորոս. և յաւուրս սորա ապըստամբեցին Հրեայք 'ի կայսերէ։ Յայսմ ժամանակի անկաւ հուր յերկնից 'ի Հռոմ. և այրեաց շինուածս բազումս, և ամբոխս մարդկան ընդ նոսա։ Իսկ Ներոն յերեքտասան ամին իւրոյ յարոյց հալածանս եկեղեցւոյ, և սպան զԱռաքեալսն։ Եւ առաքեաց յԱնդրուսաղէմ զՎեսպիանոս և զՏիտոս որդի նորա վասն ապստամբութեանն Հրէից։

Եւ 'ի Յուդքուդա (Յովդապատ) քաղաք ամրացեալ էր Յովսեպոս զօրավար և պատմագիր (2). և չոգաւ Վեսպիանոս և էառ ըզ-

(1) Յովսեպոս Աղբինոս զսա անուանէ, որոյ գործ անիրաւութեան գրեալ կան 'ի գիրս, Յղ. պատեր. Հր. Գիրք Բ. Գլ. ԺԴ — Եւսեբի. քրոն. յեր. 270։

(2) Նա ինքն է Յովսեպոս Փլաւիոս հեղինակն գրոց Հնու-

տասն այր ճաշակէին սուրբքն, և անսուրբքն ոչ կարէին ուտել. և որ կերանն, էին երկերիւր և տասն բիւր. վեց բիւր արով մեռան, և հարիւր տասն բիւր սովով, և տասն բիւր գերի վարեցան։ Եւ ՚ի հնգետասանամենից ՚ի վեր Յովիպոսս առաքեցին յաղխուսագործութի, և ՚ի հնգետասանամենէ ՚ի վայր՝ բաժանեցան զօրացն։ Եւ զայս քառասուն ամ ետ Աստուած ժամանակ ապաշխարութեան, և յորժամ ոչ զղջացան, խնդրեցաւ վրէժ արեան Որդւոյն Աստուծոյ։ Եւ աստ բարձաւ թագաւորութիւնն Հրէից, և մնաց միայն թագաւորութիւնն Հռոմայ յամենայն աշխարհի, բաց ՚ի Հայոց որ կային և նոցա թագաւորք։

Զկնի Վեսպիանոսի թագաւորեաց Տիտոս որդի նորա։ Եւ յերկրորդ ամի նորա Աստուած քարոզեցաւ ՚ի զօրացն, և կարծեաց նա ՚ի միտս իւր ամբարտաւանեալ, և եհար զնա հրեշտակ Տեառն և մեռաւ։ Եւ թագաւորեաց եղբայր նորա Դոմետիանոս՝ ամս հնգետասան և ամիսս հինգ։ Նա հալածեաց ՚ի Հռոմայ զամենայն աստեղագէտ և զկախարդ. և սա հրամայեաց այլ այգի ոչ տնկել(1)։ Յայսմ ժամանակի անձեաց

(1) «Դոմետիանոս զուսաղս և զկախարդս Հռոմայեցւոց մերժեաց։» Եւսեբ. Քրոն. յէջ. 276։ — «Հրամայեաց կայսր ՚ի քաղաքս որթ մի տնկել։» Անդ. 278.

քրիստոնէութիւնն. և եհարց Պատրուբալոս զՎարդապետն իւր Սոփինոս, թէ ի՞նչ նըշանակէ այսքան բազմութեան հաւատալ՝ ի խաչեալ այր մի, որ և Թէոդորոս իմաստապետն Աթենացւոց և Սփրբկանոս աղէքսանդրացի և Մարտինոս իքաւթու (Հիպատոսն) հաւատացին ՚ի նա, թողեալ զվայելչութիւն աշխարհիս: Նա պատասխանի և ասէ. «Մի՛ զարմանար ընդ այդ, զի կարծեմ թէ և աստուածքն հնազանդին նմա:» Եւ նա ասէ. «ո՞րպէս.» և ասէ ցնա. «Զի անախտութիւն և անմեղութիւն և անընչութիւն է քարոզութիւն նորա. յայտ է զի ՚ի վեր է քան զամենեցուն քարոզդ այդ:»

Յայսմ ժամանակի Ապողոնիոս տիւանեցի չինեաց տըմներ բազում դիւական զօրութեամբ, և ասաց. «Աւա՜ղ, զի որդին Մարիամու կանխեաց քան զիս: Զի ես կամէի հնազանդել զաշխարհ ՚ի ձեռն արուեստից իմոյ:» Իսկ Դոմետիանոս վասն խստութեան սրտի իւրոյ սպանաւ, և բարձաւ ազգն Վեսպիանէի: Եւ թագաւորեաց Ներուաս ամ մի. և Աստուած քարոզեցաւ ՚ի սինկղիտոսէն, և ապականեցաւ հիւանդութեամբ և մեռաւ (1): Եւ թագաւորեաց Տրայիանոս ամս

(1) «Ներուաս յախտէ ապականեցաւ ՚ի Սալուստեան բուրաստանին: — «Սինկղիտոսն զՆերուաս աստուած համարեցաւ:» Եւսեբ. Քրոն. յեր. 280:

քննեւտան. Սա հաւանէր զքրիստոնեայս. եւ Շմաւոն Կղէոպեանց Երուսաղեմի եպիսկոպոսն եւ Իգնատիոս Անտիոքու եպիսկոպոսն կատարեցան 'ի Քրիստոս. Իսկ Պլինիոս Սեկունդոս (1) հրամանաւ Թագաւորին բազումըս կոտորեաց 'ի քրիստոնէից. եւ զզջացեալ գրեաց առ Տրայիանոս, թէ «Քրիստոնէից ամենայն ինչ բարի է. բայց կռոց ոչ զոհեն, եւ ընդ առաւօտս Քրիստոսի երկրպագեն:» Եւ նա գրեաց թէ՝ ջնջեա զդոսա (2):

Յայսմ ժամանակի ապստամբեցին Հըրեայքն Եգիպտոս, եւ եդին Թագաւոր իւրեանց անուն Լուկուաս, որ եւ առեալ ըզՀրեայսն եկն Երուսաղէմ. եւ առաքեաց Տրայիանոս զԼուսիա, եւ կոտորեաց զբիւրս 'ի նոցանէ, վասն այնորիկ մնաց Լուսիա իշխան Հրէից (3): Յայսմ ժամանակի Հրեայքըն որ 'ի Կիպրոս կռուեցան 'ի վերայ Սա-

(1) Ամենայն օրինակք Թարգմանութեանցն երկոցունց՝ ունին Սինկղիտոս փոխանակ Սեկունդոսի, որպէս ունի Եւսեբիոս 'ի Քրոնիկոնին՝ յէր. 280:

(2) Եւսեբի. Պատմ. Եկեղ. Գ. 33. ուր այսպէս 'ի մէջ բերէ զպատասխանին Տրայիանոսի. «Տոհմն քրիստոնէից անխուզիր մի՛ խնդրեսցին 'ի մահ, բայց եթէ դէպ ուրեք լիցի՝ գտանիցի:»

(3) Օրինակս մեր համաձայն Եւսեբեայ խօսի զապստամբութենէ Հրէիցն. իսկ միւս Թարգմանութիւնն չյիշէ ունի զանուն. եւ զԼուսիայ ոչինչ յիշատակէ. Եւսեբիոս, Քրոն. յէր. 282: Պատմ. Եկեղ. Դ. 2. ուր ասէ, թէ էր իշխան

զամինայ քաղաքի, և առեալ զքաղաքն կոտորեցին զՅոյնսն որ ՚ի նմա: Նոյնպէս և Հրեայքն որ ՚ի Լիբիա՝ մարտեան ընդ Յոյնսն և կոտորէին. և Յոյնք որ յԱղեքսանդրիա և ՚ի Կիւրենէական աշխարհն, պատերազմ յարուցին և կոտորեցան ՚ի նոցանէ: Յայսմ ժամանակի երևեցաւ Սեկունդոս իմաստասէր լռակեացն: Զկնի Տրայիանոսի թագաւորեաց Ադրիանոս՝ ամս քսան և մի:

Ի չորրորդ ամի նորա Թագաւորքն Հայոց որ յՈւռհա, բարձան, և լինէին անդ իշխանք. և մնաց ՚ի մեծն Հայք Թագաւորութիւն: Յութևտասան ամին Ադրիանու դարձեալ ապստամբեցին Հրեայքն յԵրուսաղէմ՝ խաբեալ յառնէ միոջէ որ անուանէր Սող(1): Եւ առաքեաց Ադրիանոս կոտորեաց զնոսա, և հալածեաց յԵրուսաղեմէ զՀրեայսն, որ հայիլ անգամ ոչ իշխէին ՚ի կողմն Երուսաղեմի: Եւ զԵրուսաղէմ քանդեաց. և առ ընթեր Երուսաղեմի շինեաց

՚ի վերայ ամենայն եգիպտացւոց (Հրէից) Ղուկուաս անուն ունի:

(1) Եւսեբի (Պատմ. եկեղ. Դ. Զ.) անուանէ Բարքոքեբայ կամ Բարքոզեբայ. Աստեղ որդի. այլ իրօք՝ էր այր ապականող և աւազակ: Եւ առաքեցաւ ընդդէմ նորա Ադրիանոսէ Յուլիոս Սևերոս, որ պաշարեալ ժամանակս բազումս զանեղն ապստամբին նորա, յաղթեաց և սպան զնա. և ամենայն Հրեայք ՚ի բաց մերժեցան ՚ի կողմանց Երուսաղեմի ընդ պատուհաս մահու:

քաղաք մի Իլիոս Ադրիանոս, և բնակեցոյց քրիստոնեայս և հեթանոսս, և սահմանեաց կորել զականջս Հրէից ուր և իցեն՝ զի նշանաւորք լինիցին։ Եւ սա սահմանեաց առանց այլ պատճառի վասն քրիստոնէութեան չհալածել զնոսա։ Ի քսան և մի ամին սորա ժողով եղև առաջին ՚ի Նիկիա, քառասուն և երեք եպիսկոպոսօք, և նզովեցին զՍաբէլ լիբէացին, որ ասաց թէ մի անձն է սուրբ Երրորդութիւնն։ Եւ նզովեցին զՎաղենտիանոս որ ասաց՝ յերկնից բերել զմարմինն։ Յաւուրս սորա էր Ակիւղաս Թարգմանիչ (1)։

Զկնի Ադրիանոսի թագաւորեաց Տիտոս Անտոնինոս, որ կոչեցաւ Սեբաստոս և Եւգար և որդիք իւր ընդ նմա՝ ամս քսան և երկու։ Եւ Անտոնինոս հայր աշխարհի թարգմանի (2)։ Ի սորա ժամանակս Յուստինիանոս Նիկոպոլսեցի, որ կայ առընթեր Երուսաղեմի,

(1) Ակիւղաս էր պոնտացի, ազգական Ադրիանոսի կայսեր, որ ընկալաւ զքրիստոնէութիւն, և ՚ի մերժիլն յեկեղեցւոյն վասն յաստեղագիտութեան պարապելոյ, դարձաւ ՚ի Հրէութիւն, և թարգմանեաց զԱստուածաշունչ գիրս ՚ի յոյն լեզու։ Ս. Եպիփան։ Վարդան, ՚ի Ցատաղքեան. Սամ. Միխայէլեան։

(2) Այսպէս կոչեցաւ և Ադրիանոս վասն պէսպէս պարգեւաց և բարեաց զոր ցուցանէր ժողովրդեանն։ Եւ զՀայր անունն դրոշմէին ՚ի ոսկիղէն հռովմայեցւոց իւրեանց և ՚ի վերայ դրամոց։ Եւսեբի. Քրոն. յեր. 584. 286։

գնաց 'ի Հռոմ և ետ թուղթ ապաշխարանաց առ թագաւորն, և դադարեցաւ հալածանքն քրիստոնէից (1)։ Ի սորա ժամանակս կատարեցաւ Պօղիկարպոս եպիսկոպոսն Զմիւռնիոյ (2)։ Եւ աստ երևեցան Կերդոն, որ նա ինքն է Մարկիոն, և Մարկոս՝ (3) եկեալ 'ի Հռոմ, ասացին ոչ գոլ յարութիւն. և զօրէնսն չար ասացին, և ոչ ասացին զՅիսուս որդի այնմ որ օրէնքն և մարգարէիւքն քարոզեցաւ, այլ աներևելոյն և բարերարին որդի. և էին կախարդք. և 'ի վերայ մկրտելոցն ասէին՝ յանուն Հօր աներևելոյն, և յանուն մօր Ճշմարտի, և յանուն որդւոյն որ էջ 'ի վերայ Յիսուսի։ Եւ այլ անուանս տողէին։

Ի Թուին Տեառն ՆՀԵ (475) Թագաւոր

(1) Յուստինոս է 'ի Ներողագիւս քաղաքէ (Նապղոսէ) ծնեալ յամի իբր 114. 'ի հեթանոս ծնողաց, և հետևող Պղատոնեան վարդապետութեան։ Յերկարեարբ ամի կենացն՝ դարձեալ 'ի քրիստոնէութիւն վկայեաց վասն հաւատոյն 'ի Հռոմ քաղաքի յամի 168. անուանեալ 'ի Արևելեա կրօնիկեան փիլիսոփայ։ Ունի զանազան մատենագրութիւնս. գրեաց նա և գիր ջատագովութեան զքրիստոնէից առ կայսերսն։ Եւսեբի. Քրոն. յեր. 286. 288։

(2) Եւսեբիոս. Քրոն. յեր. 288.

(3) Կերդոն ազգաւ Ասորի, և Մարկիոն աշակերտ նորա, որ եկեալ դպրոց աղանդոյն Մարկիոնեանց։ Իսկ Մարկոս էր աշակերտ Վաղենտինիանոսի հերետիկոսի։ Եւսեբի. Քրոն. յեր. 286. առ զՎաղենտինիանոս ասէ, հասին 'ի Հռոմ յեպիսկոպոսութեան Հիգինեայ.

բեաց Մարկոս Աւրելիոս ընդ որդիս Անտո-նինոս և Լուկիոս՝ ամս իննևտասն (1) Ի յա-ռաջին ամին սոցա Վաղքէշ (Վաղարշ) Թա-գաւորեալ Պարսից եկն յաշխարհն Հռոմոց, և բազում գաւառս աւերեաց. և ելին ընդ-դէմ նորա Անտոնինոս և Լուկիոս եղբարք, և հնազանդեցին զՊարթևս և զՊարս. և Լուկիոս զօրացեալ կայր անուանեցաւ ընդ եղբարս իւր (2): Եւ եղեւ այլ պա-տերազմ ընդ Հռոմայեցիս և ընդ Գերմա-նացիս և ընդ Կարուտացիս և ընդ Սարմատա-ցիս և ընդ Գալլիեա (3): Եւ դարձեալ զօ-րացաւ Լուկիոս. և անուանեցաւ Եւփոփոխոր-փոր: Եւ սա Թագաւորեալ ամս ինն՝ և մե-ռաւ: Եւ Անտոնինոս ած ընկեր Թագաւո-րութեան իւրոյ զԿոմիդոս որդի իւր, զի ներգէին զնա շրջակայքն. և Անտոնինոս հի-ւանդացեալ մեռանէր: Եւ Կոմիդոս Թա-

(1) Անտոնինեան՝ որ կոչէր Մարկոս Ղուկիոս (Լուսիոս) Հեղիոս Աւրեղիոս Կոմոդոս Անտոնինոս, էր որդի Մարկո-սի Աւրելիանոսի. իսկ Ղուկիոս Վերոս համ՝ Բերոս էր եղ-բայր նորին՝ որ ընդ իւր Թագաւորեցոյց. և որդին իւր Կո-մոդոս Թագաւորեաց զկնի Ղուկիոսի Վերոսի յամի 180.

(2) Եւսեբիոս. Քրոն. յեր. 288:

(3) Եւսեբիոս (Քրոն. յեր 290) աւելէ զանուանս ազ-գացն ընդ որս պատերազմեցան Հռոմայեցիք. «Հռոմա-յեցւոց պատերազմ յարեաւ ընդ Գերմանացիս, ընդ Դակս և ընդ Սարմատացիս և ընդ Կուադս: Գալլիեա յայնժամ սկսաւ է զինակողոց. յորինակս մեծ Թագաւորութեան զիր Գալլի-ացիս:

դաւորեալ ամս երեքտասան՝ և խեղդեցաւ ՚ի տան ձիոց (1)։ Եւ զկնի նորա Թագաւորեաց Պերտենաքս՝ վեց ամիս, և սպանաւ ։ Եւ Թագաւորեաց Սուրինոս (Սեւերոս) ամս ութևտասն ։ Եւ յառաջին ամին նորա եղեւ պատերազմ մեծ ընդ Հրէայս և ընդ Սամարացիս . և յինն ամին յարոյց հալածանս քրիստոնէից, և բազումք վկայեցին ։

Յաւուրս սորա յարեւմտից հիւսիսոյ ել ազգ մի բարբարոս (2), և գնաց ընդդէմ նորա Սուրինոս և սպանաւ (3)։ Եւ Թագաւորեաց Անտոնինոս (Կարակալլա) որդի իւր՝ ամս եւթն ։ Սա դարձոյց զաքսորեալսն վասն հաւատոյ, և էր մի ՚ի նոցանէ Աղեքսանդր (եպիսկոպոս) Երուսաղէմի . և Անտոնինոս սպանաւ ՚ի Միջագետս ՚ի մէջ Ուռհայոյ և Խառանայ (4)։ Եւ Թագաւորեաց Մակար ամ մի և սպանաւ (5)։ Եւ Թագաւորեաց Անտոնինոս ամս չորս ։ Ի ժամանակս նորա շինեցաւ Նիկոպօլիս ՚ի Փղշտացւոց աշխարհին.

(1) Եւսեբիոս՝ հեղձեալ յանկարծակի վախճանեցաւ, ասէ, ՚ի յապարանսն Բեռտիլիանոսի ։ Քրոն. յեր. 294 ։

(2) Մովսէս Խորեն. Բ. 62 ։ Սոկր. Առաջին Ա. 6 ։

(3) Եւսեբիոս Քրոն. յեր. 294 ։

(4) Անտոնինոս Կարակալլա մինչդեռ յԱսիա էր, յարձակեցաւ և ՚ի վերայ Արտաւանայ Պարթեւաց թագաւորին և մեռաւ ՚ի պատերազմի, որպէս յիշատակէ և Մովսէս Խորենացի. Բ. 72 ։

(5) Այն է Մակրինոս ըստ Եւսեբեայ ։ Քրոն. յեր. 296 ։

որ է Եմաւուս (1)։ Եւ յետ սորա թագաւորեաց Աղէքսանդր Մամեայ՝ որդի երկիւղած և հաւատացեալ կնոջ, որ և շատ օգուտ արար քրիստոնէից ։ Ի յերրորդ ամի սորա և ՚ի ՇԽԲ (542) թուին թագաւորեաց Պարսից Արտաշիր որդի Բաբակայ (2), որ է սկիզբըն թագաւորութեան Պարսից, որ տեւեաց ամս չորեքհարիւր ութևտասն, որ և Սասանեանք կոչին։ Եւ կացին զկնի միմեանց թագաւորք քսան և եւթն, մինչև յարեւ թագաւորութիւնն Արաբացւոց Մահմետի և եբարձ զնա ։

Զկնի Աղէքսանդրի թագաւորեաց Փիլիպպոս ամս եւթն (3), և խաղաղացան քրիստոնեայք ։ Եւ յառաջին ամին նորա թագաւորեաց Պարսից Շապուհ որդի Արտաշրի՝ ամս երեսուն և մի ։ Յայսմ ժամանակի հազարամ շինութիւնն Հռոմայ լցաւ ։ Եւ Դիւդիոս (Դեկոս) սպան զՓիլիպպոս և զոր-

(1) Եւսեբիոս, Քրոն. յեր. 296 ։

(2) Յետ կորուսանելոյ Արտաւանայ զպարթեւական տէրութիւնն և զկեանս իւր ՚ի ձեռն Արտաշրի որդւոյ Բաբակայ կամ ըստ այլոց՝ Սասանայ, սկսաւ սա ինքն Արտաշիր թագաւորել ՚ի վերայ Պարսից՝ կանգնելով զՍասանեան հարըստութիւնն յամի Փրկչին 226 ։ Ագաթանգեղոս ։— Մովսէս Խոր. Բ. 64 ։— Մեք. Չամչ. Հա. Ա. յեր. 361 ։

(3) Եւսեբիոս զկնի Աղէքսանդրի յիշատակէ զՄաքսիմինոս, որ եկաց յաթոռն ամս երիս, ուստի յաջորդեաց Գորդիանոս՝ ամս վեց. և ապա Փիլիպպոս ։ Քրոն. յեր. 208 ։

դին իւր և թագաւորեաց ամ մի, և սպա-
նաւ 'ի Մերուդաս(1) և թագաւորեցին Մաւ-
րոս և Պամուրինոս, և Պաղոս և Մալոս ամ
մի. և թագաւորեցին Սուլփանոս և Պաղե-
րոս ամս հնգետասան (2). և յարուցին հա-
լածանք եկեղեցւոյ: Ընդ Շապուհ թագա-
ւորն Պարսից աւերեաց զՄծբին և զԿիլի-
կիա և զԿապադովկիա գերութեամբ (3):
Ընդ Գոթացիքն անցեալ ընդ Տանաւիս գետ՝
գերեցին զաշխարհն և տարան: Յայնժամ
Պաղերիոս դադարեաց 'ի հալածելոյ զեկե-
ղեցի Աստուծոյ, և 'ի շնորհաց Աստուծոյ ա-
ճեաց հաւատս սքանչելեօք 'ի ձեռն սրբոց
արանց. և զի առնոյր Աստուած վրէժս 'ի
թշնամեացն ճշմարտութեան 'ի հալածիչ
թագաւորացն:

Ի թուին ՇՁԸ (588) թագաւորեաց Կղա-
ւդիոս (Կղօդիոս) ամ մի. և յետ նորա թա-
գաւորեաց Աւրելիոս (Աւրելիանոս) ամս

(1) «Դեկոս զՓիլիպպոս հանդերձ որդւովն սպանանէ. և վասն նորա քինին և մերուման եւս կարգի հալածանս (քրիստոնէից) յարոյց: Դեկոս հանդերձ որդւովն Աբրիտոս սպանանի :» Եւսեբ. Քրոն. եր. 298:

(2) Բուլոս կամ Բալոս Հերեննիոս, և Դամուլինոս՝ որ է Հոստիլիանոս ոչ յիշատակին 'ի գիրս Եւսեբեայ. այլ զկնի Դեկոսի դնին Գաղղոս և Վողուսիանոս, զոր Միխայէլ Բաղոս կոչէ. ապա Վաղերիանոս և Գաղիենոս: Քրոն. եր. 298. 300:

(3) Մովսէս Խորեն. Բ. 74:

վեց և ամիս վեց ։ Սա շինեաց պարիսպ մի այլ Հռոմայ. և սա յարոյց հալածանս, և շանթահար եղեալ մեռաւ, և դադարեաց հալածումն, և թագաւորեաց Տարտիանոս (Տակիտոս) ամս վեց. և սպանաւ 'ի Պոնտոս, և թագաւորեաց Պուլիրիանոս (Փլորիանոս) և սպանաւ 'ի Տարսոն Կիլիկիոյ(1)։ Իսկ Պարսից թագաւորեաց Արմիզդ ։

Ի թուին ՇՂԳ (593) ծնաւ Կոստանդիանոս ։ Իսկ զկնի Պուլիրիանոսի թագաւորեաց Պրոբոս ամս եւթն ։ Եւ 'ի նոյն ամի թագաւորեաց 'ի Պարս Վարհարան (Վահրամ) ամս երիս ։ Եւ յետ նորա Վարհան որդի իւր թագաւորեաց ամս հնգետասան ։ Իսկ սինկղիտոսն յորժամ կամէր ապստամբել 'ի Հռոմայ, ամբոցոյց զՆաւիոբ և սպանաւ ։ Եւ զկնի Պրոբեայ թագաւորեաց Կարոս և որդիք իւր Կարինոս և Նումերիանոս ամս երկու(2)։ Եւ Կարոս մեռաւ 'ի Միջագետս, և Նումերինոս սպանաւ յԱփրիկէ (Թրակէ)։ Եւ Կարինոս 'ի պատերազմի Դարմիացւոցն ըսպանաւ(3) ։ Եւ թագաւորեաց Դիոկղետիանոս. և աստ սկսանի թուականն թագա-

(1) Եւսեբ. Քրոն. յեր. 300 ։—Մովսէս Խոր. Բ. 73։
(2) Եւսեբ. Քրոն. յեր. 302 ։—Մովսէս Խորենե. Բ. 76։— Սամուէլ ։
(3) Եւսեբիոս որպէս և Մովսէս Խորենացի փոխեն մի այլ բաղդ պատմեն զնոսա որպէս «ի Կարոս մահմեդականքն 'ի Միջա-

ւորելոյ Դիոկղետիանոսի, որ է Նորուոց ՇՂԳ (594)։ Եւ զկնի Դիոկղետիանու թագաւորեցին Մաքսիմիանոս, զորոյ զդուստրն կին առնէր Դիոկղետիանոս. և Մաքսիմինոսեա որդի Մաքսիմիանոսի թագաւորեաց ՚ի Հռոմ, և Կոստանդիանոս ՚ի Գաղլիա (1). սոքա ՚ի միում ժամանակի թագաւորեցին։ Դիոկղետիանոս և Մաքսիմիանոս ՚ի կողմն արեւելից վարէին զիշխանութիւնն միաբանութեամբ միմեանց։ Եւ յայսմ ժամանակի ապստամբեաց Եգիպտոս, և գնացեալ Հռոմայեցւոցն հնազանդեցուցին և զքաղաքումս ապանին։ Ի մետասան ամին Դիոկղետիանոսի թագաւորեաց ՚ի Պարս Ներսէհ՝ ամս եւթն, և զկնի նորա Որմիզդ որդի իւր՝ ամս հինգ։ Եւ ՚ի յիննեւտասան ամին Դիոկղետիանոսի քակեցան եկեղեցիք և զօրացան հալածանք (2), և ընդ հալածմանն սով սաստիկ, մինչ մոլթ մի ցորեանն երկու հազար հինգ հարիւր դրամ էր (3)։ Եւ վասն առաւել

գեաս, Նումերիանոսի առ նովաւ լինէր սպանանել ՚ի Թրակիա և Կարինոսի նոյնպէս ՚ի կռուանկայ պատերազմին։ „ Քրոն. յեր. 302։ Մովսէս խորեն. Բ. 76։ Իսկ Աղուեսքարանծ յաղագս մահուան Կարինոսի խօսելով ասպանաւ, ասէ, ՚ի պատերազմին ընդդէմ Գերմանացւոց, որում փոքր ինչ մերձենալ Գաղղիացւոց քաղաքին. տակայն զեկեղեցւոց իսկ զսխալանսն ուղղեն Եւսեբի. և Խորենացին, որք ասեն ՚ի կռուանկայ հայկազնեայ սպանեալ։

(1) Ցորենակիս Գաղղիա։ (2) Եւսեբի. Պատմ. Եկեղ. Ը. 3։
(3) Եւսեբիոս, Պատմ. Եկեղ. Թ. 8։

ամբարշտութեան Դիոկղետիանոս եհար ըզնա Աստուած, և նա յանձնեաց զթագաւորութիւնն 'ի Մաքսիմիանոս, որ ոչ էր պակաս չարեօք քան զնա ։ Եւ ինքն Դիոկղետիանոս ազգի ազգի ցաւօք նեղէր և տորորեցաւ. և գիտաց եթէ յԱստուծոյ էր հարուածն, և գրեաց թուղթ խաղաղութեան եկեղեցւոյ և շինութեան(1)։ Եւ Մաքսիմիանոս ոչ կամէր, և չկարաց լուծանել զհրամանն, այլ առ ժամանակ մի դադարեաց հալածումն (2)։ Եւ դարձեալ ասաց թէ՝ «Աստուածքն հրամայեն չխափանել զհալածումն.» և սկսաւ հալածել և հանել 'ի քաղաքաց զքրիստոնեայս(3), և խրատեցաւ աշխարհ երաշտով և տարաժամ մահու, որ զտասն մեռեալն 'ի գերեզման մի դնէին (4)։ Եւ խստացոյց պատերազմ ընդ Հայս, և եհաս նմա բարկութիւն, և դառն ցաւօք մեռաւ ։

Եւ յետ այսորիկ թագաւորեաց Կոստանդ հայրն Կոստանդիանոսի. և ունէր երկու կին, զՀեղինէ և զԹէոդորա դուստր Մաքսիմիանոսի ։ Եւ յութ ամի թագաւորութեան իւրում առ Հաղորդ թագաւո-

(1) Եւսեբիոս, Պատմ. Եկեղ. Ը. 17։
(2) Եւսեբիոս, Պատմ. Եկեղ. Թ. 1։
(3) Եւսեբիոս, Պատմ. Եկեղ. Թ. 2—4։
(4) Եւսեբիոս, Պատմ. Եկեղ. Թ. 8։

րութեան իւրոյ զԿոստանդիանոս որդին Հեղինեայ, որ և երեք ամ ընդ հօրն Թագաւորեաց և մեռաւ հայրն. և ինքն Կոստանդիանոս Թագաւորեաց 'ի ՈԻԳ (623) (1) Թուին Նարւայ։ Յովհաննէս ասիացին ասէ. Թէ հայրն Կոստանդիանոսի դարձաւ յաստուածպաշտութիւն, և Սեղբեստրոս զհայրն բժշկեաց 'ի բորոտութենէ. և Պետրոս և Պաւղոս երեւեալ Կոստայ՝ խրատեցին զնա կոչել զՍեղբեստրոս մկրտել զնա։ Նյամ վկայէ Սոկրատ հռոմայեցի (2)։ Եւ Իգնատիոս մետինացին ասէ, Թէ յորժամ Թագաւորեաց Կոստան-

(1) Եւսեբեայ Քրոնիկոնն դադարին մինչեւ 'ի քսաներորդ ամն Կոստանդիանոսի։

(2) Եւսեբիոս յեկեղեցական պատմութեան իւրում (Ը. 14) բազում գովութեամբ խօսի զհօրէն Կոստանդիանոսի, և ցուցանէ զնա իբրեւ արդարեւ հաւատացեալ այր, յասելն. «Հանդարտ էր ամենայն վարուք իւրովք և առ այնոսիկ որ 'ի ներքոյ իշխանութեան նորա էին, քաղցրութեամբ էր և առ Աստուած սիրով։.. Նա միայն յաւուրս մեր ընդ արժանի առաքինութեան Թագաւորաց կատարեաց զժամանակ իշխանութեան իւրոյ, և այլով պատուով. և առ ամենայն մարդ 'ի շահ օգտութեան զանձն իւր ետուր։.. Ոչ զատաճարս եկեղեցեաց քակեաց նա, և ոչ նորոգեաց 'ի մերոյ մեր ինչ մի ('ի նեղութեանցն), վասն այսորիկ վախճանն բարւոք կատարեալ երանութեամբ ընկալաւ նա. զի յաշխարհէ աստի յայսմանէ նա միայն ել 'ի Թագաւորութեան իւրում միաբանութեամբ և փառօք» Իսկ որ ինչ յայսմիկ պատմի զԿոստանդեայ, Սոկրատ (Թ.) որդւոյ նորա Կոստանդիանոսի վերագրէ. որպէս և աւանդութիւնն իսկ զայն հաստատէ։ Տես և 'ի Մովսէս խորեն. Բ. Զ։

դիանոս, կայսին թագաւորք Մաքսիմիանոս և միւս Մաքսիմիանոս (Մաքսիմոս), և Մաքսիմինդէս (Մաքսենտիոս) և Սեւերոս, և չորեքին հալածիչք էին. և 'ի մեռանելն Սեւերեայ՝ իշխանքն նորա ետուն զթագաւորութիւնն Կոստանդիանոսի, և կեսար քարոզեցին զԼիկիանէ փեսայ իւր: Եւ յետ ութն ամի կալաւ Կոստանդիանոս թագաւորութեանն իւրոյ հաղորդ զԼիկիանէ, որ և գաղտ հալածէր զքրիստոնեայս. յետոյ և ապստամբեաց և մեռաւ 'ի նմանէ:

Եւ յերկրորդ ամի Կոստանդիանոսի թագաւորեաց Պարսից Շապուհ եւթանասուն ամ: Եւ Կոստանդիանոս գնաց պատերազմել ընդ Մաքսիմինտեայ որ 'ի Հռոմ. և խորհեցաւ 'ի միտս իւր և ասէ՝ թէ Կուռքն չօգնեցին ինչ առաջին թագաւորացն.» և ասաց. «Որ Աստուած օգնէ ինձ 'ի պատերազմիս, նմա երկրպագեմ:» Եւ 'ի հասարակ աւուրն ետես խաչ լուսեղէն, և գիր 'ի նմա որ ասէր. «Այսու յաղթես:» Եւ որք ընդ նմա էին՝ նոյնպէս տեսին: Եւ յայնում գիշերի երեւեցաւ նմա Քրիստոս, ասէր ցնա. «Արա զօրինակ երեւելոյն քեզ և յաղթես:» Եւ ելեալ ընդ. առաւօտն արար նոյնպէս (1): Եւ աստի եղեւ օրէնք թագա-

(1) Եւսեբիոս առանց յիշատակելոյ զերեւումն խաչին

ւորաց քրիստոնէից խաչ տանել առաջին։ Եւ յորժամ եղեւ պատերազմ, յերեւել խաչին յաղթեցաւ ամբարտաւանն, դեւապաշտ ե-ղեալ 'ի Տիբերիոս գետ։ Եւ էր կին Կոստան-դիանոսի դուստր Դիոկղետիանոսի՝ Դիոկղիա անուն(1), որ եւ 'ի միասին մկրտեցան, զի դեռ չէր մկրտեալ Կոստանդիանոս(2)։ Յայսմ ժա-մանակի մեծն Գրիգորիոս 'ի Հայս փառա-ւորեալ մեծամեծ նշանօք, որ եւ 'ի ձեռն նորա դարձան ամենայն Հայք յաստուած-պաշտութիւն. եւ նա եղեւ նոցա քարոզ եւ քահանայապետ երեւելի շնորհօք նման սուրբ Առաքելոցն Քրիստոսի։ Եւ 'ի յերրորդ ամի իւրոյ թագաւորութեանն Կոստանդիանոս ընդարձակեաց զԲիւզանդիա, եւ աճեցոյց 'ի

յօդս ասէ՝ յետ յաղթութեանն եւ մտանելոյ 'ի Հռոմ, հր-րամայեաց կանգնել 'ի քաղաքին նշան փրկչին։ Թ. 11։ Մովսէս Խորեն. Բ. 80։ Սամուէլ. Զ։

(1) Մովսէս Խորենացի (Գիրք Բ. Գլ. 80) եւ Սամուէլ (Է.) ասեն եթէ Մաքսիմինդա էր անուն դստերն Դիոկ-ղետիանոսի. իսկ այլք Փաւստա կոչեն՝ դուստր Մաքսիմիա-նոսի Հերքուլեայ եւ Եւտրոպեայ. եւ ոչ Դիոկղետիանոսի որոյ դուստր անուն էր Վալերիա, որ ամուսնացաւ ընդ Գա-ղերիոսի։

(2) Յաղագս մկրտութեան մեծին Կոստանդիանոսի այլ եւ այլ կարծիք են առ քննադատս. ժամանակակից պատմիչք յորս դասանին արք երեւելիք ուղղութեամբ եւ ընդ հարս եկեղեց-ւոյ համարեալք, եւ բազումք եւս 'ի յետնոց պատմագրաց ասեն զԿոստանդիանոսէ, եթէ 'ի Նիկոմիդիա լեալ եւ զվախ-ճան իւր նկատեալ՝ ետ ածել զինքն 'ի հանքային ջուրս Հե-ղինանուպօլոյ, աստ յապարանին Աքիւրոնի առ Նիկոմիդեայ

Նմա չորս (1) միլ. և պարտաւորեաց զնա զարգունս, և անդ փոխեաց զԹագաւորութիւնն Հոռոմոց, և յանուն իւր կոչեաց զնա Կոստանդինուպօլիս, և արար զանակիզս նորա ազատ. և շինեաց եկեղեցի մեծ Իրինեայ(2) անուն, և միւս այլ յանուն Առաքելոցն։ Եւ երեւեցաւ միայն Աստուածապաշտ, զամենայն զհօղն իւր եդեալ ընդ Աստուծով։ Եւ շինել հրամայեաց ընդ ամենայն երկիր եկեղեցիս, և քակել զմեհեանս կռոցն. և եդ օրէնս մի՛ ոք լինել զինուոր կամ ձիաւոր, որ ոչ իցէ ծնունդ սուրբ Աւազանին։ Թէոդորոս(3) ասէ, թէ նկարիչք զտախտակ և զորմն զար

նորա զեպիսկոպոսունս (արքեպիսկոպոսն) ընկալաւ զկնիք միաբանութեան։ Զայս օրինակ պատմէ և Եւսեբի 'ի վարս Կոստանդիանոսի (Գիրք Դ. Գլ. 61)։ Տես զայսմանէ և զմանրամասն կարծիս քննաբանից յԵւրոպական Ցուցմունս պատուելոյ Տերոյենց. 1857. Հտ. Ա. Թիւ 4 և այլն, յորում 'ի մէջ բերէ զհակառակ կարծիսն Տ. Կերամոձէ Բենեդիկտեան կրօնաւորի, որ ցուցանէ զմկրտութիւնն Կոստանդիանոսի 'ի Հռոմ լինել 'ի ձեռն Սեղբեստրոսի, որպէս ասէ և մերս Մովսէս Խորենացի. Գրոց. Բ. 80։

(1) Մովսէս Խորեն. (Բ. 85) հնդապատիկ, ասէ, մեծացոյց զքաղաքն։

(2) Իրէնէ է բառ յունարէն, որ նշանակէ խաղաղութիւն. յայս անուն կոչեցաւ նախ մեծ եկեղեցին Կոստանդինուպօլսի. զոր նորոգեալ և զեղազարդեալ ապա 'ի Կոստանդեայ որդւոյ նորա և կրկին պայծառօք շքեղապատեալ կոչեցաւ սուրբ Սոփիա, որ է Իմաստութիւն աստուածային կամ սուրբ։

(3) Յօրինակին Դիոդորոս, միւս Թարգմանութիւնն Թէոդորոս գրէ։

դարեն 'ի դըոսանս մարդկան . իսկ ժամա-նակագիրք զժամանակ բանիւ զարդարեն ։

Արդ յայսմ ժամանակի երեւեցաւ Արիոս երէց աղէքսանդրացի 'ի մէջ եւթն երիցանցն, զոր եգիտ զէն սատանայ , և ջանայր կրկնել զարարածոցս երկրպագութիւնն , զի եւս նը-մա ասել զորդին Աստուծոյ արարած ։ Եւ կա-յին նմա այլ համախոհք վեց , զոր ցուցանէ Թուղթն այն զոր գրեաց առ Եւսեբի Նիկո-միդացի , որք են այսոքիկ . Եւսեբիոս Կե-սարու (1), և Թէոդոս Լաւոդիկեայ, Յուլիա-նէ (2) Սրոյ եպիսկոպոս , Աթանաս Անաւար-զայ , Գրիգոր Տարութոյ , Աթիոս Լիդիոյ (3) ։ Եւ յորժամ յայտնեցաւ չարութիւն նորա , նզովեաց զնա Պետրոս եպիսկոպոս (4) . և նա սկսաւ զբազումս առնել իւր խորհրդակիցս . զՄարիս քաղկեդոնացի , զԵւսեբիոս Նիկոմի-դացի , և զՄելիտոս եպիսկոպոս եգիպտացի, որ և 'ի ժամանակ հալածմանն զոհեալ էր , և լուծեալ յաստիճանէն , և զԱիթալէս , և զայլս բազումս ։

(1) Այն է հեղինակն եկեղեցական պատմութեանն, զորմէ բազումք Արիոսեան ասեն լինել , որ ասպնջականեաց իսկ զԱրիոս 'ի մեկնել նորա յԱղեքսանդրիոյ, և նզովեցաւ յեր-կրորդ ժողովոյն Նիկիոյ 'ի հինգերորդ նստին ։

(2) Յօրինակիս փոփոխանէ ։

(3) Համարիմ թէ զԹէոնիստաս կամի ասել . որ եպիսկո-պոս էր Մարմարիկոյ որ 'ի Լիբիա , զոր տառափոխու-թեամբ Լիդիա դնէ ։

(4) Պետրոս էր Պատրիարգ Աղեքսանդրիոյ որ վկայեաց

Եւ ՚ի սմին ժամանակի եղեւ շարժ սաստիկ յԵգիպտոս, և զբազում շինուածս բընակչօքն տապալեաց, զշարժումն աղանդին (Արիոսի) նշանակելով։ Եղեւ այլ ինչ պատառումն յեկեղեցի վասն Զատկին. զի կողմանք արեւելից ընդ Հրէայսն տօնէին ՚ի չորեքտասան լուսնին, և կողմն արեւմտից միշտ ՚ի կիւրակէի։ Եւ յայսմ ժամանակի նախ Աղէքսանդր արար ժողով յԱղէքսանդրիա բազմութիւն եպիսկոպոսաց, և նզովեաց զԱրիոս և զամենայն խորհրդակիցս իւր։ Եւ գրեաց զանէծսն և ետ տանել ընդ նա յամենայն երկիր, բայց ոչ շիջանէր հուրն ապականիչ, մինչեւ եհաս բանն առ Թագաւորն Կոստանդիանոս. և նա տրտմեցաւ յոյժ և գրեաց թուղթս առ Աղէքսանդր եպիսկոպոս և առ Արիոս՝ հաշտութիւն առնել ընդ միմեանս, և զչար կարծիքն բառնալ ՚ի մտաց Արիոսի։ Եւ ոչ այսու խաղաղէր պղտորումն եկեղեցւոյ. և սկսաւ տարածանիլ աղանդն, և հարկ եղեւ Մեծին Կոստանդիանոսի ժողովոյ հրաման տալ ընդ ամենայն երկիր. ժողովիլ ՚ի Նիկիա Բիւթանացւոց։ Եւ ժողովեցան երեքհարիւր ութ և տասն Եպիսկոպոսք. և գլխաւորք էին այսոքիկ, Եւսեբիոս Կեսարիոյ, Վիտոս և Վի-

յամի 311։ Սորա են նամակքն գրեալ առ Ակակիոս ՚ի վերայ հաւատոյ։ Տես ՚ի ձեռագիրս։

դեդ (Ռիկենդ) երիցունք փոխանակ Պապուն Հռոմայ, Աղէքսանդր Աղէքսանդրու, Արիստակէս մեծ Հայոց և փոքր Հայոց, Յուլիոս Սերաստիոյ, Եւստաթէոս Անտիոքու, Յակովբ Մծբնայ։ Եւ շինեաց Թագաւորն մեծ և ընդարձակ ապարանս, ուր նստէին ժողովն. և ինքն յատն կացեալ անձամբ սպասաւորէր։ Եւ նոքա տեղին շնորհս աստուածային յերեսս Թագաւորին, և եդին նմա աթոռ 'ի մէջ իւրեանց, և աղաչէին նստել. և ոչ լուաւ նոցա, այլ կայր և ծառայէր ընպէտսն և լսէր զբանս նոցա։ Եւ էին ընդեպիսկոպոսունս երիցունք և սարկաւագունք հազարք և բիւրք. և Թագաւորն պաշտէր զամենեսեան իւրովք ծախիւք 'ի քսանէն Իար ամսոյ մինչև 'ի յութևտասն Հազիրանոյ ամսոյ։

Եւ զառաջինն սկսան քննել բանաւորքն (տրամաբանք) և հռետորքն իմաստասիրական ոճով, և բազումք երթային զհետ նոցա։ Ապա յարուցեալ ոմն մանկագոյն իշխան ասէ. "Քրիստոս և Առաքեալքն ոչ աւանդեցին մեզ բանս արուեստաւորս, այլ հաւատ հաստատուն, որ պահի գործովք առաքինութեան։" Եւ ապա լռեցին նոքա, և Թողին յեկեղեցականքն. և նոքա եդին զսահման Առաքելոցն՝ հաստատելով զնոցայն։ Եւ բազումք անհաւան լինէին, և Թագաւորն հանէր զնոսա 'ի Թուոց ժողովոյն, և

ճշմարտօք ընդր զթիւն ։ Եւ էին ոմանք որ ետուն թուղթս հակառակութեան և նախանձու միմեանց առ թագաւորն. և նա հաշտեցոյց զնոսա և այրեաց զթուղթ վիճաբանութեանն ։ Եւ աղաչեաց թագաւորն ՚ի միասին կատարել զտօն Յարութեանն Քրիստոսի, և զկիւրակէսն մեծարել ժողովով և պարապմամբ գործոյ ։ Եւ այնպէս սահմանեցին յաւուր կիւրակէի տօնել զՅարութիւն Քրիստոսի Աստուծոյ մերոյ զկնի հին Զատկին. և պատուել զկիւրակէսն դատարկացեալ, ըստ կանոնաց Առաքելոցն շատանալ աստուածային գրովք և ոչ վայրապար գործովք. և ՚ի շաբաթու յիշատակ Մարտիրոսաց կատարել։ Եւ ինքն թագաւորըն սահմանեաց զանարգողան քահանայից և եպիսկոպոսաց չար մահուամբ սպանանել ։ Ի քսան ամի Կոստանդիանոսի եղեւ ժողովն, և լինին յԱդամայ հինգ հազար ութ հարիւր երեսուն և երեք ամք ։ Եւ արձակեցաւ ժողովն պատուով. և պարգեւօք թագաւորին. և նզովեցան զկնի Արիոսի՝ եպիսկոպոսն Նիկոմիդու Եւսեբիոս, Թէոգնիոս եպիսկոպոս Նիկիոյ, Մարիս՝ Քաղկեդոնի, Թումաս Մարկոկի(1), գլխաւոր արք ։

Իսկ թագուհին Հեղինէ երազովք տես-

(1) Ընթերցիր Թէոփիլոս Մարմարիկոյ եպիսկոպոս, զոր Քերողոյն Աթիոս Լիդիոյ կոչեաց ։

լեան եւ Երուսաղէմ հանդերձ Սեղբեստ-րոսիւ Հռոմայ հայրապետիւն, և եգիտ 'ի վերայ գերեզմանին պատկեր Աստղկայ, որ է Ափրոդիտէս. և սուրբ Խաչն Քրիստոսի Թաղեալ կայր 'ի բազում ժամանակաց, և տանջեալ զՀրեայսն եգիտ Յուդայիւ զխա-չըն: Եւ էր եպիսկոպոս Երուսաղէմի Մա-կոս անուն. և չլինեալ զեկեղեցիսն ետ ցՄա-կոս: Եւ արար դասս կուսանաց և կրօնա-ւորաց Երուսաղէմ. և իւրովք ծախուք խնամէր զնոսա:

Բայց Արիոս 'ի ձեռն ոմանց կեղծաւո-րաց խաբեաց զԹագաւորն զի տեսցէ զնա և լուիցէ 'ի նմանէ դաւանութիւն. և հրա-մայեաց Թագաւորն: Եւ նա գրեաց կոնդակ մի մեծ զՆիկիոյ դաւանութիւնն, և փոքր մի այլ՝ զիւր հայհոյութիւնն, և ունելով Թագուն 'ի ձեռն, ետ (զմեծն) ցԹագաւորն, և ասաց. «Բան զայս ունելի ես ինչ ոչ դա-ւանեմ:» Եւ յորժամ առ 'ի Թագաւորէն զմեծ կոնդակն 'ի ձեռն, յայն որ ունէր ըզ-փոքրն, յորում էր գրեալ իւր հայհոյութին, ասաց. «Նզովք սաստիկ 'ի վերայ՝ թէ այլ ազգ փառաւորեմ զԱստուած քան զայս որ աստ գրեալ է:» Եւ հաւատաց Թագաւորն մինչեւ Աստուած խայտառակեաց զնա պա-տառմամբ: Եւ առաւել հաստատեցաւ 'ի հաւատս Թագաւորն և յոյժ խնամով զԹայր

յեկեղեցիս. և ազատ արար զեկեղեցիս ընդ ամենայն երկիր, և ապրանք և մուտք եկեղեցւոյ և աւանց հարկաց. «Եւ ունիցին, ասէ, ամենայն եկեղեցի զհին և զնոր Կտակարանս ընդ իւր, և որբք և այրիք կացցեն 'ի ծախս եկեղեցւոյն. և գիտունք եղիցին եկեղեցականքն Աստուածաշունչ գրոց. և մարքն ինչ յաստեղաբաշխութենէ կայցի եկեղեցի զտօմարական արհեստն, զի մարթասցին վարել զժամանակս տօնից և զմոլորակացն, և զայլ բազմազանս աստեղագիտութեանց մի ընկալցի եկեղեցի։»

Եւ Կոստանդիանոսի երեք որդիք էին. առաջին որդին անուանեալ հօրն (Կոստանդին), և միջնոյն անուն Կոստանտ (Կոստանս) և կրտսերոյն անուն Կոստոս (Կոստանդ), որ և արար զնոսա կեսար(1)։ Աւագ որդին պահեաց զուղղափառութիւնն, նոյնպէս և կրտսերն մինչեւ ցմահ. և զաւագ որդին կացոյց 'ի Կոստանդինուպօլիս, և զմիջինն յարեւելից կողմն, և զկրտսերն 'ի Հռոմ։ Յայսմ ժամանակի եղեւ սկիզբն հաւատալոյ Հնդկաց և Վրաց(2)։ Եւ կազմեաց Կոստանդիանոս հանդերձեղէն եկեղեցի շրջեցուցանել ընդ

(1) Յընթացս գրոցս այս ընդ այլս զնոսին անուանեալ որդւոցն Կոստանդիանոսի վասն կարի յոյժ մերձաւորութեան ձայնիցն. վասն որոյ և շփոթին բազումք 'ի պատմաբանիցս։

(2) Մովսէս Խորեն. Բ. 83—Սոկրատ. ԻԳ. ԻԴ.

ինքեան. և շինեաց յՈւռհայ եկեղեցի մեծ ութանկիւնի: Եւ շինեաց կամուրջ 'ի վերայ Տանուփս գետոյ, և անցուցեալ զզօրսն 'ի վերայ՝ գնաց 'ի Սկիւթացիս որ են Խուզք և կոտորեաց զնոսա մասամբ, և զայլսն զարձոյց 'ի քրիստոնէութիւն:

Յայսմ ժամանակի եկն Շապուհ արքայն Պարսից 'ի Մծբին, և դարձաւ ամօթով: Եւ Յակոբ ուռհայեցին ասէ, թէ "Կոստանդիանոս կամեցաւ գնալ 'ի վերայ Պարսից. և եկն 'ի Նիկոմիդիա՝ հիւանդացաւ, և խնդրեաց մկրտութիւն և մկրտեցաւ, զի չեւ էր մկրտեալ, քանզի ակն ունէր 'ի Յորդանան մկրտիլ: Եւ արար կտակ երից որդւոցն. և ետ զկտակն յերէց մի արիանոս Եւսեբի անուն. և ժամանակն (հասակն) Կոստանդիանոսի վաթսուն և հինգ ամ. թագաւորեալ երեսուն և երկու ամ՝ մեռաւ խաղաղութբ 'ի մեծ կիւրակէն Պենտէկոստէին, 'ի քսան երկու Մայ ամսոյ: Եւ տարեալ զմարմինն 'ի Կոստանդինուպօլիս՝ եդաւ յեկեղեցւոջ սուրբ Առաքելոցն:

Եւ կտակաւագ որդւոյն՝ աթոռն Կոստանդնուպօլիս, և միջնոյն՝ Անտիոք և արեւելից կողմըն, և կրտսերոյն՝ Հռոմ: Եւ 'ի մահուան օրն միջին որդին առընթեր հանդիպեցաւ 'ի Նիկոմիդիա, և նա զկտակն յերիցուէն. և երէց որդին Կոստանդիանոսն եկն յաշխարհն կըր-

ներ եղբօրն՝ գնացեալ ՚ի Հռոմ։ Եւ կրսեր որդին Կոստաս կեսար էր կարգեալ զԴաղ-մատիա ՚ի Հռոմ, որ էր եղբայր մեծին Կոստանդիանոսի։ Այս Դաղմատիոս սպան զԿոստանդիանոս՝ զաւագ որդին Կոստանդի-անոսի առանց կամաց կրտսեր եղբօրն. և Կոստաս սպան զԴաղմատիոս փոխանակ ըս-պանանելոյ նորա զԹագաւոր եղբայրն իւր։ Եւ ունէր Դաղմատիոս երկուս որդիս, ըզ-Գալլոս և զՅուլիանոս. կամեցան և զնոսա սպանանել, և ոչ սպանան, զի Գալլոս հի-ւանդ էր և Յուլիանոս տղայ, և զերծան այսու պատճառաւ։ Եւ յետոյ հաշտեալ ընդ նոսա՝ եդ ՚ի դպրոց ՚ի գիւղ մի Մակալօ անուն, մօտ ՚ի Կեսարիա Հայոց։ Եւ յոր-ժամ զարգացան ուսմամբ, եղեն վկայասէրք և սկսան շինել վկայարան սրբոյն Մամասայ, և կողմն Գալլոսի հաստատէր, և կողմն Յու-լիանոսի փլանէր, զոր հանդերձեալ էր լի-նել գուշակէր։

Եւ Կոստան միջին որդին զԳալլոս կե-սար կարգեաց յԱնտիոք, որ և ապստամ-բեաց ՚ի վերայ Թագաւորին։ Եւ լուաւ Թագաւորն և առաքեաց սպան զնա, և ըզ-Յուլիանոս եդ ՚ի բանտի. և Թագուհին Եփսիա (Եւսեբիա) բարեխօս եղաւ առ Թա-գաւորն՝ եհան ՚ի բանտէն, և առաքեաց յԱթէնս ուսանել ուսումն իմաստասիրու-

թեան։ Եւ անդ էին Գրիգոր Աստուածաբանն և Բարսեղ, և իւր եղբայրն Գրիգոր Նիւսացին։ Եւ մարգարէացան վասն Յուլիանոսի զոր ինչ լինելոց էր։

Յայսմ ժամանակի Կոստան որդին Կոստանդիանոսի Մեծի շինեաց քաղաք մի յերկրին Սելեւկիայ, և անուանեաց զնա Կոստանդնուպօլիս(1)։ Եւ 'ի վեց ամին Կոստասի բռնացաւ Մագնենտիոս. և եհան 'ի Կոստասէ զԻտալիա և զԱփրիկէ, և թագաւորեաց 'ի Սիրմի։ Եւ 'ի դաւաճանէ զօրացն սպանաւ Կոստաս։ Եւ ընդ նմին սպանաւ եղբօրորդին իւր Կոստանդիանոս, որ երեք ամ թագաւորեալ էր ընդ նմա։ Եւ լուեալ զայս Կոստանդայ և զայրացմամբ եկեալ չոքաւ և սպան զՄագնենտիոս, և ընդ նմին սպան զՍուփիլիս, որ էր յազգէ թագաւորաց, որ ընդ Մագնենտիոսի էր թագաւորեալ։ Եւ յաւուր սպանման նոցա երեւեցաւ նշան խաչին յարեւելից կողմանէ։ Եւ եմուտ թագաւորն 'ի Հռոմ երեւելի փառօք. և դարձեալ 'ի Կոստանդնուպօլիս՝ արար զՅուլիանոս կեսար, և ետ նմա կին զքոյր իւր զԵլինէ (Հեղինէ), որ Կոստանդիա կոչեցաւ։

(1) Միխայել և կամ Թարգմանիչք և ընդօրինակողք սըխալին աստ յանուանակոչութեան քաղաքիս. զոր անմիջապէս ընթեռնուն և Կ'նուպօլիս։ Աբուլֆարաճ ասէ. եթէ Կոստաս կայսրն ընդարձակեաց զԱմիթ և կոչեաց զնա Աւգոստա (Քըրնիկ. ասոր. եր. 64։)

Յայսմ ժամանակի Հրեայքն որ էին 'ի Պաղեստինէ, ապստամբեցին և սպանին ըզ-զօրականս Հռոմայեցւոցն. եւ առաքեաց թագաւորն և կոտորեաց զնոսա: Իսկ Յուլիանոս գնացեալ 'ի Գաղիա (1) ընդդէմ բարբարոսացն, յաղթեաց, և հպարտացեալ թագաւոր քարոզեցաւ 'ի զօրացն (2): Եւ լուեալ զայս թագաւորն Կոստան, զարհուրեցաւ և մկրտեցաւ 'ի Զոյիոսէ եպիսկոպոսէ (3) Անտիոքու, որ էր արիանոս. և եղ ընդդէմ Յուլիանոսի. և ընդ մէջ Կիլիկիոյ և Կապադովկիոյ մեռաւ՝ կեցեալ ամս քառասուն և ութ, և թագաւորեալ ամս քսան և հինգ: Եւ սա թէպէտ խաբեցաւ 'ի Սեբերիոսէ արիանոսէ երիցու և սիրէր զԱրիանոսքն,

(1) Գաղիա է Գաղղիացւոց երկիրն. Gaule անուանեալ 'ի հնոց:

(2) Յուլիանոս 'ի Բեննա քաղաքի Գաղատացւոց լեալ, եւ-տես երազ, յորմէ գրգռեցաւ առալ արշաւանս ընդդէմ Կոստանդեայ, որ ըստ գուշակութեան խելք եղելոյ վախճանեաց՝ ոչ էր պարտելոց անդր քան զամն 361: Յուլիանոս առ 'ի յանկուցանել զեւրեւ զզօրականս, քարոզեաց ազատութիւն կրօնի. և ինքն իսկ առ ժամն կեղծաւորեցաւ զքրիստոնէութիւն: Եւ յետ հասեալ 'ի Լիբուռնիկէ, յայտնի դաւանեաց զկրօնս. և 'ի Թրակէ հասեալ, առ քաղաքս բազումս: Յայնժամ ժամանակի Կոստանդ որ ընդդէմ Պարսից կայր 'ի մարտս պատերազ-մաց շարժեալ, եդ 'ի մտի դառնալ յԱնտիոք, և անդէն ըզդէմ չահատակութեանցն բռնաւորին:

(3) Եւզոյիոս անուանեալ առ պատմագիրս, էր եպիսկոպոս Անտիոքայ յարիանոսաց, զորմէ ասի մեռեալ յանկեղ-ծութեան:

այլ տարաբած ոչ ասէր զորդին Աստուծոյ, այլ ծնունդ Հօր՝ բայց կրսեր ասէր։ Նա սա եւս կամէր՝ առանց հաղորդելոյ ոչ ելանել ՚ի պատերազմ՝ առանց հոգեւոր վահանին, այլ ՚ի ժամ մահուանն զղջացաւ և դաւանեաց զուղղափառութիւնն և վճարեցաւ։

Իսկ Յուլիանոս էառ զթագաւորութիւնն կեսար լեալ՝ ամս հինգ, և թագաւորեալ ամս երկուս։ Նա զայն եւս գտեալ է իմ, որ ասեն, թէ Յուլիանոս Մեծ Կոստանդիանոսի եղբօրորդի է։ Քանզի ասեն, թէ երկու եղբայր ունէր Մեծն Կոստանդիանոս ՚ի հօրէ կողմանէ, Լամոխոս և Կոստիոս (1). և Լամոխոս իւր անուամբ որդի մի ունէր. և Կոստոսի եղեն երկու որդի, Գալլոս և Յուլիանոս. և Գալլոս ապստամբեալ սպանաւ. և Յուլիանոս կեսար լեալ և յաղթեալ բարբարոսացն՝ և անցանէր ընդ փողոց մի և պսակ հիւսուածոյ անկաւ ՚ի (վերայ) գլխոյն. և այն եղեւ պատճառ ոմանց ասելոյ, թէ յաղթութեան նշան է, և այլք կորստեան ասէին նշան։ Այլ ես զառաջին պատմութիւնն ստուգեցի քան զերկրորդս։ Բայց զի վարժեալ էր Յուլիանոս կախարդութեամբ և դիւաց ծառայութեամբ, ընդ

(1) Լամոխոսն է Դալմատիոսի՝ եղբայր մեծին Կոստանդիանոսի. և Կոստոսն է Յուլիոս Կոստաս միւս որդի Նորա և հայր Գաղղոսի և Յուլիանոսի։

յաղթութիւն իւր և զմահ Թագաւորին (1) 'ի դիւացն համարէր։ Եւ պղտորեաց զկարգ Թագաւորութեանն, և ագանէր հանդերձս փիլիսոփայութեան և ծաղր առնէր զծիրանիսն՝ զգենլով մաշկեակս այծս։ Եւ սա սկըսաւ ծածուկ զաղբիւրակունսն զոհիցն արեամբ պղծել, և ցանել տայր 'ի վերայ ամենայն կերակրոյ, զի կերողքն և ըմպողքն զնորին կամսն ստասցին։ Եւ 'ի մտանելն 'ի Կոստանդնուպօլիս՝ Եւտոկարպոր քարոզեցաւ։

Եւ եկեալ Անտիոք սղացոյց զդահեկանս, և առատացոյց զհաց և զգինի. և նոքա արարին նմա նախատինս՝ ասելով ցնա ամբոխն. "Զերկայն մօրուսդ ընդէ՞ր պահես պարապ. կորեա և արա չուան և դիր յեղջերսն զենլեացն քոց, և դուլաւ տար նըւէր դիւացն չաստուածոց քոց։" Եւ նորա բարկացեալ՝ կամեցաւ սրով մաշել զքաղաքն, և չիջոյց զնա իմաստնաւէրն Լիբանոս(2) ասելով. թէ "Զպարտին քեզ մահ, այլ նախատինս փոխանակ նախատանացն քոց." և ժողովեալ զոսա նախատեաց զնոսա և եթող զնոսա։ Եւ կայր 'ի լեառն Անտիոքու վանք մի Պաւուլա անուն (3). և անդ կայր դե-

(1) Այն է Կոստաս կայսր Բիւզանդիոյ որ մեռաւ 'ի պատերազմին ընդդէմ Յուլիանոսի, զոր պատմեաց վերագոյն։

(2) Լիբանոս կամ Լիբանոս էր փիլիսոփայ և վարժապետ հռետորութեան որբոյն Յովհաննու Ոսկեբերանի։

(3) Միւս թարգմանութեան օրինակքն ունին Աղալա.

րեզմանն Բաբելայ եպիսկոպոսին. և Յու-լիանոս կամեցաւ 'ի տեղւոջն կանգնել ըզ-պատկերն Ապողոնի, և արկանել մլիճակ վասն երթալոյ նորա 'ի Պարսս, և ոչ ետ նմա պատասխանի դեւն. և գիտաց թէ վասն Բաբելայ է, և հրամայեաց զնա հա-նել և տանել 'ի քաղաքն. և քրիստոնէիցն առեալ խնդութեամբ տարան սաղմոսիւք և լապտերօք. և դեւքն սկսան խօսել ընդ-նմա բարիս (1): Եւ նորա զուարճացեալ եղ-առաջի պատկերին երկու սեղան. զմինն ելից խնկով, և զմիւսն ոսկւով. և եղ ա-ռաջի հուր, և ասէր. "Ով արկանէ ափով մի խունկ 'ի վերայ հրոյ, թող առնու ա-փով մի ոսկի:" Եւ բազումք 'ի պարզամտաց խաբեցան և առին զոսկին. և յետ այնորիկ յուտել և յըմպել նստան, և ըստ սովորու-թեանն նկարէին զխաչն 'ի վերայ գինւոյն. և ոմն ասէ. "Զի՞նչ է այդ, յետ ուրացու-թեանդ խաչակնքելդ:" Եւ նոքա զարհու-րեալ ասէին. "Ե՞րբ ուրացաք:" Եւ նա ա-սէ. "Յառնուլն զոսկին յետ խնկոյն:" Եւ նոքա ընկեցեալ զգինին և արտաքս դիմեալ ընկեցին զոսկին յերեսս թագաւորին՝ քրիս-

համարի եթէ բայց տեղի կուոյն Ապողոնի 'ի Դափնի մերձ յԱնտիոք քաղաք. իսկ յօրինակիս մերում գրի Պաւուլա, որ մերձագոյն է անուան սրբոյն Բաբելայ՝ քան Ապողոնի:

(1) Յովհ. Ոսկեբերան. 'ի ճառն Բաբելայ. Գլ. ԺԵ:

տանեւյս ասելով զինքեանս։ Եւ Թոյլ ետ նոցա զտանջելն 'ի ժամուն յայնմիկ, զի մի անուն մարտիրոսի առցեն։

Սա փոխեաց զանուն քաղաքաց, զՆեսաբիա կոչեաց Ռազկէ, և զԿոստանդինուպօլիս՝ Բիւզանդիա (1). և շինեաց հիւրանոց, աղքատանոց և տեղի որբոց և այրեաց դարմանոյ՝ խաբէութեամբ։ Եւ հրամայեաց ընթեռնուլ զաւետարանս հեթանոսաց, և չարգելուլ զորդիս քրիստոնէից յարուեստս ուսմանց։ Եւ ելեալ յԱնտիոքայ սպառնալեօք թէ դառնայ 'ի Պարսից խաղաղութեամբ, և առաքեաց յՈւռհա պատրաստել ինչ նըմա, և ոչ ընկալան։ Եւ գնացեալ 'ի Խառան՝ զոհեաց դիւաց, և պատուեաց զՀըրեայսն որ անդ կային. և հրամայեաց երթալ յԵրուսաղէմ և շինել զՏաճարն և զոհել ըստ օրինացն։ Եւ նոքա առեալ երեք հազար մոթ կիր և ժողովեալ 'ի ցրմանէն և գնացեալ՝ սկսան շինել. և հողմ ուժգին ցրուեաց զկիրն, և շաղախով կամեցան շինել, և իջեալ հուր այրեաց զշինուածն և զգործիսն։ Եւ Հրեայքն որ յՈւռհա, յարեան 'ի վերայ քրիստոնէիցն և սատակեցան 'ի նոցանէ։

(1) Անուանս Բաղէն եթէ պարզ իցէ ընթեռնուլ Մովսէսի, ոչ եթէ փոխեալ համարին անուանակոչութիւնս յիշեալ քաղաքացս, այլ զառաջին անուանսն զոր 'ի հեթանոսութեան ունէին, նորոգեալ։

Իսկ Յուլիանոս յամեալ 'ի Խուժան՝ և դարձեալ զոհեաց դիւաց առաջի կռոցն զոր կանգնեաց 'ի Խուժան. և մինչ զոհէրն, անկաւ թագն 'ի գլխոյն, և ձին զոր առընթեր ունէին, կոխեաց զնա և պատառեաց զհանդերձն. և ասացին բարեկամք իւր, թէ «Աս-այրն քրիստոնէիցդ է զոր զհետ քո տանիս»: Ու նա դարձոյց քան և երկու հազար 'ի զօրացն. բայց զնշան Խաչին զոր տանէին ըստ (սովորութեան) առաջնոյն, ոչ դարձոյց, զի ասաց. «Մ' գիտէ, թէ յաղթեն մեզ Պարսք, պարտութիւնն Խաչին լիցի»: և տարաւ ընդ իւր զօրք երեք հարիւր իննսուն և հինգ հազար պատերազմող, բաց 'ի սպասաւորացն և 'ի գործաւորացն. և ուր և երթային՝ կանգնէր կուռս և զոհէր, և հարցանէր, և ասէին դեւքն, թէ «Հոմագոյնք գամք ընդ քեզ աստուածոց բազմութիւնք. և տամք քեզ զճակատագիրն Աղեքսանդրու և զբախտըն, և Արէս աստղն կայ 'ի գլուխ զօրացդ(1)»: Ու եկն 'ի Տիզբոն և աւերեաց: Ու ելեալ Շապուհ գնաց փախստական, և առաքեաց առ նա տալ նմա գանձ բազում զի դարձցի, և ոչ կամեցաւ. և ապա ժողովեալ զՊարսս, եկն 'ի վերայ Տիգրիս գետոյ. և գնացին պատգամաւորք առ երկաքին, և ոչ կարացին առնել խաղաղութիւն: Ու յանկարծակի

(1) Արէս ըստ դիցաբանից էր չաստուած պատերազմի.

եկն նետ մի դիպեցաւ փորոտեացն Յուլիանոսի, և վայթեցաւ արիւնն. և առեալ յարենէն ափովն՝ ձգեաց ընդ երկինս ասելով. « Յաղթեցեր, Գալիլեացի. արդ առ 'ի վերայ Աստուածութեանդ և զթագաւորութիւնս: » Եւ ինքն ոչ ագանէր զրահս և սաղաւարտ՝ հպարտացեալ դիւացն խոստմամբ. այլ զնետն 'ի յօդիցն էառ, թերևս ոչ 'ի մարդկանէ, այլ 'ի զօրութենէ Աստուծոյ. և կատարեցաւ մարգարէութիւնն որ եղեւ նմա յԱնտիոք. զի յորժամ զՔրիստոսի պատկերն 'ի տանէն տեառնատես կնոջն, ուր բազում բժշկութիւն լինէր, քակեալ ետ Յուլիանոս և կանգնեաց 'ի տեղին կուռք, և իջեալ հուր՝ այրեաց զկուռսն(1). և եկեալ պատմեցին նմա մինչ մտանէրն յԱնտիոք. և նա 'ի ժամն ետես վարդապետ մի 'ի քրիստոնէիցն, և ասաց ընդ Լիբիանոս իմաստասէրն. « Հարց ընդ վարդապետդ, թէ ուր է ձեր հիւսանն որդին: » Եւ պատասխանեալ նորա ասէ. « Յարուեստն իւր կայ. Եւ-

(1) Եւսեբիոս 'ի գիրս որ վասն եկեղեցւոյ (Է. 17) պատմէ զպատկերէս, զոր կինն տեառնատես կանգնեալ էր, ասէ, 'ի յիշատակ սքանչելեացն զոր եցոյց նմա Տէր, 'ի Պանեադա քաղաքի առաջի դրանց տան իւրոյ 'ի բարձր վիմի. և էր պղնձենի: Զայս պատկեր ետ Յուլիանոս կործանել, և 'ի տեղի նորա կանգնել պատկերս կռոց, որ 'ի կայծականց մաշեցաւ: Եւսեբիոս իբր ականատես պատմէ զպղնձի պատկերէս, որ կայր, ասէ, մինչև յաւուրս իւր:

—ոսն (դադար) չինէ Թագաւորիդ մահուանն” և լուռ եղեն ։ Եւ նոյն բանն եղ 'ի գլուխ ․ և կազմեցին Բ—ոսն կամօք և զօրութեամբ հիւսանն Արդւոյն, և եդին 'ի ներքս ։

Եւ ընտրեցին այր մի զօրագլուխ (1) և ասացին ․ “Թագաւորեա՛ դու փոխանակ Յուլիանեայ 'ի վերայ մեր ․” և նա ասաց ․ “Ես դիւապաշտից ոչ Թագաւորեմ ։” Եւ նոքա ընդ մի բերան ասացին ․ “Եւ մեք ամենեքեան քրիստոնեայք եմք ։” Եւ նա դնել զԹագն 'ի գլուխ խաչին ․ և ասաց ․ “Եկայք երկրպագեցէք ․” և ամենեքեան երկրպագեցին ․ և ապա առեալ եդ 'ի գլուխ իւր ։ Եւ վասն սովոյն և սղութեանն արարին սէր ընդ Պարսիկս ․ և ետուն զՄծբին առանց մարդկանն, հանելով 'ի նմանէ զքաղմութիւն քրիստոնէից բնակելոցն 'ի նմա ։ Եւ դարձան՝ բերելով զմարմին անօրինին 'ի Կիլիկիա, և պահեցին 'ի սահմանս Տարսոնի անարգապէս ։ Եւ եԹող Յուլիանոս 'ի բանից իւրոց ճառս քառասուն ։

Իսկ Յուբիանոս այր բարի և աստուածապաշտ ուրախ արար զքրիստոնեայս ․ և եղեւ մեծ ցաւոցն բժշկութիւն, բայց չէաք արժանի վայելման ․ ոչ յերկարեաց, այլ 'ի մէջ Գաղատիոյ և Բիւթանիոյ կալաւ զնա ցաւ երիկամանցն և մեռաւ՝ եւթն ամիս

(1) Ասէ Յովլիանոս զոր փոքր մի զկնի կոչէ Յուբիանոս․

միայն Թագաւորեալ, և ոչ հասաւ 'ի Կոստանդնուպօլիս ։ Եւ եկեալ զօրքն 'ի Նիկիա Թագաւորեցուցին զՎաղէնտիանոս որ էր 'ի փանիոյ (Պանոնիա), 'ի Կապպալիոն քաղաքէ, այր իմաստուն. և կամեցան դնել նմա ընկեր, և ասէ ցնոսա. "Այդ չէ 'ի ձեր կամքդ, այլ յիմս. դուք զիս ընտրեցիք, և զընկերն իմ ես ընտրեմ ։" Եւ հաւանեցան նմա. և նա առ իւր ընկեր զեղբայրն իւր զՎաղէս, որ մկրտեալ էր յԵւդոքսէ եպիսկոպոսէ, որ էր արիանոս, նորա դաւանութեամբն. և զնա եդ Թագաւոր յարեւելից կողմանէ. և էր ջատագով արիանոսացն ։

Եւ Վաղէնտիանոս առ զՀռոմ և պահեաց զհաւատն Նիկիոյ, և զորդին իւր ըզ-Գրատիանոս օգոստոս քարոզեաց ։ Եւ գը-նացեալ Վաղէս յԵգիպտոս 'ի Մարկիանուպօլիս. և 'ի հասանելն նորա անդ՝ եղեւ շարժ, որ այլ բնաւ չէր լեալ և ոչ լուեալ. զի Ն շարժել ծովուն, եզարկ զնաւսն ընդ պարիսպ քաղաքին. և դարձաւ ծովն և գնաց 'ի ներքս քան զսահմանս իւր, թողեալ զտեղին ։ Եւ ժողովեալ բազմութիւն մարդկան յափշտակել ինչ 'ի նաւացն, և դարձաւ ծովն և կլլաւ զամենեսեան և տարածեցաւ 'ի վերայ ցամաքուն, և բազում քաղաքս և գաւառս ընկղմեաց զապականութիւն Վաղեսի նշանակելով ։ Իսկ Վաղէնտիանոս յանդիմանէր

զեղջայրն վասն չարափառութեանն, և 'ի յոչ լսելն՝ բարկացաւ և ոչ տայր նմա օգնական պատերազմել նմա ընդ Գոթացիսն, ասելով. «Ոչ օգնեմ ես առն որ ընդ Աստուած պատերազմի։»

Եւ ինքն Վաղենտիանոս չոգաւ 'ի պատերազմ 'ի Սարմատիա, և զարհուրեցան Սարմատացիքն, և խնդրեցին խաղաղութիւն 'ի նմանէ պատգամօք։ Եւ զարմացաւ Վաղենտիանոս ընդ գարշութիւն նոցա և ընդ տգիտութիւնն. և հարցեալ զնոսա և իմացեալ՝ զի այնք որ առ նա եկին՝ ընտրելագոյնքն էին, և բարկացաւ և ասաց. «Եղո՜ւկ զՀռոմայեցիք, որ թողեալ են ձեզ թագաւորութիւն և իշխանութիւն անասնոցդ.» և մեծ աղաղակաւ քաջալերէր զզօրսն չառնել ընդ նոսա սէր, այլ բառնալ զնոսա. և 'ի խստագոյն գոչմանէն պատառեցան երակք փողիցն, և մեռաւ ութսուն և չորս ամաց՝ թագաւորեալ ամս մետասան(1). Սա արտաքոյ օրինաց երկու կին էառ. առաջին ըզ Սեւերէ (Սեւերա) և երկրորդ զՅուստինէ դուստր Յուստիանոսի. Այս Յուստիանոս ետես տեսիլ և պատմեաց թէ յինէն ծիրանի նիւթ ելանէր, և էր իշխան. և լուեալ Վաղենտիանոս սպան զնա, զի մի ծնցի, ասէ, թագաւոր. և յետոյ էառ զդուստրն նո-

(1) Սոկրատ., Դ. Ա.

րա. 'ի նմանէ ծնաւ որդի մի, զոր յիւր անուն կոչեաց Վաղենտիանոս, և երեք դստերս, զՊաղիէ՝ որ եղև կին Մեծին Թէոդոսի, և 'ի նմանէ ծնան Արկադէոս և Ոնորիոս (1): Եւ ի մահուանն Վաղենտիանոսի չէր մօտ առաջին որդին Գրատիանոս, որ էր յառաջին կնոջէն, այլք 'ի զօրացն Թագ եդին 'ի գլուխն Վաղենտիանոսի որդւոյն փոքր, որ էր չորից ամաց:

Իսկ Վաղէս արար զօրագլուխ զԳրատիանոս և առաքեաց 'ի պատերազմ ընդ Գոթացիս, և յաղթեցաւ: Եւ Վաղէս նախատեաց զնա, և Գրատիանոս ասէ. “Պարտութիւնս այս չէ իմ, այլ քո, զի պատերազմիս ընդ Քրիստոսի (2):”

Յայսմ ժամանակի Մաւիէ դշխոյն Տաճկաց բազում վնասս հասուցանէր Հռոմայեցւոցն. և խոստանայր խաղաղութիւն, եթէ ձեռնադրեն գաւառի նոցա եպիսկոպոս ըզՄովսէս անապատաւոր: Եւ Վաղէս լուեալ

(1) Սոկրատ (Դ.Ա.) ոչ յիշատակէ եթէ 'ի Գաղիէ (Գաղղայ) ծնան Արկադէոս և Ոնորիոս, քանզի սոքա արդարև յիշեալ Պղակիլլայէ 'ի միւս կնոջէն Թէոդոսի եղեն, որ էր դուստր Անտոնի Սպանիացւոյ, որ եղև հիւպատոս յամի 382:

(2) Յայսմ պատերազմի ոչ եթէ Գրատիանոս՝ այլ Տրայիանոս վարէր զվաշտսն զօրավարութեան. առ որ յանդիմանութիւն արար Վաղէս յաղագս անյաջողութեանն յետս դառնալոյ: Ամմիանոս Մարկեղինոս ԼԱ. 7. 8:

ղայս՝ առաքեաց յանապատն խնդրել կրօնաւոր, որոյ անուն Մովսէս էր. և գտեալ զոմն բերին առ նա. և ոչ կամէր ձեռնադրիլ յարիանոսացն, այլ յաքսորելոցն ուղղափառաց: Եւ հրամայեաց թագաւորն. և առեալ զեպիսկոպոսութիւնն 'ի հալածելոց ուղղափառացն, գնաց: Եւ ընդ երթալն նորա բազում Տաճիկք քրիստոնեայք եղեն, զի դշխոյն Մաւիէ հռոմայեցի էր ազգաւ, գերեալ 'ի Տաճկաց. և վասն գեղեցկութեան իւրոյ կին լեալ Տաճկաց թագաւորին. և յետ մահուան թագաւորին, ինքն ունէր զթագաւորութիւնն: Եւ վասն նորա բազումք դարձան 'ի քրիստոնէութիւն (1): Եւ յայսմ ժամանակի շինեաց Վաղէս տիմբոն յԱնտիոք, որ է բանտ ուղղափառացն: Եւ յանկարծակի երեւեցաւ զօրք՝ գնալով ընդ երկինս մարմնաւոր տեսլեամբ: Յայսմ ժամանակի ծնաւ մա-

(1) Սոկրատ (Դ. Դ.) 'ի հայ թարգմանութեան այսպէս պատմէ զՄովսիսէ: Էր, ասէ, Մովսէս արաբացի ազգաւ. և հաւատացեալ 'ի Քրիստոս, առանձնացեալ ճգնէր յանապատի, պայծառացեալ լեալ առաքինութեամբն: Կոչեալ սորա ընդ-պատերազմ զոր տայր Մաւիա թագուհին ընդդէմ քրիստոնէից, երթեալ համոզէ զնա 'ի խաղաղութիւն, և հաստատէ զաշխնս սիրոյ: Տեսեալ զվարս սորա, բռնադատեն ձեռնադրիլ 'ի քահանայութիւն 'ի Ղուկիոսէ եպիսկոպոսէ Աղեքսանդրիոյ, որ էր արիոսական: Մովսէս արհամարհեալ զնա վասն աղանդոյն, ընդունի զձեռնադրութիւն յեպիսկոպոսաց անտի ուղղափառաց, որ 'ի հալածանս կային. և դարձեալ առ Մաւիա՝ լրումն առնէ հաշտութեանն:

նուկ մի յՆ՟ոտաք միականի, որ ունէր չորս ոտք և չորս ձեռք և մորուք։

Յայսմ ժամանակի ելին Գոթացիքն և դերեցին բազում գաւառս, զՄկիւթիա և զԹրակիա և զՄիւսիա և զՄակեդոնիա և զԱքայիա և զամենայն Ասիադա. և Վաղէս փախեաւ 'ի Կոստանդինուպօլիս, և ամբոխն նախատէին զնա ասելով. "Տուր մեզ զէն և երթիցուք կռուեսցուք։" Եւ ել զայրացեմամբ և սպանանացաւ նոցա՝ որ 'ի դառնալն քակէր զքաղաքն։ Եւ գնացեալ յաղթեցաւ 'ի նոցանէ, և փախեաւ 'ի դիւղ մի. և պատերազմողք բարբարոսաց պատեցին զգիւղն, և նա թաքեաւ 'ի տուն յարդի. և յուզեալ զնա ոչ գտին, այլ այրեցին զգիւղն և այրեցաւ նա ընդ յարդին, առհաւատչեայ յաւիտենական հրոյն(1), և կեցեալ ամս յիսուն, և թագաւորեալ ամս եւթնևտասն։ Եւ ըստ զթագաւորութիւն Գրատիանոս, որ յաւուրս հօրն Վաղենտինիանոսի Ագոստոսկարգոր էր 'ի Հռոմ. և սա կանգնեաց զուղղափառութիւն, և արար հաղորդ թագաւորութեան իւրոյ զԹէոդոս սպանիացի, որ նա էր քաջողեալ

(1) Պատմագիրք ոչ համաձայնին ընդ միմեանս 'ի պատմել զեղանակ մահուան Վաղէսի։ Սոկրատ ասէ. "Հասեալ յԱդրիանուպօլիս. հրով այրեալ սատակեցաւ անհետ 'ի մարդկան գիտութենէ՝ թէ զիա՞րդ և կամ զի՞նչ օրինակաւ հրով այրեցաւ." Դ. Ե.—Մովսէս խոր. Գ. 33.

յառաջագոյն Թագաւոր զԳրատիանոս, և նա փոխարինեաց և ետ նմա զԿոստանդինուպօլիս և զամենայն արեւելս։ Յայսմ ժամանակի շինեցաւ հրամանաւ սորա Մասալայն։ Եւ լըւեալ բարբարոսացն զկորուստն Վաղէսի, եկին մինչեւ ՚ի պարիսպն Կոստանդինուպօլսի. և ելեալ Թէոդոս կոտորեաց զնոսա, և գընացեալ յաշխարհն նոցա, արար զնոսա ընդհարկաւ։ Եւ եղեւ խաղաղութիւն եկեղեցւոյ և աշխարհի զկնի քառասուն ամի արիանոսացն չարութեան (1)։

Յայսմ ժամանակի մեռաւ Արտաշիր Թագաւորն Պարսից, և առ զԹագաւորութիւնըն Շապուհ որդի նորա։ Եւ յերրորդ ամին Թէոդոսի սպանաւ Գրատիանոս ՚ի Մաքսիմոսէ բռնակալէ ՚ի Հռոմ (2), և Թագաւորեաց փոքր Վաղենտիանոս ՚ի Հռոմ։ Եւ Թէոդոս և Վաղենտիանոս մարտուցեալ ընդ Մաքսիմոսի բռնակալի, սպանին զնա, և ինքեանք երեւելի փառօք մտին ՚ի Հռոմ։

(1) Սոկրատ, Ղէ։

(2) Կղէմէս Մաքսիմոս սպանիացի, էր բարձրագոյն պաշտօնեայ պատերազմի ՚ի բանակին որ կայր յերկրին Բրիտանացւոց, համհարզ Թէոդոսի, այլ ՚ի լսել զնորա դաւաճանութիւնն որ եղեւ ՚ի ձեռն Գրատիանոսի, յարձակեալ ՚ի Գաղղիա և զհետ մտեալ նորին որ փախուցեալ ՚ի Մաքսիմոսէ ՚ի Լիոն քաղաք ապստամբել փութայր, զնոյն ետ համբառնել ՚ի ձեռն ուրումն Անդրագաթ կոչեցելոյ։ Սոկրատ գլխովքն այլովք պատմէ զմահ Գրատիանոսի, զոր աւելեալ ՚ի գիրս նորա, ՃԴ։

Իսկ ապա եկն Թէոդոս 'ի Կոստանդնուպօ-լիս, և առաքեաց զսուղապէկոս յարքունեաց գոր-ծակալ(1). և յորժամ եկն յԱնտիոք, ետես անդ հակառակութիւն յեկեղեցին, և ա-րար խաղաղութիւն և եդ զաթոռն 'ի Սե-լեւկիոս: Իսկ 'ի չորրորդ ամին Թէոդոսի կա-մեցաւ սրբել զեկեղեցի յարիանոսաց. և արար մեծ ժողով հարիւր և յիսուն եպիսկո-պոսաց. և գլխաւորք էին այսոքիկ: Մելիտոս Անտիոքու, Տիմոթէոս Աղեքսանդրու, Կիւրեղ Երուսաղէմի, սուրբն Ներսէս Հայոց Մե-ծայ՝ դարձեալ յաքսորանացն, Գրիգոր աս-տուածաբան Կոստանդնուպօլսի, և Գրի-գոր Նիւսացին. և նզովեցին (նախ) զաղանդն Արիոսի, և ապա զՄակեդոնին, որ իշխեաց յանդգնել և զսուրբ Հոգին արարած ա-սել: Իսկ հաստատեցին զհաւատն Նիկիոյ, և յաւելին 'ի Հաւատամքն վասն սրբոյ Հոգ-ւոյն, զի այս խնդիր յետոյ շարժեցաւ(2):

Իսկ զկնի տասն ամի եպիսկոպոսութեան

(1) Սուղապէկոս 'ի յայն լեզու զօրավար նշանակէ, և էր ա-նուն նորա Ղազուհ, որ եկեալ յԱնտիոք ետես բաժանեալ զեկեղեցին 'ի մէջ Մելետիոսի և Պաւլինոսի, իւրաքանչիւր առանձինն կալեալ աթոռ: Պաւլինոս ոչ հաւանեալ ընդ առա-ջարկութիւն Մելետիոսի, որ ասէր երկոցունց եւս աթոռոյ նստեալ մինչև 'ի մահ, իսկ որ նախքն մեռանիցի՝ բարձցի նորա ա-թոռ. վասն որոյ Ղազուհ յանձնեաց զաթոռն ցՄելետիոս, տուեալ Պաւլինոսի զմի միայն եկեղեցի:

(2) Ասողիկ. Ճ. ՃԱ: — Մովսէս Խոր. Գ. ԼԳ.

իւրոյ, Աստուածաբանն եւ ՚ի Կոստանդնուպօլսէ, և էառ զաթոռն Նեքտարիոս։ Եւ Թէոդոս յորժամ ետես զՆեկտարիոս, ասաց թէ «Զսա տեսի ես յերազի, որ օրհնէր զիս թագաւոր։» Եւ սա մեռաւ ՚ի ժողովն, և խօսեցաւ Գրիգոր Նիւսացի վասն նմա գերեզմանական ճառս. և բերաւ մարմինն յԱնտիոք։ Եւ Նեկտարիոս խափանեաց զքահանայսն ընդունելոյ զխոստովանութիւն, և սահմանեաց զի կատարեալքն առցեն և յամենեցունց վկայեալքն։ Զի քահանայ մի յԱնտիոք հրապարակեաց զխոստովանութիւն սարկաւագի միոյ, որ անկեալ էր ՚ի կին մի մեծազգի, և եղեւ յոլով սպանութիւնս (1)։ Եւ ասաց Նեկտարիոս, թէ «Լաւ է զօջ դնել ՚ի վերայ դժնկի փշոյ և ոչ ՚ի վերայ տգիտաց և անկատարից։»

Յայսմ ժամանակի հանդիպեցաւ Թէոդոս ՚ի Թեսաղոնիկէ, և հիւանդացաւ, և մկրտեցաւ յԱքիլասայ և առողջացաւ. և եկեալ ՚ի Կոստանդնուպօլիս շինեաց ըզմեծ եկեղեցին զՆաստասիա (Յարութիւն)։ Եւ յայսմ ժամանակի ծնաւ նմա որդի ՚ի Գալլէ (Գալլայ) կնոջէն, և կոչեաց զանուն նորա Ոնորիոս. և Գալլէ ծնեալ զՈնորիոս՝ մեռաւ (2)։ Եւ կայր նմա պատկեր յԱն-

(1) Սոկրատ. ՃԺ.
(2) Տես ՚ի ծանօթութեան 3. էջ. 134.

տիրք, և լուեալ զմահ նորա՝ քարշեցին և ընկեցին 'ի շուկայն։ Եւ բարկացաւ յոյժ Թագաւորն Թէոդոս. և առ զիշխանութիւնն Անտիոքու, և ետ զնա Լատիկ (Լաւոդիկէ) քաղաքի՝ զանուանիլն մայրաքաղաք և աթոռ Աւետարանչի. և դատաւորքն արարին յոլով սպանութիւն վասն այնմ գործոյ (1)։ Եւ լուեալ զայն միայնակեաց մի Ապողոս անուն (2). եկն և յանդիմանեաց զիշխանսն, և գրեաց առ Թէոդոս, թէ "Վասն պղնձի պատկերի միոյ չէ պարտ այնչափ բարկանալ. և զպատկեր Աստուծոյ ապականել՝ զմարդիկ։ Պղնձի պատկեր շատ կարես կազմել. թէ պատկեր Աստուծոյ անկարանաս շինել, զայդ ոչ գիտեմ։ Եւ քանի ես զհոգիս մեր անարգեմք մեղօք, և չէ ումեք հոգ, որ է պատկեր Աստուծոյ նախատեալն։" Եւ զայս

(1) Ըստ պատմութեան Յունաց՝ Թէոդոս եդ նոր հարկս 'ի վերայ Անտիոքացւոց առ 'ի ստանալ զհնգամեանն որդւոյ իւրոյ և զտասնամեանն իւր։ Անտիոքացիք ընդդէմ կացեալ հրամանին և զարձանն իւր պղնձի զկայսերն արկեալ կործանեցին։ Սաստիկ զայրացեալ կայսեր ընդ անարգանսն զպատժաւորսն մահու դատեաց, և զխռովութիւնն 'ի բնակչաց եդեալ 'ի բանտի։ Յայնժամ Փլաբիանոս հայրապետ Անտիոքայ երթեալ առ կայսր, հզօր բանիւք իւրովք հաշտեցուցանէ ընդ ժողովրդեանն, և շնորհանսն ընդ նոսա 'ի բաց գաղթմուցանէ։ Յովհ. Ոսկ. Ճառ անդրիանդսն, ԻԱ։

(2) Ապողոս կամ Ապողոն էր միայնակեաց և այր սուրբ զօրութեան, Մակեդոնիոս կոչեցեալ ըստ Թէոդորետոսի. և Գարէկեր մականուանեալ։

լուեալ Թագաւորին՝ լռեաց 'ի բարկութենէն և հաշտեցաւ ընդ քաղաքին ։

Յայսմ ժամանակի Թեսաղոնիկէ, որ է գլուխ Իտալիոյ (1), ապստամբեալ 'ի Թագաւորէն քարկոծեցին վէրխան Թագաւորին որ 'ի քաղաքին ։ Եւ Թագաւորն զայրացեալ հրամայեաց կոտորել զքաղաքն. և մեռան եւթն հազար արդար և մեղապարտ ։ Եւ Ամբրոսիոս եպիսկոպոս եկն առ Թագաւորն 'ի Մեդիոլանէ (Միլան) քաղաք և դիպաւ Թագաւորին առ դրան եկեղեցւոյն, զի կամէր մտանել, արգել զնա և ասէ. "Չամաչե՞ս, արեամբ շաղախեալ, մտանել 'ի տուն Աստուծոյ. այլ դարձիր և առ կապանս 'ի ձեռս իմ, զոր առաքեաց քեզ Աստուած ։" Եւ Թագաւորն դարձաւ. և յետ ութ ամսոյ եկն տօն Ծննդեանն. և Թագաւորն նստեալ լայր դառնապէս. և եհարց զնա մագիստրոսն Ռուփինոս(2), և ասէ. "Զի՞նչ է, արքայ, ընդէ՞ր լաս ։" Եւ նա ասէ. "Ընդէ՞ր չլամ, զի ահա ծառայք և մուրացկանք մտանեն յեկեղեցի, և ես արգելեալ կամ յեկեղեցւոյ և կապեալ յերկնից ։" Եւ նա

(3) Աստ փոխանակ Իտալիոյ՝ պարտ է ընթեռնուլ Իլիւրիոյ, այն է Լիւրիկէ ։

(2) Այս Ռուփինոս էր պաշտօնեայ Թագաւորին, որ գրգռեաց զԹէոդոս 'ի մահ մատնել անձինս Հիւգեստոսան հազար բաց այլոց պատմագրաց ։

ասէ. “Ես փութամ և աղաչեմ զեպիսկոպոսն։” Եւ ասէ Թագաւորն. “Ես ոչ հաւատամ թէ լսէ քեզ, և այն առնու երեսաց, և արհամարհէ զօրէնս Աստուծոյ։” Եւ տակայն գնայ Ռուփինոս. և Թագաւորն երկիւղիւ զհետ երթայր։ Եւ յորժամ ետես եպիսկոպոսն զՌուփինոս, բարկացաւ և ասէ. “Պի՞նծ, քո խրատու եղեւ այն ամենայն։” Եւ նա անկեալ առ ոտսն աղաչէր և ասէր. “Ահա և Թագաւորն գայ ընդ հետ իմ։” Եւ նա ասէ. “Չթողում զնա յեկեղեցի. և թէ կամիցի՝ ընդունիցիմ ըսպանութիւն ՚ի նմանէ որպէս և զայլսն։” Եւ գնացեալ ընդդէմ Թագաւորին՝ պատմեցին զասացեալս ՚ի սրբոյն. և ասէ Թագաւորն. “Թող երթամ և խնդութեամբ ընդունիմ զնախատինսն ըստ արժանեացն իմոց։” Եւ յորժամ եկն, կայր արտաքոյ և աղաչէր արտասուօք. և ձայնեաց առ նա եպիսկոպոսն և ասէ. “Ամբարտաւան, անօրէն, ընդէ՞ր եկիր այդր։” Եւ ասէ Թագաւորն. “Յօժարութեամբ ընդունիմ, հայր սուրբ, զանարգանսդ և զբանադրանսդ, և առանց քո կամաց ոչինչ առնեմ. միայն մի փակեր (զդուռն) ընդդէմ երեսաց իմոց, զի արտաքուստ ՚ի ներքս տեսից զերեսս քո և զեկեղեցիդ Աստուծոյ։” Եւ եպիսկոպոսն կայր յեկեղեցին և ասէ. “Զի՞նչ աղաչխա-

րութիւն կրեցեր, զի զիս և զդուռն եկեղեցւոյս տեսցես։” Եւ Թագաւորն ասէ. “Միայն ցոյց դեղ վիրաց իմոց և արարից։” Եւ ասէ եպիսկոպոսն. “Խիստ ես ընդդէմ մեռանակարաց. դրել տուր օրէնս, զի արգելցեն զմեռանապարտսն երիս աւուրս. և թէ տակաւին կասկածանօք է, քառասուն աւուրս. և հարց և փորձ լիցի, և վկայիւք և քննութեամբ ՚ի յայտ եկեսցէ իրաւն. և զինչ տեսցեն զկնի չիջման բարկութեանն, արասցէ զնա պատշաճն պատուհաս։” Եւ նոյն ժամայն դրեցին. և առաքեաց առ ամենայն դատաւորս և իշխանս երկրի, զի այնպէս արասցեն։ Եւ ապա հրամայեաց Թագաւորին մտանել յեկեղեցին. և նա մտեալ յեկեղեցին՝ ընկէց զինքն ՚ի վերայ գետնոյն ասելով. “Մերձեցաւ անձն իմ ՚ի հող. Տէր ապրեցո զիս ողորմութեամբ(1)։” Եւ արտասուեալ արքայ կանգնեցաւ և գնաց մերձ ՚ի խորանն. և կամեցաւ երթալ յիւր տեղին, և արգել զնա եպիսկոպոսն և ասէ. “Լաւ է քեզ լինել յետոյ և ՚ի վայր քան զամենեսեան, մինչև կատարեալ ապաշխարես։” Եւ յանձին կալաւ ամենայն խոնարհութեամբ, և գնաց կանգնեցաւ ընդ այլ ապաշխարողսն։ Այսպիսի էր երկիւղ և հաւատ Թագաւորին(2)։

(1) Սաղմոս. ՃԺԸ. 25։
(2) Սուրբ Օգոստինոս, Ցղ. քաղաքին Աստուծոյ. Ե. 26։

Յայսմ ժամանակի գտան նշխարք Ամբակումայ մարգարէին և Միքիայ, յԱլութրաբուլոս Պաղեստինացւոց (1) յայտնութեամբ եպիսկոպոսին. և յԵրուսաղէմ գտան նշխարք սրբոյն Ստեփաննոսի և որք ընդ նմա՝ առ Յովհաննու եպիսկոպոսին Երուսաղեմի։

Ի յերրեքտասան ամին Թէոդոսի քարոզել ետ զորդին զԱրկադէոս Թագաւոր յարևելս. և յայնժամ Աւգանոս (Եւգինէոս) և Աւրբոգոստոս (Արբոգաստոս) իշխանք խաբէութեամբ սպանին զՎաղենտինիանոս 'ի Հռոմ. Եւ Թէոդոս Թագաւորեցոյց զՈնորիոս 'ի Հռոմ։ Եւ ելեալ սակաւուք ընդդէմ ապըստամբացն որ էին բազումք, և ասէն ցԹագաւորն որ ընդ նմա էին. "Թող տուր մինչեւ հասանեն զօրքն։" Եւ նա եմուտ 'ի քարայր մի առանձինն, և գոչեաց առ Տէր. և երեւեցաւ նմա Յովհաննէս Աւետարանիչն և Փիլիպպոս առաքեալն, և ասեն ցնա. "Մի՛ զարհուրիր և օգնականի մի՛ մնար, զի մեք եկաք 'ի Քրիստոսէ օգնել քեզ." որ եղեւ իսկ. զի 'ի վաղիւն կործան երկուքին բռնակալքն(2)։

(1) Այն է Ելեւթերոպօլիս քաղաքն Յուդայաստանի, 'ի ցեղէն Դանայ։

(2) Սոկրատ ասէ, եթէ Եւգինէոս պարտեալ 'ի մարտին յոտս Թէոդոսի գիմէր յանկիշաչարութիւն նորին աղաչանեալ, և զօրքն անդէն զնա գլխատեցին. իսկ Արբոգաստոս 'ի հետամտեցն իւր ոչ կարացեալ զերծանել, ընդ սուր իւր ելեալ վախճանէր. ԾԺԴ։

Եւ յորժամ դարձաւ Թագաւորն յաշխատութենէն և եկն 'ի Միդիլի (Միլան), կալաւ զնա ցաւ երիկամանցն և մեռաւ, կեցեալ ամս վաթսուն, Թագաւորեալ ամս վեշտասան և ամիս ութ (1)։

Յայսմ ժամանակի Թագաւորեաց 'ի Պարսս Աւռհարօն Գերմանշահ (Աւռամ Կրման,) որդի Շապհոյ, եղբայր Արտաշրի՝ ամս մետասան։

Այս Թէոդոս 'ի կենդանութեան իւրում աղաչեցեալ յԱմբրոսէ եպիսկոպոսէ հալածել զարիանոսսն, և ոչ լուաւ նմա, մինչեւ յաւուր միում նստէր Թագաւորն և Թագաւորեալ որդի նորա Արկադէոս ընդ նմա. և եմուտ Ամբրոս, և ետ ողջոյն Թէոդոսի, և յորդին ոչ հայեցաւ, և կարծեաց Թագաւորն թէ ոչ տեսաւ զորդին, և ասէ. «Հա՛յր օրհնեա՛ զորդիս։» Եւ նա ասէ. «Դու բաւական ես մեզ Թագաւոր, զդա ոչ պատուեմ, բայց թէ զմի 'ի ծառայիցդ։» Եւ տրտմեցաւ և զայրացաւ յոյժ Թագաւորն։ Եւ ասէ եպիսկոպոսն. «Դու մահկանացուդ զնախատինս որդւոյդ չկարես տանել. իսկ անմահն Աստուած զանպատուութիւն որդւոյն իւրոյ ո՞չ խնդրէ 'ի ձեռաց քոց։» Եւ հաւանեալ Թագաւորն՝ հրամայեաց հալածել զարիանոսսն, և ընկենուլ յամենայն համարձակութենէ։

(1) Ակրոպ. ճժե.

Յայսմ ժամանակի Ամաւուս Պաղեստանեայ ծնաւ մանուկ մի, որ 'ի լանջացն 'ի վեր երկու էր գլխովք, և չորս ձեռօք. և ապրեցաւ երկու ամ: Յորժամ միոյն ուտէր, միւսն չուտէր. և երբ միոյն ննջէր, միւսն արթուն կայր. և էր զի խաղային ընդ միմեանս, և երբեմն լային, և երբեմն ծիծաղէին, և միոյն քան զմիւսն երկու աւուրբք յառաջ մեռաւ:

Իսկ Թագաւորն Արկադէոս էր ողջախոհ և ժուժկալ. և ներքոյ ծիրանեացն ագանէր 'ի ծածուկ մազեղէնս, և սիրէր զկրօնաւորսն: Յայսմ ժամանակի ածաւ Յովհան յոյժ փափոքրանօք 'ի Կոստանդնուպօլիս, և էր զօրաւոր բանիւք և նշանօք և վարդապետութեամբ: Բայց կային ոմանք որ անգոսնէին ըզնա վասն ոչ յստակագոյնս խօսելոյ 'ի բարբառըն Յունաց, զի Ասորի էր ազգաւ և այնու էր վարժեալ: Սա մեռաւ յաքսորս 'ի Կոմանս Հայոց, կեցեալ ամս յիսուն. և եւթն ամ եպիսկոպոս եկաց և զերիս ամս յաքսորս եկաց (1): Եւ յորմէ հետէ մկրտեցաւ, ոչ երդուաւ և ոչ երդուեցոյց, և ոչ սուտ խօսե-

(1) Սուրբ Յովհաննէս Ոսկեբերան յաջորդեաց զՆեկտարիոս յամի 397, և 'ի 26 փետրուարի ամսոյ դատապարտեցաւ յաքսորս յամի 404, և վախճան եղեւ յամի 407, յորմէ յայտ է եթէ եկաց նա յաթոռն ամս իբր եւթն. — Սոկրատ, Ճ.Ժ.Է.

ցաւ, և ոչ նկուղեաց զօջ, և ոչ արբ գինի. և ոչ ծիծաղեցաւ, և ընդ մարդոյ ոչ ճաշակեաց. և յորժամ երթայր յաքսորս, եհար զձեռն յեկեղեցին և ասաց. «Ողջ մնա, սուրբ Եկեղեցի, բնակարան փառացն Տեառն։ Եւ ես ՚ի սպարգեւացն զօր առի յԱստուծոյ, երկոտասան հազար ճառս եդի ՚ի գանձս քո, որ են ութ հարիւր գիրք։»

Յետ այսորիկ հիւանդացաւ Արկադէոս, և եդ քարոզել զորդի իւր զԹէոդոս Թագաւոր ութամեայ։ Եւ Անորիոսի ոչ եղեւ որդի, և նա միայն էր ժառանգ, երկեաւ Արկադէոս վասն որդւոյն և արար կտակ, եւ յանձնեաց զորդին ՚ի Պարսից Թագաւորն Յազտաճատ (Յազկերտ)։ Եւ խնդաց յոյժ յորժամ լուաւ Յազտաճատ, և առաքեաց դաստիարակ մանկանն այր մի բանաւոր Անտիոքոս անուն, և առաքեաց սպառնալիս յամենայն տուն Թագաւորութեանն Հոռոմոց, եթէ ոչ ահիւ և դողութեամբ տեսցեն զմանուկն։ Եւ մեռաւ Արկադէոս Թագաւորեալ ամս երեքտասան։ Եւ կայր խաղաղութիւն ՚ի մէջ Պարսից և Հոռոմոց. և Քրիստոնեայք որ ՚ի Պարսս էին, աճէին և կային անկասկածս ՚ի ձեռն միջնորդութեան Մարութայի եպիսկոպոսի։ Եւ մեռաւ Անորիոս ՚ի Հռոմ անորդի, և Թագաւորեաց Կոստանդիանոս (Կոստաս Գ.) և նա

պանաւ 'ի բռնակալէ ումեմնէ, և մնաց Թէոդոս միայն զկնի Ոնորիոսի, որ թագաւորեաց ամս երեքտասան, և ժառանգ ոչ եթող։ Եւ յայնժամ Թէոդոս զՎաղենտինիանոս հօրաքեռորդին իւր արար կեսար, և առաքեաց 'ի Հռոմ ընդ մօր իւրոյ. և յետ այնորիկ առաքեաց նմա թագ, որ և թագաւորեաց ամս երեսուն և երկու։ Եւ էր Թէոդոս այր սուրբ և չորակեր, և անձէթ և անդլինի էր սեղան նորա զաւուրս պահոցն։ Եւ սա զՐեբբոնի եպիսկոպոսին մազեղէնն առնոյր զկնի վախճանելոյ եպիսկոպոսին, և զգենոյր զամենայն գիշեր. և էր անոխակալ և ողորմած այնչափ, որ 'ի հարցանելն թէ՝ «Ընդէ՞ր թողուս զմահապարտսն կենդանի.» և նա ասէ. «Երանի՛ թէ զմեռեալսն կարէի 'ի կեանս դարձուցանել, թող թէ զկենդանիսն 'ի մահ փոխել։ Այդ Աստուծոյ է գործ՝ սպանանել և կեցուցանել։»

Յայսմ ժամանակի Յազդաճառ թագաւորն Պարսից մեռաւ, և առ զթագաւորութիւնն Արհաւան որդի նորա ամս քսան և երկու (1)։ Եւ բարձաւ սէրն 'ի միջոյ թագաւորացն. և հարան Պարսիկք յոլով անգամ աղօթիւք թագաւորին.

Յայսմ ժամանակի առաքինի երեւեցաւ

(1) Այն է Վռամ Բ. որ նստաւ զկնի Յազկերտի յամի 419 կամ ըստ այլոց 421.

Սհակ Սմթայ եպիսկոպոսն, գնելով զգերեալ-սըն 'ի Պարսից մինչեւ տայր զսպաս եկեղեցւոյն. զարծաթեղէնս և զոսկեղէնս՝ 'ի գինս ծառայիցն առելով՝ թէ «Աստուածն մեր պէտս ոչ ունի ոսկեղէն և արծաթեղէն սպասուցոյ»: Եւ գովեցաւ հաւատ նորա 'ի Պարսս. և խնդրեաց զնա Պարսից թագաւորն, և յոյժ մեծարեաց 'ի փառս Քրիստոսի: Յայսմ ժամանակի հռչակաւորք էին Սիմէոն սիւնակեաց Ճնոսք և Սօր Պարսամս 'ի սահմանըս փոքր Հայոց:

Ի սոյն ժամանակս էր Նեստոր պատրիարք 'ի Կոստանդինուպօլիս. և էր նորա քահանայ մի Անաստաս անուն, որ յաւուր միում յամպիոնն խօսեցաւ զնոր հերձուածն, զՄարիամ մարդածին և ոչ Աստուածածին դաւանեալ: Իսկ ոմն ունէր ժողովուրդն Նեստորի պատուհասել զնա. և նա ոչ միայն ոչ մեղադրեաց, այլ և առ 'ի նմանէ զհերձուածն և տարածեաց: Իսկ վասն սորին պատճառի եղեւ մեծ ժողովն Եփեսոս 'ի քառասուն և մի ամին Թէոդոսի, և 'ի ՉԽԲ (742) թուին Տեառն. և 'ի Քրիստոսէ չորս հարիւր քսան և երեք [1], եղեւ առաջին ժողովն Եփեսոս. և էին անդ երկերիւր եպիսկոպոսք, և եւթն 'ի նոցանէ եղին նզովիւք

(1) Ժողովն Եփեսոսի գումարեցաւ յամի 431. 'ի 24 ամի իշխանութեան Թէոդոսի:

'ի Թուայն, և մնացին յուղղափառութեան հարիւր ինսուն և երեք եպիսկոպոսք երե-ւելիք։ Եւ Մեծն Սահակ Հայոց մեծաց անպարապ եղեալ, գրեաց Թուղթ հաւա-նութեան զոր ինչ և սահմանեցին։ Էին և բազմութիւն քահանայից և կրօնաւորաց. և գլխաւորք էին այսոքիկ. 'ի Հռոմայ Արկա-դէոս և Պրոկղիոս եպիսկոպոսք փոխանորդք Կելեստինոսի Հռոմայ պապուն. Կիւրեղ՝ Աղէքսանդրի. Մեմնոն՝ Եփեսոսի, Յովհան-նէս՝ Անտիոքու, Ակակ՝ Մելտենւոյ, Յոբնաղ՝ Երուսաղէմի, և այլք որ արարին նզովս 'Նեստորի. և Յովհան՝ Անտիոքու[1], և քսան և վեց եպիսկոպոսք ընդ նմա ոչ գրեցին նզովս 'Նեստորի, մինչև ինքեանք 'նզովեցան ընդ 'նմա։ Եւ գնաց 'Նեստոր յաքսորս։ Եւ ա-պա եղև ընդ Կիւրղի Յովհաննէս, և խոս-տովանեաց զանգիտութիւն, որ ոչ գիտէր զչարութիւնն 'Նեստորի. և ապա հաստատե-ցին և ասացին. « Եթէ ոք այլ ժողով կամ եպիսկոպոս կամ Թագաւոր, նոր հաւատ և նոր սահման դնէ յետ այսորիկ, եղիցի նզո-վեալ. այլ զնիկիայն հաստատուն կալցի սուրբ եկեղեցի մինչև ցկատարած աշխար-

(1) Յովհաննէս եպիսկոպոս Անտիոքայ աշակերտակից գո-լով Նեստորի, զնորա կողմն ունէր յառաջին, այլ յետոյ 'ի վերայ հասեալ մոլորութեան նորին, յետս եկաց 'ի հա-ղորդակցութենէ նորա։

հի ։ Այս նզովեալքն զկնի Նեստորի այսոքիկ էին. Թէոդորիտոս՝ Կիւրոս քաղաքի. Անդրէ՝ Սամոսատայ, Աղեքսանդրոս՝ Մանբէճայ, Արիանոս՝ Սրայ, Յովհաննէս՝ Կիլիկիոյ, Եւթերիոս՝ Տարօնոյ. և այլք ընդ նոսա. և 'ի տեղի Նեստորի եդին զՄաքսիմոս 'ի Կոստանդինուպօլիս (1) ։

Պատճառ ժողովոյն Քաղկեդոնի ։

Ի քսան և յինն ամի թագաւորութեան իւրոյ լուաւ Թէոդոս զաղմուկն Փլաբիանոսի եպիսկոպոսի Կոստանդինուպօլսի, և զԵւտիքի վանահայրի, և հրամայեաց երկրորդ ժողով լինել յԵփեսոս, զկնի ութ և տասն ամի առաջին ժողովոյն որ առ Կիւրղիւ (2). և գրեաց առ Դիոսկորոս զայս օրինակ.

«Ինքնակալքն կայսր Թէոդոս և Վաղենտինիանոս յաղթող թագաւորք. առ սուրբ հայրդ Դիոսկորոս եպիսկոպոսապետ առաքելական աթոռոյդ Աղեքսանդրու ։ Դիտութիւն լիցի սրբութեան ձերոյ, զի արմատ դառնութեան Նեստորի շառաւիղեալ թաւի առ Փլաբիանոս, և Սամսեայ կարծիքն առ

(1) Սոկրատ. ԾՀԱ ։

(2) Երկրորդ ժողովս Եփեսոսի եղեւ յամի 449. 'ի 42 ամի Թէոդոսի, և ոչ 'ի 29 որպէս ասացեալ է գիրն Միքայէլ ։

Եւտիքէս վանական, որպէս լուաք. և գործս այս մշակութեան ձեզ է պատշաճագոյն, սրբել զեկեղեցի անարատ հարսն Քրիստոսի, վասն որոյ փութացիր 'ի Թիկունս հասանել տրամութեան երկնաւոր առագաստին. և բերցես ընդ քեզ տասն մետրապօլիտս և տասն այլ եպիսկոպոսս բանաւորս իմաստութեամբ, որ կարող են զպայծառութիւն հաւատոյ ուղղափառութեան վառել և դնել 'ի վերայ աշտանակի՝ յուրախութիւն երկնաւորաց և երկրաւորաց: Եւ 'ի գալն քո ածցես տասն այլ եպիսկոպոս 'ի Պաղեստինէ. և 'ի Փռիւգացւոց. բեր և զՅոբնաղ եպիսկոպոսապետն Երուսաղէմի, զի ընդդէմ էր նա Նեստորի և Լեւոնի չարափառաց. և մի բերցես զհիւանդացեալսն 'ի հաւատս առ Կիւրղիւ՝ զԹէոդորիտոս եպիսկոպոս Կիւրիայ քաղաքի, և զայլս ընդ նմա: Եւ Յուլիանոս հռոմայեցի որ առ մեզս է, ընդ զտեղի Հռոմայ, զի և նա հիւանդ ցուցաւ յԵփեսոսի ժողովն իւր տումարովն: Եւ ած զմեծ ճգնաւորն և զհայրն անապատի փոխանակ ամենայն արեւելից վանօրէից զՍօր Պարսամա, զի կարի ջանայր նա հակառակ Նեստորի և տումարին Լեւոնի:»

Եւ սուրբն Դէոսկորոս առեալ զԹուղթ Թագաւորին, արար որպէս հրամայեցաւն. և եկն յԵփեսոս 'ի ժողովն, հարիւր քսան և

ութ եպիսկոպոսօք ։ Եւ գլխաւորք էին այսոքիկ . Դէոսկորոս՝ Աղեքսանդրի , Յոբնաղ՝ Երուսաղէմի, Դոմանոս՝ Անտիոքու , Եւստաթէոս՝ Բիւրիտոյ, Թէոդոլիս՝ (Թէոդոլոս) Կեսարիոյ Հայոց, Եւսեբիոս՝ Կիլիկիոյ, Վասիլոս Սելեւկիոյ, և Սօր Պարսամա գլուխ վանականաց ։ Եւ արարեալ քննութիւն յոլով, Եւտիքէս պղծացաւ կերպարանօք և ոչ ճշմարտութեամբ, վասն որոյ ոչ եղեւ ընկալեալ, և նզովեցաւ, զի առ աչօք ասէր զմարդկութիւն Տեառն մերոյ ։ Եւ ապա արարեալ էր դաւանութիւն Փլաբիանոս , բերին յառաջ և կարդացին, որ ունէր զՆեստորի մտածութիւնն . և գտաւ 'ի նմա ձեռագիր 'ի Վասիլոսէ եպիսկոպոսէ Սելեւկիոյ և զՅուլիանոսի հռովմայեցւոյ և զԵւտիքեսի կիպրացւոյ , և զՍելեւկոսի եմեսացւոյ ։ Եւ 'ի լսելն զայս ամենայն ժողովն՝ նզովեցին ասելով . "Բարձէք , բարձէք , այրեցէք հրով զանաստուած տումարդ ." և նզովիւք ընկեցին յաթոռոյ զՓլաբիանոս և զԵւսեբիոս և զԴոմանոս Անտիոքու , և հինգ եպիսկոպոս յընկերաց նորա , և զԻրիանոս Սրոյ , զՆկամիոս Պեպուլոյ(1), զԹէոդորիտոս Կիւրիոյ , և զԻբաս Ուռհայոյ , զՍեբերիոս Թղմզոյ(2), զԴանիէլ Խառանու , և զտոմարն Լեւոնի արհամարհեալ յառաջին ժո-

(1) Ըստ Ասամանեայ՝ Սոփրոնիոս Դէէլոյ։
(2) Ըստ Ասամանեայ՝ Եւսեբիոս Տորիլեոյ։

ղովոյն, ոչ համարեցան պատշաճ ընթեռնուլ:

Նաեւ եկն Թուղթ 'ի Թագաւորացն 'ի Թէոդոսէ եւ 'ի Վաղենտինիանոսէ, ոչ յաւելուլ եւ ոչ պակասեցուցանել 'ի հաւատոյ ուղղափառութեան Նիկիոյ, Կոստանդնուպօլսին եւ Եփեսոսին, այլ զնոյն հաստատել. վասն որոյ դաւանեցին՝ մի Տէր, մի Քրիստոս, մի Որդի, մի դէմ, մի բնութիւն յետ անճառ միաւորութեանն. նոյն Աստուած եւ մարդ կատարեալ, հոգի, մարմին, միտք, ճշմարտապէս եւ ոչ կարծեօք:

Իսկ զկնի արձակման ժողովոյն, յորժամ գընացին (առաքեալքն) առ 'ի Լեւոնէ, եւ պատմեցին նմա զոր ինչ եղեւն, շարժեցաւ 'ի բարկութիւն Լեւոն, եւ առաքեաց կոչեաց առ ինքն զՓլաբիանոս, եւ լուաւ նմա զդաւանութիւնն եւ հաճեցաւ. եւ այնչափ զայրացոյց Փլաբիանոս զԼեւոն ընդդէմ Դէոսկորոսի ասելով. Թէ «Արհամարհեաց զքո տումարն եւ Նեստորական ասաց զքեզ.» եւ Նա 'ի տարակոյս անկեալ խնդրէր հնարս ընկենուլ զԴէոսկորոս փոխանակ Նախատանաց իւրոց: Յայսմ ժամանակի գնացին Թագուհին Թէոդոսի եւ քոյր նորա Պուլքեր 'ի պատճառս աղօթից 'ի Հռոմ, եւ ըստ պատշաճի մեծարեցան 'ի Վաղենտինիանոսէ Թագաւորէն եւ յամենայն բնակչաց Հռոմայ: Նաեւ արքայն

Վաղենտինանոս առեալ զնոսա երթայր 'ի տաճար առաքելոցն Պետրոսի և Պաւղոսի, ուր կային նշխարք նոցա. և զայն իմացեալ Լեւոնի, ընկէց զինքն 'ի գետին 'ի ներքոյ վարագուրին, և երեսք 'ի վայր, և ոչ յարեաւ ընդառաջ նոցա, մինչեւ վերացուցեալ զվարագոյրն՝ և տեսին զի լայր հեծեծանօք, և հարցեալ զպատճառն աղաչանօք, բուռն հարկանէին նաստուցանել զնա, և ասէր (1). «Կատարեաց Դէոսկորոս զհաւատս ուղղափառ և արհամարհեցաւ աթոռ սուրբ Առաքելոցս 'ի նմանէ:» Եւ նոքա մխիթարեցին զնա և ասեն. «Լինի ըստ կամաց քոյ՝ զոր ինչ հրամայես:» Եւ կալաւ զնոսա թարեխօս առ Թէոդոս Թագաւորն, տալ հրաման տիեզերական ժողովոյ, խափանել զԴէոսկորոսին. և նոքա երդմամբ յանձն առին: Եւ 'ի դառնալ կնոջ Թագաւորին և քեռ նորա Պողքերիայ, գրեաց զկնի նոցա թուղթ աղաչանաց զի արասցէ ժողով յոլովաթիւ քան զԴէոսկորոսին՝ քննել ստուգիւ զիւր տումարն և չդնել զնա ընդ Նեստորի չարափառի: Իսկ իբրեւ լուաւ Թագաւորն, հըրաժարեաց 'ի նոցա խնդրոյն, և ասաց. «Ես հաստատեալ եմ և հաւանեալ Կիւրղի և Դէոսկորոսի սուրբ սահմանին, որք դա-

(1) Յօրինակին և նստէր:

ռեցան զտումարն Լեւոնի զուգաբան Նեստորի անիծելոյ ․ » Եւ ուղղափառութեամբ կեցեալ Թէոդոս թագաւորն՝ մեռաւ յիսուն ամաց, թագաւորեալ քառասուն և երկուս ամ․ զի ութամեայ թագաւորեաց ։

Եւ թագաւորեաց Մարկիանոս քեռորդի թագաւորին Թէոդոսի ընտրութեամբ Պուղքերիայ, այր ծեր տգէտ և առանց դպրութեան ։ Եւ թագաւորեաց ամս վեց և ամիսս հինգ, որ և ասեն թէ պոռնկութեամբ միաւորեալ էր ընդ Պուղքերիոյ յառաջագոյն։ Եւ յառաջին ամի թագաւորութեան նորա գայ թուղթ աղաչանաց 'ի Լեւոնէ այլ նոյն օրինակ զոր յառաջագոյն գրեաց, վասն ժողովոյ առ Մարկիանոս և առ Պուղքեր, յիշեցուցանելով նմա զկանխաւ խոստումն ։ Եւ ետ բերել առ նոսա զիւր տումարն, զի նոցա սաստիւ և հրամանաւ շրջեցուցանեն ընդ աշխարհն ասիական առ եպիսկոպոսս, զի ձեռնարկ արասցեն 'ի տումարն նախ քան զժողովն ։ Եւ նոքա հաւանեցան վասն երկու պատճառի․ առաջին՝ վասն խոստմանն և երդմանն Պուղքերի, և երկրորդ՝ զի օրէնք էր չդնել թագաւոր 'ի Կոստանդնուպօլիս առանց թագաւորին Հռոմայ և հայրապետին։ Եւ այս առանց նոցա եղեւ, և յերկիւղի էին վասն մխորման, (վասն այնորիկ) գրեցին թուղթ աղաչանաց և սպառնալեաց յերե-

սաց Թագաւորին և Պողքերայ, և իշխանօքն և 'ի Լեւոնէ եկեալ եպիսկոպոսացն առաքեցին ընդ աշխարհ, և 'ի հաւան ածին ձեռագրով չորս հարիւր քառասուն և վեց եպիսկոպոսս ։

Եւ յորժամ դարձան և տարան առ Թագաւորն և առ Պողքեր զԼեւոնի տումարն, յորում կայր չորս հարիւր քառասուն և վեց եպիսկոպոսի ձեռագիր, խնդացին և իւրեանք այլ ձեռնագրեցին. և հրաման ետուն ժողովել ընդ ամենայն երկիր՝ բաց 'ի Հայոց, որ չէր ընդ իշխանութեամբ նոցա։ Եւ յերկրորդամին Մարկիանէի ժողովեցան եպիսկոպոսք եւթն հարիւր. և գլխաւորք էին այսոքիկ. 'ի Հռոմէ փոխանակ Լեւոնի՝ Տրոմոպիկոս, Լիոքաս, Լիկինիոս, Նսկողայոն. Յոբնաղ՝ Երուսաղէմի, Դէոսկորոս՝ Աղէքսանդրի, Դոմնոս՝ Անտիոքայ, Վասիլիոս Սելեւկիոյ, և Պետրոս Վիրխացին՝ եպիսկոպոսն Դաղացւոց և գլխաւոր Փղշտացւոց աշխարհին, և Թէոդորիտոս զոր Կիւրեղ նզովեալ էր Եփեսոս՝ եդին գլուխ ժողովոյն. և ասաց Դէոսկորոս. "Ո՞նչ է այդ անօրէնութիւնդ. ասէ սատանաածընկալն Պաւղոս, թէ — Որ քակեցին՝ վերստին շինիցեմ, յանցաւոր առնեմ զանձն իմ (1)։ — Օ, քակեալդ նզովիւք զխօդ-

(1) Թղ. առ Հռովմայեցիս. ԺԵ. 20.

*դնէք գլուխ, և չլինիչ զմեռեալդ:» Եւ օգ-
ներ նմա զառաջին Յոբնաղ. և շարժեցան
և եղեն ամենն ընդ Դէոսկորոսի և ասացին.
«Սիւրեղ սահմանեաց նզովիւք, որ այլ նոր
իրք չդնիցի, և մեք զնոյնս ասեմք, նզովեալ
եղիցին որ այլ նոր սահման դնեն և կամ
նզովեալն Սիւրղի ընդունին:» Եւ յետ այ-
սորիկ Թագաւորն սկսաւ փաղաքշել, և ինքն
անձամբ սպասաւորէր, և աղաչէր և կաշա-
ռէր. և ետ Յոբնաղայ երեք գաւառ 'ի
Փղշտացւոց աշխարհէն. և բազում Թախան-
ձանօք ած զնա 'ի հաւան չորս հարիւր քա-
ռասուն և վեց եպիսկոպոսօքն, որ նախ ձեռ-
նադրեալ էին: Եւ մնացին յուղղափառութեն
ընդ Դէոսկորոսի երկերիւր յիսուն և չորս,
որ կրեցին բանդ և կապանս և նեղութիւնս
և մահ, և ոչ մերժեցան 'ի սիրոյն Քրիստո-
սի: Եւ հաւանեալքն տոմարին Լեւոնի, եր-
կու բնութիւն ասացին յատկոցեալ, և խա-
բէութեամբ զկոյսն Աստուածածին, զի թէ
յատկանեայ բնութիւն մարդոյն ըստ նոցա.
չարեացն, զիարդ է Աստուածածին: Եւ
լցան տիեզերք խռովութեամբ և արեամբ.
երկու ամ և կէս յամեայ ժողովն. և դար-
ձան աքսորեալքն և նզովեալքն 'ի Սիւրղէ և
'ի Դէոսկորոսէ 'ի պատիւ և յիշխանութիւն
զօրականօք և Թղթով Թագաւորականաւ.
ընդ որս և Յոբնաղ գնաց յԵրուսաղէմ.*

Իսկ եղեւ խռովութիւն մեծ յԵրուսա-ղէմ, զի չընդունէին զնա, եւ ձեռնադրեցին խուլեանց պատրիարք զԹէոդոսիոս (1). եւ Յոբնաղ գրեաց առ Մարկիանէ, եւ առա-քեաց զօրագլուխ զօրօք, եւ հանին զԹէո-դոսիոս եւ հաստատեցին զՅոբնաղ: Իսկ շըր-ջէր վերստին ընդ աշխարհն Պաղեստինէ եւ ընդ Փիլիշտ, եւ դարձուցանէր 'ի մոլորու-թիւն. եւ զուղղափառսն ծեծէին եւ հալա-ծէին, յափշտակէին զինչսն. եւ բազումք 'ի Հրէից շըջէին եւ կոտորէին զուղղափառսն: Բայց 'ի Պետրոսէ պատկառէին 'ի Գազաց-ւոցն եպիսկոպոսէ, զոր ասեն որդի թագա-ւորին Վրաց պատանդ լեալ 'ի Կոստանդի-նուպօլիս եւ յօժարեալ 'ի խիստ կրօնս, ե-ղեւ հռչակաւոր առաքինութեամբ. եւ հար-կեալ արարին եպիսկոպոս: Իսկ սա յանդի-մանեաց զՄարկիանոս, եւ նզովեաց զժողովն, եւ գնաց տրտմութեամբ: Իսկ ոչ ոք իշխէր ընդդիմանալ նմա վասն գերազանցեալ ա-ռաքինութեանն նորա: Այս Պետրոս գրեաց 'ի Հայս, եւ երանեաց վասն ոչ լինելոյ նոցա 'ի ժողովն, եւ ասաց յայտնապէս. “Իքաղ

(1) Այլ ումանք զԹէոդոսիոս համարին իբր կրօնաւոր ոք յանդուգն բարուք, եւ վասն իւրոց յանցանաց տարագրեալ յԱղեքսանդրիոյ եւ փախուցեալ 'ի Պաղեստինէ ունել զաթո-ռըն Երուսաղեմի 'ի ժամանակի զի Յոբնաղ 'ի ժողովն դը-տանէր Քաղկեդոնի:

կեղոն ուրացան զՔրիստոս. դուք պինդ կացէք ՚ի հայրենի հաւատդ որ շնորհեցաւ ձեզ ՚ի Տեառնէ և աշխարհիդ ձեր. զի որպէս երբեմն սերմն մարդկութեանս այդ ուստ սփռեցաւ ընդ աշխարհ, նոյնպէս առ ձեզ պահեցաւ սերմն ուղղափառ հաւատոյ. և ՚ի ձէնջ տարածելոց է ընդ բազումս։ Ողջ լերուք յանսասան վէմն Քրիստոս, որդեակք իմ։ ո Ընդ որս և մեք հաւատացեալքս ՚ի Աստուած Հայրն ամենակալ և յՈրդին միածին ՚ի Տէրն և ՚ի Փրկիչն մեր Յիսուս Քրիստոս, և ՚ի Հոգին սուրբ Աստուած ճշմարիտ, փառաւորեմք զսուրբ Երրորդութիւնն և զմի Աստուածութիւնն, այժմ և հանապազ յաւիտեանս յաւիտենից. ամէն։



Յովհաննու միայնակեցի տեսանողի, աշակերտի Պետրոսի եպիսկոպոսի Վիրիացւոյ, եթէ անօրէն եւ ամպարտաւան ժողովն Քաղկեդոնի 'ի բարկութենէն Աստուծոյ եւ 'ի թողլոյ 'ի ձեռաց եղեւ. եւ ոչ 'ի Հոգւոյն Սրբոյ, որպէս Նիկիայն, Կոստանդնուպօլսին եւ Եփեսոսին. եւ վկայեն այսմ նախատեսութիւնք սրբոցն որ եղեն յառաջագոյն եւ որ զկնի ժողովոյն:

*Ա. « ԱՅՍՄ աղանդոյս սկիզբն Նեստոր եղեւ, զոր պատմեաց մեզ հայրն մեր և հայրապետն սուրբն Պետրոս, եթէ Ես էի 'ի Կոստանդինուպօլիս, և 'ի տօնի սրբոց Քառասնիցն հայեցաւ Նեստոր 'ի պատկեր Տերամօրն որ կայր յեկեղեցին և ասաց. « Մի՛ պարծիր, ո՛վ Մարիամ, թէ զՔրիստոս ծնար. զի ոչ ծնար զՔրիստոս, այլ դու մարդ ես և մարդ ծնար:» Եւ 'ի նոյն ժամն ըկեցաւ 'ի դիւէ, և զարկաւ զգետնի, և բարձեալ սարկաւագացն տարան 'ի յարկս իւր: Եւ այս եղեւ սկիզբն պղտորման և ամբոխի սուրբ Եկեղեցւոյ:»*

*Բ. « Պատմէր մեզ նոյն հայրն մեր վասն Պաղակիոսի ուռհայեցւոյ, որ էր այր սուրբ միայնաւոր, և ունէր հոգի մարգարէութեն,*

տա լուսաւ զհերձուածն Իբասայ (1), և սաս-տեալ նմա և զայրացեալ ելն ՚ի Փղիշտ, և կայր հանդարտութեամբ։ Եւ էր անդ Իւի-լոս եպիսկոպոս, այր սուրբ և սքանչելի, և հանապազ դայր առ նա ՚ի Գաղացւոց քա-ղաքն վասն հոգեւոր իրաց. և յաւուր մի-ում եղեւ ՚ի զարմացման, և հարցեալ զնա զպատճառն՝ ասէ ցՊետրոս. «Յառնէ Թագա-ւոր մի Մարկիանոս անուն, և առնէ ժողով և հալածէ զուղղափառսն. և կրեմք ես և դու, և ՚ի նոյն կատարիմք։» Եւ էր այս յա-ռաջ քան զեւթն ամն ժողովոյն։»

Գ. «Նոյն յիշեցեալն Պաղակիոս յաւուր միում ետես տեսիլ, և սկսաւ ասել. «Վա՜յ Գողքեր, վա՜յ Գողքեր.» և ժողովեցան ՚ի հարցանել, և ասաց. «Գողքեր՝ որ նուիրեաց զինքն Աստուծոյ, պոռնկեալ անկանի յԱս-տուծոյ, և հալածէ զուղղափառ հաւատա-ցեալսն ՚ի նա ՚ի ձեռն Մարկիանոսի։»

Դ. «Պատմեաց մեզ Պաղակիոս վասն Պամփիլոսի սարկաւագի. «Յաւուր միում, ասէ, աղօթէր ՚ի սուրբն Գողգոթա յԵրու-սաղէմ, որ եղեւ ՚ի հիացման, և սկսաւ ա-սել երիցս անգամ. «Վա՜յ Եւփիլոս (Պրոյիլոս)

(1) Իբաս եպիսկոպոս Եդեսիոյ համախոհ գոլով Նես-տորի խոստովանութեանն, վասն որոյ և ՚ի բաց մերժեցաւ յա-թոռոյն։ Այլ յետոյ ՚ի թոյլատուութենէ ժողովոյն Քաղկե-դոնի դարձաւ կրկին յաթոռ իւր և վարեաց զնոյն չիշխանս։

պատրիարքք Երուսաղէմի։» Եւ հարցեալ զնա՝ ասէ. «Այս Եւփիլիոս որ անուանէք պատուեալ յամենեցունց, լինի ժողով 'ի Քաղկեդոն, և ընկենուն յանարգանս և յաքսորս և 'ի մահ։»

Ե. «Եւ սոյնց Պաւղակիոս ցՊետրոս հայրապետ և ցՅովանէս Նեբքէնի. «Այժմ կարդացէք զգրեանս, զի զգուշասջիք եկեղեցւոյ զոր յանձնեաց ձեզ Աստուած։ Զի գայ ժամանակ, որ ոչ սրտաբեկէք 'ի հալածանաց։» Եւ Պետրոս զարմացաւ և ասէ. «Զի՞նչ ասես։» Եւ նա ասէ. «Տրտմութիւն մեծ կրեսցէ սուրբ եկեղեցի յետ աւուրց. և յորժամ լինի, յիշեցէք զիս։» Եւ ինքն սկըսաւ միայն աղօթել զայս. «Տէր Աստուած իմ անսասան պահեա զիս յուղիղ հաւատս. և մի՛ տանիր զիս 'ի ժամանակ տրտմութեան եկեղեցւոյ քո, այլ որպէս կամիս, առ զհոգիս՝ թէ՛ 'ի տուէ, թէ 'ի գիշերի, թէ 'ի տան և թէ 'ի քաղաքի։» Եւ յաւուր միում երթալով նմա 'ի ճանապարհ, ետես այր մի սուրբ և ասէ ցնա. «Յիշեա զիս յաղօթս քո։» Եւ ինքն անկեալ մեռաւ. և այդ տարեալ անձն 'ի մերձակայ գեղջն, եկին և տարան, պատուով թաղեցին։»

Զ. «Պատմեաց մեզ Յովհաննէս քահանայն աղէքսանդրացի, թէ «Մինչ էի ես մանուկ, գնալ կամեցայ 'ի մեծ քաղաքն Առաքիս յուսումն իմաստասիրութեան, և

'ի գնալն մօտ յայրն ուր կայր մարգարէն մե-
ռեալ. և սկսայ աղօթել՝ հանդիպիլ հաճոյի-
ցըն Աստուծոյ. և եղեւ ձայն առ իս. "Ար-
դեակ չկայ խաղաղութիւն, չկայ ժամանակ
բարւոյ. զի յառնէ Թագաւոր Մարկիանէ
անուն և առնէ ժողով, ուր ուրանան ըզ-
մահն Աստուծոյ խաչիւ. և յառնէ պատրի-
արք ուղղափառ Դիոսկորոս անուն, որ կայ
ընդդէմ չար ժողովոյն, և 'ի նոյնն կատարի
վկայութեամբ. և փոխէ զդաւանութիւն
նորա Տիմոթէոս անուն. և չփոլթ ժողովոյն
մնայ մինչեւ ց'Նեռնն:"

Է. "Հայրն Օնենոս որ կոչէր մարգարէ,
'ի Պրագրու գեղջէ՝ փղշտացի, ասաց ցհայ-
րըն Աստեփաննոս. "Թէ կամիս բարեգոր-
ծութիւն առնել, արդ արա. եթէ կամիս
յօտարութիւն գնալ, արի գնա, զի ժողով
կամի լինել չար, և հալածումն յառնէ ե-
կեղեցւոյ:" Եւ ինքն խնդրեաց յԱստուծոյ
մահ, և ննջեաց քան զժողովն Քաղկեդոնի
յառաջ:"

Ը. "Պատմեաց հայրն Անոկտոխոս Պամ-
փիլեցի գլուխ եղբարց, թէ "Այր մի սուրբ
բնակէր յառանձնական տեղւոջ, և եկն առ
նա սատանայ և ասէ. Հնազանդեաց ինձ:
Եւ նա ասէ. Մ՞ի, բարէ քեզ[1]: Եւ ասէ
սատանայ. Չհնազանդիս. ահա առնեմ ժո-

(1) Յօրինակին Մի՛ բարի քեզ.

զօրհ որ ամենեքեան հնազանդէին ինձ։ Եւ զայս ասաց զի հաւանեցոյց զժողովն ասել՝ թէ ոչ խաչեցաւ Յիսուս, այլ մարդն։»

Թ. «Նախ քան զժողովն, յորժամ կամէր լինել, Նսեմացաւ արեգակն. և տեղաց օդդ քարինս և հող. և քարինքն որպէս ձեռագործ էին մարդկան։ Եւ ոմանք Երուսաղեմացիք և Փղշտացիք առին ’ի ձեռս և կուրացան։ Եւ Եւսեբի առեալ ’ի քարանցն առաքեաց առ Եւդոքսիա ’ի Կոստանդնուպօլիս. և գուշակեաց թէ՝ պատճառ խռովութեան եկեղեցւոյ լինելոց է։»

Ժ. «Եւ Պետրոս և Անդրէ աշակերտքն իւր վկայեցին, թէ յորժամ եղեւ ժողովն, կուրացեալքն այն ծանէին զաչս իւրեանց արեամբ սպանելոցն վասն ուղղափառութեան, և բժշկէին։»

ԺԱ. «Եւ յետ ժողովոյն, ’ի Կեսարիա յորժամ վիճէին Քաղկեդոնացիքն, թէ մարդըն խաչեցաւ, եղեւ պատառագն իւրեանց միս և արիւն մարդոյ. և չկարացին ճաշակել, և մնաց առ բազումս պահեալ։

ԺԲ. «Եւ յորժամ զառաջինն Թագն ’ի գլուխն եդաւ Մարկիանոսի, խաւար կալաւ զամենայն երկիր, գուշակելով զխռովութիւն եկեղեցւոյ. և ինքն ասաց թէ՝ «Այս նշանակեաց որ մինչեւ յիս խաւար էին աշխարհք, և ինեւ սկսանի լոյս և բարութիւն։»

ԺԳ. «Յեկեղեցւոյն վերայ, որ շինեալ կայ 'ի տեղւոջ համբառնալոյ Տեառն, կայր խաչ մի ոսկեղէն, և ընդ լինել ժողովոյն՝ յանկարծ այրեցաւ և փոշի եղեւ, և սուգ եղեւ ժողովրդոցն. և գրեցին 'ի Կոստանդնուպօլիս, և առաքեցին խաչ պղնձի և եդին 'ի տեղւոջն։»

ԺԴ. «Ասաց հայրն Եսայի. թէ՝ «Ասաց ինձ հայրն Պօղոս եթէովպացի, որ էր հարիւր և տասն ամաց, թէ յետ քսան ամի լինի շփոթ մեծապէս 'ի ձեռն Մարկիանէի, որ թագաւորէ վեց ամ։ Եւ զկնի լինի սակաւ մի խաղաղութիւն եկեղեցւոյ, և դառնան անդրէն 'ի նոյն չարիս մինչեւ 'ի սուտ Քրիստոսն։»

ԺԵ. «Ասաց հայրն Զենոն, որ առ Ելեւթերոպօլեան, որ յանդիման (1) Աղէքսանդրի էր, թէ «Գնացի առ նոյն հայրն Եսայի, և տեսի որ զսիրայն 'ի ձեռին ունէր, և միտք իւր վերացեալ էր, և կարծեցի թէ աղօթէր, և դարձայ. և կոչեաց զիս և ասէ ցիս. Գրեա՛, թէ սուրբն Տիմոթէոս, որ այսօր յաքսորս է, յետ սակաւ ժամանակի դառնայ, և կանգնէ զուղղափառութիւնն երկու ամ, և ապա ննջէ։ Եւ յետ իւր լինի սարկաւագապետն եպիսկոպոս. և յաւուրսն յայնոսիկ լինի պատառումն յեկեղեցի, որ ոչ ող-

(1) Յօրինակին յանդիման.

ջանայ մինչ 'ի յայտնել պիղծ Նեռինն ։»

ԺԶ. «Հայրն Պաւղոս անապատացին պատմեաց, թէ «Ամն միայնակեաց տեսանող տեսանէր, զի ժողովեալ էին ամենայն եպիսկոպոսք և վառէին թոնիր. և կալան լուսապատկեր երկնաւոր մի, և ձգեցին 'ի ներքս և ծեփեցին. և յետ երեք աւուր ետես ելեալ, և ասէ. «Տէր, ով էին որ այրէին ըզքեզ, և զինչ զերծար։» Եւ ասէ. «Հերձուածքն Նեստորականք, Քաղկեդոնայք եպիսկոպոսքն, որ ասեն՝ մարդն խաչեցաւ, և այրեն զեկեղեցի իմ։ Եւ ծեր մի որ ոչ միաբանեաց ընդ նոսա, զերծոյց զիս ամենեւին յայրմանէն։ Եւ ասեմ. Տէր, ով էր նա։ Եւ ասէ, Դէոսկորոս. և որպէս կիւրենացին էր Սիմոն, որ եբարձ զխաչն իմ. և Կիւրենա աշխարհ է Լիբիոյ, որ բառնան զխաչն իմ պարծանաց 'ի ձեռն Դէոսկորեայ եւ պահեն զուղղափառութիւն ։»

ԺԷ. «Տիմոթէոս 'ի ժամ ննջման իւրոյ պատմեաց, թէ «Մինչ մանուկն էի և երթայի 'ի դպրոց, հանդիպեցաւ ինձ փառաւորեալ ծեր մի, և համբուրեաց զգլուխ իմ և ասաց երեք անգամ. Ողջոյն ընդ քեզ Տիմոթէոս, հայրապետ կատարելութեան (1) ։»

ԺԸ. «Եւ դարձեալ ասէ նոյն Տիմոթէոս,

(1) Միւսն յաւելու . Դու ընկեր դարձար ողջամիտեան անդամոց Քրիստոսի ։

թէ "Ի տեսլեանն երևայր ես ՚ի Սելովամ, և տեսի վանք մի աւերակ. և դարձեալ էին մրգաբեր ծառքն ՚ի փուշ. և այգին բեկոտեալ. և հարցի թէ այս ի՞նչ է. և ասէ ինձ ցիս. "Այս վանքն Իւթիմիոսի (Յոբնաղի) է, յորմէ կոչեցաւ յեպիսկոպոսութիւն, և եղեւ հակառակ Դիոսկորոսի ՚ի ժողովն Քաղկեդոնի. և կատարեցաւ առ նա բանն, թէ "Եղիցի բնակութիւն նորա աւերակ, և ՚ի յարկս նորա մի՛ ոք իցէ որ բնակիցէ [1]:"

ԺԹ. "Ի յաղուհացին չըլէր Իւթիմիոս ըստ հին ժամանակին ՚ի վանորայն, և գնաց ՚ի դուռն տեսանողի մենաւորի ումեմն. և փակեաց ընդ դէմ նորա: Եւ նա բախէր. և ասէ մենաւորն. "Գնա սուտ քրիստոս, գնա Յուդա մատնիչ:" Եւ ասէ. "Պահքն տարեալ է զխելքն:" Եւ գնացին ամօթով:"

Ի. "Անագանոս[2] մի յԵրուսաղէմ ՚ի Պրոպատիկէն տեսանէր զՏէրն, զի մտանէր ՚ի Տաճարն հրեշտակօք, որ ունէին լապտերս շիջեալս, և ասէր. "Մոռացան զերախտիսն իմ և զպարգևսն իմ: Եղկելին Իւխիկոս արար զտուն իմ այրս աւազակաց, բոզանոց և պոռնկանոց և շնանոց:" Եւ բացաւ առաջի նորա խորհրդանոցն, և սկիհն էր աղտեղի և փոշոտեալ հանդերձիւ ծածկեալ. և ա-

(1) Սաղմոս. ԿԸ. 26.
(2) Ընթերցող.

սաց Տէրն. « Հանէք, ձգեցէք, զի ոչ է իմ դատ»։ Եւ ցանապատանոն ասէ. «Եւ՞լ աստի՞» Եւ նա ասէ. «Ողորմութեամբ օգնեա՛ ինձ Տէր»։ Եւ ել Տէրն և գնաց։ Եւ այս տեսիլ յայտնի եղեւ ամենայն քաղաքին. և լուաւ Իւլի-նիոս թէ համբաւեցաւ տեսիլն. և 'ի գիշերին աներեւոյթ արարին զմանուկն. եւ թէ զի՞նչ արարին, Աստուած գիտէ։»

ԻԱ. «Յաւուրսն յայնոսիկ Պետրոս ոմն սուրբ, ետես զսուրբ խորհուրդն ապականեալ. և այլ ոչ եւս հաղորդեցաւ մինչեւ ցմահ։»

ԻԲ. «Այն անապատաւոր Պաւղոս անուն, որ բնակեալ էր հեռի յԵրուսաղեմէ հնգետասան միլ, տեսանէր դաշտ մի, և 'ի մէջ դաշտին բլուր մի, և 'ի բլրին խորան մի, և 'ի վերայ խորանին սիւն մի ոսկի՝ ակամբ և մարգարտով զարդարեալ. և ցոլմունք շառաւիղաց հրեղինաց հատանէին 'ի նմանէ. և շուրջ զնովաւ բազմութիւն զօրաց՝ որ կային նմա 'ի սպասու. և եղեւ ձայն յերկնից որ ասէր. «Նզովեալք են ամենեքեան որ ասեն երկու բնութիւն։» Եւ որք շուրջ զխորանաւն կային, ասացին. Ամէն։ Եւ ազինք ամենայն լցեալ ունէին զդաշտն սաստանեալք յոյժ։ Եւ եղեւ այլ ձայն որ ասէր. «Նզովեալք եղիցին որ բաժանեն զմին զանբաժանելին. նզովեալք եղիցին ուրացողքն

զմխնն.» և ամենեքեան աղաղակէին. Ամէն :»

ԻԳ. «Նոյն յետ սակաւ մի տեսին զՄիւինիոս զի անցանէր, և ասաց. «Մատն այսօրիկ անցանեմ ընդ քեզ, զի այլ ակն ոչ ունիմ տեսանել զքեզ. 'ի պատերազմ երթամք, և նեղութիւն ունիմք կրել. կամ կոխել ընդ խորհուրդն Աստուծոյ կայ առաջի, կամ մեռանիլ. զի խնդրեն 'ի մէնջ ուրանալ զհայրենի հաւատս մեր, և զՄխմոնին և զՀրէից խոստովանել, թէ ոչ էր Աստուած որ չարչարեցաւ և մեռաւ (1) :»

ԻԴ. «Օհետ այսր ետես նոյն ինքն ծերն Պաւղոս զՅորնաղ մերկ կանգնեալ յանկեան մի և սեւացեալ իբրեւ զածուխ : Նա ասէ ծերն. «Ո՞ւղէ՞ր է այդպէս» Նա ասէ. «Տեսանեմ զամօթ իմ, զի ոսկի բազում ժողովեալ եմ սուտ քրիստոսին, այն որ պատերազմելոց է ընդ բնութիւն հողոյ :» Նա խմացաւ ծերն, թէ ընդ մարդկային բնութիւնս է պատերազմելոց, որ 'ի հողոյ ստեղծեալ :»

ԻԵ. «Էր վանք մի 'ի սահմանս Տրապօլեայ, (որոյ) առաջնորդին անունն Պանուփրիոս, որ եղեալ էր 'ի հարկէ եպիսկոպոս : Նա Վասիլիոս եպիսկոպոսն Սելեւկիոյ մինչ երթայր 'ի ժողովն Քաղկեդոնի, տարաւ զնա

(1) Թարգմանիչն 'ի բացատրութիւն անուանս Իւինեկոս կամ Լէոնինոս յաւելեալ ունէր աստ զայս բան. «Մեր բառաւն Յորնաղ էր այս :»

՚ի հետ. և ետես զի զառաջինն ամենեքեան
նզովէին զասողն երկու բնութիւն, միա-
բանեալքն ընդ Դէոսկորոսի, և յետս դար-
ձեալ ուրացան զմինն և աքսորեցին զԴէոս-
կորոս. և Նորա տրտմեալ արգելեաց զինքն
՚ի տուն մի, և արտասուօք հայցէր ինքն
յԱստուծոյ յայտնել նմա զկամս իւր։ Եւ
եղեւ ՚ի հիացման, և տեսանէր կոնդակ մի
ոսկեգիր տարածեալ ՚ի կամարէն երկնից մին-
չեւ ՚ի վայր, և յերկուց կողմանց գրեալ
լուսաւոր գրով. «Նզովեալ լիցի ժողովն Քաղ-
կեդոնի. ուրացան զիս, ուրացան զիս. Նզո-
վեալ եղիցին, նզովեալ եղիցին։» Եւ ՚ի
գիշերին մտեալ ՚ի Նիւս, գնաց և պահեաց
զքաղաքն Տրապօլիս յուղղափառութեան
հնգետասան ամ։»

ԺՋ. «Ստեփաննոս հայր եղբարց, ՚ի Սե-
լեւկիայ Դուկու վանից, ասաց թէ «Չհաւա-
տամ թէ Վասիլիոս եպիսկոպոս անկաւ ՚ի
ճշմարտութենէն, զի գիտուն և (այր) շնոր-
հաց է։» Եւ յորժամ դարձաւ ՚ի ժողովոյն,
խնդրեաց ՚ի Տեառնէ ցուցանել նմա՝ թէ
ունիցի՞ զուղղափառութիւն. և տեսանէ տե-
սիլ՝ զի մտանէր յեկեղեցին, և պատուեցին
զնա ժողովուրդքն. և եմուտ ընդ նմա այր
մի լուսաւոր. և յորժամ կամէր բանալ զբե-
րանն և ասել աղօթս, էած զմատն ՚ի բե-
րանն, և դարձոյց եհան զնա յեկեղեցւոյն.

և ասէ. «Չես արժանի. այլ որպէս դարձու-
ցեր դու զերեսդ յԱստուծոյ, դարձուսցէ
Աստուած զիւրն 'ի քէն։»

ԻԷ. «Այս Ստեփաննոս խնդրեաց յԱս-
տուծոյ ցուցանել նմա ստուգութեամբ ;
թէ զի՞նչ կոչի ժողովն Քաղկեդոնի. և տե-
սանէր զմի յառաքելոյն Քրիստոսի, որ տա-
նէր զնա յարքունիս, ուր կային եպիսկոպոսք
ժողովոյն, և ասէ. «Այս են ատելիքն Քրիս-
տոսի, այս են ուրացողք նորա։» Եւ ետ նր-
մա խարազան և ասէ. «Հան զամենեսեան
զատելիքդ Քրիստոսի։»

ԻԸ. «Այր մի հոգևորս Սոմոնոս ա-
նուն, 'ի գեղջէ Աբելմէուլայ (Պաղեստի-
նի) առաջնորդ եղբարց վեցհարիւրոց, որք
ասէին ընդ նա, թէ «Ընդէ՞ր լռեալ կաս,
և ոչ նախանձիս զնախանձ Տեառն վասն չար
ժողովոյն Քաղկեդոնի։» Եւ ասաց. «Սերբե-
ցէք ինձ զաւուրս տասն։» Եւ գնաց ընդ ա-
նապատն 'ի կողմանս հարաւոյ և աղօթեաց
անսուաղ տասն օր. և խնդրեաց 'ի Տեառ-
նէ յայտնել նմա զճշմարտութիւնն։ Եւ ե-
ղեւ ձայն առ նա. «Գնա պահեա զհաւատն
Նիկիոյ։» Եւ չոգաւ պատմեաց եղբարցն,
և նոքա ասեն. «Իսկ Յոյնք ասեն թէ զնոցայն
մեք ունիմք, այդ զի՞նչ է։» Եւ դարձեալ
գնաց կրկնեաց հայրն զպահքն. և եղեւ
ձայն. «Գնա լուէ Պետրոսի, Դիոսկորոսի,

Գրիգորի Աստուածաբանին, Գրիգորի Նիւսացւոյ, Բարսղի, Գրիգորի սքանչելագործին»։ Եւ գնաց պատմեաց վանիցն. և նոքա ասեն. «Վասն Քրիստոսի սրբեա զմեր սիրտս, զի և նոքա ասեն, թէ մեք զԳրիգորին և զԲարսեղին ունիմք և զայլն 'ի յուղղափառացն հաստատեցաք»։ Եւ գնաց երրորդեայ զպահքն. և եստես տումար պարզեալ յերկնից մինչեւ յինքն, և էր գրեալ. «Ուրացան զիս 'ի Քաղկեդոն, և անցին ըստ սահման ուղղափառացն. վայ է նոցա, և նզովք է բաժին նոցա»։ Եւ իբրեւ ընթերցաւ, ոչ գնաց առ եղբարսն, այլ յԵրուսաղէմ գնացեալ պատմեաց։ Եւ շարժեցան եկեղեցականքն 'ի վերայ Յոբնաղայ։ Եւ ընկեցին 'ի յաթոռոյն և եդին պատրիարք զԹէոդոսիոս։ Եւ լուաւ Մարկիանէ, և առաքեաց վերստին հաստատեաց զՅոբնաղ յԵրուսաղէմ։»

ԻԹ. «Պատմեաց քահանայն Սոփիլոս կեսարացին, թէ «Մինչ էր Տիմոթէոս յաքսորս 'ի Խերսոնեսոնս կղզի (1), գնացի առ նա, և տեսի յոտս նորա վէրս սաստիկ, նա՝ սուր անբժշկելի. և մերձակայքն ոչ դարմանէին զնա. և ես աղաչեցի զի թոյլ տացէ ինձ հրայիլ և մաքրել զթարախն, և ասէ ցիս. «Ոչ տեսանես սպի յաչս իմ»։ Եւ ասեմ. «Այո»։ Եւ ասէ ցիս. «Մինչ կայի ես 'ի ժողովն Քաղ-

(1) Ըստ այլ թարգմանութեան Խերսոնոս.

կեդոնի , և առանձնացեալ կայր յաղօթս , երևեցաւ ինձ սեաւ մի Եթեովպացի . և ունէր 'ի ձեռին տումար մի, յորում կայր ձեռագիր բազում եպիսկոպոսաց . և ասէ ցիս . "Ընդէ՞ր չդնես զձեռագիր քո 'ի սմա . դիր , թէ չէ՝ առից զոգիդ :" Եւ իբրև ոչ լուայ նմա , եզարկ զաչս իմ , և վայթեցաւ արիւն յաչացս իմ . և թուեաց թէ՝ փլաւ պտուղն. և գոհացեալ զԱստուծոյ , եդի զձեռս իմ անուամբն Քրիստոսի աչացս և բժշկեցաւ , և մնաց սպիս յիշատակ իրացն : Նոյնպէս և այս վէրս 'ի սատանայէ է , որ կաղացոյց զիս . և արդ թող տուր , թէ պատեհ տեսանէ Տէր , կարող է բժշկել . և այս չէ շատ 'ի դիւական ժողովոյն ինձ :"

Լ. "Սմին Պետրոս՝ զօրապետ Մարկիանէի պատմեաց զօրապետին Զենոնի , թէ "Յոժ սիրով ընկալայ զժողովն Քաղկեդոնի . և էի հալածիչ ուղղափառացն , մինչև տեսի 'ի տեսլեան ումն որ ասէր ցիս . "Ի չարէդ 'ի բաց կաց . և ես տես զոր ցուցանեմ քեզ:" Եւ տարաւ եցոյց ինձ տեղի անձառելի լուսով լցեալ . և կայր անդ Թէոդոս (1). և եցոյց (այլ) տեղի , յորում հուր բորբոքէր , և անդ կայր Մարկիանոս և ամենայն դաւանողքն Լեւոնի . և զայն տեսեալ 'ի բաց կացի, և եղէ ընդ Դէոսկորոսի և ընդ Տիմոթէի:"

(1) Միւս թարգմանութիւնն յաւելու և կոստանդիանոս

ԼԱ. «Երկու սրբեղայք կիպրացիք, անուն միոյն Կիրակոս և միւսոյն Յուլիտոս, պատմեցին թէ՝ «Կայր առ մեզ վկայարան մի նշանագործ, և յետ ժողովոյն ձայն եղեւ 'ի շիրմէն՝ 'ի շնորհէն որ անդ կայր, թէ «Այլ ոչ կամ ես աստ. մի գայք առ իս. ուրացան զՔրիստոս 'ի Քաղկեդոն, և ընկալան բազումք և դուք ընդ նոսա։»

ԼԲ. «Ի Կեսարիա Փղշտացւոց կայր երկու տապան, Յովհաննու Մկրտչին և Եղիսէի մարգարէին. և սարկաւագ մի Կոստանդին անուն սպասաւորէր որբութեամբ. և զկնի ժողովոյն Քաղկեդոնի սկսաւ լալ. և ետես զնա ոմն Ապողոս անուն և եհարց թէ վասն է՞ր լաս։ Եւ նա ասէ. «Յամենայն առաւօտու մտանէի, և տեսանէի նստեալ 'ի վերայ տապանացն զՅովհաննէս և զԵղիսէէ, և մխիթարէի. և արդ 'ի տարածել աղանդոյն Քաղկեդոնի՝ կամիմ գնալ և զրկիլ 'ի տեսլենէ սրբոցս։» Եւ նա ասաց թէ՝ «Յառաջ խնդրեա 'ի սրբոցդ, և առ զխրատն ըստ Աստուծոյ կամացն։» Եւ լուաւ նմա, և սկըսաւ խնդրել պաղատանօք. և երեւեալ սըրբոցն ասեն. «Արի գնա աստի, զի և ոչ մեք մնամք աստէն, այլ գամք զհետ քո, և ոչ թողումք զքեզ. մի տրտմիր։»

ԼԳ. «Հայրն Զոսիմոս անապատաւոր խնդրէր տեղի, և եկն 'ի Բեթէլ. և կայր

անդ վանք մի, և աղաչեցին լինել առ նոսա. և նա ասէ, թէ "Յաղանդէն Քաղկեդոնի փախչիմ:" Եւ նոքա ասեն, թէ "Նա մեզ չէ մտեալ աղանդն այն." խաբելով զնա: Եւ հաւատաց նոցա, և յանձն էառ մնալ առ նոսա. և 'ի գիշերին յայնմիկ երևեալ նմա Յակոբ Նահապետն ասաց. "Մի կենար աստ, զի յուրացողացն Քրիստոսի են դոքա:" Եւ յարուցեալ գնաց:"

ԼԴ. "Պատմեաց հայրն Պետրոս վասն Եղեւթորոսի (Եղեւթերոս) սրբոյ, որ բնակեալ էր 'ի Կիլիկիա 'ի լեառն Տորոս. և էր գիտաւոր և ընդական, մինչև օրասրդք ըմբռնեցին զնա որպէս անասուն. և իբրև իմացան՝ աղաչեցին զնա լինել ընդ եղբարս, և նա յանձն էառ. և ժողովեցան առ նա աշակերտք: Եւ նա 'ի վախճանելն իւրում՝ ասաց ընդ աշակերտսն իւր. "Գրեցէք, որդեակք, և առաքեցէք ընդ ամենայն երկիր, թէ յետ քսան և չորս ամի լինի ժողով և ուրանան զՔրիստոս. փախիք և դուք և գնացէք 'ի Մեծըն Հայք և յԵգիպտոս, զի անդ մնայ ուղղափառութիւն, և անտի ածէ 'ի Միջագետս, և փառաւորի Քրիստոս 'ի նոցունց:"

ԼԵ. "Դարձեալ պատմեաց հայրն Պետրոս թէ՝ "Ի մեռանելն Թէոդոսի Թագաւորի, ումն 'ի յանապատն Եպիպոսի (Եգիպտոսի*) ետես հոգւովն զմահ Թագաւորին և ձայ-

նեաց ուժգին և ասաց. «Մեռաւ այսօր ուղ-ղափառութիւն 'ի բազմաց. ահա փլաւ եր-կինքն, և ոչ ոք է որ ցաւի և ողբայ զաղէտս։

ԼԶ. «Յորժամ էր Նեստոր յաքսորս 'ի Թեբայս Եգիպտոսի, գնաց ոմն 'ի Թագա-ւորէն Արմեոս տալ հուռք զօրացն արքունի. և երթեալ առ Նեստոր ասաց, թէ «Կամին մեծարել զքեզ 'ի ժողովին»: Եւ զկնի այնորիկ եկն մագիստրոս ոմն 'ի խնդիր նմա. և ըն-կրաւ ասել Նեստոր. «Մի՛թէ սուտ ասէի՝ թէ Մարիամ չէ Աստուածածին և ոչ ծնեալն 'ի նմանէ Աստուած»: Եւ նոյն ժամայն թա-փեցաւ լեզուն, և սկսաւ ուտել զլեզուն և զայլ միսքն, մինչեւ սատակեցաւ և գե-րեզմանին չընկալաւ զնա: Եւ զայս պատմեաց Տիմոթէոս 'ի գիրս իւր»:

ԼԷ. «Փոտիմոս միայնակեաց սկիւթացի, եկն յԵգիպտոս և ասաց. «Պետրոս հայր, մի՛ տրտմիր վասն չար ժողովոյն և Պռոտերի զոր առաքեցին առ պատրիարքը. քանզի երկնա-ւորն Երուսաղէմ աղաչեն զԱստուած վասն սուրբ եկեղեցւոյ և վաղագոյն սատակեն զՊռոտէր»:

ԼԸ. «Մի՛ սարկաւագ Մասիլ անուն, աշակերտ հօրն Պետրոսի Թեքայեցւոյ, որ կեցեալ էր առանձնական երեսուն և հինգ ամ, եղեւ ձայն առ նա երկնաւոր, թէ «Եւ յաշխարհ և օգնեա ուղղափառութեան»:

Այս եկն ՚ի Լիկիա գաւառ և բնակեաց անդ երկոտասան ամ։ Այս եղեւ կրկին ձայն առ նա թէ՝ «Այժմ յանդիմանեա զՆեստոր։» Այս մինչ յանդիմանէր, և նա չլսէր, և առեալ զնա մագիստրոս ոմն, առանձնեաց զնա և արկ ՚ի բանտ. և նա աղօթէր զՏէր ՚ի բանտին, և յանկարծ անկաւ ՚ի գլխին Թէոդոսի թագաւորին կղմինտր մի յօդւոյն և շատ ցաւեցոյց. և ՚ի տեսլեանն ասացաւ նմա, թէ «Վասն Վաղլի տանջանացն եղեւ քեզ այդ.» զի յորժամ յանդիմանէր զՆեստոր, թագաւորն մօտ կայր և լռեաց։ Իսկ յորժամ զարթիլն եանե թագաւորն, զահի հարաւ և եհան զՎաղիլն ՚ի բանտէն, և առեալ խրատ ՚ի նմանէ և թողութիւն. և խրատն էր ժողովն Եփեսոսի որ եղեւ։»

ԼԹ. «Այր մի անուանն Ալինէ (Հեղինէ) երկիւղած յԱստուծոյ, ետես տեսիլ թէ «Յետ երեք ամի Նեստոր անուն լինի պատրիարք, և դու մի հաղորդիր ՚ի նմանէ.» բայց լռեաց զտեսիլն մինչ Վաղիլն յանդիմանեաց զՆեստոր. զնոյն տեսիլ ետես և վասն ժողովոյն Քաղկեդոնի որ եղեւն։»

Խ. «Պատմեաց հայրն Պետրոս փիւնիկեցին, թէ «Մինչ մանուկն էի ես առ վարդապետաւն իմով, և էաք ՚ի Կոստանդնուպօլիս, և անկաւ ՚ի վերայ իմ հիացումն, և ահոց ոմանց՝ թէ զքեզ Նեստորութիւնն

միահաւասար է, և երեք՝ և մի է։» Եւ երեւեցաւ ինձ սուրբն Պետրոս առաքեալն, և եհան զիս 'ի բլուր մի, և եցոյց ինձ լոյս անպարագիր մեծութեամբ և անհաս, և ասաց. «Սա Հայրն» Եւ եցոյց ինձ այլ լոյս նոյնպէս անպարագիր և ասաց. «Սա Որդին։» Եւ ասեմ. «Նման է Հօրն։» Եւ եցոյց ինձ այլ լոյս անպարագիր և ասէ. «Սա Հոգին Սուրբ։» Եւ ասեմ՝ Նման է Հօր և Որդւոյ։» Բայց Որդին մարդկապէս փայլատակէր անճառ և անհասանելի, և կայր 'ի մէջն յաջմէ Հօրն, և սուրբ Հոգին յաջմէ Որդւոյ։»

ԽԱ. «Ընինոս անուն աղէքսանդրացի, որ մկրտեալ էր 'ի հօրէ մերմէ, ունէր կին Քաղկեդոնի աղանդոյն, և չմիաբանէր ընդ հաւատ առն՝ մինչեւ հիւանդացաւ մերձ 'ի մահ, և յափշտակեցաւ 'ի տեսիլ, և ետես դրախտ անպատմելի և ասացին. «Այս է տեղի առն քո։» Եւ ետես խաւար, և անտի պայր ձայն լալոյ. (և ասեն. «Այդ է տեղի այդմ աղանդոյ սեր կնոջ։»(1)) Եւ առողջացաւ և դարձաւ յուղղափառութիւն։»

ԽԲ. «Տաւտիման, որ կոչի խոստովանութիւն, այսինքն խնամատար եկեղեցւոյ, էր յոյժ ողորմած, բայց խոտորեալ էր 'ի ժողովն Քաղկեդոնի։ Եւ սա հիւանդացեալ ետես

(1) Ի մէջ փակագծի եղեալն պակասէր յօրինակին, և լրացուցաք 'ի միւս Թարգմանութենէն.

տեսիլ նման աստղեալ կնոջն. և եա տանել զինքն 'ի վանքն Սամանոսի, և հաղորդեցաւ յուղղափառութիւնն : Եւ յետ երեք աւուր ննջեաց. և իւր ողորմածութիւնն եղև պատճառ փրկութեան իւրոյ, որ չեթող զինքն 'ի կորստեան :»

ԽԳ. «Պատրիկոս ոմն երէց՝ ազգաւ Ֆռանգ, որ ոչ հաւանէր երկու բնութեանն՝ ոչ միոջ և ոչ բանիւ, եւտես 'ի տեսլեանն հատեալ մեռեալ մի 'ի սուրբ Յարութեանն, որ յանկարծակի կենդանացաւ. և ունէր 'ի ձեռին թուղթ ոսկէներկ արտաքոյ և ներքոյ. և յորժամ եբաց, լցեալ էր աղտեղութեամբ. և յորժամ զարթեաւ, մեկնեաց և ասաց. «Խարձեալ նորոգի աղանդն Քաղկեդոնի.» զի յայնժամ նորոգեալ էր 'ի Զենոնէ արքայէ :»

ԽԴ. «Սարկաւագ մի սպասաւորէր սուրբ Յարութեանն (տաճարի) յԵրուսաղէմ. և եղեւ նմա չնալ ընդ կնոջ, և եմուտ ննջել զգիշերն 'ի սուրբն Գողգոթա. և եղեւ ձայն թէ՝ «Ապականեաց Յորնող. և աշակերտք իւր զտեղի սրբութեան իմոյ:» Եւ վաղիւն գտաւ ձգեալ 'ի փողոցին, և խառնովան եղեւ զեղեալն. և լուեալ բազմաց ողջացան յաղանդոյն :»

ԽԵ. «Պատմեաց Սաթիկոս երանելին թէ. 'ի գեղ մի էր Պատաւլինէ անուն ե-

րեց մի Քաղկեդոնիկ, որ վիճէր ընդ աշխարհականի ուղղափառի. և կատարումն իրացն եղև, զի երէցն խնդրեաց հրով փորձել զհաւատսն. և կապեցին զմէկ ձեռն ուղղափառին և զերիցուն ընդ միմեանս, և վառեցին 'ի ներքոյ հուր, և այրեցաւ ձեռն երիցուն; և ուղղափառն անհոգ կայր, և փառաւորեցին զՔրիստոս:»

ԽԶ. «Ի գիւղ մի անուն Սալտու, այր մի Եպիփան անուն չհաղորդէր ընդ այլսն, և երէցն սպառնացաւ, և նա առեալ զկինն իւր փախեաւ. և երէցն նոյն օրն հարեալ 'ի բարկութենէն Աստուծոյ՝ մեռաւ: Եւ դարձուցեալ զԵպիփան 'ի տուն իւր, ամեն գեօղն դարձան յուղղափառութիւն:»

ԽԷ. «Յորժամ Պետրոս պատրիարքն էր Աղեքսանդրիա յաքսորս, եղև ձայն առ Պիուր միայնաւորն սուրբ, թէ «Երի գնա առ հայրն Պետրոս, և մխիթարեա զնա:» Եւ առաջնորդեաց նմա սիւն լուսոյ, և ած զնա ուր կայրն Պետրոս, 'ի տան միում: Եւ ետես տանուտէրն շնորհ երկնաւոր 'ի վերայ նոցա, և աղաչեաց մկրտել զորդին իւր, և դարձան յուղղափառութիւն:»

ԽԸ. «Ետես հայրն Պիու, զի բազում աբեղայք խաչ մի առեալ ձգէին առ իրեարս և վիճէին. և ասաց թէ «Չերձուած մի լինի, որ ոչ բժշկի մինչև 'ի կատարածս

ԽԹ. «Այր մի երանելի յԵրուսաղէմ Ու-ւակլիա անուն, գնաց երկրպագել 'ի տաճար Համբարձմանն, և ետես զՏիրամայրն անդ նստեալ փառօք, և յերեսս 'ի վայր անկաւ. և Տիրուհին կանգնեաց զնա և ասէ. «Մի՛ վախեր, և կաց յուղղափառութեան, զոր չարչարանօք Որդւոյ իմոյ այլայլեցաւ 'ի բերան պղծոց. և եղեւ եկեղեցի որպէս ըլկատրեալ անտառ առ լերամբ, և ոչ խաղաղի մինչեւ 'ի կատարած ։»

Ծ. «Լեւոնտիոս Ասկաղոնացի, մարգարէացաւ վասն նորա Զենոն անապատականն թէ՝ «Լինիս եպիսկոպոս, բայց ոչ մեռանիս եպիսկոպոս ։» Եղեւ եպիսկոպոս և սիրելի Նեստորի. և 'ի յաքսորին Նեստորի, աղաչէր զՅուբնաղ հաստատել զՆեստորի աղանդն ։ Եւ 'ի լինել ժողովոյն գնաց առ նա (Լեւոնտիոս) և ջանայր յոյժ յերկու բնութիւնն. և 'ի դառնալն յիւր քաղաքն, կամեցան քարկոծ առնել, և փախեաւ 'ի Կիպրոս, և բարկութեամբ (Տեառն) սատակեցաւ. և իւր ընտանիքն գնացին և բերէին զնա նաւով. և եղեւ հողմն սաստիկ և ընկեցին զնա 'ի ծովն նաւորդքն, գիտելով թէ աշխարհական է, զի կայր աշխարհական մի այլ Կոստանդնուպօլսեցի մեռեալ. և այնպէս 'ի գլուխ ել մարգարէութիւնն Զենոնի սրբոյ առնն Աստուծոյ ։»

ԾԱ. «Այլն մի ասկաղոնացի Նիկիտէ անուն, սաստիկ յանդիմանէր զՔաղկեդոնացիսն. և երեւեալ նմա սատանայ ՚ի կերպարանս հրեշտակի, ասէ ցնա. «Ընդէ՞ր հայհոյես զսուրբ ժողովն»: Եւ փլոյց զաղխեալ պատն ՚ի վերայ նորա, և ոչինչ եղեւ նմա. և յարուցեալ խաչակնքեաց ընդդէմ (սատանայի) և չիք եղեւ»:

ԾԲ. «Պատմեցին մեզ երկու եղբարք Կիլիկեցիք, թէ «Գնացաք առ Թէոդորոս Մանուեստացին (Մոպսուեստացի), որ անկեալ ՚ի խելաց և արարեալ էր մեկնութիւն Գործոց և Աւետարանին Յովհաննու գըրքոյն, և յանդիմանեցաք զնա. և եհար ըզնա հրեշտակ Տեառն, և յետ երից աւուրց սատակեցաւ, որ էր յաշակերտացն Նեստորի (1)»:

ԾԳ. «Ի Պամփիլիա երկու դասք, ուղղափառք և հերետիկոսք, փայտ կտորէին, և վիճէին վասն հաւատոյ. և վկայութիւն ճշմարտութեանն կամեցան խնդրել, և գըտան հնար զայս. բերին զտումարն Լեւոնի և զսահմանն ուղղափառացն, և ընկեցին ՚ի հուր. և այրեցաւ տումարն Լեւոնի և անա-

(1) Թէոդորոս Մոպսուեստացի ՚ի Մամեստիա քաղաքէ. ոչ աշակերտ՝ այլ առաւել վարդապետ և ուսուցիչ զատա Նեստորի. որ ՚ի նորա գրոցն հաւաքեաց զթոյնս չարափառութեան իւրոյ:

քստ մնաց ուղղափառացն. և միաբանեալ դարձան յուղղափառութիւն։»

ծդ. «Նախ քան զժողովն Քաղկեդոնի երեք ամաւ, յԵրուսաղէմ յեւթներորդ ժամու աւուրն երեք արեգակն երեւեցաւ, մի յարեւելք, մի յարեւմուտք, և մի 'ի մէջ երկնից, որ ցուցանէ թէ երեք ժողովն է լուսաւորիչ աշխարհի և ոչ այլքն։»

ծե. «Ի դատաւնայն Յոբնաղայ 'ի ժողովլեան Քաղկեդոնի՝ ելին ընդդէմ եկեղեցականք և ժողովրդականք յանդիմանել զնա. և հայրն Պետրոս նստաւ 'ի լռութեան, և երեւեցաւ նմա Փրկիչն ասէ. «Ես զրկեցայ և հաւատս իմ այլայլեցաւ, և դու հանդիստ խնդրես քեզ։» Եւ յարուցեալ գնաց նա՝ և Թէոդոսիոս ընդ նմա, այն որ յետոյ ձեռնադրեցաւ եպիսկոպոս, որ և կարի իսկ հայհոյէր զՅոբնաղ։ Եւ հրամայեաց Յոբնաղ զօրականի միում ըմբռնել զնա որպէս խռովարար. և շարժեցաւ հայրն Պետրոս, բուռն եհար զուրարէն Յոբնաղայ և պատառեաց, և ասաց. «Դու ես որ հաւատ փոխես. զայն թող, զքո գործքն այս գիշեր ասեմ՝ զինչ գործեցեր. և խնդրեմ հուր երկնաւոր մաշել զքեզ և զքոյդ։» Եւ անկաւ յոտս նորա և ասաց. «Ողորմեա, հայր սուրբ, խնայեա։» Եւ առեալ զԹէոդոս գնաց Պետրոս 'ի յարկս իւր։»

ԾԶ. «Թէոդոսիոս այր իմաստուն և սուրբ տանջէր 'ի խորհուրդս իւր վասն երկու բընութեանցն, և խնդրէր յԱստուծոյ լալով յայտնել նմա։ Եւ երեւեցաւ նմա Յովհաննէս Աւետարանիչն և ասէ. «Որ էրն 'ի սկզբանէ, նա է զոր շօշափեցաք. զԲանն կենաց, և ոչ է երկու բնութիւն։» Եւ զայս լուեալ հաստատեցաւ 'ի մի բնութեանն։»

ԾԷ. «Այր մի սուրբ տեսեալ բազում ժողով եպիսկոպոսաց, և 'ի մէջ նոցա Պաւղոս առաքեալ որ ասէր. «Այդ է իմ պատոււէրն, զայդ ուսուցի. արդ եկայք առէք 'ի սափորոյս և լուացէք զերեսս ձեր։» Եւ իբրեւ լուացին՝ ամենեքեան սեւացան, և ասէ. «Այդպէս ամենեքեան սեւացայք։»

ԾԸ. «Մարկիանէ այն աշխարհական յանդիմանեաց զՊամփիլայ եպիսկոպոսն, որ ասնէր քարոզ երկու բնութիւն ասելով. և մատնեցին զնա դուկի (դքսի) քաղաքին, և տանջեաց զնա արջառաչօք. և այր մի լուսաւոր մօտ կայր նորա՝ եդեալ ձեռն, և ոչ ցաւէր նմա, սակայն իջանէր արիւն. և արար բժշկութիւն ցաւոց 'ի ժամուն յայնմիկ։»

ԾԹ. «Սուրբն Տիմոթէոս պատմեաց հօրն Յովհաննու յորժամ յաքսորս էր, թէ «Յորժամ կամէր լինել ժողովն Քաղկեդոնի, և եկին հրաւիրել զիս. և յայնմ գիշերի տեսանէի

զնա յեկեղեցին 'ի պատարագի, և նշխարն էր սեւացեալ իբրեւ զածուխ, և բաժակն քացախ, և ոչ կարացի հաղորդել, և խնացայ զոր կամէր լինել:»

Կ. «Անաստաս աբեղայ ուռհայեցի, աշակերտեցաւ հօրն մերում Պետրոսի և հաղորդեցաւ 'ի նմինէ, և յայնմ գիշերի նա մկրտեալ տեսանէր զինքն, և ոմն ծեր մեկնեաց, թէ յուղղափառութիւն դառնալդ՝ նորանալ է սրբութեամբ:»

ԿԱ. «Թամամարին երէց պատմեաց մեզ, թէ «Յորժամ գայր հերետիկոս եպիսկոպոսն 'ի ժողովոյն Քաղկեդոնի, մկրտէի ես տղայ մի, և տեսայ ես և ժողովրդականքն, զի Հոգին Սուրբ աղաւնակերպ ել յաւազանէն և գնայր, և ասաց յօդաւոր ձայնիւ, թէ «Ես ոչ այլ դառնամ յայդ աւազանդ:»

ԿԲ. «Պատմեաց մեզ հայրն Պետրոս, որ կայր իւր եկեղեցական մի, որ խմորեալ էր յաղանդն Քաղկեդոնի, և դիպեցաւ նա 'ի նեղ շուկայ մի, և ջանայր դարձուցանել զերեսս իւր, և նեղ էր տեղին՝ չկարաց. և եկեղեցականն երկրպագելով ողջոյն ետ, և նա յամօթոյն էառ զողջոյնն. և յայնմ գիշերի տեսանէր դաշտ մի, ուր ժողովեալ կային ամենայն սուրբք, և Քրիստոս Աստուած 'ի մէջ նոցա փառօք նստեալ: Եւ գնաց երկրպագեաց նմա, և Տէրն դարձոյց զերեսս

իւր 'ի նմանէ . և գիտաց թէ այն է պատ-ճառն, զի էառ զողջոյն հերետիկոսին, և ան-կաւ յերես իւր . և մինչ բարեխօսէին ամե-նայն սուրբք, ոչ հոյեցաւ 'ի նա ։»

կգ. «Ոմանք աշխարհականք արեւելեան ուղղափառք գնացին ճանապարհաւ 'ի Նիւ-բիտոնիա, և գնացին առ Միանակեաց մի, և նա ասաց ցնոսա . «Լսեմ թէ ոչ հաղորդիք յեկեղեցիս մեր ։» Իսկ նոքա ասեն . «Ու-նիմք առ մեզ հաղորդ 'ի հարցն մերոց ուղ-ղափառաց, և նոցա հրամանաւ հաղորդիմք ։» Իսկ նա սաստեաց և ասէ . «Դուք աշխար-հականքդ և գլխաւորդ իշխէք նախատել զմեզ . և զոր ունիք առ ձեզ, այդ չէ հաղորդ ։» Իսկ նոքա տրտմեցան և ասեն . «Զ՞ինչ է այս ։» Իսկ յաւուր կիւրակէի տեսին զհա-ղորդն իւրեանց և էր վառեալ լուսով և ա-նոյշ հոտով . և ոմն 'ի նոցանէ հաւատացեալ էր Միանակեցին, և տեսանէր զիւր մասն միս արիւնաթաթախ, և մեղայ ասաց . և հաստատեցան յիւրեանց կրօնսն, և փոխե-ցաւ մասն և հաղորդէին անխիղճ ։»

կդ. «Ստեփաննոսի սարկաւագապետին Երուսաղէմի քոյր մի կայր կուսան սուրբ, որ պահօք և աղօթիւք կատարէր զաւուրս իւր . և եհաս 'ի կատարելութիւն այնչափ, որ յորժամ երթայր յեկեղեցին սուրբ Ստե-փաննոսի և Յովհաննու, տեսանէր զաւուրքն

Ստեփաննոս և զՅովհաննէս․ և յետ ժողովոյն Քաղկեդոնի դարձեալ գնայր աղօթէր ըստ սովորութեանն ընդ խմորեալսն յաղանդըն․ և երեւեցաւ նմա սուրբն Ստեփաննոս ասէ․ «Քոյր, երթ նիստ 'ի տան քո, մի գար այսր․ և մեք առ քեզ եկամք․ զի ընդ այս ժողովոյս չկամիմք լինել ուրացողաց Քաղկեդոնացւոց։»

կե․ «Այր մի ուղղափառ պամփիլացի բնակէր յԵրուսաղէմ, և գնաց ընդ մեծ ժողովոյ 'ի տաճար Համբարձմանն, և դիպեցաւ նմա մնալ 'ի տաճար Համբարձմանն, և փակեցաւ դուռնն, և զգիշերն աղօթեաց յեկեղեցւոյն, և վաղւն չոգաւ 'ի խրճիթն։ Իսկ յետ աւուրց կալաւ զնա ցաւ մահու, և տեսանէր զի կային առ ընթեր նմա հրեշտակք, և վիճէին ընդ նմա․ դարձաւ առ մերձակայսն և ասէ․ «Տեսէք զինչ ասեն ընդ իս մեղադրութիւն, թէ զիա՞րդ վճարես ուղղափառութեամբ զկեանս քո, և համարես զքեզ կատարեալ, զի զանարժանիցն պատարագն տեսեր և զհաղորդութիւնսն, և աղօթեցեր ընդ նոսա։» Այն կինն այն կանգնեալ 'ի հիւանդութենէն՝ ապաշխարեաց, զի խնդրեաց յԱստուծոյ և ընկէց զինքն յանդիման տեղւոյն Աստուծոյ, և գոչէր արտասուօք թէ՝ զիա՞րդ խոստովանեացուք զհաւատն ուղղափառ, յայտնեա մեզ

սուրբ եկեղեցի։ Եւ եղեւ ձայն 'ի սուրբ սեղանոյն և ասաց. «Որդին Աստուծոյ նոյն է որ ծնաւն 'ի կուսէն, նոյն է որ խաչեցաւն, նոյն է որ Թաղեցաւ, նոյն է որ յարեաւ և գալոց է։»

ԿԶ. «ՅԱստղիա(1) Պամփիլացւոց կուսանաց վանաց առաջ մի կոյր, որում անուն էր Զոյի, և էին ուղղափառք։ Եւ յաւուր միում յափշտակեցաւ մտօք 'ի դրախտն, և ցուցին նմա զծառն կենաց. և տեսանէր թէ որպէս պտուղք մեղուաց գային և ջանային յարենալ 'ի ծառն կենաց։ Եւ սարկաւագ մի լոյս զգեցեալ հալածեաց զնոսա. և հարցանէր Զոյի թէ՝ «Զինչ է այդ։» Եւ ասէ սարկաւագն. «Ո՛սուս Քրիստոս է, և մեղուքս ժողովն Քաղկեդոնի, որք չեն արժանի մերձենալ 'ի Քրիստոս։» Եւ մինչ եկն Աղոդոնիոս եպիսկոպոսն յԱստղիա(1), յանդիմանեաց ըզնա Զոյի, թէ ընդէ՞ր ձեռնադրեցեր 'ի տոմարին Լեւոնի։ Եւ նա ասաց. «Մատամբք գրեցի, և ոչ մտօք։» Եւ ասէ Զոյի. «Մեռեալ ձեռք զիա՞րդ կարէ գրել առանց կենդանի մատանց։» Եւ հրաժարեաց 'ի նոյանէ իւր կուսանօքն։»

ԿԷ. «Լեւոնտիոս անապատական տեսանէր զեկեղեցի մերկ, և զխորհուրդն վայ-

(1) Յօրինակին Իսաւրիա։

թեալ, և ասէին. «Այս է նոցա եկեղեցին և պատարագն, որ չորրորդութիւն խոստովանեցան ՚ի Քաղկեդոն։»

ԿԸ. «Եւ այլ ոմն սուրբ և տեսանող տեսանէր զեկեղեցին Կոստանդնուպօլսի ախոռ լեալ, և լի անսուրբ անասնովք և գարշ և զազիր հոտով։»

ԿԹ. «(Աբլկարիբոս) եպիսկոպոս Հայր վանից Պամփիլոյ տեսանէր զեպիսկոպոսն Ամղիքոս զԱնդեսնոյ քաղաքի, այն՝ որ կոչէր ողորմած, և զԱպլիփան Պերկացի՝ թաղեալ ՚ի ցեխս գարշ մինչև ցպարանոցն։ Եւ ասէ Ամղիքոս (ցԱպլիփան). «Դու բարի գործովք զարդարեալդ, զի՞արդ եղեր այդպէս։» Եւ պատասխանի ետ (Ապլիփան) և ասէ. «Բարին յԱստուծոյ էր և չարս ՚ի մէնջ. զի հնազանդեցաք ժողովոյն Քաղկեդոնի։» Եւ ասէին թէ՝ նա էր նորոգել զտումարն Լեւոնի։»

Հ. «Այլ մի սուրբ և զգաստ Եկթասալի անուն, յետ ժողովոյն Քաղկեդոնի միոջ յերկուս բաժանեալ տարակուսէր՝ թէ յորո՞ց հաղորդիցի, և հայցէր յԱստուծոյ ցուցանել նմա. և տեսանէր եկեղեցի մի երկխորանի, և մեծ խորանն էր մերկ և Քաղկեդոնիկ մի ՚ի վերայ, և փոքրն զարդարուն և ճառագայթաւոր և մանուկ մի հրեղէն ՚ի վերայ նորա, և ասէր՝ թէ «Առիս եկ՝ հաղորդեաց, ՚ի բաց կաց յուրացողացդ։» Եւ էր

ինքն Քրիստոս որ ասէր զայս ։»

ՀԱ. «Ի վանս հօրն Ռոմանոսի էին երկու եղբարք, Տիմոթէոս և Յովհաննէս. Տիմոթէոս վախճանեցաւ և պատեցին զնա և տարան 'ի թաղել, և յանկարծ նստաւ 'ի դագաղին առընթեր գերեզմանին և ասէ. «Գիտէք, եղբարք, որ առ իս չկայր այլ մեղաց պատճառ քան զայն՝ որ իրաւ կարծէի զերկու բնութիւնն ։ Եւ վասն այնորիկ տանին զիս 'ի տանջանս, և խնայեաց յիս ողորմութիւնն Աստուծոյ, որ ասեմ ձեզ զայս վասն ձեր զգուշութեան, և որ հայցէք վասն իմ թողութիւն ուղղափառութեամբն ձերով ։»

ՀԲ. «ՅԱնտիոք Ասորւոց մերձ յարքունիսն բնակեալ էր ոմն այր սքանչելի, որ ոչ ունէր ինչ յումեքէ, բայց սակաւ բանջար, որով լնոյր զպէտսն իւր. և զի սաստիկ և յայտնի յանդիմանէր զՔաղկեդոնիկոն, ըսպանեաւ 'ի նոցանէ տանջանօք. քանզի ասէր նա՝ թէ «Հոտ անօրէնութեան գայ ինձ հանապազ 'ի տեսանելն իմ զնոսա. և ոչ կարեմ տանել լռութեամբ ։»

Ի վեց ամին Մարկիանէի և 'ի ՉԿԱ թուին Նորոց սպանաւ Վաղենտինիանոս Հռոմայ թագաւորն. և աստ պատառեցաւ թագաւորութիւնն Հռոմայ 'ի Կոստանդնուպօլսէ: Որպէս Մարկիանէ առանց Հռոմայ կամաց նստաւ յաթոռ թագաւորութեանն, նոյնպէս և նոքա գնացին ըստ կամաց իւրեանց: Ընդ նմին և պատառեցաւ. կարգ եկեղեցւոյ և բարձաւ խաղաղութիւն եկեղեցւոյ զկնի ժողովոյն Քաղկեդոնի: Եւ մեռաւ Մարկիանէ լցեալ նզովիւք 'ի սրբոց արանց ժամանակին, թագաւորեալ վեց ամ: Եւ 'ի նոյն ամի թագաւորեաց 'ի Հռոմ Լեւոն Թրակացի ազգաւ՝ յիշխանացն Մարկիանէի [1]: Եւ 'ի նոյն ամի թագաւորեաց Պարսից Պերոզ, և արար հալածումն Քրիստոնէից. և արար պատերազմ ընդ Հռոմայեցիս: Եւ Լեւոն ետ զդուստր իւր Զենոնի, և կացոյց զնա թագաւոր կողմանցն արեւելից [2], և զԲասիլիսկոս արար ստրատե-

(1) Լեւոն Թրակացի որ էր հրամանատար: կոչեցաւ 'ի Ծերակուտէն յաթոռն կայսերական Կոստանդնուպօլսի:

(2) Զենոն Իսաւրացի ազգաւ, փեսայացեալ Լեւոնի՝ կացուցաւ ընդհանուր զօրապետ Արեւելից բանակին:

Թագաւորին զմեց ամիս և ոչ կարաց մնանել 'ի քաղաքն։ Եւ յայնժամ սահմանեաց Լեւոն կայսր, թէ յաւուր կիւրակէի յեկեղեցիս կացցեն մեծ և փոքր՝ յաղօթս և յուսումն, և այլ ինչ մի գործեսցեն յաւուր կիւրակէի։

Եւ յաւուրս Լեւոնի ամիս մի օդք հող և մոխիր տեղաց, և սաստել 'ի Կոստանդնուպօլիս, և կուտեցաւ թիզ մի, և զահի հարան աշխարհ և ակն ունէին անցման. Եւ 'ի բազում տեղիս հուր վայթէր և այրէր ըզտեղիս տեղիս։ Եւ յայնմ ժամանակի Նիկիա քաղաք 'ի շարժմանէ և 'ի կայծականց շրջեցաւ. և բազում քաղաքք և գեօղք 'ի Թըրակիա ապականեցան։ Եւ Թագաւորն Լեւոն աղեցաւութեամբ մեռաւ, թագաւորեալ ամս ութևտասան։ Եւ յաւուրս սորա ոչ պակասեաց խռովութիւն և աւեր աշխարհի և եկեղեցւոյ, և գիտաց ամենայն իմաստուն թէ ժողովն Քաղկեդոնի զայրացոյց զԱստուած։ Եւ խռովեցաւ հոգի նորա սուրբ յամպարիշտ դաւանութեանց նոցա։

Եւ Թագաւորեաց փոքր Լեւոն հրամանաւ մեծ Լեւոնի, վեցամեայ, որ էր թոռն նորա, և որդի Զենոնի՝ կողման արեւելից Թագաւորին։ Եւ յետ ամի միոյ եկն հայր նորա Զենոն՝ զի երկիրպագեսցէ որդւոյն. և կին նորա, մայր տղայոյն, խաբեաց զնա որ-

պէս զմանուկ և ասէ . « Յորժամ գայ հայր քո և երկրպագէ քեզ, դիր զԹագն 'ի գլուխ նորա և դու երկրպագեա նմա ։ » Եւ արար այնպէս . և յետ սակաւ միոյ մեռաւ տղայն Լեւոն, և արամեցան քաղաքն ։ Եւ էր Զենոն յԻսաւրի ազգէ, և աղաչէր զնա Թագուհին մեծ Լեւոնի Վերինեա (Վերինէ) վասն ժողովրդեան Բաղկեդոնի՝ զի ընկալցի ըզնա, և ոչ լուաւ նմա ։ Իսկ Թագուհին ընկեց զնա 'ի Թագաւորութենէ և ետ զեղբայր իւր զՎասիլիկոս, որ էր մինչեւ ցայն վայր սպարապետեալ 'ի Լեւոնէ յԱփրիկիա, և քարոզեցաւ Թագաւոր և արար զորդին իւր զՄարկոս՝ կեսար ։ Եւ Զենոն փախեաւ յերկիրն Իսաւրոց՝ Թողեալ զԹագաւորութիւնն, և մտեալ 'ի բերդն Սաղամէ գաւառաց . և կին իւր Արիանիա (1) եկն առ նա պաղատագնաց ։

Եւ Վասիլիկոս որդւովն Թագաւորեաց ամս երկու . և էր պիղծ և չարադեւ, և գրէր ամենայն ուրեք զԲաղկեդոնին հաստատել և քարոզել 'ի վերայ աշտարակի, և հալածել զուղղափառսն, և եղեւ ատելի յաչս ամենեցուն . և գային առ Զենոն, և եղեւ ժողով մեծ ։ Եւ Վասիլիկոս առաւ

(1) Արիանիա . այն է Արիադնէ՝ կին Զենոնի, որ դուստր էր Լեւոնի Ա . կայսեր Յունաց ։

քեաց զԱրտիմոս (Արմատիոս) զօրագլուխ պատերազմիլ ընդ Զենոնի ։ Եւ Զենոն խօսեցաւ ընդ նմա 'ի խաղաղութիւն , և խոստացաւ զնա կեսար առնել։ Եւ առեալ ըզԶենոն զօրքն ածին 'ի Կոստանդնուպօլիս , և ընկալան քաղաքն խնդութեամբ . և փախեաւ Բասիլիսկոս որդւովքն յեկեղեցի մի. և առաքեաց Զենոն մերկացոյց զնա 'ի ծիրանեացն , և առաքեաց 'ի Լամիս Կաստրա (1) Կապադովկացւոց . և ածին 'ի բուրգն մի և փակեցին յամենայն կողմանց , և դառնապէս մեռաւ անդէն ։ Եւ Զենոն արար զԱրտեմիս զօրապետ և զորդին իւր կեսար (2) . և զկին այնորիկ սպանաւ Արտեմիս, և զորդին արարին ընթերցող եկեղեցւոյ ։

Յայնժամ Թագաւորն 'ի ձեռն Ակակայ պատրիարքի Կոստանդնուպօլսի յորդորեալ յուղղափառութիւն առաքեաց առ Պետրոս պատրիարքն Անտիոքու և առ Տիմոթէոս պատրիարքն Աղէքսանդրու , որ կային 'ի բանտի 'ի Կոստանդնուպօլիս, հարցանել հաւատոյ խոստովանութիւն . և նոքա ետուն

(1) Կաստրա 'ի լեզու Յունաց և Լատինաց նշանակէ աշտարակ , բերդ . իսկ Լամփս է Լիմնէս ամրոցն , ուր բանտարկեալ լինէին կասկածաւոր անձինք առ բիւզանդեան կայսերութեամբ ։

(2) Որդին Արտեմիոսի կոչէր Բասիլիսկոս, որ ապա զրկեալ յիշխանութենէ՝ եղեւ եպիսկոպոս Կիւզիկոնի, 'ի Բիւթանիա

գրով զՆեկիայն և զԱւրղէն և զԴիոսկորո-
սին, և ասացին թէ՝ «Մեք յայդ եմք։» Եւ Թագաւորն առաքեաց ընդ ամենայն երկիր և ձեռնագրեցին 'ի դաւանութիւնն յայն եւթն հարիւր եպիսկոպոսք, և ասացին թէ՝ «Նզովեմք զտումարն Լևոնի, նզովեմք ըզժողովն Քաղկեդոնի, նզովեմք զԻ՛կակ, նզովեմք զՆեստոր որ պատառեցին զհաւատս; և նզովեալք եղիցին ոչ նզովողք նոցա։» Եւ ընկալեալ Թագաւորն և հաւանեալ՝ առաքեաց զՊետրոս զոր Թափիչն կոչեն, պատուով մեծաւ յԱնտիոք յաթոռն իւր, և անդ կատարեցաւ։ Եւ զՏիմոթէոս յԱղէքսանդրիա, զոր ձեռնադրեալ էր ուղղափառացըն զկնի Պրոտերայ, և կայր յաքսորս։

Ի յայսմ ժամանակի ապստամբեցին Սամարացիքն, և եդին իւրեանց Թագաւոր Հաստատուն, և զքաղաքն կոտորեաց 'ի քըրիստոնէից, և մտեալ 'ի Կեսարիա՝ քակեաց զեկեղեցիսն։ Իսկ զօրքն Հռոմայեցւոց գընացեալ 'ի վերայ նոցա կոտորեցին. և զՅուստոս Թագաւորեալն Հրէից առաքեցին առ

(1) Պրոտերիոս էր 'ի Քաղկեդոնականաց. որ յաջորդեաց զաթոռն Աղէքսանդրիոյ զկնի Դէոսկորոսի զոր Մարկիանոս կայսր աքսորեաց 'ի Գանգրաս Պափլագոնիոյ վասն պաշտպան երեւելոյ Եւտիքեայ մոլորութեանն։—Եւագրիոս, Պատմ. Եկեղ. Բ. 5։

(2) Այն է Յուստոս կամ Յուստասոս կոչեցեալ, որ էր գըլուխ յելուզակաց։

Զենոն թագաւոր, և զշինեալն 'ի Հրէից տաճարն՝ օրհնեցին եկեղեցի յանուն սրբոյն Մարիամայ, և զգտեալ Հրեայսն յՍնտիոք կոտորեցին ։

Յայսմ ժամանակի եղեւ շարժ, և Նիկոմիդիա քաղաք կործանեցաւ. և էր այս վեցերորդ շրջումն Նիկոմիդիայ 'ի շարժմանէ ։ Եւ յետ այսորիկ մեռաւ թագաւորն Զենոն վաթսուն ամաց, թագաւորեալ ամս վեշտասան։ Եւ փիւրոս (Պետրոս) թագաւորն Պարսից, դառն հալածիչն քրիստոնէից չարամահ եղեւ, և էառ զթագաւորութիւնն Բալաշ (Վաղարշ) ամս չորս. և յաւուրս սորա խաղաղութիւն եղեւ քրիստոնէից ։ Եւ թագաւորեաց Անաստաս 'ի տեղի Զենոնի. և ընդ թագաւորելն գտաւ չարիք 'ի մանկունս դպրոցացն, և լուեալ թագաւորն բարկացաւ և կոտորեաց զամենայն դպրոցս Կոստանդինուպօլսի ։ Եւ սորա հրամանաւ շինեցաւ քաղաքն զոր Տարա կոչեն, վասն անդ սպանանելոյ զԴարեհ, և անուանեաց զնա Անաստաս յանուն իւր՝ Անաստասուպօլիս (1)։ Եւ յաւուրս սորա 'ի շարժմանէ ընկղմեցաւ Նիկոպօլիս ։ Եւ զկնի Բալաշայ թագաւորեաց Պարսից Կուատ (Կաւատ). և Համազասպ (2) եղբայր նորա հալածեաց ըզ-

(1) Միքայէլ Չամչեան. Պատմ. Հայոց, Հտ. Բ. յեր. 235։
(2) Համազասպ է սխալ օրինակողաց· փոխանակ գրելոյ Համասպ կամ Ջամասպ ։

*Կուտոն ամս երկու. և դարձեալ զօրացեալ Կուտոն սպան զեղբայրն և Թագաւորեաց ամըս երեսուն: Եւ յայնժամ ելին Հոնք և յաղթեցին Պարսից, և կարծեցին Պարսիկք թէ Հռոմայեցւոց բանիւ եղեւ, և ժողովեալ զօրս՝ եկին յերկիրն Միջագետաց և առին քաղաքս բազումս* (1):

*Յայսմ ժամանակի եղեւ Պատրիարք Կոստանդնուպօլսի քաններորդ՝ Տիմոթէոս, յոյժ առաքինի և իմաստուն, որ ասաց Թագաւորին և գրեցաւ կանոն զսուրբ Աստուածն խաչեցար ասել ընդ ամենայն երկիր. և լորնդաց Անաստաս եւ սահմանեցաւ յերկիր ամենայն: Եւ եղեւ ժխոր մեծ 'ի Կոստանդինուպօլիս՝ թէ զԵրրորդութիւնն խաչեն. և էին Նեստորականք և սպառնացան Տիմոթէի, և սպանին երէց մի զՏիմոթէի. և Տիմոթէոս զայրացեալ գնաց 'ի քաղաքէն:*

*Յայսմ ժամանակի երեւեցաւ այրն բանաւոր Փելիքսիանոս արքեպիսկոպոս, որ է Մնբէճայ, ձեռնադրեալ 'ի Պետրոսէ Անտիոքու: Սա արար յոլով գրեանս ուղղափառ վարդապետութեան: Զսմանէ լուաւ Թագաւորն (Անաստաս) և առաքեաց տարաւ 'ի Կոստանդինուպօլիս եպիսկոպոսօք և վարդապետօք, և մի էր 'ի վարդապետացն Սեւերիանոս և երկու հարիւր քահանայ ընդ նմա.*

(1) Միքայէլ Չամչեան, Պատմ. Հայոց, Հտ. Բ. յեր. 232:

Եւ հրամայեաց Թագաւորն քննութիւն առնել վասն հաւատոյ. եւ յաղթողք երեւեալ վարդապետութեամբ Փիլոքսիոս (Փեղիքսիանոս) եւ Սեւերիանոս ընդդէմ չարափառացն: Եւ հրամայեաց Թագաւորն հանել ՚ի գերեզմանէն Եւփիմեայ մկրտի զսումարմն Լեւոնի եւ Մակեդոնի, եւ այրեցաւ հրով: Եւ Ֆլաւիոս (Փլաւիանոս) ոչ կամէր զայրելն, եւ ցուցան այնու. Թէ՝ համախոհ է Մակեդոնի, որ էր պատրիարք Անտիոքու, եւ նզովեցաւ եւ գնաց յաքսորս: Եւ Փիլոքսիոս ձեռնադրեաց եպիսկոպոս ՚ի Կոստանդինուպօլիս զմեծն Սեւերիանոս, լի հոգւով եւ իմաստութեամբ եւ փարթամ Աստուածաշունչ գրովք. եւ յաւուր ձեռնադրութեան իւրոյ սաց զճառն, որոյ սկիզբն այս է. "Սրբամաքեաց զմիաւորութիւն Սրբոյն Աստուծոյ." եւ կոչ ՚ի նմա ամենայն արար աղանդաւորաց, զոր (զճառն) եւ ունին Յոյնք եւ կարդան ՚ի յանդիմանութիւն իւրեանց: Յայս ժամանակս էր Սրճոյ եպիսկոպոսն, եւ ունէր շնորհ աստուածային եւ ոչ ՚ի դպրութենէ մարդկան. զոր ընկալաւ զնորա վարդապետութիւնն Սեւերիանոս պատրիարքն Անտիոքու, այն որ ձեռնադրեցաւ ՚ի Կոստանդինուպօլիս յաքսորելն զՖլաւիոս: Աս երեւեցաւ Սիմոն բրուտն, որ արար ճառս եւ շարականս ուղղափառ դաւանութեան:

Յայսմ ժամանակի Թագաւորն Պարսից Սուլտան (Սաւատ) ժողովեալ զօրս՝ եկն 'ի Կարնոյ քաղաք և էառ զնա. և արար սէր և ոչ կոտորեաց զնոսա, զի ոչ անարգեցին զնա յորժամ պաշարեալ էր զքաղաքն. և դարձաւ եկն յԱմիթ յաշնան ժամանակն և սաստիկ նեղէր զնոսա: Եւ եկեալ էր առ նոսա Յովհաննէս վանական 'ի Կարթմայ և քարոզէր մեծատանց ողորմել աղքատացն, և ընդ այլ ամբոխն ասէր. « Արբեցէք զձեզ պահօք և լալով և հեծմամբ գիշերականօք:» Եւ երեւեալ նմա հրեշտակ Աստուծոյ ասէ. «Յովհաննէս, կործնչի քաղաքս այս վասն մեղաց, և դու փախիջանիս և ոչ տեսանես զաւեր քաղաքիս:» Այլ նա ոչ դադարէր յաղօթից և 'ի քարոզելոյ. և եկն անձրեւ սաստիկ և երկայն հանդերձիւք իւրեանց Պարսիկքն ըսկսան նեղիլ և տկարանալ. և զի շինեալ էին փայտեղէն բերդս, և տարեալ առ պարիսպն, և քաղաքին իմաստունքն ջուր հացահամեմի արկին 'ի վերայ և այրեցին՝ ձգելով կրակ 'ի նա: Եւ Թագաւորն Պարսից խնդրեաց ինչս և ոսկիս զի գնասցէ. և նոքա անարգեցին զնա և 'ի չարիս իւրեանց ոչ զղջացան. և բարկացաւ Տէրն և մատնեաց զքաղաքն և կոտորեցին 'ի նմա անձինս ութսուն հազար, և զայլսն գերեցին. բայց միայն զի մեծ եկեղեցին լցեալ էր ժողովրդեամբ.

խնդրեաց զօրագլուխն Հայոց և թողաւ այն[1]։ Եւ եմուտ Թագաւորն յեկեղեցին, և ետես զպատկերն Փրկչական նկարեալ 'ի խորանն, և հարցեալ թէ ո՞վ է. և ասեն՝ թէ "Աստուածն է քրիստոնէից։" Եւ երկրպագեաց նմա Թագաւորն, և ասաց. "Սա երեւեցաւ ինձ 'ի տեսլեան և ասաց. մի երթար, մատնեմ զքաղաքս 'ի ձեռս քո։ Արդ ոչ ես տամ զքաղաքս, այլ Աստուածն իւրեանց ետ ինձ, զի մեղան նմա[2]։"

Եւ առեալ գերի բազում գնաց յԱւահա, և ոչ կարաց առնուլ զնա. և գնաց յերկիր իւր՝ թողեալ 'ի յԱմիթ հեծեալ։ Եւ լուեալ զօրացն Հռովմայեցւոց, եկին պաշարեցին զԱմիթ և ոչ կարէին ինչ առնել քաղաքին, զի ոմն 'ի գլխաւորացն Սկդոն անուն, յոյժ զօրաւոր և խոհեմ էր, և յաղթահարէր զՀռոմայեցիսն։ Ապա այր մի Պրադան անուն եկն 'ի Կարթայոյ գեղջէ և խօսեցաւ ընդ Հռոմայեցւոցն զոր ինչ առնելոց էր, և չոգաւ խաբեաց զՍկդոն և ասէ. "Առ ընդ քեզ չորս հարիւր ձիաւոր և երթամք բերեմք հինգ հարիւր ձի, որ կան յարօտս 'ի բացեայ։" Եւ յորժամ գնացին, ելին դարանամուտքն և սպանին զնոսա. և իմացեալ Պարսից զնենգութիւն առնն, բարկացան և

(1) Այն է Վարդ պատրիկն Հայոց՝ եղբայր Վահանայ
(2) Միքայել Չամչեան, Պատմ. Հայոց. Հտ. Բ. յեր. 232։

*տասն հազար այր 'ի քրիստոնէից արգելին 'ի տեղի մի, և այնչափ սովեցուցին, մինչ կերան 'ի սովոյն զկօշիկս իւրեանց. և ինքեանք (Պարսիկք) 'ի գիշերի միում ելին և գնացին յաշխարհն իւրեանց։*

Ի *քսան և երկու ամին Սմբատայ առաքեցաւ 'ի Նմանէ զօր յաշխարհն Հայոց, և արարին զնոսա ընդ ինքեամբք՝ 'ի բաց կալ 'ի Պարսից. իսկ Սմբատա Թագաւորեալ քսան և ութն ամ, մեռաւ 'ի քսան և ինն Թամուզ ամսոյ։*

Ի ՊԼԲ (832) *Թուին Սորուաց Թագաւորեաց Յուստինիանոս Թրակացի. և այս եղեւ սկիզբն Յոյն Թագաւորի, որ էր 'ի գեղջէ Բեդրինեայ, որ յետոյ արարին զնա քաղաք՝ յանուն իւր կոչեալ. և զՋուրն սորա ասեն Թէ այնպիսի պղինձ է, որ Թէ շատ եփեն՝ լինի արիւն։ Եւ Յուստինիանոս էր այր պարզամիտ՝ անփորձ գրոց. և յոլովք 'ի Թրակիա ծածկաբար մնացեալ էին աղանդոյն Քաղկեդոնի, որք խաբեցին զնա և ասեն. «Թէ դաւանես զժողովն Քաղկեդոնի, ամենայն տիեզերք հնազանդ լինին քեզ։» Եւ ասացին՝ Թէ «Գրած է 'ի ժողովն Թէ՝ որ ընդունի զերեք ժողովսն, Թող ընդունի և չորսն, զի այս է կատարումն և գլուխ երից։» Եւ փաղփաղակի եդ հրաման 'ի Նը-*

մանէ և քարոզ ժողովոյն Քաղկեդոնի զօրօք հեծելօք ընդ ամենայն երկիր. և հալածեալ լինէին ուղղափառքն և յաԹոռոց զըրկեալք. և Սեւերիոս պատրիարքն Անտիոքայ գնաց յԱղէքսանդրիա զկնի վեց ամի եպիսկոպոսուԹեան իւրոյ. և կսկծելիս նզովեաց զԹագաւորն, և առաւել զեկեղեցականսն, Թէ որք հաւանին չար ժողովոյն, լուծեալք են 'ի քահանայուԹեան աստիճանէ։ Եւ ընդ ելանելն նորա յԱնտիոքայ, իջեալ հուր այրեաց զարքունին որ յԱնտաք, և վեց ամիս ոչ շիջաւ հուրն, մինչեւ այրեաց զբոլանդակ քաղաքն, և Թուէր Թէ կենդանի է հուրն։ Եւ յետ ամի միոյ գնալոյն Սեւերեայ, Պօղոս անուն Հրեայ, որ էր անօԹ բարկուԹեան, նստաւ յաԹոռն Անտիոքայ. և սա ժողովեաց զամենայն եպիսկոպոսունս Ասորւոց և նեղէր զնոսա ընդունիլ զժողովն Քաղկեդոնի, և զհաւանեալսն՝ յաԹոռն իւրեանց առաքէր, և զանհաւանսն՝ յաքսարըս։ Եւ որք աքսորեցան և կացին յուղղափառուԹեան՝ այսոքիկ են, զոր առէ Յովհաննէս ասիացին։

ԱնդլիԹիւրոս՝ Անաւարզոյ, Յուլիոս՝ Հանգոնի(1), Յովհաննէս մետրապօլիտ՝ Սանուեատիայ (Սամոսատիա), Պօղոս՝ Եդեսիայ(2), Յով-

(1) Միւս ԹարգմանուԹիւնն ունի Հադանի. որ Թուի եԹէ իցէ Հադրանի քաղաքն՝ որ է Հանճնի մերձ 'ի Կոկիսոն.
(2) Միւս ԹարգմանուԹիւնն Եդեսիոյ. գուցէ Բերիոյ։

հաննէս՝ Յարապօլսի, Պօղոս՝ փոքր Աղէքսան-դրու, որ է Ակնդրուն (Իսկէնտէրուն). Նի-կողայոս՝ Տարսոնի: Եւ 'ի Կապադովկացւոց երկրէն Պետրոս՝ Կոլոնիայ. Մասինաս՝ Արմա-վասիկայ (1). Նիկեփորոս՝ Սեբաստիոյ Հայոց: Եւ 'ի յԻսաւրիւքայ Սորւոց, Կոստանդին՝ Լատկին (Լաւոդիկեայ) եպիսկոպոս, որ վասն առաքինութեան և սրբութեան իւր մերձ պատրիարքաց նստէր աթոռով և քարոզեալ լինէր 'ի պատարագս ամենայն զկնի պատրիար-քին: Ոնոփրինէ՝ Հալպայ, Փիլաքսին՝ (Փելիք-սիանոս) արհիեպիսկոպոս Մնբէճայ, զոր յետ բազում խոստման և խոշտանգանաց 'ի Կան-դրա այրեցին 'ի կրափուռն: Բաղրա՝ Եփի-մոյ (Ապամիոյ). Թէոդոսիոս և Անեսիմոս՝ Օրդ-մոյ (՞) և Աւրէմին. Նոնոս՝ Սելեւկիոյ. Իս-գորակ՝ Կնշրի (Կեսարիոյ). Մարի (Մարաս՝) Ամթայ. Թումա՝ Դամասկոսի, այր ճգնա-ւոր որ զքսանևութ ամ հաց ոչ եկեր, այլ բանջար: Աղէքսանդրոս՝ Աբէլ քաղաքի. Թումա՝ Նարգաբայ. Յովհան՝ Թէուբայ (Թուրեր). Յովհան միւս՝ Ահուրանի. Սար-գիս՝ Կիւրիուսայ. Թումաս՝ Գերմանիկոյ, որ է Մարաշ. Պօղէ՝ Եւռհայոյ, որ յետոյ թուլացաւ և դարձաւ յաթոռ իւր. Յով-հաննէս՝ Խառանու. միւս այլ Յովհաննէս՝ Եփրինու. Եւստաթէ՝ Փիւրնին. Պատրէ՝ Սաա-

(1) Միւս Թարգմանութիւնն Արմոնոյ, կամ Արմոնայ:

լին․ Նոնա Կարկիսօնի (Կռկիսոն ?)․ Պօղա՝ Կալլինիկոսի (Կալանիկոս)․ Մարիոն՝ Հռոմքարին, որ է Հռոմկլայն․ Յովհաննէս՝ Թլացին․ Թումա՝ Տարսոյ․ Ահարոն՝ Աշմուշայ․ Իշու յերկրէն Սոփայեցւոց ՚ի Կարկոյ՝ (Կարխա, Սյրըն) եպիսկոպոսապետն Ոփռումիոս․ Անտիոքոյ Պիսիդեայ՝ Ամինիբանոս․ Ջիլկայ քաղաքէ՝ Օուքսիս․ Ջիլանեայ՝ Պետրէ․ Յուլեէ Սղեկառնեցի, որ յետոյ հերձուած խօսեցաւ․ Թէոսեպիոս՝ Իփեսոսի, որ արար ըքանչելիք ՚ի Կոստանդինուպօլիս, որ յետ բազում վիճմանց կանգնեցաւ երեք օր յոտն և հրեշտակի Տեառն աւանդեաց զհոգին․ և մարմին նորա վառեցաւ երկնաւոր լուսով զտիւ և զգիշեր, և զարհուրեցաւ քաղաքն, և կամեցան զնա դնել ընդ Սարտիւրոսս․ և եղեւ ձայն ՚ի մարմնոյն թէ՝ «յիմ աթոռն տարէք թաղեցէք։» Կիլիկինէ՝ Նիոյկեսարու․ Եղափիոս՝ Կաստուրանայ․ Թէոդորոս՝ Աւլեբիոյ․ Ղուկաս՝ ՚ի Միրու (Զմիւռնիա ?) քաղաքէ․ Հեփսիբայ՝ Հեդրոնոսի․ Պատրէ՝ Սալուդի․ Պիկատուր՝ Փիլադելփիոյ․ Պատրէ՝ Սանդէի․ Եկոթոդոր՝ Սանի․ Փաղէկ՝ Սանտարի․ Բուստինոս՝ Աքսենիայ․ Աղեքսանդրոս՝ Բանքարայ։ Թող զայլ մանր տեղեաց եպիսկոպոսունսն զորս թողաք․ և երկցանց և սարկաւագաց թիւ ոչ գոյ, որք ընդ ասացեալ եպիսկոպոսունս գլխաւորս զնա-

ցին յաքսորս 'ի Կոստանդնուպօլիս և յԱղէք-սանդրիա. եւ յետ բազում քննութեանց և խոստմանց և սպառնալեաց և ոչ հաւանե-լոյ, մխալ խեղդեցան:

Իսկ որք 'ի տեղիս և յաշխարհն Ասորւոց սպանան և չգնացին յաքսորս, են այսոքիկ: Եւփրիմոս՝ 'ի գաւառէն Անտիոքու և Ադրի-անէ՝ Աստուփորումի չարչարանօք 'ի զօրա-գլխէն Անտաքայ սպանան: Յովհաննէս և-մատոունն փախեաւ 'ի Սելեւկիա 'ի Ալրա-վանք, և հասեալ սպանին վանօքն հանդերձ: Իսկ Կիրիոս գլուխ վանացն Անտաքոյ ամեն-եղբարբքն սպանաւ. և վանականքն Թուլհա-ռայ 'ի տեղւոջն չարչարանօք կատարեցան: Իսկ վանքն սուրբ Աբամանոսի և սրբոյն Սիմէո-նի վանքն և Շիղայ առաքելոյ վանքն յեր-կիրն Պեանոյ, և Իշխանան՝ գլուխ ամենայն վաներոյն, յետ բազում վիճմանն ընդ Պաղ-կեդոնիկսն, ինքն և ամենն 'ի միասին մե-ռան: Իսկ Յովհաննէս Պաքրայի վանապետն սպրացին, և վաներ բազում շուրջ զԱւռհայ քաղաքաւ, ամենեքեան 'ի տեղիս իւրեանց կատարեցան: Իսկ վանքն սուրբ Յովհաննիսի, որ է յարեւելից կողմանէ Խառանու, և վանքն Ակականոսի և վանքն սրբոյն Սարգսի, և մեծ վանք լերինն որ ասեն Թուսմա առա-քելոյն հիմնարկեալ, 'ի տեղւոջ իւրեանց սպանան: Իսկ մեծ վանքն սուրբ Սահակայ,

և մեծ վանքն Մնփոսայ և Միղալայ և Բեթ-գուդէլ, և հինգ վանք առաքելադիր յԱմ-թայ երկիրն, իւրեանց եպիսկոպոսօքն և վանականօքն կոտորեցան 'ի միասին ։ Եւ վանքն սուրբ Նանիանց և վանքն սուրբ Աբրահամու և վանքն սրբոյն Դանիէլի և վանքն սրբոյն Սամուէլի, և որքա միայնէս նահատակեցան ։ Եւ վանքն սուրբ Նորա-մայ. և վանքն Թորայի առընթեր Ուռհային, զորս կոտորեցին. և յՈւռհայէն մինչ 'ի Պաղ-տատ անապատ արարին, ղքաղաք և զգեօղ և զվանք քանդեցին. բայց թէ ոմանք փախչէ-ին և զերծնուին առ ժամն, յետոյ 'ի բռուն անկեալ մեռանէին ։

Եւ վարդապետք որ 'ի գրոց վկայէին և քաջալերէին զհաւատոն, են այսոքիկ ։ Եւ-զիա՝ Իսկաւնայ, և Սամի և Կոզմայ և Յով-հաննէս և Մարուն յարեւելից, և Կափթայ և Սարգիս այր սուրբ և սքանչելագործ, և Նո-տոն և Եղիա միւս, և Սիմէոն և Կայշը և Սարգիս միւս, և Յովհաննէս և Սիմէոն այլ, և Նանիա այր Աստուծոյ սքանչելագործ ։ Սոքա ամենեքեան 'ի միասին գնացին առ թագաւորն յանդիմանել զնա. և եհան զքա-ղումս ընդդէմ նոցա, և յաղթահարեալ եղէն 'ի սրբոյն. և սպանին զամենեսեան սքանչելի արսն, և զվանսն որ կայ շուրջ Ուռհայ՝ զսուրբ Զաքէ և զսուրբ Աբէ և զսուրբ Մովսէ և-

եպիսկոպոսօքն և կրօնաւորօքն իւրեանց կատարեցին ։ Եւ կայր անդ Միանձնակեաց մի, որ զամենայն աւուրս կենաց իւրոց հաց ցանկութեան չէր կերեալ, Յովհաննէս անուն(1), բայց միայն արմատս և բանջարս, զոր տային աշակերտքն, և Թէոդորիտէ որոյ միտքըն վերացեալ յաճախ և 'ի զարմացման լինէր, և երթեալ առ նա զառաջիկայն հարցանէին և լսէին ։ Եւ Թուման տարացին Միանձնակեաց մեծ վարդապետն, յորմէ և երկնաւորք պատկառէին, զնոսա յետ բազում հարցափորձի սրով կատարեցին ։

Իսկ անօրէն չեպիսկոպոսն Ուռհայոյ՝ Պօղէ, դարձեալ նա յաղանդն Քաղկեդոնի, արեամբ շաղախեաց զամենայն Միջագետս, և գնային 'ի նմանէ փախստական 'ի Պարսիկս և 'ի նոցանէ մեռանէին. և ոմանք մերկ և բոկ 'ի լերինս շրջէին զամառն և զձմեռն. և ոչ կարեմք զչարիս նորա ընդ գրով արկանել։ Սա բազում աղաչանօք կոչեաց առ ինքն ըզսուրբն Յակոբ Սրճոյ եպիսկոպոսն. և նա աղօթեաց զի ճանապարհ նորա կամօք Տեառն լիցի, և յարեաւ գնալ. և հասեալ 'ի վանքն որ Պարսից կոչեն, և անդ երեւեցաւ նմա հրեշտակ և ասէ. «Դարձիր և պատուիրեա աշակերտացն քոց վասն ուղղափառութեան, զի յետ երկու աւուր կատարիս ։» Եւ դար-

(1) Միւս Թարգմանութիւնն ունի Սիմէոն անուն ։

ձաւ։ Եւ արար պատրաստութիւն ելից իւրոց, և զգուշացոյց զհօտն իւր և զաշակերտսն, և վախճանեցաւ ըստ բանին հրեշտակին յետ երկուց աւուրց։

Յայսմ ժամանակի խնդրեաց Կուտ (Կաւատ) Թագաւորն Պարսից ՚ի Յուստինիանոսէ հինգ հազար հինգ հարիւր կենդինար ոսկւոյ. տալ զօրավարին որ պահէր զդուռն Ճոնաց; և ոչ կամեցաւ տալ։ Իսկ եւ Թագաւորն Պարսից ՚ի Միջագետս և ՚ի կողմանս Նտրիաքայ և գերեաց, և գտաւ ՚ի գերեալսն չորս հարիւր կուսանս, և զոհեաց զնոսա Ուզի կռոց իւրոց (1)։

Իսկ յայսմ ժամանակի կորեաւ և անյայտ եղև ջուրն Սելովամայ ամս հնգետասան։ Իսկ ՚ի սոյն ժամանակս անկաւ հուր յերկնից և այրեաց զՊաղբաք քաղաք, զոր շինեալ էր Սողոմոն ՚ի Լեռանն Լիբանանու, և զարքունիքն որ անդ էին. բայց զերեք վէմս զոր եդեալ էր Սողոմոն ՚ի խորհուրդ Երրորդութեանն՝ ոչ վնասեաց (2)։ Իսկ յայսմ ժամանակի երեւեցաւ կին մի որ երկայն էր քան զամենայն մարդ գիրկ մի. լեզուով ոչ խօսէր, և կերակուր մարդոյ ուտէր, և յամենայն խանութէ առնոյր փող մի. և կեցեալ բազում ժա-

(1) Միւս Թարգմանութիւն՝ Կրակոյ կռոց իւրոց։

(2) Երեւելի էր ՚ի քաղաքին տաճար կռոցն Երեքքարեան կոչեցեալ զոր Թէոդոս մեծն կործանեաց։ Մոլչեա խոր. Գ. 33.

մանակս՝ անյայտ եղեւ, և աւէրին բաղումք.
թէ՝ յաւերժահարսանցն էր։

Ի թուին Ասորւոց ՊԼԶ (836) էր յՈւռհա Ասկղէպ եպիսկոպոս, և սա նեղէր զհաւատացեալսն հաւանիլ անօրէն ժողովոյն։ Սա ժողովեաց քսան այր՝ միայնակեացս ջանաչելիս, և չարչարեաց զնոսա անողորմն, և արկ զնոսա 'ի բանտ. և 'ի յերրորդ ժամ գիշերոյն եղեւ հեղեղ սաստիկ եկեալ 'ի լերանցն, և ընդդէմ պարսպին բախեալ՝ դարձաւ յետըս. և դարձեալ եկն և եզարկ և փլոյց զպարիսպն, և անցաւ 'ի վերայ քաղաքին և ելից զքաղաքն, և սպան զմարդ և զանասուն, և առեալ տարաւ ելից յԵփրատ գետ։ Եւ 'ի Կլյան (յամրոյն) քաղաքին զերծաւ Ասկղէպ, և թուով այքն որ զերծան՝ կամեցան քարկոծել զԱսկղէպ և փախեաւ յԱնտաք. Եւ Եփրեմ աղանդակիցն իւր, պատրիարքն Անտիոքու (1) ասէր. "Տեսէք, եղբարք, զերկրորդ Նոյ զերծեալ 'ի հեղեղացն որ վասն մեղաց ոչ ընդունողաց զժողովն Քաղկեդոնի եղեւ։" Եւ Յուստինիանոս առաքեաց ոսկի բազում շինել զՈւռհա. և 'ի պեղելն գտաւ գիր մի 'ի վէմ մի, թէ "Երեք անգամ ջրհե-

(1) Եփրեմ Ամթեցի՝ էր իշխան Անտիոքայ, իսկ պատրիարքն կոչէր Եւփրասիոս, որոյ ընդ կործանելն ընդ աւերածովք քաղաքին 'ի պահու սասանութեան, կացուցաւ նմա Եփրեմ իւր տեղակալ. յամի 526։

վէգ կրէ Ուռհա քաղաք.» և էր քաղդէա-
ցի գրով. և զպատեալ մարդիկն խեղդած՝ ըս-
կրտան Թաղել, և էր Թիւն երեսուն և վեց
հազար, և ՚ի Թուելն զմնացորդսն՝ հաշուեցան
որ տարեալ էր հեղեղն երկու հարիւր հազար։

Իսկ Ասկղիպ և Ափրեմ պղծեցին զԱնտաք
՚ի չար աղանդն, և շարժեցաւ Նոր բարկու-
Թիւն Աստուծոյ ՚ի վերայ Անտաքոյ, և շար-
ժեցաւ ամենայն քաղաքն հինգերորդ շար-
ժումն, և ամենայն շինուած տան և արքու-
նեաց և եկեղեցւոյ ՚ի վայր շրջեցաւ. և բոր-
բոքէր երկիրն հրով, ջուր և հուր ՚ի վեր
վայր յանդնդոյ. և բերէր խեցեմորԹս և գոր-
տոս և խեչեփառս և ոսկերս, և հոտ մահա-
բեր բուրէր, և մեռանէին մարդ և անասուն
՚ի պէսպէս չարեաց. և աւուրս ինչ հուրն
իբրեւ զանձրեւ տեղայր յօդոյդ։ Եւ զամ մի
և կէս ոչ կարեցաւ շարժն և ոչ հրեղէն անձ-
րեւքն. և մեծ եկեղեցին զոր շինեալ էր Կոս-
տանդիանոս, դողաց զեւԹն օր իբրեւ զհասկ
՚ի հողմոյ, և ապա պատառեալ գետնոյն ել
հուր և այրեաց զեկեղեցին, և այրեալքն ՚ի
պատուհասէն էին հազար երկերիւր և յի-
սուն այր։ Եւ երեւեցաւ յանկարծ լուսե-
ղէն Խաչ յերկինս յետ երեք աւուր կործա-
նմանն, և աղաղակեցին. «Տէր ողորմեա,
Տէր ողորմեա.» և ծածկեցաւ (1). և ՚ի շրջելն

(1) Սամուէլ անեցի յամի փրկչին 527, ասէ «Արեգական

ընդ. քաղաքն կենդանեացն միացելոց, անտա-նէին զպատառուածն 'ի տեղիս տեղիս, և լ-սէին ձայն հեծութեան յընկղմելոցն յելա-նել ոգւոց նոցա. բայց զՍակըլիպ և զՍոփրեմ ոչ գտանէին զի խնդրեցեն խորատ և աղա-Թըս, և ոմանք ընտանիք նոցա ասէին թէ Աստուած յերկինքն էառ զնոսա 'ի բարկու-Թենէս. և այլս գտին զնոսա 'ի պղնձէ մի կայրեփեցաց, և կային մարմինքն 'ի պղին-ձըն՝ մերկացեալ ոսկերքն 'ի մայն և գլուխ-քըն 'ի դուրս, զի ճանաչիցեն թէ ով ոք ի-ցեն։ Իսկ Սելեւկիա Ասորւոց որ կայ 'ի վե-րայ ծովուն և Դափնի քաղաք և քան միլ շուրջ զԱնտիոքաւ տապալանեցան. նոյնպէս և Անաւարզա Կիլիկիոյ գլուխ, և Կորնթոս՝ գլուխ Աքայայ ընկղմեցան շարժմամբ։

Քամիրացւոց երկիրն կայ յարեւելից Ե-գիպտոսի, և Հնդկաց 'ի հիւսիսոյ կողմն (1)։ Հրեայ ոմն (2) Թագաւորեաց 'ի վերայ նոցա

ամենեւիմք նուաղեցաւ. յետ որոյ ամէն խաղաղոյն։»

(1) Քամիրացւոց երկիրն է կոչեցեալն 'ի գրոց Սաւաւ յեր-ջանիկն Արաբիա, այն է Եէմէն. ըստ Յունաց երկիր Հոմե-րացւոց անուանեալ։ Իսկ Հնդիկք ըստ հնոցն իմացուածոյ, են հարաւային կողմանք Արաբիոյ՝ յեզերս Կարմիր ծովուն, անդ ուր միանայ վերջինս այս ընդ Հնդկաց ովկիանու, և կո-չէին Հնդիկք կամ երկիր Հնդկաց վասն գոլոյ 'ի վերայ ճա-նապարհին Հնդկաստանի։

(2) Ըստ Յովհաննու պատմագրի ասորւոց՝ կոչէր անուն Հրեայ Թագաւորին Տիմիոն կամ ըստ այլոց Տիմիանոս։ Իսկ

ի ժամանակս Յուստինեայ, և լուաւ եթէ Հռոմայեցիքն նեղեն զՀրեայսն 'ի գաւառն իւրեանց, և կոտորեաց զվաճառականսն Հռոմայեցիս որք երթային 'ի Հնդիկս, և փակեցաւ ճանապարհն յերթևեկայն։ Եւ առաքեաց առ Հրեայ թագաւորն՝ Հնդաց թագաւորն Քուշանաց այսինքն Հաբաշից, և մեղադրեաց վասն կորելոյն զճանապարհորդացն, և Հրեայն արար նմա ընդդէմ պատասխանի։ Եւ ժողովեաց զօրս Հնդացն և ուխտեաց Աստուծոյ՝ որ թէ յաղթէ Հրէին՝ լինի քրիստոնեայ. և գնաց 'ի վերայ Հրէին և յաղթեաց նմա երիցս անգամ և հալածեաց յերկրէն զՀրեայսն, և առաքեաց երկուս իշխանս առ Յուստինիանոս և ծանոյց նմա զիրսն, և եպիսկոպոս խնդրեաց զի արասցեն զնոսա քրիստոնեայս։ Եւ նորա խնդացեալ առաքեաց իւր աղանդոյն եպիսկոպոս Յովհաննէս անուն (1), որ երթեալ մկրտեաց ըզնոսա և եղեւ երկիրն քրիստոնեայ։ Եւ առաւել զօրացեալ և խրախուսեալ 'ի Քրիս-

թագաւորն Հաբէշից ըստ նորին Յովհաննու՝ կոչէր Այդուկ, այլ իսկական անուն նորա էր Էլա—Ամեդայ. և քաղաք նոցա աթոռանիստ՝ էր Աքսում։ Տես 'ի գիրս Տիմոթէոս վարդապետի Սափրիչեան. Երկամեայ ուղեւորութիւն 'ի Հաբէշստան. Գիրք Ա. յեր. 125. Տպեալ յԵրուսաղէմ. 1871։

(1) Այն է Յովհաննէս Պարամոնարիոս, զոր Պատրիարքն Աղեքսանդրիոյ ձեռնադրեաց եպիսկոպոս 'ի վերայ Աքսում քաղաքի. որոյ եկեալ մկրտեաց զթագաւորն և զաւագանին յամի իբր 524։

տոս, արար հնազանդ զերկիրն Բամիրայ, և եդ նոցա Թագաւոր Աբրահամ անուն, և կային յոլով քրիստոնեայք 'ի Բարմիրա։ Եւ առաքեաց Աբրահամ Թագաւոր յԱղեքսանդրիա առ Տիմոթէոս պատրիարք և խնդրեաց հովիւս այնր հօտի. և նա առաքեաց ուղղափառ հաւատով եպիսկոպոս և քահանայս որք երթեալ հակառակեցան և Աստուածաշունչ վարդապետութեամբ յաղթեցին ուղղափառքն Յովհաննիսի, և ձգեցին զնա և դարձուցին յուղղափառութիւն զերկիրն Բուշանացւոց և Բամիրացւոց։

Եւ գիտել պարտ է զի երեք Թագաւորութիւն է Հնդկաց, և չորք Թագաւորութիւն Բուշանացւոց (1), որք կան 'ի հարաւոյ և ունին զաւելի մասն երկրին հարաւոյ և արեւելից։ Բանկի քան և չորս ղէրաք է աշխարհս և զչորեքտասանն Բուշացիքն ունին որ են Հապաշիք։ Եւ այմուկն Բաղկեդոնի անկաւ 'ի մէջ ներքին և արտաքին Հնդկաց Թագաւորին՝ Աքսանտոն անուն, և ներքսագունին՝ Ինծուք (Ինտուկ կամ Հնդուք). և 'ի սոցա աղմկելն դարձեալ զօրացան Հրեայք և եդին իւրեանց Թագաւոր յերկիրն Բամիրայ.

(1) Յաղագս բաժանման երկրին Հաբէշից 'ի զանազան Թագաւորութիւնս, տես 'ի գիրս Տիմոթէոս վարդապետի Սափրիճեան, Երջանկայ պանդխտութիւն 'ի Հաբէշստան. Գիրք Ա. յեր. 38.

և տարար հալածումն և յանձախ մահ քրիստո-նէից քաջալերելով զնա Յուստինեայ, զի ա-ռաքեաց առ Հրեայ Թագաւորն և ասաց. «Մարձ զաղանդդ զայդ, զի դոքա ոչ ընդ մեզ են և ոչ ընդ ձեզ. և որպէս տեսանեմք՝ մեր և ձեր ասելս վասն Քրիստոսի՝ ի մէկ իրք հայի. զի դուք ասէք՝ որ հայրքն ձեր Երուսաղէմ մարդ խաչեցին, և մեք ասեմք զնոյնն՝ թէ զմարդն խաչեցին Հրեայքն. իսկ այդ աղանդդ ասեն Աստուած խաչեցաւ»: Իսկ նա լուեալ զպատուէրն Յուստինեայ՝ չոգաւ ի վերայ Նիգրան քաղաքի, և կոտորեաց զքրիստոնէ-եայսն որ անդ կային, որպէս և գրեալ պատ-մութիւնն ծանուցանէ. և զմնացեալն ի թըղ-թէն Յուստինեայ և ի դեսպանացն ուս-ցիս: Իսկ այն դեսպանքն որ գնացեալ էին առ Մնդուր (Մունդիր) Թագաւորն Տաճկաց (Արաբացւոց) սիրոյ աղագաւ, գրեցին առ Յուստինէ նախ քան զդառնալն՝ զայս օ-րինակ:

«Գիտասցէ ձեր ինքնակալութիւնդ, որ եկաք Աստուծոյ յաջողելովն ի Հերեթիս քա-ղաք Թագաւորանիստ Տաճկաց, և չգտաք անդ զԹագաւորն. ապա ելաք գնացաք ա-ռաջնորդ առեալ մեզ՝ ընդ անապատ աւու-րըս տասն ընդ աւազուտ լեառն. և հան-դիպեցաք Մնդուր Թագաւորին. և ի տե-սանելն զմեզ՝ սկսան ծաղր առնել զմեզ և

կատակել ասելով. «Ո՞ւր է Քրիստոսն ձեր՝ որ արարէք Տէր և Աստուած երկնի և երկրի. և այժմ որպէս լուաք՝ առէք յիւրմէ (1) և զԹագաւորութիւնն Հռոմայեցւոց, և զաւանեցէք զնա մարդ մեռեալ և կենդանացեալ։» Եւ ՚ի շատ կատակաբանելն նոցա՝ եկին դեսպանքն ՚ի Հրէից Թագաւորէն, և բերին աւետիք թէ՝ զօրացաք մեք Աստուծով և հալածեցաք զՊալեստացին և զհաստատեալսն ՚ի նա կորուսաք. գնացաք և ՚ի Նիգրան և Նենգիւ երդուաք և առաք զքաղաքն, և ստեցաք զերդումն՝ գիտելով թէ չմեղադրէ զմեզ Աստուած ջնջելով զԹշնամիս նորա։ Բայց չկարեմք ասել զէրն զոր ունէին առ Քրիստոսն իւրեանց, զի. մանուկ մի չկարացի պատրել և դարձուցեալ յետս ՚ի Քրիստոսէն, և ոչ կին մի և ոչ ծառայ ոք։ Զի էր անդ կին Թագաւորի չորս դստերօք, և խնայեցի ՚ի նա և զամենայն հնարս փորձեցի, և ոչ հաւանեցաւ ինձ ՚ի բաց կալ ՚ի Քրիստոսէ, և ապա ասացի նմա թէ՝ «Ո՞ր արասցէ Տէր թէ ես ապականեմ զգեղ երեսացդ քոց. միայն ասա զոր ասէ Թագաւորն քո Յուստինիանոս թէ՝ մարդ էր Քրիստոս և մարդ խաչեցաւ։» Եւ զայրացեալ եթուք յիս և չարամահ սպանի զինքն ընդ-

(1) Միւս թարգմանութիւնն յաւելու, ոչ միայն զաստուածաընկալն. այլ եւ։

դատերման իւր։ Եւ արդ մի արասցես սէր ընդ Հռոմայեցիս, այլ գնասցուք և բարձցուք զԹագաւորութիւնն Հռոմայեցւոց։ Եւ զայդ յառաջագոյն գրեցաք առ ձեզ 'ի ձեռն Աբրահամու երիցու որ է ընդ մեզ, և զինչ կամին տալ մեզ պատասխանի ոչ գիտեմք։» Եւ յետ այնորիկ միաբանեալ ընդ միմեանս Տաճիկքն և Պարսիկքն, եկին մինչ յԱնտաք և յԵփեմիա և գերեցին։

Յայսմ ժամանակի եղեւ շփոթ 'ի Կոստանդինուպօլիս և սպանին զդատաւորն, և 'ի նմին ժամու այրեցաւ մեծ կաթուղիկէ եկեղեցին. և այս ամենայն պտուղք էին չարեացն Յուստիանեայ,. զոր մեք զաակաւն գրեցաք զոր ինչ անցոյց նա ընդ աշխարհ և ընդ եկեղեցի, որ էր այր ծեր 'ի Թագաւորելն իւրում, և արար զքուերորդին իւր Յուստիանոս (Յուստինիանոս) կեսար, իւրով անուամբն կոչելով. և ետ նմա իշխանութիւն 'ի Թագաւորութեանն, և առաքեաց զնա ընդդէմ Պարսից. և յորժամ եկն 'ի Մնբէճ և լուաւ վասն կուսի մի որ էր դստր երիցու, և խնդրեաց 'ի կնութիւն, և նա ոչ կամէր տալ ասելով թէ՝ «Հանեա զնա յիւր դաւանութենէն։» Եւ երդուաւ նմա թէ՝ «Թող պահէ իւր կրօնիւքն իւր եպիսկոպոս և քահանայս, և թէ լինի հնար՝ քարոզեսցից զդաւանութիւնդ ձեր ընդ ա-

մենայն երկիր։ Եւ ետ նմա զաղջիկն որում անուն էր Թէոդորիա. և եղեւ 'ի ձեռըն նորա բազում դիւրութիւն ուղղափառաց, և տարաւ ընդ իւր եպիսկոպոսունս և քահանայս 'ի Կոստանդինուպօլիս ։ և յետ երեք ամաց մեռաւ անօրէն ծերն Յուստիանոս՝ Թագաւորեալ ամս ինն ։ Եւ էառ ըզԹագաւորութիւն տղայն Յուստիանոս(Յուստինիանոս) և Թագաւորեաց ամս երեսուն և. ութ և ամիս եւթն ։

Յայսմ ժամանակի Թագաւորն Պարսից Կուատն (Կաւատն) ետ զորդին իւր 'ի դպրոց 'ի Մանիքեցւոց յերկիրն իւրեանց, որ և ուսաւ զկրօնս նոցա և ուխտեաց վարդապետայն իւր որ թէ Թագաւորէ՝ պաշտէ զազանդն նոցա, և նոքա ասացին՝ աղօթեմք որ Թագաւորես ։ Եւ մայր տղայոյն աղաչէր ըզԿուատն Թագաւորեցուցանել զորդին 'ի կենդանութեան իւրում ; և իմացաւ Թագաւորն զպատճառն և երկեաւ, թէ գուցէ լսեն այլ Թագաւորքն մոգուց, և ասեն թէ՝ 'ի ժամանակս նորա բարձաւ մոգութիւնն ։ Եւ արար մեծ ժողով և կոչեաց զՄանիքեցիսն զամենեսեան իւրեանց եպիսկոպոսօքն և կառարեաց զամենեսեան, և զորս եգիտ արտաքոյ՝ այրել հրամայեաց, և ետ զեկեղեցիս նոցա քրիստոնէից ։ Եւ կային 'ի Մանիքեցւոցն 'ի Կոստանդինուպօլիս բազումք, և ջա-

նայլին դարձուցանել զնոսա յաղանդոյն և ոչ կարացին, և այրեցին զնոսա առ հասարակ։

Յայսմ ժամանակի առաքեցաւ Վալիխրիս (Բելիսարիոս) 'ի Պարսս մեծի զօրու՝ յաւագ շաբաթն մեծի Զատկին, և խնդրեաց թագաւորն Պարսից թէ՝ «Պատուեսջիք զաւուրս Հրէից և Քրիստոնէից, և չպատերազմիցուք 'ի տօնիս վասն ձեր և վասն Հրէից որ ընդ մեզ են»։ Եւ ոչ լուան, այլ արարին մարտ 'ի մեծի շաբաթուն ծրագալուցին։ Եւ եղեւ բարկութիւնն Աստուծոյ 'ի վերայ Հռովմայեցւոցն, և բազումք գետամոյն եղեն և յոլովք սրով մեռան։ Եւ յետ այսորիկ մեռաւ Կուան և թագաւորեաց Խոսրով որդի նորա. և մայր նորա չարչարէր 'ի դիւաց, և չկարէին օգնել մոգքն, և գնաց առ Մովսէս միայնակեաց, մկրտեցաւ և բժշկեցաւ։

Եւ յայնմ ժամանակի Հրեայքն որ 'ի Սամարիա՝ կացուցին իւրեանց գլխաւոր և կոտորեցին զՆիկոպօլիս (1) և բազում վնասս գործեցին. և եկեալ զօրքն Հռովմայեցւոց ջնջեցին զնոսա (2)։ Իսկ Թէոդորիա թագուհին

(1) Ընթերցիր Նէապօլիս, այն է Նապլուս քաղաքն արդի, ուր գտանին ցարդ Սամարացի Հրեայք։

(2) Պատմագիրք Յունաց ասեն, եթէ սրտմտեալ Սամարացւոց 'ի հալածանացն Յունաց և ընդ խիստ օրէնս զոր ետ Յուստինիանոս 'ի վերայ ամենայն ազգացն այլակրօնից. ապստամբեալ կացուցին իւրեանց թագաւոր զոմն Յուլիանոս անուն որդի Սաբարայ, որ ած բազում աւերս երկրին.

աղաչէր զԹագաւորն վասն ուղղափառութեան։ Եւ Թագաւորն առաքեաց Թուղթ յանապատն Եգիպտոսի առ կրօնաւորսն զի եկեսցեն և իւրեանց պարկեշտութեամբն և առ Աստուած համարձակութեամբն ընտրեսցեն քննութեամբ զլաւն և զհաճոյսն Աստուծոյ։ Եւ առաքեաց առ սուրբն Սեւերիոս որ կայր յԱղեքսանդրիա, զի աշխատ լիցի և եկեսցէ ՚ի գործ եկեղեցւոյ։ Եւ եկին յոյժ բազմութիւն անապատաւորաց և սուրբն Սեւերիոս ՚ի Կոստանդնուպօլիս։ Եկին և ՚ի գաւառաց գաւառաց եպիսկոպոսունք յերկուց կողմանցըն՝ յուղղափառացն և ՚ի չարափառաց, և արարին տարի մի քննութիւն. և այնչափ շահեցան ուղղափառքն՝ զի դադարեաց հալածումն։ Եւ Անթիմոս պատրիարքն Կոստանդնուպօլսի դաւանեաց զուղղափառութիւն յաղթեալ ՚ի ճշմարտութենէն, և գրեթէ ամենայն բազմութիւն քաղաքին դաւանեցին զճշմարտութիւնն՝ բաց յեկեղեցականացն, որք ամպարտաւանեալք աքացէին ընդդէմ ճշմարիտ աստուածպաշտութեան։

յաւարի առ և զՍկիւթուպօլիս և տիրեաց Նաբլուս քաղաքի։ Թէոդոր Սկենոս, իշխան Պաղեստինոյ և զօրավար բանակին Յունաց, փախեաւ զօրօք ընդ Յուլիանոսի. այս և Իրենէոս կամ. ըստ կարգի իւրում եկ ՚ի վերայ Սամարացւոց մինչդեռ ապստամբեալ կային ՚ի լերինս, և սատակեցոյց զգլխաւորս նոցա որք բանակիցք լինէին ընդ Պարսս, յուսալով օգնութիւն առ ՚ի նոցանէ գտանել։

Եւ մինչ յայսոսիկ էին, եկն եհաս համբաւ ասպատակի Թշնամեաց. և ելեալ քսան հազար արանց գնալ 'ի պատերազմ, և գնային խնդութեամբ յուսով դառնալոյ ամենեցուն յուղղափառութիւն: Եւ Թագաւորն ելեալ յուղարկել զզօրսն և դարձաւ աղօթել յեկեղեցւոյն, և. շարժեցաւ քաղաքն և լցան փողոցք և տանիք և վերնայարկք և գաւիթք եկեղեցւոյ արամբք և կանամբք որք աղաղակէին. «Բարեպաշտ Թագաւոր, միադաւան՝ միահաւատ արա զամենեսեան:» Եւ ելաց Թագաւորն զքաղում ժամս, և պատասխանի ետ ժողովոյն, թէ «լինի ըստ կամաց ձերոց:» Եւ նոքա այլ աղաղակեցին. «Փութա՛ Թագաւոր, և 'ի կեանս քո արա խաղաղութիւն եղբարց բաժանելոց, որ միաւորելով Աստուծոյ Բանին 'ի մի բնութիւն՝ միաբանեսցուք ամենեքեան:» Եւ դարձեալ ելաց արքայ լալիւն մեծ. և ապա ասէ ցնոսա. «Գնացէք և Թոյլ տուք, լինիցի որպէս հայցէք:» Ո՛ ի յորժամ գիտացին ժողովրդականքն, թէ միայնակեացք որք երկնային վարուք են և աստուածախօսք, մի բնութիւն դաւանեն, այն է ճշմարիտն: Եւ կամէր Թագաւորն հաստատել զուղղափառութիւնն, զի գիտաց թէ ուրացողք են Քաղկեդոնականքն. բայց զի մատնէին Քաղկեդոնիկքն ծածկաբար առ Թագաւորն և եր-

կիւղ արկանէին նմա հոգեւոր և մարմնաւոր, ասելով թէ՝ «Ատելի կամիս լինել Աստուծոյ և մարդկան հաւանելով կնոջդ․ զի վեց հարիւր երեսուն և վեց եպիսկոպոսքն բանադրեալ են զոչ հաւանողս նոցա բանից, և յամենն երկիր տարածեալ է դաւանութիւնդ այդ, ոչ կարեն հանդարտել քեզ աշխարհք ամենայն։» Եւ երկեաւ Թագաւորն և կայր ՚ի տարակուսի։ Եւ զայս լուեալ Մեւերիոսի ասաց․ «Ապաքէն Պետրոսի տուաւ իշխանութիւն կապել և արձակել, իսկ որք ոչ ունին զՊետրոսի դաւանութիւնն, ոչ կարեն կապել և արձակել, այլ ինքեանք են դատապարտք և կապածք․ զի Պետրոս երկաբնութիւն ոչ դաւանեաց, այլ ասաց միաւոր՝ «Դու ես Որդի Աստուծոյ, այդ որ մեզ երեւիս․» և երանեցաւ ՚ի Տեառնէն։ Իսկ անապատականքն տեսեալ թէ յամեաց բանն և ոչ լինի կատարեալ խաղաղութիւն, ասեն ցԹագաւորն․ «Ով Թագաւոր, հաւատս մեր չէ մանկագոյն և փոքր՝ որ մեծանայ, և ոչ ծերացեալ՝ որ թէ նորանայ, և ոչ թերի՝ որ լնու, և ոչ առաւելեալ՝ որ պակասի․ այլ զոր Հոգին Սուրբ սերմանեաց մարգարէիւքն և ժողովեաց առաքելօքն, և Տէրն մեր Յիսուս Քրիստոս Աստուած ճշմարիտ կատարեաց և հաստատեաց, մեք յայնմանէ ոչ թիւրիմք, ոչ պարգեւօք և ոչ փաղաքշանօք, ոչ մահ-

ուամբ և ոչ կապանօք , այլ կամք և մնամք առաջի մարդկան՝ որպէս և եմք առաջի Աստուծոյ ։ » Եւ զայս ասացեալ գնացին յանապատն խուրեանց , և Սեւերիանոս զԱնթիմոս առեալ գնաց յԱղէքսանդրիա ։

Եւ լուաւ զայս սուրբ Մօր Զօրաւ (Զոհար) սիւնակեացն որ 'ի սահմանս Ամթայ , և գնաց տասն աշակերտօք 'ի Կոստանդնուպօլիս յանդիմանել զԹագաւորն ։ Եւ յանդիման եղեալ Թագաւորին ասաց . « Մինչեւ յե՞րբ է անիծեալ ժողովոյն Քաղկեդոնի չարիքն , ընդէ՞ր չքառնաս և որբես զեկեղեցի ։ » Եւ զայրացաւ Թագաւորն ընդ անարգանսն և ընդ անէծս ժողովոյն , և եհար ձեռօքն զկուրծք սրբոյն և ասէ . « Զի՞նչ նշան ցուցանէք դուք զի գիտասցուք թէ ձերդ է ճշմարիտ . և զեա՞րդ իշխեցեր առաջի իմ նզովել զսուրբ ժողովն ։ » Եւ նա ասաց . « Նզովեցի և եղեցի նզովեալ և հաւանեալքն նմա . և զի խնդրես նշանս տեսանել , հաւատամ յԱստուած կենդանի որ զքեզ առնէ նշան ։ » Եւ ել բարկութեամբ 'ի Թագաւորէն , և երեւեցաւ այն Թագաւորին մեծ անարգանք , և ետ գրել վաղվաղակի , թէ ոք յայսմ հետէ իշխէ նզովել զժողովն Քաղկեդոնի , նոյն ժամայն սպանցի ։ Եւ տարածեցաւ հրամանն , և հրեշտակ Տեառն յայտնեաց զտեսիլն իւր Թագաւորին , և եհար ձեռամբ զգլուխ Թա-

գաւորին և անկաւ Թագաւորն և անշնչա-
ցաւ և Թափեցաւ 'ի խելացն . և գնացեալ
Թագուհին անկաւ յոտս որդոյն, և աղաչեաց
զայլ և աղօթել և դնել զձեռնն 'ի վերայ՝ զի
կենդանացեալ արասցէ զկամս նորա : Եւ ե-
կեալ որդոյն եդ ձեռն և աղօթեաց և յա-
րեաւ վաղվաղակի և խնդրեաց ժողով զի
հաստատեսցէ զուղղափառութիւնն . և եկն
Սեւերիանոս և Թէոդորէ պատրիարքն Աղէք-
սանդրու և Անթիմոս և այլք բազումք , և
չարափառ պատրիարքն Անտիոքու 'ի ձեռն
Սարգսի բանաւորի ծանոյց Ագաթոնի Հռո-
մայ պապուն և եկն 'ի Կոստանդինուպօլիս ,
և մեծարեաց Թագաւորն և քաղաքն զմուտ
նորա . և երեք պատրիարքունքն ոչ ելին ընդ-
դէմ նորա , Սեւերիանոս և Անթիմոս (1) և
Թէոդորոս : Եւ յետ աւուրց սակաւ մեղա-
դրել Թագաւորին, Թէ "Ո՞վ է այն խաբեբայն
Զօրաւ որ վասն նորա շարժես զկրօնս սուրբ
ժողովոյն Քաղկեդոնի . տուր զնա 'ի ձեռս
իմ ." և հրամայեաց Թագաւորն : Իսկ սուրբն
առանձնացեալ էր 'ի պահս և 'ի ճգնութիւն ,
զի առաջին շաբաթն էր աղուհացից : Եւ
առաքեաց առ նա և ասէ . "Կամ եկ դու
առ մեզ , կամ ես և Թագաւորն գամք առ
քեզ : " Եւ գնացեալ ասացին 'ի դրանէն

(1) Յօրինակին Տիմոթէոս :

'ի ներքս․ եւ պատասխանի և ասէ․ « Ես մինչեւ յաւուր հինգշաբաթ օրն ոչ եմ երթամ առ ոք և ոչ ընդունիմ առ իս զայլս։ » Եւ նա բարկացեալ արար ատեան և նզովեաց զՍեւերիոս և զԱնթիմոս և զԹէոդորոս և զըն-սուրբն Զօրաւ (Զոհար) և դաւանեաց երկու-բնութիւն և զՆեստորի աղանդն, և վաղ-վաղակի ժամանեաց բարկութիւն յԱստու-ծոյ 'ի վերայ նորա, և թանձրացաւ լեզուն և չտանէր զնա բերանն և թափէր արտաքս, և երեք անգամ կարեցին բժիշկք և ոչ դա-դարէր կեղն և բորբոսն մինչև 'ի մեծ հինգ-շաբաթ օրն, և չարամահ սատակեցաւ (1)։ Յայնժամ եբարձ թագաւորն զերդեալ սահ-մանն սպանման նզովողացն Քաղկեդոնի ժողո-վոյն, և գնացին սուրբքն 'ի տեղիս իւրեանց։

Եւ ապա յայտնեցաւ նշխարք որբոյն Սա-բինեայ 'ի գաւառին Անտիոքու, 'ի Ճէնտե-րիս գեղ, անփուտ և մածեալ ընդ տախտակ-ովն, և էր ամենայն մարմինն վէրք․ և եղեւ բազում բժշկութիւն, և բերաւ յԱնտոք։

Եւ յայսմ ժամանակի եկին Պարսիկք և գերեցին զՀալպ և զԱնտոք, մինչեւ տա-րան կամակարութեամբ սիւնս մարմարեայս 'ի Պարս․ և գնացին Հռոմայեցիք և առին

(1) Զանազանի կայ վախճան Ակաթանի պատմի 'ի կոստանդ-նուպօլիս․ հատուածն և արեւմտեան պատմագիրք․ Տես Ջպէտրեայ, Պատմ․ Եկեղ․ ԼԲ․ 52—54։

զվրէժն գերելոյ զաշխարհն Պարսից ։ Եւ յետ այնորիկ եկն խաղաղ Թագաւորն Պարսից 'ի վերայ Ուռհայոյ և չկարաց առնուլ, և գերեաց զՍրուճ և քակեաց զՆուաք՝ գըրնայ ։

Յայսմ ժամանակի Քաղկեդոնի աղանդոյն եպիսկոպոսք 'ի Կոստանդնուպօլիս. Նոայի՝ Սեգոսի, և Աղեքսանդրոս՝ Դիոքղբաւոսի ընդդէմ եկեալք յարուածողութիւն, հատան երանք նոցա 'ի Թագաւորէն, և մերացեալ 'ի ձող՝ ցուցան քաղաքին, և քարոզքըն աղաղակէին թէ՝ «Այս է դատաստան որք զայնպիսին գործեն.» և կատարեցաւ բանն Պաւղոսի թէ՝ «Որովհետև ոչ խնացան զԱստուած ունել 'ի գիտութեան, մատնեաց զնոսա Աստուած գործել զանարժանսն (1)։»

Ի հնգետասան ամին Յուստինեայ եկին Պարսիկք և գերեցին զԱփամիան և զԿալանիկոս, և զՊեկէոս քակեցին և 'ի Պելխայ տարան զնշխարս սրբոյն Գաւդոսի և զխաչն որ 'ի վերայ տապանին սրբոյն Սարգսի (2)։

(1) Թուղթ առ Հռոմայեցիս. Ա. 28։

(2) Աբուլֆարաջ կոչէ զանուանս քաղաքացն Դեմեթան. Կալլինիկոս. Բէլ—Բալաս Խոկ 'ի Վարս Սրբոց գրի. եթէ ոսկերքն Բագոս նահատակեցաւ 'ի Բարբալիսոն քաղաքի. և ոսկերքն Սարգսի 'ի Ռուծափ քաղաքի Ասորւոց մերձ յԱրամիա, որ է Հռամա։

*Ի Թուին Ասորւոց* ՊԽԸ (848) *եղեւ նշան 'ի վեր քան զհաւատալ, որ թէ չէի գտեալ 'ի բազում գիրս սրբոց գրեալ, (և ոչ ես կարէի գրել)։ Խաւարեցաւ արեգակն ութ և տասն ամիս, զի երեք ժամ՝ աւուրն լոյս տայր և զայն որպէս ո՛չ լոյս և ոչ գիշեր. և ոչ հասան պտուղք տարւոյն, և ամենայն բնակիչք աշխարհի եղեն իբրեւ զկիսակենդանս և որպէս այլակերպս ։ Եւ յետ այնորիկ եղեւ մահ տարաժամ, որ բնաւ չէր լեալ յաւիտենից. Նախ սկսաւ 'ի Կոստանդինուպօլիս ընդ երանել սրբոցն 'ի Նմանէ ։ Յառաջին օրն մեռան հինգ հազար, և միւս այլ օրն տասն հազար, և միւս այլ օրն հնգետասան հազար, և յայլում աւուր ութ և տասն հազար. և եդ Թագաւորն Թուղս 'ի դրան քաղաքին և համարեցան մինչեւ յերեք հարիւր հազարն, և ապա թողին զհամարն ։ Նախ սկսաւ յաղքատսն և ապա 'ի մեծատոհմսն և յիշխանսն և 'ի տուն Թագաւորին, և ուռնոյր ցալքն (անութք) և պատառէր, և երթայր շարաւն. և հատեցաւ քաղաքն և նաւքն 'ի ծովն ոչ կարելով Թաղել։ Ոչ 'ի վերայ միոյ յաճախէր չարն, յառաջ երեք սեաւ պտեր (չէպաններ) երեւէր 'ի մէջ ափին և այլ ոչ ժամանէր փոխել զոսն։ Բազումք այս նշանովս մեռանէին. և զոր ընկենուլին 'ի ծովն, դարձեալ արտաքս բերէր*

ծովն. և Նսխեցաւ քաղաքն և Թագաւորն քառասուն դահեկան հրամայէր տալ որ մի մեռեալ հանէր ընդ քաղաքն, և Նոքա 'ի տանէ զմեռեալսն՝ անկանէին և մեռանէին։ Եւ բազումք մտանէին 'ի տունս Թափեալք 'ի մարդոյ և լի գանձիւք և հանդերձիւք, և բառնային շալակով, և 'ի հանելն ընդ դուռն՝ անկեալ մեռանէին (1)։

Եւ տարածեցաւ մահն յերկիրն Եգիպտոսի, և ջնջեցաւ քաղաք մի, ուր եւթն այր և տղայ մի մնացին, և 'ի շրջելն ընդ քաղաքն՝ յանկարծ անկան եւթն արքն և մեռան, և տղայն ետես զհրեշտակ Տեառն 'ի կերպարանս ծերոյ. և տեսեալ զի լայր տղայն, եհան զնա 'ի քաղաքէն և ասաց. "Դնա և մի լար, զի բարկութիւնս վասն հերձուածոց և մեղաց է։"

Եւ 'ի Փղշտացւոց երկիրն գնացեալ պատուհասին 'ի քաղաք մի՝ երեւեցան դեւք և ասացին, թէ "Դտանէք պատկեր մի պղնձի, երկրպագեցէք նմա և ոչ մեռանիք։" Եւ շրջեալ գտան զպատկերն և երկրպագեցին. և յաճախեաց մահն, և ոչ մնաց 'ի նոցանէ և ոչ մի։ Եւ եհաս բարկութիւնն 'ի

(1) Զայս դէպս կատարածի մահտարաժամու հաստատեն Յովհաննէս Ասիացի և Զաքարիա Միտիլենացի, և պատմագիրք Յունաց. և պատահեցաւ յամի 524, առ Թագաւորութեամբ Յուստինիանոսի, և տեւեաց ամս տասն։

Հայս և 'ի Պարսս ։ Բայց Հէմս քաղաք, ուր կայր գլուխ Յովհաննու Մկրտչին, և բնակչացն ապաւինեալ 'ի նա և 'ի բարեխօսութիւն նորա, ապրեցան ։

Յինն և տասն ամին Յուստիանեայ բարբարոսք առին զՀռոմ և աւերեցին, այնչափ զի մնացեալքն եղին յառընթերակայ աւերակն, որ չէին կարող բնակել 'ի քաղաքն ։ Եւ յայսմ ժամանակի փոխեցաւ 'ի Քրիստոս սուրբն Սեւերիանոս Աղեքսանդրիա, և եդաւ պատուով 'ի տապանի. և ուղղափառքըն եդին պատրիարք զՍարգիս Ճգնաւոր Անտիոքայ ։ Յայսմ ժամանակի այրեցաւ վանք սրբոյն Սիմէօնի Անտայք և Թափուր եղեւ 'ի բնակչացն ։ Եւ 'ի սոյն ժամանակս (պատահեցաւ) խանգարումն Զատկի ։ Եւ 'ի քսան և երեք ամին Յուստիանեայ գետն Տարսանի ելաւ և տարաւ զքաղաքն ։ Եւ 'ի սոյն ժամանակս 'ի շարժմանէ կորեան 'ի Լատիկն եւթն հազար այր ։ Եւ 'ի Միւսիա ընկղմեցաւ կէս քաղաքն Պոնտոպօլսի (1) և իջին բնակիչքն կենդանւոյն 'ի խորս, և ձայն հեծմանն գայր զաւուրս, և ոչ կարէին օգնել ։ Եւ 'ի Փիւնիկէ ընկղմեցաւ Տրապօլիս և Պիբսոս (2) և Տրովաս և ամենայն քաղաքն Գալի-

(1) Միւս թարգմանութիւնն Պոնտոպօլսի, զոր ոմանք իմանան զՊենտապօլիս քաղաք ։

(2) Այն է Բիբլոն, կամ Բիբլոս, որ ըստ Ցաճկաց

լեացւոց ․ և ’ի ներքս գնաց ծովն երկու միլ և նաւքն մնացին ’ի ցամաքի ։

Յայսմ ժամանակի առաւ Պաորա (1) ’ի Պարսից և ամրացաւ, և լուեալ Հոռոմայեցւոցն գնացին. պաշարեցին զքաղաքն զեւթն ամ և դարձեալ առին ։ Եւ յայսմ ժամանակի եղեւ սով սաստիկ, մինչ զի ուտէր մարդ հինգ լիտր հաց և ուռնոյր և ոչ յագենայր ։ Եւ եղև մահ անասնոց երկու ամ, և էր ընդ ամենայն երկիր, և պակասեաց եզին վաստակ յերկրէ ։ Եւ եղեւ շարժ ’ի Կոստանդինուպօլիս զքառասուն օր, և բազում տուն գերեզման եղեւ բնակչացն, և տապալեցան յոլով եկեղեցիք, և մասն ինչ ’ի Նիկոմիդիայ կործաւ ։ Եւ ’ի յերեսուն ամին Յուստինիանեայ երկու պարիսպքն Կոստանդինուպօլսի շրջեցան՝ շինեալքն ’ի Կոստանդնէ և ’ի Թէոդոսէ ։ Եւ Րիկոն քաղաք ’ի վայր շրջեցաւ, և զտասն օր շարժեցաւ երկիր որպէս տերեւ ։ Եւ յայսմ ժամանակի երեւեցաւ սուրբն Յակոբ անուանեալն Կուրդնկար (2) ։

Յայսմ ժամանակի առաքեաց Թագաւորն Արաբկաց քրիստոնէից Հերեթն առ

ճեռնէ կոչի ։ Իսկ Տրոյեան Թուի թէ՝ ասիցէ Տիւրոս ։

(1) Միւս թագմանութիւնն Սղարդա ։

(2) Այն է Յակոբ Ասորի Ծանծաղոս կոչեցեալ ’ի Յունաց և Պուրտաւանս յԱսորւոց, և ’ի սորա հաւանեցեալ առ Ասորիս ։

Յուստինիանոս մեղադրանք, թէ ընդէ՞ր առե-
րեցիք զքրիստոնէութիւնս ժողովոյն Քաղ-
կեդոնի և արարիք զԵրրորդութիւնն չորրոր-
դութիւն ։ Եւ Յուստինիանոս առաքեաց արս
իմաստունս պատասխանել նմա. և յորժամ
գնացին՝ տեսաւ զնոսա Թագաւորն և ասէ.
«Եւ դուք յաշակերտացն անիծեալ ժողո-
վո՞յն էք ։» Եւ նոքա ասեն. «Ընդէ՞ր հրա-
մայէ ձեր Թագաւորութիւնդ զայդպիսի
իրս, նզովել զվեց հարիւր և զերեսուն և
վեց սուրբսն. զի թէ վայրապարք և աշխար-
հականք էին, պատկառել արժան էր. թող
թէ եկեղեցւոյ առաջնորդք և սուրբ մար-
դիկ ։» Եւ ասէ Թագաւորն. «Ես բարբարոս
մարդ եմ և չգիտեմ (խօսել) 'ի գրոց.
բայց ասեմ ձեզ բան մի. թէ լինի յոլովու-
թիւն կերակրոց և անկանի 'ի ներքս մու-
կըն մի, պղծի՞ թէ ոչ.» և ասեն՝ «պղծի ։»
Եւ ասէ ցնոսա. «Եւ զիա՞րդ ոչ ապականէին
վեց հարիւր երեսուն և վեց եպիսկոպոսունք
տումարօքն Լեւոնի, որ 'ի Հրէութիւն դար-
ձոյց զՔրիստոնէութիւնս ։» Եւ յետ բա-
զում բանից ասեն արքն. «Հրամայեսցէ ձեր
քաջութիւնդ՝ և առնեմք պատարագ որ հա-
ղորդիք, ցոյց սիրոյ և խաղաղութեան ձեր
և Թագաւորին մերոյ ։» Եւ ասէ ցնոսա Հե-
րեթն. «Մ՝եք 'ի ձէնջ ոչ հաղորդիմք և ոչ
զձեզ հաղորդեմք ։» Եւ հրամայեաց հաց

պատրաստել և ուռճիկ՝ միս ըղձառ. և 'ի բե-րելն առաջի՝ ասէ. «Կերայք.» և նոքա ա-սեն. «Մեք զայդ ոչ ուտեմք, զի պիղծ է։» Եւ Թագաւորն ասէ. «Եւ զխո՞զ ոչ պղծիմք մեք 'ի մարդոյ մսէ, զի այդ է պատարագն ձեր։» Եւ ապա արձակեաց զնոսա ամօԹով։

Յայնժամ մեռաւ Թէոդորիա Թագուհին ուղղափառ խոստովանութեամբ, և Թաղե-ցին զնա ԱնԹիմոս և Թէոդորոս պատրիար-քունք։

Եւ յայտնեցան հերձուածք 'ի ժամանակս Յուստինեայ՝ այսոքիկ. — Առաջինն՝ հատեալ-քըն 'ի Սանկեցւոցն, որք եկին 'ի Պարսից՝ կերպիւ աբեղայից, որք արեամբ սպիտակ հաւոյ և սպանեալ տղայոյ հաղորդին, և 'ի տարւոջն մի անգամ առնեն ոճրագործու-Թիւնս զՍանկեցւոցն. — Եւ երկրորդն՝ Սաբե-փոնինոս Ուռհայոյ, որ ասէր՝ ըստ չափոյ մե-ղացն զտանջանքն մեղուցելոցն, և յետ այ-նորիկ հաւասարին արդարոց։ — Եւ երրորդն՝ Յովհաննէս Եփեմիոյ (Ապամիոյ), որ նիւԹ ասէր զԱստուած իբրեւ զմի 'ի տարերաց։ — Եւ չորրորդ՝ Յուլիանէ ալիկառնացին, որ ասէր՝ Թէ Քրիստոս զանապական մարմինն Ադամայ որ յառաջ քան զմեղսն էառ, և ոչ զապականացուն որ զուղղափառ խոստովա-նութիւնն ունի։ Զի Ադամ կրկին է. զա-ռաջինն չունէր խառնուած, և զկնի մեղացն

խառնեցաւ ապականութիւն։ Զսա յանդիմանեաց սուրբն Սեւերիոս ՚ի յաստուածային գրոց, և նա ոչ զղջացաւ, և մնաց խմորն (1)։ — Հինգերորդ՝ Յովհաննէս տրիթացին որ երեք բնութիւն ասէր զաստուածութիւնն. սա աշակերտ էր Սամուէլի ռասլացւոյն։ Զսա կոչեաց Յուստիանէ Թագաւոր, և լուեալ զհերձուածն՝ հալածեաց զնա. և գնացեալ արար գրեանս, վկայութիւն որսալով յԱստուածաշունչ գրոց իւրում աղանդին։ — Վեցերորդ՝ Փոտինէ անտիոքացին, նոյնպէս երեք բնութիւն և էութիւն և անձնաւորութիւն ասէր, և արար գրեան ՚ի Կոստանդինուպօլիս։ — Եւթներորդ՝ Թէոդորոս կապադովկացին, զնոյն աղանդն հաստատէր թէ՝ Քրիստոսի աստուածութիւնն չէ Հօր աստուածութիւն։ — Ութերորդ՝ Աթանասիոս որդի դստերն Թէոդորիոյ Թագուհւոյ, որ աշակերտեցաւ Ամինի ռուհայեցւոյ և յետոյ Սարգսի երիցու, որ եղեւ պատրիարք Անտիոքայ։ Սա զՅովհաննիսի աղանդն քարոզէր՝ երեք բնութիւն ասելով Երրորդութեանն.

(1) Զաղանդաւորացս այսոցիկ Յուլիանիտաց խօսի և Յովհաննէս Ասիացի ՚ի գիրս իւր Հտ. Բ. Գլ. ԺԱ. յորոց ոմանք, ասէ, եկին և ՚ի Հայս յաւուրս Մովսէս կաթողիկոսի ՚ի պատրաստել զաղանդն իւրեանց, զորս եւ արտաքսել. նոյնպէս և յետ ժամանակի ՚ի կաթողիկոսութեան Յովհաննու Իմաստասիրի ժողովով դատապարտեցաւ այն աղանդաչարափառ։

և Թագաւորն աղաչեաց զԹէոդորոս պատրիարքն առնել զնա երէց, և ոչ հաւանեցաւ. և զկնի մահուանն Թէոդորոսի կամեցաւ առնել զԱթանաս պատրիարք Աղէքսանդրի, և գրեաց Թագաւորն յԱղէքսանդրիա և ոչ առին յանձն: Եւ Կայնոն Տարսոնի եպիսկոպոսն և Ուգէն Սելեւկիոյ, աճեցուցին զաղանդն Աթանասի, և վասն այսր աղանդոյ և այլ ամենայն հերձուածոյ արար ընդդէմ ճառս Թէոդորոս պատրիարքն Աղէքսանդրի: — Իններորդ՝ Ամբիկոս (Անթիմոս) կոստանդինուպոլսեցի, ասաց թէ՝ «Որ ոչ խոստովանի երեք անձանցն յատուկ բնութիւնս, նա Հրեայ է և հակառակ ուղղափառութեան:»

Յայսմ ժամանակի եկն Հերեթ Թագաւորն Տաճկաց առ Յուստիանոս (Յուստինիանոս) և ունէր գիր հաւատոյ զարեւելեան եպիսկոպոսաց Հայոց Մեծաց, և զՅակովբայ Կուրգնկարին և զԱղէքսանդրու պատրիարքին, և ասաց. «Որ ոչ ձեռագրէ 'ի դիրս յայս, նա հերձուածող է և չարափառ.» և ոչ ձեռագրէին բազումք. և բարկացաւ Հերեթն 'ի վերայ Յուստիանոսի և ասաց. «Անզգա՛յ և ափշեալ, ո՞չ իմանաս եթէ այս ամենայն ցասումն երկնաւոր 'ի վերայ երկրի վասն չար ժողովոյն է. վասն էր ոչ բառնաս զնիւթ բարկութեանն Աստուծոյ:» Եւ պատասխա-

նի եւ (Յուստինիանոս) և ասէ . « Աղաչեմ զքեզ մի զայրանար , չկարեմ զայդ առնել և առնել զԹագաւորութիւնս . այլ վասն քո երեսաց չտամ վստահութիւն և համարձակութիւն Քաղկեդոնացւոցն ՚ի վերայ ուղղափառաց , և դադարէ հալածումն ուղիղ խոստովանողացն՝ վասն քո , զի զքեզ պատճառ դնեմ և չմեղադրէ ոք ինձ վասն ուղղափառացն , և աճեն և բազմանան , և Աստուած հոգացէ ՚ի ձեռն կարող ժամանակաց և Թագաւորաց ։ » Եւ ապա Հերէթն Թագաւորուհին կոչեաց եպիսկոպոսս ուղղափառս և զՅակոբ , և ձեռնադրել ետ ՚ի Կոստանդնուպօլիս պատրիարքս ուղղափառացն , նոյնպէս և յԱնտիոք և յԱղէքսանդրիա , և ետ ՚ի վերայ սպառնալիս՝ զի մի ոք նեղեսցէ զնոսա ։ » Եւ գնաց Հերէթն ՚ի Թագաւորութիւն իւր ։ Բայց զի ասէին ուղղափառքն ընդ Քաղկեդոնիտքն , Թէ դուք զՆեստորին , զԹէոդորէտոսին և զԹէոդորին հաստատեցիք զաղանդն , վասն այսր պատճառի ժողովեաց Թագաւորն բազմութիւն եպիսկոպոսաց պատասխանի առնել ուղղափառացն . և պատրիարքունք էին՝ Դոմնոս Անտիոքայ , Ապողինար Աղէքսանդրի , Եւտիքէս Կոստանդինուպօլսի ։ Եւ Բաքիլոս (Վիգիլիոս) կայր ՚ի Կոստանդինուպօլիս , վասն զի աւեր էր Հռոմ ։ Եւ ոչ գայր սա ՚ի ժողովն , ամպարտաւանեալ Թէ՝ եւ

չեմ դուզա ընկեր. և յորժամ կամեցան նզովել զՆեստոր և զԹէոդոր (Թէոդորետոս) և զԹէոդոր Մամուեստացին և զՏարսոնացին, ոչ ետ Թոյլ Ռաքիլոս նզովել զնոսա, ասելով թէ՝ «Ոչ է արժան զկնի հարիւր երեսուն ամի հանգստեան Սրբոցն նզովել զնոսա»: Եւ զի ոչ նզովեցին զնոսա, ոչ ոք ընկալաւ զժողովն զայն (1).

Ի Թուին Ասորւոց ՈԿԷ (667) յայտնեցաւ աղանդն Յուլիանեայ առ աչօք ասողին ըղձ-անօրինականն Քրիստոսի, յԵփեսոս, յաշակերտացն Յուլիանեայ: Եւ եկն առ նոսա եպիսկոպոսն Պրոկոպոս և յանդիմանեցաւ 'ի բազմաց՝ և ոչ զղջացաւ, և 'ի ծերութեան նորա աղաչէին զնա աշակերտքն նորա զի արասցէ եպիսկոպոս իւր փոխանորդ, և ոչ առյանձն ասելով՝ թէ «Ես մի եմ և չէ պա-

(1) Երկրորդ ժողովն Կոստանդնուպոլսի եղև առ Յուստինիանոսիւ, յամի 553, 'ի ներկայութեան Եւտիքիոսի Կոստանդնուպոլսի եպիսկոպոսի, Ապողինարայ՝ Աղէքսանդրիոյ, և Դոմնոսայ՝ Անտիոքայ: Անդ 'ի մայրաքաղաքն գտանէր և Վիգիլիոս հայրապետ Հռովմայ, այլ առ անպարտաւանութեան՝ ոչ հաղորդեցաւ ժողովոյն, անսաստելով հրաւիրանաց Յուստինիանոսի: Ի սմին ժողովի նզովեալ մերժին գիրք Թէոդորոսի Մոպսուեստացւոյ, Թէոդորետոսի Կիւրացւոյ և Իբասայ Եդեսացւոյ, որ կոչին Երեք Գլուխք: Նոյնպէս և նոյն ինքն Թէոդորոս նզովի 'ի նմին ժողովի, թէպէտև կանխաւ իսկ վախճանեալ էր նա. քանզի վճիռ համ ժողովոյն, եթէ արժան է նզովս դնել 'ի վերայ ուրուք հերետիկոսի զկնի վախճանի նորին:

տեղ. երեք արքեպիսկոպոս պիտի՝ որ ձեռնադրեն եպիսկոպոս։ Եւ 'ի մեռանիլն նորա կալան աշակերտքն զմի ոմն՝ որում անուն էր Աւտրուպիոս (Եւտրոպիոս), և եդին զձեռն (Պրոկոպիոսի) 'ի վերայ գլխոյն, և արարին զնա եպիսկոպոս, և նա արար տասն եպիսկոպոս, և առաքեաց ընդ ամենայն երկիր սերմանել զաղանդն։ Եւ մի ոք 'ի նոցանէ, Սարգիս անուն, գնաց յերկիրն Քամիրացւոց[1] և խաբեաց զբազումս, և արար նոցա

(1) Քամիրացիք են Համմարք կոչեցեալ ազգն, որոց երկիրն է յարեւելից հարաւոյ Անապատն—Արաբիոյ։ Այս ազգ, որպէս յիշատակէ Միխայէլ Ասորի և պատմագիրք Յունաց, էին քրիստոնեայք, և գլխաւոր քաղաք նոցա էր Կասսան և Հիրա զոր բնագիրք մեր Հերեթա կոչեն։ Յառաջնում քառորդի վեցերորդ դարու Եթովպացիք տիրեցին Քամիրացւոց. իսկ Հրէայք որ բնակէին անդ, յարուցեալ 'ի վերայ նոցա կոտորեցին և կացուցին թագաւոր զմի ոմն 'ի Հրէից անտի. որոյ զօրացեալ սպան զքրիստոնեայս արաբացիս, և յարձակեալ 'ի վերայ Նէջրան քաղաքի, առ զայն, և զքահանայս և զժողովուրդս որ ապաստանեալ կային յեկեղեցւոջ, խողխողեաց և զեկեղեցին այրեաց, որպէս յիշատակեցաւ վերագոյն յեր. 231։ Մի էր 'ի թագաւորաց քրիստոնէից Հարեա (Հերեթ) հինգերորդ 'ի կարգի համանուն իշխանաց, և նստէր 'ի Կասսան, զոր Ասորիք կոչեն թագաւոր Արաբաց, իսկ Յոյնք Արեթաս զնա անուանեն։ Զսա Յուստինիանոս կայսր դիմակաց արար Մունդիրայ Գ. թագաւորին Հիրայ, և կոչեաց զնա գլուխ ամենայն Արաբաց Ասորւոց՝ Պատրիկ անուամբ, յամի 539։ Սոյն սա եկն 'ի Կոստանդնուպօլիս յաւուրս Յուստինիանոսի, յամի 562, առաջի առնել կայսեր ինչ ինչ խնդիրս քաղաքականս. իսկ թէ արդարեւ բանք եղեն զկրօնից և զդաւանութենէ, ոչ ինչ յիշատա-

եպիսկոպոս Մովսէս անուն, և յետ երից ամաց մեռաւ։ Եւ այլք յայլ տեղիս գնացին և զրպարտէին զսուրբն Սեւերիանոս՝ թէ զՔրիստոսի մարմինն ապականեալ և ողջնեալ ասէր 'ի գերեզմանին. բայց Սեւերիանոս զայս ասէր, թէ ապականացու և մահկանացու մարմին զգեցաւ, և ոչ թէ 'ի գերեզմանին ապականեցաւ, և նզովէր զայնպիսին որ ասեն՝ ապականեալ։ Իսկ Յուլիանիտքն ասեն թէ՝ 'ի յորովայնի Կուսին անմահ և անապական մարմին էառ և անչարչարելի. և այն որ չարչարեցաւ և մեռաւ, կերպարանօք և առաչօք էր և ոչ ճշմարտութեամբ։ Եւ ոմն 'ի նոցանէ գնաց յԱղէքսանդրիա, և խառնեցան 'ի նա այլ աղանդք, Պանտիտացիք և Լադինտացիք, և ձեռնադրեցին իւրեանց պատրիարք, և նա արար բազում եպիսկոպոս և առաքեաց յամեն Լիբիա. և սոքա յետոյ կանգնեցան միմեանց հակառակ։ Եւ երկու-

կեն յոյն մատենագիրք։ Ըստ պատմութեան Միխայելի՝ Քամիրացիք հակառակք էին չորրորդ ժողովոյն։ Առ նոսա գնաց Սարգիս ոմն աղանդաւոր և ուսոյց նոցա զաղանդ իւր, թերեւս նա իսկ Սարգիսն Նեստորական որ ուսուցիչ եղեւ Մահմետի ըստ աւանդութեան։ Եւ թուի ամենայն հաւանութեամբ, եթէ 'ի տարածել մահմետականութեան յԱրաբիա, թողին և Քամիրացիք զքրիստոնէութիւն և դարձան 'ի նոյն դէն։ Յամի յորում կամք (1871), ապստամբեալ նոքա ընդդէմ Օսմանեան տէրութեան, յարձակեալ կան յԱսիա, այլ զօրութիւն Բ. Դրան ընդ փոյթ նուաճեաց զնոսա։

՚ի նոցանէ ՚ի բանտի կային ՚ի Մծբին, և խնդրեաց զնոսա Թագաւորն Պարսից և արձակեցան, և ոմն ՚ի նոցանէ գնաց զՀռոմսիւ և խաբեաց զբազումս, և եկն յԱրզուն և ՚ի Հայս, և ոչ ընկալան Հայք. այլ առաքեցին յերկուց կողմանցն թուղթ առ պատրիարքն Թէոդորոս ուղղափառացն, և նա կատարեալ էր զկեանս: Եւ ապա գրեցին թուղթ մի Քաղկեդոնիտքն և թուղթ մի ուղղափառքն, և միմեանց չէին վկայ գրեալքն և հալածեցին զնոսա: Եւ ՚ի Կապադովկիա յարվլք խաբեցան և աւեն, թէ առ ժամանակ մի զտեղի կալաւ ՚ի մասն ինչ Հայոց, մինչև ՚ի կատարելոցն որբեցաւ չարութիւնն:

Եւ յայնմ ժամանակի կամեցաւ Յուստինիանոս նորոգել զեկեղեցին որ յանուն Առաքելոցն և զտապանատունն թագաւորացն, և ՚ի բերելն գտան երեք տապան արծրծած, և գիր ՚ի վերայ տապանացն. Անդրէաս, Ղուկաս, Տիմոթէոս, և յայտ ուրախութիւն եղեւ քաղաքին ընդ գիւտ որոց առաքելոցն Քրիստոսի: Եւ յայս ժամանակս Սեւաստան որ ՚ի Կեսարիա Պաղեստինոյ, առաքեաց այր մի ՚ի Կոստանդնուպօլիս, ասացեալ թէ՝ Յովհաննու Մկրտչի է, և եղեւ կարծիք թէ իցէ՞ նորա, թէ ոչ. սակայն պատուեցաւ ոսկեղէն յարկօք:

Եւ Յուստինիանոս շինեաց երկոտասան

վանք և յիննսուն և վեց եկեղեցի. և ոչ դադարեաց սա յիւր ժամանակին 'ի շինելոյ եկեղեցիս և հիւրանոցս և աղքատանոցս։

Ի ՊՀԱ (871) Թուլին Նսրուաց. սկիզբն է Թուականիս Հայոց։

Յետ քառասուն ամի հալածմանն և սերմանելոյ աղանդին Բաղկեդոնի, քաղաքն Սմիթ կրեաց սով սաստիկ զութ ամ. և յետ յագենալոյն հացիւ, (պատահեցաւ 'ի մարդկի) ասարէ մի դիւական մոլեգնութիւն և կատաղութիւն և թափուծիւն 'ի խելաց, մինչ ոչ ճանաչել նոցա զինչս և զտունս իւրեանց. այլ ըստ պատահման մտանէին 'ի տունս, և հրապարակաւ և յեկեղեցիս գործէին շնութիւն. և ելեալ 'ի քաղաքէն ընդ վայր հաչէին որպէս շունք, և կանչէին որպէս անբան անասունք և իբրև զաքաղաղս, և մերկանային և փախչէին առանց պատճառի, ասելով. «Գնան Պարսիկք, գան, փախիք։» Եւ շրջակայ գաւառն և Սահա գային և պահէին զնոսա, և խնդրէին յԱստուծոյ ողորմութիւն. և յետ ամուրոյն ըզգաստացան և զգեցան սեաւս, և դասս դասս գնային յԵրուսաղէմ և յայլ ուխտս։ Եւ յետ այսորիկ եղեւ մահտարաժամ, և մեռան երեսուն և վեց հազար մարդ 'ի սակաւ ժամս։

Իսկ Թագաւորն Յուստինիանոս յամին ժա-

ժամանակս իւր ընդունէր զժողովն Քաղկեդո-
նի, բայց զԹուղթն Հիբասայ ուռհայեցւոյ
ոչ ընդունէր, և ոչ հաւատայր որք ասէին
թէ՝ «Քաղկեդոնի ժողովն ընկալաւ զԹուղթն
նորա։» Իսկ յորժամ ասաց Վաքիլոս (Վիգի-
լիոս)պապն Հռոմայ թէ՝ «Ժողովն Քաղկեդոնի
ընկալաւ զԹուղթն Հիբէի (Իբասայ),» կան-
գնեցաւ (Թագաւորն) և երեք անգամ ասաց.
«Ժողովն Քաղկեդոնի նզովեալ է։» Բայց
խաբեցաւ նա 'ի յաղանդն Յուլիանեայ
յեպիսկոպոսէն Եպեմիոյ. և գրեաց առ
Անաստաս (1) պատրիարքն Անտիոքու զա-
ղանդն, և հրամայեաց ժողով առնել և ձե-
ռագրել զնա։ Եւ ժողովեցան հարիւր իննը-
սուն և հինգ եպիսկոպոս յԱնտաք, և ոչ ըն-
կալան. և գրեցին առ Թագաւորն վկայու-
թեամբ գրոց՝ չար հերձուած զասելն առ
աչօք զչարչարանսն Տեառն։ Եւ տարան ըզ-
Թուղթն առ Թագաւորն. ոմանք ասեն՝ զըղ-
ջացաւ տեսանելով զԹուղթն, և յերկոցունց
աղանդոցն դարձոյց զերեսս, 'ի Քաղկեդոնէ
և 'ի Յուլիանեայ, և ուղղափառ կատարեցաւ
մահուամբ, Թագաւորեալ ամս երեսուն և
ութ և ամիսս հինգ։ Եւ 'ի մեռանելն Յուս-
տիանեայ, մի ոմն 'ի սքանչելի արանց տե-
սաւ տեսիլ և պատմեաց, թէ «Տեսանէի
դաշտ մի ընդարձակ, և 'ի մէջ դաշտին հնոց

(1) Միւս թարգմանութիւնն Անտոն.

մի բորբոքեալ հրով, և դողացի և ասեմ. «Ո՞ւմ է այս դատն տանջանարանքս.» և ասէ ումն ցիս. «Այս Յուստինիանեայ էր պատրաստած, բայց խոր եկեղեցասիրութիւնն և աղքատասիրութիւնն չեթող զնա հերձուածով մեռանել, այլ դարձաւ յուղղութիւն և 'ի տեղիս ուղղափառացն գնաց:»

Իսկ յետ նորա թագաւորեաց քորորդի նորա խորով անուամբն Յուստինիանոս (1) և թագաւորեաց ընդ նմա և կինն իւր. և էր ահարկու և ոչ եղեւ ժխոր ուրեք, այլ և խոյս ետուն ամենայն չարագործք. և էր Քաղկեդոնացի և այր քաջ, բայց ցաւէին ոտքն նորա: Յառաջին ամին սորա երեւեցաւ յօդս հուր բորբոքեալ, և յոլովք ասէին թէ նշան արեան է (2). և թագաւորն առաքեաց և եբեր 'ի Զամբրոնէ և 'ի Սանդոնէ պատուետաւորք, որք կանգնէին փայտ՝ և զանձինս վառէին հրով. և ելանէին 'ի փայտն եւ իջանէին օծեալ զանձինս տաղտով և ոչ այրէին: Իսկ դարձեալ երեւեցաւ յարեւելք

(1) Այն է Յուստինոս Բ. որ թագաւորեաց յամի 565: Արեւելեան պատմագիրք Հայք և Ասորիք միով անուամբ յիշեն զերկոսին եւս Յուստինիանոս, որով և շփոթութիւն արկանեն 'ի պատմութեանն:

(2) Ի սմին ամի, այն է 566—567 ամի Քրիստոսի, ասէ Սամուէլ Անեցի ('ի Քրոնիկոնին.) «Այլ աստուածային երեւեցաւ 'ի սուրբ մատրանն, այլ և նշան ահեղ հրաշափառ և արիւնատեսակ յերկինս:»

և 'ի հիւսիս այնպիսի հուր՝ որ բազումք 'ի տեսլենէն մեռան, և բերէր օդն եղէգն այրեցած և Թուղթ այրեցած, և բազումք ժողովեցին 'ի զամբիւղս. և զարհուրեցաւ Թագաւորն, և գնաց յեկեղեցին յաղաչանս, նոյնպէս և քաղաքն ամենայն։ Եւ 'ի յինն ժամ աւուրն ել ամպ մի հրախառն, և կայր 'ի նմա խաչ մի նկարեալ, և տեսեալ զայն բազմութիւնն աղաղակեցին. "Տէր, ողորմեա. Տէր, ողորմեա ըստ մեծի ողորմութեան քում։" Եւ պատրիարքն ասաց ցԹագաւորն. "Տեսանե՞ս զինչ եղեւ յաւուրս քո. որպէս յաւուրս մեծին Կոստանդիանոսի՝ նշան խաչի փայլատակեալ երեւեցաւ. արդ առաքեա և տուր բերել յԱփեմիայէ (Ապամիա) Ասորւոց զխաչափայտն Քրիստոսի որ կայ առ եպիսկոպոսի մի։" Եւ առաքեաց Թագաւորն և բռնութեամբ առին զխաչն և բերին յԱնտաք, և խիզարեալ ընդ մէջն, զկէսն Թողին յԱնտաք և զկէսն տարան 'ի Կոստանդինուպօլիս. և ելին քաղաքացիքն և Թագաւորն և պատուով տարան 'ի քաղաքն և եդին յաւագ եկեղեցին։

Եւ յերկրորդ ամին Յուստինեայ առաքեաց զպատրիկն Յովհաննէս պատարագօք 'ի Պարս սիրոյ աղագաւ առ Խոսրով Թագաւորն Պարսից, գնաց և դարձաւ պատուով։ Եւ յայնմ ժամանակի ոչ գոյր Թա-

գաւառ Հայոց, քանզի մտեալ էին ընդ Պարսից իշխանութեամբ. և Խոսրով. Թագաւորն Պարսից սկսաւ նեղել զՀայս՝ երկրպագել կրակի. և ապստամբեցին Հայք և խնդրեցին օգնութիւն 'ի Յուստինիանոսէ զօրք, և յաղթեցին Պարսից և հալածեցին յաշխարհէն: Եւ առաքեաց Խոսրով առ Յուստինիանոս՝ մի օգնել Հայոց, և տալ հրաման դառնալոյ 'ի Պարսիկս և կամ տալ զհարկն: Եւ Յուստինիանոս արար ընդդէմ պատասխանի և ասէ. “Տուր յիս զՄծբին որ քրիստոնէից լեալ է, և վասն սիրոյ դարձուցին առ ձեզ:” Եւ զայս լուեալ լռեաց Խոսրով(1): Եւ պատրիկն Յովհաննէս հրաման առեալ 'ի Թագաւորէն խօսել վասն միաբանութեան հաւատոյ ընդ Հայս և ընդ Ասորիս. և եկն յՌաղա պատրիկն և ասաց ընդ Յակոբ Կուրդնկարն: Եւ եղեւ ժողով 'ի Կալանիկէ, որ է Ռաղա(2) և ոչ միաբանեցան, նոյնպէս և Հայք քամահեցին զբանիւք նոցա:

Եւ 'ի չորրորդ ամին Յուստինիանեայ եղեւ խանգարումն Զուարկի, և Թիւր Զուարիկ ա-

(1) Զպատերազմունս Յունաց և Հայոց ընդ Պարսս՝ տես 'ի Պատմ. Հայոց. Հա. Բ. յեր. 283—288:

(2) Կալանիկոս որ և Ռաղա կամ Ռակա կոչի. զորմէ բազմիցս լինի յիշատակութիւն 'ի պատմութեանս, էր քաղաք 'ի Միջագետս Ասորւոց 'ի վերայ Եփրատ գետոյ, յարեւելից կուսէ. և անկանի 'ի հարաւակողմն Խառանու: Ներսէս Կալանիկոս անուանէ զայս քաղաք. յեր. Ծ1.

բարին Յոյնք ։ Յաւուրս յայսոսիկ Յովհաննէս եպիսկոպոս Սարմիացի[1] այր ապականիչ և աներկիւղ յԱստուծոյ, եդ 'ի կամս Թագաւորին առնել խռովութիւն եկեղեցւոյ ուղղափառացն, առնուլ 'ի նոցանէ զաթոռ և զեկեղեցի և զհամարձակութիւն, և մատնել կապանաց և բանդից և մահուան, որ եղեւ իսկ զկնի քառասուն ամի հալածանացըն. և շրջէին եպիսկոպոսք զօրականօք, և զհաւանեալսն վերստին մկրտէին և եկեղեցական ձեռնադրէին, և զոչ հաւանեալսն պէսպէս չարչարանօք սպանանէին և յաքսորս և 'ի բանտ տայրին ։ Եւ լցաւ երկիր մեծ բարկութեամբ և խռովութեամբ, զոր ոչ կարեմք 'ի գրի առնել զաղէտս անցիցն այնոցիկ զոր կրեաց սուրբ եկեղեցի ։ Եւ յետ հազարաց և բիւրուց սպանելոց 'ի յանաստուած Յովհաննիսէն որ էր պատրիարք Կոստանդինուպօլսի, տաղտկացաւ Թագաւորն ընդ անհնարին աղէտսն, և ասաց ընդ նա. “Տուր ձեռագրով զդաւանութիւն քո յիս.” և գրեաց Յովհաննէս և ետ ցԹագաւորն ։ Եւ ընթերցեալ Թագաւորին՝ ճանաչեաց թէ Նեստորի աղանդոյն է, և բարկացաւ 'ի վերայ նորա և ընկէց զնա յաթոռոյն և եդ ըզնա յաքսորս, և ասաց ընդ Անաստաս զօրապետն իւր. “Դարձո վաղվաղակի զուղղա-

(1) Միւս թարգմանութիւնն՝ Սարմիացի ։

փառսն որ կենդանի իցեն, և այլ մի տացեմ երեւել առաջի իմ քաղկեդոնականացդ։ Բայց զոր ինչ նախ քան զայս եղեւ, ոչ է արժան անտես առնել։

Մեծ այրն Աստուծոյ Յովհաննէս հռչակաւորն, որ զգիրս Հարանցն գրեաց, և յոլով գիրս գրեաց և եթող ի զարդ եկեղեցւոյ, աքսորած և ի բանտի կայր ի Կոստանդնուպօլիս, և պատկառելով յառաքինութենէ նորա՝ առաքէին առ նա Թագաւորն և Յովհաննէս պատրիարքն ելանել ի բանտէն, և ոչ ելանէր. և աղաչէին բազում աղաչանօք լինել միջնորդ խաղաղութեան եկեղեցւոյ և ընդունել զժողովն չորրորդ. և նա սաստիկ նզովէր զժողովն և զպատրիարքն և զԹագաւորն։ Իսկ բարկացան և արգելին ի նմանէ զերթեւեկսն, և արկին ի տուն գէջ. և անկաւ սուրբն յոտնացաւութիւն և ի գլխացաւութիւն, և եռացին ի նա ոջիլք և բորբոսք և վէրք ի մարմինն, և ուտէին ճանճք և պիծակք զցայգ և զցերեկ, և նա ոչ կարէր ծածկել զինքն և կայր որպէս զմեռեալ ի բազում ժամս։ Իսկ յետ յոլով ժամանակի եկն առ նա երիտասարդ մի գեղեցիկ պատմուճանաւ զարդարեալ, և թուեաց նմա ի զօրականաց Թագաւորին՝ ուղղափառ գոլով. և երթեալ համբուրեաց զնա և զպեաց, և սկսաւ ի հանգչիլ և փարատիլ ի ցաւոցն, և ել ընդ

դուռնն։ Եւ դարձեալ եկն և եբեր նմա գինի և արբ, և օրհնեաց զնա և ասէ. «Օրհնեալ ես դու, որդեակ, որ հանգուցեր զիս։» Եւ այսպէս ութ օր ծառայէր զնա և ողջագուրէր և քաջալերէր ասելով. «Հայր համբերեա, և երանելիք են որ այսպիսի պատահումն կրեն վասն ուղղափառութեան.» և բերէր վկայութիւնս ՚ի գրոց վասն հաւատոյ և վասն առաքինոյն համբերութեան։ Եւ Յովհաննէս զուարճանայր ընդ իմաստութիւն նորա և ասէ. «Որդեակ ուստի՞ է քեզ այդ ամենայն գիտութիւն ՚ի տղայութեանդ՝ զոր ես ծերութեամբ իմով ոչ գիտեմ»։ Եւ ասէ ցնա. «Հայր, ամենայն ինչ հնարաւոր է Հոգւոյն Սրբոյ. այլ դու ուրախ լեր զի ելանես աստի և զբազում լուսաւորես։» Եւ յետ այսորիկ եկն առ նա արհի եպիսկոպոսն պատրիարքին և ասաց. «Սուրբ Հայր, լուր և հնազանդեաց Թագաւորին, և լինի միաւորութիւն անդամոյն Քրիստոսի»։ Եւ սուրբն պատասխանի ետ և ասէ. «Քրիստոս Աստուած նզովէ զձեզ. զի՞արդ չամաչէք, որ թէ ճշմարիտք էիք՝ յետ այսքան վշտացս զոր անցուցիք ընդ եկեղեցի Աստուծոյ, չէր պարտ հաշտել ընդ ձեզ, թող թէ հերետիկոսք և ատելիք Աստուծոյ։» Եւ գնաց ՚ի նմանէ եպիսկոպոսն. և եկին և հանին զնա ՚ի բանտէն. հրամանաւ Թագաւորին և տարան ՚ի

կղզի մի բարբարոսաց կուապաշտից , և անդ-
արգելլին զնա , որ և 'ի վարդապետութենէ
նորա և 'ի նշանագործութենէ դարձան առ
Քրիստոս անձինք քսանևութ հարիւր բիւր
(Հ) 'ի փառս Քրիստոսի Աստուծոյ մերոյ , որ
է օրհնեալ յաւիտեանս յաւիտենից . ա-
մէն :

Այս համբաւ հալածանաց ուղղափա-
ռաց եհաս յերկիրն Պարսից , և ժողովեցան
մոգքն և գնացին առ Թագաւորն իւրեանց
Խոսրով , և ասեն . " Ընդէ՞ր ոչ առնես դու՝
որպէս առնեն Հռոմայեցիքն , որք ոչ դա-
նան 'ի կրօնս իւրեանց՝ չարաչար սպանա-
նեն , և ընդ քո Թագաւորութիւնդ խառնա-
կեցեալ կան՝ որք ոչ պաշտեն զհուր իբրև-
զքեզ : " Եւ լուեալ Թագաւորին Պարսից՝
և արար հալածումն մեծ ընդ ամենայն աշ-
խարհ իշխանութեան իւրոյ . և ըմբռնեալ
երեք եպիսկոպոս և եհան զմորթս նոցա .
և զայլսն ազգի ազգի տանջանօք սպան և բա-
զում վանորայս քակեաց , և թիւ ոչ գոյր ըս-
պանելոցն . և առաքեաց 'ի Հայս շինել անդ-
տուն կրակի , և նոքա զայրացեալք սպանին
զնոսա անողորմ՝ խրախուսեալք յԱստուած :
Եւ Կաթողիկոսն մեծ՝ որ նստէր 'ի Դուին ,
գնաց 'ի Կոստանդնուպօլիս ածել զօրք ընդ-
դիմանալ Պարսից : Եւ գնացեալ 'ի Կոս-
տանդնուպօլիս , եկին ընդ առաջ նմա Պատ-

րիարքն և ամենայն քաղաքն ընդունել ըզ-
նա․ և զայս պատիւ լուան ՚ի Հայք զի
Բաղկեդոնիտքն այնպէս փարէին զնովաւ,
և պատրիարքն առ իւր ունէր զնա հանապազ,
երկեան թէ դուցէ խաբիցի․ և առաքեցին
առ նա մի հաւանել կալ ընդ նոսա վասն
կարեաց իւրեանց, զի յոյսն մեր Քրիստոս
է, և զուղիղ հաւատս ոչ տամք վասն երկե-
ղի մեռանելոյ։ Եւ մինչ գնացին և տարան
զԹուղթն, և նա վաղագոյն իմացեալ էր ըզ-
հերձուածոյ նոցա չարութիւն, և մեկնեալ ՚ի
նոցանէ՝ կայր առանձին, որ և յամելով նորա
՚ի Կոստանդինուպօլիս, ննջեաց ուղղափառ
խոստովանութեամբ, և մեծ պատուով առ
փոխեցաւ յուղղափառացն, որոյ եղեւ մեծ
ամրութիւն և հաստատութիւն հաւատոյ
և պարծանք ուղղափառացն, մնալ Հայոց ՚ի
Ճշմարտութեան յերկուց կողմանց՝ ՚ի Պար-
սից և ՚ի Բաղկեդոնացւոց, Աստուծով միայն
զօրացեալ և օգնական ՚ի մարդկանէ ոչ ոք (1)։

Իսկ Սոփիա կին Թագաւորին՝ քորադուս-
տր (դուստր քեռ) էր Թէոդորիայ Թագուհ-

(1) Բանք Միխայէլի ակնարկեն ՚ի Մովսէս կաթողիկոս
Եղիվարդեցի․ այլ սա ոչ չոգաւ ՚ի Կ․ պօլիս․ խնդրել ձեռն
օգնականութեան ընդդէմ Պարսից․ այլ Վարդան զօրավար
փախստեայ անկաւ անդ․ և յունական զօրաց դարձեալ ՚ի
Հայս՝ պատերազմեցաւ ընդ զօրս Խոսրովու։ Իսկ Մովսէս
կաթողիկոս վախճանեցաւ ՚ի Հայս՝ յԱթոռ իւր յամի ԾՂԳ․
և Թագաւորութեամբ Որմզդայ՝ որդւոյ Խոսրովու։

ւոյն, ուղղափառութեամբ մնեալ, որ էր առաքինի և երկիւղած, մինչ զի հոգեւոր տեսիլ տեսանէր և հաղորդէր յուղղափառ երիցուէն Ընդրէասայ։ Եւ եղեւ զի հաւանեցուցին զնա մեծարել զՔաղկեդոնիկսն, և հաղորդել ՚ի նոցանէ․ և երեւեցաւ նմա սուրբ կոյսն Մարիամ և ասէ ցնա․ “Դուստր, ընդէ՞ր թողեր զիս և գնացեր առ հերետիկոսսն․” և նա ասաց․ “Ո՛չ գիտեմ զաւանութիւն, ուսո ինձ։” Եւ ասէ սուրբ կոյսն․ “Պատուական է քեզ ասել՝ Հայր և Որդի և Հոգին Սուրբ, և չհաղորդիլ ՚ի Քաղկեդոնացւոցն։” Եւ զայս տեսեալ և լուեալ, ՚ի բաց եկաց ՚ի նոցանէ և այլ ոչ հաղորդեցաւ։

Եւ յայնժամ զՄարկիանէ՝ թագաւորն (Յուստինիանոս) արար կեսառ, զմօր քեռորդին իւր, ՚ի յութ ամին իւրոյ, և առաքեաց ՚ի վերայ Մծբնայ։ Եւ գնացեալ ՚ի Տարա Մարկիանէ, առաքեաց զզօրսն յերկիրն Պարսից, և ասպատակեալ առին աւար բազում և դարձան ՚ի Տարա․ և զարհուրեցան Պարսիկքն։ Եւ մարզուանն (մարզպանն) որ կայր ՚ի Մծբին, կաշառօք և ծառայական խոնարհութեամբ յամեցոյց զՄարկիանէ ՚ի քաղաքին, մինչ բերին ՚ի քաղաքն (Մծբին) ռոճիկս և ազդեցին թագաւորին իւրեանց, և զքրիստոնեայսն հանին ՚ի քաղաքէն։ Եւ

՚ի Զատկի տօնին պատեցին զքաղաքն, և ե-
դեալ կռիւ յամենայն կողմանց՝ ածին յառա-
նուլ զնա ։ Եւ յայնժամ գայ Ակակիոն հրա-
մանաւ Թագաւորին՝ փոխանակ Մարկիանէի,
հանել զնա . և ասացեալ Մարկիանէի թէ՝
«Ներեա ինձ աւուրս երկու,» և ոչ լուաւ,
այլ ընկէց ՚ի նմանէ զպատիւն և ՚ի բաց ե-
հան զնա ամբարտաւանութեամբ ։ Եւ տրտ-
մեցան զօրքն և Թողին զքաղաքն, և բազումք
կարծեցին թէ՝ մեռեալ է Թագաւորն . և
ցրուեցան և ամրացաւ քաղաքն և զպատ-
ճառ հանելոյն Մարկիանէի ասել արժան է ։

Երկիրն Տաճկաց (Արաբաց) ընդ երկու
բաժին էր . կէսն ունէին Թագաւոր քրիստո-
նեայ և էին քրիստոնեայք, և կէսն էին կը-
ռապաշտ և ընդ Թագաւորութեամբ Պար-
սից . և քրիստոնէից Թագաւոր էր յայսմ
ժամանակի Անդուր՝ զկնի հօր իւրոյ Հե-
րեթ Թագաւորին . և էին բարեկամք և օգ-
նականք Հռոմայեցւոցն միշտ հայրենեօք ։

Արդ գնաց Անդուր յերկիրն Պարսից և
գերեաց, և եկն նստաւ վրանօք յերկիրն
Տաճկաց (Արաբաց), որք գիտացին թէ Պար-
սից Թագաւորն է՝ որում հնազանդն էին, և
եկին առ նա առանց զինուց . և նա կոտո-
րեաց զնոսա, և առ զերկիրս Տաճկաց և աւե-
րեաց և գերեաց և դարձաւ ծանր աւարաւ.
Եւ լուեալ դայս Պարսիցն, եղեն ժողով.

մեծ և խորհեցան գնալ յերկիրն Մնդուրայ։ Եւ իմացեալ Մնդուրն առաքեաց առ Յուստինիանոս և խնդրեաց ոսկի բազում՝ առնուլ զօրս ՚ի վարձու ընդդէմ Պարսից. և տրամեցաւ Յուստինիանոս վասն խնդրոյն, կարծելով թէ հարկս խնդրէ։ Եւ նոյն ժամայն գըրեաց երկուս թուղթս։ Առ Մնդուրն գըրեաց, թէ «Եկ առ Մարկիանէ և առ ոսկի և զօրք, ես պատուիրել եմ նմա։» Եւ առ Մարկիանէ գրեաց թէ՝ «Յորժամ գայ առ քեզ Մնդուրն, գաղտ առ զգլուխ նորա, և առաքեա ինձ աւետիս։» Եւ ՚ի խնամոցն Աստուծոյ փոխեցան թուղթքն. որ առ Մնդուրն էր (գրեալ) առ Մարկիանէ տարան, և որ առ Մարկիանէ՝ առ Մնդուր։ Եւ յորժամ ընթերցաւ Մնդուրն, ասաց. «Այս ո՞ր չարի փոխարէն է՝ զոր կամեցան առնել ինձ.» և օրհնեաց զնախախնամն Աստուած, որ փրկեաց զնա ՚ի չար խորհրդոցն Յուստինիանոսի։ Եւ լուեալ Յուստինիանոսի կարծեաց թէ Մարկիանէ առաքեաց զիմ գրեալ թուղթն առ Մնդուրն, և արար նմա բարեկամութիւն։ Եւ առաքեաց զՆկան դնել զՄարկիանէ յերկաթս։

Իսկ Պարսից զօրքն իմացան թէ ՚ի բաց եկաց Մնդուր ՚ի Հռովմայեցւոց միաբանութենէն, և Հռովմայեցիքն պաշարեալ են զՄծբին քաղաք, թողին զգնալն առ

Մնդուր և դարձան 'ի Միջագետս, և կոտորեցին զզօրսն Հոռոմայեցւոց, և զայլսն փախուցին. և գնացին մինչև յԱնտաք և յԱփեմիա, և գերեցին զամենայն Միջագետըս որ ընդ Հոռոմօք. և ապա գնացին 'ի վերայ Տարայոյ. և բազմութիւն զօրացն Հոռոմայեցւոց որք փախստեամբ զերծան 'ի Պարսից, անկան 'ի Տարա, և երթեալ Պարսիցն նստան շուրջ զքաղաքաւն: Եւ ապա ընտրեաց Խոսրով Թագաւորն Պարսից հինգ հազար կուսանս աղջկունս 'ի գերեացըն, և պատրաստեաց զօրականս և տայր տանել զհինգ հազար կուսանսն յերկիրն Թետալացւոց 'ի Թուրքաստանն (1) պատարագըս նոցա բազում՝ գանձիւք զի եկեսցեն օգնեսցեն նոցա երթալ 'ի վերայ Հոռոմայեցւոցն և Հայոց և Մնդուրաց: Եւ յուղի անկեալ տանէին զաղջկունսն, և նոքա ըննուին զճանապարհն արտասուօք, զի գառինքն Քրիստոսի գնային կերակուր գայլոց. և գնացին իջան առ մեծ գետովն Պարսից: Եւ խորհեցան կուսանքն ընդ միմեանս խորհուրդըս, և ասացին ընդ զօրսն. "Արարէք մեզ ողորմութիւն և 'ի բաց գնացէք յաչաց մերոց, զի լուանամք 'ի գետս վասն աշխատու-

(1) Թետալիա է յերկրին Պարսից սահմանակից Խորասանայ. ոչ կարի 'ի բացեայ 'ի Կասպից ծովէն: Մովսէս Խորենացի. Ա. Տ.

թեան ճանապարհիս.» և հաճոյ թուեցաւ նոցա, և յարուցեալ մեկնեցան և գնացեալ հեռացան։ Եւ նոքա յարուցեալ աղօթեցին և ասացին. «Քրիստոս Աստուած, փրկութիւն քրիստոնէից և պսակ և սուրբ Փեսայ կուսից, եկ առ մեզ և ընկալ զմեզ յառագաստ քո սուրբ, և գազանաց մի մատներ զանձինս որ խոստովանիմք զքեզ։ Աղաչանօք սրբոյ Կուսի անարատ մօր քո Աստուածածնին և աղօթիւք ամենայն սրբոց քոց և արեամբ ծնողացն մերոց սպանելոց յանօրինացն որ բողոքեն առ քո մարդասիրութիւնդ։» Եւ ելեալ ամենեցուն 'ի կամուրջն՝ լցան 'ի գետն առ հասարակ և մեռան 'ի ջուրն։ Եւ իմացեալ զօրացն եկին և մի ոչ գտաւ 'ի նոցանէ կենդանի, և դարձան պատմեցին Թագաւորին իւրեանց. և զարմացաւ յոյժ և խափանեցաւ խորհուրդն (1)։ Եւ զօրքն Պարսից երկու ամ պաշարեցին զքաղաքն Տարս, և ելեալ զօրքն Հոռոմոց 'ի դուրս՝ արարին առաւել քաջութիւնս. և զօրքն Պարսից խաբէութեամբ մեկնեցան 'ի քաղաքէն. և Հոռոմայեցիքն աշխատեալ էին, թողին զպարիսպն և նստան յուտել և ըմպել. և յանկարծ բաղխեցան դարձեալ Պարսիկքն և փութանակի եդեալ

(1) Յայսմաւուրք. Սեպտեմբեր 7։—Միքայէլ Չամչեան, Պատմ. Հայոց, Հտ. Բ. յէր. 245.

տանդուխտ յամենայն կողմանց և առեալ ըզ-
քաղաքն կոտորեցին։

Յետ այսորիկ Թագաւորն Յուստինանէ հաշտեալ ընդ Յովհաննէս պատրիարքին, և ՚ի նմանէ և յայլոց Քաղկեդոնացւոց չարժեալ՝ դարձաւ ՚ի հալածումն ուղղափառաց, և մահ և ազգի ազգի տանջանարանք և նախատինք, որ և զանցոյց զկռապաշտ Թագաւորօքն, և գիր ոչ տանի և լսելիք ոչ բաւեն զառ ՚ի նմանէ գործեալ չարութիւնն ընդ ուղղափառսն՝ գրել և հաստատել։ Վասն որոյ առաքեաց Աստուած ախտս մոլեկանս և դեւս ՚ի Թագաւորն, նմանապէս և ՚ի պատրիարքն. երբեմն հաչէին նման շան, և էր զի իբրեւ զկատու վակէին, և տասն մատամբ ձեռացն կեղեքէին զերեսն և զմօրուսն, և վիժէին ՚ի բարձր տեղւոյ և ոչ կարէին արգելուլ պէսպէս հնարիւք. և յետ բազում խայտառականաց և ծանականաց՝ խեղդմամբ ՚ի գլխացն բարձան երկոքին ՚ի կենացս։ Եւ նախ քան զմահն նորա, յորժամ սակաւ մի դիւրէր նըմա, հարցանէին թէ ով նստցի յաթոռ Թագաւորութեանս. և նա բազում անգամ անուանէր զնոտար մի Թրակացի Տիբերիոս անուն. և զնա եդին Թագաւոր, ազգաւ Յոյն. զի ՚ի Գայիոս Յուլիոսէ մինչեւ ՚ի վերջինս Յուստինիանոս՝ յիսուն Թագաւոր Փռանգ էին ազգաւ, և զօրք և Թագաւորութիւնն

Հռոմայեցիք կոչէին, նախ վասն Հռոմայ և ապա վասն Կոստանդինուպօլսի․ վասն զի՝ Կոստանդիանոս նոր Հռոմ՛ զնա կոչեաց․ և խառն էին ընդ միմեանս լեզուաւ և գրով, և չէին զատած մինչև ՚ի Տիբերիոս, որ և ՚ի նմանէ սկսանի Յունաց թագաւորութիւնն։ Այլ նախ եղեւ ՚ի հին ժամանակին Մակեդո-նացւոց թագաւորք երեսուն և ութ, որք և Յունաց կոչէին, ՚ի Կռոնոսէ Մակեդոնացւոց մինչև ՚ի Արաստ (Պերսէոս), ՚ի թուականին Ասորւոց ՄՁԸ (288)։ Այլ աստ երկրորդ անգամ սկսաւ ՚ի թուին Ասորւոց ՊՁԶ (886), և ՚ի թուին Հայոց ՚ի ԺԵ (15)։

Յայսմ ժամանակի հպարտացաւ թագա-ւորն Պարսից (Խոսրով) յաղթութեամբն որ եղեւ նմա ՚ի Միջագետս․ և եկն յերկիրն Հայոց և ցուցին մեծ քաջութիւնս Հայք՝ սատարելովն Յունաց, երկիցս անգամ դար-ձուցին հարմամբ։ Ապա երրորդ անգամ ժո-ղովեալ թագաւորն գնաց զկողմամբն հիւսի-սի առ լերամբն պատելով, թողեալ զՀայս և եկն ՚ի Կապադովկիա, և ընդդիմացան նո-մա Յոյնք։ Այլ եկն ՚ի Սեբաստիա և էառ զնա և այրեաց հրով․ և դարձեալ զօրացան Յոյնք և եկին առին զբանակն նոցա և զտուն կրակին զոր շրջեցուցանէին զկնի իւրեանց, և քակեցին․ և թէ չէին պատառեալ ՚ի մի-մեանց Յոյնք, սպառեալ էին զՊարսիկս; զի

անկաւ աղմուկ ինչ 'ի Յոյնս , և զօրացան Պարսիկք և գնացին առին զՄելիտինէ Հայոց և այրեցին։ Եւ առաքեցին առ նա զօրքն Յունաց և ասացին . « Զինչ է այդ զոր առնես՝ աւերումն և այրումն . այդ չէ թագաւորի գործք . այլ զտեղի առ և պատերազմեաց , և թէ յաղթես՝ քո լինի երկիրս . և զայդ մեք ոչ արարաք 'ի քո երկիրն՝ զինուորքս առանց թագաւորին ։ » Եւ լուեալ զայս ամաչեաց Պարսիկն , և զտեղի առ յարեւելից կուսէ քաղաքին . գնացին և զօրքն Յունաց և կանգնեցան հանդէպ նոցա յառաւօտէ մինչեւ 'ի յինն ժամ աւուրն և ոչ կռուեցան։ Եւ ապա Պարսիկքն սկսան գնալ անցանել ընդ Եփրատ , և ելին Յոյնք զկնի և շտապեալք 'ի յանցմն՝ բազումք գետակուր եղեն . և Պարսիկքն գնացին յաշխարհն Հայոց և յերկիրն իւրեանց։ Եւ ետ օրէնս Խոսրով չելանել թագաւորի յաւար և 'ի պատերազմ երկրի և հեծելոյ , բայց թէ . ընդդէմ թագաւորի ։

Իսկ զօրքն Յունաց գնացին առ հիւսիսիւ պատերազմել ընդ մասն ինչ Հայոց աշխարհին և առնուլ աւար 'ի նոցանէ . և զի քրիստոնեայք էին , ելանէին վաներն և գեղերն խաչիւ և աւետարանաւ ընդ առաջ Յունականացն . և նոքա լրբութեամբ ընկենուին զխաչսն 'ի գետին , և մերկացուցանէին զեկեղեցականսն և զաշխարհականսն սպանա-

նէին և գերէին, և զհաւատաւոր կուսանսն խայտառակէին. և զգինդս կանանցն ականջօքն կորզէին, և 'ի չկարելն հանել զապարանջանսն՝ զձեռսն կտրէին և կորզէին, և այլ բազում չարիս գործէին. և առեալ աւար՝ դարձան ուրախութեամբ որպէս 'ի մեծ յաղթութենէ: Եւ թողեալ զերկվարսն և թափեալ յինքեանց զկապանս զինուցն, նստան յուտել և յըմպել: Եւ դարձան զօրքն Պարսից. և ժամանեցոյց բարկութիւնն Աստուծոյ զչարիս իւրեանց 'ի գլուխս իւրեանց զոր արարին ընդ քրիստոնեայսն: Եւ եկեալ Պարսկացն կոտորեցին զնոսա, առեալ բովանդակ զձիսն և զզէնսն և զոր ինչ ունէին, և դարձան մեծաւ յաղթութեամբ:

Յայսմ ժամանակի ժողովեցան եպիսկոպոսք և քահանայք և միայնակեացք Միջագետաց և Հայոց որ ընդ իշխանութեամբ Յունաց էին, և գնացին առ Տիբերիոս խնդրել զխաղաղութիւն, զի կալցեն համարձակութեամբ զուղղափառութիւն: Եւ ոմանք 'ի Քաղկեդոնականացն ջանային բարկացուցանել զթագաւորն վասն ուղղափառացն. իսկ թագաւորն արար ատեան և ասէ մեծաձայն. “Լուարուք ինձ ամենեքեան զոր ասեմս. քանզի յոլովք 'ի ձէնջ ոչ գիտեն թէ որպէս մեռաւ թագաւորն Յուստինոս, զի չէիք 'ի մօտ, և զիս առ իւր ունէր զցայգ և

ցերեկ, եւ յոլովք 'ի ձէնջ գիտեն եւ վկայեն. քանզի Թագաւորն զատ 'ի դիւէն չարեացն՝ ունէր ցաւս չարաչարս. եւ յորժամ դեւն Թողոյր, գայր 'ի զգաստութիւն, եւ տեսանէր զի հրեշտակ Աստուծոյ կայր առ գլուխն եւ 'ի յիշատակ բերէր նմա զամենայն գործն իւր զոր արարեալ էր նորա ընդ ուղղափառսն, եւ ասէ Թագաւորն. «Աստուած ողորմած, հատո նոցա որք արարին զիս հալածիչ ուղղափառացն»: Եւ ասէ ցիս. «Տէս, որդեակ իմ Տիբերիոս(1), զհատուցումն զայս, զի կենդանւոյն զրկեաց զիս Աստուած 'ի Թագաւորութենէս, զի ես զրկեցի զԹագաւորութիւն նորա ըստ իմում չափոյ. մի՛ նմանիլ դու չարեաց իմոց, այլ պատկառեա յԱստուծոյ, պատկառեա յուղղափառացդ յինէն հալածելոց. պատուեա զԹագուհիդ որ Թագաւորէր քո եւ այժմ եղեւ քեզ մայր»: Եւ որ ինչ այսպիսի բանք են՝ պատուիրէր ինձ. եւ զցաւն որս վայնի եւ զպատուհասն գիտէք դուք եւ զդիւին չարաչար լլկելն, որոյ պատճառ նմա մահուան այն էր. մի՛ ոք զչարն Յուստինեայ յիս դարձուցէ չար խրատովքն իւրովք, զի ոչ լսեմ զկործանական բանսն»: Եւ ասէ ցժողովեալ ուղղափառսն. «Գնացէք, հարք իմ սուրբք, կացէք անհոգութեամբ եւ խըն-

(1) Յօրինակին Տիմոթէոս:

դութեամբ 'ի սահման հաւատոյ ձեր, և ա-րարէք 'ի վերայ մեր աղօթս:»

Բայց Սոփիա թագուհին ոչ թողոյր ըզ-կինն Տիբերեայ 'ի Կոստանդինուպօլիս, և պատրիարքն ասէ ընդ Տիբեր. «Թող զքո կինն և առ զթագուհին:» Եւ նա տրտմեցաւ և ասաց. «Արդ գիտեմ եթէ երկիւղ Տեա-ռըն ոչ գոյ յաղանդդ ձեր, Քաղկեդոնականք. զկինն իմ՝ օրինաւոր, որ երեք զաւակ ծնեալ է ինձ և յաղքատութեան իմում պանդըխ-տակից էր ինձ, արդ ասես զնա թողուլ, և զԱստուծոյ սիրոյն զայրացուցանե՞լ ինձ:» Եւ գնաց պատրիարքն ամօթով մեծաւ: Եւ լը-ւաւ Սոփիա և ետ ածել զկինն Տիբերեայ 'ի քաղաքն. և սիրէր զնա, և կոչեաց զանուն նորա Հեղինէ: Իսկ Տիբեր նախ 'ի հիւան-դութեան թագաւորին կեսար եղեւ. և էր առատաձեռն և ողորմած, և յորժամ թագա-ւորեաց, եդ իւր սահման յամենայն աւուր եւթանասուն և երկու կենդինար դանձ բաշ-խել աղքատաց:

Յայսմ ժամանակի լուաւ Մնդուր (Մուն-դիր Դ.) զմահն Յուստիանեայ և զթագա-ւորելն Տիբերեայ, և եկն առ նա, և եղեւ ուրախութիւն մեծ. և մեղադրեաց Տիբեր՝ թէ ընդէ՞ր թոյլ ետուր Պարսից յարձակիլ 'ի վերայ մեր: Եւ նա հանեալ զթուղթն Յուստիանէի առ Մարկիանէ վասն սպանման

նորա ; և եւ 'ի Տիբեր : Եւ ընթերցեալ Տիբեր՝ զարմացաւ յոյժ : Յայնժամ ասէ Մ՚ընդուրն . « Ես վասն քո բարեացն զոր արարեր ընդ ուղղափառսն , հաշտեցայ և եկի . և արդ աղաչեմ զի քարոզեսցի յայտնապէս ուղղափառութիւն ընդ ամենայն երկիր : » Եւ ետ հրաման Տիբեր , և գրեցին զքարոզութիւն ուղղափառութեան : Եւ գնաց Մ՚նդուր 'ի յԱնտաք զի հաստատեսցէ զուղղափառութիւն նախ անդ , և խօսեցաւ ընդ պատրիարքին Գրիգորի : Եւ մինչ 'ի յայս էին , եկն թուղթ յորդւոցն , թէ Պարսիկք կամին գալ 'ի վերայ մեր . և գնաց Մ՚նդուր յերկիրն իւր :

Ի չորրորդ ամին Տիբերեայ ելին Ակլաւքն (Ակլաւոնացիք) և առին աւար բազում 'ի Թրակիայ և 'ի Թեսաղոնիկէ , և առին զերամակ թագաւորին և հեծան , և ժողովեցին յերկրէն զէնս և ագանէին , զի մինչեւ ցայն վայր չէին կալեալ ոչ ձի և ոչ զէն և ոչ պատրաստութիւն ձիաւորի . և եկին նստան 'ի Սերմի (Սերմիոն) քաղաք , և առաքեցին առ Տիբեր՝ տալ նոցա զքաղաքն Սերմի : Եւ թագաւորն յամեցոյց զնոսա երկու ամ , ակըն ունելով Լունկվարտացն (1) գալոյ , և յորժամ ոչ եկին , 'ի հարկէ ետ նոցա զքա-

(1) Են բնակիչք Լոնգոբարտիայ գաւառի , որ 'ի հիւսիսոյ Իտալիոյ :

փայքն և զինչսն և ոչ զմարդիկսն, և մտեալ 'ի քաղաքն տեսին լքեալ և ներքեւեալ 'ի սովոյ, զի կերեալ էին զշուն և զկատու 'ի հեսարն ('ի պաշարման), և արարին նոցա բազում մարդասիրութիւն Սկլաւքն, տալով հաց և գինի. և 'ի յուտելն յաճախ՝ մեռանէին, և նոցա իմացեալ սկսան կակղագոյն և սակաւ կերակրովք 'ի հոգի ածել զնոսա: Եւ յորժամ հաստատեցան, հանին զնոսա 'ի քաղաքէն և ինքեանք բնակեցան: Եւ յետ միոյ ամի այրեցաւ քաղաքն, և ելեալ գնացին բարբարոսքն:

Յայսմ ժամանակի արար Տիբեր կեսար զՄօրիկ (1) և առաքեաց 'ի Պարսս. և նա դընացեալ գտաւ զկամուրջ մեծ 'ի գետոյն քակեալ, և կարծեաց թէ Մնդուրն է ազդեալ Պարսից: Եւ եկն առ Տիբեր և չարախօսեաց զՄնդուր, և անկան 'ի հնարս թէ որպէս որսասցեն զնա: Եւ ոմն իշխան Մանգանա (Մագնոս) անուն յանձն էառ ըմբռնել զնա, և գնաց զօրօք որպէս թէ 'ի Պարսս երթայ.

(1) Մօրիկ էր ազգաւ Հայ, յԱրագածոտն գաւառէ, յՕշականն գեղջէ, որ կացեալ 'ի ծառայութեան կայսերական Դրան, եղեւ ընդհանուր զօրապետ. և յաղթեալ Պարսից, փառաւորեցաւ 'ի Տիբերեայ. և զկնի վախճանի կայսեր, ամուսնացաւ ընդ դստեր նորա, և յամի 582 եղեւ կայսր: Ստեփան Ասողիկ, Բ. 6: - Կիրակոս, յեր. 27. տպ. Մոսկուայ. և այլք: Իսկ Միխայէլ, որպէս և բազումք 'ի պատմագրացն Յունաց, Կապադովկացի ասեն զնա լինել, և յոյն ազգաւ:

և աղաչեաց գալ տեսանել զնոսա և սահմանել։ Եւ Մնդուր առանց կասկածանաց եկն առ նոսա. և արարեալ բազում խրախուԹիւնըս, և 'ի գիշերի ըմբռնեալ զնա առաքեցին առ Տիբեր, և եդաւ 'ի բանտի. և լուեալ զայս որդին Մնդուրայ Նաաման (1), եւ զօրք յերկիրն Հռոմայեցւոց առնուլ զանձս և չորքոտանիս բազումս, բայց մարդոյ ոչ վնասէր. և խորհեցան վասն նորա չարիս՝ ոսալ և զնա։ Իսկ նա յորժամ գիտաց Թէ ոչ արձակեն զհայրն, ներեալ 'ի գԹոյ հօրն՝ մահ յանձն առեալ եկն առ Տիբեր երդնուլ նըմա կալ ընդդէմ Պարսից՝ եԹէ արձակեսցէ զհայրն. և յանձն առ Տիբեր, և արարին երդումն. և ապա ասաց անօրէնն Մօրիկ, Թէ «Այս է նշան պահել զերդումն քո՝ եԹէ հաղորդիս ընդ մեզ։» Եւ նա ասաց. «Զայդ ոչ կարեմ առնել, զի բազում է ազգն իմ և բարկանան ինձ. Թող զայն որ ոչ ասեմ՝ զի մի՛ տրտմեցուցից զձեզ. ատելի լինել Աստուծոյ ոչ կարեմ։» Եւ յորժամ զայս լըւան՝ բարկացան, և կալեալ զնա առաքեցին առ հայրն յաքսորս։ Եւ այս համբաւ հասեալ յերկիրն Տաճկաց (Արաբացւոց), եղեն հնգետասան բաժին, հաստատելով իւրեանց առաջնորդս. և միմեանց ոչ հնազան-

(1) Այն է Նոման Ե. Ապու–Քապուս կոչեցեալ. որ Թագաւորեաց յամի Տեառն 583—605։

դէին․ և ոմանք ՚ի Նոցանէ եղեն ընդ Պարսից իշխանութեամբ, ոմանք ՚ի Բամիրական երկիրն ետուն ձեռն, և կէսք եղեն ընդ Հռոմայեցւովք. և ՚ի պատճառս չար ժողովոյն Բաղկեդոնի բարձաւ վայելուչ Թագաւորութիւնն այն։

Իսկ Տիբեր յաւել յողորմածութիւն, զի զչորրորդ մասն յամենայն ստացուածոց իւրոց տայր աղքատաց։ Նա եբարձ զբաժն յամենայն իշխանութենէ իւրմէ. և էր բարեխօրհ և անցաւումն և աննենգ. և սա Թագաւորեաց չորս ամ և հիւանդացաւ, և ետ զդուստր իւր Օգոստիա՝ Մօրկայ կայսեր ՚ի կնութիւն (1), և արար զնա Թագաւոր, որ էր ՚ի Կապադովկիայ, յԱրփսուս քաղաքէ (2)։ Իսկ Տիբեր մեռաւ և տրտմութիւն ոչ սակաւ եթող աշխարհի. և Մօրիկ առ զԹագաւորութիւնն։

Բայց Հռոմ ապստամբեալ ՚ի Մօրկայ, եդին իւրեանց Թագաւոր զԳորամիոս (Գերմանոս) (3)։ Նա Թագաւորն Պարսից Խոսրով մեռաւ և Թագաւորեաց Որմիզդ որդի նորա, և առաքեաց ՚ի Հռոմ՝ զի հնազանդ

(1) Դուստրն Տիբերեայ կոչէր Կոստանդինէա։

(2) Այն է որ կոչի այժմ Եարփուս, մերձ ՚ի Ջէյթուն. և է գիւղ փոքրիկ հայաբնակ և ունի եկեղեցի մի։ Առ պատմագիրս ուրեք կոչի քաղաքս այս և Եփեսոս։

(3) Գերմանոս էր անուն Թէոդոսի՝ որդւոյ Մօրկայ։

դեսցին նմա. և ոչ ընկալան զբանն նորա Հռոմայեցիքն, այլ գնացին յերկիրն Պարսից և գերեցին, և երեք հազար գերի առաքեցին Մօրկայ. և հնազանդեցաւ Պամարիոս Մօրկայ, և յոյժ ուրախ եղեւ Մօրիկ։ Եւ հրամայեաց ընդարձակել զՄարփուս քաղաք ուստի ինքն էր, որ է յերկրորդն Հայք, որ զկնի չորս ամի շրջեցաւ 'ի շարժմանէ, և դարձեալ շինեաց լաւագոյն քան զառաջինն մեծաւ հոգաբարձութեամբ, և վերստին ընկղմեալ եղեւ շարժմամբ։

Յայսմ ժամանակի Մօրիկ եդ զօրավար զՓիլիկոսն (Փիլիպպիկոս) փեսայ իւր, որ էր քեռայր իւր, և առաքեաց զնա ընդդէմ Պարսից. և Պարսիկքն առաքեցին 'ի Մծբնայ բազում գանձս 'ի Մուփարղինն, և առին զնա. և գնաց Փիլիկափոս և դարձեալ էառ զնա, և կոտորեաց զՊարսիկքն որ 'ի նմա։ Եւ 'ի նոյն ամի յարեան Պարսիկքն 'ի վերայ Արմզդի Պարսից արքային և հանին զաչս նորա, և մեռաւ յութ ամին Մօրկայ։ Եւ 'ի յինն ամին Մօրկայ թագաւորեաց Խոսրով որդի Որմզդին (1)։

Եւ Մօրիկ արար զԹէոդոս որդին իւր կեսար, և արար նմա հարսանիս (հանդէս) մեծ,

(1) Սեբէոս, յեր. 56—57։ Միքայէլ Չամչեան. Պատմ. Հայոց Հտ. Բ. յեր. 295—296։

և պատրիարքն կապեաց զթագ նորա։ Եւ 'ի նոյն ամի իշխանն Պարսից Վահրամ ապստամբեաց 'ի Խոսրովայ. և երկեաւ Խոսրով և եկն յԱւռհա, և առաքեաց առ Մօրիկ լինել նմա հայր, և կալ նմա օգնական՝ առնուլ զՊարս(1)։ Եւ Մօրիկ առաքեաց զզօրս Թրակիայ և զզօրս Հայոց, և տարան հաստատեցին յաթոռ իւր, և պարգեւօք դարձան, և դարձուցին ընդ Տարա և զՄաւլյսն (Մծբին) 'ի Հռոմայեցիս(2)։ Եւ Մօրիկ ետ զդուստր իւր Մարիա(3) Խոսրովու 'ի կնութիւն, առաքելով ընդ նմա եպիսկոպոս և քահանայս. և Խոսրով երեք եկեղեցի շինեաց 'ի Պարս վասն կնոջ իւրոյ. և պատրիարքն Անտիոքու գնաց և օրհնեաց զնոսա, զմէկն յանուն Աստուածածնին, և զմէկն յանուն սուրբ Առաքելոցն, և զերրորդն յանուն սուրբ Սարգսին. և եղեւ մեծ խաղաղութիւն։

Եւ Մօրիկ թագաւորեալ ամս քսան, և

(1) Թովմա Արծրունի (յեր. 94). և Սեբէոս (յեր. 57) 'ի մէջ բերեն զպատճէն թղթոյն Խոսրովայ առ Մօրիկ։

(2) Ի սմին պատերազմի գտան Ներսէս հայ իշխան և Մուշեղ Մամիկոնեան հայեցի քաջ զօրօք 'ի կողմանէ Մօրկայ եկեալ 'ի վերայ Վահրամայ ապստամբի, զորոց տես հանդերձ պարագայիւք 'ի Պատմ. Հայոց. Հտ. Բ. յեր. 296—300։

(3) Պատմագիրք Յունաց ասեն զմանէ դուստր լինել քրիստոնէի ուրուք և ոչ Մօրկայ, և կոչեն զնա Սիրի, յորմէ Շիրէնի երգքն առ արեւելեան բանաստեղծս 'ի վերայ սիրոյ նորին ընդ Խոսրովու արքայի։ Իսկ Սեբէոս յայտնագոյն եւս ասէ՝ լինել դուստր քրիստոնէի 'ի Խուժաստան աշխարհէ։ յեր. 76։

հպարտացեալ արհամարհէր զզօրսն. և եղև գալ Բուլղարացն 'ի Թրակիա, և ելեալ զօրքն Հռովմայեցւոց՝ և հալածեցին զնոսա, և եկին 'ի Կոստանդնուպօլիս և առաքեցին առ Մօրիկ և ասացին. «Աստուած խաղաղութիւն արար յաւուրս քո. բայց խաղաղութեամբ զօրքն ոչ ապրին, այլ հռոդօք. կամ տուր ըղկարգեալ ռոճիկսն անթերի, կամ տես յոյժ հետէ զմեզ թշնամիս քեզ։» Եւ նա խստացաւ ընդդէմ նոցա, և ասացին զօրքն ցՊետրոս եղբայրն Մօրկայ. «Սպանցուք զեղբայրն քո և թագաւորեա դու։» Եւ նա ոչ կամեցաւ, այլ գնաց պատմեաց Մօրկայ։ Եւ զարհուրեալ Մօրկայ փախեաւ 'ի Քաղկեդոն. և երթեալ զօրացն անդ, սպանին զնա, և թագաւորեցուցին զՓոկաս զոմն 'ի զօրագլխացըն (1)։

Եւ լուաւ զայս Խոսրով թագաւորն Պարսից՝ եթէ սպանին զՄօրիկ և զորդիսն, յոյժ

(1) Փոկաս էր 'ի զօրավարացն Մօրկայ. որում յանձն լեալ բանակն կայսերական առ զդէմ ունել ապստամբութեան Բուլղարայ. նա ընդհակառակն խաղաղոյց զզօրսն 'ի վերայ Կ. Պօլսի. և կալեալ զՄօրիկ հանդերձ հնգեքումբք որդւովք խողխողեաց անխնայ, և յինքն տարաւ զաթոռն։ Սեբէոս պատմէ (յեր. 85—86), թէ յառաջնում արշաւանին զոր ետուն Յոյնք ընդդէմ Թրակացւոց (Բուլղարաց, Ավարաց), զտանէին և զօրք Հայոց ընդ զօրավարութեամբ Մուշեղայ Մամիկոնէի, որոյ խորագոյնս զհետ թշնամեաց պնդեալ մըտանդեցաւ, և ձերբակալ լեալ սպանաւ։

տրտմեցաւ և զգեցաւ սեաւ ամենայն տամբն Պարսից, և ելաց զնա աւուրս բազումս. և յետ այնորիկ ծանուցանէր զերախտիսն զոր արար Մօրիկ Պարսից. «Օ՜ ի՜նչ հաստատեաց զխախտեալ թագաւորութիւնս 'ի ձեռս իմ. արդ ո՞վ է 'ի ձէնջ որ առնու զվրէժ արեան նորա 'ի դիւրութիւն սրտի իմոյ:» Եւ յառաջ եկն ոմն 'ի մեծ իշխանացն, որում անունըն էր Խոմիզըն, և ասէ. «Ես երթամ և կատարեմ զկամս քո 'ի վերայ Հռոմայեցւոցն, և լուծ արեամբ զերկիր նոցա զորս գտանեմ 'ի Հռոմայեցւոցն:» Եւ ասէ ցնա թագաւորն. «Մի՛ կոչեսցիս դու այսուհետեւ Խոմիզըն, այլ Շահրպարզ (Շահրվարազ), զի այր քաջ ես դու:» Եւ առաքեաց զնա ամենայն զօրօքն Պարսից, որոյ եկեալ էառ զՏարսա և զԽաղայն և զՄերտին, և ձմերեաց 'ի Միջագետս. և առ զԽառան և զՀալպ և զԱնտաք, և այլ. առն ոչ մեղանչէր՝ բայց միայն Հռոմայեցւոյ: Եւ յութերորդ ամին Փոկայ եղև ամենայն Միջագետք Պարսից. և ապա անցին 'ի Կապադովկիա և 'ի Գաղատիա և յԱնկիւրիա և յԱսիա, և մինչեւ 'ի Քաղկեդոն գնացեալ յաւարի հարին (1): Եւ 'ի միտս իւր խորհէր Խոսրով 'ի վերայ Հռոմայեցւոցն այլ թագաւորել, զի որդեգիր էր Մօրկայ կայսեր և փեսայ:

(1) Սեբէոս, յեր. 121—122:

Իսկ Թագաւորն Փոկաս արար բազում սպանութիւնս զօրապետաց եւ զօրաց , եւ եղեւ ատեցեալ յամենեցունց: Եւ յայնմ ժամանակի երկու պատրիկք էին յԱփրիկէ՝ երեւելիք եւ քաջք 'ի մարտս պատերազմաց , անուն միոյն Գրիգոր եւ միւսոյն Հերակլ. եւ խորհեցան երկոքին զմահ Թագաւորին , եւ պատրաստեցին զօրականս եւ առաքեցին զորդիս իւրեանց զօրօք՝ զմինն ընդ ծով եւ զմիւսն ընդ ցամաք: Որդին Հերակլի անուամբ հօրն Հերակլիոս անուն , եհաս նորա վիճակ ընդ ծովն երթալ , եւ որդին Գրիգորի ընդ ցամաք. եւ ուխտեցին նոցա թէ որ վաղագոյն երթայ 'ի Կոստանդնուպօլիս՝ նա Թագաւորէ , եւ որ յետոյ երթայ՝ լինի նմա կեսար: Եւ գրեցին 'ի քաղաքն եւ յարքունիսն զխորհուրդն՝ զի սպանցեն զՓոկաս , եւ զնախաժամանեալն առ նոսա յորդւոց իւրեանց Թագաւորեցուսցեն: Իսկ Հերակլիոս յաջողակ հողմոյ դիպեալ գնաց յառաջագոյն , եւ տեսեալ ըզԹուղթն՝ վաղվաղակի սպանին զՓոկաս: Եւ Թագաւորեաց Հերակլ այր քաջ եւ իմաստուն , եւ եղեւ խնդութիւն ամենեցուն եւ հանդարտութիւն:

Իսկ Թագաւորն Պարսից յորժամ տիրեաց Միջագետաց , առաքեաց 'ի Պարսից եպիսկոպոս Նեստորականս եւ Բաղկեդոնիկս , որոց գլխաւորին անուն էր Աչխիմիս (1), իսկ ուղ-

(1) Միւս Թարգմանութիւնն Ախչիմիա:

ղափառքն որ 'ի Միջագետս, ոչ ընկալան զնո-
սա, և գրեցին աղաչանս առ Թագաւորն
Պարսից՝ զի մի խախտեսցէ զհայրենիս սահ-
մանս նոցա։ Եւ լուաւ Թագաւորն և անդ-
րէն կոչեաց. և նոքա խնդրեցին 'ի Խոսրովայ
զի հրամայեսցէ նոցա քննութիւն առնել,
թէ վասն էր ոչ ընկալան զմեզ։ Եւ առա-
քեաց Խոսրով 'ի Հայս և 'ի Միջագետս գը-
նալ առ իւրքն իմաստնոց և աստուածնաւորաց
և պատասխանի առնել Քաղկեդոնացւոցն և
Նեստորականացն։ Եւ գնաց մեծ Կաթողի-
կոսն Հայոց Ներսէս(1), և պատրիարքն Ասոր-

(1) Զայս ժողով յիշատակէ և Սեբէոս, յեր. 188-193, յոր-
մէ առնու Ասողիկ 'ի պատմութեան իւրում (յեր. 94-99)։ 'Ի
մէջ բերեալ և զնամակն զոր գրեաց Ներսէս Գ. առ Կոստանդ
կայսր, յորում յիշէ՝ եթէ և յաւուրս Խոսրովու Բ որդւոյ Որ-
միզդի եղև ժողով 'ի դուռն արքունի յաղագս բանի հաւատոյ։
Զայս պատմութիւն թերևս չփոթեալ Միխայելի ընդ անուան
Ներսէսի որ յետոյ է իբր 20 ամօք և աւելի քան զժողովն որ
յարքունիսն Խոսրովու, համարի եթէ առ նովին իսկ Ներսի-
սիւ եղեալ իցէ։ Քանզի առ թագաւորութեամբ Խոսրովու Բի
նստան յաթոռն կաթողիկոսական՝ Աբրահամ, Յովհան Գ.
Կոմիտաս և Քրիստափոր։ Դարձեալ Ասողիկ այլազգ իմն
պատմէ զպատճառս ժողովոյն։ Լուեալ, ասէ, Խոսրովու ըզ-
հանապազօրեայ վէճս և զխռովութիւնս որ լինին 'ի մէջ Հա-
յոց և Յունաց վասն բանի հաւատոյ, հրամայեաց ժողովել
'ի դուռն արքունեաց իւրոց եպիսկոպոսաց արևելեայց և
Ասորեստանեայց ընդ վերակացութեամբ Սմբատայ Բագրա-
տունւոյ։ Ի ժողովն յայսմիկ գտաւ և Զաքարիա պատրիարք
Երուսաղէմի որ 'ի գերութեան կայր և գերեկիցք նորին ե-
պիսկոպոսք Աղէքսանդրիոյ, այլ և կաթողիկոսն Աղուանից։

ւոյց ուղղափառաց Աթանաս և Սեւերիանոս. եղբայր իւր, որ հրաշալի նշանօք կոչեցեալ էր 'ի քահանայապետութիւն այսպիսի օրինակաւ ։

Այր մի էր 'ի Սամոստիա(1) բարեպաշտ և ողորմած, որ մեռաւ և եթող երկուս որդիս, զԱթանաս և զՍեւերիանոս, ընդ մօրն՝ բազում ստացուածօք . և մայր նոցա Սանի ընպաստաւորեաց զամենայն ինչս իւր աղքատաց, և ետ զտղայսն 'ի դպրոցս . և ուսուցանէր զնոսա աղօթիւք և հաւատովք, մինչ զի յորժամ տեսանէր եպիսկոպոս և քահանայս և միայնաւորս, ասէր . " Խաչ հան յիմ վերայ . " եւ ինքն տարածանէր զթեւսն առաջի, և որպէս զգոյաւոր իրք ծրարէր, և երթեալ 'ի տունն թափէր զթեւսն 'ի վերայ գլխոյ տղայոցն . և

ւեւս և Նեստորականք և Սեւերիանոսեանք։ Եւ 'ի լինել հարցաքննութեան՝ հերետիկոսք ամենայն 'ի բաց մերժեցան, նոյնպէս և Քաղկեդոնականք պարտեցան . իսկ դաւանութիւնն Հայոց որ զերիս և եթ ժողովսն ընդունին, իբրեւ ուղղափառական ճշմարիտ դատեցաւ առաջի ժողովոյն և խոստովան արքային . որում վկայեաց և Զաքարիա պատրիարք Երուսաղէմի՝ յաղթեալ 'ի ճշմարտութենէ, որպէս ասէ Ասողիկ . վասն որոյ և Խոսրով հրաման, ետ եթէ " Ամենայն քրիստոնեայք որ ընդ իմով իշխանութեամբ են, զհաւատս Հայոց կալցեն ։ " Եւ այսպէս հաստատեաց կրկին զվճիռս հարց իւրոց Կաւատայ և Խոսրովու Ա, որք գրեալ էին 'ի թուղթս և պահեալ 'ի տան գանձուց, կնքեալ մատանեաւ իւրեանց ։

(1) Յօրինակին մերում 'ի Սամո ։

ասէին տղայքն, թէ “Ո՛յդ ո՛նչ է մայր.” և մայրն ասէր. “Օրհնութիւն է, որդեակք, զոր առի ձեզ ՚ի սրբոց Աստուծոյ:” Եւ զարգացեալ մանկանցն գնացին ՚ի վանս սուրբ Յովհաննիսի: Եւ յետ բազում ամաց եդին զԱթանաս ուղտապան, և երթեալ բերէր ըզպէտս վանիցն: Եւ ՚ի սահմանս Խուծափայ վանք մի էր ուղղափառաց, և գնաց առ նոսա յամենայն ուղղափառաց աղաչանք, զի ընտրութեամբ ըստ Աստուծոյ կամացն դիցեն պատրիարք: Եւ ընտրեցին երեք, և գրեցին զանուանս նոցա յերեք թուղթ, և ՚ի թուղթ մի զՔրիստոսի անունն. և եդին ՚ի մոմ, և եդին ՚ի սեղանն, և մատեան պատարագ. և զկնի պատարագին առնուլ ետուն երեք օր զկնի միմեանց, և գայր Քրիստոսի անունն. և փոխեցին զմարդիկն յայլ, և նոյնպէս գայր Քրիստոսին՝ առ ՚ի ցուցանել թէ Քրիստոս է քահանայապետ, մինչև այլ արժանաւոր ընտրէք: Եւ զՔրիստոսին վասն այնորիկ գրեն, որ թէ յերեք անուանցն մի անունն գայ, մէկ մի այլ անունն Քրիստոսին գայ, գետենան թէ վայել է սորա սրբութեանս: Ապա թէ ոչ գայ Քրիստոսին, յայլ անուանելոցն գայ, չէ ընդունելի, և թէ միայն Քրիստոսի գայ, ամենն են խոտան: Իսկ այն վանքն երեք օր և երեք գիշեր հսկեցին և լացին առաջի Աստուծոյ. և յետրորդ աւուրն երևեցաւ Քրիստոս և ասէ.

ձ Աղիւն առաւօտուն դայ այր մի ուղտուք, անուանն Աթանաս, զնա ձեռնադրեցէք »: Եւ նոցա ուրախացեալ սպասէին նմա 'ի վաղիւն. և 'ի բանալ դրանն կայր Աթանաս կանգնեալ. և հարցեալ զանունն և իմացեալ, մեծաւ աղաչանօք և երդմամբ և երկիւղիւ Աստուծոյ ածին 'ի հաւան և ձեռնադրեցին. և յետ ձեռնադրութեանն ասէ. «Սիրովն Քրիստոսի աղաչեմ զձեզ, ծածկեցէք զբանս և թոյլ տուք ինձ իմ հանդերձիւն տանել զուղտսն և լընուլ զտարին իմ:» Եւ հազիւ հաւանեցան. և արար այնպէս: Եւ 'ի լնուլ տարւոյն խընդրեցին և գտին:

Եւ ել համբաւ զնմանէ մինչեւ 'ի Պարսից Թագաւորն: Եւ կոչեցաւ Աթանաս պատրիարքն և գնաց, և եղբայրն զկնի. և տեսեալ զնա հայրապետին Հայոց՝ սիրեաց զնա և մեծարեաց, նոյնպէս և Թագաւորն Խոսրով: Եւ յետ բազում հարցափորձի և քննութեան յաղթեցան Պարսից եպիսկոպոսքն և Նեստորականքն և Քաղկեդոնիկքն: Եւ զգացուցին Խոսրովու, և կոչեաց առաջի իւր զժողովն, եհարց և ասէ. «Զ՞ինչ է ձեր հակառակութիւնդ, ասացէք:» Եւ ասեն Քաղկեդոնացիքն և Նեստորականքն. «Մեք ամեն քրիստոնեայքս Աստուած խոստովանիմք զՔրիստոս որ մարմին էառ, բայց դոքա ասեն զԱստուած և զմարմինն մի բնութիւն, և զԱստուած խա-

չեալ ասէ՝ և առանձինն մեք ասեմք, թէ մարմինն որ մեռաւ՝ նա մեռաւ, և Աստուած որ ոչ մեռաւ՝ նա ոչ մեռաւ։» Նա ասէ ուղղափառքն ցԹագաւորն. «Այդ շատ բան է և բազում ուսման և յերկար ժամանակաց պէտք են, և արարեալ են վասն այդորիկ քննութիւն առաջին Թագաւորքն։» Նա ասաց Թագաւորն. «Ո՞վ էին Թագաւորքն.» և նոքա ասեն. «Կոստանդիանոս և Թէոդոսքն՝ առաջինն և երկրորդն.» և այլքն ասացին՝ «Նա Մարկիանոս.» և ուղղափառքն ասացին. «Մեք զՄարկիանին ոչ ընդունիմք։»

Նա Խոսրով ասէ. «Լսեմ որ յաղթեցարուք դուք որ զՄարկիոնին ընդունիք. այլ և ես ասեմ, որ Մարկիանէ չէ հաւատար այնց Թագաւորացն. և յորժամ ասէք միաւորիլ Աստուծոյ և մարդոյն, բաժանել չէ պարտ, զի ինձ ճշմարիտ թուի ասելն, թէ մահ մարդոյ չկարէր փրկութիւն առնել։ Քանզի ես յորժամ եկի յաշխարհն ձեր, բազում անգամ լուայ վասն այդորիկ, և տեսի 'ի նոցանէ բազում նշանս և սքանչելիս՝ որ մահ Աստուծոյ ասեն։ Այլ և պատմեցին ինձ զօրքն իմ, թէ «Մտաք յեկեղեցի մի զոր ուղղափառքն ունէին, և քահանայն կայր 'ի պատարագի և կամէր հաղորդել զժողովուրդն, և վասն այնորիկ յոլով էր պատրաստեալ զհացն և զբաժակ գինւոյն ըստ խուռեանց ժողովրդոյն. և 'ի մատանելն

մեր յեկեղեցին, ոչ հայեցան 'ի մեզ և ոչ ռատեան, և մեք հրամայեցաք՝ որ կոտորեցին զոմանս 'ի ժողովրդոցն, և այլոցն Թոյլ տուաք փախչիլ. և հայելով մեր 'ի պատարագողն (որ) կերաւ զբազմութիւն հացին միայն և արբ զգինին, և յետ այնորիկ հարցաք Թէ՝ "Ի՞նչ խոստովանիք զայդ կերակուրդ": Եւ նա ասէ. "Մի՛ս և արիւն Աստուծոյ": Եւ ասացաք. "Հոգեւո՞ր է՝ Թէ մարմնաւոր կերակուրդ": Եւ նա ասէ. "Հոգեւոր": Եւ բացաք զփոր երիցուն և ամենեւին ոչինչ գըտաք նշան 'ի նմա՝ Թէ կերեալ ինչ էր": Եւ Թէ այսպէս է, իրաւ են միաւորողքն:" Եւ զայս ասացեալ Թագաւորին ոչ յիւրմէ՝ այլ յԱստուծոյ յազդմանէն, որպէս Փարաւոն և Նաբուգոդոնոսոր և Բաղաամ՝ և Կայափա տեսին զճշմարիտն և իմացան վասն օգտի աստուածպաշտութեանն, նոյնպէս և Խոսրովու ասելն՝ 'ի փառս ճշմարտութեանն, զի զօրաւոր է ճշմարտութիւնն ըստ Եզրի սրբոյ (1): Վասն որոյ պատուեաց Թագաւորըն զհայրապետն Հայոց՝ տալով զորդին իւր նմա սան և զաշխարհն Հայոց 'ի հրամանս նորա, և պարգեւս մեծամեծս ետ նմա և ԱԹանասայ, և զաշխարհն Պարսից ետ 'ի ձեռս նոցա խնամել զքրիստոնեայսն ըստ իւրեանց օրինացն, կարգել եպիսկոպոս և քահանայս

(1) Ա. Եզրաս Դ. 35.

և սարկաւագունս , և չինել եկեղեցիս , և ապրանք եկեղեցեաց . և այսպէս Աստուած զփառաւորիչս իւր փառաւորէ . և Նմա փառք յաւիտեանս :

Իսկ Հերակլ թագաւորեալ 'ի քսան և մի ամին Խոսրովու , և առաքեաց առ Խոսրով խնդրել սէր ասելով, թէ "Սպանաք զՓոկաս զսպանողն Մօրկայ , և դու արա ընդ մեզ խաղաղութիւն :" Եւ ոչ կամեցաւ Խոսրով յանձին , այլ յարուցեալ եկն 'ի Կեսարիա Հայոց , և առ զնա և կոտորեաց զբիւրս բիւրուց [1] : Եւ 'ի չորրորդ ամին Հերակլեայ հնազանդեաց Շահրպարզն զԴամասկոս՝ Պարսից . և 'ի գալ տարւոյն առ զԳալիլիա , և 'ի վեց ամին Հերակլեայ առ զԵրուսաղէմ և սպան 'ի նմա արս յիսուն հազար [2] : Եւ Հրեայքն զգերեալ քրիստոնեայսն գնէին սակաւ գնոյ , և սպանանէին վասն չարութեան իւրեանց : Եւ զօրավարն Պարսից առ զԽաչն Քրիստոսի և առաքեաց 'ի Պարս , և ընդ նմա զԶաքարիա պատրիարքն Երուսա-

(1) Սեբէոս , յեր . 125 : — Վարդան , յեր . 86 . տիպ Մոսկուայ :

(2) Խոսրով առ զԵրուսաղէմ յամի 616 , զոր Միքայէլ Ջամչեան դնէ երկու ամօք յառաջ 'ի 614 ամին . և սպան արս յիսուն հազար կամ ըստ ոմանց՝ յիսուն և եւթն . և գերեաց անձինս երեսուն հազար : Սեբէոս , յեր . 130 : — Մովսէս Կաղանկայտուացի . Գիրք Բ . Գլ . Ժ : — Թովմա Արծրունի . յեր . 98 : — Սամուէլ :

զէմի Քաղկեդոնիկ. և յետոյ զամենայն Հրեայսն ջնջեաց Երուսաղեմէ և յամենայն սահմանացն և առաքեաց 'ի Պարս։ Եւ 'ի գալ միւսոյ տարւոյն գնաց Եգիպտոս և առ զնա, և հնազանդեաց զամենայն Լիբիա Պարսից Շահրպարզն մինչեւ 'ի Քուշացիսն։ Եւ 'ի նոյն ամի եկն Շահէն զօրավար մի այլ Պարսից 'ի վերայ Քաղկեդոնի, և առ զնա և կոտորեաց (1)։ Եւ դարձաւ առ զԼիբիկիա և բազում գերութեամբ և աւարաւ գնաց 'ի Պարս. մինչեւ զսիւնս մարմարեայս և զանօթս պղնձի և երկաթի տարան 'ի Պարս։ Եւ եղեւ հնազանդ Պարսից ամենայն իշխանութիւնն Հռոմայեցւոց 'ի ծովէ մինչեւ 'ի ծով։ Իսկ Հերակլ զորդին իւր Կոստանդին արար օգոստոս, և առաքեաց ընդդէմ Պարսից (2)։

Յայսմ ժամանակի երեւեցաւ Մահմէտ

(1) Սեբէոս (յեր. 141) յորմէ առեալ և Թովմա Արծրունի, զՇահրվարազայ ասեն եկեալ 'ի Քաղկեդոն, և աւերեալ զաշխարհն, ուր 'ի մէջ բերեն և զբանս Հերակլի վասն խաղաղութեան խօսեցեալ առ մեծ զօրավարն Պարսից, և ընդդիմաձայն հրովարտակին Խոսրովայ առ Հերակլ կայսր ուղղեալ լի ամբարտաւանութեամբ. յեր. 100—101։

(2) Սեբէոս (յեր. 144), Թովմա Արծրունի (յեր. 102), և Մովսէս կաղանկայտուացի (Գիրք. Բ. Գլ. Ժ.) ասեն՝ եթէ Հերակլ թագ կապեալ որդւոյ իւրում Կոստանդնի, եթող 'ի ձեռս նորա զկառավարութիւն Դրանն, և ինքն ընդ-ծով ել 'ի Ճանապարհ յաշխարհն Եգերացւոց և Պարսից, և անձամբ մղեաց պատերազմ ընդ Շահրվարազայ և Խոսրովու։

որդի Աբդլայի յԱթրապէ [1] Արաբիոյ։ Եւ է Արաբիա՝ ի հիւսիսոյ և յԵփրատ գետոյ մինչև ի ծովն հարաւոյ, և ի յարևմտից՝ ի Կարմիր ծովէն մինչև յարևելս ի Պարսից ծովն. և բնակիչքն կոչին Իսմայելացիք վասն Իսմայելի, և Սարակինոսք վասն Սառայի, և Հագարացիք վասն Հագարայ, և Մադիանացիք վասն Կենդուրայ որդւոյ Մադանայ։

Այս Մահմետս եղանէր յԱթրապ քաղաքէն և վաճառականութեամբ գայր ի Պաղեստինէ և յԵգիպտոս, և եղև ծանօթութիւն նմա ընդ մինակեցի ումեմն՝ որ էր Արիանոս, և ի քարոզութենէ նորա հաւատաց յԱստուած՝ և գնաց քարոզեաց ազգին, և զոմանս հաւանեցոյց. և ել նոքօք յանապատ, և զանհնազանդսն գերէր և աւերէր, և յոլովք յարեցան ի նա, և երթային արշաւէին ի կողմանս Պաղեստինի, գերէին բերէին. և փարթամացան, և յաճախեաց և բազմացաւ զօրքն, և ել համբաւ զնմանէ։ Եւ միաբանեցան Հրեայքն ընդ նմա, և ետուն նմա կին յազգէն իւրեանց. և հալածէին զզօրսն Պարսից և տիրեցին բազում աշխարհաց [2]։ Եւ սկիզբն երևման նորա յերկոտասան ամին

(1) Աթրապ է նոյն՝ որ կոչեցաւ յետոյ Քաղաք մարգարէի. և այժմ հասարակաբար կոչի Մէտինէ։

(2) Մովսէս կաղանկայտ. Գիրք Գ. Գլ. Ա։—Ստեփան Ասողիկ. Գիրք Բ. Գլ. Դ։—Կիրակոս, յեր. 32. տիպ Մոսկուայ —Թովմա արծրունի, յեր. 109։—Վարդան, յեր. 88։

Հերակլեայ, և 'ի ՅՂԳ (933) Թուին Ասորւոց և 'ի Հայոց Թուին Կ (60)։

Յայսմ ժամանակի խաւարեցաւ կէս արեգականն յԱրեգ ամսոյ աշնանն մինչեւ 'ի Քաղոց ամիս՝ սկիզբն ամարան, և ասէին մարդիկ՝ թէ այլ ոչ դարձի արեգակնն յաւիտեան։

Իսկ 'ի հնգետասան ամին Հերակլեայ առին Պարսիկք զՌոդոս կղզի և գնացին Շահրպարզն և Ղարատոզն (1) իջան 'ի վերայ Կոստանդինուպոլսի, և զօրքն սփռեցան 'ի Թրակիա, և ոմանք յարեւմուտս կոյս, և ամ մի պաշարեցաւ Կոստանդինուպոլիս և անյաւսացաւ յամենայն կողմանց։ Եւ յանկարծ եղեւ նոցա դիւրութիւն այսպիսի պատճառաւ։ Յայնմ ժամանակի բանսարկեցին առաջի Խոսրովու թէ հպարտացեալ է Շահրպարզն ընդ գործս իւր, և ասէ. «Անամօթն Խոսրով նստեալ է 'ի մէջ հարճից և վարձակաց, և կարծէ թէ ինքն է թագաւոր. և զայս ոչ իմանայ թէ ես առի զթագաւորութիւնս Հռոմայեցւոց և յաւելլի 'ի Պարսս, և արարի նմա հանգիստ։» Եւ լուեալ զայս Խոսրով՝ բարկացաւ և գրեաց Խոռզն առ Ղարապոզան Երկրորդ զօրագլխին. Եթէ յորժամ փեսանես զգիրս՝ հատ զգլուխ Շահրպարզէս. և առ իս առաքեա(2)։ Թուղթն ան-

(1) Մովսէս Կաղանկատուացի Քորոխարհն անուանէ զսա. (Գիրք Բ. Գլ. ԺԱ), զոր և Յոյնք Քարաւորդոս կոչեն։

(2) Նօտարագրեալքն եղծեալք էին 'ի մերում բնագրի։

կաւ 'ի ձեռս ծառայիցն Հերակլեայ, և նա ազդ արար զերան զօրավարին (Շահրվարազայ) և ձայնեաց առ ինքն և եցոյց նմա զթուղթն, և հնարիմացութբ փոխեաց զթուղթն Շահրպարզն և գրեաց 'ի Խոսրովու երեսաց թէ՝ «Շահրպարզ և Պարատօղան, 'ի գալ թղթոյդ առ ձեզ՝ սպանէք երեք հարիւր իշխանս ». գրեաց և զանուանս իւրաքանչիւրոց իշխանացն, և եցոյց Պարատօղին զթուղթն և յայտնեաց զքանն մեծամեծացն և շարժեցան. 'ի թարկութիւն ընդդէմ Խոսրովու, և ապըստամբեալ 'ի Խոսրովայ՝ արարին սէր ընդ Հերակլ, և ետուն նմա պատանդ զորդին Շահրպարզին և դարձան 'ի Պարս՝ թողեալ զերկիրն Հռովմայեցւոց։ Եւ առաքեաց Հերակլ առ Թագաւորն Հիւսիսոյ Խաքան (1), և խոստացաւ նմա տալ կին զդուստր իւր Եւդոքսիա՝ եթէ նա յանձն առցէ տալ նմա քառասուն հազար հեծեալ 'ի վերայ Պարսից։ Եւ Խաքանն խոստացաւ կատարել զխնդիրսն նորա, առաքել զզօրսն ընդ դուռն Կապից։

Եւ եղեալ Հերակլ գնաց ընդ Հայս 'ի վերայ Պարսից։ Եւ լուեալ զայս Թագաւորն

զոր առաք 'ի միւս Թարգմանութենէն։

(1) Այն է Թագաւորն Խազրաց Ջեբու Խաքան որ ընդ Հերակլեայ միաբանեալ մարտ եդ ընդ Խոսրովու զամս երիս։ Մովսէս Կաղանկայտուացի երկար բանիւք պատմագրէ զանցս աղէտից պատերազմացս և մահուն Խոսրովու։ Գիրք Բ. Գլ. ԺԱ—ԺԳ։—Կիրակոս, էր. 30, և այլք։

Պարսից, ժողովեաց զօրս և եդ գլուխ զօրացն զՍուզի—Ռահան (1), և առաքեաց ընդդէմ Հերակլեայ. և յաղթեցան Պարսիկք ՚ի դիպելն Հերակլեայ, և սպանաւ Սուզի—Ռահան. և լուաւ Խոսրով և փախեաւ ՚ի Սակարդա յամուրն իւր (2)։ Եւ Շիրի որդին Խոսրովու որ կայր ՚ի բանտին, ել ՚ի բանտէն կամաւ Պարսից և սպան զհայրն ՚ի ձեռն հրամանի իւրոյ, և թագաւորեաց Շիրի (3)։ Եւ Հերակլ դարձաւ ձմերել ՚ի յԱթուր (4). և

(1) Մովսէս կաղանկատուացի զզօրապետն զոր առաքեաց Խոսրով բանակաւ ընդդէմ կայսեր, Ռոճվեհ կոչէ. յայս անուն փոխեալ, ասէ, զառաջին անուանակոչութիւն նորին։

(2) Քաղաքն ուր ապաւինեցաւ Խոսրով յերեսաց զօրութեան Հերակլի, էր Վեհ—կաւատ, տեղի ամրութեան, յայնկոյս Տիգրիս կամ Դկլաթ գետոյ, ուր կային ամբարեալ և ամենայն տիկնայք և որդիք և գանձք արքային։ Սեբէոս. յեր. 150։ —Թովմա Արծրունի, յեր 104—105. Իսկ Մովսէս կաղանկատուացի (Գիրք Բ. Գլ. ԺԳ) Վեհ—Արտաշիր կոչէ զանուն քաղաքաբերդիս։

(3) Շիրի, կամ Շիրուշ ըստ Պարսից, կոչէր և Կաւատ, որ էր անդրանիկ որդի Խոսրովու, և ըստ գրելոյ Մովսէսի կաղանկատուացւոյ (Գիրք Բ. Գլ. ԺԲ.) դայեակ սորին՝ որ մի էր ՚ի Նախարարացն, խորհրդակցեալ ընդ Կաւատայ և գրաւեալ զսիրտս ամենայն աւագացն, հան զնոսա ընդդէմ Խոսրովու. որք միաբանեալ թագաւորեցուցին զԿաւատ. և նա յետ կոտորելոյ զամենայն եղբարս իւր ըստ թելադրելոյ դայեկին իւրոյ, և զհայր իւր որ թագուցեալ կայր ՚ի բուրաստանս ընդ ծառօք, կալեալ եդ ՚ի զգուշութեան. և զկնի քանի ինչ աւուրց եբարձ ՚ի կենաց—Թովմա արծրունի, յեր. 105։

(4) Աթուր, յորմէ Աթուրացիք կոչին Ասորիք, նշա-

Շիրի առաքեաց առ նա խնդրել սէր, և խօստացաւ նմա կոչել զզօրսն իւր յաշխարհէն Հռովմայեցւոց։ Եւ Հերակլ հաւանեցաւ և դարձաւ 'ի Միջագետս յառաջ քան զինքն առաքեալ զԹէոդորիկէ (զԹէոդոր) վերզբայրն իւր։ Իսկ զօրքն Պարսից որ յՈւռհա՝ ոչ հընազանդէին Շիրէին (1), և Հրեայքն վասն ատելութեան քրիստոնէից օգնէին Պարսից և զԹէոդորոս ոչ ընդունէին յՈւռհա. և նորա մարտ եդեալ յաղթեաց Պարսից և առ զքաղաքն։ Եւ Հրեայ մի կախեալ ընդ պարիսպն, գնաց առ Հերակլ 'ի Թիլմօզ (2) և խնդրեր հրաման չկոտորել զՀրեայսն, որ մինչ 'ի գալն նորա զբազումս սպանեալ էին։

Եւ եկն Հերակլ յՈւռհա, և ել ընդ առաջ նորա եկեղեցականաց բազմութիւն յոյժ և վանորայք լերինն Ուռհայոյ, զորոց ասեն զԹիւն ինն հազարաց։ Եւ 'ի տեսանելն՝ զարմացաւ Հերակլ ընդ բազմութիւնն, և խոնարհեցոյց զերեսն յերկիր առաջի նոցա. և յորժամ իմացաւ թէ ոչ ընդունին զժողովն Քաղկեդոնի, ասաց՝ թէ "Չէ արժան զըկել

նակէ զքաղաքն Նինուէ, զոր շինեաց Ասուր որդի Սեմայ։ Ծննդոց. Ժ. 11։

(1) Ոչ հնազանդէին զօրքն Պարսից դաշանցն որ հաստատեալ էր 'ի մէջ Հերակլեայ և Կաւատայ, որով Ուռհա լենէր մասն իշխանութեան Յունաց։

(2) Թիլմօզ կամ Թըլմուզ, է քաղաք հին և աւերակ ընդ մէջ Ուռհայի և Մրձնոյ. և իբր տասն մղոն հեռի 'ի Ուռհայէ։

զմեզ յաղօթից այսքան բազմութեան վասն ժողովոյն Քաղկեդոնի։» Եւ 'ի տօնի Ծննդեանն մտաւ 'ի սուրբն Սոփի յեկեղեցին ուղղափառաց, և պատուեաց յոյժ զքահանայսն ընծայիւք. և 'ի ժամ հաղորդելոյն յառաջ գնաց հաղորդիլ, և արգել զնա արհի եպիսկոպոսն Եսայի և ասէ. «Նախ նզովեա զժողովն Քաղկեդոնի և զտումարն Լեւոնի։» Եւ բարկացաւ թագաւորն վասն այնր բանի, և առ զեկեղեցին ուղղափառաց և ետ 'ի Քաղկեդոնիկսն։

Եւ ինքն եկն 'ի Մնբէճ և ել ընդ առաջ նորա պատրիարքն Աթանաս երկոտասան եպիսկոպոսօք, որ նախ եկեալ յԱնտիոքայ՝ մինային նմա. և անուանք եպիսկոպոսացն են այս. Թումա՝ Թրմուրին, Վասիլ՝ Հէմսայ, Սարգիս՝ Արիսոյ, Յովհաննէս՝ Կուրիսոյ, Թումա՝ Մնբէջայ, Դանիէլ՝ Խառանայ, Եսայի՝ Ուռհայոյ, որ եկն առ պատրիարքն յառաջ քան զգալ թագաւորին. Սեւիրէ (Սեւերոս) Կընշրոյ, Աթանասիոս՝ յԱրապիսոյ. կողմն Եփիփանիայ քաղաքի Կիլիկիոյ, Սեւիրէ՝ Սամոստիայ։ Եւ ընկալեալ զնոսա թագաւորն և նստան 'ի քննել զերկոտասան օր. և ապա խնդրեաց թագաւորն դաւանութիւն գրով. և նոքա տուին ըստ սահմանի ուղղափառաց, և գովեաց և գոհացաւ զԱստուծոյ և ասէ. «Այս է ճշմարիտ խոստովանութիւն

նզովեալ է ժողովն Քաղկեդոնի և տումարն Լևոնի[1]։ » Եւ դրան եպիսկոպոսն իւր հակառակեցաւ նմա, և Թագաւորն հրամայեաց կտրել զքիթ նորա. և զպատրիարքն մեծ պատուով արձակեաց։

Եւ յետ աւուրց եկն Հերակլ յԱնտիոք, և ժողովեցան Քաղկեդոնականքն և իշխանք և տուին նմա խորհուրդ և խրատ, թէ «Տարածեալ է դաւանութիւնդ այդ, և մեծն Հռոմ՝ ի յայդ կայ, և ոչ ընդունին զքեզ և ոչ կարես յերկարել ՚ի թագաւորութիւնդ, եթէ ոչ յայտնապէս յարուցանես հալածանս աղանդոյդ զոր ատեն Հռոմայեցիք։» Եւ պատրեալ զԹագաւորն՝ սիրեաց զփառս մարդկան քան զփառս Աստուծոյ, և ետ հրաման այլ մի երեւել առաջի նորա՝ որ ոչ դաւանէ զՔաղկեդոնին, և այսուհետեւ ոչ գոյ դատաստան և իրաւունք՝ որք սպանանեն և կողոպտեն և հալածեն զնոսա։ Եւ մի կալցին կաթուղիկէ Եկեղեցի, և մի համարձակութիւն։ »

Եւ ժողովեցան ՚ի Թէոդոպօլիս և դարձոյց զքաղուսն ՚ի Հայոց յաղանդն իւր ՚ի ձեռն Եզրի, զոր կաշառեաց զագահութիւն նորա և խաբեաց զանմտութիւն նորա[2]։ Այլ

(1) Միւս թարգմանութիւնն այլ իմն ասացուած բանից տայ կայսեր, որ յարմարագոյն եւս թուի. «Եւ ասէ Թագաւորն. բիծ ինչ ոչ գոյ ՚ի ձեզ, այլ զմերս պահեսցուք։»

(2) Ամենայն պատմագիրք մեր միաբան հաստատեն զա-

ոչ հնազանդեցան նմա վանորայքն արեւելից և իմաստուն եպիսկոպոսքն և զբազում աշխարհս պահեցին յուղղափառութիւն անշարժելիս, մինչեւ յաղթեցին ճշմարիտքն և բարձաւ աղանդն չարութեան 'ի ձեռն լաքանչելագործ և իմաստուն առնն Աստուծոյ Յովհաննու օձնեցւոյն, որ յետ ութսուն և չորս ամաց տգիտաբար հաւանելոյն Եզրայ, Յովհաննէս օձնեցին կաթողիկոսն Հայոց Մեծագ,պայծառ կարգօք զարդարեաց զեկեղեցի աղօթիւք սրբոյն Գրիգորի Հայոց Լուսաւորչին և սուրբ որդւոցն իւրոց (1)։

Նարի բարս և զԹուլամտութիւն Եզրի և զագահութիւնն, վասն որոյ ոչ առեալ ընդ իւր զՅովհան մայրավանեցի (մայրագոմեցի), որ աստուածային գրոց բանիբուն ճանաչէր, որպէս ասէ Սամուէլ, և ոչ զեպիսկոպոսն Սիւնեաց զՄաթուսաղայ, զբարեհամբաւեալն իմաստութեամբ և աստուածաբանական հմտութեամբ, այլ զսորա աշակերտն առեալ ընդ իւր գնայ, ուստի և տկարացեալ 'ի բանս՝ ընդունի զսահմանադրութիւնս ժողովոյն Քաղկեդոնի, փոխարէն ընկալեալ 'ի պարգեւ զաղահանսն Կողբայ։ Սեբէոս, Գլ. ԻԹ։—Ստեփ. Ասողիկ, Գիրք Բ. Գլ. Բ։—Սամուէլ։—Վարդան, յեր. 86։—Կիրակոս, յեր. 31։—Ստեփ. օրպելեան, Գլ. ԻԸ։

(1) Ստեփան Ասողիկ (յեր. 104) համաձայն Միխայէլի ասէ եթէ Յովհաննէս իմաստասէր, զոր փիլիսոփայ կոչէ, այն է Օձնեցին, արար, ասէ, ժողով 'ի Մանազկերտ, սրբելով յաշխարհէս (Հայոց) զՔաղկեդոնականացն երկաբնակ խոստովանութիւն և այլն, որ յաւուրցն Եզրի մինչև ցայն վայր մնացեալ էր յաշխարհիս Հայոց 'ի բաժնին Յունաց։ Միքայէլ Չամչեան երկար քննութեամբք բանից ջանայ ցուցանել Թէ այս ժողով լեալ իցէ 'ի տեղապահութեան Յովհաննու Մանազ-

Իսկ Շիրի թագաւորն Պարսից զկնի ինն ամաց թագաւորութեան իւրոյ մեռաւ, և թագաւորեաց Արտաշիր որդի նորա երկու ամ. և ապա Շահրպաղն սպան զնա և ինքն թագաւորեաց, և պահեաց սէր ընդ Հերակլի(1)։ Իսկ Պարտոզն արար ընդ ինքեան զոմանս և պատառեցաւ թագաւորութիւնն Պարսից, և օգնեաց Հերակլ Խոռխանէի (Շահրվարազ) և սպան զՊարտոզն։ Խոռեան ամ մի թագաւորեալ սպանաւ և նա, և

կերպացուցոյ՝ որպէս ինքն անուանէ. և թէ Նախորդն Օձնեցւոյ՝ Եզիա կաթողիկոս որ պարտ էր ջատագով լինել Քաղկեդոնականաց, ընդ հակառակն թշնամի էր նոցա որպէս գրի 'ի պատմութեան Միխայէլի կաղանկատուացւոյ (Հտ. Բ. յեր. 11-18). զի զՆերսէս կաթողիկոսն Աղուանից ժողովով նզովեաց վասն ընդունելոյ զժողովն Քաղկեդոնի։ Ասեմք. եթէ զկնի Եզրեցայն վայր. հաղորդութիւնն զոր ունէին Հայք ընդ Քաղկեդոնականացն՝ էր 'ի բաժնին ևեթ Յունաց. իսկ այնոքիկ որ էին 'ի բաժնին Պարսից, պահէին զնախնական դաւանութիւն իւրեանց. վասն որոյ Յովհաննէս իմաստասէր 'ի ժողովն անդ զոր կալաւ ընդ Ասորիս, ջանաց խափանել զհաղորդութիւնն զոր ընդ Քաղկեդոնացիս ունէին՝ այնոցիկ որ էին 'ի բաժնին Յունաց, որպէս բացայայտ ասէ Ասողիկ։

(1) Հերակլ 'ի կենդանութեան Արտաշրի գրեաց առ Շահրվարազ և խոստացաւ տալ նմա զթագաւորութիւնն Պարսից՝ օգնութեամբ զօրաց իւրոց. և 'ի փոխարէն խնդրեաց 'ի նմանէ դարձուցանել առ ինքն զսուրբ խաչն որ կայր 'ի գանձուն արքունի։ Երթեալ Շահրվարազայ 'ի Տիզբոն, սպան զԱրտաշիր և յինքն առ զթագն, և զխաչն դարձոյց առ Հերակլ։ Սեբէոս, յեր. 435։ Յորմէ առեալ գրէ և Թովմա Արծրունի, յեր. 104—107։

Թագաւորեաց Պարամ (1) դուստր խոսրովու սակաւ աւուրս՝ և մեռաւ ։ Եւ Թագաւորեաց Զարմանդուխտ քոյր իւր (2) ։ Եւ զհետ նորա Թագաւորեցին Շահրոռի, Դաքուրան խոսրով, Պերոզ, Զրուանդուխտ, Որմիզդ, ազգականք Թագաւորին Պարսից, ամենն յերկու ամի վճարեցան (3) ։

Եւ Մահմետ բազում աշխարհաց տիրեալ զեւլթն ամ (4), մեռաւ և առ զիշխանութիւնն Բուբաքր (Էպուպեքր) ամս երկու և ամիս հինգ ։

Իսկ Հերակլ 'ի վերայ ամենայն չարեաց իւրոց 'ի ծերութեան իւրում առ զՄարտինէ զեղբօր իւրում դուստր 'ի կնութիւն իւր, և ծնաւ 'ի նմանէ զՀերակլիէ անօրէն որդի (5)։

Իսկ զկնի Բուբաքրայ Թագաւորեաց Ումար (6)։ Եւ սա բազում գերիս առաքեաց յԱ-

(1) Այն է ըստ հայ պատմագրաց՝ Բոռոր կամ Բոր՝ դուստր խոսրովու և կին Շահրվարազայ ։

(2) Ըստ ոմանց՝ Ազարմիդուխտ կամ Զամբէկ ։

(3) Սեբէոս այսպէս ունի զԹիւ և զկարգ Թագաւորացն որ յաջորդեցին մեծին խոսրովու․ Կաւատ․ Արտաշիր, Խոռեամ, Բոռոր, Խոսրով յազգէ Սասանայ․ Ազարմիդուխտ․ Որմիզդ և Յազկերտ ։ Վարդան ոչ յիշէ զխոսրով, և Կիրակոս՝ զՈրմիզդ։ Իսկ ժամանակք տէրութեան սոցա մինչև ցՈրմիզդ են ամք հինգ ։

(4) Մահմետ Ա վարեաց զիշխանութիւնն ամս տասն, պակաս աւուրս յիսուն ։

(5) Մարտինէ դուստր էր քեռ Հերակլի ։

(6) Ի բնագրին մերում անխտիր գնի Ոմար և Ումար․

րաքիա։ Եւ սա էառ զՌատր (Ռատրա) յԱսորի իշխանէ, և աւերեաց քաղաքս բազումս։ Եւ առաքեաց զօր 'ի Պարսիկս, և գտան զնոսա ամբոխեալս, զի ոմանք զԱզտաձատ (Յազկերտ) և ոմանք զՈրմիզդ. առէին թագաւոր։ Եւ սպանաւ Որմիզդ, և թագաւորեաց Ազտաձատ։ Եւ զօրն Տաճկաց բազում աւար առեալ՝ դարձան և զօրացան 'ի վերայ Պարսից և 'ի վերայ Հռոմայեցւոցն։

Եւ առաքեաց Հերակլ զեղբայր իւր ըղ-Թէոդորիկէ 'ի վերայ Տաճկաց, և եկն յերկիրն Անտիոքու 'ի գեղն որ կոչի Կօսիտ։ Եւ կայր անդ սիւնակեաց մի աղանդոյն Քաղկեդոնի, Սիմէօն անուն, և գնաց առ նա Թէոդորիկէ և իշխանք իւր. և ասաց Սիւնակեացն. « Ուխտեցէք ինձ որ 'ի դառնալըն յաղթութեամբ ջնջէք զոչ ընդունողսն Քաղկեդոնի ժողովոյն, և հաւատամ ես թէ տացէ ձեզ Աստուած յաղթութիւն։ » Եւ երդուան նմա, և ասացին թէ՝ « Եւ մեք ունիմք պատուէր 'ի թագաւորէն սատակել զնոսա և կորուսանել։ » Եւ ոմն իշխան ուղղափառ յոյժ տրտմեցաւ, զի գիտաց եթէ հասեալ է 'ի վերայ նոցա բարկութիւն յԱստուծոյ։ Եւ եկեալ գնացին մեծաւ փքացմամբ, և 'ի ցասմանէն Աստուծոյ հարան և դարձան 'ի փախուստ յոյժ սակաւք, և այլն անկաւ 'ի սուրն Տաճկաց և առաւ ամենայն

պատրաստութիւն նոցա։ Եւ եղբայր թագաւորին մազապուր եղեալ և յամօթոյն չիշխէր յակն անկանել մարդկան։ Եւ դարձեալ զօրաժողով արարեալ Հերակլեայ 'ի ձեռն Արկլարայ զօրապետի(1), և հանեալ զորդին Խոսրովանէ (Խոռեմայ) և առաքեաց զնոսա 'ի վերայ Տաճկաց եւթանասուն հազարաւ, և երթեալ կռուեցան առ գետովն Դամասկեայ. և յաղթեցան Յոյնք, և անկան 'ի նոցանէ քսան հազար հեծեալ(2)։ Եւ որդին Խոսրովանէի մտեալ 'ի Հեմս առ Ոմար՝ տալ նմա զօր երթալ 'ի Պարս և հնազանդել նմա զՊարսս. այլ զի կային առ Ոմար դստերք Խոսրովայ թագաւորին Պարսից 'ի գերութեան, ասացին ցնա. «Որդի ապստամբի է, և երթայ որ ընդդէմ քո թագաւորէ. մի հաւանիր»։ Եւ առաքեաց Ոմար և սպան զնա խաչիւ մահու։ Եւ յետ այնորիկ առ զԴամասկոս(3)

(1) Միւս թարգմանութիւնն չունի զանունն Սնլար զօրավէր։ Թէոփանէս և Նիկեփոր պատմիչք Յունի, յիշատակեն 'ի սմին ժամանակի 'ի ծառայութեան կայսեր լինել և Թէոդորոս Ռշտունի և Վահան կամսարական որդի Սմբատայ՝ զօրավարութեան պաշտօնիւ։ Իսկ անունն Սկլար թերեւս իցէ Սըլար, որ նշանակէ զօրավար։

(2) Սեբէոս պատմէ զայս պատերազմ. և զտեղի ճակատամարտին ասէ լինել յայնկոյս Յորդանանու և ոչ առ Դամասկեայ գետովն. (յեր. 166)—Ղեւոնդ Երէց, տպ. Փարիզու. յեր. 21։ Թովմա Արծրունի, (յեր. 113)։

(3) Դամասկոս առաւ յամի 634, ձեռամբ Հալեդայ և Աբու—Օբէիդայ.

և զշրջակայ գաւառսն և զքաղաքսն, և զօրացաւ յոյժ :

Յայսմ ժամանակի ելեալ Սադն [1] զօրավարն Տաճկաց՝ 'ի յԱթրաբայ, և եհար զբանակ իւր 'ի վերայ Բուրաբ քաղաքի : Եւ ըն-եալ Ազդաճատ Թագաւորն Պարսից, և եկն բանակեցաւ ընդդէմ նորա 'ի վերայ Եփրատայ. և յետ այնորիկ եղեւ պատերազմ սաստիկ, և յաղթեցին Տաճիկքն Պարսից, և փախստական տարան զնոսա մինչեւ 'ի Կտիզբոն, սակաւք և անզէնք 'ի Տաճկաց՝ զբազումս և զզինեալս 'ի Պարսից. մինչ զի՝ ոմն իշխան 'ի Պարսից, սպառազինեալ յոյժ, երթայր փախստեայ առաջի մերկ և անթամբ ձիաւորի Տաճկի, և բազում անգամ դառնայր և հարկանէր 'ի վերայ սորա Տաճկին և ոչ բանէր նետն. և մինչ երթայրն, հանդիպեցաւ իշխանին բահ ցցեալ 'ի ճանապարհին, և փորձով եհար զբահն, և թափ անցոյց ըզնետն, և գիտաց թէ յԱստուծոյ է, և անկաւ յերիվարէն և սպանաւ 'ի մերկ Տաճկէն և կողոպտեցաւ : Եւ ոմանք ասեն, թէ պատմեաց Արաբիկն թէ՝ Պ ուռն(պայտ ձիոյ) կտոր

(1) Սադ էր որդի Մելքէ Աբու—Վաքքասայ, որ հրամանաւ Ոմարայ չոգաւ 'ի պատերազմ ընդդէմ Պարսից յամի 636 մերձ 'ի Տիզբոն, և զօրավար բանակին Պարսից էր Ռոստամ իշխանն Ատրպատականի՝ որդի Խուռոխ Որմզդի, զոր յիշատակէ և Սեբէոս, (յեր. 159):

մի կայր 'ի գրպանս, և տասն անգամ ձգեցաւ ձեռն և դիպէր յայն, որ և ինձ ինչ ոչ մեղանչէր ։»

Եւ յաւուրսն յայնոսիկ եղեւ տօն վկայիցն Սիմէօնի, և ժողովեցան անդ տօնողք. և իմացեալ Տաճկացն, գնացին և կոտորեցին զնոսա ։ Եւ բազումք գայթակղեցան, թէ Աստուած ընդէ՞ր մատնեաց, և զայն ոչ իմանան՝ թէ սահման առաջին տօնողացն բարձաւ. զի նոքա պահօք և արտասուօք տօնէին, և այժմ ուտելով և արբեցութեամբ. յորս ոչ հաճի Աստուած, և 'ի մեղս և յոչ աստուածպաշտութիւն համարեալ է այնպէս տօնեալն ։

Յետ այսորիկ եկն Եզդաճատ 'ի Տիգրիս գետ. գնացին և Տաճիկքն. և յորժամ տեսին զբազմութիւն նոցա Պարսիկքն, փլուցին զկամուրջն ։ Եւ ասեն Տաճիկքն. «Եկայք անցցուք, զի Աստուած որ օգնէ մեզ 'ի ցամաքի, օգնէ մեզ և 'ի ջուրս ։» Եւ անցին՝ և մի 'ի նոցանէ ոչ պակասեաց, և հարին զՊարսիկսն և փախուցին ։ Եւ Եզդաճատ չորիցս անգամ եկն 'ի վերայ Տաճկաց և յամենայնին յաղթեցաւ. և ապա իմացաւ եթէ հասեալ է նոցա կատարածն, և փախեաւ գնաց 'ի Սիկիստան յերկիրն Մարագանի, 'ի սահմանս Թուրքաց, զոր Մագաստանն կոչեն. և թաքեաւ անդ ամս հինգ, և սպանաւ 'ի Թուր-

քացն (1)։ Եւ այսու օրինակաւ բարձաւ թագաւորութիւնն Պարսից, տեւեալ ամս չորս հարիւր ութ և տասն, որ կոչէրն Սասանեայ. և առին Տաճկունք (Արաբացիք) զիշխանութիւն Պարսից։

Իսկ Հերակլ 'ի զօրանալն Տաճկաց սկսաւ յԱնտաքոյ մինչեւ 'ի Կոստանդնուպօլիս բազում կողոպուտս առնել 'ի քրիստոնէից, զի ասէր՝ լաւ է մեզ քան Տաճկաց։

Իսկ Ումար գնաց յԵգիպտոս, և ել ընդդէմ նորա եպիսկոպոսն Կիւրա, և խոստացաւ տալ նմա յամենայն ամի երկու հազար դահեկան՝ զի մի՛ մտցէ նա յԵգիպտոս, և դարձաւ։ Եւ Հերակլ բարկացաւ և եհան ըզԿիւրա յեպիսկոպոսութենէն, և առաքեաց զօրագլուխ մի Մանուիլ անուն, Հայ ազգաւ, պահել զերկիրն. և յորժամ գնացին հարկաւուքն զի առցեն զհարկն, ասաց. "Ես չեմ Կիւրա որ տամ ձեզ ոսկի. զի նա փիլոն ունէր և ես թուր։" Եւ չոքեցան զօրքն Տաճկաց յԵգիպտոս և առին զԵգիպտոս, և դարձաւ եկն յԵրուսաղէմ Ումարն. և եկն առաջի նորա Սոփրինոս (Սոփրոնիմոս) եպիսկոպոսն Երուսաղէմի, և ետես զՈմար զի զգեցեալ

(1) Սեբէոս (յեր. 168—169) ասէ՝ փախեաւ 'ի զօրս հարաւոյ. և (յեր. 214—215) ասէ՝ փախեաւ 'ի զօրս թետալաց և 'ի նոցունց սպանաւ։—Ղեւոնդ, Գլ. Բ. յեր. 23։ —Թովմա արծրունի, (յեր. 115)։

էր հին հանդերձ և հին մուշտակ, և երբեմն պատուական հանդերձ, և աղաչէր ըզնա զգենուլ, և նա ասէր. «Այս Աստուած ՚ի ձեռս իմ՝ զամենայն գանձս Պարսից ՚ի Տիզբոն, և նոյնպէս զՀռոմայեցւոցն և զԴամասկեայ և զամենայն գաւառաց Եգիպտացւոց, և ոչ փոխեցի զհանդերձ աղքատութեան իմոյ՝ զի մի մոռացայց զիս և հպարտացայց:» և ոչ առ ՚ի նմանէ: Իսկ ետ եպիսկոպոսին զիշխանութիւն աշխարհին. և խնդրեաց ՚ի նմանէ եպիսկոպոսն հանել ըզՀրեայսն յԵրուսաղեմէ, և ետ ՚ի հրամանս նորա (1): Եւ ետ հրաման շինել ՚ի Տաճարին տեղն մզկիթ նմա: Եւ անտի եկեալ յԱսորիս, և Յովհաննէս զօրապետ Հերակլի որ կայր յՈւռհա, գնաց առ նա ՚ի Կընշըի, և ետ նոցա հարիւր հազար դահեկան հարկ տարւոյ միոյ, զի այլ մի մտցեն ՚ի Միջագետս յարեւելից կողմանէ: Իսկ լուաւ Հերակլ և բարկացաւ և տարեալ զՅովհաննէս ետ ՚ի կապանս. զի Աստուած որ կամէր հանել ՚ի նըմանէ զաշխարհն, ետ նմա միտս դառն և հպարտ: Իսկ ՚ի գալ տարւոյն եկեալ մտին

(1) Ի հրովարտակին զոր ետ Օմար՝ Հայոց, ոչ միայն յիշատակի արտաքսումն Հրէից ՚ի սուրբ քաղաքէ, այլ և ոչ ոք. ասէ, ՚ի Յունաց որ ՚ի շրջակայս Երուսաղեմի իցեն, ՚ի դալ բերանց յուխտ, մի բնակեսցին ՚ի քաղաքին. քանզի Յոյնք ապստամբք համարեալ էին:

’ի Անջադետս Տաճկաւնք. և ’ի գալն յՈւռ-հա ելին ընդառաջ եկեղեցականքն սրբով. և իմաստութեամբ իւրեանց հանին զզօրա-կանքն սրբով՝ զՀռոմայեցւոցն որ անդ էին։ Եւ տիրեցին Տաճիկք Անջադետաց. Բայց Թուլմօզն և Տարա ոչ հնազանդեցան սրբով, և առին զնոսա բռնութեամբ և կոտորեցին զզօրսն որ ’ի նոսա։ Եւ յամին յայն եդին գլխահարկ ամենայն քրիստոնէի որ ընդ իւ-րեանց իշխանութեամբ։

Եւ յայսմ ամի մեռաւ Հերակլ՝ թագա-ւորեալ ամս երեսուն և ամիս հինգ։ Եւ թագաւորեաց Կոստանդիանոս որդի նորա ամիս չորս։ Եւ ունէր Հերակլ երեք որդի, միոյն անունն Կոստանդիանոս (Հերակլ—Կոս-տանդին) և միւսոյն Երակլէս, և կրսերոյն Երակլեակ։ Եւ Մարտինէ կինն Հերակլեայ դեղով սպան զԿոստանդիոս (Հերակլ—Կոս-տանդին), և թագաւորեցոյց զկրսեր որդին Երակլեակ, և դժուարեալ իշխանքն սպանին զԵրակլեակ և եդին թագաւոր զԿոստաս զոր-դին Կոստանդիոսի՝ զթոռն Հերակլեայ[1]։

Իսկ Ոմար յետ յաղթութեանն Պարսից

(1) Հերակլեայ յառաջին կնոջէ ծնաւ Հերակլ—Կոստան-դին, և ’ի Մարտինեայ յերկրորդէն ծնան Հերակլեակ. Դաւ-ւիթ և Մարինոս. իսկ Կոստաս, որ և յանուն հօրն Կոստան-դին կոչեցաւ, էր թոռն առաջնոյն Հերակլեայ։ Տեսէար. յէջ. 164։

և Հռոմայեցւոց՝ սպանեալ ՚ի ծառայէ միոջէ որ աղաչէր առնել նմա դատաստան, և նա յամեցուցանէր. և յաւուր միում յորժամ աղօթէր Ոմար, եհար զնա դանակաւ, և մեռաւ՝ թագաւորեալ ամս երկոտասան։ Եւ առ զիշխանութիւնն Օթման. և էր սա ագահ և անցանէր զսահմանաւ առաջնոցն, և խորհեցան իշխանքն սպանանել զնա. և իմացաւ Օթման և աղաչեաց զի ներեսցեն նմա, և կացցէ ՚ի սահմանս առաջնոցն, և թողին զնա։ Եւ եդին զօրագլուխ զՄաւի (1). և եկն Մաւի զօրօք ՚ի Կեսարիա Ստրատոնեան (2), և առ զնա և կոտորեաց զՀռոմայեցիսն որ ՚ի նմա։ Եւ ՚ի հինգ ամին Կոստանդիանոսի յաւարի հարեալ զերկիրն՝ գնաց։ Եւ թագաւորն Կոստաս ժողովեաց զօրս և արար բաժինս երկուս, զմինն ետ ՚ի ձեռս Հայկազնոյ ումեմն, որում անունն Դաւիթ էր (3),

(1) Մաւի կամ Մաւիաս (Մուավիէ), էր որդի Աբու—Սոֆիանայ իշխանին Մեքքայ.

(2) Կեսարիա Ստրատոնեանն էր յերկրին Պաղեստինացւոց. որ և կոչի Կեսարիա Պաղեստինի. զոր շինեաց Հերովդէս. և կոչէր յառաջագոյն տեղին՝ Աշտարակ Ստրատոնեան, զոր ինքն ՚ի պատիւ Օգոստեայ կայսեր անուանեաց Կեսարիա. և է այժմ աւերակ և երեք ժամու հեռի ՚ի Յոպպէէ։ Յովսեպոս, Պատմ. պատերազ. Հրէից. Գիրք Ա. Գլ. ԺԶ.

(3) Այն է Դաւիթ Սահառունի, զոր Հերակլ Ա. արար Կիւրապաղատ ՚ի վերայ աշխարհին Հայոց յամի 631. և զնա բանադրեաց Թէոդորոս Ռշտունի յամի 636։ Իսկ Սեբէոս՝

*և զմիւսն 'ի ձեռս Վաղինեայ[1], որ գնաց ընդ Ափրիկիա և սպանաւ 'ի Տաճկացն որք եկեալ էին հնազանդել զԱփրիկիա, և ելին ընդդէմ նորա և սպառեցին զՅոյնսն, սակաւ ինչ թուղեալ փախստէայս։ Եւ Դաւիթ գնաց վերին կողմամբն, և զօրքն Համայեցիք որք ընդ նմա, ոչ ինչ պակաս քան զՀագարացիսն գործէին կողոպտելով զքրիստոնեայսն, և առնուին ոսկի և արծաթ և հանդերձս, այլ և զկանայս խոյտառակէին յանդիման արանցն։ Եւ ոմն գնացեալ առ Դաւիթ՝ ասաց. «Ընդ դէ՞ր տաս գործել զօրացդ այդպիսի չարիս. զի՞նչ պատասխանի տաս առաջի Աստուծոյ»։ Իսկ նա զայրացեալ սաստեաց Յունականացըն, և ասէ. «Այս է պատճառ քրիստոնէից կորստեան, զի ոչ ինչ է խտիր ընդ մեզ և ընդ անհաւատսն գործովք և լրբութեամբս»։ Եւ առեալ զնոսա դարձաւ 'ի Կոստանդինուպօլիս։*

*Յայսմ ժամանակի Պատրիկն Գրիգոր ապստամբեաց 'ի յԱփրիկէ. և յանկարծ մտին Տաճիկքն յԱփրիկէ և գերեցին, և Գրիգոր*

Թուլմա անուն զոմն իշխան, ասէ, արձակեաց 'ի Հայս. (յեր. 179)։

(1) Վաղենտինանոս, քանզի օգնեաց Կոստասայ որ և Կոստանդ, ունել զաթոռն կայսերութեան, կարգեցաւ 'ի նմանէ զօրավար։ Զսա Արշակունի լինել ասէ Սեբէոս, յեր. 175։ Եւ սպանաւ յաղմկի ուրեք յամի 644, կամ ըստ Սեբէոսի՝ արկաւ 'ի հուր 'ի ժողովրդոցն՝ յետ գլխատելոյ զնա, (յեր. 179)։

հնազանդեալ գնաց 'ի Կոստանդինուպօլիս։

Եւ 'ի սոյն ժամանակս հրամանաւ Մաւեայ եկին հազար և եւթն հարիւր նաւ յԵգիպտոսէ, և առեալ զնոսա Մաւի՝ գնաց 'ի Կիպրոս կղզի և խնդրեաց 'ի նոցանէ հարկս. և ամրացան 'ի քաղաքս և ոչ կամեցան տալ. և յարձակեցաւ 'ի վերայ նոցա սուրն Հագարու և կոտորեաց բազմութիւն յոյժ։ Եւ չոգաւ 'ի քաղաքն Կոստանդիա որ գլուխ էր կղզւոյն, և լցեալ կայր մարդով և գանձիւք, և նստեալ շուրջ զնովաւ՝ էառ զնա և կոտորեաց և ելից զնա արեամբ. և արար պղծութիւնս յեկեղեցի նոցա 'ի կաթուղիկէն զոր շինեալ էր սուրբն Եպիփան(1), փոխանակ զի ոչ պահեցին զուղղափառ հաւատն Եպիփանու և ոչ զսահմանեալ կանոնս նորա և զգործս։ Եւ լցան զօրքն Հագարու յաւարէ նոցա, և տուեալ մասն եկելոցն յԵգիպտոսէ՝ գնացին յերկիրն իւրեանց։

Եւ յայնմ ժամանակի գրեաց սուրբն Աթանաս պատրիարքն Ասորւոց ուղղափառաց 'ի սուրբն Քրիստափոր (Գ.) կաթողիկոսն Հայոց, զի խնամ տարցի կողմանցն Պարսից և Աթուրացւոց (Ասորւոց) քրիստոնէից՝ զգու-

(1) Կոստանդիա, որ և Սալամինա, և արդ կոչի ըստ Տաճկաց Թուզլա, քաղաք է ծովեզերեայ, յորում շինեաց Եպիփան զհին եկեղեցին և մեծացոյց 'ի ժամանակս եպիսկոպոսութեան իւրում այնր քաղաքի։ Վարք սրբոց. յեր. 271։

շացուցանել զնոսա յաղանդոյն Նեստորի և Քաղկեդոնացւոցն. «Բանզի գտաք մեք, ասէ, Թուղթ զորքոյն Մարութայի, եթէ որպէս շնորհօքն Աստուծոյ ապրեցաք ազգս Հայոց ի Բարսումայէ ապականչէ (1)։ Յորում Թղթի գրեալ կայր այսպէս, եթէ Բարսումա մի էր յաշակերտացն Նեստորի և կայր ի Մծբին, և յորժամ լինէր ժողովն յԵփեսոս առ Թէոդոսիւ, ոչ գնաց Բարսումա ի ժողովն, այլ ասաց՝ եթէ «Ես ընդ իշխանութեամբ Պաւեայ կաթողիկոսի եմ զոր ձեռնադրեալ են Հայք ի Պարսից աշխարհնում. Եւ զի առաքեալ էին յԵփեսոսէ ի Պարսս խնդրակս Պաւեայ և այլոց եպիսկոպոսացն որ ընդ ձեռամբ նորա էին, և Պաւլի գրեալ Թուղթ ուղիղ դաւանութեան և ի ձեռն երկու ա-

(1) Այն է Բարծումա եդեսացի ջերմ աշակերտն Նեստորի. որոյ ուսուցմամբ մոլար վարդապետութեանն հաւանեալ և ի Հայս յաւուրս Քրիստափորի Ա. գրեաց կաթողիկոսն առ Բաբուէ (Պաւլէ), որ էր կաթողիկոս քրիստոնէիցն՝ որ ի Պարսս և յայլ տեղիս, առ ի զգուշացուցանել զնոսա յաղանդոյն Բարծումայի։ Իսկ սա զձեռամբ ածեալ զԹուղթն, որպէս և զայն զոր Բաբուէ գրեաց առ եպիսկոպոսունս արեւմտեայց և առ այլս առաքեալ զայնս Պերոզի, բազում ինչ ստութեամբ խառնելով զՀայոց և զԲաբուէայ խորոս եթէ ապստամբել խորհեցին ի տէրութենէ, և Պերոզ ետ սպանանել զԲաբուէ. Իսկ Հայոց ոչ ինչ կարաց Բարծումա հաւատացանել չարիս այլ և ի բաց մերժեցաւ անտի սպառնալեօք Ներշապուհ իշխանին Արծրունւոյ։ Թովմա Արծրունի, յեր. 88։ Տես և ի պատմութեան Միքայելի Չամչեանց, Հտ. Բ. յեր. 152-153։

բեղայի առաքեալ Յեփեսոս։ Եւ գրեալ էր ՚ի թուղթն թէ՝ «Մի՛ մեղադրէք զմեզ վասն չգալոյս, զի ընդ իշխանութեամբ անօրինաց համք, և երկեաք եթէ պատճառս կարկատեն ՚ի վերայ մեր, և սուրն սպանող հարցն մերոց դացէ և զմեզ. այլ զոր ինչ սահմանէք ուղիղ դաւանութիւն, հաւանիմք մեք։» Եւ թղթաբերքն առ գայլ Բարսումա եկին ՚ի Մծբին, և տեսեալ զթուղթն՝ էառ և դարձոյց զնոսա և ասէ. «Ես տանիմ զթուղթս, դուք դարձարուք և գնացէք զի մի կարծիս լրտեսութեան տայք Հոռոմայեցւոցն։» Եւ նոքա պարզմտութեամբ դարձան, և ոչ մեղադրեաց նոցա կաթողիկոսն, այլ ասաց՝ «Բարիոք արարիք լսելով եղբօրն մերոյ»

» Եւ յորժամ իմացաւ Բարսումա՝ թէ նզովեցաւ Նեստոր, բարկացաւ և գնաց առ թագաւորն Պարսից և ասէ ցնա. «Եթէ մի ՚ի Կոստանդինուպօլիս, առաջնորդ եկեղեցւոյ, խորհէր հանապազ բարիս առ Պարսիկս, և արգելոյր զՀոռոմայեցիսն ասպատակել ՚ի Պարսս, և վասն այսր պատճառի առաքեցին զնա յաքսորս, և զձեռնադրեալն ՚ի նմանէ զկարգն խոտեցին և նզովեցին։ Եւ կաթողիկոսս այս (Բաւէի) լրտես է առ ձեզ Հայոց և Հոռոմոց, և ահա թուղթս որ գրեալ է զձեզ անօրէնս և արիւնաւէրս։» Եւ հաւատաց նմա թագաւորն։ Եւ խնդր-

րեաց 'ի Նմանէ (Խարսումա) և ասէ. «Տուր ինձ իշխանութիւն 'ի վերայ ամենայն քրիստոնէից որ ընդ քո իշխանութեամբ են, զի հաստատեցից զկրօնս Նեստորի բարեկամի Պարսից, և յանհաւանելոյն ժողովեցից քեզ գանձս։» Եւ ետ Նմա իշխանութիւն և զօրք։ Եւ ասէ. «Տուր 'ի ձեռս իմ զկաթողիկոսս զայս։» Եւ ետ Նմա հրաման առնել զոր ինչ կամի. և գնաց առ կաթողիկոսն և ասէ ցնա. «Դաւանեա զՆեստորին.» և Նա ասաց. «Վա՛յ որ Նզովեցաւ Նեստոր, և եղիցի Նզովեալ։» Եւ կորեաց զլեզու Նորա։ Եւ լուաւ թագաւորն և տրտմեցաւ, և կոչեաց զԽարսումա և ասէ. «Ընդէ՞ր արարեր զայն։» Եւ ասաց՝ «Զի հայհոյեաց զքեզ։» Եւ ասէ թագաւորն. «Թէ այդպէս է, գնա և զգլուխն այլ կորեա,» և չոգաւ կորեաց։

» Եւ եկն 'ի Բաղդատ և հնազանդեաց Նեստորի զնոսա, և անտի գնաց 'ի Նինուէ. և կալաւ զՄարտիրոս արհի եպիսկոպոսն երկոտասան եպիսկոպոսօք և իննսուն երիցամբք և ասէ ցնոսա. «Կամ հաղորդեցէք զիս, կամ հաղորդեցարուք յինէն։» Եւ Նոքա ասեն. «Ոչ տամք զսրբութիւն շան, և ոչ առնումք զսրբութիւն 'ի շանէ։» Եւ Նա զայրացեալ սպան զքահանայսն և զեպիսկոպոսունսն, բերեալ 'ի Մծբին եդ 'ի բանտի 'ի տան Հրէի միում, և յետոյ քարկոծել ետ զօրացն, և

*ապա կախեաց զխաչն, և երևեցաւ նշան երկնաւոր 'ի վերայ նոցա, և հաւատաց Հըրեայն և մկրտեցաւ ։ Եւ ել անտի և կամեցաւ մտանել 'ի Հայս, և իմացեալ Հայոց առաքեցին և հալածեցին զնա և սպառնացան նմա, թէ կրկնէ զգալն՝ հրով մաշել զդնա և զզօրսն իւր ։ Եւ առաքեաց Խարասումա 'ի Պարսս, և գրեաց առ Թագաւորն՝ թէ ապստամբեցին Հայք 'ի քէն ։ Եւ առաքեաց Թագաւորն Պարսից 'ի Հայս առ զօրապետն՝ զի հրամանաւ Թագաւորին իւրեանց եկեսցեն 'ի Պարսս՝ թէ Թագաւորն ոչ կամեսցի գալ. և առ Թագաւորն նոյնպէս գրեաց գալ և պատասխանի տանել վասն հաւատոյ ։ Եւ գրեաց Թագաւորն Հայոց պատասխանի և ասէ. “Մեք քեզ վասն հաւատոյ չպարտիմք ինչ, ոչ գալ և ոչ պատասխանել. բայց թէ երթաս 'ի վերայ բարբարոսաց, մեք երիցամբք և խաչիւ գամք. այս է քո երդումն և մերն ։ Ապա թէ ոչ կամիս կալ 'ի բանն քո, և ոչ մեք կամք 'ի բանն մեր ։(1)” Եւ լռեաց Թագաւորն ։*

(1) Միխայէլ պատմագիր անգէտ թուի լինել պատմութեան Հայոց, քանզի 'ի սմին ժամանակի, այն է՝ առ Պերոզիւ, մարզպանք կառավարէին զՀայս 'ի կողմանէ Պարսից, և երևելի էր յայնժամ Վահան Մամիկոնեան ։ Դարձեալ զպայման դաշինն եդեալ 'ի մէջ Պերոզի և նախարարացն Հայոց, ոչ ուրեք գտանեմք առ պատմագիրս մեր աւանդեալ. Պերոզ 'ի թախանձելոյ Աշուշայի Վրաց բդեշխի և Շղոմ

» Այլ սուրբն սատանայի և երկրորդ ջրհե-
ղեղն աշխարհի այսու պատճառաւ ոչ եմուտ
'ի Հայս, այլ դարձաւ 'ի վերայ Ասորւոց վա-
սըն բազում մեղաց մերոց։ Այլ տարր երեք
ժողովք, 'ի Սամոսիզքոն, 'ի Պադրի, 'ի Պրաւ-
միա, և գրեաց դանօրէնութեան (1) սահմանն
Նեստորի՝ կանոնս։ Այլ զոչ հաւանեալն սա-
տակէր անողորմաբար, կամ 'նահատակիլ ար-
ժան է տանել ճշմարտապէս՝ պայծառագոյն
պսակաւ քան որ 'ի կռապաշտից կատարե-
ցան։ Բանգլի՝ որպէս լսեմ, եւթն հազար և
ութ հարիւր եկեղեցական եպիսկոպոս և ե-
րէց և սարկաւագ կատարեցան 'ի նմանէ, և
աշխարհականացն թիւ ոչ գոյ. և վասն այ-
սորիկ աղաչեմք զձեր սրբութիւնդ, զի ըստ
կարի երթայ 'ի ձէնջ բժիշկ ուր յաճախեաց
հիւանդութիւնն, կատարելով զԱռաքելոյն
թէ՝ «Դուք որ կարողդ էք, զտկարութիւն
տկարացն բարձէք.» զի մի պակասեսցի ցա-
րեանն սուրբ ամենեւին հեղձեալ յորոմա-
ցըն բազմութենէ։ Ողջունեմք զամենայն
աթոռակիցս ձեր մերովք աթոռակցօք։ Ող-
ջերուք 'ի վէմն հաւատոյ ուղղափառութեան
'ի Տէր մեր Յիսուս Քրիստոս։»

Ի թուին Ասորւոց ՉԿԵ (965) և Հայոց

շարադրոյ Գարեկի և այլոց միջնորդաց հետազօտել եթող յա-
ղատութիւն զինախաղաղական սաստիկ թեւութեան, յամի 466.

(1) Ցօրինակին՝ դանօրէնութեան։

ՂԲ (92)[1] կրկին աւերեցաւ Կիպրոս ՚ի Տաճկաց. զի լուան թէ դարձեալ ժողովեցան ՚ի նա բնակիչք, և գնաց Ալլուր (Աբու-էլ-Հավուար) զօրագլուխն Տաճկաց (Արաբաց) և արար զնա գետնափոր և եղև ծակամուտ, և ինչ ՚ի նմա ոչ եթող ստացուածս, բայց սակաւ մարդիկ, յորոց երդումն առեալ եթող անդ։ Իսկ Մաւի գնացեալ ՚ի Մոդոն կղզի և առ զնա և աւերեաց. և անտի գընացեալ ՚ի Կրետէս, առ զնա փութանակի, նմանապէս և զՄարութ և զԿու[2], որ են կըղզիք ամրագոյնք, առեալ և (եա) քակել զնոսա։ Իսկ ՚ի Մոդոս կղզի տեսեալ պատկերն պղնձի մարդակերպ, որ մի էր յեւթն հրաշիցն, զոր թաղուում պարանօք և նգօք շրջեցին. և գտաւ չափ երկայնութեան նորա հարիւր և հինգ ոտըն, և վառեալ ՚ի ներքոյ հուր՝ թուլացան շամփուրքն և քակեցին և կապեցին երեք հազար բեռն. և գնեաց զնոսա Հրեայ մի ՚ի Հեմսայ։

Յայսմ ժամանակի եղեւ սով սաստիկ, մինչև կերան և ընդ այլ գարշելիս՝ զմիմեանս։ Եւ ՚ի Գերմանիկէ, որ է Մարաշ, այր մի անունն Եղիշէ՝ բնակէր յայրի մի, և զկնի ատ-

(1) 965 Թուին Ասորւոց պատասխանէ 102 Թուոյն Հայոց։

(2) Մարութ է Արադոս կղզին, և Կու է Կով կղզի յիշատակեալն ՚ի Գործս Առաքելոց (ԳԼ. ԻԱ. 1), որ ՚ի Տաճկաց կոչի Գող ադասը։

վայն ոչ եթող զանօրէնութիւնն, այլ գողանայր մանկունս և ուտէր. և կարծէին զնա միանակեաց, և ինքն մխիթարէր զծնողսն մանկանցն. և յետ ուտելոյ նորա յիսուն և մէկ մանկունս, յայտնեցաւ և կախեցաւ: Իսկ ՚ի սոյն ժամանակս հողմ ուժգին հիւսիսային եկեալ փլոյց բազում եկեղեցիս և բրգունս բազումս, և քակեաց անտառս բազումս:

Իսկ յաւուրս Կոստանդեայ որդւոյ Հերակլեայ երեւեցաւ այր մի ՚ի Կոստանդինուպօլիս Մաքսիմոս անուն, որ խօսեցաւ հերձուածս ՚ի Քրիստոս՝ երկուս կամս և երկուս ներգործութիւնս, և ոչ ընդունեցաւ, բայց ՚ի Հռոմ ոչ արհամարհեցաւ յորժամ լուան(1): Իսկ յայսմ ժամանակիս յաւուրս Կոստանդի թոռինն Հերակլեայ, ՚ի Կոմանա Հայոց կոմս մի անուն Թէոդորէ խնդրեաց ՚ի պապէն Հռոմայ, որում անուն էր Ագաթոն, զի վասն այսորիկ արասցէ քննութիւն, զի չընջեն ասէ ոմանք վասն երկու կամաց և երկու ներգործութեանց: Իսկ Ագաթոն արարեալ ժողով

(1) Մաքսիմոս էր երէց վանացն Խրիսոպօլսոյ, որ խոստովանէր ՚ի Քրիստոս երկուս կամս, վասն որոյ ՚ի ժողովի ուրեք գումարելոյ ՚ի Կոստանդինուպօլիս յամի 675, դատապարտեցաւ և աքսորեցաւ ՚ի Լազիկէ: Զկնի հնգից ամաց (680) եղեւ ժողովն Կոստանդինուպօլսի, յորում որոշակի ընկալան դաւանել ՚ի Քրիստոս երկուս կամս և երկուս ներգործութիւնս ըստ երկուց բնութեանցն, և դատապարտեցին զմիակամնադաւանսն:

*հաստատեաց զհաւատն Մաքսիմոսի յետ հարիւր քսան և հինգ ամի ժողովոյն Քաղկեդոնի, զի ասացին թէ՝ բնութեանն յատուկ կամք ոչ իցէ և ներգործութիւն, և զայս ոչ զգացին յիմարեալքն այն, թէ և անձն այլ ոչ իցէ առանձինն և յատուկ՝ որ է Նեստորին* (1)։

*Ի թուին Յունաց ՋԿԶ* (966) *և Հայոց ՂԳ* (93), *և յերեսուն և եւթն ամի Հերակլեայ բռնակալութեանն, և 'ի տասն ամի Կոստասի և յինն ամի Ոթմանայ․ Մաւի զօրապետն կազմել ետ 'ի Տրապոլիս յոյժ բազմութիւն նաւաց՝ երթալ 'ի Կոստանդինուպոլիս։ Եւ էին ընդ վերակացուամն երկու գլխաւորք՝ որդիք հաւատացելոց, (որք) հանին զՎրանդ ծառայսն որ կային անդ, և սպանին զամենայն զզօրսն և այրեցին զնաւսն առհասարակ, և ինքեանք եղբարք 'ի մի նաւոյն՝ գնացին 'ի Հռոմ* (2)։ *Եւ զայս լուեալ Մաւեայ՝ արար այլ պատրաստութիւնս նաւաց, և կազմեաց զօրս և ետ 'ի ձեռն Աբուլղուրի (Աբու-էլ-Հաւուար) երթեալ 'ի Կոստանդինուպոլիս։ Եւ զայս լուեալ Կոստասի, եկն 'ի Փիւնիկէ, որ է Աքայ*(3)

(1) *Այս ժողով եղեւ յաւուրս Կոստանդնի Պոգոնատոսի յամի* 680․ *այն է զկնի երկերիւր քսան և հինգ ամաց ժողովոյն Քաղկեդոնի, զոր թերեւս թարգմանիչք սխալեալ են։*

(2) *Սեբէոս․ յեր․* 185 ։— *Ստեփան Ասողիկ․ յեր․* 123—124 ։— *Վարդան․ յեր․* 98 ։

(3) *Բառքս՝ որ է Աքայ յաւելեալ թուի 'ի թարգմանչէն․ զի ոչ 'ի Պտղոմայիս եկն կայսրն․ այլ մերձ 'ի լեառն Ոլիմպիոս որ և կոչի Փիւնիկ․ մերձ 'ի Պատարա քաղաքս ։*

և էր ընդ նմա Թէոդոսիէ եղբայր իւր բազ-
մութեամբ նաւաց ընդ ծով եկեալ: Եւ յոր-
ժամ գիտացին Հագարացիքն, առեալ զնաւսն
ելին ընդդէմ նոցա. և յայնմ գիշերի որ վա-
ղիւն լինելոց էր մարտն, կոչեաց Կոստոս Թա-
գաւորն Երազահան, և ասէ. "Տեսանէի զիս
յերազի 'ի Թեսաղոնիկէ:" Եւ ասէ երազա-
հանն. "Վա՜յ թէ չէիր ննջել, ոչ զքեզ յայն
տեղին տեսեալ. զի Թեսաղոնիկէ յաղթութիւն
այլոց թագաւորի (1):" Եւ արհամարհեաց ըզ-
բանս նորա Թագաւորն, և եղեւ պատերազմ
'ի վերայ ծովուն սաստկագոյնս՝ մինչեւ փոշին
որպէս 'ի ցամաքի պղտորէր զօդն, և յաղթե-
ցաւ Կոստաս և հազիւ վերծաւ սակաւուք.
և թիւ անկելոցն զօրս գաւին յեզր ծովուն՝
քսան՝ երեք հազար արանց: Եւ կամեցան գը-
նալ Հագարացիքն 'ի Կոստանդինուպօլիս և
եկն Պողոմէոս հրամանաւ Թագաւորին և
խօսեցաւ տալ հարկս և ստեաց, և գնացին
Հագարացիքն յերկիրն Ասորւոց. և եկն
Պողոմէոս և եբեր հարկս երեք աւուրց, և
Գրիգոր զորդին իւր պատանդ, և գնաց (2):
Եւ Կոստաս վասն երկեղի Թագաւորելոյ՝

(1) Թեսաղոնիկէ նշանակէ ըստ Յունաց Աստուածայաղթ. այսպէս կոչեաց զայն Փիլիպպոս արքայ Մակեդոնացւոց յառնուլն զնա յաղթութեամբ:

(2) Սեբէոս Եր. 185—186): և այլ պատմագիրք Հայոց Պօղոսեայ կոչեն զՊողոմէոս զօրավարն Յունաց, որ կատարեաց ընդ Մուաւեայ զդաշինս հաշտութեանն 'ի Դամասկոս.

սպան զեղբայր իւր Թէոդոսիէ, և եղեւ ատեցեալ յամենեցունց, և գնաց 'ի Հռոմ. և կոչէին զնա 'ի Հռոմայ 'ի Կոստանդինուպօլիս։ Եւ ելեալ 'ի Հռոմայ՝ եկն 'ի Սիրակուսա. և հաճեցաւ ընդ տեղին, և առաքեաց կոչեաց զորդին, և ոչ ետուն զօրքն, այլ արարին զնոսա Եւստոկարտոր՝ զԿոստանդինոս, զՏիբերիոս, զՀերակլ, և նստան 'ի Կոստանդինուպօլիս. և Թագաւորն ոչ իշխեաց ելանել 'ի Սիրակուսայ. զի լսէր թէ կոչեն զնա զօրքն երկրորդ Կայէն՝ սպանող եղբօրն։

Եւ յայսմ ժամանակի սպանաւ Աթման Թագաւորն Տաճկաց յԱթրապ քաղաքի վասն պիղծ գործոց, և պատառեցաւ իշխանութիւնն յերկուս, 'ի Բաբելոն և յԵգիպտոս։ Ալի փեսայ Մահմետի թագաւորեաց 'ի Բաբելոն և յԱսորիս, և յԵգիպտոս Մաւի թագաւորեաց։ Եւ փախեաւ Մաւի զթագաւորութիւնն յԱթրապոյ 'ի Դամասկոս, և թագաւորեաց ամս քսան։ Եւ զկնի եւթն ամի խաղաղութեանն գնաց Մաւի և աւերեաց զԳաղատիա և զԱսիա և զԲիւթանիա։

Եւ 'ի սոյն ժամանակս սպան Անդրէ ստրատելատ զԿոստոս 'ի Սիրամի(1), 'ի ժամ բաղանեաց լցեալ զգլուխն սապոնաւ, և 'ի փակել աչացն՝ եհար դանակաւ և մեռաւ, և թա-

(1) Կոստոս որ և Կոստանդ, սպանաւ 'ի Սիրակուսա քաղաքի Սիկիլիոյ և ոչ 'ի Սիրամին։

դաւորեցուցին զպատրիկ մի Հայ ազգաւ, Մժէժ անուն, և էր բարեպաշտօն ։ Իսկ որդին Կոստոսայ Կոստանդին զօր ժողովեալ՝ սպան զՄժէժ և ինքն Թագաւորեաց ընդ եղբարս իւր ։

Եւ 'ի սկիզբն Թագաւորութեան նոցա գերեցան յԱփրիկէ 'ի Տաճկաց ութսուն հազար անձինք, և դարձեալ եկին Տաճիկքն 'ի Լիւկիա (1) և կոտորեցան 'ի Յունաց երեսուն հազար անձինք, և այս էր առաջին պարտութիւն նոցա ։

Յայսմ ամի այր մի 'ի Բաղբաքոյ Կաղանիկէ անուն, Ասորի ազգաւ, առաջին իմացաւ ըզՆաւփտն (2), և այրեաց զնաւսն 'ի վերայ ծովուն՝ լցեալ զօրօք Տաճկաց։ Եւ յայսմ ժամանակի երեւեցաւ ծիածանդ զբոլանդակ գիշեր մի ըն երկնիւք՝ բոլորեալ և պարագրեալ զգունդն երկնից, և զարհուրեցաւ ամենայն աշխարհ ։

Իսկ յինն ամի Կոստանդիայ եկին 'ի Յունաց զօրք և բնակեցան 'ի լեառն Լիբանանու և կոչեցան ապստամբք, և Ասորիք կոչեցին ըզնոսա Ջուռաճանք. և առին 'ի Լիբանանու

(1) Միւս թարգմանութիւնն ունի Կիլիկիա, ըստ մեզ՝ կարծի թէ իցէ Լիւսիա գաւառ յարեւմտից Փռիւգիոյ ։

(2) Նաւփտն է նաւթն, այլ աստ կամի նշանակել զհրանական հուրն, որ վառէր և 'ի մէջ ջրոյ, որով Յոյնք յաղթող գտանէին 'ի ծովամարտս՝ այրելով զնաւս Թշնամեաց ։

լեռնէն՝ մինչեւ 'ի սեաւ լեառնն . և Թուի Թէ՝ այսու պատճառաւ կոչին Վրացիք Ճ՛ուռճանք (1), զի ապստամբեցին 'ի Հայոց ծառայութենէ և 'ի հաւատակցութենէ։ Եւ եկին Տաճիկք և ջնջեցին զապստամբսն։

Եւ յայսմ ամի Յովհաննէս որդին Մէժէժայ հալածեաց զԿոստանդին զեւթն ամիս վասն սպանութեան հօրն, և ապա սպանաւ և ինքն։ Եւ հպարտացաւ Կոստանդին յաղթութեամբն, և արհամարհեաց զերկոսին զեղբարսն և ընկէց 'ի թագաւորութենէ. և իշխանքն Լեւոն ասաց ցնա. «Ոչ տամք քեզ միայն թագաւորել։» Եւ նա կաշառաք կուրացոյց զզօրսն և կտրել ետ զլեզուն և զձեռն և զոտն Լեւոնի։ Եւ եղեւ նմա որդի և կոչեաց Յուստինանէ։

Եւ զկնի Մաւրեայ թագաւորեաց Տաճկաց Եզիտ որդի նորա՝ ամս երեք և ամիսս վեց, և մեռաւ։ Եւ ապստամբեաց Մուխթար 'ի Բաբիլոն, այր կեղծաւոր և սուտ որ ասէր զինքն տեսող և մարգարէ. և 'ի յԱթրաք թագաւորեաց Աբդլա (2)։ Եւ 'ի Դա-

(1) Վիրք առ Եւրոպացիս կոչին Ճիօրճիանս, և առ Մահմետականս Կիւրճիք. իսկ Վրացիք կոչեն զինքեանս Քարթուէլի, եկեալ 'ի Քարթլոս բառէն, որ համարի առաջին նախահայր իւրեանց։

(2) Մուխթար որդի էր Աբու—Օբէիդայ. և տիրեաց Քուֆայ՝ յամի 685. իսկ Աբդլա էր որդի Զուպէիրայ, որ էր խալիֆայ Մէքքէի.

մասկոս զորդին Եզիտայ խորհեցան դնել Թագաւոր. և եղեն պատերազմունք, և այր մի ծեր յԱ. Թրաքոյ(1) անկեալ 'ի մէջ նոցա աղաչէր խաղաղանալ. և ետ նոցա խրատ՝ 'ի յերեք նետս գրել երեք մարդոյ անուն, և խցէ յերիցն մի՝ ինքն, և ձգել զնետսն 'ի գետինն (և) տացեն առնուլ զնոցանէ զմինն տղայի մի, և որոյ նետն առցի՝ այն Թագաւորէ: Եւ ել վիճակն ինքեան՝ և Թագաւորեաց, որ և յետ ամի միոյ մեռաւ: Եւ դարձեալ բաժանեցան, բայց Թագաւորեաց Աբդլմլըք որդին Մրուանայ: Եւ յայսմ ամի մեռաւ Կոստանդին և Թագաւորեաց Յուստինիանոս որդի նորա: Իսկ Աբդլմլըքն նեղեալ յապստամբացըն՝ արար սէր ընդ Յուստինիանոս ամս տասն, և խոստացաւ նմա տալ յամենայն ամի հազար դահեկան և ձի մի և ծառայ մի, և Կիպրոս տացէ հարկ Տաճկաց և Յունաց: Եւ Հայք ձեռն ետուն 'ի Յոյնս: Եւ զի երկրորդ անգամ բնակեցան 'ի Լիբանան երկոտասան հազար ապստամբք, հանին զնոսա Հռոմայեցիք և տարան 'ի Հռոմ(2):

(1) Այն է Մրուան որդին Հաքեմայ, որ ել յիշխանութիւն խալիֆայութեան յամի 684:

(2) Աբդ—ըլ—Մէլէք որդին Մրուանայ նեղեալ յապըստամբացն որ 'ի Լիբանան լերին 'ի Մարդայիտաց, զորս Սեբէոս (յեր. 216) Մարդոցէք անուանէ, անսեալ և զյաջողուածս Յունաց, կռուէ դաշն խաղաղութեան ընդ Յուստինիանոսի Բ: Աբդ—ըլ—Մէլէք յանձն առնու հատուցանել նմա

Ի սոյն ժամանակս էր սուրբ վարդապետն Յակոբ ուռհայեցին 'ի գաւառէն Անտիոքայ, որ ուսաւ լեզու և գիր յունարէն և եբրայեցերէն, որ գնաց և եմուտ պատճառաւ ընդ հրէութեանքն, և Թարգմանեաց զծածուկսն Հրէից յասորի լեզու: Եւ արար մեկնութիւնս բազում գրոց, և եղեւ եպիսկոպոս Ուռհայոյ, և կատարեաց զկեանս իւր յերկիրն Փեսնոյ, 'ի վանսն որ կոչի սուրբ Յակոբայ:

Իսկ Աբդլայն հնազանդեաց զապստամբսն: Եւ 'ի ժամանակին յայնմիկ գերեաց Յուստինիանոս զԿիպրոս. և եղեւ չմ.ր ընդ միմեանս Պարսից (Արաբաց) և Հոռոմոց: Եւ առաքեաց զՄահմէտ Աբդլայն՝ զամիրայն Դ զօրօք յերկիր[1] Հոռոմայեցւոց 'ի Կեսարիա: Եւ Հոռոմք 'ի փարձաւ առեալ զԱկիլաւսն, եկին պատերազմել ընդ Մահմէտ, և կոտո-

տամ յամէ հազար գահեկան ոսկի, նժոյգ մի և ծառայ մի, և Յուստինիանոս շնորհէ Ամիրային զկէս հարկացն Կիպրոսի, երկրին Հայոց և Վրաց, նոյնպէս յանձն առնու կայսրն ապատել զԱրաբացիս յարշաւանացն Մարդայիտաց, ընդ որս անդադար 'ի կռուի կայր ձեռնտուութեամբ Հայոց, որոց զօրավարէր Թէոդորոս Ռշտունի՝ ըստ պատմելոյ Սեբէոսի. և 'ի լրումն այսր յօդուածոյ դաշինն Յուստինիանոս 'ի բաց հանեալ 'ի Լիբանանէ երկոտասան հազարս յապստամբացն Մարդայիտաց, ցրուէ զնոսա 'ի Հայս, 'ի Պամփիլիա և 'ի Թրակիա:

(1) Այս Մահմէտ էր որդի Մրուանայ եղբօր Աբդ—ըլ—Մելէք ամիրայի, որ յամէ 692—708 կառավարեաց ըզՄիջագետս, զՀայս և զԱտրպատական:

րեցան Հռոմայեցիք , և մնացեալ Ակլաւքն եղեն ընդ Տաճկաց՝ ութն հազար անձինք , և եդին զնոսա Տաճիկքն յԱնտաք և ՚ի Կռուրիս (1) տուեալ նոցա կանայք և ապրանք ։

Ի ՌԶ (1006) Թուին Ասորւոց և ՚ի ՃԼԳ (133) Թուին Հայոց եկին Հռոմայեցիքն յերկիրն Անտաքայ պատերազմել ընդ Տաճկաց , և կորեան ՚ի նոցանէ բազումք , և մնացեալքն ՚ի նոցանէ փախեան . բայց և յերկոցունց կողմանցն անկան բազումք զառաջինն , և ապա յաղթեցան Հռոմայեցիք . և Թիւ ապանելոցն յերկոցունց կողմանցն գտաւ քառասուն բիւր , յերեքն Ասպըլ ամաց , և տեղի պատերազմին Պուշփրիքն , ուր մինչեւ ցայսօր երեւին ոսկերքն ՚ի հերկել անդաստանացն ։

Ի յեւթանասուն և հինգ ամին խուրեանց Տաճկունք բարձին զպատկերս ՚ի դրամէ և ՚ի դահեկանէ , և չինեցին միայն գրով առանց պատկերի դահեկանս և դրամս և փող՝ վասն նախատանաց պատկերապաշտութեան ։ Ի սոյն ժամանակս Յուստինանոս խառնեցեալ սպան զբազումս յիշխանացն և ՚ի զօրացն , և զչարեալ կալան զնա և կտրեցին զքիթն և եդին ՚ի բանտի , և Թագաւորեցուցին զոմն Լեւոն անուն (2) ։ Իսկ Տափիմրոս (Աբսիմարոս) զօրապետն որ էր ՚ի Կիլիկիա , եկն և

(1) Կուրիս քաղաք է ՚ի սահմանս Եփրատացւոց ։

(2) Ղեւոնդ . Գլ . Ե . յեր . 37 .

եհան զԼեւոն և ինքն թագաւորեաց . և սա հնազանդեցոյց զՍկլաւոն . և սա ելեալ 'ի վերայ Տաճկաց յերկիրն Սամիրան, և սպան 'ի նոցանէ հինգ հազար այր, և առեալ աւար և գերի՝ դարձաւ :

Իսկ Աբդլա(1) կացոյց երկու զօրավարս, զՄահմէտ և զՀաջաջ, որք անողորմաբար կային և վարէին զիշխանութիւնն Այս Մահմէտ նենգիւ ժողովեաց զարքայազունսն Հայոց 'ի Նախջաւան, և ջանաց դարձուցանել 'ի կրօնս իւր. և յոչ հաւանելն նոցա, ածեալ 'ի մեծ եկեղեցին՝ հրով այրեաց զնոսա(2) : Յայսմ ժամանակի գովեցաւ իմաստութեամբ և աստուածպաշտութեամբ այր մի 'ի յՈւռհա՝ Աթանաս անուն, որդի Գումայի, և տարան զնա առ Աբդլա և մեծարեաց զնա, և եդ 'ի տան թագաւորութեան իւրոյ մատակարար և վերակացու տան և ամենայն ընչից իւրոյ. և տայր նմա յամենայն ամի վաթսուն հազար դահեկան, և թիւ զօրացն տայքին նըմա ամեն մին՝ դահեկան մի 'ի տարին : Եւ սա արար բազում դիւրութիւնս քրիստոնէից ուղղափառաց : Եւ սա շինեաց յՈւռհա երկուս եկեղեցիս, զմինն յանուն Աստուածած-

(1) Կոչի սա և Աբդ—ըլ—Մէլէք :

(2) Ղեւոնդ Գլ. Զ. յէր. 56:—Ստեփ. Ասողիկ, Գիրք Բ. Գլ. Դ. յէր. 127:—Յովհ. Կաթ. Գլ. ԻԱ. յէր. 125.—Սամուէլ :—Վարդան, յէր. 99:—Կիրակոս, յէր. 37:

նին և միւս եւս յանուն սուրբ Թէոդորոսին, բերեալ զնշխարս նորա յԵւխայիտոյ՝ որ է Ապլաթայն(1) և եդ անդ։ Այլ 'ի մէջ երկու եկեղեցւոյն շինեաց գետնափոր տեղի Պաստառակին, և գնեաց զսուրբ Պաստառակն 'ի Տաճկաց 'ի յիսուն հազար դահեկան, զի ըստ իշխանութեամբ նոցա էր յայնժամ, և եդ զայն անդ 'ի ծածուկ. և իջանէին սանդղօք և 'ի սօնին հանէին 'ի տեսիլ ժողովրդոցն, մինչև 'ի ժամանակս Յովհաննէս պատրիարքին, և նա ամփոփեաց եւս խորագոյնս, եդեալ 'ի մէջ վիմաց, և ոչ ուրեք գտանի. որ և գրեաց իսկ ճշմարտապէս որ ամփոփեացն թէ՝ «Ես պահեցի առանց գտանելոյ վասն երկեղի անօրինացն.» և թէ՝ ո՞ւր է զոր Հռոմայեցիքն ունին, ոչ գիտեմք։

Եւ յայսմ ժամանակի Թագաւորեաց Աբդըլմլքին որդին Մասլամա յերկրին Կընշրոյ, որ է Հալպ։ Ի տասն և ինն ամին իւրոյ Աբդըլմլքը առաքեաց զՄսլիմ(2) 'ի վերայ Անուեստիոյ և առ զնոսա։

(1) Ապլլաթայն է Ապլլադա կոչեցեալն 'ի հնոց. որ հասարակ անուամբ Եւխայիտա Չանաշի. և է գիւղ 'ի սահմանս Ամասիոյ Գոնտացւոց, ուր ծնաւ սուրբն Թէոդորոս ստրատելադ. և անդ ամփոփեցաւ մարմին նորա։

(2) Մասլամա կամ Մսլիմ. ըստ Յունաց՝ Մասալմաս. էր արդարեւ որդի Աբդ—ըլ—Մէլէքայ, որ վարեաց զկնի եղբօր իւրոյ Վալիթայ՝ զիշխանութիւնն խալիֆայութեան, և ըստ կարգի պատմութեանն համարի եթէ առ կենդանու-

Եւ 'ի սոյն ամի ել Յուստինիանոս 'ի բանտէն զկնի տասն ամի արգելմանն, և գնաց առ Խաքանն Թագաւորն Խազրաց. և նա խընդութեամբ ընկալաւ զնա, և ետ զդուստր իւր նմա 'ի կնութիւն. և ձեռն ետ 'ի Բուլղարն, և եկն 'ի Կոստանդնուպօլիս և Ափիմրոս (Աբսիմարոս) փախեաւ, և զԼեւոն սպան և զքաղաքումն կոտորեաց յարքունեաց և զայլսն աքսորեաց, և արար զարքունիսն դատարկս. և գտեալ վեց հազար Տաճիկ գերի՝ ազատեաց գնալ խաղաղութեամբ։ Եւ բազում զօրս առաքեաց 'ի խնդիր կնոջն և խեղդեցան յալիս ծովուն. և լուեալ Խաքանն որոտմեցաւ և առաքեաց մեղադրեաց նմա և ասէ. «Անմիտ, ընդէ՞ր բազմութիւն զօրաց առաքեալ 'ի խնդիր կնոջ քո. կարծէիր թէ արգելո՞ւլ կամիմ. արդ առաքեա սակաւ և առ զնա։» Եւ լուեալ ուրախացաւ, և ա-

թեամբ հօրն վարեաց և զպաշտօն զօրավարութեան, նոյնպէս և եղբարցն Վլթայ և Սուլէյմանայ։ Ղեւոնդ գրէ, թէ Սուլէյման յորժամ փոխանորդեաց զիշխանութիւնն, առաքեաց զՄսլիմ զօրավար 'ի գրաւել կարիս 'ի Դարբանդ (Գլ. Ձ. յեր. 64)։ Յովհաննէս կաթողիկոս ('ի պատմութեան Գլ. ԻԱ. յեր. 126). Վթալիման անուանէ, եթէ չիցէ խանգարեալ յօրինակչաց, զոր մարթ է ընթեռնուլ Մսլիման և Սուլէյման, բայց յետինն ուղղագոյն երեւի. քանզի յաջորդ գնէ զնա Վլիթայ Ցեւս և 'ի Մովսէս կաղանկայտուացի (Հա. Բ. յեր. 46)—Ստեփան Ասողիկ (յեր. 126), որ գրէ համաձայն Ղեւոնդայ—իսկ Կիրակոս (յեր. 37. տպ. Մոսկուայ) Սուլէյման, ասէ, առ զԴարբանդ։

ռաքեաց երեր զկինն իւր և զորդին Տիբե-րիոս (1)։

Ի Թուին Ասորւոց ՌԺԵ (1015) և Հայոց ՃԾԲ (152) (2) և շինեաց Մսլիմն զՄանուեստրիա ընդարձակս՝ բարձր և ամուր պարսպով, և կացոյց 'ի նմա զօրս՝ կալ ընդդէմ Հոռոմայե-ցւոցն։ Իսկ 'ի սոյն ամի մեռաւ Աբդլմլիքն և Թագաւորեաց Վլիթ ամս ինն և ամիսս հինգ։ Յայսմ ժամանակի հալածեաց Յուստինիանոս զազգս Հայոց յիշխանութենէն իւր 'ի ձեռն Փիլիպիկոսի, և խնդութեամբ ըն-կալան զնոսա Տաճիկք 'ի Մելտինի և 'ի Մի-ջագետս։ Իսկ եղեւ մեծ ամբոխութիւն ուղ-ղափառաց Ասորւոց՝ կալով ընդդէմ երկա-բնակացն, և շինեցան վանորայք և անա-պատք և գիւղօրէք Հայաստանեայց; և կան մինչեւ ցայսօր։

Իսկ անօրէնն Մահմէտ յարոյց սաստիկ հալածանս հաւատացելոց Արաբկացն, և ըմ

(1) Յուստինիանոս փախուցեալ առ Թագաւորն խազ-րաց, ամուսնացաւ ընդ դստեր նորա Թէոդորայ, յորմէ ե-ղեւ Տիբերիոս։ Իսկ Ապսիմար երկուցեալ 'ի նենգաւորու-թենէ նոցա, խորհեցաւ կաշառել զԹագաւորն խազրաց առ 'ի սպանանել զՅուստինիանոս, որոյ իմացեալ փախեաւ առ Բուլղարս, և առեալ 'ի նոցանէ յօգնականութիւն հնգե-տասան հազար զօրս, գիմեաց 'ի վերայ Կոստանդնուպօլսի և առ զայն. (Թէոփանէս, յեր. 312։—Նիկեփոր, յեր. 27)։ Ղեւոնդ՝ խաքանայ զօրօքն, ասէ, եկեալ և առեալ Կոստանդ-նուպօլիս. յեր. 38։

(2) Յօրինակին ՃԽԴ։

բըռնեաց զգլխաւորն նոցա և չարչարեաց ազգի ազգի հարուածօք վասն հաւատոյ և սպան զնա, և ձգեցաւ մարմին նորա պաւուրս երեսուն, և ոչ հոտեցաւ և ոչ մերձեցաւ թռչուն և ոչ գազան, և յամօթ եղեւ Մահմէտ ։ Եւ հաստատեցան քրիստոնեայքն ՚ի մեռանելն նահատակութեամբ վասն անուանն Քրիստոսի՝ բազմութիւն յոյժ. և նա անխնայ կոտորէր ։

Ի սոյն ժամանակս գնաց Մսլիմ յերկիրն Կապադովկացւոց և սպանին ՚ի Հռոմայեցւոց քառասուն հազար անձինս ՚ի զօրացն Յուստինեայ. և առին զՏօնա (Տիանա) քաղաք և առ Մսլիմ զՏարանդա, և եկեալ ՚ի Կիլիկիա առ զՈ՛ռձոմ և զՊաւտանդա, և այլ բազում քաղաքս. Եւ զօրն Տաճկաց կայր ՚ի Տարանդա յայնմ հետէ ։ Իսկ Փիլիպիկոս սպանեալ զՅուստինիանոս և զՏիբերիոս որդի նորա, և թագաւորեաց ինքն ։ Եւ ՚ի սոյն աւուրս ել հրաման ՚ի Վլթայ՝ զքրիստոնեայս ածել յեկեղեցի և սպանանել՝ եթէ ոչ ուրանան ՚ի հաւատոց. և անթիւ կոտորեցան ՚ի հրամանէ նորա ՚ի Քրիստոս հաւատացեալք։ Եւ Փիլիկոսս (Փիլիպիկոս) թագաւոր վարժեալ էր գրովք սրբովք, այլ և արտաքնոցն ևս. նա ջանաց և արհամարհեաց զվեցերորդ ժողովն զաղանդն Մաքսիմոսի, և ոչ կամեցան խոնարհեալքն յաղանդն ։ Ի սոյն ժամա-

նակս առ Մսլիմ զԱմասիա, և առին զԱնտիոք Պիսիդեայ. և յետ երկու ամին թագաւորելոյ Փիլիկոսի, հանեին զաչս նորա և աքսորեցին. և թագաւորեաց Անաստաս ամս երկու։ Իսկ մեռաւ Վլիթ և թագաւորեաց Սուլէման ամս երկու։ Իսկ 'ի սոյն ամի առ Մսլիմ զերկիրն Գաղատացւոց և զբերդսն որ 'ի նմա։ Իսկ առաքեաց Անաստաս զօր 'ի կողմն արեւմտից, որ և ամփոփեալք սպանին զօրագլուխն իւրեանց. և թագաւորեցուցին զԹէոդոսիէ, և փախեաւ Անաստաս 'ի Նիկիա։

Իսկ Մսլիմ գնաց յերկիրն Թուրքաց և դարձաւ բազում աւարաւ. և գնաց 'ի վերայ Ասիոյ և առ զԲրաքմիա (Պերգամոն) և զՍարդիս և գերեաց։ Իսկ հպարտացեալ Մսլիմ և ժողովեալ երկու հարիւր հազար հեծեալս և հինգ հազար նաւ լի սպառազինօք, և առ ընդ իւր այլ եւս երկոտասան հազար զօր 'ի Բուլղարաց, և վեց հազար ուղտ և վեց հազար էշ բարձեալ կերակրօք եւ պատրաստութիւն բազում ամաց. և եդ զօրագլուխ զՕմար և երդուաւ քակել զԿոստանդինուպօլիս. և կային ընդ նմա զեհիդք (1) երեսուն հազար. և եղեն երկու բանակ, միոյն ընդ ծով և միւսն ընդ ցամաք։ Իսկ Լեւոն զօրագլուխն Թէոդոսիէ (2) եկն առ Մսլիմ և եդ ընդ նա ուխտ

(1) Ջէհէտ նշանակէ ասա՝ կամաւոր զինուոր։
(2) Թէոդոսիէ, ընթերցիր Թէոդոսեայ։ Մատենագիրք

Սալիմ, որ թէ առնու զքաղաքն, զնա դիցէ թագաւոր. եւ եմուտ (Լեւոն)՝ի Կոստանդինուպօլիս։ Եւ Տաճկունք ընդ որ պատառ եւ ընդ քաղաք անցանէին, տային բան խաղաղութե։ Եւ ինքն Սուլիման թագաւորն եկն զկնի նոցա երկոտասան հազարաւ, եւ նստաւ ՚ի Նիկիա, եւ սպարեաց զնա։ Իսկ Թագաւորն Թէոդոսիոս իմացաւ զտուած Լեւոնի, եւ կալաւ զընտանիս նորա եւ արկ ՚ի յարգելս. եւ Լեւոն փախեաւ եւ եկն առ Սուլիման, եւ առ վեց հազար հեծել՝ իջաւ ՚ի վերայ Ամուրին(1) եւ ասաց ընդ քաղաքն պաղտ երդմամբ թէ՝ “Նենգութեամբ չըջիմ ընդ սոցա։” Եւ նոքա գնացին բերին զընտանիսն եւ ետուն ցնա. եւ սկսան գնալ ՚ի Կոստանդինուպօլիս երկոքեան կողմանքն. եւ ՚ի յառաջանալն նոցա՝ ելին զօրք քաղաքին ընդ առաջ Լեւոնի եւ հնազանդեցան նմա, եւ տուին ՚ի ձեռս նորա զորդին Թէոդոսի եւ քարոզեցին թագաւոր, եւ դարձան ՚ի քաղաքն։ Եւ լուաւ Թէոդոս եւ պերծեաց զգլուխն եւ եղեւ եկեղեցական։

Եւ Լեւոն Թագաւորեաց, եւ լուեալ Սուլիման խնդաց՝ կարծելով թէ տայ զքա-

ԺԱ. ԺԲ դարուց դյատուկ անուանան վերջաւորեալս ՚ի է. ՚ի պարծ ածեն եւ փոխանակ ստուակման. ՚ի տեղի էայ մասնկան որպէս Պաղեստինէ, խորհանէ. առ որս մեք յաւելաք ուրեք զտառն է։

(1) Ամոր կամ Ամորիոն կամ Ամորիա է քաղաք ՚ի Գաղատիա։

զպաքն ՚ի ձեռս նորա . և նա սկսաւ խաբել զնա բանիւք , և ամրութիւն առնէր քաղաքին . և գիտաց Սոլիմ թէ խաբէ զնա , էանց ՚ի միւս կողմն և զօրքն երթային առաջի , և ինքն չորս հազարօք զկնի , և ելին ՚ի վերայ նորա Բուլղարք փարձաւորք և կոտորեցին զչորս հազարսն , և զերծաւ Սոլիմ , և էանց ՚ի միւս բանակն . և բախեցին զօրքն Տաճկաց յարեւմտից կողմն քաղաքին հանդէպ Ախի Գրանն . և կային ՚ի ծովու կողմանէն երեսուն հազար արանց որ պահէին զնաւսն , և քսան հազար պահէին ՚ի Բուլղարաց կողմանէ , և պատերազմէին ՚ի ծովէ և ՚ի ցամաքէ ընդ քաղաքին . և ելեալ Բուլղարք յոլովս կոտորեցին ՚ի Տաճկաց : Եւ երկեան Տաճիկքն. զի եհաս ձմեռնն , և էառ զնոսա տարակոյս ահի ՚ի ծովէն և ՚ի Բուլղարացն և ՚ի քաղաքէն . և եղեւ սով ՚ի Տաճիկքն որ ուտէին զաղբ և ըմպէին զմէզ իւրեանց : Եւ մինչ յայս նեղութիւնս կային , մեռաւ Սուլիման թագաւորն Տաճկաց , և՛ առ զթագաւորութիւնն Ամար , և առաքեաց առ Սոլիմն թողուլ զքաղաքն և երթալ . և դարձաւ տակաւուք և այլքն ընջեցան սովով : Եւ յայնմ հետէ Ամար (1) սկսաւ նեղել զքրիստոնեայսն վասն քինու՝ թէ զօրք նորա անցան (ընջեցան)

(1) Միւս թագաւորութիւնն Մալիքայ ասէ նեղել զքրիստոնեայս ՚ի վրէժ քինու սպանման զօրաց իւրոց :

'ի պատճառս նոցա, և ջանայր դարձուցանել 'ի կրօնս իւր։

Եւ յայսմ ժամանակի այր մի Սեւերոս անուն, Նորի ազգաւ, սկսաւ ասել ընդ Հրեայսն՝ թէ «Ես եմ Քրիստոսն. ժողովեցէք ինձ; որպէս զի պատրաստեմ զօրս և երթամք թագաւորեմք յԵրուսաղէմ։» Եւ հաւատացին 'ի նա, և ժողովեցին զանձս բազումս. և խնդրեցաւ Օմարայ՝ կոչեաց ըզնա և առ զժողովեալ գանձն. և եթող զնա։ Եւ այս Օմարս եդ օրէնս չառնուլ դքրիստոնէից վկայութիւն, և ոչ հեծնուլ քրիստոնէից 'ի թամբօք գրաստ. և թէ սպանանէ Տաճիկն դքրիստոնեայն, ոչ մեռանի վասն նորա, այլ տայ զարեան գինսն հազար դրամ։ Եւ արար զեկեղեցականսն 'ի հարկէ, որ ոչ տան յամենայն ստացուածոց իւրեանց 'ի յարքունիս։ Եւ սա եդ օրէնս ոչ ըմպել գինի Տաճկի։

Եւ մեռեալ Օմար՝ թագաւորեաց Իզիտ ամիս չորս։ Ի վերայ նորա ապստամբեաց այր մի 'ի Հեր, որ ասէին և Նեմս Իզիտ, և յոլովք եղեն ընդ նմա, և առաքեաց Իզիտ թագաւորն և սպանին զնա։ Ի սոյն ժամանակս բազում աշխարհ անմարդ եղեւ 'ի սովոյ՝ 'ի դառ մարախոյ։ Նոյն Իզիտ առաքեաց ընդ ամենայն երկիր Ջնջել զպատկերս յեկեղեցեաց, 'ի հանդերձից, 'ի դրոց և յամենայն կրաց։

զնայքն և ասէին ընդ կաթողիկոսն Հայոց, թէ «Յակոբիկքն զմարմինն Քրիստոսի ապականացու ասեն.» և գային առ Աթանաս և ասէին, թէ «Հայք Յուլիանոսք են։» Եւ գրեցին առ իրեարս երկու պատրիարքքն Հայոց և Ասորւոց՝ մեղադրութիւնս։ Եւ ապա խնդրեցին զաւանութիւնս ՚ի միմեանց. և գրեցին զաւանութիւն և տեսին՝ զի մի էին երկուցն, բայց յանմնս միացեալ էր ազգատրուածն Եգիպտոյ։ Իսկ Յովհաննէս պատրիարքն Հայոց, այր սուրբ և սքանչելագործ և յոյժ վարժ ծայրին գրոց, այլ և արտաքնոցն։ Սա խնդրեաց (առնել) ժողով աշխարհախումբ հանդիսիւ ՚ի գեղաքաղաքն Մանծկերտ՝ յերկուց կողմանց՝ Հայոց և Ասորւոց. և արարին քննութիւն ուղղափառութեանն, և բանադրեցին՝ երէցն և սարկաւագն Յուլիանիտսք(1). և չկայր ինչ մէջ ընդ Հայս և ընդ Ասորիս, բայց միայն արարողութիւնս՝ որ չարարին ոչինչ փոյթ։ Բայց ոմանք յԱսորւոց ասացին, թէ ՚ի Գործս առաքելոցն գրեալ է թէ՝ «Աստուած յարոյց զՅիսուս ՚ի մեռելոց, և այսուհետև ոչ դառնալ յապականութիւն(2)։» Եւ որոտմեցաւ հայրապետն Հայոց, և ասաց թէ՝ «Այդ այնպիսի է, որ թէ նախ ապականացու էր։» Եւ խնդրեաց

(1) Բառքս՝ և բանադրեցին՝ երէցն և սարկաւագն Յուլիանիտսք անկարգք թուին, եթէ չգտացէ այլ բառ կամ բայ պակաս։

(2) Գործք Առաքելոց. Բ. 31, 32։

զօրինակն Հայոց, և գտաւ ճշմարիտն՝ ուղէշ
և էրն, և բերեալ զՅունացն՝ նոյնպէս գը-
տին. և այն որ ասէին թէ՝ «[illegible] ոչ
դառնայ յապականութիւն,» չգտաւ ուրեք
գրեալ. և ամաչեաց տգիտութիւն նոցա, և
ուրախ եղեն. և զթիւրութիւնն Եզրայ որ
՚ի սակաւս մնացեալ էր, ուղղեցին: Եւ ըզ-
Խարշապուհ և զԳաբրիէլ նզովեցին. և ե-
դին դաշն սիրոյ և խաղաղութեան չառնուլ
չարախօսութիւն ՚ի միմեանց Հայք և Յու-
նք: Եւ եղեւ այս ՚ի Թուին Հայոց ճԿԴ
(164)[1], և Յունաց ՚ի ՌԼԵ (1035)[2]:

Յայսմ ամի ապստամբեաց Եգիպտոս ՚ի
Տաճկաց, և գնաց Տաճիկն և պատեաց ըզ-
նոսա, զի որք զերծանն ՚ի կոտորածէն, ՚ի նաւ-
մտեալ փախեան: Եւ ՚ի գալ ամին ել Թուր-
քըն յերկիրն Տաճկաց Արտուղին[3] և առին
քաղաքս բազումս. և այս է սկիզբն ելանելոյ
Թուրքացն[4]: Եւ գնաց ընդդէմ նոցա Ար-

(1) Միւս թարգմանութիւնն դնէ ճԿԶ, կամ ճԼԵ. որ
երկոքեան ևս սխալ են, քանզի ըստ պատմելոյ Սամուէլի
և Կիրակոսի Գանձակեցւոյ (յէր. 38—39) ժողովս այս Մա-
նազկերտի եղեւ ՚ի Թուին Հայոց ճՀԵ (175):
(2) Կիրակոս, յէր. 38:
(3) Արտուղն է Ատրպատական երկիրն, յորում է քա-
ղաքն Արտաւիլ, և թերեւս զայս քաղաք կամի ցուցանել
Մխիթարել: Ղեւոնդ յիշատակէ զԹարգուռ քաղաք, ուր եր-
թեալ բանակեցաւ. տե՛ս, Մագիմ. (յէր. 65):
(4) Թուրքըն իմա աստ զԽազրսն կամ զՍկիւթացիս, որ
են Թաթարք, ՚ի հիւսիսակողմն Կովկասու.

*լեմ, և յերկուց կողմանցն անկան հազարք և բիւրք։ Եւ ապա արարին սէր քաղաքացն զոր առեալ էին Թուրքն (1). զի Թողին զայն նոցա և ինքեանք դարձան։*

*Եւ ՚ի սոյն ամի եղեւ անձրեւ սաստիկ, որ Թուէր բանալ սահանաց երկնից. և մերատին փլոյց զպարիսպն Ուռհայոյ և տարաւ զքաղաքն։ Եւ ՚ի գալ ամին գնացին Տաճիկքըն յերկիրն Հռոմայեցւոց և առին զՃենձերա (2) քաղաք և զՄիկիա և քակեցին զնա. և եղ հրաման ՚ի Հեշմայ սպանանել զամենայն գերեալսն. և եղեն քննութիւն յՈւռհա վասն սպանելոցն Թէ մկանք են՝ Թէ ոչ, և ոչ յայտնեցաւ ճշմարիտն։*

*Լեւոն Թագաւորն Հռոմոց առ զդուստրըն Խաքանայ Խազրաց Թագաւորին՝ կին որդւոյ իւրոյ Կոստանդիանոսի (Ե), մկրտեալ*

(1) Միւս Թարգմանութիւնն ասէ, Տաճիկքն (Արաբացիք) Թողին խազրաց զառեալ քաղաքն. իսկ աստ իմանի ընդհականակն խազրաց Թողուլ զքաղաքս ՚ի ձեռս Արաբացւոց։ Քանզի ասէ Մովսէս Կաղանկատուացի (Հտ. Բ. յեր. 40) եԹէ Ջառահ որդի Աբդըլլահայ, յամի Տեառն 720. երկրորդ անգամ մտեալ զօրօք ՚ի Խազիրս, սպանաւ յԱսորդիկնայ. և ՚ի Թուին Հայոց 22, (731) դարձեալ Մսլիման չինէ զԴարբանդ յանուն Տաճկաց։ Սամուէլ Սուլիման կոչէ զՄսլիմն։ Տես և ՚ի գիրս Ղեւոնդայ. յեր. 64, և 131-132, ուր անունդ Ջառահ փոխեալ է ՚ի Հարաշի.կամ ԱէԹ Հարաշի, որ է Սայիտ Ջառահ։

(2) Ճենձերան է Գանգր քաղաք, այն է Չանղրը ըստ Տաճկաց։

զնա Նամխ, և ետ զԹագաւորութիւնն որդւոյ իւրոյ։ Եւ մեռաւ Լեւոն Թագաւորեալ ամս քսան և չորս։ Եւ Օրտաւազ(1) փեսայ Թագաւորին ապստամբեալ եմուտ ՚ի Կոստանդինուպօլիս. և Կոստանդին փախեաւ յԱնատոլիկոն (յԱնատոլիան*), և խոստացան օգնել նմա, և եկն յԱմուրին քաղաքն մեռնել(2)։ Եւ լուաւ Օրտաւազ, զօր ժողովեալ և ՚ի վերայ Կոստանդինանոսի գնաց, և եհար և փախոյց զնա, և մնացեալքն եկին առ Օրտաւազ. և Թագաւորեաց Օրտաւազ։

Իսկ Հեշմ զկնի իննևտասն ամի Թագաւորութեանն իւրոյ մեռաւ։ Եւ Թագաւորեաց Վլիթ, և արար չար տանն Հեշմայ. և արար զօրապետ իւր՝ զԱբաս, և էարկ ըզնա յոսկի և ՚ի գանձ Թագաւորութեանն Տաճկաց իբրև ՚ի ծով. որ և զամենայնն բաշխեալ զօրացն՝ առ զԹագաւորութիւնն. բայց ոչ ընդունէին զնա յոլովք, զի հարճորդի էր(3), և Վլիթ չարագործ և գինարբու էր և ոչ զնա ընդունէին։ Եւ Թագաւորեցուցին զԻզիտ եղբայր (հօր եղբօրորդի) տղայ ՚ի Դամասկոս. և նա առաքեաց կտրեաց զգլուխ եղբօրն(4), և ցցեալ ՚ի ցից զգլուխ եղբօրն,

(1) Արտաւազդ էր Հայ ազգաւ, և սիրեցեալ յաչս Լեւոնի՝ տուեալ էր նմա զդուստր իւր Աննա։

(2) Թերևս՝ ձմեռել։

(3) Արքայն էր բնական որդի Իզիտի և եղբայր Վլիթայ.

(4) Ղեւոնդ (Գլ. Ը. յէր. 146) այսպէս պատմէ զը-

Եզարայ՝ որ է գետ Եթուրայ, որ նա ինքն է Տիգրիս, և փախեաւ Մրուան և առին Պըտոյիքն (ազգ Եռաբաց) ի Մրուանայ եւթն հարիւր բեռն գանձական և դրամ(1)։

Եւ Կոստանդիանոս առեալ զօգնականս իւր եկն ի Կոստանդնուպօլիս, և եհան զաչսն Արտաւազդայ և որդւոցն, և ինքն հաստատեցաւ. և եղեւ նմա որդի և կոչեաց զնա յանուն հօր իւրոյ Լեւոն։ Եւ ի Տաճկաց պատերազմին խաղաղացան Հոռոմայեցիքն, եւս առաւել Հայք։ Եւ ի ժամանակս յայս եղեն նշան մեծամեծք ի Մարտի ամսեան մինչեւ ի Մայիս. օդք հող և փոշի տեղաց և տիւն գիշեր թուէր։ Եւ ապա երեւեցան երեք սիւնք ամպեղէնք հրախառն ի կողմն հիւսիսոյ երեք օր, և ելանէին ի վեր և իջանէին ի խաւարն։ Եւ զկնի այնր երեւեցաւ

որդին գնաց ի Խորասան։»

(1) Զայս կոտորած զոր եսուն զօրք Խորասանեայ ամիրապետին Մրուանայ, յորում և մեռաւ ինքն, յիշէ և Ղեւոնդ (Գլ. Ը. յէր. 157—158), որ եղեւ առ ի ձեռն Ապդլայի, որոյ հասեալ մինչեւ յԱկողա, որ թուի թէ նշանակիցէ զԿուֆա քաղաք մերձ ի Բաղդատ, եսպան ձեռն օգնականութեան և ի բնակչաց տեղւոյն, այն է Քեռուսիքն։ (Տես և ի Սամուէլ Անեցին յէր. 134)։ Այս Աբդլա՝ էր Ապուլ Աբբաս Աբդուլլահ Իբն—Մուհամմէդ կոչեցեալն, որդի Մահմետի, որդւոյ Ալեայ. և յանուն սորա կոչեցաւ հարստութիւնն Աբբասեան, և էր իշխան Պարսկաստանի և Խրաքայ՝ յորժամ հրատարակեաց զինքն խալիֆա յամի 750. և մեռաւ զկնի չորից ամաց.

տաւող մի անծանօթ՝ լուսնին չափ, ամեն առաւօտ ելանէր յարեւելից և գնայր յարեւմուտս՝ զտիւն ամենայն տեսանելով մարդկան։ Եւ լինէին ցոլմունք աստեղաց զամենայն գիշեր որ թռչէին ընդդէմ յարդգողին (1)։ Եւ յետ այսորիկ եղեւ շարժ սաստիկ, և պատառեցաւ երկիրն եւ ելին աղբիւրք 'ի գոյն արեան. և զկնի այնորիկ խառնակումն մեծ եղեւ 'ի վերայ ծովուն մեծի, և բարձրանայր ալին և թուէր մերձ առ երկինքն վերացեալ, և եռայր որպէս 'ի կաթսայս. և բազում մարդիկ և անասունք մեռան 'ի ճայթմանէ որոտմանն որ առ ծովեզերբն կային։ Եւ բերդ մի որդւոյն Սիմեայ՝ որ կայր 'ի ծովու, և ջերմուկն որ գտաւ յաւուրս Սաղոմոնի 'ի ծովուն և շինեաց 'ի վերայ նորա Սաղոմոն բուրգն և պատարաստութիւն յղով, այն փլաւ և ընկղմեցաւ։ Եւ եղեւ յետ այնորիկ սով սաստիկ, և այս մահտարաժամ փողացաւութեամբ, որ 'ի Նապոս քաղաք մեռանէր յաւուրն քսան հազար անձինք։ Եւ լուաք թէ՝ յերկիրն Սադիմու կատաղեցան կապիկք և բազում վնաս գործէին՝ ապականելով զմարդ և զանասուն։ Եւ զայս ամենայն տեսեալ Սրուան թագաւորն Դամասկոսի, որ փոխեաց զարքունիսն իւր 'ի Խառան, զղջացաւ և անկաւ

(1) Սամուէլ ասէ, 'ի թուին Հայոց ՄԹ. և փրկչին 762. երկու աստեղք երեւեցան. մի յարեւելս և մի յարեւմուտս.

մահ 'ի վերայ նորա, և գրեաց ընդ ամենայն տեղիս ապաշխարութիւն. և սաստկեցաւ երկիր և յորդեցին արտասուք և հառաչմունք և աղօթք ամենայն ուրեք, զի կարծէին թէ հասեալ է կատարած աշխարհի յազգի ազգի նորանշան պատուհասիցն. քանզի նորանշան հրաշք լինէին, մինչ զի գեղ մի յանուն լերինն Թափօրայ 'ի շարժմանէն յիւր տեղւոյն 'ի բաց վազեաց երկու միլ և ինչ ոչ խախտեցաւ շինուած, և ոչ պակասեաց հաւ մի. և Մնքէճ քաղաք ընկղմեցաւ 'ի տեղւոջ իւրում։ Իսկ 'ի Կոստանդինուպօլսէ երրորդ մասն անկաւ, և Նիկիա բովանդակ փլաւ, և բազում քաղաքք 'ի Բիւթանիա կործանեցան։ Յայնժամ կաշառեցին զՄրուան Քաղկեդոնիկքն և եդին իւրեանց պատրիարք զԹէոփիլէ մազմանի որդի, և գնաց 'ի Խառան և դարձեալ կաշառօք էառ զեկեղեցին Ասորւոց ուղղափառաց։ և արքեպիսկոպոսն Թէոփիլէ եհար զձեռնն 'ի խորանն և ասաց. «Մի պղծեալ խորան, վաղիւ սրբիս օրհնութեամբ և ուղղափառ պատարագաւ»։ Իսկ նոյն ժամայն մինչ կայր յատեանն, վառեցաւ հրով և այրեցաւ, և եղեւ երկիւղ մեծ 'ի վերայ պատրիարքին Թէոփիլի, և առեալ զայրեցեալ ակերան 'ի գիշերի փախեաւ. և մնաց եկեղեցին ուղղափառաց։

Իսկ յայսմ ժամանակի եկն Ըրզէ որդին

Ալէ (Ալեայ) 'ի Խառան, և փախեաւ Մրուան յԱսկաղոն մեծ ուղտուք բարձելոք ոսկւով և արծաթով. և անտի եկեալ գնաց յաշխարհն Նուբեաց, և Աբդլա զհետ նորա. և հասեալ նմա 'ի Նուան 'ի վերայ Նեղոս գետոյ, և պատերազմեալք ընդ միմեանս սպանաւ Մրուան (1). և առեալ զգանձն Մրուանայ զոր ժողովեալ էր ագահութեամբ, զամենայն ստացուածս նորա գրաւեաց 'ի յիւրն Աբդլլայն և Թագաւորեաց միայն։ Եւ մինչ նստաւ 'ի վերայն իւր, յանկարծակի եղեւ ամբոխ յոյժ, և սկսան գնալ ամբոխին 'ի գերեզմանսն. գնաց և Աբդլա, և ետես զի ելանէին 'ի գերեզմանացն արք ութ նորեկեալ մօրուօք և միջօք չափ ելեալ՝ զանեղի առեալ կային զերիս տիւս և զերիս գիշերս, և կացոյց Աբդլլէն պահապանս 'ի վերայ նոցա, և կացին կենդանիս, և հանապազ հառաչանէին, և ոչ ետուն պատասխանի և ոչ խօսեցան ամենեւին. և նոքա 'նեղեալք՝ դարձեալ Թաղեցին զնոսա հրամանաւ Թագաւորին և ինչ ոչ իմացան։

Իսկ Թագաւորն Կոստանդիանոս այր իմաստուն էր և հմուտ գրոց, և 'ի ծածուկ ունէր զաղանդաւորութիւնն. և մեռաւ կին

(1) Ղեւոնդ. զանեղի մեծի բանակին Մրուանայ դնէ մերձ յԱկողա քաղաք և 'ի Պասրա, ուր և 'ի վերայ իւրում ըն-պանաւ ասէ, առանց ուրեք յիշելոյ զփախուստ նորա յերկիրն Նուբիոյ. (Գլ. Ը. յեր. 158)։

Նորա դուստր Խոսրովանդ Թագաւորին, և այլ ոչ կամէր առնուլ կին ըստ օրինաց քրիստոնէից Թագաւորաց. և բանադրեցին զնա երիցս անմ՝ առնուլ կին, և ապա ասէ ցնոսա. «Չէ պարտ երկրորդ կնաւ Թագաւորել ինձ. և ապա թէ զայդ կամիք ինձ, դիք զորդին իմ Թագաւոր, յայնժամ ես առնում կին»։ Եւ արարին այնպէս. և Թագաւորեաց Լեւոն, բայց հայրն խնամէր և հոգայր զաշխարհն և զորդւոյն Թագաւորութեանն։ Եւ առեալ նորա կին և ժողովեալ զօրս, եկն ՚ի Մելտինի Հայոց և ՚ի մերձակայ գաւառսն, և առեալ զՀայս և զԱսորիս որ ընդ իշխանութեամբ Տաճկաց էին (1) տարաւ՝ աւելով ցՅոյնան. «Երիտասարդք են, ասէ, ընդ մեզ լիցին իբրև եղբարք և որդիք մեր»։ Եւ տեսեալ զնոսա Բագրատունեացն, մատեան առ Թագաւորն և ասեն. «Ընդէ՞ր բերեր զդոսա, զի հայհոյեն զմեզ և ասեն և նզովեն զժողովն չորրորդ»։ Եւ Կոստանդիանոս խնդրեաց ՚ի նոցանէ դաւանութիւն Թղթովն գրով. և նստեալ Հայոց գրեցին, նոյնպէս և Ասորւոցն, որ էին միաբան և մի կամաց և մի ներգործութեան Քրիստոսի (2). Եւ տեսեալ Թագաւորն և ամենայն իշխանք նորա, հիացան

(1) Ղեւոնդ. յեր. 161.

(2) Իմա՛ դաւանեցին ՚ի Քրիստոս մի բնութիւն, մի կամք և մի ներգործութիւն.

և գովեցին, և ասացին. «Այս է ճշմարիտ քրիստոնէութիւն և ուղղափառութիւն.» և վասն այնորիկ հրամայեաց ժողով լինել. զի յայն դաւանութիւն դարձուսցէ զամենայն երկիր. և եղեւ ժողովն զոր Եւթներորդ կոչեն: Եւ ասաց Թագաւորն. «Աղաչեմ զձեզ՝ երկու իրք բարձէք, մի՝ զժողովն Քաղկեդոնի, և միւս՝ զպատկերագրութիւն յեկեղեցիս առնել.» և ոչ կամեցան, և անկան յոտս Թագաւորին և աղաչէին՝ զի մի հարկեսցէ զնոսա վասն երկու խնդրոցն: Եւ տրտմեցաւ յոյժ Թագաւորն, և դարձաւ և ասէ. «Իսկ ո՞վ է Մաքսիմոսի աղանդն անիծեալ՝ Նեստորականին, բարձէք զնայն.» և լուան նմա, և նզովեցին զՄաքսիմոս՝ որ երկու կամք՝ և երկու ներգործութիւն ասաց Քրիստոսի: Եւ վասն այսորիկ յոլովք 'ի Յունաց ոչ մեծարեն զժողովս զայս(1): Բայց Թագաւորն 'ի ծածուկ պաշտէր զուղղափառութիւն, և ետ հրաման Հայոց գնալ յերկիրն իւրեանց, «Օ՜ն ի մի, ասէ, յետ մահուան իմոյ չարչարեսցեն զձեզ.» և ետ պարգևս և պա-

(1) Այս ժողով եղեւ յամի Տեառն 754. յորում գտան երեք հարիւր երեսուն և ութ եպիսկոպոսունք, և վճռեցաւ կռապաշտութիւն համարել զպատկերացն պատիւ, և նզովեցին զպատկերապաշտսն. և յանուանէ նզովեցան Գերմանոս պատրիարք որ փոխեցեալ էր, Յովհաննէս Դամասկացի և Գէորգ Կիպրացի.

շարս ՚ի Ճանապարհն և օգնականս՝ տանել զնոսա խաղաղութեամբ ։

Յայսմ ամի եկն մարախ և եկեր բազում գաւառս. և ՚ի գալ միւսոյ ամին եկն կարկուտ անտես և անլուր՝ որ փլոյց բազում շինուածս, և սպան կենդանիս բազումս, և կշռեցին ըն- մէկն ութ լիտր ։ Եւ մեռաւ յայսմ ամի Աբդլլա Թագաւորն Տաճկաց՝ Թագաւորեալ եւթն ամ, որ զկնի միւս Աբդլլային Աբուբասայ՝ (Աբուլ-Աբբաս)[1] տիրեաց Պարսից և Արաբացւոց ։ Եւ Թագաւորեաց Աբու-Ջաֆր, որ և շինեաց զՄլաւենի և զԿարնոյ քաղաքն՝ զոր Յոյնք Կալանիկէ կոչեն և Արաբացիք Արզրում, որ է մօրչ ծառի[2], և ընկալաւ՝ զորս աւերեալ էր զնոսա Կոստաս (Կոստանդին) Թագաւոր[3] ։ Եւ ՚ի նմին ամի առին Տաճկունք զԱփրիկէ, և առին ՚ի Տաճկաց (՚ի Պարսից) աշխարհն զՏաբարաստան և զԴիլմակայն ամենայն, և առին զՄէ ։

Ի Թուին Ասորւոց ՌՀԳ (1073) և ՚ի Հա-

(1) Աբդլլա՝ որ մեռաւ ՚ի նմին ամի 753, նոյն է որ կոչի Աբուլ-Աբբաս, որոյ նախորդն էր Մրուան Բ, և Աբուլ-Աբբասայ յաջորդեաց Աբու-Ճաֆար Ալ-Մանսուր (յաղթող) որ էր եղբայր Աբուլ-Աբբասայ. և ՚ի գիրս Հայոց կոչի Ջաֆրն Ա. կամ Աբդլլա Բ ։

(2) Արզրում Նշանակէ երկիր Հռոմայեցւոց ։

(3) Ղեւոնդ յիշէ զնորոգութիւն կարնոյ ՚ի ձեռն խալէֆի, որ էր կործանեալ տասնվեան ՚ի կողմանէ Ջաւիրայ ՚ի վերայ Հայոց, (յեր. 161) ։

յայն Մ (200) շինեաց Ջաֆար ՚ի վերայ Տիգրիս գետոյ ՚ի վեր քան զԿիւսափիզքեան քաղաք, և անուանեաց զնա Պաղտատ՝ որ Թարգմանի միջոյ, զի ընդ մէջ է Պարսից և Տաճկաց (1)։ Յայսմ ամի եղաւ Քուրդն և գերեաց ՚ի Գուզանայ յիսուն հազար անձինս։

Եւ ՚ի սոյն ամի համբաւեցաւ կին մի ՚ի Մուքրայ, որ ասէին թէ ՚ի ծնանելն կաթն ոչ եկեր ՚ի մօրէն. և զարգացաւ և եղեւ կին կատարեալ, և ոչ եկեր ինչ և ոչ կերաւ ամենևին. և բերին զնա ՚ի Պաղտատ առ Ջաֆր, և փորձեաց և գտաւ այնպէս։ Եւ արար Ջաֆրն ժողով գիտնոց, եթէ լեալ իցէ այնպիսի ինչ երբէք. և ասացին՝ թէ ոչ (2)։ Եւ յայսմ ժամանակի ապստամբեցին Մոգքն և եղին իւրեանց Թագաւոր (3). և գնաց Տաճիկն ՚ի վերայ նոցա, և յաղթեցան ՚ի Մոգուցն. և երկրորդ անգամ չոգաւ Տաճիկն ՚ի վերայ Մոգուցն, և կոտորեցին ՚ի նոց

(1) Ըստ Միքայէլի Չամչեան (Հտ. Բ. յեր. 408). Ջաֆրէ շինեալ զքաղաքն Բաղդատ, կոչեաց զնա Մէդինաթ Սալամ, որ է քաղաք խաղաղութեան. այլ զի բնակէր անդ յառաջագոյն և իշխան մին Բաղդ անուն, անտի առաւ կոչել Բաղդատ։

(2) Զսոյն պատմէ և Կիրակոս, թէ յաւուրս իշխանութեան Ջաֆրայ ծնաւ կին մի, որ եկաց ամս երեսուն և ոչ ինչ կերաւ, յեր. 44։

(3) Մինչ Թարգմանութիւնն ասէ, եթէ յայսմ նշանէ խաբեալ Մոգուցն՝ ապստամբեցին ընդդէմ տէրութեան Արաբացւոց։

ցանէ քառասուն հազար անձինս, և հնազանդեցոյց զՍմբատ և դարձաւ։ Եւ եկեալ Ջափրն 'ի Միջագետս, և կացոյց երկու հարկահանս, Տաճիկ մի Սլիման անուն և Հրեայ մի Մուսէ անուն, որ և դատարկ արարին զաշխարհս յոսկւոյ և յարծաթոյ։ Եւ բազումք փորէին զգերեզմանս՝ գտանել ինչ և տալ նոցա, զի կեղեքեալ և տանջեալ լինէին 'ի բռնութենէ նոցա։ Եւ լուեալ Յունաց սկսան և նոքա պեղել զգերեզմանս հնոց մեռելոցն. և մինչ փորէին 'ի Նիկոմիդայ քաղաքի, գտին զգերեզմանն Նիկոմիդեայ շինողի քաղաքին, և բազմութիւն ոսկւոյ և ականց պատուականաց ընդ նմա ամփոփած. և ազդ արարին Կոստանդիանոսի, և գնաց և ետես, և ոչ կամեցաւ առնուլ ինչ 'ի նմանէ, այլ կոփածու վիմօք փակեաց, և ասաց. «Օ՜ինչ դարշադոյն քան կենդանեաց կողոպտել զմեռեալս և այնու վայելել.» և սաստեաց նոցա զի այլ մի՛ արասցեն զայն։

Իսկ 'ի չարաչար ագահութենէն Ջափրէ այնչափ պակասեաց որձաթն, զի զերդն և զէշ դրամի միոյ վաճառէին, և զողայն հինգ դրամի տային պահանջողացն։ Եւ սա զկնի քսան ամի սատակեալ, հանգեաւ երկիր 'ի չարեաց պղծութենէ նորա։ Եւ 'ի նոյն ամի մեռաւ Կոստանդիանոս թագաւորեալ ամս երեսուն և չորս։ Եւ Լեւոն (Դ) որդի նորա

հաստատեցաւ 'ի տեղի նորա ։ Եւ 'ի վերայ Տաճկաց թագաւորեաց Մահադի որդի Ջափրի , և ցրուեաց զամենայն ինչսն որ գանձեալ էր հայրն , և ետ զինքն կախարդութեան , և աստեղօք վարէր ։ Եւ լուեալ Լեւոնի՝ առաքեաց նմա զգիրսն Յանէսայ և Յամրէսայ կախարդացն՝ զոր ինչ գործեալ էին ընդդէմ Մովսէսի . և ընկալաւ խնդութեամբ ։ Եւ եկն Մահադի 'ի Հալապ , և ելին ընդդէմ նորա երկոտասան հազար Ասորի պատուել զնա . և զարմացաւ ընդ բազմութիւնն , և յորժամ նստաւ՝ կոչեաց զնոսա և ասէ . « Մի յերկուց առաջի կայ ձեր , կամ մեռանել՝ կամ դառնալ 'ի կրօնս մեր ։ » Եւ ուրացան հինգ հազար այր , և այլն ամենն մեռան վասն հաւատոցն որ 'ի Քրիստոս ։ Եւ կանայք և մանկունք ուրացողացն թողին ըզնոսա և փախեան ։ Եւ գնաց Մահադի յերկիրն Աբաքիոյ 'ի Հռոմայեցիսն . և զԱհարոն որդի իւր առաքեաց յառաջ . և գնացեալ յԵփեսոս գերեցին ութն հազար անձինս , և պակասեաց 'ի նոցանէ չորս հազար այր (1) ։

Եւ Լեւոն առաքեաց զօր 'ի Միջագետս , և տարան զքրիստոնեայսն՝ Հայս և Ասորիս ուղղափառս , և բնակեցոյց ընդ իւրեաւն 'ի Թրակիա (2) ։ Եւ գնաց սա 'ի Ճանապարհ հօր

(1) Իմա՝ 'ի զօրաց իւրոց ։
(2) Ածել Լեւոնի զպաւղիկեանս 'ի Հայոց և յԱսորւոց՝

խարոյ, և ոչ երկրպագեաց պատկերաց և ոչ ետ երկրպագել, և ոչ հաղորդեցաւ 'ի Քաղկեդոնացւոցն. վասն որոյ 'ի Յունաց ժամնա. նախագրացն տրտնջելով Յակոբիկ կոչեն ըզսա : Իսկ սա թագաւորեալ ամս տասն՝ մեռաւ. և թագաւորեաց Կոստանդիանոս (Ե) որդի նորա երկուտասանամեայ, և Իրինէ մայրն նորա ընդ նմա քարոզեալ լինէր թագաւոր վասն տղայութեան նորա : Իսկ Ահարոն եկն յերկիրն Հոռոմայեցւոց և դարձաւ ամօթով : Յայսմ ամի շինեաց Ալի հրամանաւ Մահադի զՀադ քաղաքս յերկիրն Մարաշոյ : Իսկ մեռաւ Մահադի և թագաւորեաց որդի իւր Մուսի ամս երկու : Իսկ եկեալ Հոռոմայեցւոցն զկնի երկու ամի շինելոյն զՀադ, քակեաց զնա : Իսկ մեռաւ Մուսի, և թագաւորեաց Ահարոն եղբայր նորա որ կոչեցաւ Ռաշիտ : Իսկ դարձեալ շինեաց Աբդըլմելէք զՄաշէր (1), և պատրաստեաց երկու հազար այր, և քակեաց զեկեղեցին որ կայր յարևմտից Ճնճէ գետոյն (2) որ է

'ի Թէոփանէս, զոր արար ձեռամբ Մելիքեայլի զօրավարաւ Թրակացւոց, որպէս և Կոստանդին Ե գաղթեցոյց յառաջ քան զնա 'ի Կոստանդնուպոլիս, ոչ յաղագս այլոյ ինչ պատճառի էր, բայց եթէ առ 'ի լնուլ զանեղի բնակչացն որք մեռան 'ի մահտարաժամէ, որ անկեալ յամէ 747—750 :

(1) Ամենայն օրինակք ունին Հաշէր : Այս քաղաք շինեցաւ հրամանաւ Հարուն Էլ-Ռէշիտայ :

(2) Տես 'ի ծանօթութեան մերում 268, 'ի գիրս պատմութեան Մատթէոսի Ուռհայեցւոյ, եր. 576 :

մերձ Սամուսատայ, և քանդեցին զառաքելաշէն եկեղեցին Պեանց հնգետասան խորանին, և տապալեալ սայլիւն զքարն չինել զհաղ ։

Յայսմ ժամանակի գտաւ տապան մի յԱւռհամ՝ Հրէի, որ գրեալ էր Թէ՝ «Հաւատամ որ գոյ Քրիստոս, 'ի կուսէ ծնեալ. և ծագեսցէ լոյս նորա 'ի վերայ իմ ։»

Ի յայսմ ամի խնդրեաց Կոստանդիանոս, եթէ Փիլիատէ (Հերքիւլիոս) պատրիկն Սիկիլիոյ շնայր ընդ մայրն նորա, և կամեցաւ ըմբռնել և հանել զաչս նորա. և փախեաւ Փիլիատէ և եկն առ Տաճկունք, և առեալ քառասուն հազար զօրք՝ գնաց դարձուցանել զՍիկիլիա 'ի Տաճիկս։ Եւ գնացեալ նոցա ձիւնարգել եղեն, և յոլովք մեռան և մնացեալքն եկին 'ի Կոստանդինուպօլիս և արարին նոցա մարդասիրութիւն, և Թողին ըղնոսա. և Կոստանդիանոս այլ ոչ ետ քարոզել զմայրն յեկեղեցին յետ չուԹեանն ։ Եւ մեռաւ կինն Կոստանդիանոսի, և նա արհամարհեաց զկանոնս Եկեղեցւոյն, և առ այլ կին (1), և առնէր եղեւ բազմաց ։ Եւ այպականէր զդստերս իշխանացն. և մայրն լուեալ

(1) Կոստանդին Ե ամուսնացաւ նախ ընդ Մարիամայ դստեր նախարարի միոյ հայկազնոյ յերկրէն Փափլագոնիոյ, և էր Մարիամ աքանչելի գեղով. այլ յամի 795 Թողեալ զնա կայսեր՝ եմուտ 'ի վանս կուսանաց, և ինքն առ զԹէոդոտէ նաժիշտ մօր իւրոյ Իռինեայ, յորմէ ծնաւ Լեւոն ։

զորատունք իշխանայն, կուրացոյց զաչս որդ-ւոյն և թագաւորեաց ինքն, և արար երկրորդ իւր զներքինին իւր Փիլադի (Մէդիոս°)։

Ի ժամանակի յայս կային 'ի Թոռանցն Մաթանայ Վոմայի որդւոյ, որք փորեցին զտուն իւրեանց, և գտին բազում գանձս և ոսկեղէն օձս և կարիճս փորածոյս շինած, և մէջն լցեալ քեմիայիւ, որ ցանէին 'ի վե-րայ հալեալ պղնձոյ, և դառնայր յոսկի. և գրած էր 'ի նոսա բաժինս աղքատաց և եկե-ղեցեաց։ Եւ զայս դարձեալ՝ մեծացան յոյժ և ստացան ձիս և ջորիս և շունս և բազէս, և երանէին որսայինն։ Եւ եհաս բանս այս 'ի թագաւորն Տաճկաց, և տարաւ զնոսա առ ինքն, և չարչարեաց և էառ զոր ինչ ունէին. և առեալ զօձսն և բացեալ և գլեալ քեմի-այն գիտէին թէ հող է, և թափէին ընդ վայր և յետոյ իմացեալ զպատուականութիւն ի-րացն և յոյժ տրտմեցան։ Եւ կուսան մի սուրբ 'ի նոցանէ աւուրն 'ի Բաղկեռտանցի մի 'ի պահնոցս, և եհան զնա 'ի վերնատուն մի և եդ պահապանս Տաճիկս. և նա երկու-ցեալ 'ի խայտառակութեանց՝ մեռաւ ընկենլով զինքն 'ի բարձր տեղւոջէ 'ի վայր. և լուեալ թագաւորն Տաճկաց տրտմեցաւ. և եթող զայլսն (1)։

Եւ Տաճիկքն սկսան արհամարհել զՔր-

(1) Իմա՛ զերգոսրան կուսին՝ զԹոռանս Մաթանայ։

ռոմայեցիսն վասն կնոջն Իրինեայ, և առին խորհուրդ զօրքն Թագաւորեցուցանել զՆիկեփոր Սպասլպատոնիկայցի. և լուեալ Իրինէ, կամեցաւ հանել զաչս նորա, և ներքինին Թագոյց զնա. և գտեալ զնա զօրացն Թագաւորեցուցին. և սա պատուով ունէր զդշխոյն և զներքինին։ Իսկ դարձեալ իմացաւ Նիկեփոր թէ խորհին նմա չարիս, առաքեաց զԻրինէ յաքսորս յԱթէնս, և թող եւ ներքինւոյն, և չարար նմա չար վասն երախտեացն առ ինքն։

Յայսմ ժամանակի շինեաց Թագաւորն Տաճկաց քաղաք մի յերկիրն Տաճկաց և կոչեաց զնա Օւսպատրա (1), և եկին Հռոմայեցիք և յաւարի առին զերկիրն Տաճկաց։ Իսկ Նիկեփոր էր այր հզօր և խորհրդաւոր. և ասեն վասն նմա՝ թէ 'ի Տաճիկ ազգէ էր, որք արհամարհանս գտեալ յազգէն իւրեանց՝ քրիստոնէացեալ էին յառաջագոյն և 'ի նոցանէ ծնեալ էր Նիկեփոր։ Իսկ Ալփի (Փիլքատէ՞) տուեալ զՄիկիլէա 'ի Տաճիկք, եկն առ նոսա և պատմեաց՝ թէ Նիկեփոր այր քաջ է և պահող և աղօթող. և գրեցին առ Ահարոն։ Իսկ ժողովեալ բազմութիւն յոյժ՝ գնաց յերկիրն Հռոմայեցւոց. և ել ընդդէմ նորա Նիկեփոր, և նստան ամիսս երկուս հանդէպ

(1) Զայս քաղաք շինեաց Հարուն էլ—Ռէշիտ ամիրայ 'ի փոքր Հայս, մերձ Մալաթիոյ։

միմեանց և խօսեցան ՚ի խաղաղութիւն, և արարին սէր և խառնեցան զօրքն ՚ի միմեանս. և տուեալ Շահրոն Նիկեփորայ զամենայն վրանսն և դարձաւ (1)։

Եւ շինեաց Շահրոն քաղաք ՚ի վեր քան զԿալանիկոս և անուանեաց զնա Երակլիա (Հերակլիա) (2), զի առեալ էր կին Երակլեացի. և Նիկեփոր շինեաց զՆիկիուբիս։

Յայսմ ժամանակի Նանիա եպիսկոպոսն Մերտինոյ, որ էր ՚ի լեռնէն Հազարաւորաց, որ է լեառն Մինուէի. սա շինեաց զվանքն սուրբ Նանիանցն. գտեալ աւերակ բերդ մի և գնեաց զնա ՚ի Տաճկաց, և փորեաց ՚ի մէջ նորա և արար որբաստուն ծանր ծախիւք, և բերեալ ՚ի Տարսոյ զնշխարս Նանիանցն և եդ ՚ի նմա. և բերեալ զնշխարս Բարթողիմէոսի Առաքելոյն ՚ի Հայոց և զՓիլիպպոսի (3) ՚ի Մընբէճայ. և գնացեալ ՚ի Հռոմ՝ երկուց հանդէպ սրբոց Առաքելոցն, և առեալ նմա մասն ՚ի Պետրոսէ և ՚ի Պօղոսէ, և բերեալ զայն. և գնացեալ ՚ի Բաբելոն՝ եգիտ անդ զնշխարս Դանիէլի մարգարէին և զԵզեկիէլին և զՍեմայ որդւոյ Նոյի, և այլ բազում նշխարս,

(1) Այս դէպք այլազգ պատմի ՚ի միւս Թարգմանութեան։

(2) Այն է Էրէկլի ՚ի վերայ ճանապարհին Իկոնիոյ՝ որ տանի ՚ի Տարսոն։

(3) Զնշանագիրս բառս որ պակաս են ՚ի մերում բնագրի, լցուցաք ՚ի միւս Թարգմանութենէ։

և բերեալ զնոսա եդ 'ի արգաստունսն զոր շինեաց, և 'ի վերայ նորա շինեաց եկեղեցի գեղեցիկ, և մինչև ցայսօր կատարին աղօթք խնկբաղացն:

Իսկ Հարուն Թագաւոր Տաճկաց առար համար պանծումն իւրոյ և գնաց տեսանել քան զոր Դաւիթն էր հաւաքեալ, հազար բիւր. և յոյժ ուրախացաւ, և կրկնեաց երեք ծունր Աստուծոյ և զթագաւորութիւնն խոստացաւ Մահմետի աւագ որդւոյն իւրոյ, և զկնի նորա Մամունդին, և յետ նորա Կասումայ (1). և այս եղև պատճառ խափանեցոյ թագաւորութեան նոցա: ԶՄահմետ եդ 'ի Բաղդադ և զԿասում յԱսորիս և զՄամունն տարաւ ընդ իւր 'ի Խորասան: Եւ ետ նմա զգանձն իւր. և անդ մեռաւ թագաւորեալ ամս քսան և երեք:

Իսկ Նիկեփոր գնաց զօրու ծանու 'ի վերայ Բուլղարաց, և եհաս 'ի քաղաք թագաւորութեան նոցա, և արար բազում կոտորածս, մինչև արկանէր տարածոց զմանկունս նոցա և անցուցանէր կամնասայլս 'ի վերայ նոցա անողորմաբար. և զայրացեալ Ձիրանգ մի, եհար և սպան զնա:

(1) Անուանք երից որդւոցն Հարունի էլ-Ռէշիտայ են այսոքիկ ըստ աւանդութեան Արաբաց. աւագին՝ Աբու Մուսա Մոհամմետ Ալ-Ամին. երկրորդին՝ Աբու Ճաֆար Աբդ-Ալլահ. այն է մականուանեալն՝ Մամուն. կամ Մամ-ուն. երրորդին՝ Էլ-Քասէմ Խալիֆէն Պիլլա:

Այս Թագաւորեաց Տաճկաց Մահմետ, եւ եհան զգանձս հօր իւրոյ ՚ի Կալանեփից եւ տարաւ ՚ի Բաղտատ, զի Թագաւորեալ էր Մամունն ՚ի Խորասան, որ էր կիրթ ուսմամբ եւ իմաստութեամբ ։ Այս կամեցաւ Մահմետ խռովութիւն առնել եւ ստել ուխտի հօրն, եւ ոչ տայր զգանձն Մամունդին (Մամոունին) եւ սկսան պատերազմիլ. ընդ միմեանս Մահմետ եւ Մամունդն. եւ լուեալ զայս բազումք ապստամբեցին ՚ի Փղշտացւոցն. եւ Մահմետ արար ժողով եւ ետ զօրավարն զԱլի (1). եւ առաքեաց ՚ի վերայ Մամունդին. եւ նա առաքեաց զօրս ընդդէմ նորա եւ պատերազմեցան, եւ յաղթեցաւ զօրքն Մամունդին եւ փախեան եւ ոմանք գետամոյն եղեն ։ Այս եկեալ Մահմետ ՚ի Սամուսատ, եւ շինեաց ըզբերդն եւ ամրացաւ, եւ ՚ի ձեռն Աբդլմելէքի հնազանդեցոյց զապստամբսն. եւ շինեաց ըզպարիսպն Ուռհայոյ կրկին եւ զՍամուսատայ պարիսպն եւ զՔեսնոյ՝ քրիստոնէից սատաւածոց զօրս կողմնակէրն ։ Այս Հիւսէն զօրավարն ապստամբեաց, եւ կալեալ զՄահմետ՝ եդ ՚ի կապանս, եւ գնաց նստաւ ՚ի Բաղտատ ։ Այս Մահմետ առաքեաց աղաչանօք առ Հիւսէն, զի միայն թողցէ զնա կենդանի եւ ոչ պիտոյ նմա Թագաւորութիւն.

(1) Նա է որ ՚ի միւս Ժամանակագրութեան կոչի Հիւսէին որդւէս եւ սոսա փոխէր մի չեւայ կոչէ Հիւսէն.

և խղճացեալ եւս նմա կնաւն և զԹագաւորութիւնն։ Եւ գնաց Սահմէտ 'ի Բաղտատ, և Սամունդն առաքեաց զՀորթամ զօրավարըն իւր, որ երթեալ պաշարեաց զԲաղտատ և սպառնեցաւ քոյք 'ի քաղաքէն, և քանդեցին զեկեղեցիսն և ձգեցին 'ի գուբս։ Հասաւ և այն և մտին 'ի քաղաքն, և գտին զՍահմէտ թագուցեալ 'ի տան միում, կալան և սպանին զնա։ Եւ եկն Տահիրն (Դահիր) միւս զօրավարըն Սամունդին, չորս հազարաւ 'ի Կալինիկոս, և սկսաւ սպառել զապստամբսն։

Յայսմ ժամանակի եղեւ շարժ ահագին, և լերինքն Կողոտու որ կան աստի և անտի, հալեցան առ միմեանս, և տեղին մարգիկ. և փլաւ լեառն մի և անկաւ յԵփրատ, և արգելեաց զնա օր մի, որ գնայր գետ 'ի վեր. և բազում լերինք խլեցան, և յոլով աղբիւրք բացան ջրոյ և կպրոյ և նաւթոյ, և բազումք խցան յաղբիւրականց։

Եւ Կուրիշացիք ազգ մի են Տաճկաց որք շրէին իւրեանց Թագաւոր 'ի Պաղեստին զՊորէհմին (1). և Տահրն (Դահիր) յորժամ լըւաւ զայս՝ իշխանացաւ 'ի Խառան և 'ի Կալանիկոս, և հրաման ետ՝ թէ իցեն կռապաշտք՝ յայսմ ժամանակի յայտնապէս զոհեսցեն և անհոգ լիցին. և գտան բազումք։

(1) Իպրահիմ որդին Էլ—Մեհտի՝ որ էր հօրեղբայր Էլ—Մամունայ։

գաւորել, կամ առնել զնոսա անհանգիստս։ Եւ գնաց Թումաս և պաշարեաց զԿոստանդինուպօլիս վեց ամիս (1)։ Եւ Միխայլն հանեալ զՏաճիկ ծառայսն խոստացաւ ազատութիւն նոցա՝ եթէ սրտի մտօք կռուեսցին ընդդէմ Տաճկաց. և կռուեցան և փախուցին զԹումաս, և հասեալ կալան զնա և կուրեցին զաչսն և զձեռսն, և շրջեցուցին ընդ քաղաքն. բայց զծառայսն ոչ ազատեաց Միխայլն։

Յայսմ ժամանակի եկն Մամունն ի Բաղդատ, և գնաց Տահիրն առ նա և առաքեաց զնա իշխան ի Խորասան, և Պրէհրիմն փախեաւ և անյայտ եղեւ։ Եւ յայսմ ամի ծովն Ադրիանոս ընկէց յերկիրն Կիլիկիոյ ձուկն մի, որ քառասուն գիրկ երկայն էր և նոյնչափ լայն և հաստ, ոչ էր իբրեւ ձուկն՝ այլ որպէս բլուր մի սոսկալի անեպետամք։ Եւ ժողովեցաւ երկիրն և կտրատեցին և ապխտեցին և կերան և ձէթ բազում հանին և փոխառեցին յԱնտոք, և այրէին և ուտէին զնա բազում ժամանակս։

Ի Թուին Յունաց ՌՃԽ (1140) և Հայոցն ՄԿԷ (267) (2), մեռաւ Միխայէլ Թագաւորն

(1) Սամուէլ յիշէ զգալ սուտ Թագաւորին Թումասու ի Կարնոյ քաղաք ի Թուին Հայոց ՄԾԳ (253)։

(2) Մերս Թարգմանութիւնն դնէ ՄԾԶ (256) և երկոքին են սխալ փոխանակ դնելոյ ՄՀԷ, այն է ի Թուին Քրիստոսի 828 կամ 829. յորում ամի մեռաւ Միխայէլ Բ։

Յունաց, եւ Թագաւորեաց Թէոփիլոս։ Եւ եկին Բուլղարք ի հնազանդութիւն նմա և Բուրտասնք և մասն ինչ յԱրաբացւոցն, որք են լեզուք առանձինն Բուրտանքն (1)։ Եւ ի հին ժամանակացն կայր ՚ի մէջ Բուրտասնացն բան ինչ դիւթական, եթէ յայտնելոց է այր մի Մահադի անուն, և տիրէ ամենայն երկրի. և որ հաւատայ ՚ի նա և մեռանի, յետ քառասուն աւուր յառնէ, և ժամանակ ինչ կեցեալ՝ փոխի յանմահական աշխարհն։ Եւ ասենք առէին՝ թէ Աստուած է, և այլք՝ թէ Թագաւոր է; և սպասէին նմա։ Եւ յայսմ ժամանակի երևեցաւ այն Մահադի անուն, և կարծեցին թէ նա է. և ոմանք հաւատաց թէ նոյն է, և սկսան ժողովիլ առ նա, և թագ եդ և ձգէր քաղ երևացն. և ել համբաւ զնմանէ, և զարհուրեցաւ Մամուն ՚ի նմանէ։ Եւ գնաց Մահադի և արար զքնակութի իւր ՚ի լերինս Արարադայ յաշխարհն Հայոց և երթայր յամենայն կողմանս և զամենայն ազգ միապէս կոտորէր. և եկն ՚ի Ձգէրոյ սահմանան, և հարկանէր և աւերէր առհասարակ։ Եւ լուեալ Հասան զօրավարն Մամունայ, և պնդեալ զինքն խաղաց գնաց ՚ի վերայ նորա և սկսաւ կոտորել։ Եւ փախեան ՚ի նմանէ բազմութիւն ամբոխին։

(1) Թուի թէ ասիցէ զՄաւրայ, որ են Բուլղարք։

Եւ ինքն Մահադի ընկեցեալ զԹագն և ըզ-քողն՝ փախչէր, և անկաւ յերկիրն Հայկա-զնոյն Սահակայ, և Տաճիկքն առին զգանձա-կըն նորա և դարձան. և Սահակ իշխանն Հայազգոյն ըմբռնեաց զՄահադի և կապեաց զգլուխ նորա. և չոգաւ Սահակ և կոտո-րեաց զբազումս ՚ի Տաճկաց, և Բուրտանքն պատեալ էին զեզերըն Սահակայ, և նա դար-ձեալ ՚ի կոտորածէն՝ եգիտ պաշարեալ ըզ-տուն իւր և կոտորեաց զնոսա, և սակաւք ՚ի նոցանէ զերծեալք եկին առ Թէոփիլոս այ-սու պատճառաւ: Եւ այն Տաճիկքն որ ընդ Բուրտանեան գնացին, և նոքա հաւատացեալ էին ՚ի Մահադի, որ երբեմն ասէր՝ թէ ես եմ Քրիստոսն, և երբեմն՝ թէ ես եմ Հո-գին սուրբ. և այնպէս հայէին ՚ի նա՝ որպէս լուէին ՚ի նմանէ (1): Իսկ յորժամ ետես Թէո-փիլոս զփախուցեալսն որ գնացին առ նա, ուրախ եղեւ. և ել նոքօք յիշխանութիւնն Տաճկաց, և գնաց ՚ի Զուպատրա և առ ըզ-նա և քակեաց, և զբնակիչսն տարաւ գերի:

(1) Վարդան յիշատակէ զՄահադին զայս և կոչէ զնա Բաբ կամ Բաբան, զորմէ ասէ եթէ ՚ի սուր սուսերի ըն-պաննելով զխռովեցելոցն, եկն մինչեւ ՚ի Գեղարքունիս: Սահլ (Սահակ?) որդի Սմբատայ, ըմբռնէ զնա և ընդունի փոխարէն պարգեւս յոյժ յԱֆշնէ, որ էր յայնժամ ոստիկան կարգեալ ՚ի Հայս, և զոտս և զձեռս Բաբանայ հատեալ կախէ զնա զփայտէ: (Յեր. 107—109)։—Միքայէլ Չամ-չեան. (Հա. Բ. յեր. 441).

Այս 'ի գալ միւսոյ ամին դարձեալ չհնեցին Տաճիկքն զԶաւապատրա ։

Այս պատրիկն Մանիլ[1] ապստամբեալ 'ի Թէոփիլէ, եկն առ Մամուն և առիթէր զնա մտանել յերկիրն Հոռոմայեցւոց. և յորժամ եկն 'ի Խառան՝ արգել 'ի քակելոյ զեկեղեցիսն ։ Այս եկեալ Մամունն 'ի յԱրուհա և հարցեալ զնուաս կաթողիկէ եկեղեցւոյն, և ասացաւ թէ՝ հարկատու է Տաճկաց, և ել հրաման 'ի նմանէ ազատելման հարկի եկեղեցւոյ ։ Այս 'ի ժամանակս ամարան գնաց Մամունն 'ի Կապադովկիա, և առ անտի բերդս չորս, և դարձաւ ձմերել 'ի Դամասկոս ։ Այս 'ի գալ միւսոյ ամին՝ յԱպրիլ ամսեան եկն դարձեալ 'ի Հոռոմայեցիսն, և էր Ջառ 'ի Լուլայ բերդի[2], և ոչ կարաց առնուլ զնա և դարձաւ 'ի Բեսաւն. և ել ընդառաջ նորա Դիոնեսիոս պատրիարքն, և արար նմա մեծ պատիւ, և ետ նմա գիր ազատութեան եկեղեցւոյ ։ Այս մինչդեռ խօսէր ընդ պատրիարքին, բերին աւետիս՝ թէ առին զԼուլան զօրքն զոր թողեալ էր 'ի վե-

(1) Մանիլ կամ Մանուէլ էր յազգէ Մամիկոնենից ըստ Վարդանայ (յեր. 107), որ ընդ քաջութեան լծորդեալ ունէր և զոգի բարեպաշտութեան ։ Սա նախ պաշտպան եկաց ընդդէմ պատկերամարտից, և հաստատեաց ժողովով կրկին զպատկերապաշտութիւն յամի 842 ։

(2) Այն է Լուլէայ բերդ 'ի Կիլիկիա, ընդ հարաւակողմ Իկոնիոյ ։

րայ բերդին, և յաւել 'ի սէր պատրիարքին։

Եւ յայնժամ Մանիլ պատրիկն թողեալ զՄամունն գնաց առ Թէոփիլոս. և առաքեաց Թէոփիլոս խնդրել սէր 'ի Մամունայ, և ասէ Մամունն. «Թէ տայք ինձ հարկս և անուանէք զիս Թագաւոր 'ի վերայ ձեր, ա-բարից ընդ ձեզ սէր։» Եւ Թէոփիլոս այլ ոչ ետ նմա պատասխանի։ Եւ գնաց Մամունն 'ի Կիլիկիա. և եկն անդ Հռոմայեցի առ-նա և ասաց զինքն որդի Թագաւորի. և Մամունն հաւատաց և արար նմա Թագ յերկէք հազար դահեկանէ, և ասաց ընդ Յոբ պատրիարքն Անտիոքու՝ օրհնել զնա Թագաւոր ըստ օրինի քրիստոնէից. և արար այնպէս։ Եւ լուեալ 'ի Կոստանդինուպօլիս նզովեցին զՅոբ։ Իսկ խաբեբայն երկեա ամ կեցեալ 'ի մէջ Տաճկաց, և ոչ արար ոք նմա հոգ, և նա ուրացաւ զՔրիստոս և տաճկացաւ։

Եւ Մամունն գնաց յերկիրն Հռոմայեցւոց և սիրով խաբէութեան զամենայն աշխարհն հնազանդեցոյց մինչ 'ի Տայանու (Տիանա) քաղաքն զոր քակեալ էին Տաճիկք, և սկսաւ շինել 'ի Հայկաց երկրին զոր պահանջէր խաբէութեամբ, մինչ ամենայն լեզու-նզովէր զնա. և եհաս յականջս Տեառն զօրութեանց, և սպան զնա Աստուած և մեռաւ։ Եւ Թագաւորեաց Աբուսահակ եղբայր նորա, որ և այրեաց զշինեալ քաղա-

քին և զամենայն կազմուածն. և գնաց ինքն ՚ի Պաղտատ և հնազանդեցոյց բռնութեամբ, թէպէտ ոչ էին ընդ նմա։ Եւ յայնժամ եկին ՚ի Պասրայ, և տարանջեցին զկղզին՝ որ կոչի Պանաուր, թէ միշտ ապստամբական է, և կոտորեցին զվաճառականսն որ գնան յԻթալիա և ՚ի Հնդիկս։ Եւ կայ կղզին այն ՚ի մէջ ծովուն հանդէպ տեղւոյն ուր խառնի Եփրատ և Տիգրիս ՚ի ծովն որ կոչի Պարսից։ Եւ առաքեաց թագաւորն զօրս ՚ի վերայ նորա, և ոչ ինչ կարացին առնել վասն ամրութեան տեղւոյն և հնարիմացութեան նոցա և քաջութեան արանցն. ապա յայնժամ առաքեաց թագաւորն յԵգիպտոս և ՚ի Սաբա և եւ ածել անտի արուեստաւորս և ծովասոյզս, որ ծածկէին զգայարանսն աղմով մանկանց և առեալ ձէթ փչովք ընկղմին ՚ի ծովն, և որ տեղւոյն հանդէպ պարսպին՝ մտանէին ՚ի ծովն և ելանէին։ Եւ առաքեաց զնոսա ընդ զօրսն՝ զի յորժամ եկեսցեն բանակիչք կղզւոյն նաւօք ՚ի կռիւ ընդ նաւսն Տաճկաց, մտցեն նոքա յանկարծակի ՚ի քաղաքն և այրեսցեն զնա, զոր և արարին իսկ. և բարձան ապստամբքն և ընկէր դիւրութիւն վաճառականաց և երթեւեկաց և աշխարհին Պասրայոց շինութիւն և ընդարձակութիւնս յոլով։

Յայսմ ամի. եղ Սրուանշահ և շինեաց ՚ի մէջ Նինուէի և Բաբելոնի զգետղն Շամիրա

արքունիք մեծ և ընդարձակ, և բերեալ յԵ-գիպտոսէ բալասանի տունկ և այլ բազում ազգս տնկոց, և շինեաց անդ դրախտս և վայելչութիւնս զբօսանաց։ Եւ դխոտացեալ զի մին է Բաբելոն և այլ է Բաղդատ, չորս աւուր է միջոց նոցա։

Յայսմ ժամանակի առաքեաց Աբուսահլն դեսպան 'ի Նուբիան այսու պատճառաւ։ Ի հին ժամանակաց կայր խաղաղութիւն 'ի մէջ Տաճկաց և 'ի մէջ Նուպեացն, և Տաճկունք տային Նուպեացն ցորեան և գինի և ձէթ և հանդերձս շատ յոյժ։ Եւ թէ ելանէր թագաւորն Նուբեաց յերկիրն Տաճկաց, հնազանդէին նմա Տաճկունք յամենայն իրս որպէս իւրեանց թագաւորին։ Եւ Նուբիքն տային Տաճկաց երեք հարիւր սեաւ ծառայ, և տասն ապուշնայ և զուրաֆէ մի, որ է կենդանի գոմիշոյ չափ և խայտ, և առաջքն բարձր, որ է գինն քան հազար դահեկան, և փայտս անփուտս։ Եւ յորժամ անկաւ բաժանումն 'ի Տաճկունս, խափանեցաւ սահմանն այն զոր խնդրէր Աբուսահալն. և յորժամ գնաց դեսպանն, իշխան մի Զաքարիա անուն որ գրեալ էր զորդին թագաւոր Գէորգի անուն, որ էր 'ի կնոջէ թագաւորազնէ. զի առ նոսա օրէնք է. հայրենեօք թագաւորել, և որ լինի յազգէ թագաւորի։ Հաճոյ թուեցաւ Զաքարիայի առաքել զորդին առ

Սքուտահլի։ Եւ յորժամ լուաւ զգալուստն Նորա Թագաւորն Տաճկաց, արար ուրախութիւն մեծ, և առաքեաց և արար պատրաստութիւն ճանապարհին ծախք մեծամեծք՝ մարդոյ և գրաստուց. և ետան հրաման ելանել ընդ առաջ Նորա Տաճկաց և քրիստոնէից եկեղեցականաց և աշխարհականաց. և յորդեալ ընթանայր աշխարհն ամենայն ընդ որ գայր Նա՝ առաջի Նորա, զի տեսանէին Նոր իրք. մանաւանդ քանզամենայն վայելուչ հաւակաւ Նստեալ յուղտու, որ զարդարած էր Նա և անգին Թամբօք և կուբայ (1) ոսկեղէն ականակապ և մարգարտաշար 'ի վերայ Նորա զմբեթայարդ, և 'ի վերայ զմբեթին խաչ ոսկեղէն։ Եւ ունէր հանդերձ անասելի բանիւ, և Թագ 'ի գլուխն անգին, և խաչ ոսկի 'ի վերայ խնձորոյ 'ի մի ձեռինն, և գաւազան ոսկի 'ի միւս ձեռինն, և չորք եպիսկոպոսք ընդ Նմա և բազմութիւն քահանայից, և չորս քահանայս աստի և անտի բարձեալ խաչս ոսկիս. և զօրքն վարդապետօք այլապէս հանդերձիւք, և հիանային տեսողքն։ Եւ Թագաւորն Տաճկաց ել ընդ առաջ Նորա փառաւոր բազում զօրօք, և տարաւ զնա 'ի Սաղտատ, և Նստան 'ի միում բարձի։ Եւ կոչեցաւ Դիփանէզխոս պատրիարքն և ազգաց պատրաստաց և հաւաքե-

(1) Կուբայ է գանն կամ հովանոցն կազմեալ 'ի վերայ ուղտոյ ուղտու կամ փղի։

դնեցաւ Թագաւորն Գէորգի . և զարմացաւ պատրիարքն ընդ իմաստութիւն պատանւոյն և ընդ հանճարեղ դաւանութիւն նորա ուղղափառութեամբ , և օրհնեաց զնա ։ Եւ Թագաւորն Տաճկաց ետ Թագաւորին քրիստոնէից պարգևս անկշիռ և անթիւ , զի գիտէր թէ այնպէս յառաջ քան զնա ոչ ոք փառաւորեցաւ 'ի Թագաւորացն որպէս ինքն՝ գալստեամբ Թագաւորին Նուբեաց ։ Եւ հաստատեցին զդաշինսն և զքաղաքսն որ կոչի Նբաւան և Պաւզան՝ արարին կիսաբաժինս , որ կան 'ի վերայ Նեղոսի 'ի մէջ Տաճկաց և Նուբեացն ։ Եւ գնաց Թագաւորն Գէորգի մեծապատիւ փառօք . բայց երկու եպիսկոպոսք և այլ բազումք մեռան 'ի նոցանէ , զի չէին սովոր փոփոխական օդոյ ամարան և ձմերան ։

Եւ յայնժամ երկու զօրագլուխքն Տաճկաց Նասրն և Պապաքն հաճեալ ընդ կրօնս քրիստոնէից զոր. տեսին 'ի Նուբեացն , բազում զօրօք գնացին առ Թէոփիլոս Թագաւորն Յունաց և եղեն քրիստոնեայք ։ Եւ Թէոփիլոս հպարտացեալ նոքօք և առեալ զօր եկն 'ի Զուպատրա և քակեաց զնա , և կոտորեաց հաւասարապէս զՏաճիկսն և զքրիստոնեայսն . և ապա գնաց 'ի Մելտենի և գերեաց . և եհաս 'ի Շմուշատ և 'ի Հանձիթ և գերեաց զքաղաքսն և գնաց ։ Եւ լուեալ

զայս Աբուսահլայն՝ էջ յերկիրն Հռոմայեց-
ւոց երկու բանակօք որ կային ընդ նմա, ե-
րեսուն հազար Մուղրի (1) և երեսուն հա-
զար վաճառական, և յիսուն հազար ուղտ
և քսան հազար ջորի բարձեալ ոսկիւ. և
գնացեալ եառ զԱնկուրիա։ Եւ ել յԱմուրին
քաղաք մեծ և բազմամարդ, ամուր և վայե-
լուչ, որ ոչ գոյր նման նմա 'ի վերայ երկրի, և
երկոտասան օր պաշարեաց զնա սաստիկ պա-
տերազմաւ, և առ զնա մատնութեամբ իշխա-
նի միում՝ Բօռճան անուն. և կային 'ի նմա
հազար վանք կուսանաց, զորս ետ կանայս
ծառայից իւրոց. և սպանին ութևտասն հա-
զար անձինս, և այրեցին զքաղաքն և զեկե-
ղեցիսն. և անճառ է իրաւունք դատաստա-
նին Աստուծոյ և ոչ ոք է հասու նմա (2)։

Եւ կայր որդի մի Աբուսահլայ Դաւութ
անուն։ Սա խնդրեաց 'ի հօրէն բառնալ ըզ-
քրիստոնէից համարձակութիւնն, ոչ բառ-
նալ մեռեալ վերամբարձ, և ոչ հարկանել

(1) Մուղրէք են Մաւրիտանացի Արաբք. Մաղրեպցիք։

(2) Ղեւոնդ յիշէ զպաշարումն քաղաքիս լեալ 'ի ձեռն եղ-
բօրորդւոյ նորին՝ Աբաս զօրավարի. որ առեալ զայն, ասէ, ամիսս
երիս. և ոչ ինչ կարացեալ վնասել քաղաքին 'ի պատճառս
Սագառիս (Զանգարիոս) գետոյ, որ շուրջ զնովաւ տարածեալ
անկոխելի պահէր զնա, թողին զպաշարումն և 'ի բաց գը-
նացին։ Եր. 190—191։ Այլ ամենայն պատմագիրք Յու-
նաց և Արաբաց ասեն թէ մատնեցաւ քաղաքն 'ի ձեռն
ութսուն մարդոյ, զոր կոչեն Բոյդիցէ, և զոր պատմագիրս
Ծործ կամ Բոռճան կոչէ։

ժամանակ, և ոչ երեւել խաչ արտաքոյ եկեղեցւոյ, և ոչ պաշտել յայտնապէս զպաշտօն խորհրդոյ եկեղեցւոյ, և ոչ մտանել գինի 'ի քաղաք և ջնջել զխոզն յերկրէ. և այսպէս առեալ զքրիստոնեայս Դաւութն.

Յայսմ ժամանակի յայտնեցաւ Աբուսահլայ թէ Աբաս եղբօրորդին իւր կամի սպանանել զնա, և բազում իշխանք ուխտեալ են առնուլ օգնական զՀոռոմայեցիս և բառնալ զթագաւորութիւնն Տաճկաց, և լինել ընդ Հոռոմօք. և եդ զնոսա 'ի կապանըս և մեռան 'ի սովոյն. և գրեաց ընդ ամենայն Տաճկունք թէ Աբաս կամէր եղծանել զիշխանութիւնն Տաճկաց, և վասն այնր պատճառի ատեն զԱբաս ամենայն Տաճկունք:

Յայսմ ամի երեւեցաւ 'ի կողմանս հիւսիսոյ կարմիր ամպ իբրեւ զհուր, երեք գիշեր, և ապա եկն անձրեւ ամպուր և անտես, որ բերէր քարինս և կեղեւեաց զծառս, և մերկացոյց հեղեղն զդաշտս երկրի 'ի հողոյ, և եկաւ հեղեղն 'ի վերայ Խառանայ և խեղդեաց անթիւ բազմութիւնս մարդոյ և անասնոյ, և տապալեաց գիւղս և գաւառս բազումս, և տարաւ ելից զնոսա յԵփրատ.

Յետ այսորիկ առաքեաց Թէոփիլոս թագաւորն նուէրս Աբուսահլայ և խնդրեաց 'ի նմանէ փոխել զգերիսն, տալ զՀոռոմայեցիսն և առնուլ զՏաճիկսն: Նա առաքեաց նմա

(Աբուսահլ) կրկին պատարագս՝ յիսուն բեռն ուղտու, և ասաց. «Չէ օրէն Արաբկաց փոխել զմարդ Արաբ ընդ Յունի, զի պատուական են Արաբիկք. բայց թէ տաս զմերն, առնեմք քեզ դարձուածս բազումս։» Եւ արձակեաց (Թէոփիլոս) զբազում Տաճիկս, և եղեւ խաղաղութիւն ՚ի մէջ նոցա։

Բայց երեւեցաւ զայսու ժամանակաւ ՚ի Պաղեստին այր մի Թամամ անուն, և ասէր զանձնէ պատգամաւոր Աստուծոյ և նախանձախնդիր պատգամաբերին առաջնոյ. և ասէր թէ՝ «Չէ արժան ՚ի քրիստոնէից հարկ առնուլ, բայց միայն չորս դրամ.» և խնդային քրիստոնեայք, և ժողովեցան երեսուն հազար այր մերկ և բոկ և աղքատք. և եկ նոքօք յԵրուսաղէմ և քակեաց զսուրբ Յարութիւնն։ Եւ եկն առ նա Ջափր (1) զօրագլուխն ՚ի Դամասկէ և սպան զնա։ Եւ յայն ժամն մեռաւ Աբուսահլն և թագաւորեաց Ահարոն որդի նորա (2)։

Եւ ՚ի նոյն ամի մեռաւ Թէոփիլոս, և թագաւորեաց Միխայէլ որդի նորա երեք ամաց, և Թէոդորա մայր նորա կարգաւորէր զթագաւորութիւնն։

Իսկ Ահարոն թագաւորն (էր) այր կերող և

(1) Յօրինակին Ջափ։

(2) Ահարոն Բ. Աբու-Ջաֆար Հարուն էլ—Վաթիք կամ Վասիք կոչեցեալ, թագաւորեաց յամս 842—847.

տրբեցող, և ինչ ոչ խմանայր 'ի յանցից և 'ի պատահմանց աշխարհին, Թողեալ զԹագաւորութիւնն 'ի ձեռն արանց ոմանց, (Թագաւորեալ) զհինգ ամ և մեռաւ ։

Իսկ Թէոդորա վարեաց զԹագաւորութիւնն չորեքտասան ամ ընդ որդւոյն և մեռաւ և հաստատեցաւ Միխայէլն ։ Իսկ 'ի ժամանակս սորա վեց Թագաւոր փոխեցաւ Տաճկաց. Ահարոն, Ջափար, Մահմադ, Ահմադ և միւս Ահմադ, Ապու—Աբդլա՝ որ յարքեցութեան իւրում սպանանէր զբազումս առանց պատճառի. զկնի նորա Մուհդի (1) որ ել 'ի Խորասան և եկն 'ի Բաղտատ ։

Իսկ Միխայէլն զքսանևհինգ ամ Թագաւորեալ մեռաւ, և զի ոչ գոյր սմա որդի, Թագաւորեաց ոմն Վասիլ անուն երկու ամ (2). և զհետ սորա Թագաւորեաց Լեւոն (Զ) որդի իւր ամս քսանևհինգ և ամիսս ութ։ Իսկ մեռաւ Մհաւդ (Ալ—Մահդատի) յաւուրս սորա, և Թագաւորեաց Ահմատ ամս քսան երեք ։

(1) Այսէ Ալ—Մուհդատի Մահմետ, որ Թագաւորեաց յամէ 869—870 ։ Զսա յաջորդեաց Ալ—Մութամէտ Ահմէտ յամէ 870—892 ։

(2) Վասիլ էր Արշակունի ազգէ. և էր անձնապահ Միխայէլի կայսեր. յամի 866 արար զնա իւր գահակից, այլ զկնի միոյ ամի կացոյց փոխանակ նորա զոմն յանձնչանից Վասիլիկիանոս անուն. վասն որոյ և Վասիլ զերկոսին եւս սպանեալ՝ ինքն Թագաւորեաց ամս ութ և տասն, և ոչ ըստ ասելոյ Միխայէլի ամս երկու ։

Յետ Թէոփիլոսի մայրն Միքայէլի զկնի մետասան ամի թագաւորութեանն կամեցաւ սպանանել զորդին, և որդին զմայրն. և յանկարծ մեռաւ մայրն վկայեալ բարի գործովք։ Եւ յետ ամի միոյ մեռաւ կինն Միքայէլի, և նա կոխեաց զկանոնս Առաքելոցն և էառ այլ կին, և եղեւ ատելի ամենեցուն. և թողեալ զկինն առանց պատճառի, և առ մի կին այլ. և էառ այլ երրորդ կին, զի ոչ գոյր յանդիմանիչ, և առ չորրորդ կին կենդանի. և ըսկսաւ կանոնել՝ թէ պարտ է առնուլ չորս կին ամենայն մարդոյ. և յետոյ ինքն աղէցաւութեամբ մեռաւ։ Եւ յայն ժամու յայտնեցաւ ՚ի պատրիարքն Կոստանդինուպոլսի կախարդութիւն, և հանին զնա և դրին միւս այլ, և գտաւ նա կախարդ և կռապաշտ. զի եդեալ էր ներքոյ վարագուրին կուռք և պաշտէր զնա ՚ի ժամ խորհրդոյն. և յայտնեցաւ չարիքն և վասն այսր պատճառի բարձաւ վարագոյրն յեկեղեցեաց նոցա ժամանակս յոլովս։ Եւ եդին պատրիարք մի այլ. և նա պաշտէր կուռս և ձգեցին զնա, որ ասէր թէ՝ «Ի ձեր հայրապետացն եմ ուսեալ զայս, թէ ոչ՝ մինչ ՚ի յայս ոչ գիտէի զայս։» Եւ այս եղեւ նոցա՝ զի ոչ ունէին զկատարեալ սահման հաւատոյ, թոյլ ետ նոցա Աստուած գործել զանարժանն։

Զկնի այսորիկ թագաւորեաց Աղէքսան

դրան որդի Լեւոնի ամիրի (1). և էր սա հե-տեւող կախարդաց. և 'ի ժամանակս սորա եղեւ շարժ 'ի Թրակիա ; և պատառաւ էր երկիր և կլանէր բազում եկեղեցիս և շինուածս. և մեռաւ Աղէքսանդրոս հարուածօք, և Թա-գաւորեաց կիսեղբայր նորա Կոստանդին (Է) ամս յիսուն և եւթն. և զի տղայ էր, եդին նմա դաստիարակս և օգնականս մինչեւ հաս-տատեցաւ ։

Ի սորա ժամանակս փոխեցաւ Թագաւո-րութիւնն Տաճկաց (Արաբաց) 'ի ցեղն Մահ-մետի 'ի ցեղէն Ալեայ (2), և Թագաւորեաց Աբլաբաս (Աբուլ—Աբբաս) ամս քսան ։ Նա յայնմ ամի եղ գլխաւորն Բուլղարաց և զօ-րացաւ 'ի վերայ Յունաց, և այլ գնաց 'ի Կոստանդինուպօլիս և նեղեաց յոյժ, և ոչ հանդարտեաց պատերազմի նորա զամենայն ժամանակս Կոստանդեայ ։

Յերեքտասան ամին Կոստանդեայ Թա-գաւորեաց Արաբկաց Մահմէտ ամս վեց։ Նա 'ի քսան և ինն ամին Կոստանդեայ Թագաւո-րեաց Ջափար ամս քսան և չորս ։ Ի յիսուն երեք ամին Կոստանդեայ Թագաւորեաց Ա-բունասր (Աբուլ—Մանսուր) 'ի վերայ Արա-բացւոցն ամս երկու . և 'ի յիսուն և չորս ա-

(1) Ալէքս կամ Աղէքսանդր էր կրսեր եղբայր Լեւոնի. որում յաջորդեաց եղբօրորդի իւր Կոստանդին Է, ամս 47.

(2) Յօրինակին` և 'ի ցեղն Ալւոյ.

մին Կոստանդեայ թագաւորեաց Աբլղաս (Ապուլ—Աբբաս) ամս հինգ։ Եւ ի յիսուն և հինգ ամին հիւանդացաւ Կոստանդին և մեռաւ, և թագաւորեաց փեսայ նորա Ռոմանոս (1)։ Եւ յայսմ ամի եկն Սիմոն գլխաւորն Բուլղարաց և գերեաց զԹրակիա, և չոգաւ նստաւ ՚ի վերայ Ադրիանուպօլսի և նեղեաց զնա յոյժ և առ զնա և քակեաց։ Եւ առաքեաց Ռոմանոս առ Սիմոն և խնդրեաց սէր, և ած ՚ի հաւանս և տեսին զմիմեանս ՚ի վերայ ծովուն և եղև խաղաղութիւն նոցա յարեւմտից կողմանէ, և դարձան ՚ի կողմն արեւելից։

Եւ վասն զի Կապադովկիա Հայոց և Միջագետք Ասորւոց և Կիլիկիա ընդ ձեռամբ Տաճկաց էին ՚ի Հերակլեայ (հետէ), բայց այժմ տկարացան վասն անքեցութեան և չնութեան իւրեանց։ Եւ ել Կիրակոս զօրավարն Ռոմանոսի և եկն ՚ի Մելտենի փոքր Հայոց, և քաղաքն խնդրեաց նեղել նոցա զքառասուն օր, զի առաքեսցեն առ Թագաւորն իւրեանց եթէ զինչ հրամայեսցէ. և լուաւ նոցա Կիրակոս։ Եւ հանեին դեսպան որ գնայր, և կալան և ածին զդեսպանն

(1) Այս Ռոմանոս Ա. էր աներ Կոստանդնի կայսեր Պորփիւրոժենեայ, և որդի Վաշտակայ հայկազնոյ, որ ՚ի կենդանութեան փեսայի իւրոյ թագաւորեաց ամս 26։ Միքայէլ Չամչեան, Հատ. Բ. յէջ. 816։

առ Կիւրակոս. և նա փախեաւ երկեղի՝ ապաւինեալ երդուեալ նոցա արատով տալ նոցա զքա-ղաքն. և յանձնեաց առ նոսա. և ապա մտեալ ՚ի քաղաքն եւս նոցա աւետիս թէ՝ «Այսօր հասանեն զօրքն մեր, և ՚ի ժամ երեկոյին բացէք զդուռն որ մտանեն ՚ի քաղաքս:» Եւ հաւատացին նմա: Եւ կազմեցան Հոռ-մայեցիքն իբրև զզօրս Տաճկացն, և եկին ՚ի ժամ երեկոյին և մտին ՚ի քաղաքն. և լցաւ քաղաքն զօրօք, և առին զնա. բայց ոչ սպանին զՏաճիկսն զի երդուեալ էին, և հանին զնոսա և գնացին (1): Եւ զԿարնոյ քաղաք առին և զԹէոսուն և զամենայն երկիրն. և գնացեալ ՚ի Կիլիկիա առին զնա և աւերեցին նմա: Եւ ելեալ գնացին յԱնտաք և ՚ի ծովեզերեայս և յԵրուսաղէմ, և հաւանեցան փութանակի զի տկարացեալ էր Տաճիկն:

Եւ յայսմիկ մեռաւ Ռոմանոս (Ա) և թա-գաւորեաց Կոստանդիանոս փեսայ նորա որ էր այր վարժ գրոց և բարեգործ: Եւ ՚ի չոր-րորդ ամին նորա թագաւորեաց Աբուտահլ ՚ի վերայ Արաբկաց. և առաքեաց Կոստան-դիանոս զորդի իւր զՄաւրիլն որ եկն և էառ զՍամոսատ: Եւ եկն հանքաւ գուժիրն՝ թէ մեռաւ Կոստանդիանոս (Ը) և թագաւորեաց Ռոմանոս (Բ) որդի իւր: Եւ ՚ի նոյն ամի մե-

(1) «Յաւուրս Աբասայ և Բագրատունեաց առաւ Մելտենէ ի ՚ի Տաճկաց ՅՁԳ թուին:» Վարդան. էջ. 120:

ռաւ Աբուսահլն՝ թագաւորն Տաճկաց, և թագաւորեաց Ապու Իքանան ամս վեց:

Իսկ Որմանոս թագաւորեալ՝ արար պատիւ զօրացն և ետ պարգևս առատաձեռն, և առաքեաց զօր և առին զՀալպ և Նեղքին զՏաճիկսն: Եւ մեռաւ Որմանոս (Բ) և զօրքն թագաւորեցուցին զՆիկեփորոս 'ի վերայ իւրեանց. այր ատեցող ուղղափառաց՝ 'ի բազմաց պատարեալ: Սա ելեալ 'ի Մելտենի ետես աւերակ զքաղաքն և զաշխարհն, և առեալ խրատ 'ի հաւատարմացն իւր թէ՝ «Առաքեա առ Աթանաս (1) պատրիարքն Ասորւոց որ բերէ զազգն և շինէ զաշխարհս, որ թէ դարձեալ զօրանան Տաճիկք, լաւ է մեզ զի նոքա կորիցեն և անկցին 'ի ձեռն Տաճկաց»: Եւ առաքեցաւ (առ) տէր Յովհաննէս յԱնտաք և երդուաւ նմա, որ թէ լնու զաշխարհն ուղղափառաց նա, կամ դարձուցանէ զամենայն երկիրն յուղղափառութիւն, և կամ ոչ՝ երկաբնակացն տացէ արհամարհել զնոսա: Եւ հաւատաց նմա Պատրիարգն, և գնաց ժողովեաց յամենայն տեղեաց ուղղափառս խոստմամբ թագաւորին, և շինեաց զՄելտենի և զերկիրն և վանորայս բազումս, և արար զբնակութիւն իւր 'ի Պերի

(1) Աթանաս՝ ըստ համարի թարգմանչին փոխանակ գրելոյ Յովհաննէս. որ էր յայնժամ կաթողիկոս Ասորւոց. որպէս փոքր մի զկնի ուղղէ զսխալն:

տըն (1) ։ Իսկ յորժամ յաջողեցաւ իւրքն, կոչեաց Թագաւորն զնա 'ի Կոստանդնուպօլիս պատճառանօք խոստմանն. և գնաց Տէր Յովհաննէս բազում եպիսկոպոսօք 'ի Կոստանդինուպօլիս ։

Ի Թուին Ասորւոց ՌՄՂ (1280) և Հայոցն ՆԷ (407) ժողովեալ էին անդ երկաքանչիւր բազում, և արարին քննութիւն բազում վասն հաւատոյ երկու ամիս. և այնչափ սըտեցան Բաղկեդոնիկքն, որ չմնաց կարծիք ճշմարտութեան 'ի նոսա յամենայն կողմանց ։ Իսկ ապա դարձեալ խաբեցաւ Թագաւորն յոմանց և սկսաւ ողոքել և խոստանալ աթոռըս և պատիւս եպիսկոպոսացն թէ հաւանին և ընդունին զդաւանութիւն նոցա, և սպառնալիք՝ թէ ոչ հաւանեսցին ։ Իսկ նոքա ոչ յողոքանացն պատրեցան և ոչ 'ի սպառնալեացն երկեան, այլ ասացին. « Մեք ոչ կարեմք բաժանել զմիաւորեալ բանն Աստուած յերկուս և բաժանիմք 'ի նմանէ կամ վասն պատւոյ և կամ վասն երկեղի ։ » Իսկ լուեալ զայս Թագաւորն բարկացաւ 'ի վերայ նոցա և եդ զնոսա կապանօք 'ի բանտի չորս ամիս։

Իսկ բարկութեամբ եհար Աստուած ըզԹագաւորն և մեռաւ, և առ զԹագաւորութիւնն Յովհաննէս այր պատերազմող

(1) Պեզիան է անուն վանիցն զոր շինեաց. Պատրիարքն Ասորւոց ։

և անձնեայ. բայց ասեն թէ կինն Նիկեփո-րայ Թէոփանէ զայրն իւր սպան, զի չէր առ-մուսնացեալ ընդ նմա, և առ զՅովհաննէս, որ յառաջագոյն բառնայր և դնէր զչմուշկ(1) թագաւորին և շնայր ընդ թագուհին, և Թէ-ոփանէ ած զնա այր և ետ նմա թագ, և կո-չեցաւ վասն այսորիկ Չմշկիկ(2)։ Սա եղեալ ախոյեան՝ էառ պատուաս բազում 'ի Տաճկաց. և սա եհան զպատրիարգն Ասորւոց և զե-պիսկոպոսն իւր 'ի բանտէն և գնացին 'ի գա-ւառս իւրեանց։

Ի սոյն ժամանակի եղեւ պատրիար-գըն Անտիոքու Քաղկեդոնիկ՝ Աղափի (Ագա-փիոս) անուն, որ արար հալածանս ուղղա-փառաց ձեռնատուութեամբ ումանց իշխա-նաց՝ զորոց որդիսն սան էր առեալ յաւազա-նէն. որ և առեալ զԱւետարանն Ասորւոց և զմեռոնն և զհաղորդն երեք կրկին ջանաց այրել հրով բորբոքելով, և ոչ այրեցաւ 'ի շնորհացն Աստուծոյ պահպանեալ. և ոչ զըղ-ջացաւ անօրէնն, այլ ասէր լրբութեամբ թէ՝ «Կախարդութեամբ դոցա ոչ այրին.» որ և

(1) Յօրինակին եղեալ էր նախ՝ չմուշկ, որպէս ունի և միւս թարգմանութիւնն, և յետոյ յաւելեալ էր 'ի մերում տառս չ։ Բայց թէ մին և թէ միւսն անյարմար են մեկնու-թիւնս զոր տայ Միխայէլ Չմշկիկ անուան որ էր մականուն Յովհաննու կայսեր։

(2) Տես 'ի գիրս Մատթէոսի Ուռհայեցւոյ. Ա. 7. յոր. 6. ասեալ յԵրուսաղէմ։

չարագոյն գտաւ սա քան զՆաբուգոդոնո- սոր, որ 'ի տեառնեղէն զերիս մանկունսն ոչ այրեցեալ՝ զղջացաւ և փառաւորեաց զԱս- տուած։ Իսկ սա յանդգնեալ 'ի տօնի Յարու- թեան եհան յեկեղեցեացն և 'ի քաղաքէն զՀայս և զԱսորիս՝ արամբք և կանամբք, և ար- տաքոյ քաղաքին արարին զտօնն։ Եւ և խնդրե- ցին յԱստուծոյ արտասուօք և եդին ուխտ ոչ մտանել 'ի քաղաքն մինչեւ տեսցեն աւերեալ զվրէժ իւրեանց։ Եւ կատարեաց Աստուած վաղվաղակի զհայցուածս նոցա, և եհար զսա- մամբ և չարաչար ցաւօք զայրն ամբարիշտ և մեռաւ, և դարձուցին զնոսա աղաչանօք և պատուով 'ի քաղաքն՝ փառաւորելով զա- նունն Աստուծոյ. և գործեցաւ այս 'ի թու- ին Ասորւոց՝ հազար երկերիւր ութսուն և հինգ, և Հայոցն՝ չորս հարիւր երկոտասան։

Իսկ Չմշկիկ թագաւորն էր 'ի Հանձի- թայ գաւառէ և զայնր կողմանն առնէր ըղ- բնակութիւն իւր. սա ազատեաց զծառայսն ամենայն, և էր առատաձեռն և ողորմած սրտիւ, և սիրեցաւ յամենայնէ։ Սա շինեաց մեծ եկեղեցի 'ի Կոստանդնուպօլիս. և ասեն զնմանէ թէ Հայ էր ազգաւ։ Սա թագաւո- րեաց ամս երեք (1) և մեռաւ. և եղեւ սուգ մեծ առ հասարակ ընդ ամենայն աշխարհն

(1) Յովհաննէս Չմշկիկ թագաւորեաց ամս վեց և ամի- սս ինչ։

Հռոմայեցւոց։ Եւ թագաւորեցին Վաղէ-ղըն եւ Կրատիանոսին որդիքն Ռոմանոսի թագաւորին. եւ հայքն սիրով առ միմեանս, քանզի Վաղէն կացոյց զեղբայրն 'ի թագաւորութեանն, եւ ինքն կայր ընդդէմ Տաճկաց, որ եւ թագաւորեաց ամս յիսուն եւ հինգ, եւ զամենայն աւուրս իւր յաղթութիւնս բազումս կատարեաց եւ հնազանդեաց զբազում աշխարհս, եւ կայր ընդդէմ Հայոց եւ արեւմտից եւ արար հնազանդ զՀայս եւ զԲուլղարս (1). եւ մեռաւ, եւ Կրատիանոսին եղբայր նորա եկաց 'ի տեղւոջն երկու ամ եւ կէս եւ մեռաւ։

Եւ յաւուրս սորա թագաւորեաց Տաճկաց Սլիման ամս քսան եւ ինն, եւ զկնի նորա Բուբաքր ամս տասնեւինն, եւ յետ նորա Ապլաբաս (Ապուլ Աբբաս) ամս քառասուն երկու։

Եւ զկնի Կոստանդիանոսի (Ը) թագաւորեաց Յունաց Ռոմանոս (Գ) եղբայր որդին Կոստանդեայ (2), եւ ելեալ 'ի պատերազմ 'ի վերայ Տաճկաց եւ յաղթեցաւ եւ եղեւ փախստական։ Եւ սա արար հալածումն մեծ

(1) Զգործս պատերազմացն Վաղէի տես 'ի գիրս պատմութեան Սոկրատ. Աղեքսանդր. Գիրք Բ. Գլ. ԺԴ. եւ այլն։

(2) Ռոմանոս Գ. էր փեսայ Կոստանդնի Ը. զորոյ դուստրն Զոյի առեալ էր։ Մուրալթեայ [illegible] Ա. 41. յէջ 63։— Սմբատ. յէջ. 50. տես փոքրիկս։

ընդ ամենայն երկիր իշխանութեան իւրոյ. և սա գոչեաց զտէր Յովհաննէս ՚ի Կոստանդինուպօլիս. և գնաց վեց եպիսկոպոսօք և բազմութեամբ քահանայից. և եգիտ ժողովեալ ՚ի Կոստանդինուպօլիս երկերիւր եպիսկոպոս քաղկեդոնիկ, և արարին քննութիւն հաւատոյ: Եւ յոտն ունէին զՊատրիարքն և ինքեանք նստէին. և Պատրիարքն այր ծեր էր և աշխատէր յոտն, և երկու եպիսկոպոսք աստի և անտի անցեալ պնդէին ըզնա. և նա խօսէր գրոց վկայութեամբ և յանդիմանէր խստագոյնս. և խոստացան տալ նըմա զաթոռն Անտիոքու թէ խօսք մի ասէ՝ երկու բնութիւն յետ միաւորութեանն: Եւ պատասխանի ետ և ասէ. «Ես զաթոռն Պետրոսի ունիմ յերկրի և յերկինս, և մարմնաւոր աթոռոյ ոչ ցանկամ. և զայդ որ մի խօսք ասիցէք զիս ասել՝ երկու բնութիւն, Երրորդութեանն ուրացութիւնն այլ ինչ է՝ քան մին խօսք:» Եւ Մելտենոյ եպիսկոպոսն Թէոդորոս ած նմա ապտակ ՚ի ծնօտն աջոյ. և նա մատոյց զմիւսն. և յարեաւ ոմն եպիսկոպոս (Սուրի) և եհար զԹէոդոր, և կայր յոտն առ ընթեր Պատրիարքին. և ասէին նմա նստիլ, և նա ասէ. «Ես զՔրիստոս ապտակեալ տեսանեմ և յոտն, և ես նստիմ:» Եւ դարձան արձակեցին զժողովն վասն աբբամութեանն, զի սկսան ՚ի լալ Թագաւորն և

իշխանքն ։ Եւ յետ այնորիկ սկսան դնել ա-
տեան, և ասեն. «Դուք քրիստոնէութիւն
կատարեալ ոչ ունիք. առէք մկրտութիւն և
ապա քահանայութիւն և գնացէք ։» Եւ ա-
սէ Պատրիարքն. «Մկրտութիւնն Քրիստոսի
և քահանայութիւնն առ մեզ է, զոր ետուն
մեզ սուրբ Առաքեալքն և պահեցին Դէոս-
կորոս և Սեւերիոս, և դուք խակի ոչ ունիք.
բայց թէ միայն նորմք 'ի գլուխս ձեր ։» Եւ
բարկացան և ետուն հրաման երթալ յա-
րեւմուտս յաքսորս. և տարան զնոսա քսան
և ութ օր, և դարձեալ ողջացան և դար-
ձուցին 'ի Կոստանդնուպօլիս և եդին զնո-
սա 'ի բանտի, որ լինէին յոլով բժշկութիւն,
և ել համբաւ սքանչելեացն, և ոչ մնաց իշ-
խան և ժողովրդական որ ոչ զարմացան, և
բազում կոյրք բացան և դիւահարք բժըշ-
կեցան ։ Եւ անդ 'ի բանտին կատարեաց ըզ-
կեանս իւր երանելին Յովհաննէս պատրի-
արքն մարտիրոսական հանդիսիւ 'ի փառս
Աստուծոյ, և ամփոփեցաւ յաշակերտաց իւ-
րոց, և եդաւ ընդ սուրբս յիշատակ նորա և
ընդ մարտիրոսս մարմին նորա ։

Եւ բարկութիւն Տեառն եկեալ 'ի վերայ
Ռոմանոսի և մեռաւ չարաչար. և թագա-
ւորեաց Միխայէլն (Դ.) ամս ութ. և յայնժամ
Տաճկաց թագաւոր Աբլաբաս (Աբդալլահ)
էր ։ Եւ սա ազգային Միխայէլի Կալաֆատա

*ոնուն, ապստամբութիւն խորհեցաւ հինգ ամիս, և խաւարեցին զաչս նորա։ Իսկ յաւուրս Միխայէլի Սուլիման տաճիկ եառ զՈւռհա ի Հոռոմք(1). և մեռաւ Միխայլն, և կալան զԹագաւորութիւնն Զօյի և Թոտոռն (Թէոդորա) դստերքն Կոստանդիանոսի։*

---

Դ.

Պարտ է զի յայսմ միջոցի գրեմք սակաւուք սակս Թուրքաց եղիցն թէ յորմէ ազգէ են, եւ կամ ո՞ր է բնակութիւն նոցա, եւ կամ զիա՞րդ բնակեցան առ մեզ, գալով յերկիրս յայս։

Ա*ՍԷ սուրբն Մովսէս ի գիրս արարածոցն(2), թէ "Թորգոմ ծնաւ զԳոմգ և զայլս ընդ նմա." յայտ է՝ զի յազգէ Յաբեթի է Թուրքք, որ է Գոմգ և Մագոմգ։ Իսկ Թուրքք վասն Թորգոմայ ասին, որ յետ աշտարակին*

(1) Մատթէոս Ուռհայեցի (Ա. 43. յէր. 65—72). Երկայր բանիւք ճառէ զանցս Ուռհայոյ, և ասէ եթէ Սալման (Սիւլէյման) բերդապահ քաղաքին ձանձրացեալ ի ներքին խռովութեանց և պատերազմաց, յանձնեաց զքաղաքն ի ձեռս Մանիակեայ որ էր իշխան կարգեալ ի կողմանէ կայսեր ի վերայ քաղաքաց Եփրատայ։ Եւ այս եղեւ առ կայսերութեամբ Ռոմանոսի Գ. և ոչ Միխայէլի։ — Սմբատ. յէր. 51։

(2) Ծննդոց, Ժ. 2, 3։

գնացին յարեւելս և դարձան 'ի կողմն հիւսիսոյ, և առին բնակութիւն 'ի մէջ երկուց լերանց մեծաց և երկայնից. և ձգեցան տարածեցան յարեւելից հիւսիսոյ մինչեւ յարեւմուտս հարաւոյ. և ունին երկու դրունս, մին դուռն բանայ 'ի Պարս և մին դուռն 'ի Վիրս, զորս փակեաց Աղեքսանդր Մակեդոնացին։ Եւ են նոքա պարկեշտ 'ի ցանկութիւն կանանց և հեզ գնացիւք և անապահք, և պաշտեն մի Աստուած, և կարծեն թէ երկինքն է այն մի Աստուածն. զի ասեն նմա տանգրի, և կոչեն ըստ նոցա լեզուին կապոյտ կոչի, որ է կապոյտ Աստուած, զոր կարծեն վասն երկնից։ Եւ ուտեն զամենայն մեռելոտի և զզուելի, և ագանին բրդեղէնս և մազեղէնս, զի այլ ինչ ոչ լինի առ նոսա. և ոչ ունին օրէնս ինչ գրով և ոչ աւանդութեամբ, զի ոչ գնաց առ նոսա Մարգարէ կամ Առաքեալ (1)։ Եւ վասն այնորիկ դրամբք արգելին զնոսա, զի մի ապականութեամբ լցցեն զերկիր և բազմութեամբն իւրեանց աւերեսցեն զաշխարհս։ Եւ զդուռնն զայն՝ որ բանայ 'ի Պարս, առաւել ամրացուցին Պարսիկք զշինեալն յԱղեքսանդրէ բերդ մի, և շինեցին բերդս վեց և կացուցին պահապանս. և յորժամ պէտս ունէին զօրացն, հա-

(1) Սամուէլ։ Վարդան, յեր. 127։ Կիրակոս, յեր. 135։

նէին 'ի նոցանէ Պարսից Թագաւորքն վարձուք, և 'ի վճարմանն պատերազմին դարձեալ տանէին արկանէին 'ի ներքս ։

Զոր վասն նոցա Եզեկիէլ մարգարէն բանիւ Տեառն, ելանել Գոգայ և Մագոգայ՝ իշխանաց Թոբելայ և Մոսոքայ, նոքօք պատանեայ ազգին Հրէից, և անդէն կոտորիլ առ Երուսաղէմ. և երկիցս կրկնէ մարգարէն զպատուէրն Գոգայ և զապականութիւն նոցա (1)։ Այլ և՝ թէ ուսումնասէր կամօք միտ դիցէ ոք, երեք անգամ կրկնէ զելլիցն նոցա, որ առաջինն եղեւ յաւուրս Կամբիւսեայ Պարսից արքայի, զոր ոմանք երկրորդ Նաբուգոդոնոսոր կոչեն ։ Սա վարձեաց 'ի Թուրքաց և յաղթեաց Թագաւորին Եթովպացւոց, և առաքեաց 'ի ձեռն Հողամփառնայ (Հողոփեռնեայ) 'ի Պաղեստին ։ Եւ զկնի նորա այլք 'ի Թագաւորացն Պարսից հանին և բերին օգնական իւրեանց 'ի Մակեդոնացւոցն 'ի Սասանեանցն ։ որք դայլին և տային (տանէին) յաշխարհն իւրեանց ոսկի և արծաթ և հանդերձս և պտուղս և այլ բարութիւնս բազումս, և զնոցա ցանկութիւն շարժէին ելանելոյ՝ թէ լինի հնար ։ Եւ նախ քան զգալուստն Քրիստոսի հինգ հարիւր և մետասան ամաւ դիպեցաւ նոցա ելանել այսպիսի պատ-

(1) Եզեկիէլ Գլ. ԼԸ. Զ. ԼԹ. 1։

ճառաւ։ Յորժամ ըստ սովորութեանն դար-
ձուցին զնոսա զհանեալ Թուրքն յերկիրն իւ-
րեանց և գնացին մերձ 'ի դուռն, դարձան
'ի վերայ տարօղացն Պարսից և սպանին զնո-
սա, և յափշտակեցին բերդ մի և մտեալ 'ի
ներքս ամրացան, և աղդ արարին ազգին իւ-
րեանց, և ելին բաժին մի և առին զայլ բերդ-
սն և արարին ընդ իւրեանց հրամանաւ ըզ-
դուռն. և յաճախեաց յայնժամ ելանել բազ-
մութեանցն որ կային 'ի ներքս։ Եւ յայնժամ
գիտացեալ՝ դարձեալ ամրացուցին զդուռնն,
և ելեալ եկին յերկիրն Արաղոյ, յաշխարհն
Պարսից, և ասեն՝ թէ սպիտակ կենդանի
ինչ իբրեւ զշուն առաջնորդէր նոցա, և յոր-
ժամ ցրուիլ ջանային՝ կանչէր կենդանին և
դառնային առ նա և երկրպագէին նմա. և
այսպէս յաշխարհէն իւրեանց մինչեւ յԱրա-
ղա առաջնորդէր նոցա, և ապա եթող զնո-
սա, և անյայտ եղեւ երեւումն։

Եւ նոքա եղեն երեք բաժին, և ձգեցին
վիճակ երեք գաւառաց. մինն անկաւ 'ի կողմն
Հարաւոյ, և գնացին բաժին մի 'ի նոցանէ 'ի
կողմն Հնդկաց և խառնեցան 'ի նոսա հնա-
զանդութեամբ։ Եւ երկրորդն անկաւ յա-
րեւմուտս հիւսիսոյ, և գնաց միջին բաժինն
նոցա յարեւմտից Թրակիոյ և բնակեցան
անդ, և յանուն աշխարհին կոչեցան Կոմա-
նիք։ Եւ երրորդն անկաւ 'ի միջոցս երկրի.

և եկին խառնեցան ՚ի Պարսիկս ։ Եւ յետոյ ելին այլք բազումք, և դարձեալ փախեցին զգուռնն ։ Եւ էին ՚ի նոսա եւթանասուն գլխաւորք, որք եկին ՚ի յԱքաղայ և արարին ՚ի մէջ իւրեանց ծիր եւթանասուն իշխանքն, և կանգնեցան բոլորեալ զծրաւն, և իւրաքանչիւր գաւազան ՚ի ձեռին իւրում, եւ սահմանեցին և ձգեցին զգաւազանն վեր ՚ի յերկինս եւթանասուն գլխաւորքն և ասացին՝ թէ « Այր գաւազան անկանի ՚ի մէջ ծիրին, նա թագաւորէ. » և իբրև ձգեցին, ինն գաւազանն անկաւ ՚ի ծիրն և մէկն ցըցեցաւ ։ Եւ կանգնեցին ՚ի տեղւոջն ինն թագաւորութիւն, և ութն հնազանդեցան միոյն՝ որոյ գաւազանն ցցեցաւ, և կան անդ հաստատուն և ունին զդուռնն. Եւ տիրեն ներքոյ երկու լերանցն, որոց անուանք լերանցն կոչին Սարինք աշխարհի. և նոյնպէս տիրեն արտաքոյ լերանցն բազում աշխարհաց. և անուն գլխաւորին իւրեանց հանապազ կոչի Խաքան, զի այն էր առաջնոյ թագաւորին անունն, և գայ ազգէ յազգ ։ Եւ վասն զի բազումք ՚ի նոցանէ խառնեցան յԱրաբացիս, և նոցա անուամբն կոչին Սուլման, ՚ի Սըլմայ առեալ զանուանակոչութիւն, որ էր առաջնորդ զօրացն որք գնացին ՚ի Կոստանդնուպօլիս ։ Եւ այսու մանաւանդ յաղթեցան ՚ի նոսա, զի մի Աստուած քարոզեն.

Տաճիկք իբրեւ զնոսա : Եւ լուան 'ի նոցանէ թէ մի՛ երկրպագէք արարածոցս . վասն այնորիկ անարգեն զխաչն : Իսկ այլքն որ գընացին 'ի Հնդիկս , որք յարեցան 'ի քրիստոնեայս՝ քրիստոնեայք եղեն , և որք 'ի կռապաշտոն յարեցան , նոյնպէս կռապաշտք եղեն . այսպէս և որ յարեւմուտս՝ պէսպէս օրէնս ունին :

Նմանապէս և ժամանակաւ ընդ միւս դաւուրն հանին Հայք և Վիրք , օգնական իրեանց , և յարեցան 'ի նոսա , և եղեն քրիստոնեայք : Ի նոցանէ են և Խև–չախչն անուանեալք ըստ բառին Վրաց . զի ըստ նոցա լեզուին Խև–ն ձոր կոչի , և չախն ամանն , որպէս թէ՝ 'ի ձոր ամանած կան , և հանեն որպէս յամանոյ :

Արդ , առաջին եղանելն Կամբիւսիւ է , որպէս ասացաւ . և երկրորդն՝ որ առ Տաճկաց (Արաբաց) թագաւորօքն եկին 'ի Պաղեստինէ , և որպէս Յովհաննէս ասիացին ասէ , թէ « Չորս հազար Խուրք կային զհետ Աբու Սահակայ[1], յորժամ էառ զԱմուրիա քաղաք : » Իսկ երրորդն դեռ եւս լինելոց է մօտ 'ի կատարած աշխարհի . որպէս մարգարէն Եզեկիէլ ասացէ երեք անգամ գալ

(1) Այս է Աբուսահակ զորմէ ասէ 'ի վեր յէր. 372 և Ղևոնդ վարդապետ (188) Մահմետ կոչէ , փոխանակ Աբուսահակայ :

նոցա ընդ միջոցս աշխարհի 'ի Հրէաստան երկրի ։ Եւ ասեն, թէ յորժամ Տիբեր կայսր առաքեաց դեսպանս առ նոսա, նոյնպէս և Յուստինոս և Հերակլ, 'ի տեսանելն ըզնոսա՝ լայր խաքանն. և հարցեալ նոցա ըզպատճառն լալեաց, և ասէ. «Այս առ մեզ նախագիտութեան բան 'ի հարցն աւանդից, թէ յորժամ Հոռոմոց թագաւորքն ընծայիւք և կաշառօք հնազանդին Թուրքաց, յայնժամ մերձեալ է աւերն աշխարհի»։ Եւ եհարց խաքանն, թէ «Դուք Հոռոմայեցիքդ հարկս տա՞յք Պարսից՝ թէ ոչ ։» Եւ նոքա ասեն. «Ո՛չ, այլ Պարսիկք հարկին Հոռոմոց, զի Տրայիանոս հարկ եդ 'ի վերայ Պարսից։» Եւ զարմացաւ խաքանն ։ Բայց դեսպանքն որ գնան առ նոսա, ոչ թէ 'ի բուն աշխարհն նոցա երթան, այլ 'ի դուրս կոյս աշխարհն որ ասի Մարաղա ։ Եւ զհինգ հազար կուսանսն Շապուհ խաքանայ առաքէր [1], որ արտաքոյ բուն աշխարհին իւրեանց նստի յընդարձակ վայրի ։ Բայց կան նոքա բուն օրինօք աշխարհին իւրեանց, զատ անտի որ մարդ ոչ ուտեն երբեք զգաւառին իւրեանց։

Իսկ 'ի թուին Ասորւոց ՌՅԿԱ (1361), և Հայոցն ՆՁԸ (488) Թագաւորեաց Յունաց Կոստանդիանոս (ժ) Մոնոմախն՝ ամս երկո-

(1) Տես 'ի վեր յերես 269 ։

տասան, այր մեծահօգի և աստուածեան. և ունէր զսա ցաւն Նիկրիս (1)։ Եւ զՏաճկաց թագաւորութիւնն Աբլաքաս (Ապու-Սէճուար) (2) ունէր։

Յայսմ ժամանակի ընկղմեցաւ Եզնկայ քաղաքն Հայոց ջրով, և մնաց միայն տուն մի հաստատացեալ և ողորմած առն, որում անունն Աբրակոս էր, և հօգետուն մի։ Եւ 'ի սոյն ամի եղեւ շարժ սաստիկ 'ի պահքն Առաջաւորաց (3)։ Եւ 'ի նոյն տարւոջն եղեւ հակառակութիւն յԱնտիոք եկեղեցականաց ուղղափառաց վասն իրաց ինչ, և ոմանք 'ի նոցանէ գնացին առ պատրիարգն երկաբնակ, և նա դարձոյց զնոսա յաղանդն իւր, և զայլ ուղղափառսն բովանդակ հալածեաց 'ի քաղաքէն. և առ 'ի նոցանէ զեկեղեցին որ շինեալ էր 'ի վերայ գերեզմանին Ղուկասու Աւետարանչին, զկնի առնլոյն զսուրբն Պետրոս։ Եւ 'ի զատկի տօնին՝ 'ի նոյն աւուրս եհան Աստուած ընդ կառափն նորա. անկաւ հուր յերկնից և այրեաց զեկեղեցին պատրիարգաւն և աշակերտօքն իւրովք, և այլ բազում ժողովրդով, այնպէս զի և ոսկր մի

(1) Ոտնացաւութիւն.

(2) Մատթէոս Ուռհայեցի. Աղուանար կոչէ զսա. Ա. 54. որ էր ամիրապետ Պարսից և նստէր 'ի Դաւրէն, և առեալ էր զդուստր Դաւթի Անհողնի։

(3) Մատթէոս ուռհայեցի, Ա. 67—Սմբատ, յէր. 63. տիպ փարիզու.

ոչ կարացին հանել 'ի տեղւոջէն. և հաւատացաւ թէ դատաստան 'ի Տեառնէ եղեւ ճշմարտապէս. և դարձուցին զուղղափառսն 'ի տունսն իւրեանց. և որք մնացեալ էին յուրացողացն յայրեցմանէն, դարձան և նոքա 'ի կրօնս իւրեանց (1)։

Իսկ յորժամ լուաւ Թագաւորութեանն Տաճկաց չորս հարիւր և երեսուն ամ, յայն ժամ սկիզբն էառ Թագաւորութիւնն Թուրքաց 'ի Խորասան, և անուն նորա Տուղրիլբաք, և առաքեաց զօրք 'ի սահմանս Հայոց, և եկին 'ի Մելտենի և առին զնա և գերեցին և դարձան. և կալաւ զնոսա ձիւն սաստիկ 'ի լեառն Սասնոյ և անկան 'ի պաղէն երեք հազար անձինք. և գերիքն ազատեալ դարձան, զի կիրթք էին պաղոյ և ցրտոյ և ոչ մեռան (2)։ Եւ մեռաւ Մանօմախն և. առ թագաւորութիւնն դուստրն իւր Թոդորն (Թէոդորա) (3) ամ մի. և զկնի նորա Միխայլն (Զ) այր ծեր, ամ մի։ (Էր սա) այր սուրբ և պահող և ոչ ուտէր զայլոց վաստակ, այլ ձեռօք իւրովք առնէր գրգալս և վաճառէր

(1) Զայս պէս պատմէ և Մատթէոս Ուռհայեցի ճոխագոյն եւս բանիւք. Բ. 77։

(2) Տես զարշաւանս Տուղրիլ պէկին զոր արար յաշխարհն Հայոց. 'ի գիրս Մատթէոսի Ուռհայեցւոյ. Ա. 69. 75. 78։

(3) Թէոդորա էր քենի Կոստանդնի Մոնոմախի. և քոյր Զոյեայ։ Մատթէոս Ուռհայեցի. Բ. 79։

և անտի ուտէր ։ Նա յորժամ ետես թէ զօրանայ Թուրքն , եհան զքրիստոնեայսն՝ որ յայսմ կողմէ ծովուն և անցոյց յայնկոյս , և եկեալ Թուրքն եգիտ զերկիրն անմարդ , և բնակեցան ՚ի տեղին ։ Եւ բազում մեղադրեն նմա , բայց նա մարդասիրութիւն արար ։

Եւ յայնմ ամի յարեաւ ոմն իշխան Կոմանոս , և առ զԹագաւորութիւնն . և Մէխայլն գերծեալ զգլուխն գնաց ՚ի վանք , և Կոմանոսն՝ Թագաւորեալ երկու ամ (1) , և յետ նորա Թագաւորեաց Կոստանդիանոս Տուկիծն յերկրէն Պամփղագոնայ որ զօրացաւ ՚ի վերայ Թուրքաց և շինեաց զՄելտենոյ պարիսպն , և յետ ինն ամի Թագաւորութեան իւրոյ մեռաւ ։

Եւ յայսմ ամի եկն Քութարի (2) զօրապետն Տուղրիլին ՚ի Հալապ և առ զնա ։ Եւ այս եղեւ սկիզբն առնլոյ նոցա քաղաք ՚ի խորին Նորուոց Անձագետաց , ՚ի Դամասկոսէ

(1) Տես ՚ի գիրս Մատթէոսի Ուռհայեցւոյ , (Բ . 79) ընդգործս պատերազմացն զոր յարոյց Կոմանոս (Իսահակ—Կոմնենոս) ՚ի վերայ Թագաւորութեան Յունաց՝ մինչեւ զառնուած զայն ։

(2) Քութարի Թուղի աղաւաղեալն Սլար—խորասան անուան , զի այս էր գլխաւոր զօրապետ բանակին Տուղրիլայ , նոյնպէս և Սամուխ , Ամր—Քաֆր , Գրճանձի , Մձմճ և Իսուլք , զորոց անհնարին արշաւանս և զաւերս զոր ածին Հայոց աշխարհին և փոքուն Ասիոյ յանս Թագաւորութեան Տուկիծայ և Դիոժենի ունիս տեսանել ՚ի պատմութեան Մատթէոսի Ուռհայեցւոյ , Բ . 83 , 86 , 91 , 92 ։

և 'ի Հալպայ 'ի կողմն Եփրատայ մինչև 'ի ծովն Եդրիանոս, որ է Կիլիկիոյն. և գնաց զօրապետն Տուղրիլին մինչև 'ի ծովն Պոնտոսի։

Յաւուրս յայսոսիկ հնչեաց սատանայ 'ի սիրտ Պատրիարքին Կոստանդինուպոլսի, որ արար գործ մի սոսկալի հրեշտակաց և մարդկան. զի զգրեանն և զմեռոնն ուղղափառաց Հայոց և Ասորւոց այրել տայր և կոխել ոտիւք, որ անգամ հացի և ձիթոյ պատիւ ոչ առնէին՝ հաղորդին և մեռոնին. և ետ տանել զպատրիարքն Աթանաս քան և հինգ եպիսկոպոսօք 'ի Կոստանդինուպոլիս. և նախ քան զերթալն նոցա պատահեցաւ անաստուածն այն նախատիչն Քրիստոսի իբրև զԱրիոս։ Եւ փոխանորդ նորա Պատրիարքն արար քննութիւն, և նոքա զայրացեալ և այրեցեալ սրտիւ խստագոյնս յանդիմանեցին զնոսա, և 'ի վերայ այսորիկ արգելան 'ի Գինոս կղզի(1), և հրամանաւ Թագուհւոյն դարձան 'ի տեղի իւրեանց(2)։ Իսկ զկնի Տուկիծին Թագաւորեաց Դէօժանն Ռոմանոս։

(1) Ընթերցիր՝ 'ի Պռինս Գաչյոնի, ուր սովոր էին Յոյնք աքսորել զեկեղեցականս։

(2) Առ թագաւորութեամբ սոյն կայսեր Կոստանդնի Տուկիծայ անուն Յակոբ սանահնեցի ընդ Աստոմայ և Առաջնորդ իշխանաց Հայոց 'ի Կոստանդինուպոլիս, առ 'ի միաբանել զեկեղեցին եկեղեցիսն, և ետ Յակոբ վարդապետ զգիր դաւանութեան, զոր արքայն Գագիկ հանեալ 'ի Կ. Պոլիս պատմեալ զթուղթն զայն առաջի կայսեր։ Մատթ. Ուռ. հայեցի. Բ. 93 — Ալիշան, Հայապ. Դ։

Եւ յայսմ ժամանակի մեռաւ սուլտանն Թուրքաց Տուղրիլն, որ ասի Դօղլաբուգ (1)։ և սուլտանեցաւ Ալփասլան (Ալփ—արսլան) և եկն անձամբ ՚ի Հայս և ՚ի Յոյնս. և հարան Յոյնք յԱլփասլանայ և ըմբռնեցաւ Դիօժանն (2). և լուեալ ՚ի Կոստանդնուպօլիս՝ թագաւորեցուցին զՄիխայլն. և զերծեալ Դիօժանն խաւարեցաւ աչօք, և մեռաւ հրամանաւ Միխայլին։

Եւ առաքեաց Ալփասլան զքորորդին իւր զՍուլիման, և առ զաշխարհն Հայոց և թագաւորեաց. և եղեն երկու սուլտանք, մին ՚ի Յոյնս և ՚ի Հայս, և մին ՚ի Խորասան՝ ազգաւ Թուրք։ Եւ եկն Սուլիման և ՚ի գիշերի մտաւ յանկարծակի յՆիկիա և առ զնա, և արար զուռլը Պետրոս մզկիթ (3)։

Եւ ՚ի սոյն ժամանակս ամիրայ մի անուն Դանիշման, ելեալ ՚ի Թուրքաց և եկն եմուտ յերկիրն Կապադովկացւոց, և առ զՍեւաստ և զԿեսարիա և իշխանեցաւ ՚ի վերայ երկրին։ Եւ այս է սկիզբն տանն Դանիշմանայ (4)։

(1) Վարդան ճշտագոյն ևս արտաբերէ զանունն գրելով Դօղըլպէգ, որ է Տուղրիլ—պէկ. (յեր. 127). Նոյնպէս և զծագմանէ նորա բազմայայտ խօսի, առեալ ՚ի բանից Մխիթարայ անեցւոյ։

(2) Մատթէոս Ուռհայեցի. 103, յեր. 242։—Վարդան, յեր. 136։—Կիրակոս, յեր. 58։—Սմբատ, յեր. 84—Սամուէլ։

(3) Մատթէոս Ուռհայեցի. Բ. 123։

(4) Տես վասն Դանիշմանայ ՚ի պատմութեան Սմբատ.

Եւ յորժամ եղեն պատահմունքս այս, ելին ոմանք 'ի Հայոց արք թուով յիսուն և բնակէին յանապատս և ծեծէին զԹուրքն և առնուին 'ի նոցանէ ինչս 'ի պէտս իւրեանց։ Եւ եկին յերկիրն Սապաշայ, և գտին անդ այր մի Հայ ազգաւ՝ Փիլարտոս անուն, այր անձնեայ և գեղեցիկ, և եղեւ նոցա գլուխ և մտին յերկիրն Կիլիկիոյ, և տիրեալ էր Թուրքն երկրին, և առին 'ի նոցանէ բերդ մի և ամրացան 'ի նմա. և անտի առին զամենայն երկիրն քաղաքօք և բերդօք, և առին շուրջանակի Կիլիկիոյ աշխարհս բազումս, զՄարաշ, զՌեսուն, զԱպլաթայն և ըզԱնտենի և զՈւռհա՝ յայնկոյս Եփրատայ, և զայլս բազումս։ Եւ լուան Յոյնք և տուին Փիլարտոսին պարգեւս, և կոչեցին Սեւաստոս։ Եւ յետ այսորիկ ժողովեցան 'ի վերայ Փիլարտոսին յամենայն կողմանց Թուրք և առին 'ի նմանէ զկէս աշխարհի նորա. և գընաց 'ի Բաղտատ առ խալիփայն և տկարացաւ 'ի հաւատոյն վասն երկրին, և առ 'ի նմանէ գիր զի տացէ զերկիրն դարձեալ. և մինչ նա եկն, առեալ էին և 'ի միացեալ աշխարհացն և ոչ ետուն նմա. և ասեն թէ՝ զղջացաւ և դարձաւ 'ի հաւատն իւր, և գընաց յապաշխարութիւն 'ի վանս (1)։

Ուռհայեցւոյ, Ց. 167. և 'ի ծանօթութեան 200.

(1) Մատթէոս Ուռհայեցի ընդհակառակն պատմէ

Եւ յայնմ ժամանակի յորժամ զօրացան Թուրքն, հնազանդեցան նոցա Արաբացիքն որ Տաճիկք կոչէին վասն իշխանին իւրեանց փառաւորի և իմաստնոյ, որում անուն էր Տայաւ: Եւ խառնեցան Թուրքն և Տաճիկք և եղեն ազգ մի: Եւ որ ՚ի Բաղտատ իշխանն էր յազգէն Մահմետի, զայն Թողին անդ և Խալիփա անուանեցին, որ է յետ մնաց, այսինքն մնացորդ ՚ի Մահմետէ. և կալաւ պատիւ ՚ի Տաճկէ և ՚ի Թուրքէ, և անտի առնուն օրէնք և պատիւ, և անտի սկսան ամիրայք ՚ի Խորասանայ ելանել Թխտով սուլտանին և խալիփային, և գային առնուլ իւրեանց աշխարհ և տիրէին: Եւ եկն այսու պատճառանօք ՚ի կողմանս Հայոց ամիրայ մի Սուգման անուն, ազգաւ Թուրք, և կոչեցին զնա Շահի արմէն, որ է Թագաւոր Հայոց: Եւ ումն ամիրա եկն ՚ի Միջագետս, նմանապէս Թուրք ազգաւ, Արթուխ անուն և կոչեցան ազգաւ Արթուխիք (1):

Իսկ Թագաւորն Յունաց Միխայլն՝ Թոյլ և կնատ, կայր անհոգացեալ ՚ի պատերազմաց, յուտել և յըմպել. և յարեաւ ՚ի վե-

խօսի զփիլարտոսէ, և ասէ զնմանէ՝ Թէ իցէ հայորդի, այլ յունադաւան կրօնիւ. (Բ. 106. 107. 111. 122. 123. 128).

(1) Յաղագս Սուգմանայ և Արթուխեանց, տես ՚ի գիրս Մատթէոսի Ուռհայեցւոյ, Բ. 146 և ՚ի հետեւեալս, և ՚ի ծանօթութիւնն մեր անդ՝ 179.

րայ նորա Նիկեփոր (Գ. Մոնոմախոս), և եկն 'ի Կոստանդինուպօլիս զօրօք և առ զնա, և սկսաւ կոտորել զքաղաքն. և Միխայլն առ զԹագն 'ի ձեռն իւր և գնաց ընդ առաջ նորա և ասէ. «Ա՛ռ զսա զոր խնդրես և արգել զսուրդ 'ի քրիստոնէից։» Եւ առ զԹագըն, և հրամայեաց գերծուլ զգլուխն և տանել 'ի վանք. և առ զկին Թագաւորին իւր 'ի կնութիւն (1), և կուրեաց զերկու որդիս նորա, և վասն այնորիկ ատեցաւ յամենեցունց։ Վասն որոյ ոմն յիշխանացն Աղէքս անուն, արար իւր խորհրդակիցս բազումս, և առ զԹագաւորութիւնն. և նոյնպէս արար Աղէքսն Նիկեփորայ՝ որպէս և նա Միխայլին։ Եւ Թագաւորեաց Աղէքսն 'ի վերայ Յունաց ամս քսան և ինն (2)։

Սկիզբն Թագաւորութեան սորա Ալբառսլամ առ զԴամասկոս և սպան զԱքսիս (3)։

Եւ յայսմ ամի եկին 'ի Հռոմայ կոմսունք, և կուտեցաւ զօր բազում եկին 'ի Կոստանդի-

(1) Մատթէոս Ուռհայեցի, Բ. 109, և 'ի ծանօթութեան 148։

(2) Ալէքս կոմնենոս էր որդի Յովհաննու կոմնենոսի, որ կալաւ զաթոռն ամս իբր 37։ Մատթէոս Ուռհայեցի, Բ. 117։

(3) Զդամասկոս քաղաք ոչ Ալբ—Արսլան՝ այլ որդի նորա Դդուշ առ 'ի ձեռաց Աքսիսի, այն է Ալթըզ Իպն—Ավաք, որ էր հաւատակից կարգեալ Դամասկոսի 'ի կողմանէ Մելիք շահ սուլտանին Պարսից։ Մատթէոս Ուռհայեցի, Բ. 127։

նուպօլիս և պաշարեցին զնա զեւթն ամ. և այս է պատճառ ելանելոյ նոցա։ Յորժամ Արթուխ ամիրայն առ զԵրուսաղէմ հրամանաւ Մելիք շահին, և արար զԻերեգմանն ընդ հարկաւ, զի առնուին յաղօթականացն յամենն մէկէ կարմիր մի(1)։ Եւ յայնժամ ժամանակի եկն ՚ի Փռանկաց կոմս մի Զնջիլ(2) անուն՝ յԵրուսաղէմ յերկրպագութիւն տնօրինական տեղեացն. և յորժամ մտանէր ՚ի Իերեգմանն՝ առնելի պահանջէին ՚ինմանէ քան զեդեալ հարկն, և ՚ի յոչ տալն՝ զարկին զնա և հանին զմէկ ակն նորա ՚ի սաստիկ զարկուցմանէն։ Եւ առեալ իշխանն ընդհանեալ ակնն՝ եդ ՚ի գրպանն, և տարաւ զնա ՚ի Հռոմ, և շրջեցոյց ընդ կոմսունսն ամենայն, և շարժեաց զնոսա ՚ի նախանձ Տեառն(3). և ելին և եկին նախ ՚ի Կոստանդինուպօլիս։ Եւ մինչ կային նոքա ՚ի վերայ Կոստանդինուպօլսի, եղեւ շարժ ՚ի յԱնտիոք և անկաւ պարիսպն և խլեցաւ բուրգն մի յարմատոց(4), և գտաւ ՚ի նա բազում պատ-

(1) Կարմիրն է անուն ոսկի դահեկանի.

(2) Այն է կոմսն Ռեմոնտ որ Սէն—Ժիլ (Raymond de Saint-Jilles).

(3) Զայս դէպս և Վարդան յիշատակէ. (յեր. 146)։

(4) Յիշէ և Մատթէոս Ուռհայեցի զայս շարժ ահագին որ եղեւ յԱնտիոք. յորում բազում անձինք մեռանին ընդ փլատակօք. և եղեւ սա յամի Փրկչին 1092, յամսեանն Սեպտեմբերի, (Բ. 13յ)։— Սմբատ, յեր. 87.

կերպք պղնձիք, և էին որպէս պատկերք Գիր-ուանդի, որ կային 'ի վերայ ձիոց, և ագուցած էին 'ի բերանս նոցա երկաթք և փակած. և ետ բերել զնոսա ամիրային առաջի իւր, և ետ քննել թէ զի՞նչ իցէ։ Ասանք ասէին թէ՝ կուռք են 'ի հին ժամանակաց. և հրաման ետ մանրել զնոսա. և փշրեցան և ցրուեցան պատկերքն։ Եւ լուաւ կին մի ծեր և կոյր, և ասաց. "Այն պատկերքն տըլսմեր էին 'ի Յունաց շինեալ՝ զի մի՛ զօրասցի Գիուանդն և Թագաւորեսցեն և անցցեն յայսկոյս ծովու։ Իսկ ամիրայն յորժամ լըսեալ՝ յոյժ տրտմեցաւ 'վասն խորտակման պատկերացն. և նոյն ժամայն առին (Գիուանկրք) զԿոստանդինուպօլիս և անցին յայսկոյս և զօրացան, և եկին նաւօք յԱնտիոք։

Երկու 'ի նոցանէ յազգէ Թագաւորաց էին, Պեմունդն և Տանգրի, և եւթն կոմսունք էին, Ռոջէլն (Ռոժէր), Պեմունդն, Պաղտինն, Ճօսլինն, Կալարանն (Վալերան), Կոնդոփրի (Կոտըփրոա), Սալկէան (1)։ Իսկ Թէոդորոսն (2) զոր եղեալ էր զնա 'ի յՈւռհա Փիլարտոս հայն, և կայր 'ի նորա ժամա-

(1) Անուանք գլխաւորացն խաչակիր բանակին այլափոխեալք են բազում մեծի մասին. և ոմանք անիմանալի լեալք։ Տես և 'ի գիրս Մատթէոսի Ուռհայեցւոյ, Ե. 150։

(2) Թորոս կիւրապաղատ էր որդի Հայոյ Հեթում կոչեցելոյ, որ ըստ ասելոյ Մատթէոսի Ուռհայեցւոյ (Ե. 145-154) կացուցաւ իշխան Ուռհայոյ 'ի Դուդուշ ամիրայէ, յամի 1084։

նակացն անդ, և առաքեաց 'ի յԱնտաք առ Փռանգն և խոստացաւ տալ զքաղաքն 'ի Կոնդոփրի. և խնդացին նոքա յուրախութիւն մեծ, և ասացին. «Որպէս Ուռհա քաղաքն նախ քան զԵրուսաղէմ հաւատաց 'ի Քրիստոս, և ինքն Քրիստոս հաւատոյն Աբգարու արքային Հայոց յառաջ յՈւռհա թագաւորեաց, նոյնպէս և յողորմութենէն Քրիստոսի նախ քան զտիրելն մեր Երուսաղէմի, Ուռհայի տիրեցաք»: Եւ առաքեաց Կոնդոփրի զեղբայրն իւր զՊաղտին, և իշխանացաւ յՈւռհա. և այլքն նստան 'ի վերայ Անտաքոյ ինն ամիս: Եւ կային 'ի քաղաքն Կիսան և Ալիւսան ամիրայք (1). և ել Կիսանն 'ի քաղաքէն և գնաց, և հանդիպեցան նմա արք երկու ազգաւ Հայք, և սպանին զԿիսանն և բերին զգլուխն առ Փռանգն: Եւ կային 'ի պուրճ մի երկու եղբայր՝ նոյնպէս ազգաւ Հայք, որք քաջացան և սպանին զԹուրքսն որ կային առ նոսա, և ազդեցին Փռանգին, և մտին ընդ պուրճն ընդ այն և առին զքաղաքն, և յետ այնորիկ տիրեցին նմա: Եւ 'ի նոյն ժամանակս սպանաւ Սուլիման յԻ-

(1) Կիսան և Ալիւսան ցուցանեն զմի և զնոյն անձն, այն է՝ Աղիւսիանն Մատթէոսի Ուռհայեցւոյ (Բ. 144. 151), որ էր զօրապետ Դուղուքի, և իշխան Անտիոքայ, որ յետ առման քաղաքին 'ի Պեմունտայ, յամի 1098, փախուցեալ 'ի քաղաքէն սպանաւ 'ի գեղջկաց (Բ. 155):

կռնիոն , և Թագաւորեաց Խլիճ ասլան ։

Եւ լուաւ սուլտանն որ 'ի Խորասան զելն Ֆռանգին 'ի վերայ Անտաքոյ, և առաքեաց ընդ Կիւրապաղատն հարիւր հազար հեծելով(1), և եկն պաշարեաց զՖռանգն 'ի յԱնտաք · և այնչափ նոր էին առեալ զԱնտաք, որ մինչ մտաւ Ֆռանգն 'ի քաղաքն , զօրքն Թուրքաց հասին 'ի Պաղրաս(2), վասն որոյ շատ նեղեցին զնոսա սովով ։ Եւ նոքա ապաւինեալք յԱստուած աղօթիւք և արտասուօք՝ գտին զգեղարդն Քրիստոսի , և ելեալ կռտուեցին զԹուրքն և տարան զնոսա կոտորելով օր մի և դարձան(3) . և եղեն փախստական 'ի Միջագետաց Թուրքաստանք ։ Եւ գնացին զօրքն Ֆռանգաց և առին զծովեզերայն և զՅոպպէ և գնացին յԵրուսաղէմ ։ Եւ նախ քան զՖռանգին գնալն առեալ էին զԵրուսաղէմ Եգիպտացիքն և տի-

(1) Կերպօղա զոր Միխայէլ , կամ լաւ ևս Թարգմանիչ նորա վրիպակաւ գրէ Կիւրապաղատ , էր զօրավար Պարկիարուխի որդւոյ Մելիք շահի սուլտանին Պարսից ։ (Մատթէոս Ուռհայեցի · Ե 155 ·)

(2) Պաղրաս , որ և Պաղրաս , էր դղեակ մեծ յԱմանոս գաւառի յերկրին Կիլիկիոյ ·

(3) Մատթէոս Ուռհայեցի երկար պատմէ զգիւտ գեղարդեանն և զպատերազմ զոր ետուն Ֆռանկք ընդ Կերպօղայ · (Ե · 155 · յեր · 322) ։ Իսկ Վարդան ասէ , թէ էր գեղարդն այն որով Հրեայք խոցեցին 'ի Պերուէթ քաղաքի ընդկատակս զպատկերն փրկչական , և ել անտի արիւն և ջուր ։ Տես զկնի յեր · 416 ·

րեալ էին նմա, և 'ի նոցանէ առին Փռանգ-քըն և առ հասարակ կոտորեցին զնոսա. և ոմանք փախեան 'ի Տաճկաց և մոլին 'ի տա-ճարն, և հանեալ զնոսա սպանին: Եւ Թա-գաւորեաց Երուսաղէմ Կոնդաֆրի ամս եր-կու. և յետ նորա Պաղտինն ամս հնգետա-սան:

Յայսմ ժամանակի եկն Խլիճ ասլան 'ի վերայ Մըլտենոյ, և լուաւ զզօրանոյն Փռան-գին և դարձաւ: Եւ յայն ժամու եկն Դա-նիշմանն 'ի Մըլտենի և պրեաց զմուտքն և դարձաւ. և նոյնպէս առնէր զերեք ամ: Եւ Գաբրիէլ յայն կայր 'ի Մըլտենի, զոր կացու-ցեալ էր Փիլարտոսն հայ, և խստագոյն նե-ղէր զքաղաքն քան զարտաքոյսն: Եւ յայն-ժամ կային գլխաւոր իշխանք 'ի Հայոց՝ Վա-սիլն, որ 'ի ժամանակին Փիլարտոսին ունէր զՔեսուն և զՌաբան, և ոմանք 'ի Կիլիկիա՝ որք կոչէին որդիք Ռուբինայ, 'ի Փիլարտոսէ իշխանացեալ 'ի տեղիս տեղիս, ո՛ք առաքե-ցին և տարան զկաթողիկոսն Հայոց 'ի Կիլիկիա: Եւ յայսմ ամի ետ Գաբրիէլ յայն զՄըլտենի 'ի Դանիշմանն, և ստեաց Փռանգքին և ոչ ետ 'ի նոսա ըստ խոստմանն (1): Եւ արար դիւրու-թիւն և շինութիւն Մըլտենոյ Դանիշմանն, և խնամ արկ 'ի վերայ նոցա՝ տալով նոցա հաց և անասունս և ազատութիւնս, և չե-

(1) Մատթէոս Ուռհայեցի, Բ. 167: Վարդան, յէջ. 148:

նեցան։ Եւ այս Դանիշմանս էառ զերի զՊեմունդ Թագաւորն և վաճառեաց ՚ի հարիւր հազար դահեկան (1)։

Եւ յաւուրս յայսոսիկ ամբոխեցաւ Թուրքաց Թագաւորութիւնն ՚ի Խորասան, և դարձեալ ամբարձին զգլուխ խուրեանց Տաճիկք. և եկաւ ՚ի Հէմսայ Սոլաղէբ տաճիկ և էառ զԱփեմիա և ամբարձաւ ՚ի Դամասկոս։ Իսկ Դոգաս և Աւրատոն (Ասատուան°) ամիրայք ՚ի Հալպ և Աւմար առ զՍնճարն և զԽաբուրն (Խարան°), և անկան Թուրքք և Տաճիկք (Արաբացիք) ՚ի յիրար վիճով (2)։ Իսկ ՚ի Մելիթանիա և ՚ի Կապադովկիա ոչ գոյր Տաճիկ. այլ Թուրքքն ունէին և վիճէին ընդ Յունաց. և զԱդիպտոս Տաճիկքն ունէին. և եղեւ Թշնամութիւն ընդ Դանիշմանն և ընդ Խլիճ ասլան և պատերազմէին ընդ միմեանս։ Եւ ՚ի յայսոսիկ (աւուրս) մեռաւ Դանիշմանն յետ առնլոյն երկուց ամաց զՄելտենի. և եկ Խլիճ ասլան ՚ի վերայ Մելտենոյ. և Եղուսինն կայր ՚ի Մելտենի՝ որդին Դանիշմանայ, և առ զնա երդմամբ։

Եւ յայսմ ժամանակի անուանեցաւ սուլ-

(1) Մատթէոս Ուռհայեցի ասէ, եթէ միջնորդութեամբ Գող Վասլի գնոյս աւելին փոխանակք զՊեմունդն (Բոէմոնտ)։ և թէ՝ տասն հազար դահեկանս եւս ինքն Վասիլն ետ (Բ, 178)։— Վարդան, յեր. 149։

(2 Զյառնել ամիրայից այսոցիկ ՚ի վերայ միմեանց յիշատակէ և Աբուլֆարաճ յիւրում պատմութեան, որոց անուանքն անծանօթ են մեզ, ասէ։ (Յեր. 69։)

տանն Խորասանայ Խաւթառին, և առաքեաց զՉաւվլի զօրօք ընդդէմ Փռանգին, և եկն 'ի Սօսլ (1)։ Եւ էր անդ ամիրայն Սզարմիշ (Ճէկրմիշ), որ ել ընդդէմ Չաւվլի և պատերազմեցան, և յաղթեցաւ Չաւվլի, և ըմբռնեցաւ և ածաւ կապանօք 'ի քաղաքն։ Եւ զկնի սակաւուց մեռաւ Սզարմիշ (Ճէկրմիշ). և ազատեցաւ Չաւվլի, որ և գնացեալ ժողովեալ այլ զօրս բազումս, կամէր դարձեալ գալ 'ի վերայ Սօսլայ, զի կացուցին նորա զորդին Սզարմշին (Ճէկրմիշ) ամիրայ. և իմացեալ Սօսլցիք զգալ Չաւլայ, առաքեցին առ Խլիճ ասլան և բերին զնա և տուին զքաղաքն 'ի նա։ Եւ Չաւվլի գնաց և առ զԽաբուրն, և Խլիճ ասլան գնաց 'ի վերայ Խաբուրին. և 'ի յանցանելն ընդ գետն՝ ընկղմեցաւ և մեռաւ (2). և Չաւվլի թագաւորեաց 'ի վերայ Սօսլայ և Սծբնայ, և ժողովեալ գանձս՝ գնաց 'ի Խորասան։ Եւ 'ի Մելտենի լուեալ զմահն Խլիճ ասլանայ, եդին թագաւոր զորդին նորա զՏուղ ասլան (Տուղրիլ—Արսլան).

(1) Ջաւլի, այն է Ջաւուալի—Սագաուա, էր նախ կառավարիչ Մուսուլայ, և ապա եկաց Փարս գաւառին Փարսից և խնամակալ (Աթաբէկ) դեռաչասակ մանկանն Չակրայ որդւոյն Մոհամմետի։ Իսկ Ճէկրմիշ էր իշխան Ճզիրէի, և կոչէր Շէմս-Էտտովլա Ճէկրմիշ. յաղագս Կերպողայի (Մատթէոս Ուռհայեցի, Գ. 194։)

(2) Մատթէոս Ուռհայեցի մեռաւ, ասէ, 'ի պատերազմի. (Գ. 196)։

և արար զօրագլուխք երկու, զԵլ տալեան եղբ Պիզմիշն՝ թէ անկաւ ընդ մօրն իւր՝ և մեռաւ։ Եւ ած զմայր նորա Տուղտալան։ Եւ կային երեք որդի այլ Խլիճ ասլանայ, Արաք և Շահան շահ և Մասուտ։ ԶԱրաքն եսպան Ամիր Խաղի որդին Դանիշմանայ, և Շահան շահ եսպան զՄասուտն։

Իսկ 'ի յայնմ ժամանակի յորժամ էր Պաղտինն երկրորդ Թագաւոր Երուսաղէմ, եկն 'ի Հռոմայ իշխան մի Կուտափի(1) անուն՝ երեսուն ձիաւորով յԵրուսաղէմ. և ուխտ էր առեալ՝ որ ոչ դառնար անդրէն։ Եւ յետ ամի միոյ եղեւ աբեղայ, և երեսուն ձիաւորքն իւր ընդ իւրեանն փոխեցին զհանդերձս իւրեանց և կային սրբութեամբ և աղօթիւք։ Եւ զի Թուրքն նեղէին զքրիստոնեայսն, աղաչեցին զնոսա ելանել 'ի պատերազմ 'ի վերայ . . . Նաց ընդ զօրս քրիստոնէից ասելով թէ այն առաւել հաճոյ է Աստուծոյ և շահ հոգւոյ։ Եւ ետուն նոցա ապրանք պեղեր՝ Թագաւորն և պատրիարքն. և ետուն 'ի նոսա զՏաճարն 'ի բնակութիւն, և եկին այլք յարեցան 'ի նոսա, և ապա հաստատեցին իւրեանց կանոնք. և եղեն միաբանեալ եղբարք, և որ կենան սրբութեամբ և կուսութեամբ, և չունիցին առանձնական ինչս.

(1) Թերևս կամի ասել Հուկօ տըփէն (Hugues de Pains), զի սա էր անուն գլխաւորին կարգի Տաճարականաց։

և կռուիցին ընդդէմ . . . նոցա։ Եւ եղ բանս այս ՚ի Հռոմ և ամենայն ուրեք, և սկսան միաբանիլ ընդ նոսա աղքատք և մեծատունք և իշխանք, և ստացան բերդս և փարթամացան։ Եւ այս եղեւ սկիզբն Փրերոցն (1)։

Եւ յայնմ ժամանակի զօրացաւ Պաղակն որ էր յԱրթուխեանցն. և սա տիրեաց բազում գաւառաց։ Եւ առ սա գնաց կինն Խլիճասլանայ և եղեւ նմա կին, թողեալ զորդիքն. և յամեն Արթուխքն չեղեւ ոք իբրեւ ըզՊաղակն։

Ի թուին Ասորւոց ՌՆԼ (1430) և Հայոցն ՇԾԷ (557) Ամիր Խազի Թագաւորեաց և գընաց եւթն հազարաւ ՚ի վերայ Անտաքոյ, և ել ընդդէմ նորա Ռոճէրն (Ռոժեր) և հարաւ ՚ի նոցանէ։ Եւ լուեալ Պաղտոյինն՝ թագաւորն Երուսաղէմի, և եկն և կոտորեաց զնոսա, և զմնացեալսն փախստական արար։

Եւ յայսմ ամի Թագաւորն Մելտենոյ Տուղասլան (Տուղրիլ—Արսլան) էառ զԱպլըսթայն, և եկն Փռանգն և գերեաց զաշխարհըն Մելտենոյ. և Թագաւորն Մելտենոյ և Պաղակն գնացին ՚ի վերայ Կամախայ և գերեցին, և տէրն Կամախայ Մանկուճակն (Մանուչէ) փախեաւ ՚ի Տրապիզոն՝ յուսացեալ ՚ի

(1) Փրէր նշանակէ եղբայր. այսպէս կոչէին միաբանեալքն կարգին Տաճարականաց, կամ ասպիթալիէ. զի ունէին ասպիթալս այն է հիւրանոցս կարգեալ վասն ուխտաւորաց։

Յոյնս։ Եւ առեալ զօր 'ի Յունաց և ըզխաւռաղն գլուխ, և եկն 'ի վերայ Պաղակին. և յաղթեցան Յոյնք, և ըմբռնեցաւ Մ'անկուճակն և խաւռաղն, և փախուցին զխաւռաղն երեսուն հազար դահեկան։

Ընդ այն ժամանակս արքայազունքն Հայոց, որ յաւուրս Վասլի կայսեր եկեալ էին 'ի Վասպուրականէ և բնակեալ 'ի Սեւաստ և 'ի Կեսարիա և 'ի Խաւատանէքն, և բռնացեալ ունէին զբազում տեղիս, մօտին յերկիրն Կիլիկեցւոց։ Անունք 'ի նոցանէ Ռուբինեանք կոչեցեալք, որք էին յերկուց մեծամեծաց զարմից, հայկազունք և Սենեքարիմեանք, խնամութեամբ խառնեալ ընդ միմեանս, որք թագաւորեցին 'ի Վասպուրական յորժամ և Բագրատունիքն թագաւորեցին 'ի մեծ Հայք, և այժմ սկսան տիրել երկրին Կիլիկեցւոց. և թագաւորեալ արիական քաջութեամբ Ռուբէն նախ և Կոստանդին և Լեւոն և Թորոս, և այլքն մի ըստ միոջէ։

Ի թուին Ասորւոց ՌՆԼԴ (1434) և Հայոցըն ՇԿԱ (561) եղեւ մեծ պատերազմն Թռչնոց, զի կռունգք և արագիլք զբազում աւուրս ժողովեցան յերկիրն Ամթայ 'ի Թըլխմաւ։ Եւ սկսան եւթն եւթն դեսպանս արձակել 'ի միմեանս. և յետ բազում նրթեւակաց կռուեցան յերրորդ ժամէ աւուրն

և կռուիցին ընդ դէմ . . . նոցա։ Եւ եղ բանս այս ՚ի Հռոմ և ամենայն ուրեք, և սկսան միաբանիլ ընդ նոսա աղքատք և մեծատունք և իշխանք, և ստացան բերդս և փարթամացան։ Եւ այս եղեւ սկիզբն Փրերացն (1)։

Եւ յայնմ ժամանակի զօրացաւ Պաղակն որ էր Արթուխեացն. և սա տիրեաց քաղաքս գաւառաց։ Եւ առ սա գնաց կինն Խլիճասլանայ և եղեւ նմա կին, թողեալ զորդիքն. և յամեն Արթուխքն չեղեւ ոք իբրեւ ըզՊաղակն։

Ի թուին Ասորւոց ՌՆԼ (1430) և Հայոցն ՇԾԷ (557) Ամիր Խազի թագաւորեաց և գընաց եւթն հազարաւ ՚ի վերայ Անտաքոյ, և եղ ընդդէմ նորա Ռոճեր (Ռոժեր) և հարաւ ՚ի նոցանէ։ Եւ լուեալ Պաղտին՝ թագաւորն Երուսաղէմի, և եկն և կոտորեաց զնոսա, և զմնացեալսն փախստական արար։

Եւ յայսմ ամի թագաւորն Մելտենոյ Տուղասլան (Տուղրիլ—Արսլան) էառ զԱպլըսթայն, և եկն Փռանգն և գերեաց զաշխարհըն Մլտենոյ. և թագաւորն Մլտենոյ և Պաղակն գնացին ՚ի վերայ Կամախայ և գերեցին, և տէրն Կամախայ Մանկուճակն (Մանուչէ) փախեաւ ՚ի Տրապիզոն՝ յուսացեալ ՚ի

(1) Փրէր նշանակէ եղբայր. այսպէս կոչէին միաբանեալքն կարգին Տաճարականաց. կամ ասպնջականէ. զի ունէին ասպնջանոցս այն է հիւրանոցս կարգեալ վասն ուխտաւորաց։

Յոյնս։ Իսկ առեալ զօր ՚ի Յունաց և ըզԽաւռազն գլուխ, և եկն ՚ի վերայ Պաղակին. և յաղթեցան Յոյնք, և ըմբռնացաւ Սանկուճակն և Խաւռազն, և վաճառեցին զԽաւռազն երեսուն հազար դահեկան։

Ընդ այն ժամանակս արքայազունքն Հայոց, որ յաւուրս Մաւրի կայսեր եկեալ էին ՚ի Վասպուրականէ և բնակեալ ՚ի Սեւաստ և ՚ի Կեսարիա և ՚ի Խաւատանէքն, և բըռնացեալ ունէին զբազում տեղիս, մինչ յերկիրն Կիլիկեցւոց։ Ոմանք ՚ի նոցանէ Ռուբինեանք կոչեցեալք, որք էին յերկուց մեծամեծաց զարմից, Հայկազունք և Սենեքարիմեանք, խնամութեամբ խառնեալ ընդ միմեանս, որք թագաւորեցին ՚ի Վասպուրական յորժամ և Բագրատունիքն թագաւորեցին ՚ի մեծ Հայք, և այժմ սկսան տիրել երկրին Կիւլիկեցւոց. և թագաւորեալ արիական քաջութեամբ Ռուբէն նախ և Կոստանդին և Լեւոն և Թորոս, և այլքն մի ըստ միոջէ։

Ի թուին Ասորւոց ՌՆԼԴ (1434) և Հայոցըն ՇԿԱ (561) եղեւ մեծ պատերազմն Թռչնոց, զի կռունկք և արագիլք զբազում աւուրս ժողովեցան յերկիրն Ամթայ ՚ի Թըլխմաւ։ Իսկ սկսան եւթն եւթն դեսպանս արձակել ՚ի միմեանս. և յետ բազում նըրթեւակաց կռուեցան յերրորդ ժամէ աւուրն

մինչեւ ցինն ժամն . եւ յերկոցունց կողմանցն անկան կոտորք մեծամեծ սպանեալք . եւ յաղթեցան արագիլքն եւ փախեան , եւ խաղաղացաւ պատերազմն , եւ զպատճառն Արարիչն միայն գիտէ (1) ։

Ի հինգ հարիւր ամի իշխանութեանն Տաճկաց լուաւ Մութաւաքիլ սուլտանն Խորասանայ, եթէ թագաւորեաց Աստաղա (2) տաճիկ 'ի վերայ Թիկրթայ. եւ ել ամենայն ուժով իւրով 'ի վերայ Աստաղայ եւ պատերազմեցան 'ի վերայ Տիգրիս գետոյ, եւ յաղթեցան Տաճիկք եւ սպանաւ Աստաղա. եւ աստանօր բարձաւ թագաւորութիւնն Տաճկաց, որ եւ տեւեաց հինգ հարիւր ամ։ Եւ Նորոց թիւն էր ՌՆԼԳ (1433), եւ Հայոցն ՇԿ (560), զկնի եւթանասուն ամի եկանելոյն Թուրքաց ։

Յայնմ ժամանակի լուաւ Խաղէ զմահն Պաղակին, եւ եկն 'ի վերայ Մելտենոյ եւ ոչ կարաց առնուլ զնա . եւ դարձաւ Խաղէ որդին Դանիշմանայ՝ թողեալ զորդին իւր 'ի

(1) Զայս դէպս պատմեն եւ Մատթէոս Ուռհայեցի (Գ. 237), եւ Սմբատ (յէր. 92). իսկ տեղի այսր տեսարանիս ասեն լինել զաւառն Մելիտինոյ ։ Մատթէոս դնէ 'ի թուին Հայոց ՇՀԲ, եւ Սմբատ ՇՀ. իսկ Միխայէլ ՇԿԱ. քանզի սա համեմատութեամբ Արաբաց թուոյն պակաս դնէ մինչ ամս տասն կամ մետասան ։

(2) Յաղագս Աստաղայի տես 'ի ծանօթութիւն մեր 266. 'ի պատմութեան Մատթէոսի Ուռհայեցւոյ, տպեալ յԵրուսաղէմ ։

վերայ նորա զօրօք, որ և արկին զնոսա 'ի մեծ կարօտութիւն սովոյ և առին զնա: Եւ գթացեալ 'ի վերայ նոցա՝ ոչ ինչ մեղաւ նոցա, այլ ետ նոցա հաց և ոսպն. և ետ նոցա ուխտ խաղաղութեան, և գնաց անտի: Եւ զօրացեալ Ամիր Խազի՝ ջնջեաց զԹուրքսն որ կային յերկրին Կապադովկացւոց, և ինքն միայն թագաւորեաց: Եւ յաւուրսն յայնոսիկ լուաւ թէ՝ Յոյն մի Կասիանէ անուն, ունի բերդեր յեզր ծովուն, և գնաց 'ի վերայ նորա, և հնազանդեցաւ Յոյնն և ետ զբերդերն, և ինքն ել առ նա և կայր ընդ ձեռամբ նորա: Եւ սա սպան զՄասուտն Արթուխեան. և լուեալ զքաջութիւն նորա խալիփայն և սուլտանն Խորասանայ, առաքեցին նմա թագ և պատիւ և կոչեցին զանուն նորա Մելիք Խազի, և անուանեցին թագաւոր ամենայն հիւսիսոյ:

Յայսմ ժամանակի դարձեալ թագաւորեաց Յունաց Իւանէ, և էառ զԿաստամոնի և երկու բերդ այլ: Եւ լուաւ Մելիք Խազի և գնաց և էառ դարձեալ զԿաստամոնի:

Յայսմ ժամանակի եկն Զանգի ամիրայն Մօսլոյ 'ի վերայ Հալպայ, և ետուն յօժարութեամբ 'ի նա վասն համբաւոյ իրաւադատութեան նորա:

Եւ 'ի սոյն ամի առաքեաց խալիփայն և Խլաթատէրն Մելիք Խազէ, չորս ալամսեաւ

և շղթայ մի ոսկի պարանոցին և գաւազան ոսկի որ հարկանէն զնա ՚ի նշանակ թագաւորելոյն նմա յորդւոց յորդիս. և բերին նմա նաղարայք և փողք. և յորժամ եկին, մտաւ նա, և կատարեցին զբանն ՚ի վերայ որդւոյ նորա Մահմուդին, և քարոզեցին զնա Մելիք։ Եւ էր նա ատեցող քրիստոնէից, և կայր նա օրինօքն Տաճկաց, գինի ոչ ըմպէր, և վայրապար ոչ գնայր ՚ի վարս իւր։ Եւ նա շինեաց զԿեսարիոյ պարիսպն, և քակեաց բազում եկեղեցիս ՚ի նմա։ Եւ յայսմ ժամանակի Զանգի ամիրայն Մօսլայ արար պատերազմ ընդ Արթուխիան և յաղթեաց նոցա։

Եւ յաւուրս յայսոսիկ եկն Պասն Հռոմայ(1) յԵրուսաղէմ և եկն յԱնտիոք և կայր անդ. Յոյնք քաղկեդոնացիք որ չարախօսեցին զԱսորիս և ասացին. «Խաբեբայք են ամեն զժողովն Քաղկեդոնի, և ունին զաջն Պարսամայ որ նզովեաց զժողովն չորրորդ. և ասեն՝ թէ առնէ նշանս և սքանչելիս։ Եւ յորժամ ասեմք թէ՝ բացէք որ տեսանեմք, ասեն թէ՝ ոչ իշխեմք զի մի՛ լիցի հեղեղ և կարկուտ.» և զայս ասէին և ծիծաղէին։ Ապա կոչեաց Պասն զհայրապետ վանացն Մօր Պարսամայ, և ասաց. «Բերէք զաջն որ տեսանեմ։» Եւ յաւուրսն յայնոսիկ մարախ ապականէր զերկիր, և ասաց թէ՝

(1) Թուի ակնարկել ՚ի Լատին պատրիարքն Երուսաղէմի կամ յայլ ոք ՚ի կարդինալաց։

«Բերէք զնոս վասն մարախիս, զի նովաւ ողորմեսցի Աստուած աշխարհիս»։ Եւ նոքա ասացին. «Ոչ իշխեմք հանել զնա 'ի տեղւոջէ իւրմէ»։ Յայնժամ սաստեաց նոցա և ասէ երդմամբ «Թէ ոչ բերէք զնա, ոչ մնայ ձեզ աստ յիշատակ 'ի քաղաքիս մերում. այլ հանեմ զձեզ աստի և զամենայն ժողովուրդս ձեր»։ Իսկ նոքա բռնադատեալք գնացին և բերին, և տարան 'ի սուրբ Պետրոս. և ասաց Պապն. «Արդ բացէք որ տեսանեմք.» և նոքա ասեն. «Բայց եթէ դու բացցես հայր»։ Եւ նա առեալ եբաց. և յանկարծակի 'ի քըթթել աչաց ծածկեցաւ երկինքն ամպով, և սկսաւ գալ անձրեւ սաստիկ, և լինէր փայլատակմունք և կարկուտք և հրձգութիւնք մինչ տանել կամէր զքաղաքն։ Եւ ապա Պապըն և ամենայն եկեղեցականքն անկան 'ի վերայ երեսաց իւրեանց և լացին լալիւն մեծ. և շարժեցաւ քաղաքն ամենայն, արք և կանայք առ հասարակ յորժամ լուան, և դիմեցին յեկեղեցին։ Եւ ապա յետ բազում վնասուց արգելաւ պատուհասն, և հրամայեաց Պապն առնել հսկումն Ասորեացն և խնդրել վասն մարախին 'ի ձեռն բարեխօսութեան սրբոյն։ Եւ ասաց Պապն ըմբըռնել զչարախօսքն, և ոչ գտին զնոսա, զի փախուցեալ էին։ Եւ ժողովեցան ուղղափառքըն Ասորիք և Հայք ընդ նոսա և աղաւթին

հօկաւմն, և հանին զաջն և պահպանեցին զաշխարհն. և նոյն ժամայն ողորմութեամբն Աստուծոյ գնաց մարախն և լեալ 'ի ծովն, և փառաւորեցին զԱստուած և զծառայ նորա զՄ՚օր Պարսամա, և տուին նմա եկեղեցւոյ տեղի և շինեցաւ, և կարգեցին ապրանք եկեղեցւոյն, և նզովք եդ Պապն զի մի որ իշխեսցէ նզովել զատեցողսն Քաղկեդոնի ժողովոյն. զի Աստուած հանդուցեալ է 'ի նոսա, այն որ քննէ զծածուկս և ինքն է պաշտեցեալն և պատուեալն. Եւ մեք ինչ ոչ գիտեմք, այլ միայն մարտիցուք ընդ անօրէնսն և խաղաղութիւն կալցուք ընդ անդամսն Քրիստոսի:

Եւ յետ այնորիկ խնդրեաց զգտեալ գեղարդն, և եղեւ քննութիւն թէ ո՞ր է այս: Եւ վկայեցաւ 'ի գիտողաց, թէ այն գեղարդըն որով Քրիստոս խոցեցաւ, Թադէոս առաքեալն զայն 'ի Հայս տարաւ: Իսկ այս գեղարդս ոչ է այն, այլ այն է որ 'ի Տարարիա Հրեայքն յաւուրս ուրբաթուն մեծի գողացան քրիստոնեայ մի և տարան յանապատ և խաչեցին բեւեռօք. Եւ զամենայն կատականս և զայպանութիւնս զոր արարին Քրիստոսի անօրէն և կատաղի Հրեայքն, նոյնպէս և արարին այն քրիստոնէին, զփշեղէն պսակն և զքղամիդն և զծեծումն գըլխոյն և զթուքն և զամենայն օրինակ անար-

զանացն Տեառն. և խոցեցին գեղարդեամբ զկողմն և ել արիւն և ջուր. և խաւարեցաւ արեգակն, նոյնպէս և շարժեցաւ երկիր։ Եւ իմացան քրիստոնեայքն, և փախեան Հրեայքն և առաքեցին պատգամս զի Թողցեն նոցա՝ և նոքա դառնան առ Քրիստոս. զի հաւատամք ասեն՝ թէ ճշմարիտ Աստուած էր խաչեալն 'ի Հրէից Քրիստոս։ Եւ ներեցին նոցա և դարձան 'ի Տէր բազմութիւն Հրէից, խոստովանեալք զմեղս իւրեանց։ Եւ այս է գեղարդն որ պահեցաւ և պատուեցաւ 'ի քրիստոնէից մեծամեծ նշանօք և սքանչելեօք։

Յայնմ ժամանակի յորժամ դարձան եկեղեցիքն 'ի Խորասանայ առ Մելիք Խազի, եղեւ շարժ ահագին 'ի Խորասան յաւուր ուրբաթու, և պատառեցաւ երկիր և կլաւ միաքիթ մի ութ հազար արամբք և կանամբք՝ որ ժողովեալ էին յաղօթս և 'ի լսելութիւն քարոզութեան իւրեանց։

Ի Թուին Աստուծոյ ՌՆԾԵ (1455), և Հայոցն ՇՁԲ (582)[1], մեռաւ Իովաննէ (Յովհաննէս) Թագաւորն Յունաց 'ի Կիլիկիա, և Թագաւոր

(1) Յովհաննէս կայսր Պերպերոժեն մեռաւ 'ի Թուին Հայոց ՇՂԲ, կամ յամի Տեառն 1143, որպէս գրէ շարայարողն Մատթէոսի Ուռհայեցւոյ (Գ. 256)։ Որպէս առացուք 'ի վեր յէր. 412 'ի ծանօթութեան, Միքայէլ Ասորի 10 ամաւ առաջաւ դնէ զհայ՝ թուականն։

րեայց որդի Նորա կրսեր Սանուրիճ որ կայր առ-
նմա, և գնացեալ 'ի Կոստանդնուպօլիս ընկա-
լաւ զնա, և ոչ աւագ եղբայրն եկաց հակառակ
նմա։ Եւ 'ի նոյն ամի մեռաւ Երուսաղէմի
թագաւորն Պաղտուինն, և թագաւորեաց որդի
նորա Պաղտուինն՝ որ էր տղայ և մայրն խնա-
մէր զթագաւորութիւնն (1)։ Եւ 'ի նոյն ամի
մեռաւ Դաւութ ամիրայն տէրն Խարբերդ-
դոյ՝ Սրթուխի, և առ զիշխանութիւնն Խա-
րասլանն (Պարա—Սրսլան) որդի իւր. և Մա-
սուտն առ զՄըլթայն (2)։

Ի թուին Սարուոց ՌՆԾԶ (1456), և Հայոց
ՇՁԳ (583) (3), առաւ Ուռհա 'ի Զանգեայ
Աթաբակէ՝ 'ի 9 օրէն (Նոյէն), և զարքու-
նութիւնն ոչ գրեցաք, զի գրեալ են այլք՝
ընդարձակ։ Իսկ Զանգի զկնի ամի միոյ առ-
նլոյն զՈւռհա՝ սպանաւ 'ի Խղիճայ (4), և առ

(1) Թագաւորն Երուսաղէմի կոչէր Ֆուլք ա'Անժու. ո-
րոյ սպանեալ 'ի յորս՝ թագաւորեաց որդի նորա Պաղտուին
(Բօտուէն) ընդ խնամակալութեամբ մօր իւրոյ Մելիսանդ-
եայ։ Մատթէոս Ուռհայեցի, Գ. 256։— Վարդան, յեր. 164։

(2) Մասուտ էր որդի Ղլըճ—Արսլանայ Ա. որ թագա-
ւորեաց յամէ 1119—1155. և ըստ ասելոյ Գրիգորի երիցու
('ի գիրս Մատթէոսի Ուռհայեցւոյ, Գ. 261). առ յամի փրկ-
չին 1149 զՔեսուն, զՊեհեսնի, զՐաբանն։

(3) Ցորենակին՝ հինգ հարիւր յիսուն և երեք. Թերեւս
վ. երկրորդեան տպաւլք են, քանզի Ուռհա քաղաք առաւ 'ի Զան-
գի ամիրայէ 'ի թուին Հայոց ՇՂԳ. Գրիգոր երէց, Գ.
256. —Վարդան, յեր. 164.— Ներսէս Շնորհ. յողբումն։

(4) Ոչ որ 'ի պատմագրաց մերոց յիշէ զանուն սպանողին Զանգ-

զիշխանութիւնն նորա Նորադինն (Նուրէտտին) որդի նորա 'ի Մօսլ ։

Եւ յայսմ ժամանակի երեւեցաւ 'ի Կոստանդինուպօլիս առ պատրիարքն եւ առ բազում ընկերս իւր՝ առ կրօնաւորս եւ առ աշխարհականս, հերձուած մի որ չար էր քան զՆեստորին եւ զայլոց չարափառացն առաջնոց. զի ասէին թէ Քրիստոս դիւօք եւ կախարդութեամբ հնազանդեցոյց զաշխարհս. եւ յոլովք անկան 'ի նոսա եւ եղեն դիւապաշտք։ Եւ իմացեալ զայս Թագաւորին՝ սպան ըզբազումս, եւ ոչ բառնայր աղանդն այն, մինչեւ եհաս յաւուրս մեր նոցին չարիքն 'ի նոյն Կոստանդինուպօլիս ։

Իսկ Ջօսլինն յորժամ լուաւ զմահն Զանգէ, արար ժողով եւ եկն յՈւռհա, եւ առ զնա 'ի գիշերի եւ մտան 'ի ներս. եւ լուեալ զայն Թուրքաց՝ ձայն ետուն միմեանց եւ ժողովեցան 'ի վերայ Ուռհայոյ, եւ զարհուրեցաւ Ֆռանգն եւ անգիտացան անգիտութիւն Ուռհայոյ կործանման իսպառ. եւ հանին բռնութեամբ զբազմութիւն քաղաքին անցուցանել զնոսա յայնկոյս դետոյն Եփրատայ, եւ իսպառ ջնջել ետուն զնոսա Թուրքաց, որ ասեն զթիւ սպանելոցն երեսուն հազարաց,

դեայ եւ ոչ միւս Թարգմանութիւնն գնէ զանուանս. Գրիգոր Երէց շարայարողն Մատթէոսի (Գ. 257) ասէ՝ 'ի կարծէն իւրմէ սպանեալ եղեւ 'ի գիշերի.

եւ զգերելոցն վեշտասան հազար։ Եւ եկն այսպիսի կատարած Ուռհայոյ, զոր յայլոց պատմագրաց ուսանիս զբովանդակն(1)։ Բայց թէ զխա՞րդ և յումէ՞ շինեցաւ զառաջինն Ուռհա և անուանեցաւ, ասասցուք։

Զկնի ջրհեղեղին Նեբրովթ թագաւորն շինեաց զնա և անուանեաց Ուռհաւի, ուռն՝ գիւղ կոչի, և հաւ՝ Բաղդէացւոց, որ է գիւղ Բաղդէացւոց. որպէս և Աղեքսանդրեկ շինեաց քաղաք ՚ի Պաղեստին և կոչեաց զանուն նորա Ուրէշլէմ, որ թարգմանի Գեւղ խաղաղութեան, և մեք Երուսաղէմ ասեմք։ Եւ շինուածն Նեբրովթի տեւեաց յոլով ժամանակս. և ասեն՝ թէ Սենեքերիմ թագաւորն Աթուրայւոց քակեաց զնա և մնաց աւերակ մինչեւ յաւուրս Աղէքսանդրի Մակեդոնացւոյ. և յորժամ անցանէր ընդ նա Աղէքսանդր, հաճեցաւ ընդ տեղւոյն վայելչութիւնն և ասաց ընդ Սելեւկոս. «Շինեա զսա քաղաք։» Որ և զկնի մահուանն Աղէքսանդրու շինեաց զնա Սելեւկոս, և կոչեաց զնա Եդեսիա, որ թարգմանի Մակեդոնացւոց լեզուովն սիրելի ջուր։ Զի Աղէքսանդր ա-

(1) Ապուլ Ֆարաճ ՚ի Քրոնիկոնին իւրում՝ ասորական պատմէ ընդարձակ, նա և զկործանումն վերջին որ եղեւ յամի 1147։ Տես և ՚ի Գրիգոր երէց շարայարողն Մատթէոսի Ուռհայեցւոյ, (Գ. 258), և ՚ի Դամբանական Ճառն Բարսեղ վարդապետի, որ խոստովանահայր էր Բաղդուինի իշխանին Քեսնոյ։

ռաց, թէ «Սիրեմ զսա. շինեա զդա քաղաք»։ Եւ Յոյնք 'ի գիրս ժամանակաց իւրեանց անուանեն զսա՝ Սօրտու Մակեդոնիոս, որ է՝ Ասորւոյ Մակեդոնիա. և թիւն Ասորւոց 'ի նմանէ սկսաւ։ Եւ զհետ եւթանասուն ամի [1] Աբգար Թագաւոր որդի Արջամայ նորոգեաց զնա։ Եւ զկնի Աբգարու և որդւոց նորա եղեւ ընդ Հռոմօք (Հռոմայեցւովք) 'ի կռապաշտութեան նոցա, որ տիրեցին նմա երեք հարիւր ամ։ Եւ նահատակք որ 'ի նըմանէ եղեն՝ Շմոնի, Կուրի, Աղիոյ [2], Կոզմա, Դամիանէ, և այլք բազումք ընդ նոսա։ Եւ առ Կոստանդիանոսիւ բազմացաւ 'ի նմա վանորայք և քրիստոնեայք, և Յուլիանոս ամպարիշտն չկարաց հնազանդեցուցանել զնա և ոչ Վաղէս հերետիկոս, և մնաց խաղաղութեամբ մինչեւ 'ի Մարկիանոս, որ նեղեաց զնա վասն ուղղափառութեանն. և եղեւ ընդ ձեռամբ Տաճկաց յԱւմար Թագաւորէն մինչեւ յելանելն Թուրքաց՝ չորս հարիւր ամ։ Եւ յաւուրս Տաճկաց անկաւ պարիսպ նորա՝ շինեալն 'ի Սելեւկոսէ [3]։

(1) Ի մահուանէ Աղէքսանդրի մինչեւ ցամ Տեառն 17, յորում շինեաց Աբգար զԵդեսիա, լինին ամք 343, և ոչ եւթանասուն։

(2) Այն է Սամոնաս, Գուրիաս և Աբիբ սարկաւագ եդեսացիք, զորոց զվկայաբանութիւնն տես 'ի Վարս սրբոց, յեր. 836։

(3) Չէ յայտ թէ յորմէ առեալ Մատթէոս Ուռհայեցի

Ի թուին Ասորուց ՌՆԾԹ (1459) և Հայոցըն ՇՁԶ (586) եկն Պարոն Թորոսն զկնի մահուան հօրն իւրոյ Լեւոնի 'ի Կոստանդինուպօլսէ յերկիրն Կիլիկեցւոց, և չոգաւ առ տէր Աթանաս Մետրապօլիտն Ասորուց հետեւակ, և ետ նմա զկուր ձին և երկոտասան այր յաշակերտացն իւրոց, և ած զնա յԱմուտայն՝ (1) որ կայր ընդ ձեռամբ նորա՝ 'ի գիշերի. և վաղիւն տեսին զնշանակ նորա և ծանեան թէ ողորմութիւնն Աստուծոյ եհաս 'ի վերայ քրիստոնէից, և ուրախացան յուրախութիւն մեծ։ Եւ անտուստ ընդարձակեցաւ և էառ զբազում տեղիս, և անկաւ ահ նորա 'ի վերայ Թուրքաց և Յունաց, և ել համբաւ զնմանէ ընդ ամենայն աշխարհ (2)։ Եւ ասեն թէ՝ երկոտասան ձիաւորով երթայր նա 'ի ժամանակին յայնմիկ յԱպաղան

ասէ 'ի սկիզբն պատմութեան իւրոյ, եթէ "Տիգրան արքայ Հայոց կանգնեաց զհռչակաւոր մայրաքաղաքն Ուռհայ". Թուի ամենայն հաւանութեամբ՝ եթէ անզգուշութեամբ գրեալ է Տիգրան փոխանակ գրելոյ Աբգար։

(1) Ամուտա է բերդ յերկիրն Կիլիկեցւոց՝ մօտ 'ի Վահկայ, 'ի մէջ Անարզաբայ և Մամեստիայ (Միսիս)։

(2) Այս Թորոս Բ. իշխան Կիլիկիոյ, էր որդի Լեւոնի Ա. որ ձերբակալ եղեալ 'ի կայսերէն Յունաց, ածաւ 'ի Կոստանդինուպօլիս յամի Տեառն 1137. Թորոս Բ. 'ի դարձին իւրում զօրացաւ յիշխանութեանն՝ ընդարձակեալ զերկիր տէրութեան իւրոյ։ Գրիգոր Երէց, Գ. 263—265։ —Վարդան, յեր. 164։— Կիրակոս, յեր. 61։ —Սմբատ, յեր. 95։— Վահրամ։

առնուլ կին զդուստր Ջօսլինին (Ճոսլէն), և հանդիպեցաւ նմա հեծեալ բազում Թուրքաց, որ գերեալ էին զաշխարհն և դարձեալ. և Աստուծով զօրացեալն այն եհար զնոսա և կոտորեաց երեք հազար անձինս, և դողացին ՚ի նմանէ շրջակայքն և Թշնամիքն ամենայն. և առեալ անուն քաջութեան դարձաւ, և ած զԱնաւարզա. և ապա եղեւ ամենայն երկիրն առ սակաւ սակաւ ՚ի ձեռս նորա։

Ի նոյն ժամանակս գնաց Ջօսլինն ՚ի վանքըն Մօր Բարսումայ, և եկին ընդ առաջ նորա խաչիւք, և տարան զնա յեկեղեցին. և նա էառ զամրոց նոցա և կացոյց ՚ի նա զօրս. և ինքն եկն ՚ի Թլպաշարն։ Եւ ՚ի նոյն ամի անկաւ ՚ի ձեռս Թուրքաց ընդ վայր և ընդ ոչինչ. զի ասեն Թէ՝ ելաւ յորս և հեծեալն ցրուեցաւ ՚ի նմանէ. և ձին եզարկ զնա ընդ ծառ և անկաւ և կորոյս զխելսն. և գտան զնա երկու Թուրքք և տարան զնա ՚ի Հալպ, և ծախեցին զնա Հրէի մի՝ անծանօԹ, և յետոյ գիտացեալ տարան առ Նուրադինն[1], և եդեալ զնա ՚ի բանտի էառ զամենայն աշխարհն ՚ի նմանէ՝ զԱզազն, զԹլպաշարն, զԲիրըն, զՍաւպան, զՄարաշ, զԲեհեսնի, զՀարսնմնուր (Հիսն-մանսուր), զՍամուսատ, զԿարկառ, զԿաղԹայն և զայլսն, և մնաց միայն Հռոմկլայն ուր կայր կինն նորա դստերօքն, և

(1) Գրիգոր Երէց. Գ. 289.

Նախախնամութեամբն Աստուծոյ ետ զնա տէր Գրիգորի Հայոց կաթողիկոսին, և եղեւ աթոռ նորա յաւիտեան:

Ի նոյն ամի յառաջ քան զհամբարձումն Տեառն միով աւուրբ, եղեւ անձրեւ 'ի Պաղեստինէ և լինէր 'ի նմա կաթիլք արեան. և 'ի Մայիս ամսոյ յառաջ ցօղ առաւօտուն Երուսաղէմ լինէր 'ի գոյն արեան, առ 'ի նշանակելոյ զարիւնն քրիստոնէից որ հեղլոց էր Երուսաղէմ 'ի յառնուլն զնա: Եւ յամառնային յեղանակն եկն ձիւն կարմիր, և իջաւ յերկիր իբրեւ երկու մատն:

Ի թուին Ասորւոց ՌՆԿԴ (1464), և 'ի Հայոց թուին ՇՂԱ (591), 'ի զարգանալ թագաւորին Երուսաղէմի Պաղտնին, կամեցաւ հանել զմայրն իւր 'ի հօգալոյ զթագաւորութիւնն. և եղեն ոմանք 'ի զօրացն ընդ մօրն և մտին 'ի պուրջն Դաւթի և ամրացան. և կռուէին ընդ պուրջն. և մայրն խօսեցաւ անտի 'ի դուրս ընդ թագաւորին, և խղճաց 'ի սիրտն և երդուաւ մօրն և ետ զԵրուսաղէմ 'ի հրամանս մօրն. և ինքն առեալ զզօրսն գնաց 'ի վերայ Ասկաղոնի Փղշտացւոց. և փլոյց մասն ինչ 'ի պարսպէն. և եկին 'ի պատառուածն յայն քան հազար Տաճիկք հագած, և ասէին ընդ միմեանս. «Այս քաղաքս է գլուխ Տաճկաց, և սովաւ զօրացաւ Մահմետ. պինդ կացցուք 'ի սմա և մեռ-

ցուք, և բաց 'ի սմանէ զլոյս մի տեսցուք.» Եւ չորս հարիւր Փռանգ դիմեցին 'ի վերայ քաղաքին Հազարացն և սպանան 'ի նոցանէ ամենեքեան. և տրտմեցաւ յոյժ Թագաւորն և զօրք իւր, և ողջ գիշերն ջանային Տաճիկքն շինել զփլած պարսպին և Սիր Ռընաղդն[1] մեծ իշխան Թագաւորին, ջան 'ի վերայ եդեալ ոչ ետ Թոյլ շինել նոցա։ Եւ 'ի լուսանալն առաւօտուն Թագաւորն Երուսաղէմի առ զխաչն 'ի ձեռն և մեծ պնդեցեալ՝ ձգեաց զնա 'ի մէջ քաղաքին և ասաց. «Ո՛հա, որ քրիստոնեայ էք ու հաւատ ունիք, խնդրեցէք զնշանն Քրիստոսի.» և փարեցան քրիստոնեայքն որպէս հրով, և դիմեցին յամենայն կողմանց և մտին 'ի քաղաքն, և կոտորեցին 'ի նմա վեշտասան հազար անձինս, և առին գերի բազում, և այլքն մտեալ 'ի նաւ փախեան յԵգիպտոս։ Իսկ Օ Սըրնաղան որ եցոյց մեծ քաջութիւն ընդդէմ Տաճկաց, իշխանացուցին 'ի վերայ Անտիոքու, և արարին գլուխ զօրաց, և ետուն նմա զկինն Պօտուեայ (Սեմինտ որ Բոադիէ) 'ի կնութիւն։

Յայսմ ժամանակի մեծ իշխանաց իշխանն Թորոս (Բ) որդի Լեւոնի որդւոյ Կոստանդեայ՝ որդւոյ Թագաւորազինն Ռուբինեայ,

(1) Այն է Ռենալտոս կամ Ռընոյ տը Շադիյեոն, որ կայր 'ի ծառայութեան Ռեմոնտոսայ իշխանին Անտիոքայ։

եւ յերկիրն Կապադովկացւոց, և դարձաւ անուանի յաղթութեամբ :

Իսկ Մ՛ասուտ սուլտանն որ էր յորդւոցըն Խաքանայ արքային Թուրքաց, եւ ըղգուսար իւր Ն՛ըրուք աւլանայ Դանիշմանեանց. և արարեալ միաբանութիւն խորհեցան գընալ 'ի Կիլիկիա. և յորժամ գնացին մերձեցան յերկիրն, և ահա փակեալ ամրացեալ էր եզերօք սահմանացն, և դարձան մեծ ամօթով: Ու Թորոսն մեծ առաւել զօրացեալ էառ զմնացեալ դղեակսն 'ի ձեռանէ Յունաց 'ի յերկիրն Կիլիկեցւոց : Ու լուեալ զայս Թագաւորն Յունաց (Մ՛անուէլ) և բարկացաւ 'ի վերայ Պարոն Թորոսի և առաքեաց զԱ՛նդրոնիկոս զօրագլուխն մեծ ամբոխիւ 'ի Կիլիկիա. և ել ընդդէմ նորա Պարոն Թորոս, և պատերազմեցան ընդ միմեանս առ ընթեր Տարսոնի, և յաղթեցան Յոյնք և անկաւ 'ի նոցանէ երեք հազար անձինք անուանիք, և մնացեալքն փախեան նաւուք և գնացին : Ու էառ զքաղաքն և զծառայս նոցա մեծն Թորոս, և ուրախ եղեն գոհանալով զՏեառնէ. և վաճառէր ընդ ոսկւոյ զմեծամեծս Յունաց (1) :

(1) Ըստ Գրիգորի երիցու 'ի գիրս Մատթէոսի Ուռհայեցւոյ. Գ. 263). Անդրոնիկոս էր իշխան Սըրոյ և Մոփսոյ կարգեալ 'ի կայսերէն Յունաց, այր ամբարտաւան և լի նախանձու ընդդէմ Հայոց, այլ 'ի գալ նորա 'ի Կիլիկիա, Թորոս

Ի Թուին Ասորւոց ՌՆԿԵ (1465) և Հայո-
ցըն ՇՂԲ (592) որդիքն Զանգեայ որ 'ի Մօսլ.
Սեփադինն և Կուտբադինն՝ որ ուխտեալ է-
ին խալիփային, առեցին ուխտին և ձեռն
տուին ամիրային որ նստէր 'ի Թիկրիթ ապս-
տամբութեամբ. և բարկացեալ խալիփայն
եկն 'ի վերայ Մօսլայ և ոչ կարաց առնուլ
զնա, և դարձաւ 'ի վերայ Թակրիթայ, և
եառ զնա յաւուր զօրաց իւրոց, և առին ըզ-
նա և քակեցին 'ի հիմանց, և յետոյ տուին
զբերդն 'ի Հասամադինն (Հէմս-էտտին) որ
էր այր բարի և սիրող քրիստոնէից, և վաղ-
վաղակի շինեաց զքաղաքն և զեկեղեցիսն.
և կայր 'ի հնազանդութիւն խալիփային:

Յայսմ ժամանակի Նորադինն՝ տէրն Հա-
լպայ չոգաւ 'ի վերայ Դամասկոսի և առ ըզ-
նա երդմամբ. և կորոյս զհայրենեօք իշխանս
նորա, և քակեաց զաղխասաչէն պարիսպն և
շինեաց քարամբք ամրագունիւք: Եւ 'ի սոյն
ամի մեռաւ Դամուրտաշն՝ տէրն Մերտինայ, որ
էր յԱրթուխեաց անտի, այր բարի և սիրող
քրիստոնէից և շինող բազում եկեղեցեաց՝
վասն այսու պատճառի: Հիւանդացաւ սա

տիրեալ էր արդէն Մոսլայ, և առ խորտակել զեղծիւք ամ-
բարտաւանութեան Անդրոնիկեայ, յարձակեալ 'ի դուրս 'ի
քաղաքէն Մոսլայ, եւ քաջութեամբ պատերազմ ընդ նմա և
խորտակեաց զնոսա իսպառ 'ի վերջ մահուան հօր իւրոյ Լե-
ւոնի Ա:

եւ յերկիրն Կապադովկացւոց, եւ դարձաւ անուանի յաղթութեամբ ։

Իսկ Մամուռ սուլտանն որ էր յորդւոցըն Խաքանայ արքային Թուրքաց, ետ ըզդուստր իւր Նշուբ ասլանայ Դանիշմանեանց. եւ արարեալ միաբանութիւն խորհեցան գընալ 'ի Կիլիկիա. եւ յորժամ գնացին մերձեցան յերկիրն, եւ ահա փակեալ ամրացեալ էր եզերօք սահմանացն, եւ դարձան մեծ ամօթով ։ Իսկ Թորոսն մեծ առաւել զօրացեալ էառ զմնացեալ դղեակսն 'ի ձեռանէ Յունաց 'ի յերկիրն Կիլիկեցւոց ։ Իսկ լուեալ զայս Թագաւորն Յունաց (Մանուէլ) եւ բարկացաւ 'ի վերայ Պարոն Թորոսի եւ առաքեաց զԱնդրոնիկոս զօրագլուխն մեծ ամբոխիւ 'ի Կիլիկիա. եւ ել ընդդէմ նորա Պարոն Թորոս, եւ պատերազմեցան ընդ միմեանս առ ընթեր Տարսոնի, եւ յաղթեցան Յոյնք եւ անկաւ 'ի նոցանէ երեք հազար անձինք անուանիք, եւ մնացեալքն փախեան նաւուք եւ գնացին ։ Իսկ էառ զքանակն եւ զծանրոց նոցա մեծն Թորոս, եւ ուրախ եղեն գոհանալով զՏեառնէ. եւ վաճառէր ընդ ոսկւոյ զմեծամեծս Յունաց (1) ։

(1) Ըստ Գրիգորի երիցու 'ի գիրս Մատթէոսի Ուռհայեցւոյ. Գ. 263). Անդրոնիկոս էր իշխան Ալոյ եւ Մսիսայ կարգեալ 'ի կայսերէն Յունաց, այր ամբարտաւան եւ լի նախանձու ընդդէմ Հայոց, այլ 'ի գալ նորա 'ի Կիլիկիա, Թորոս

Ի Թուին Յունաց ՌՆԿԵ (1465) և Հայոցըն ՇՂԲ (592) որդիքն Զանգեայ որ 'ի Մօսուլ, Սեփադինն և Խուդբադինն՝ որ ուխտեալ էին խալիփային, ստեցին ուխտին և ձեռն տուին ամիրային որ նստէր 'ի Թիկրիթ ապըստամբութեամբ. և բարկացեալ խալիփայն եկն 'ի վերայ Մօսլայ և ոչ կարաց առնուլ զնա, և դարձաւ 'ի վերայ Թակրիթայ, և ետ զնա յաւար զօրաց իւրոց, և առին ըզնա և քակեցին 'ի հիմանց, և յետոյ տուին զբերդն 'ի Հասամադինն (Շէմս—էտտին) որ էր այր բարի և սիրող քրիստոնէից, և փադփաղակի չինեաց զքաղաքն և զեկեղեցիսն. և կայր 'ի հնազանդութիւն խալիփային:

Յայսմ ժամանակի Նորադինն՝ տէրն Հալպայ չոգաւ 'ի վերայ Դամասկոսի և առ ըզնա երդմամբ և կորոյս զհայրենեօք իշխանս նորա, և քակեալ զայլուսաչէն պարիսպն և շինեաց քարամբք ամրագունիւք: Եւ 'ի սոյն ամի մեռաւ Դամուրտաշն՝ տէրն Մերտնայ, որ էր յԱրթուխեաց անտի, այր բարի և սիրող քրիստոնէից և շինող բազում եկեղեցեաց՝ վասն այսու պատճառի: Հիւանդացաւ սա

սիրեալ էր որդւոյն Մոսլայ, և սա խոստացեալ զեղծիւք ամբարտաւանութեան Անդրոնիկեայ, յարձակեալ 'ի դուրս 'ի քաղաքէն Մոսլայ, և ա քաջութեամբ պատերազմ ընդ նմա և խորտակեաց զնաս խուսա 'ի վերայ մահուան հօր իւրոյ Լեւոնի Ա.

հիւանդութիւն մահու, մինչեւ բժիշկքն յուսահատեցան և թողին. և նա յուսացաւ յաղօթս քրիստոնէիցն և առաքեաց 'ի վանքն Մառ Աբայի (1), և բերին զաչ նորա։ Եւ յորժամ մուծին 'ի տունն, տեսանէր այր մի հրեղէն, որ գնաց կալաւ զձեռանէ նորա և ասաց. «Ո՞վ ես տէր.» և նա ասէ. «Քրիստոնեայքն առաքեցին զիս՝ զի մի մեռցիս։» Եւ յարոյց զնա, և նստաւ և փառաւորեաց զԱստուած և ողջացաւ. և եղեւ մեծ մխիթարութիւն քրիստոնէից ընդ իշխանութեամբ նորա, 'ի Մերտին և 'ի Նսեբին և 'ի Մուփարկին և յՄասլայն և 'ի Տարս, և յայլ քաղաքս տեղիս։ Եւ նոյնպէս պատուիրեաց որդւոց իւրոց յետ մահուան իւրոյ զնոյն խնամ ունել 'ի վերայ քրիստոնէից։ Եւ ետ զՄերտինն և զՄուփարկինն 'ի Նաջմադինն (Նէճմ-էտտին) յաւագ որդին, և զԽանի քաղաք ետ 'ի Ղամալադինն (Ճէմալ-էտտին) 'ի միւս որդին, և զՏարս 'ի Շամսադինն (Շէմս-էտտին) 'ի կրսեր որդին։

Յայսմ ժամանակի Թագաւորն Յունաց (Մանուէլ) ըստ ատելութեան բարուց իւրեանց զոր ունէին առ ամենայն քրիստոնեայս, առաքեաց առ Մասուտ սուլտանն և աղաչեաց զնա մեծաւ պատարագօք զի մոցէ

(1) Մառ Աբայ. իմա՝ Մար Իբաս։ Իսկ Մառ կամ Մար Ասոր. նշանակէ 'ի լեզու Ասորւոց՝ տէր։

յերկիրն Կիլիկեցւոց և աւերեաց զնա ։ Եւ նա ժողովեալ զամենայն զօրսն Կապադովկիայ և զՄիջագետաց, գնաց ամենայն պատրաստութեամբ և եմուտ յերկիրն Հայոց ։ Եւ նոքա նախապէտ եղեալ յառաջագոյն՝ ամրացեալ և գաղթեալ էին 'ի լերինս և յամուր տեղիս ։ Եւ սուլտանն գնաց իջաւ 'ի վերայ Թլին Համդնոյ (1), և եհար զնոսա Տէր Աստուածն քրիստոնէից՝ ոչ հրեղէն հրեշտակօք որպէս զզօրսն Սենեքարիմայ, և ոչ 'ի ձեռն կնոջ որպէս զՀողոփեռնէս, այլ տկար կենդանեօք՝ մժղկի և ճանճոյ, այնպիսի՝ որ առէին բազումք, թէ այն սաստիկ բարկութիւն է քան զհարուածս խաստարոլին Փարաւոնի. և եղեւ պատուհասն 'ի մարդ և յանասունս ։ Եւ սկսան փախչել. և իջին զօրքն Հայոց ամրացեալքն 'ի լերինս, և կոտորեցին զբազումս 'ի նոցանէ, և առին աւար զմեծութիւն անօրինացն, և լցին զտունս իւրեանց գոհանալով և փառաւորելով զԱստուած ։ Եւ եւ վաղվաղակի պարոն Թորոս ընդ միջոցս լերանցն 'ի Խաւատանէան (2), և եհար զԹուրքն որ բնակեալ էին անդ. և դարձաւ բազում գերեօք և աւարաւ և անուանի փառօք յա-

(1) Թլին Համդնոյ էր տեղի ամրութեան 'ի գաւառին Անարզաբայ, որ 'ի Կիլիկիա ։

(2) Խաւատանէք էր ամրոց 'ի սահմանս երկրին Մերաստիայ ընդ արեւմտակողմն հալպայ ։

միայն մարդկանէ (1)։ Իսկ Սասուդ. սուլտանն գնացեալ մազապուրծ յորդւոցն Հայոց մեծ ամօթով, և հասեալ 'ի Կոնն (Իկոնիա) կրկին հարեալ 'ի Տեառնէ մեռաւ (2)։

Ի Թուին Յունաց ՌՆԿԶ (1466), և Հայոց ՇՂԳ (593), թագաւորեաց որդին Սասուդին՝ Խլիճ ասլանն (Բ). և էին նորա երկու եղբարք, զմինն խեղդել ետ 'ի ծածուկ, և միւսն փախեաւ յեզր ծովուն, և ամրացաւ 'ի բերդսն՝ զոր տուեալ էր նմա հայրն իւր նախ քան զմահն իւր. և էր անուն նորա Ջահանշահ, և նա էր փեսայ տանն Դանիշմանայ, և են սոքա ազգ մի, և վասն այնորիկ ձեռն ետ նմա Սղուբ ասլան հօրեղբօրորդին իւր, և աւերէր զերկիրն Խլիճ ասլանայ։ Սա լուեալ զայս Նորըդինն (Նուր-էտտին) տէրն Հալպայ և Դամասկոսի, եկն և էառ զՓարզման (3) և զՍնիժափ։ Սա առաքեաց Սղուբ ասլան առ Նորադինն և առ Խար ասլան (Խարա-ասլան) տէրն Խարթբերդոյ, զի առցեն զամենայն երկիր Խլիճ ասլանայ, որ կայ 'ի սահմանս նոցա 'ի Միջագետս և յայնկոյս Եփրատ գետոյ. որ և ընդ խոր-

(1) Վահրամ, յեր. 208։

(2) Գրիգոր Երէց (Գ. 265). — Սմբատ, յեր. 97։ — Վահրամ։

(3) Փարզմանն էր քաղաք 'ի մերձն Հալպայ 'ի սահմանս Եփրատացւոց։

հեղեն 'ի յառնուլ զերկիրն և բաժանել, կըռուեցան ընդ միմեանս և Թողլին ։

Իսկ զերկիրն Եգիպտոսի Տաճիկք (Արաբացիք) ունէին ընդ իւրեանց իշխանութեամբ 'ի ժամանակաց անտի Մահմետականացն որ տիրեցին նմա, և ոչ կարացին մուտ գտանել 'ի նա Թուրքաց Թագաւորքն. Եւ լինէր նոցա խալիփայ յազգէն Ալեայ, որպէս այն որ նըստէր 'ի Բաղտատ յազգէն Մահմետի ։

## Ե

### Թէ ո՛յք եւ կամ ուստի՛ են Աբդլմուամնիքն որք կան յարեւմուտս ։

ԽԱԼԻՓԱՅՔ որ կային յԵգիպտոս, (էին) յազգէն Ալեայ մինչև 'ի ժամանակս Նորադինին, որ և ապա բարձաւ 'ի նմանէ ։ Ի կարգէ անտի խալիփայիցն ասէին ումեմն Աբդլա, և էին նորա երկու որդիք, որոց անուանքն Աբդլմինի և Ալուբ, որք անկան պոռնկութեամբ ընդ կին հօր իւրեանց. և իմացեալ հօրն՝ կամեցաւ սպանանել զնոսա(1) ։

(1) Միւս Թարգմանութիւնն փոքր մի այլազգ պատմէ. չորրորդ խալիփայն ասէ, Եգիպտոսի, որ էր յազգէն Ալեայ ունէր երկու որդիս, և 'ի մեռանել իւրում՝ աւագն առ զխալիփայութիւնն և խորհէր սպանանել զերկրորդն եղբայր իւր

Եւ նոքա իմացան եւ փախեան՝ առեալ 'ի տանէ հօրն երկու դիրք , անուանք նոցա Բեմիա եւ Սեմիա ։ Բեմիան ուսուցանէր ծիւթս խառնուածոյ , որով կարողութիւն լիցէ առնել ոսկի եւ արծաթ , ակն եւ մարգարիտ ։ Եւ Սեմիայն ուսուցանէր հրաշագործութիւնս եւ տլսմ, որով հմանան մարդիկ։ Առեալ նոցա զգրեանն գնացին յարեւմուտս կոյս 'ի սահմանս Աֆրիկոյ , եւ անցին անդր քան զնա , եւ գտին աշխարհ մի բարբարոսաց այլալեզուաց կործէից ազանց Պուանդաց , որք էին առանց ուսման եւ դպրութեան եւ օրինաց , եւ աղքատք . եւ յարեցան 'ի նոսա եւ շինեցին տունս յամրագոյն աւելով 'ի քառածայրս ։ Եւ արարեալ զարուեստըն 'ի ծածուկ եւ ստանային գանձս եւ վաճառէին առատապէս ։ Եւ ունէին ընդ իւրեանս ծառայս բազումս , ստացան եւ 'ի նոցանէ յոլովութիւն ծառայից ։ Եւ հեղութբ յարեցուցանէին յիւրեանս զբնակիչս աւելոյն առատաձեռն լինելով նոցա . եւ առին 'ի նոցանէ կանայս եւ ստացան որդիս , եւ ուսուցանէին դպրութիւնս եւ ուսումն աստեղագիտութեան եւ հնարից ։ Եւ շինեցին բերդըս եւ քաղաքս , եւ մեծացան . եւ ապա սկը-

որոց անուանքն էին Աբդլա եւ Մամունի , եւ իմացեալ տղա զխորհուրդ եղբօր իւրեանց՝ փախեան յարեւմուտս , եւ յանուն իւրեանց կոչեցան ազգն Աբդլմումինք ։

տան քարոզել նոցա զուսումն և զպաշտօն իւրեանց, և հաւանեցուցանէին աղանդով և տլմօքն զոր առնէին. և ուսուցանէին նոցա զլեզուս և զգիրս իւրեանց։ Եւ մեծացան և արարին զօրս և զօրացան, և առին քաղաքս բազումս. մինչեւ առաւել բազմացան, և գնացին առին զՍիկիլիա կղզի, և տիրեցին բազում աշխարհաց, և արկին 'ի նեղութիւն զՀռոմայեցիս յոյժ։ Եւ ասեն թէ՝ այսու պատճառաւ առին Ալամանքն զկայսերական պատիւն 'ի Փրանսիսաց. զի նեղեալ 'ի Տաճկաց (յԱրաբացւոց) Հռոմ, առաքեցին առ նոսա՝ զի եկեսցեն փրկեսցեն զնոսա 'ի Տաճկացն։ Նոյնպէս և Փրանսէսքն առաքեցին առաչանս, զի թէ տացէ նոցա Տէր յաղթութիւն հալածել զայլազգիսն, առցեն զկայսերական պատիւն. և երդուան նոցա։ Եւ նոքա յուսացեալ յԱստուած՝ գնացին 'ի վերայ . . . նացն և կոտորեցին զնոսա և հալածականս արարին զմնացեալսն, և առին զկայսերութիւն Ալամանքն։ Իսկ Տաճիկքն, զի տիրեալ էին բազում աշխարհաց և բերդից, հաստատեցին իւրեանց սուլտան և խալիփայ, և կան մինչեւ ցայսօր ժամանակի։

Ի թուին Ասորւոց ՌՆԿԶ (1466), և Հայոց ՇՂԳ (593) մեռաւ խալիփայն Եգիպտոսի, և իշխանն (փոխարքայն) Եգիպտոսի

կամեցաւ ինքն նստիլ խալիփայ, և նա չէր յազգէն Ալեայ, և վասն այսորիկ ոչ կամէին աշխարհն զնա, այլ զԱբաս ամն ընտրեցին, որ էր որդի մեռելոյ խալիփային. և Աբասն յորժամ գիտաց թէ իշխանն ոչ կամի դնել զնա խալիփայ, էառ զամենայն գանձս տանն խալիփայութեան, և ետ նան երեք հազար ծառայս ազգաւ Հայք, և կազմեաց զնոսա զէնուք և ել 'ի գիշերի և առ 'ի Պարսիանցն ընդ իւր առաջնորդ ճանապարհին զի եկեացէ առ Նորադինն 'ի Դմիշկ։ Եւ վաղվէն իմացեալ իշխանն Եգիպտոսի, պնդեցաւ զհետ նորա զօրօք, և դարձան զօրքն Հայոց պատեալ ծառայքն՝ և հարին զԵգիպտացիսն հարուածս մեծամեծս, և մնացեալքն փախեան։ Եւ եկեալ նոցա 'ի Պաղէստինէ, չոգաւ ամն 'ի Պարսիանցն Յերուսաղէմ. և ազդ. արար Փռանգացն, նոյնպէս և Ասխալան. և ժողովեցան և ելին ընդդէմ նոցա։ Եւ տեսեալ Աբասայն՝ կոչեաց զօրդին Հայոց և ասէ. «Ահա որդիք իմ, հարէք զնոսա նման Եգիպտացւոցն, և մեծացուցից զձեզ յոյժ յոյժ։ Եւ կազմեցան նոքա. իսկ յորժամ տեսին զնշան խաչին առաջի զօրացն Փռանգաց, յարտասուս հարան, և 'ի վայր իջեալ 'ի ձիոցն որպէս կարօտեալք՝ փափաքանօք գնացեալ ընդառաջ խաչին երկրպագեցին։ Եւ Փռանգն էառ զիւրաւ զանչափութիւն գան-

ձուն, և ըմբռնեցին զԱբրահամ և ծախեցին ըզնա իշխանին Եգիպտոսի ընդ բազում ոսկւոյ, և նա գնեալ զնա տարաւ կախեաց զփայտէ. և զզօրսն Հայոց թողին ազատս գնալ յո՛ և կամիցին և այլ ինչ ոչ ետուն նոցա բաց 'ի հանդերձիցն զոր ունէին, ամարդիք եղեալ առերախտիս նոցա զոր արարին քրիստոսաէրքն առ քրիստոնեայքն դիմեալք, և իւրեանց կամօքն լցին զնոսա մեծութեամբ ստացուածոց (1) ։

Յայսմ ժամանակի Սնաղան (2), որ կոչեցաւ Տրինձ (իշխան), վիճէր ընդ պարոն Թորոսի վասն բերդին որ կայր 'ի ափունսն ('ի սահմանս) Սիկիլիոյ, զոր առեալ էին 'ի Պերերացն Յոյնք, և պարոն Թորոս առեալ

(1) Պատմագիրք Արաբացւոց այլազգ պատմեն զպարագայս այսորիկ ։ Աբաս ոչ որդի խալիֆայի, այլ էր որդի կընոջ Ատէլայ փոխարքայի, որոյ հրաման ընկալեալ խաղալ ընդդէմ Փռանգաց որք անհանգիստ առնէին զԵգիպտացիսն մերձ յԱսկաղոն, խորհեցաւ 'ի մտի առնուլ 'ի բուն զիշխանութիւն փոխարքայութեանն. վասն որոյ սպանեալ զԱտէլ յաջորդեաց զնա ։ Այլ այսու յինքն ձգեաց զատելութիւն և զարտմտութիւն բովանդակ երկրին. և երկուցեալ 'ի վըրէժխնդրութենէ, բարձեալ զամենայն գանձս տէրութեանն՝ խոյս ետ յԵգիպտոսէ, թողեալ զխալիֆայն 'ի ձեռս սիկարեանց. իսկ Աբաս 'ի փախչել իւրում անկաւ 'ի ձեռս Փըռանգաց և սպանաւ մահուամբ, և զորդին նորա յանձնեցին Տելայեայ փոխարքայի, որ կախեաց զնա զփայտէ ։ Իսկ ինքն Տելայի, որ նա ինքն է Մելիք—Սալէհ, իշխանեցաւ փոխանակ Փէյզ—Պիլլահայ խալիֆայի որ սպանաւ 'ի ձեռաց սիկարեանց։

(2) Ուշնոյ որ Ղադիյեօն իշխան Անաւարզայ ։

*էր 'ի Յունաց. և ասէր Սինադոն Թէ՝ «Իտար-ձո առ Փրերոն՝ զի վասն քրիստոնէից 'ի կը-ռուիլ են, զառաջագոյն կալեալ բերդն նո-ցա.» և վասն այսորիկ կռուեցան 'ի Սկընդ-րուննն(1), և անկան յերկոցունց կողմանցն յո-լովք, և դարձան 'ի միմեանց: Բայց յետոյ հաւանեցաւ պարոն Թորոս և ետ նոցա իւ-րով կամօք, և նոքա երդուեցան նոցա յա-մենայն կարիս մահու չափ ջանացեալ:*

*Ի Թուին Ասորւոց* ՌՆԿԸ (1468), *և Հայոց* ՇՂԵ (595), *ել Ստեփանէ եղբայրն պարոն Թորոսի յերկիրն Մարաշոյ, և 'ի գիշերի ե-մոյծ զզօրսն 'ի Մարաշ 'ի տունս քրիստոնէիցն կամօք քահանայի միոյ, և ընդ լուսանալն առ- զքաղաքն և կոտորեաց զԹուրքսն. և հպար-տացեալ քրիստոնեայքն յայտնապէս շնային ընդ կանայս Թուրքացն. և բարկացաւ Տէր և ոչ ետ զբերդն 'ի ձեռս նոցա, այլ այրեցին զքաղաքն և առին զՀայերն որ անդ՝ և մտին յերկիրն: Բայց ամիրայն Մարաշայ ըմբըռ-նեաց զերէցն որ եմոյծ զզօրսն գաղտապէս 'ի քաղաքն, և կենդանւոյն քերթեաց զնա և այրեաց հրով(2):*

(1) Այն է Աղէքսանդրիա քաղաքն Ասորւոց. ծովեզե-րեայ, և այժմ կոչի Իսքէնտէրուն:

(2) Գրիգոր Երէց (Գ. 268) զայս դէպս առնէ եղեալ 'ի Գե-հեանի: Իսկ Վահրամ համաձայն Միխայելի՝ Գերմանիկոյ. ա-սէ. աւերեաց Թորոս:

Ի սոյն ամի Ռնաղտն, տէրն Անտաքոյ, խորհրդակցութեամբ պարոն Թորոսի՝ զօրօք հուրովք գնաց (1) 'ի վերայ Կիպրոս կղզոյ վասն երկու պատճառաց. մի՝ վասն Թագաւորին Յունաց քինու, որ յորդորէր զայլազգիսն 'ի կորուստ Հայոց, և միւսն՝ վասն Յունացն որ 'ի Կիպրոս կոտորէին զՀայսն և զՖռանգն: Վասն որոյ գնացեալ Ռնաղտն գերեաց զամենայն կղզին և էած զմարդ և զանասուն յեզր ծովուն, և թուեաց զնոսա և կորեաց գինս ամենեցունց, և եթող զնոսա և էած ընդ ինքեան պատանդս՝ եպիսկոպոսս և աբեղայս բազումս և մեծատունս, մինչև բերցեն զկորեալ գինն: Իսկ Ստեփանէ կալաւ Թուրքք մի 'ի Մերդուսէն (2) և խնդրեաց ըզբերդն, և նա ասաց. « Թէ երդնուս մեզ որ թողուս զմեզ կենդանի, մենք տամք զՄերդուսն. » և երդուաւ 'ի խաչն և յԱւետարանն զի առաքեսցէ զնոսա խաղաղութեամբ 'ի Հալպ. և ետուն նմա զՄերդուսն, և եհան զնոսա գնալ խաղաղութեամբ: Եւ ոմանք 'ի տարողացն լուան զի սպառնային Թուրքերն

(1) Սմբատ պատմագիր (յեր. 98) ասէ՝ եթէ Ռնաղտ 'ի գրգռութենէ պարոն Թորոսի յարձակեցաւ 'ի վերայ Կիպրոսի, և թէ ինքն իսկ պարոն Թորոս ընկերացաւ նմա յարշաւանսն: — Գրիգոր երէց (գ. 373):

(2) Մերդուսն է Մերդուսնք դղեակն 'ի Կիլիկիա մերձ ամրոցին Կապանոյ:

Թէ՝ «Դարձեալ զօրանամք և գամք աւերեմք զաշխարհս զայս ։» Եւ պատմեցաւ պարոն Ստեփաննեսայ. և եհարց պարոն Ստեփանէ զեկեղեցականսն, և Նոքա ասեն. «Թէ այդպէս սպառնան, անխիղճ ես դու վասն երդմանն ։» Եւ առաքեաց զհետ Նոցա և կոտորեաց զնոսա ։ Եւ լուան զայս ամենայն այլազգիքն և դառնացան ընդդէմ քրիստոնէից, վասն որոյ և մեծամեծ վնասք լինէին ։

Յայսմ ամի մեռաւ աւագ սուլտանն Խորասանայ Մասուդն, և ոչ ունէր որդի՝ բայց մանկիկ մի փոքրիկ փոխանորդ իւր, վասն որոյ եղեւ աթոռապահ նմա ամիրայ մի Եղտկուզ անուն, որ առ զկին սուլտանայ իւր ՚ի կնութիւն՝ զմայր տղային. և յետ փոքր աւուրց մեռաւ տղայն, և մնաց սուլտանութիւնն Եղտկուզին, Թերեւս լիցի որդի ՚ի նոյն կնոջէ ժառանգ սուլտանութեանն. և զի (Եղտկուզ) աթաբակ եղաւ զառաջինն տղային, Թէպէտ սուլտանացաւ, բայց մնաց անունն նոյնպէս աթաբակ. և վասն այսորիկ յայնմ հետէ Թագաւորքն Խորասանայ և Նինուէի և Միջագետաց աթաբակ կոչին և ազգքն տուն Աթաբակեայ. նոյնպէս որ ՚ի Կապադովկիա լինէին Թագաւորք, զի ընդձեռամբ Եղտկուզին մտին, Աթաբակեանք կոչին ։

Ի Թուին Ասորւոց ՌՆԿԹ (1469) և Հայոց

ՌՂԶ (596) Խլիճ ասլան արար սէր ընդ Խարասլան տէրն Սեւաստոյ, և եկն յերկիրն Միջագետաց և առ զտեղիսն զոր յառաջագոյն կալեալ էր հայր նորա. և արար սէր ընդ պարոն Թորոս և ընդ Ստեփաննէ, և կայր խաղաղութեամբ։

Յայսմ ամի Թագաւորն Երուսաղէմի եկին յԱնտաք, և ժողովեալ զօրս գնացին առին զՀերիմն (1) և գերեցին մինչեւ ՚ի Հալպ և դարձան։ Եւ յայսմ ժամանակի չմտրեցան ընդ միմեանս Խլիճ ասլան և Խար ասլան, և պարոն Ստեփաննէ անդադար աւերէր զաշխարհ երկոցունցն։ Եւ եղեւ քսութիւն յոմանց առ պարոն Թորոս՝ թէ եղբայրն քո կամի սպանանել զքեզ. և հաւատաց նոցա, և կալաւ զեղբայրն և զնդանեաց տասն ամիս. և ապա միջնորդութեամբ բազմաց դարձեալ եհան զնա ՚ի բանտէն, և կային սիրով ընդ միմեանս։

Իսկ Խլիճ ասլան արար սիրելի իւր զՏանուն ամիրայն Կեսարիոյ, և եհան զնա ՚ի ՚ի Խարասլանայ. և նա եղեւ սկիզբն քակման տանն Դանիշմանեանց (2)։

(1) Հարեմ կամ Հարենկ՝ էր ամրոց յերկրին Անտիոքայւոց ՚ի հարաւոյ և աւուր միոյ ճանապարհաւ հեռի յԱնտիոքայ։

(2) Տանուն էր որդի Մելիք Մոհամմետայ ամիրային Մելիտինոյ. իսկ ՚ի յաջորդել որդւոյն զհայրն. Խլիճ—ասլան

Ի Թուին Նաւաոց ՌՆՀ (1470) և Հայոցն ՇՂԷ (597), Տաճիկքն (Արաբացիք) որ կոչին Եբդլմումնիք, ասպատակեցին 'ի Սպանիա, և եկին մինչև 'ի Սպանիա. և ելին ընդդէմ նոցա զօրքն Փռանգաց, և յերկարեաց գործ պատերազմին:

Իսկ Թագաւորն Յունաց Մանիլն դիպող ժամ գտեալ՝ եկն սպառնալեօք յերկիրն Կիլիկեցւոց 'ի վերայ պարոն Թորոսի. և Թորոս խոյս ետ 'ի նմանէ զօրօք իւրովք 'ի կողմն լերինն: Եւ Մանիլն հնազանդեցան դաշտակողմանքն. և գնաց մինչև յԱնտաք, և լուաւ գոյժ Թէ՝ ոմն 'ի զօրապետացն կամի Թագաւորել 'ի տեղի նորա: Եւ փութացաւ 'ի գնալ. և արար հաշտութիւն ընդ պարոն Թորոս և ընդ Ստեփանէ, և դարձաւ (1). և առաքեաց առ Կլիճ ասլան և խնդրեաց ճանապարհ, և ետ նմա ճանապարհ. այլ սակայն 'ի գնալն զքաղումն կոճոպեցին 'ի զօրացն՝ յայտնի և 'ի ծածուկ (2). և գնաց 'ի

Բ տիրեաց Կեսարիոյ յամի 1169, և ինքն Տանուն փախեաւ առ Մանուէլ կայսր. և այսպէս սկիզբն եղեւ անկմանն տանն Տանիշմանեանց, որք տիրեցին մասին միոյ փոքուն Ասիոյ ամս 122:

(1) Վարդան յաւելու աւել (յեր. 165), եթէ Մանուէլ կայսր սիրով նուաճեալ զԹորոս, առնելով և զամենայն զօրս Փռանգաց՝ և գնաց 'ի վերայ Հալպայ, և անդ լուեալ զհամբաւ խռովութեան մայրաքաղաքին՝ դարձաւ յետս: Գրիգոր երէց (Գ. 276):

(2) Գրիգոր երէց (Գ. 274):

կոստանդինուպօլիս ոչ յաջողեալ 'ի խորհուրդըս իւր զոր կամէր առնել ։ Բայց յորժամ ետես Մանիլն զպակասութիւն զօրաց իւրոց 'ի Թուրքէն, առաքեաց այլ զօրս աւերել զգաւառն Թուրքաց զոր կարացեն . և եղեն պատերազմունք 'ի մէջ Յունաց և Թուրքաց ։ Իսկ Նորադինն իմացեալ զպատճառս նացա, զօրաժողով լեալ 'ի վերայ գաւառացն Խլիճ ասլանայ, և առ զՊեհեսնի և զՌաբան և զՄարաշ և զվանսն և զայլս քաղաքս ։

Ի Թուին Ասորւոց ՌՆՀԱ (1471) և Հայոցն ՇՂԸ (598), Նըղուբ ասլան (Եաղուպ—արսլան) և Նորադինն հաշտեցան ընդ Խլիճ ասլան սուլտանին, և դարձուցին զաշխարհն զոր առեալ էին 'ի նմանէ՝ առ ինքն ։ Եւ 'ի նոյն ամի զօրքն Հալպայ ըմբռնեցին զՋօսլինն զտէրն Հերմին՝ զորդի Ջօսլինին, որ մեռաւ 'ի ծառայութեան 'ի Հալպ. և եղեւ մեծ ուրախութիւն 'ի Հալպ, զի յոյժ նեղէր նա զերկիրն Հալպայ վասն քինու հօր իւրոյ, զոր եդին 'ի կապանս և անդէն մեռաւ ։

Եւ յետ ամի միոյ աւերեցին զՊարիշա գիւղ յերկիրն Հերմին, ուր բնակեալ էին Հայք, և կոտորեցին զնոսա և գերեցին ։

Եւ յայսմ ժամանակի եղ Թագաւորն Եսրուսաղէմի Պաղտինն առ սահմանօքն Դամասկոսի, և Պոդլիքն որ էին ընդ Նորագնին և բնակէին յերկիրն Փռանգաց, առ-

պղատամբեցին 'ի Նորադնէն եւ եղեն ընդ Ֆռանգին, եւ առին զնոսա եւ գնացին ընդ անապատ յերկիրն Եգիպտոսի. եւ առին աւար եւ գերի բազում յոյժ, եւ եդին հարկ 'ի վերայ նոցա հարիւր վաթսուն հազար դահեկան, եւ դարձան յԵրուսաղէմ մեծաւ փառօք:

Յայսմ ժամանակի Թագաւորն Վրաց Գէորգի եհար զՍալտուխ ամիրայն, եւ կալաւ զՍալտուխն եւ վաճառեաց զնա. եւ էառ զԱնի քաղաք (1): Եւ դարձեալ ժողովեցաւ բազմութիւն Թուրքաց ընդդէմ Գէորգեայ, եւ կոտորեցան 'ի նմանէ հազարք հազարաց եւ բիւրք բիւրուց:

Ի թուին Մսրուց ՌՆՀԲ (1472), եւ Հայոցն ՇՂԹ (599), եղեւ պատերազմ ընդ Խլիճ աս-լան եւ ընդ Նղուբ ասլան վասն դստերն Սալտուխին, զոր կամէր կին առնուլ սուլտանն, եւ ետաւ նա 'ի կնութիւն տեառն Մելտինոյ կամօք Նղուբ ասլանայ. եւ ժողովեցաւ 'ի վերայ նորա սուլտանն: Եւ ել ընդդէմ նորա Նղուբ ասլան եւ զօրացաւ ընդդէմ սուլտանին, եւ յաղթեաց նմա եւ փախոյց զնա, եւ էառ զբանակետղ նորա զգահոյսն ոսկեղէն եւ զամենայն պատրաստութիւն նո-

(1) Վարդան (յեր. 165) դնէ 'ի ՈԺ Թուոյն Հայոց առնուլ Գէորգի զԱնի քաղաք 'ի փառլուն ամիրայէն. Իսկ Սալտուխ էր փեսայ Շահի—Արմէնի Թոռին Սուքմանայ:

րա . բայց երեւեցաւ մեծահոգի, և դարձոյց անդրէն զոր ինչ առեալ էր, և խնդրեաց 'ի նմանէ սէր և արարին խաղաղութիւն, և սիրով կային ընդ. միմեանս ։

Ի սոյն ժամանակս ազդ եղեւ Թագաւորին Երուսաղէմի եթէ Ժիրարտ տէրն Սայիտոյ կազմեալ է նաւս 'ի ծովուն լցեալ աւազակօք, և յանխնայ կոտորէ զքրիստոնեայս և զՏաճիկս . և վասն այսր պատճառի բարկացաւ 'ի վերայ նորա և էառ զՍայիդա և հալածեաց զնա, և եկեալ նորա առ տէրն Անտիոքայ և ետ նմա զՊաղրաս(1)։ Եւ նա ոչ դադարէր 'ի չարեաց իւրոց 'ի ծովու և 'ի ցամաքի մեծամեծ վնասս գործելով . և յորժամ զայն եւս իմացան, առին 'ի նմանէ և զՊաղրաս . և նա գնացեալ առ Նորադինն և ուրախ արար զնա յոյժ, զի խոստացաւ առ նա դարձուցանել զամենայն ծովեզերայսն . և ետ 'ի ձեռս նորա զզօրս իւր, և գընաց նա և եմուտ յերկիրն Փռանգաց, և սկսաւ առնել աւերումն և կոտորումն քրիստոնէից ։ Եւ ժողովեալ զօրացն Փռանգաց և անուանքն Քրիստոսի դիմեցին 'ի վերայ նորա և ձերբակալ արարին զգլուխ չարեացն, և կոտորեցին զզօրս Թուրքացն, և զանօթն

(1) Պաղրաս որ և Գաղըրաս, էր դղեակ մեծ յԱմանոսու՝ յերկրին Կիլիկիոյ ։

տատանայի (Դ՛երարտ) տարան յԵրուսաղէմ և հրով այրեցին ։

Յաւուրս յայսոսիկ Մանիլ Թագաւորն Յունաց սպան զկին իւր դեղով վասն ամլութեան նորա , և էառ արտաքոյ օրինացն կին երկրորդ զդուստր տեառն Նափոքայ ։

Ի Թուին Նորուոց ՌՆՀԳ (1473) և Հայոց Թիւն Ո (600) մեռաւ Տուղ ասլան ամիրայն Մելտենոյ և նստաւ որդի նորա տասնամեայ 'ի տեղի հօրն . և լուաւ Նղուբ ասլան և եկն 'ի վերայ Մելտենոյ և պաշարեաց զնա և ոչ կարաց առնուլ , և եթող 'ի վերայ նորա զօր և չոգաւ . և Խարապլան տէրն Խարթբերդոյ առնէր բազում ընդունելութիւն փախստականացն 'ի գաւառէն Մելտենոյ ։ Յետ այնորիկ դարձաւ 'ի բարկութենէ իւրմէ Նղուբ ասլան և արար հաշտութիւն ընդ ամիրայացեալ տղային և եթող նմա զաշխարհն Մելտենոյ , որ էր որդի եղբօր իւրոյ ։ Յայսմ ժամանակի լուաւ Կլիճ ասլան եթէ Նղուբ ասլան միաբանութեամբ բազում ամիրայից խորհեալ է ընկենուլ զնա 'ի Թագաւորութենէ և դնել զեղբայրն նորա , երկեաւ և առաքեաց զԿուրխաստափոր դպրապետն իւր առ Մանիլն խնդրել 'ի նմանէ օգնութիւն և կամք սիրոյ , զի գնասցէ առ նա 'ի Կոստանդինուպօլիս (1) ։ Եւ ուրախ եղեւ Մա-

(1) Գրիգոր Երէց (գ . 282) համառօտակի յիշէ զերթն

նուն, և երդուաւ նմա. և գնաց սուլտանն հազար հեծելօք առ Մանուէլ 'ի Կոստանդինուպօլիս, և ընկալան զնա մեծ պատուով: Եւ եղեւ անդ աւուրս ութսուն, և այնչափ պատուեաց զնա, զի յայնքան աւուրս յամեն օր երկու անգամ առաքէին նմա հացկերոյթ ոսկեղէն և արծաթեղէն ամանօք, և այն ամենայն մնայր սուլտանին և այլ ոչ դառնայր: Եւ 'ի յետոյն օրն կերան հաց 'ի միում սեղանի և զամենայն պատրաստութիւն ետ սուլտանին: Եւ յորժամ կամէր գնալ, ծածկեաց զհաստակ նորա ոսկւով՝ կալով նորա յոտն 'ի մէջ տաճարին, և ետ նմա ըզզօրս իւր և չոգաւ և վարձեաց այլ բազում զօրս 'ի Թուրքաց: Եւ ժողովեցան ամիրայքն ամենայն Միջագետաց զօրօք իւրեանց առ Ղլուճ ասլան և ելին ընդդէմ նորա 'ի պատերազմ. և յորժամ եկին առ միմեանս, երկեան երկոքին կողմանքն 'ի բազմութենէ միմեանց, և արարին խաղաղութիւն և ցրուեցան յիւրաքանչիւր տեղիս:

Ի ժամանակին յայնմիկ պարոնն Ստեփանէ կոչեցաւ 'ի պատիւ սիրոյ Անդրոնիկոսէ իշխանէն՝ որ էր Յոյն, և յորժամ դարձաւ երթալ 'ի տուն իւր, սպանաւ նենգութեամբ

Խլիճ—Արսլանայ առ Մանուէլ կայսր 'ի Կոստանդինուպօլիս և տարաւ, ասէ, ընդ իւր զԱմիր Միրան զեղբայրն Նուր—էտտինի:

ինքն եւ որ ընդ նմա էին ։ Ոմանք ասեն թէ խաչեցին 'ի պղինձ (1) ։ Յայնժամ շարժեցաւ բարկութեամբ պարոն Թորոս 'ի վերայ Յունաց եւ սպան 'ի նոցանէ որպէս ասեն՝ աւելի քան զտասն հազար անձինս ։ Եւ Անդրոնիկոս երդնոյր՝ թէ չէ պատճառ սպանման եղբօրն. եւ աղաչեաց զԹագաւորն Երուսաղէմի գալ եւ առնել խաղաղութիւն, եւ խոստանայր նը-մա բազում ոսկի 'ի Կոստանդնուպօլսէ ։ Եւ լուաւ նմա Թագաւորն (Պղտուին Գ) եւ եկն եւ աղաչեաց զպարոն Թորոս եւ զորդին Ստեփանեայ, եւ դադարեցին 'ի կոտորելոյ զՅոյնսն ։ Եւ յետ այնորիկ եառ պարոն Թորոս զԱնաւարզա եւ զԹիլն ։

Յայնմ ժամանակի Թագաւորն Վրաց Գէորգի եառ զԱնին եւ կոտորեաց զՊարսիկսն որ 'ի նմա, եւ քակեաց զմինարայն զոր շինեալ էին Պարսիկք ոսկերօք եւ արեամբ քրիստոնէից (2) ։

(1) Սմբատ (յեր․ 98)․ եւ Վահրամ (յեր․ 209) հաստատեն զբանս Միխայէլի ։—Կիրակոս (յեր․ 90) զանց առնէ յիշել զեղանակ վախճանին ։

(2) Վարդան ասէ (յեր․ 166) թէ Գէորգի առեալ զԴուին, զգագաթունս (պատանեաց) որ կային 'ի մինարէն, զարդարեալ ոսկեթել հանդերձիւք եւ եդեալ 'ի գագաղս տայ Մուղբի արքայ, բառնալ յուս հերեանց եւ տանել 'ի Տփխիս, 'ի թուին Հայոց ՈԺԲ (1163) ։ —Գրիգոր երէց․ գ․ 284 ։— Սամուէլ ասէ, յառաջնում աւուր օգոստոսի առ զԴուին, եւ վաթսուն հազարս գերեաց եւ քանդեաց զաղօթանոցս նոցա ։

Յաւուրս յայսոսիկ ըմբռնեցաւ Ռնաղտըն տէրն Անտիոքայ 'ի զօրաց Նորատտնին հարիւր քսան ձիաւորով և հինգ հարիւր հետեւակօք՝ դարան գործեալ նմա. ուր բազում եցոյց քաջութիւնս, և թէ ոչ էր խընայեալ 'ի հետեւակսն, դիւրաւ էր փախուցեալ. բայց պրեցաւ սիրտ նորա և զտեղն էառ, և յետ բազում մարտի ետ զինքն 'ի ձեռս Թուրքացն, և կալեալ զնա ածին 'ի Հալապ, և եղեւ մեծ տրտմութիւն քըրիստոնէից և ուրախութիւն Թուրքաց[1]. վասն որոյ նոյն ժամայն արշաւեցին 'ի Լատիկն (Լաւոդիկէ) և առին եօթն հազար քըրիստոնեայս և վարեցին 'ի գերութիւն։ Եւ լուեալ զայս Թագաւորն Երուսաղէմի, եկն և արար սէր ընդ Հալպ, և դարձաւ գնալ յԵրուսաղէմ. և հասեալ յԱքայ վախճանեցաւ և ետ զԹագաւորութիւնն եղբօր իւրոյ Ամարեայ (Ամաւրեայ)[2] 'ի թուին Ասորւոց ՌՆՀԴ (1474) և Հայոցն ՈԱ (601)։ Եւ

(1) Գրիգոր երէց (Գ. 281) ասէ, եթէ յասպատակել Ռնաղտի զերկիրն Խարբերդու, ըմբռնի 'ի Մձմտինայ որ էր կառավարիչ Հալպայ, հանդերձ երեսուն ձիաւորօք։

(2) Պաղտուին Գ Թագաւորն Երուսաղէմի յետ գերութեան Ռնաղտի եկն յԱնտիոք ոչ այնչափ առ 'ի ազատել զնա 'ի գերութենէ, որչափ նա խորհէր 'ի ձեռն զբուամբ անել զիշխանութիւն Անտիոքայ. ուր և հիւանդացեալ ջերմամբ առ 'ի մահ, եհաս 'ի Պէրութ և անդ վախճանեցաւ։ Իսկ Ռնաղտ մնաց 'ի գերութեան մինչեւ ցամ Տեառն 1178։

տարաւ զեղբայր իւր յԵրուսաղէմ և Թաղեաց անդ. և սգացին զնա աւուրս բազումս. և Թագաւորեաց ամս ինն և տասն(1)։ Եւ Նորադինն եմուտ յերկիրն Երուսաղէմի և արար աւերումն, և առեալ աւար և գերի՝ դարձաւ։ Եւ ել զհետ նորա Եմերին (Ամաւրի) և փախոյց զնոսա և զբազումս կոտորեաց 'ի նոցանէ և դարձաւ։

Եւ 'ի սոյն ամի Գիլուճ ասլան հնազանդեաց զՏանուն եղբօրորդի իւր, որ ապստամբեալ էր 'ի Սեբաստիա Հայոց, և չոգաւ 'ի Կամաւի որ է Կամախ, և սպան զապստամբ ամիրայն որ կայր անդ։

Եւ յայսմ ամի Խարասլան գնաց 'ի յԱմիթ և ոչ կարաց առնուլ զնա, և դարձաւ 'ի Հարմնքէփ(2) և կոչեաց 'ի սէր զԳիլուճ ասլան. և նա կարծեաց թէ նենգէ զնա, և գնաց բարկութեամբ 'ի յերկիր նորա և առ զՄշկածակն (Զմշկածագ *) և գերեաց յերկրէ նորա հարիւր հազար անձինս և երկու եպիսկոպոս, զտէր Իգնատիոս և զտէր Դիոնէսիոս, և յետոյ զերծան կենդանիք։

Իսկ զկնի գերութեան Մնազտինն՝ կին նորա իշխէր Սնապաքոյ. և ապա եկն պարոն

(1) Ամաւրի Թագաւորեաց յամէ 1162—1173. ամս մետասան։

(2) Հարմնքէփ (Հիսն—Քէյֆա) է աւան յարեւելեան եզերս Տիգրիս և 'ի հարաւոյ Ամթայ։

Թորոս և եդ բրինձ Մնտաքայ զՊեմունդն զորդի Ասնադտին՝ ոչ կամելով մօրն ։

Ի ժամանակին յայնմիկ Նորադինն զօրաժողով լեալ չոգաւ և գերեաց զերկիրն Տըբաւպօլեաց (1). և պատահեցին նոցա երեք հարիւր ձիաւոր Փռանգ, և ոչ գիտացին զմիմեանս, բայց կարծեցին Թուրքն՝ թէ Թագաւորն Երուսաղէմի հասաւ, և թողին զորս առեալ էին և փախեան. և Փռանգն կոտորէր զնոսա մինչ 'ի տեղի ինչ ընդարձակ։ Եւ յորժամ տեսին Փռանգքն զբազմութիւն Թուրքացն և իմացան թէ Նորադինն է, զարհուրեցան և ելին 'ի բլուր մի, և իջան յերիվարացն և եդին ծունր և աղօթէին զվերջին աղօթսն՝ ակն ունելով մահու 'ի նըմին ժամու ։ Եւ տեսեալ Թուրքացն զաղօթելն նոցա, անկաւ երկիւղ Տեառն 'ի վերայ նոցա, և փախեան յերեսաց նոցա թողլով զծանրութիւնս իւրեանց ։ Եւ սրտապնդեալ քրիստոնեայքն զօրացան, պնդեա մըտեալ կոտորեցին յոյժ զբազմութիւն . . . Նացն զօրութեամբն Քրիստոսի, և Նորադինն զերծաւ սակաւուք ։

Եւ 'ի սոյն ամի գնաց Մլուհ ասլան առ Շէրան շահ եղբայր (2) սուլտանին և դարձաւ

(1) Տրապօլիս, այժմ կոչի Շամ — Տարապլուս, որ է ծովեզերեայ քաղաք Ասորիս։

(2) Այսպէս յօրինակիս, որ թուի առել Շահն շահ, որ

ուրախութեամբ. և հասեալ 'ի Պոնտըրա՝ որ է 'ի վերայ Ալիս գետոյ՝ մեռաւ (1)։ Եւ փութացուցեալ զօրացն թագաւորեցուցին զԻսմայիլն զերկրորդ որդին Ղլըճ աղանայ, և արարին միաբանութիւն ընդ Տանուն ամիրային Սեւաստիոյ։ Իսկ զորքն որ կային յԱպլըսթայն. թագաւորեցուցին զՍահմադին զորդին Սահմատին (Սահատին)։

Եւ 'ի նոյն տարւոջ թագաւորն Երուսաղէմի (Ամաւրի) չոգաւ յԵգիպտոս, և եղեն Եգիպտացիքն ընդ երկուս. կէսքն հնազանդեան Երուսաղէմի թագաւորին, և կէսքն հըպարտացեալ վստահացան 'ի Նորադինն, և առաքեցին առ նա։ Եւ Նորադինն առաքեաց զՇերքուհ (2) զօրագլուխն իւր զօրօք յօգնականութիւն նոցա, և դարձան ընդդէմ թագաւորին Երուսաղէմի և մատնեցան 'ի կորուստ 'ի բարկութենէն Աստուծոյ, և մաշեաց զնոսա 'ի սուր սուսերի թագաւորն Երուսաղէմի։ Եւ գնաց իջաւ 'ի վերայ Պըլպէս քաղաքի (3) ամիսս հինգ. և. լուաւ եթէ

էր եղբայր Խլիճ Առսլանայ Բ. որդւոյ Մասուտի, և եղբայր կնոջ Եաղուպ—արսլանայ։

(1) Ալիս գետ, այն է որ կոչի 'ի Տաճկաց Խըզըլ Ըրմախ. որ ելեալ 'ի փոքուն Ասիոյ՝ թափի 'ի սեաւ ծովն։

(2) Շերքուհ, այն է Շիրքու. էր եղբայր Էուպայ՝ հօր Սալահ—էտտինի։

(3) Պըլպէս է Պիլպիսս կամ Պիլուսիոն քաղաքն յեզր միջերկրեայ ծովուն, որ բաժանէ զԱսիա 'ի Լիբիոյ։

Նորադինն ամենայն բազմութեամբ Թուրքաց պաշարեալ է զՀերիմն, և եթող ըղՊլպէս և եկն. և նախ քան զգալն նորա առաւ Հերիմն յանգիտութենէ զօրաց Թըրւանգաց՝ որ ոչ լուան նմա իմաստնական խըրրատին զոր գրեաց առ նոսա՝ զի մի ելցեն ընդդէմ Թուրքաց մինչև 'ի գալն նորա. այլ ժողովեցան և գնացին յարուցին 'ի քաղաքէն զԹուրքն, և ինքեանք նստան 'ի բացեայ և անհոգացան։ Իսկ դարձան 'ի վերայ նոցա Թուրքքն, և կոտորեցին և առին զքաղաքն, և տարան գերի զքրիսձն Սնտաքու (Իոէմնոս Գ.) և զայլս բազումս 'ի գլխաւորացն(1)։

Ի թուին Աստուծոյ ՌՆԿԶ (1466) և Հայոցն ՈԳ (603), զօրացաւ սուլտանն Խլիճ ասլան և առ զԿատուլն և զԱպլսթայն և զՏարանդա 'ի ձեռն Տանուլին, և հալածեաց զորդիսն Դանիշմանայ։

Յայնմ ամի պարոն Թորոս առաքեաց ոսկի և արծաթ 'ի Հալպ՝ գնել զոմն յիշխանացն իւրոց որ կայր անդ 'ի ծառայութիւն. և նոքա առին զոսկին և չետուն զծառայն։ Իսկ Թորոս առաքեաց սպառնալիս Նորադնին, և ինքն ել յերկիրն Մարաշայ. և ժողովեցան 'ի 'ի վերայ նորա բազմութիւն Թուրքաց, և եհար զնոսա զօրութեամբ Տեառն, և կալաւ 'ի նոցանէ այր գլխաւոր և նշանաւոր. և

(1) Գրիգոր Երէց, Գ. 281։

զարհուրեցաւ Նորադինն յերեսաց նորա, և առաքեաց առ նա զոր խնդրէրն, և խնդրեաց խաղաղութիւն։ Եւ բացաւ բերանն Պռանգաց, և խնդրեցին զՄրինձն, և վաճառեաց նոցա ընդ հարիւր հազար դահեկանի։ Եւ ելեալ Մրինձն գնաց ՚ի Կոստանդինուպօլիս առ քորն իւր, և դարձաւ բազում գանձիւք։ Եւ եբեր անտի Յոյն պատրիարք Անտիոքու, որում անուն էր Աթանաս, և եմուծ ՚ի յԱնտաք։ Եւ տեսեալ զայս Պռանգ պատրիարքն Հերմի անուն, և ել ՚ի քաղաքէն և գնաց նստաւ ՚ի Խուսայրն, և բանադրեաց զքաղաքն։

Ի թուին Սորուոց ՌՆՀԶ (1477) և Հայոցն ՈԴ (604) Մանիլ Թագաւորն գնաց ՚ի վերայ Բուլղարաց և ըմբռնեցաւ յառնէ միոջէ, որ կամեցաւ տանել զնա առ Թագաւորն. և նա խոստացաւ նմա մեծամեծ խոստումն՝ թէ թողու զնա, և գայ զհետ նորա ՚ի Կոստանդինուպօլիս։ Լուաւ նմա այրն և դարձոյց և փախոյց զնա և ած զնա ՚ի Կոստանդինուպօլիս, և (Մանիլ) արար նմա զոր խոստացաւն։

Ի թուին Սորուոց ՌՆՀԸ (1478) և Հայոցն ՈԵ (605) Թագաւորն Երուսաղէմի գնաց դարձեալ յԵգիպտոս, և յաղթեաց զօրացն Նուրադինին՝ որ կային ՚ի Միսր, և ապա դարձաւ յԵրուսաղէմ։ Եւ լուաւ եթէ նեղել սկսան Տաճիկքն զքրիստոնեայսն, և գնաց երկրորդ

անդամ յԵգիպտոս . և ել ընդդէմ նորա Հե-
րաքաւ որ կայր 'ի Ամր , և պարձեալ յաղթե-
ցաւ և փախեաւ յերեսաց նորա ։ Եւ թա-
գաւորն Երուսաղէմի էառ զԱմր , և եղեւ
ուրախութիւն մեծ քրիստոնէից . և եղեն
հարկատուք Երուսաղէմի ամենայն Եգիպ-
տոս ։

Եւ յայսմ ամի մեռաւ ամիրայն Խարթ-
բերդոյ Ղարասլան , և առ զիշխանութիւնն
որդի նորա Նորադինն (1) ։

Ի թուին Ասորւոց ՌՆՀԹ (1479) և Հայոց
ՈԶ (606) , Անդրոնիկոս յոյն՝ սպանողն պարոն
Ստեփանէի , որ էր հօր եղբօր որդի Մանիլ
թագաւորին , փախեաւ 'ի Կիլիկիոյ և գնաց
Աքայ , զի անդ էր եղբօր իւրոյ դուստրն
(Թէոդորա) , որ էր լեալ կին հանգուցեալ
թագաւորին Երուսաղէմի . և եղեւ հօգա-
բարձու տան նորա ։ Եւ անկաւ անօրէնն այն
պոռնկութեամբ ընդ եղբօր դստեր իւրոյ
և յղացաւ , և յայտնեցաւ չարն և փախեան
և գնացին 'ի Խառան . և անդ ծնաւ նոցա
չար ծնունդն . և գարշեցան ազգն Թուրքաց
'ի քրիստոնէից յորժամ լուան զբանն զայն .
և անտի գնաց 'ի Մերտին , և ոչ ընկալան
զնա . և չոգաւ անտի 'ի Կարնոյ քաղաք , և

(1) Նուր-էտտին Մահմուտ որդի Զանքր-էտտին Ղարա-արսլանայ սուլտան Որդուքիա , որ տիրէր Ամթայ և Հիսն-քէյֆայ ։ մեռաւ յամի 1183 ։

առնոյր զօր ՚ի Թուրքաց և երթայր գերէր զքրիստոնեայսն և բերէր վաճառէր անօրինացն ։

Ի նոյն ամի մեռաւ մեծ իշխանաց իշխանն պարոն Թորոս, կեցեալ երեւելի փառօք և մեծաւ յաղթութեամբ. և մօտ ՚ի կատարած կենացն ըզգեցաւ զգեստ կրօնաւորութեան և մեծաւ յուսով կատարեցաւ ՚ի Քրիստոս. յիշատակ նորա օրհնութեամբ եղիցի ՚ի Քրիստոս յեկեղեցիս ուղղափառաց ։ Իսկ ետ զիշխանութիւնն որդւոյ իւրոյ յոյժ տղայոյ. և յանձնեաց զնա յիշխանսն ։ Իսկ եղբօր իւրոյ Մլեհին ոչ ինչ ետ՝ գիտելով զչարութիւն նորա, որ նախ քան զմահ նորա գնացեալ էր առ Նուրադինն և ետ նմա զԿիւրիս. և սպառեալ յոլով չարիս քրիստոնէից ձեռնասութեամբ անօրինացն, գողացաւ և զՎանաւէր(1) ՚ի Հայոց և գերէր յանխնայ զհաւատացեալս ՚ի Քրիստոս, զորս ոչ կամիմք ընդ գրով արկանել զաղէտսն ։

Յետ այսորիկ իշխանքն Հայոց և Թոմաս մանկակալ տղայոյն, առին ՚ի նմանէ (՚ի Մլեհէ) երդումն՝ զի մի՛ զրկեսցէ զեղբօրորդին իւր, և նոքա տացեն նմա զկէս երկրին և դարձցի անդրէն. և նա երդուաւ և դարձաւ յերկիրն, և ոչ եկաց յերդումն, այլ

(1) Վանաւէր, եթէ չիցէ անուն տեղւոյ, Թուի եթէ առիցէ վանաւրեր, այսինքն՝ վանօրեր, վանքեր ։

մեծամեծ չարեօք զօրացաւ և տիրեաց ամենայն երկրին (1)։

Ի Թուին Յունաց ՌՆՁ (1480) և Հայոց ՈԷ (607), բարձաւ Թագաւորութիւնն Տաճկաց յԵգիպտոսէ, որ սկսեալ էր յԱմարայ ՚ի Թուին Յունաց ՋԽԹ (949), և աստ բարձաւ. զի անկաւ ՚ի նոսա երկպառակութիւն, և եղեն երկու հերձուած։ Տաճիկքն որ յԵգիպտոս Ափտիքք կոչին՝ որք են Շէխիքք, որք ասեն թէ՝ չարն չէ յԱստուծոյ. և մի է Աստուած, և չարն բազում է, և սատանայ է պատճառ չարին։ Իսկ որք յԱթուր և ՚ի Միջագետս էին, ասէին թէ՝ չարն և մեղքն յԱստուծոյ է. և կոչին նոքա Սալարքք (2). և այսու պատճառաւ ատէին զմիմեանս։ Սալարքքն էին ընդ Փռանգաց և Շէխիքն ընդ Նորադնին, և յերկուց կողմանցն կային յԵգիպտոս։ Իսկ առաքեաց Նորադինն առ երկոսեան կողմանսն պատգամ և խոստացաւ նոցա ազատութիւն՝ եթէ ամենեքեան զնա

(1) Թուամաս անուն Թորոսի, որ խնամակալ էր մանկան Ռուբենի, պահեաց զնա առ ժամանակ մի յերկիւղէն Մլեհի որ կամէր գրաւել զբովանդակ իշխանութիւնն Կիլիկիոյ, որ և իշխանացաւ իսկ. այլ ոչ կացեալ ՚ի խաղաղութեան ընդ ազգին՝ սպանաւ յիշխանաց, և ածաւ փոխանակ նորա յաթոռն Ռուբէն Բ որդին Ստեփանեայ. յամի 1174։—Սմբատ. յեր. 100—102։ Վահրամ. յեր. 210։

(2) Սալարքքն են Սիւննիքն. ՚ի սոյն աղանդոյ էր և Նուրէտդին և ամենայն Միջագետք.

կամիցին, և ոչ տացեն հարկս Փռանգին ։ Եւ լուան նմա և արգելին պհարկն ՚ի Թագաւորէն Երուսաղէմի, և ամրացուցին զՊըլպէս և եդին երկոտասան հազար ձիաւոր. և հետևւակ երկու հարիւր հազար ։ Եւ լըւաւ Թագաւորն Երուսաղէմի և գնաց և առ զՊըլպէս, և կոտորեաց առ հասարակ բայց ՚ի քրիստոնէից ։

Եւ Շաւուրն իշխեցող ՚ի վերայ Մսրայ. այրեաց զքաղաքն (1), և առ զքաղմութիւնն և գնաց ամրացաւ ՚ի Խարհէ քաղաք (2) և առաքեաց առ Նորադինն զեղեալ իւրն ։ Եւ Թագաւորն Երուսաղեմի դարձաւ բազում աւարաւ ։ Եւ Նորադինն առաքեաց զՇերաքաւ զօրագլուխն հարիւր հազար հեծելովք յԵգիպտոս, որ ընդ երթալն սպան զիշխանն Տաճկաց (զՇաւեր). և յետ այնորիկ ըմբռնեաց զխալիփայն (Ադէտ լէտին իլլահ) և ըսպան զնա, և ջնջեաց զտունն նորա. և այսպէս բարձաւ իշխանութիւնն և խալիփայութիւնն Տաճկաց (3) յԵգիպտոսէ և տիրեցին

(1) Շաւուր կամ Շաւեր փոխարքայն Եգիպտոսի՝ որ դաշնակից էր Փռանգաց. տեսեալ զդրժումն նոցա այրմամբն Պըլպէսայ. զօրաժողով եղեւ. և առ ՚ի վառել զարիութիւն սրտից զօրացն՝ այրեաց զքաղաքն Փոստատ. և խալիփայն Եգիպտոսի առաքեաց առ Նուրէտտին խնդրել զձեռն օգնականութեան նորա ։ Տես ՚ի պատմութեան խաչակրաց Միշոյեայ. հա. Բ. Գլ. 6 ։

(2) Խարհէ քաղաք՝ է Գահիրէն. Եւնի Մըսր կոչեցեալ.

(3) Իմա՝ Արաբաց, որք էին ՚ի Փադիմեան ցեղէն ։

ազգն Թուրքաց յայնմ հետէ։ Եւ յետ երեք ամաց մեռաւ Շերաքաւ, և առ զիշխանութիւնն նորա Յուսուփն, որ է Սալահադինն՝ եղբօրորդին Շերաքուի. և էին սոքա ազգաւ Քուրդ ՚ի Դւնայ քաղաքէ Անծաց Հայոց, որդիք աղքատաց, և հայր սորա կոչէր Եուբ(1)։ Այս Եուբս որդի Սուլիմանայ և Շերաքաւ եղբայր իւր ելեալ ՚ի Դւնայ վասն աղքատութե եկին ՚ի Միջագետս և գնացին ՚ի Թկրիթ և առին զնոսա ՚ի բերդն ՚ի ծառայութիւն։ Այս Եուբըս ՚ի գիշերի միում տեսանէր, զի ելանէր ՚ի մարմնոյ նորա հուր և այրէր զբազում աշխարհս. և պատմեաց զերազն Ջհուդի միում. և (սա) մեկնեաց նմա թէ՝ ծնանի որդի որ տիրէ բազում աշխարհաց. և գրեաց զբանն, որ թէ ելցէ ՚ի գլուխ երազն, տացէ նմա և որդւոց նորա յամեն ամի հազար կարմիր այն որդին որ թագաւորէ։ Եւ ՚ի նմին ամի ծընաւ Յուսուփն. և յորժամ զարգացաւ՝ էառ զնա Շերաքաւ հօր եղբայրն իւր, և գընաց առ Նորադինն։ Եւ Շերաքաւ էր այր յառաջադէմ և իմաստուն, և արար զնա Նորադինն զօրապետ և առաքեաց յԵգիպտոս։ Եւ Սալահադինն՝ որ էր Յուսուփն, էր ճարտար առաջի Նորադնին, և էր հաճոյ յաչս նորա, և զկնի մահուան հօրեղբօրն ա-

(1) Սամուէլ։ — Վարդան. յեր. 161։ — Կիրակոս. յեր. 88։

առաքեաց զնա 'ի տեղի նորա, և Գ.հուտն այն եկն առ Բուբն և խնդրէր զոսկին, և ասէ ցնա Բուբն. «Եթէ երթիցուք առ Թագաւորեալն, և նա տացէ քեզ»։ Եւ չոգան երկոքեանն յԵգիպտոս. և խնդրեաց Յուսուփն, և եհարց ընդ Գ.հուտն՝ թէ քանի՞ ամք են երազոյն։ Եւ նա ունէր զգիր Թուականին, եհան և եցոյց նմա. և նա ետ անցեալ ամացն ամենայն ամի հազար դահեկան կարմիր։ Բայց հայր նորա յետ սակաւու ոտամբ ձիոյ հարեալ 'ի գլուխն՝ մեռաւ և թաղեցաւ պատուով։ Եւ Յուսուփն երթայր և զօրանայր և յառաջանայր օր ըստ օրէ։

Ի նմին ամի էառ Խլիճ ասլան զԿեսարիա և զԶամնդաւ յորդւոցն Դանիշմանայ։ Իսկ Յուսուփն հրաման եհան յերկիրն Եգիպտոսի՝ զի միշտ գօտէկապ երեւեսցին քրիստոնեայքն՝ նշանակ ծառայութեան, և մի հեծցեն 'ի ձի և 'ի ջորի։

Եւ յայսմ ամի միաւոր եկեղեցին ուղղափառաց առաւ 'ի Նեստորական եպիսկոպոսէն ('ի Բաղդատ). և եղեւ բարկութիւն Տեառն 'ի վերայ նորա, և նոյն ժամէն դարձաւ (եկեղեցին) առ տէարս իւրեանց։ Յաւուրս յայսմիկ պայծառանայր աստուածային կարգօք և շնորհօք վարդապետութեամբ սուրբն Յակոբ որ եղեւ եպիսկոպոս և կոչեցաւ Դիոնէսիոս։ Սա էր

որդի Սալիպի՝ առն արդարոյ։ Սա արար յոլով գիրս խրատուց և կրօնից․ և սա մեկնեաց զամենայն հին և նոր կտակարանս․ և լինէր նովաւ նշանք․ և սքանչելիք 'ի փառս Քրիստոսի Աստուծոյ մերոյ։

Ի թուին Ասորւոց ՌՆՂԱ (1481) և Հայոց ՈԸ (608), առաքեաց Թագաւորն Յունաց Մանիլն առ տէր Ներսէս կաթողիկոս Հայոց և առ իս Միխայլս պատրիարգս Ասորւոց, որ ժողովողս եմ գրոցս, վասն միաբանութե կրօնից և դաւանութեան՝ նախ 'ի ձեռն Քրիստափորի և երկիցս անգամ 'ի ձեռն Թէօրիանեայ։ Եւ գրեաց առ մեզ տէր Ներսէս, թէ խնդրեալ են 'ի մէնջ երկու բնութիւն ասել Քրիստոսի, և զչորրորդ ժողովն մեծարել, և զԾնունդն 'ի գեկտեմբերի ԻԵ առնել, և խմոր դնել 'ի նշխարն և ջուր խառնել 'ի բաժակն․ և 'ի սուրբ Աստուածն խաչեցար չասել։ Եւ մեք գրեցաք առ նա, թէ «Նոյդ կրօնքդ 'ի մերս մերձ է․ բայց ես ոչ կամիմ զճշմարտութիւն կրօնից հարցն մերոց փոխել․ զի թէ մեծ և կամ փոքր(1) և կամ դաւանութիւն փոխէք, երեւի թէ թերի էիք մինչեւ ցայժմ և արդ լցայք և դեռ կատարեալք եղերուք՝ ակն առեալ մարդոյ․ այլ մեք կատարեալ տեսանեմք զձեզ առաքելա-

(1) Ի բնագրին գոյր տառս որ ոչ բառս․ զոր ոչ կարացաք իմանալ։

կան հիմամբ, և Թերի ինչ ոչ գոյ 'ի ձեռս։ Իսկ առաքեցաք առ Նա զմի յաշակերտաց մերոց որ վարժ էր արտաքին գրոց, զի ընդ մեր պատասխանի արասցէ. զի լուաք թէ արտաքնովքն խրատեալ է այրն որ եկեալ է 'ի Թագաւորէն։ Իսկ գնացեալ աշակերտին մերոյ, մեծ Կաթողիկոսն Հայոց հրամայեաց խօսել ընդ Թէոփիանէի վասն բնութեանց առաջի իւր. և եհարց մեր աշակերտն ընդ Յոյնն թէ՝ "Ի քանիս բաժանի բնութիւնն։" Իսկ նա ասէ՝ "յերկուս". և ասէ՝ "յո՞րս." և Թէոփիանէ ասէ. "յանձնաւորութիւն և յանանձնաւորութիւն։" Իսկ նա ասէ. "Այդ երկու բնութիւնդ որ դուք ասէք, ո՞ր է, անձնաւո՞րն թէ անանձնաւորն։" Իսկ կարկեցաւ զբազում ժամս տարակուսեալ, և ապա ասէ. "Զի՞նչ կայ մեր և արտաքնոցն կարգի և հարցափորձութեանց. թող զայդ։" Իսկ Կաթողիկոսն պարսաւեաց զնա և ասէ. "Այդ ընդէ՞ր վազվազես, երկուցեալ 'ի կապանաց երկոցունց. եթէ ախոյեան եկեալ ես, զիա՞րդ խորտակիս նմանապէս յերկոցունցդ՝ Աստուածաշունչ գրոց և յարտաքնոցն՝ որպէս զերկչոտս։" Իսկ այսպէս խօսելով զբազում աւուրս՝ յամօթ լինէր անուանեալ իմաստասէրն Թէոփիանէ (1)։

(1) Թէոփիանեայ գիրք որ զայն խնդրոյ, գլխովին ընդհակառակն պատմէ, զյաղթանակել իւր 'ի բանս և զպար-

Գրեալ էր և առ մեզ Մանիլն և խնդրեալ 'ի մէնջ դաւանութիւն. և մեք գրեցաք և առաքեցաք, և հաւանեալ էին, և գրեցին առ մեզ վերստին զովութիւն և գոհութիւն բանիցն մերոց: Նու զկնի աղաչանք՝ զի գնասցուք առ նոսա, և 'ի բերանոյ մեր լուիցեն. և մեք ոչ առաք յանձն զգնալն, այլ գրեցաք՝ եթէ «Մեր դաւանութիւն այդ է, մի բնութեամբ և կամօք և ներգործութեամբ փառաւորել զՔրիստոս ըստ Առաքելոց և Մարգարէից և ուղղափառաց հարցն մերոց, և յայդր վերայ հաստատեալ եմք անշարժելի. և որ ոք այդու. ընդ մեզ զխաղաղութիւն կալցի և սիրէ զմեզ, կալցուք և մեք և սիրեսցուք. և եթէ վասն այդորիկ ատեն զմեզ և պատերազմին, մեք ընդ Աստուծոյ և ընդ հարցն մերոց գնասցուք. և մատուսցուք զպարանոցս մեր 'ի վկայական հանդէս նախնեացն մերոց:» Նոյնպէս և Կաթողիկոսն մեծ ըստ իւրում իմաստութեանն արար պատասխանի. զնորայն լուաք մեք ոչ իմացաք զպատասխանին, բայց զայս գիտացաք՝ զի խափանեաց տէր վճռն Թագաւորին զոր առաջի եդեալ էր մեզ Քաղկեդոնիկ լինել, զի անկաւ Մանիլէն այլ մեծագոյն հոգք 'ի Թուրքաց, այլ

տութիւն սրբոյն Ներսեսի: Տես 'ի գիրս նորին՝ Թարգմանեալ 'ի Կղեմէնտէ Գալանոսէ. Ի ձեռագիրս Գրատան սուրբ Յակոբայ. համար 858. Գլ. Ժ.

և մեռաւ մեծն Ներսէս կաթողիկոսն Հայոց առաքինութեամբ և պարկեշտ վարուք զարդարեալն, և եկաց մնաց սահման հարցըն մերոց հաստատուն հիմամբ (1)։

Այլ և 'ի նոյն թուին Ասորւոց ՌՆՁԱ (1481) և Հայոց ՈԸ (608). խնդրեաց թագաւորն Երուսաղէմի օգնութիւն 'ի թագաւորէն Յունաց որ էր աներ նորա, և առաքեաց զօր բազում ընդ ծով և գնացին 'ի վերայ Եգիպտոսի։ Բայց յորժամ հասին յԵգիպտոս Յոյնք, ըստ նենգաւոր բարուց իւրեանց նենգեցին թագաւորին Երուսաղէմի, և կամէին ինքեանց առնուլ զԵգիպտոս։ Եւ իմացուցին Եգիպտացիքն թագաւորին զխամբս իւրեանց և զՅունացն, և տուին նմա

(1) Խնդիրն միաւորութեան որ ընդ մէջ երկուց եկեղեցեաց Հայոց և Յունաց 'ի ժամանակս Մանուէլի կայսեր և. սրբոյն Ներսէսի Շնորհալւոյ, յայտնի է ընդհանուր ազգիս 'ի գրոց նորին իսկ սրբոյ, յորում ոչ ինչ յիշատակի և զԱսորւոց մտանել 'ի նոյն խնդիր։ Իսկ Ասեմանն պատմիչ ասէ՝ եթէ ըստ խնդրոյ Շնորհալւոյն առաքեցաւ 'ի Հռոմկլայ Յովհաննէս եպիսկոպոս ասորի, որոյ տեսեալ զհեզութիւն և զկակղութիւն բանից սրբոյ կաթողիկոսին Հայոց, համարձակեալ զնա իբր հաւանեալ ընդ բանս Թէորիանեայ, մեղադրեաց զնա, և ոչ եւս կացեալ անդ՝ դարձաւ 'ի տեղի իւր։ Զկնի մահուան Շնորհալւոյն, յորժամ գումարեցաւ ժողովն ազգային 'ի Հռոմկլայ, առաքեցան և 'ի Միխայէլ պատրիարքէ Ասորւոցն եկեղեցականք ոմանք ներկայ գտանել 'ի նմին։ -Կիրակոս, յեր. 67. որ և 'ի մէջ բերէ զառաջին թուղթն գրեալ առ Ալէքս փեսայ Մանուէլի։—Տես և 'ի կարգս թղթոց միաբանութեան, յԸնդհանրականն, յեր. 180։

ոսկի և պատանդս, զի տացեն նմա հարկս. զի տակաւին չէր բուռական Յունացին կռուիլ ընդ Թագաւորին Նուրադդինի: Նա հաւանեալ Թագաւորին, և առեալ զոսկին և զպատանդսն դարձաւ, Թողեալ զՅոյնսն անդէն, որ և ոչ իշխեցին յամել անդէն, այլ առեալ զնաւսն դարձան. և կալաւ զնոսա ձմեռն և բազումք կորեան 'ի ծովուն:

Ի նոյն Թուին եղև շարժ ահագին յամառնային յեղանակին 'ի յունիսի ԻԹ, 'ի տօնի սուրբ առաքելոցն Պետրոսի և Պաւղոսի, յերրորդ ժամուն՝ 'ի ժամ պատարագին շարժէր երկիր 'ի հիմանէ, և Թուէր Թէ 'ի վեր է 'ի բարձրանալ և 'ի վայր է 'ի խոնարհել. և եռայր երկիրս մինչև ցինն ժամ աւուրն: Նաէաք մեք 'ի վանք Մաւր Հանանեայ (Մ. Անանիայի), և անկաք 'ի վերայ երեսաց մերոց, և հրամայեցաք զի յեկեղեցւոյն մի ոք ելցէ մինչ 'ի դադարել բարկուԹեանն. և զճշմարիտն արժան է ասել, դադարման ակն ոչ ունէաք, զի ամենայն ոք կարծէր եԹէ հասեալ է վախճան աշխարհիս (1): Իսկ 'ի յինն ժամ աւուրն յիշեաց Աստուած զա-

(1) Յայսմ ամի (1170) ոչ միայն զԱնտիոք, այլ և զՏիւրոս, զՏրապոլիս զԷմեսս և զԲերիա քաղաքաց շարժն շարաշար աւերմամբք շինուածոց և հաստահիմն բերդից, յորս և բազումք կորուսին զկեանս իւրեանց. և երկիւղն դատաստանին Աստուծոյ, ասէ Գուլիէլմոս Տիւրացի, դադարեցուցանէր զպատերազմունս որ 'ի մէջ քրիստոնէից և իսլամաց

բարչական խնամոն և հաստատեցաւ երկիր, և հոգի կլաք և ուշաբերեցաք. և էր տեսանել զամենայն ալն յարտասուս և ամենայն լեզու քերէր գոհութիւն Աստուծոյ։ Այս եկն եհաս համբաւ 'ի Հալպայ՝ թէ փլաւ պարիսպն և բերդն և պատառատուածք երկրին կլաւ զքաղաղումն, և սեւաւ ջրով լցաւ քաղաքըն, և մեռան 'ի նմա անհամար բազմութիւնք, և փլան ամենայն ձեռագործ շինուածք, և մնաց մի եկեղեցի։ Եւ խնդրեաց արդար դատաստանն Աստուծոյ զվրէժ արեան քրիստոնէից, զի իբրեւ զանասուն մաճառեալ լինէին 'ի նմա ազգք քրիստոնէից՝ գինք արեանն Աստուծոյ. Թողում աստ զգործն Սոդոմայ և զանօրէնութիւն ջրակորոյս հսկայիցն մինչև յուսահատէին բաղումք 'ի դատաստանէն Աստուծոյ տեսանելով ըզչարիս նոցա։ Նոյնպէս և յԱնտաք, զի բազում՝ շինուածք փլան և եկեղեցին Յունաց փլաւ 'ի վերայ պատարագողացն. փլաւ և սուրբ Գէորգ (եկեղեցին). և Երզնձն զգեցաւ քուրձ և ամենայն բնակիչք քաղաքին գնացին անկեան առաջի Պատրիարքին իւրեանց՝ զի մտցէ 'ի քաղաքն։ Եւ նա ասէ. «Մինչ ոչ եկանէ չպատրիարքն Յունաց, ես ոչ մտանեմ 'ի նա.» և յորժամ գնացին հանել զնա, տեսին զի 'ի փլմանէ եկեղեցւոյն խոցեալ էր և մերձ էր 'ի մահ. և հրամայեաց

*(պատրիարքն Լատինաց) բառնալ և ընկենուլ յաթոռոյս, և արարին այնպէս. և մեռաւ արտաքոյ քաղաքին. և ապա եմուտ պատրիարքն Ֆռանգաց Հռոմ*[1] *'ի քաղաքն: Եւ սկսան շինել զփլածսն: Նոյնպէս և յամենայն երկիր բազում աւեր և կործանումն եղեւ բերդից. եկեղեցեաց և քաղաքաց և գեղից 'ի Նոր և յանլուր և յօտար շարժմանէն. բայց ողորմութեամբն Քրիստոսի յԱնտաք և յամենայն ծովեզերեայն մնաց եկեղեցիքն ուղղափառաց՝ ոչ վասն բարի գործոցն մերոց, այլ վասն սուրբ հարցն աղօթից և նահատակութեան նոցա:*

*Ի թուին Սորւոց* ՌՆՁԲ (1482) *և Հայոցըն* ՈԹ (609), *մեռաւ Խուդբադին աթաբակըն Մօսլոյ և ամենայն Ալթուբացւոց. և լուաւ Նորադինն եղբայր նորա և չոգաւ 'ի Մծբին և առ զնա առանց պատերազմի, նոյնպէս և զՍնճարն. և ուրախացան Փախրքըն*[2] *յոյժ, զի սիրէին զնա որպէս զօրհնապահ, զի գինի ոչ ըմպէր, և ընդ սահման աղօթից նոցա ոչ անցանէր. և ասէին զնա մարգարէ: Եւ նա 'ի պատճառս ուրախու-*

(1) Այն է Եմրի կամ Ամաւրի պատրիարք, զորոյ և վերագոյն յիշատակեաց զատելութիւնն զոր ունէր ընդդէմ պատրիարքին Յունաց:

(2) Փախրքն են ֆախիր կոչեցեալ ազգն կրօնաւորաց Տաճկաց:

թեան ազգին Թուրքաց և Տաճկաց առեալք զքրիստոնեայսն, և աւերել տայր զնորաշէն եկեղեցիսն որ 'ի ժամանակս նորա շինեալ լինէր, մինչ մեռաւ խալիփայն Մոթինջն (1) և առ զպատիւն Մուդադին որդի նորա. և սա արգելեաց 'ի քակելոյ զեկեղեցիսն այսու պատճառաւ: Բանզի յորժամ եղեւ նոր խալիփայն, գրեաց առ նա Նորադինն թէ "Լցաւ սահման փեղամբարին Մահմետի, որ գրեաց թէ՝ զհինգ հարիւր ամ ոչ կացցէ Տէր զՄիջուամն քրիստոնէից. և արդ հաստարեալ է թիւ սահմանին այն, պարտ է մեզ պատուհասել բառնալ զքրիստոնէութիւնն: Եւ յԱստուծոյ ազդմամբն գրեաց 'ի թղթին թէ՝ "Հրամայես ինձ գալ առ քեզ որ խորհինք վասն այսորիկ": Իսկ նա յորժամ տեսաւ զթուղթն և հասկացաւ զբանն, թուեցաւ նմա թէ նենգութեամբ գայ առ նա՝ զի սպանցէ զնա և ինքն առցէ զպատիւ խալիփայութեանն. որպէս երբեմն զԵգիպտոսի խալիփայութիւնն հրամանաւ իւրով. վասն այսորիկ գրեաց առ նա խստագոյն պատասխանի, և պարաւեաց զնա. և գրեաց և առաքեաց յամենայն աշխարհ՝ զի շինեսցին եկեղեցիք և համարձակ լիցին քրիստոնեայք

(1) Մոսթէնճէտ Եուսուֆ որդի Մոքթաֆիայ որ տիրեաց ամս 24, 'և յաջորդեաց որդի նորա Մուսդադի Հասան յամի Փրկչին 1169—1170:

յամենայն ուրեք ։ Եւ զայս արար հակառակ Նորադնին . և սպան զՍեղէրն [1] որ կամակից էր Նորադնին, և եհան ՚ի բանտէ զորդիսն Թումայի և ետ նոցա զեկեղեցին իւրեանց զոր առեալ էր զրպարտութեամբ ։

Իսկ Նորադինն գնաց պաշարեաց զՄօսլ, ուր կային հինգ որդիք եղբօրն նորա, և ետես որ յոլով ժամանակի պէտք էին առնուլ ըզ քաղաքն, խօսեցաւ ընդ նոսա ՚ի խաղաղութիւն, և երդուաւ որ թողու զքաղաքն և զերկիրն եղբօրորդեացն՝ եթէ բացցեն նմա զքաղաքն և մտցէ ՚ի նա խաղաղութեամբ ։ Եւ լուան նմա և ածին զնա ՚ի քաղաքն . և ել ՚ի նկայն և էառ զամենայն գանձսն որ կային անդ, և եդ զիւր մարդիկն ՚ի նկայն՝ զի յանուն նորա պահեսցեն . և զաշխարհն և զքաղաքն բաժանեաց եղբօրորդեացն, բայց զամենայն ամուրսն արար ընդ ձեռամբ իւրով և գնաց ։ Եւ յայնմ հետէ սկսաւ ծանրել ըզ հարկ քրիստոնէից, և ետ հրաման մի երկայնել քրիստոնէից զհերս իւրեանց զի ճանաչաւորք լիցին . նոյնպէս հրամայեաց Ջհուտ ազգին կարմիր կարկատան կարել ՚ի փակեղն կամ ՚ի յուսն զի ճանաչիցին ։

Յայսմ ժամանակի գնաց Եմրի (Ամաւրի) թագաւորն Երուսաղէմի ՚ի Կոստանդինու-

(1) Սեղէրն առանց երկբայութեան նշանակէ Վեղէր, որպէս ունի օրինակ մի՝ Վաղէր ։

պօլիս, և բազում գանձիւք դարձաւ յԵրուսաղէմ։

Ի թուին Ասորւոց ՌՆՁԳ (1483) և Հայոց ՈԺ (610), Խլիճ ասլան եկն ի Մելտենի և ոչ կարաց առնուլ զնա. և առեալ գերի անձինս երկոտասան հազար և դարձաւ անդրէն։ Իսկ Նորադինն ժողովեալ զամենայն ամիրայսն և զԽսմայիլն Դանիշմանայ և զՇահն շահ եղբայր Խլիճ ասլանայ և գնացին ի Կեսարիա. և սուլտանն ոչ կամեցաւ ելանել ընդդէմ նոցա, և առաքեցին առ նա զի տացէ յաշխարհէն բաժին եղբօր իւրոյ։ Եւ որդիք Շահն շահին կային առ նմա հինգ. և նա էառ զմի յորդւոց նորա՝ եղեն և խորովեաց և առաքեաց առ հայրն և ասաց. «Թէ ոչ երթաս այտի, զչորս որդին դոյնպէս առնեմ։» Եւ յորժամ տեսին զայն՝ երկեան, և արարեալ խաղաղութիւն՝ դարձան։ Եւ կալաւ ցաւ զՆորադինն և հիւանդացաւ, և անկաւ շփոթ մեծ, և բազում գործակալք յարեան ի վերայ իրերաց և կոտորեցին զմիմեանս. և եղեւ յոլով վնաս և պակասութիւն քրիստոնէից վասն շփոթոյ իրացն այնոցիկ։

Ի թուին Ասորւոց ՌՆՁԴ (1484) և Հայոցն ՈԺԱ (611), ի Խաչին ամիսն եղեւ պաղ և ձիւն սաստիկ, նոր ի լսոյ և ի տեսանելոյ. զի քսան և եւթն թիզ չափեցին զթանձրութիւնն. որ և ի Հնդիկս, որ բնաւ ձիւն ոչ

դոյ, տեսին թէ չորեքտասան թիզ չափեցին
զձիւնն. և պաղեցան աղբիւրք, և ձկունք
ծովու մեռանէին, և ջնջեցան թռչունք և
երէք 'ի ծմակ տեղիսն, և ընտանի անասնոց
եղեւ մեռանիլ 'ի չգոյէ կերակրոյ, և այրե-
ցաւ ամենայն բոյս երման: Եւ 'ի գալ ա-
միս եղեւ սով մեծ և կարօտութիւն յոյժ,
մինչ իշխանքն Կապադովկացւոց սպանեին զԻս-
մայիլն զամիրայն Սեւաստոյ, և առին զամե-
նայն ընտանիս նորա, և կոտորեցին անձինս
հինգ հարիւր, և առին զամբարեալ ցորեանն
և զամենայն ստացուածս նորա և այրեցան
'ի նեղութենէ սովոյն. և ծածկեցաւ գործ ըս-
պանման նոցա զչորս ամիս վասն ձմեռնային
յեղանակին. և 'ի գալ գարնանն լուան ամե-
նայն ազգքն մերձակայ, և չար թուեաց ն̄ և
տարակուսեցոյց լուրն զբազումս: Եւ ոմանք
'ի բնակչաց աշխարհին առաքեցին 'ի Դա-
մասկոս առ Տանուն ամիրայն Կեսարիոյ, զոր
հալածեալ էր Խլիճ ասլան բազում ազգակա-
նօք, և կոչեցին զնա. և եկն և էառ զիշխա-
նութիւն Սեբաստիոյ, և էառ 'ի բազմաց ըդ-
վրէժ ազգականաց իւրոց վասն անողորմ ըս-
պանման նոցա: Եւ լուաւ Խլիճ ասլան և
եկն 'ի վերայ Տանունին 'ի Սեբաստիա. և
Տանուն յուսացաւ 'ի Նուրադինն՝ կանգնեալ
'ի հիւանդութենէ իւրմէ որպէս յարուցեալ
'ի մեռելոց. և անկաւ ահ նորա դարձեալ 'ի

վերայ աշխարհի, և ժողովեալ բազմութիւն զօրաց գնաց ՚ի Սեբաստիա. և զարհուրեալ սուլտանին եթող զքաղաքն և գնաց։ Իսկ Նորադինն դարձաւ և էառ զՍարաշ և զՊեհեսնի և զԲեսուն։ Իսկ լուեալ զայս Կիլիճ ասլան, գայ բազմութեամբ յոյժ ՚ի վերայ Նորադնին. և Նորադինն գնաց ընդ առաջ նորա և նստաւ ՚ի վերայ Ջահնայ (1)։ Իսկ եկն սուլտանն և նստաւ ՚ի միւս կողմանն մերձ առ նմա. և երկեան ՚ի միմեանց և ոչ պատերազմեցան զբազում աւուրս։ Իսկ անկաւ սով ՚ի բանակն երկոցունց և բազումք մեռան ՚ի սովոյ. և յետ բազում աւուրց անցելոց եթող սուլտանն զՏանուտն կալ ՚ի հընազանդութիւն Նորադնին, և արարին սէր և դարձան ՚ի տեղիս իւրեանց։

Սակայն փոքր ինչ վասն աղանդոյ միոյ որ երեւեցաւ յաւուրս մեր նախ քան զմահուան Կաթողիկոսին Ներսեսի, որ եղեւ այսպէս։ Եղբարք երկու, անուն միումն Յովսէփ և միւսոյն Գէորգ, և երէց մի Կարապետ անուն, գնացին ՚ի կողմանց Միջագետաց առ սուրբն Ներսէս, և մեղադրեցան ՚ի նմանէ վասն անկարգութեան համբաւոյ նոցա. և եկին ՚ի նմանէ տրտմութեամբ, և ապստամբեցին և գնացին յՈւռհա, և սկսան բամբասել զտէր Ներսէս և հայհոյել՝ եթէ

(1) Ջահանէ Ջիհան գետ առ սահմանօք Կիլիկիոյ։

վաղանգն Սիմոնի կախարդի տնի, և առնէ արծաթով ձեռնադրութիւն. և յիւրեանց ե-ղեն Բաղկեդոնիկք, և խաբեցին չորս հարիւր տուն յԱսորւոց զկնի իւրեանց և անուանե-ցին զնոսա Յուսիկեանք։ Եւ յաւուր հայրա-պետն Պետրոսի, և գրեաց առ իշխան քաղա-քին զի հալածեսցէ զնոսա. և իշխանն Ասո-րւոց եհան զնոսա անտի, և նոքա գնացին 'ի Հալպ առ Նորադինն, և առին անտի հա-մարձակութիւն և դարձան։ Եւ ես կոչեցի զնոսա առ իս և մեղադրեցի, և հաստատեցի զնոսա յուղղափառութի, և առաքեցի զնոսա իմ պատուաւոր արամբք առ տէր Պետրոս, և աղաչեցի հաշտել ընդ նոսա։ Եւ յորժամ գնացին նոքա, վախճանեալ էր տէր Պետրոս 'ի կենաց աստի և հասեալ 'ի Քրիստոս 'ի թըլ-ւին Յունաց ՌՆՁԵ (1485) և Հայոցն ՈԺԲ (612), յԱստուածածնին ամսեանն 'ի յութ. յաւուր հինգ շաբաթւոջ. Եւ Յուսիկն այն անօրէն դարձաւ և գնաց յԱնտաք և մկըր-տեցաւ և դարձեալ եղեւ Բաղկեդոնիկ (1)։

(1) Առ գլխաւորն այսր աղանդոյ թուին ակնարկել բանք թղթոց սրբոյն Ներսեսի, մակագրեալ "առ ժպիրհ ոմն"։ Եւ զի ասէ Միխայէլ՝ եթէ բամբասէին զսորին արծաթով առնել զձեռնադրութիւնն ըստ օրինակի Սիմոնի կախարդի, յայտնեն բանք երրորդ թղթոյ սրբոյն, յորում 'ի մէջ բերէ զբանս յանդուգն ժպրհին որ ասէր եթէ "կաշառն զոր առ-նուս կուրացուցանէ զաչս քո". և վաճառես զաթոռն Աս-տուծոյ այնոցիկ՝ որ բերեն չարեօք լցեալ են"։ Տես 'ի գիրս

Իսկ տէր Ներսէսի կայր երկու եղբօր որդի եպիսկոպոսունք, և աւագ եղբօր որդին չէր մերձ մահու հօրեղբօրն, և կրսերն առեալ զմատանին նորա՝ քարոզեցաւ Կաթողիկոս։ Եւ յորժամ լուաւ զայն աւագն, եկն ՚ի կոյն կաթողիկոսութեան, և ոչ թողին ըզնա ՚ի ներքս. և նա գնաց դարձաւ առ փեսայն իւր առ պարոն Օշինն. և Օշինն էառ զնա և տարաւ առ Նորադինն, և նորին օգնութեամբն՝ եմոյծ զնա ՚ի Հռոմկլայն. և նըստաւ յաթոռ հայրապետութեան հօրեղբօրն Գրիգոր անուն։ Եւ ՚ի յաւուր ձեռնադրութեան իւրոյ կոչեաց զմեր եպիսկոպոսունսն զտէր Գրիգորէս Բեմնայ եպիսկոպոս. և զտէր Վասիլիոս Մաքնայ եպիսկոպոս, և պատուեաց զնոսա, և կացոյց առընթեր ձեռնադրութեն իւրոյ։ Եւ յորժամ ձեռնադրեցաւ առաքեաց առ մեզ երկու եպիսկոպոս ըստ հին սահմանին մերոյ զոր ունիմք ՚ի միջի մերում, որ յորժամ Յունաց ուղղափառ պատրիարք ձեռնադրի, առաքէ առ Հայոց Հայրապետն զդաւանութիւնն իւր. նոյնպէս և Հայոց Կաթողիկոս լեալ, առաքէ առ պատրիարքն Յունաց զդաւանութիւնն իւր։ Եւ ես ուրախ եղէ և խնդացի, զի այր գովելի և գիտնական էր. բայց ըստ կանոնաց սակաւ

Ընդհանրական Թղթոց, եր. 211, տպեալ յԵրուսաղէմ, յամի 1871.

մի մեղադրեցի, թէ յորժամ անուանեալ էր Հայրապետ մի, պարտ էր մնալ 'ի նոյնն։ Այլ և աղաչեցի զնա՝ թէ բարձ զկեղծ անուն արծաթատուութեան յազգէդ երեւելի և հրաչակաւոր, և ամենեւին անխատուն և պարկեշտ՝ բայց 'ի միոջ։ Նա յանձն էառ և խոստացաւ առնել։ Այլ և աղաչեցի վասն անուանեալ կաթողիկոսին որ յառաջ քան զնա ազգականին իւրոյ, զի պատուով կալցէ զնա 'ի տեղւոջ ուրեք, զի բազմութեան ազգիդ պարտ է երից և չորից Հայրապետաց։ Նա վայն եւս խոստացաւ և կատարեաց՝ առաքելով զնա 'ի Լամբռունն՝ յոլով մասն վիճակի հաստատեցեալ 'ի նա, որում անուն էր Գրիգորէս (1)։

(1) Ոչ ոք 'ի մերոց պատմագրաց՝ յիշատակէ երկուց կաթողիկոսաց միանգամայն գրաւել զաթոռն զկնի Շնորհալւոյն. քանզի ասէ Միխայէլ, եթէ Գրիգոր Ապիրատ (որդի Շահանայ եղբօր Շնորհալւոյն) կոչեցաւ յաթոռն. կամ լաւ ևս՝ ինքնիշխանիր եղեւ, և Գրիգոր Տղայ (որդի Վասլի միւս եղբօր Շնորհալւոյն) պաշտպանութեամբ և հրամանաւ Նուր—Էտտինի ձեռնադրեցաւ կաթողիկոս 'ի Հռոմկլայ. իսկ Վարդան ասէ (յեր. 169), Գրիգոր Տղայ առնու զգլուխ կաթողիկոսութեան հաճութեամբ ազգին, և Գրիգորէս Ապիրատն կոչեցեալ՝ չոգաւ 'ի Լամբրոն և խնամէր զՏարսոնի վիճակն, որ և յամի 1193 նստաւ յաթոռն զկնի Գրիգորի Ե Գահավիժի։ Նոյնպէս և Վահրամ դնէ նախ զԳրիգոր Տղայ, յետոյ զԳրիգորիս Գահավէժն, ապա զԳրիգոր Զ զԱպիրատն, զոր եւս ձեռնադրել Լեւոն Բ յետ տիրելոյ Հռոմկլայի։ Սմբատ ասէ եթէ Ներսէս Շնորհալի պատուիրեալ էր զԳրիգոր Տղայն նստուցանել յետ մահուան իւ-

Ի նոյն Թուականին ՌՆՁԵ (1485) և Հայո–ցըն ՈԺԲ (612)․ Նորադինն հրաման ետ զօր ժողովել յամենայն աշխարհաց յԵմանացւոց (Եէմէն) և յԵգիպտոսացւոց և յԱթուրացւոց և 'ի Կապադովկացւոց և 'ի Հայոց և 'ի Մի–ջագետաց․ զի բարձցէ զԹագաւորութիւնն որ յԵրուսաղէմ զՖռանգացն, և զԿղիծ ա–րանայ զաւրութիւնն։ Եւ ինքն հպար–տացեալ էր․ զբազում ժամս կարդայր և աղօթէր լռութեամբ․ և ոչ տայր ըմպել գի–նի 'ի բանակին իւր, և ոչ ձայն երգոց և խաղուց և կաքաւչաց լսելի լինէր 'ի զօրս նորա․ և վասն այսպիսի առաքինութեան ա–կըն ունէր թէ Աստուած խօսի ընդ նմա․ զի ասէին խաբեբայք Շէխեր, թէ "Տեսաք ըզ–քեզ զի ելանէիր յերկինս"․ և այլք թէ՝ "Տեսաք որ հրեշտակ խօսէր ընդ քեզ"․ Եւ նա հաւատայր նոցա։ Եւ մինչ 'ի յայսպիսի միտս հպարտացեալ էր և կայր 'ի Դամասկոս Նորադինն, և ժողովէին յամենայն կողմանց հեծելոց բազմութեանց առ նա՝ որոց ոչ էր թիւ, յանկարծակի հարաւ 'ի Տեառնէ և մեռաւ՝ թագաւորեալ ամս քսանեւութ։ Եւ առ զԹագաւորութիւնն Մելիք Սալեհն որդի նորա, և ցրուեցան զօրքն յիւրաքանչիւր տեղիս։ Եւ թագաւորն Երուսաղէմի (Ա–

քոյ։ Տես և 'ի Ներբողեանն Ներսէսի Լամբրոնացւոյ 'ի վերայ Շնորհալւոյն։

մաւրի) եկն 'ի վերայ Դամասկոսի և գերեաց զաշխարհն, և խոստացան Դամասկացիքն տալ նմա հարկս իբրեւ զառաջինն, և նա ոչ կամէր դառնալ նախ քան զառնուլ քաղաքին. բայց մեղքն քրիստոնէից ոչ ետ թոյլ, զի կալաւ զնա ցաւ մահու, և առեալ հարկ 'ի Դամասկոսէ՝ դարձաւ 'ի Մ՛քայ և անդ մեռաւ՝ թագաւորեալ ամս երկոտասան, զկնի քառասուն աւուր մահուան Նորադնին. և եղեւ տրտմութիւն ամենայն քրիստոնէից մահն նորա։ Եւ թագաւորեաց որդի նորա Պաղտինն ամաց հնգետասանից, և առաքեաց արար սէր ընդ որդի Նորադնին։ Եւ յորժամ լուաւ Խլիճ ասլան զմահն Նորադնին, եկն 'ի Սեբաստիա և առ զնա և զԿոմանոս և զՆիկեսարն, և ջնջեաց զմնացեալ ազգն Դանիշմանայ, և բարձաւ իշխանութիւն տանն Դանիշմանայ՝ որ սկսաւ 'ի թուին Ասորւոց ՌՅԿԶ (1366). և աստ վախճան էառ՝ տեւեալ ամս հարիւր քսան և երկու. և կացին վեց գլխաւորք զկնի միմեանց։ Նոյնպէս եւ 'ի Մօսուլ Սեփադինն (Սէյֆ-Էտտին Ղազի) եղբայրն Նորադնին, և առ զՄծբին և զԽաղա և զԽառան. և հնազանդեցաւ նմա եղբօր որդին իւր 'ի Հալպ, և դարձաւ և եբարձ զեդեալ կանոնք Նորադնին, որ գրեալ էր յամենայն մըզկիթի վերայ՝ մի ըմպել գինի Մուսլմանի. և նա հրաման ետ տաշել զգիրն, և համարձակ

ետ խմել յամենայն տեղիս յայտնապէս ։

Յայսմ ամի Սալահադինն որ տիրեալ էր Եգիպտոսի, տիրեաց և իշխեաց ներքսագոյն Արաբիոյ և մասին ինչ ՚ի Նուբեաց աշխարհէն ։ Եւ ՚ի սոյն ամի բերդեր զոր ունէին Հայք յերկիրն Սասնոյ, նեղեալ ՚ի Մուփարկնայ ամիրայէն, տուին ՚ի Շահի Արմէնն յամիրայն Խլաթայ, զայն որ ունէին ՚ի հին ժամանակաց ։

Ի Թուին Ասորւոց ՌՆՁԶ (1486) և Հայոց ՈԺԳ (613), սպանաւ իշխանն (1) Կիլիկեցւոց կամօք իշխանաց իւրոց ՚ի բերդն, և բերին զՌուբէն որդին պարոն Ստեփանէի որ էր ՚ի Տարսոն, և իշխեաց ՚ի վերայ աշխարհին ։ Եւ չարչարեաց և սպան զսպանողսն հօր եղբօր իւրոյ, զի ասեն թէ սպանին և արկին շանց. և վասն այսր նախատանաց ոչ կարաց ներել նոցա (2) ։

Եւ ՚ի նոյն ամի ել Սալահադինն յաշխարհէն Եգիպտոսի և եկն ՚ի Դամասկոս ՚ի պատ-

(1) Նա ինքն է Մլեհ եղբայրն Թորոսի և Ստեփանեայ, որ զկնի միոյ ամի մահուան Թորոսի բռնութեամբ կալաւ զիշխանութիւնն Կիլիկիոյ, և վարեալ զամս իբր հինգ, ոչ կարացեալ տանել իշխանաց զխառնակեաց վարս և զանիրաւութիւնս նորին, սպանին ՚ի թուին Հայոց ՈԻԳ. և զորդին Ստեփանեայ զՌուբէն որ կայր առընթեր Բակուրանայ իշխանին՝ քեռւոյ իւրոյ ՚ի Պապեռոն, դնեն յաթոռն ։ Սմբատ յեր. 102 ։ —Վահրամ, յեր. 211 ։

(2) Սմբատ, յեր. 102—103 ։

ճառս օգնութեան Մ՚ելիք Մալէհին, և առ ըզ-Դամասկոս և գնաց ՚ի Հալպ. և զարհուրե-ցաւ Մ՚ելիքն ՚ի նմանէ. և նա առաքեաց առ նա և ասէ. « Ես քո ծառայ եմ, և եկեալ եմ յօգնութիւն տեառն իմոյ՝ կալ ընդդէմ թշնամեաց քոց »: Եւ ոչ հաւատաց նմա, և ոչ եբաց զքաղաքն նմա. և նա դարձաւ ՚ի Հալպայ և էառ պատերազմաւ զՀամս և զՀամայ, և եհան զՓռանգ ծառայսն որ ՚ի Դամասկոս և վաճառեաց զիւրագիրն: Եւ եա բերել ոսկի բազում ՚ի Մսրայ, և կուտեաց զօրս բազում: Եւ Մեփադինն լուաւ զժո-ղովելն Մալահադնին, և եկն ՚ի վերայ նո-րա խորոխտանօք, և կոչէին զնա շուն կատա-ղեալ որ հաջէ ՚ի տէրն իւր. և փութային ՚ի գալն զի մի փախիցէ ՚ի նոցանէ. և նա ա-ռաքէր առ նա և ասէր. « Մի՛ կռուիք, մէկ մարդիկ եմք և մէկ հաւատ, և հնազանդ եմ ձեր »: Եւ ոչ լուան նմա, այլ չոգան բախե-ցան ՚ի վերայ նոցա. և նոքա մարտեան ընդ նոսա, և սկսան կոտորել զզօրսն Մեփադինին, և փախեան յերեսաց նոցա: Եւ յորժամ ե-տես Մալահադինն թէ յաղթեցան Մօսլիքն, արգել զզօրս իւր ՚ի կոտորելոյ զնոսա, և ա-սէ. « Խնայեցէք զի մէկ ազգ եմք »: Եւ անց ՚ի մէջ նոցա և արգելեաց զզօրս իւր, և զըմ-բռնեալ ծառայսն հանդոյց և պատուեաց. և վասն այսորիկ անկաւ ահ և երկիւղ ՚ի վերայ

ամենեցունց ։ Սնաւանդ զարհուրեցաւ Մելիք Սալէհն և եհան(1) զՓռանգ ծառայսն և վաճառեաց սակաւու, զկոմսն Տրապօլեաց ութսուն հազար դահեկանի, զՁ օչլին որդի Ձ օչլինին յիսուն հազար, զԱնադո բըրինձն հարիւր հազար ։ Եւ արար սէր ընդ Ենտաք զի օգնեսցեն նմա ։

Իսկ Սեփադինն դարձեալ արար ժողով և առ ընդ իւր զտէրն Մերտինայ և զՇարունՊէքոյն, և եկն ՚ի վերայ Սալահադնին վաթսուն հազարաւ ։ Եւ Սալահադինն ունէր երկոտասան հազար, և առաքեաց առ Սեփադինն և ասէ . « Մի գար ՚ի վերայ իմ և մի կռուիր ընդ իս . զի ինձ չէ անարգանք թէ յաղթիմ ՚ի յիմ տեառնէդ . բայց քեզ մեծ կորանք է՝ թէ յաղթիս ՚ի ծառայէ քումմէ . » և ոչ լուաւ նմա ։ Իսկ ապա Սալահադինն գաղտ խօսեցաւ ընդ ամիրայսն խոստանալով նոցա բարի առնել . և յորժամ խմբեցաւ պատերազմն, դարձեալ զօրացաւ Սալահադինն և պարտեցաւ Սեփադինն, և փախեան առաջի նոցա . և Սեփադինն նստեալ յուղտ փախեաւ ՚ի Մօսլ . և Սալահադինն առ ըզՄնբէճ, և եկին ՚ի հնազանդութիւն նմա տէրն Ընթափայ և Թլբաշարայ ։ Եւ գնաց ՚ի յԱզազն (2) և կռուէր ՚ի վերայ նորա . և ե-

(1) Ըստ պատմութեան Աբուլբարաջի պատմագրաց ոչ Մելիք Սալէհ, այլ Սալահէտտին հանեալ զգերիսն վաճառեաց ։

(2) Ազազ քաղաք է մերձ ՚ի Հալապ .

լին յանկարծակի Հաշիշիէքք[1] 'ի վերայ նորա և խոցոտեցին զնա և ոչ մեռաւ . և ինքն ըմպան զնոսա, և առաքեաց զօր 'ի վերայ Հաշիշեացն, և գերեաց զերկիրն նոցա, և զՆզազն էառ պատերազմաւ և գնաց նստաւ 'ի վերայ Հալպայ : Նա առաքեցին Հալպցիքն առ Փռանգն, և եկն Ոնաղոն որ վաճառեցաւն և կոտորեաց 'ի զօրացն Սալահադնին, և արար զնա փախստական . և Սալահադինն դարձոյց զՆզազն 'ի Հալպ, և ինքն գնաց յԵգիպտոս :

Ի Թուին Նորուոյ ՌՆՁԷ (1487) և Հայոցն ՈԺԴ (614), մեռաւ Նաջբադինն (Նէճմէտ-տին) տէրն Մերտինոյ՝ կեցեալ իշխան ամս քսանևերկու, այր բարի և քաղցր 'ի վերայ քրիստոնէից . և առ զիշխանութիւնն Խուտբդին որդի նորա :

Ի սոյն ամի վարազ մի եհար զԹագաւորըն Յունաց 'ի յորս և համբաւեցաւ Թէ մեռաւ անտի . և Կիլիճասլան ասպատակեաց յաշխարհն նորա և գերեաց զքաղաքս : Նա Թագաւորն ողջացաւ 'ի խոցոյն և առեալ զօր բազում յոյժ, և կային առ նմա յորդւոցն Դանիշմանայ փախուցեալ առ նա, արար ըդ-

(1) Հաշիշիէքն էին իբր աղանդաւորք ոմանք հպատակք գլխաւորի միում որ կոչէր Ծերունին լերին, որոյ կուրօրէն ամենայն հրամանացն հպատակէին՝ զմահ 'ի բուռն ունելով միշտ :

նոսա պօրագլուխս, և առաքեաց առ նա յառաջագոյն, և ասէ. «Դարձո զհայրենիսն Դանիշմանեանց առ տէրս իւրեանց՝ որ կան առ իս.» և ինքն զհետ դեսպանացն չոգաւ, և կոտորեաց զբազումս ՚ի Թուրքացն։ Եւ Թուրքն Ուձին գնացին ծածկապէս ընդ կողմն հիւսիսոյ և գերեցին ՚ի Յունացն հարիւր հազար կին և տղայ՝ բաց ՚ի յարանցն զոր սպանին։ Եւ լուեալ զայն Թագաւորին Յունաց, խնդրէր զսուլտանն և վարէր զնա առաջի իւր, և ոչ կարէր դիպիլ նմա սուլտանն. և Թագաւորն Յունաց ետ յիսուն հազար հեծեալ յոմն յորդւոցն Դանիշմանայ, և առաքեաց զնա ՚ի վերայ Նիկեսարու, և Թուրքերն տարին խաբէութիւն, և գրեցին թուղթ ՚ի դիմաց քրիստոնէիցն և ձգեցին ՚ի դուրս, և էր գրեալ թէ՝ «Դանիշմանդայդ զոր եդեալ էք ձեզ առաջնորդ, կամի մատնել զձեզ ՚ի ձեռն Թուրքաց։» Եւ լուեալ զայս Հոռոմայքն և սկսան փախչիլ. և ելեալ զկնի նոցա կոտորեցին զբազումս և սպանին զմիւս զօրագլուխն որ էր քոր որդի Թագաւորին։ Եւ յորժամ գնացին առ Թագաւորն, արտմտեցաւ յոյժ, և գնաց զայրացմամբ և եմուտ ՚ի մէջ Թուրքացն մերձ ՚ի Կոնն (Իկոնիոն), իջաւ ՚ի ձորակի միում ՚ի մէջ երկուց լերանց դժուարագունից, և պատեցան զնոքօք Պռի Թուրքմանք յոլովութիւն

բազում յոյժ, և արտաշարեցին զնոսա աւուրս հինգ, և խոցոտէին զնոսա գլօք քարանցն և նետուք ’ի տուէ և ’ի գիշերի, և սպանին ’ի նոցանէ հազարս և բիւրս՝ մարդ և գրաստ, և առին զուռճիկս նոցա հարիւր հազար բեռնաւոր ձի. և երկեան յոյժ, և ահաբեկեցան և առաքեցին առ սուլտանն և ետուն երեք քաղաքս զոր ինքեանք շինեալ էին, և խնդրեցին սէր, և աղաչեցին զի զերծուսցէ զնոսա ’ի նեղութենէ անտի: Եւ կամեցաւ սուլտանն, և առաքեաց երեք ամիրայ հեծելօք՝ հանել զնոսա անտի և տանել ’ի Կոստանդնուպօլիս խաղաղութեամբ: Եւ եկեալ առ նոսա ամիրայքն ’ի գիշերի և հալածեցին զԹուրքմանսն և հանին զնոսա անտի, և յուղի անկեալ գնացին: Եւ Թուրքմանքն երթային առաջի և անտի, և անարգէին զսուլտանն զի տայր սէր ընդ նոսա՝ որ պաշարեալ էին ’ի ձեռս նոցա, և հետզհետէ բռնէին յանկարծակի և սպանանէին, և յափշտակէին. այլ և ’ի հեռաստանէ նետաձգօք ըմբռնէին և սպանանէին: Եւ Յոյնք ասէին ընդ ամիրայսն որ տանէին զընոսա, թէ՝ «Ի ձեռն է ծախուցն մեր՝ թէ յապականեցաք:» Եւ նոքա երդմամբ թէ՝ «Ոչ է ’ի մեզ, այլ անհաւանք և վայրենամիտք են և ոչ լսեն մեզ:» Եւ մինչ ’ի Կոստանդինուպօլիս պակասեաց ’ի նոցանէ քսան հազար այր: Եւ այսպէս պակասեալ ’ի զօ-

նոսա պօրագլուխս, և առաքեաց առ նա յառաջագոյն, և ասէ. «Դարձո զհայրենիսն Դանիշմանեանց առ տէրս իւրեանց՝ որ կան առ իս.» և ինքն զհետ դեսպանացն չոգաւ, և կոտորեաց զքաղաքն ՚ի Թուրքացն։ Եւ Թուրքն Սեծին գնացին ծածկապէս ընդ կողմն Հիւսիսոյ և գերեցին ՚ի Յունացն հարիւր հազար կին և տղայ՝ բաց ՚ի յարանցն զոր սպանին։ Եւ լուեալ զայն Թագաւորին Յունաց, խնդրէր զուղտանն և վարէր զնա առաջի իւր, և ոչ կարէր դիպիլ նմա ուղտանն. և Թագաւորն Յունաց ետ յիսուն հազար հեծեալ յումն յորդւոցն Դանիշմանայ, և առաքեաց զնա ՚ի վերայ Նիկեսարու, և Թուրքերն արարին խաբէութիւն, և գրեցին Թուղթ ՚ի դիմաց քրիստոնէիցն և ձգեցին ՚ի դուրս, և էր գրեալ թէ՝ «Դանշմանդայդ զոր եդեալ էք ձեզ առաջնորդ, կամի մատնել զձեզ ՚ի ձեռն Թուրքաց։» Եւ լըւեալ զայս հաւատացին և սկսան փախչիլ. և ելեալ զկնի նոցա կոտորեցին զքաղաքն և սպանին զմիւս զօրագլուխն որ էր քոր որդի Թագաւորին։ Եւ յորժամ գնացին առ Թագաւորն, արտմեցաւ յոյժ, և գնաց զայրացմամբ և եմուտ ՚ի մէջ Թուրքացն մերձ ՚ի Կօնն (Իկոնիոն), իջաւ ՚ի ձորակի միում ՚ի մէջ երկուց լերանց դժուարագունից; և պատեցան զնոքօք Պուի Թուրքմանք յոլովութիւն

քաղում յոյժ, և պաշարեցին զնոսա աւուրս հինգ, և խոցոտեցին զնոսա գլօք քարանցն և նետիւք 'ի տուէ և 'ի գիշերի, և սպանին 'ի նոցանէ հազարս և բիւրս՝ մարդ և գրաստ, և առին զուռճիկս նոցա հարիւր հազար բեռնաւոր ձի. և երկեան յոյժ, և տկարացան և առաքեցին առ սուլտանն և ետուն երեք քաղաք զոր ինքեանք շինեալ էին, և խնդրեցին սէր, և աղաչեցին զի զերծուսցէ զնոսա 'ի նեղութենէ անտի: Եւ կամեցաւ սուլտանն, և առաքեաց երեք ամիրայս հեծելօք՝ հանել զնոսա անտի և տանել 'ի Կոստանդնուպօլիս խաղաղութեամբ: Եւ եկեալ ամենայն ամիրայքն 'ի գիշերի և հալածեցին զԹուրքմանսն և հանին զնոսա անտի, և յուղի անկեալ գընային: Եւ Թուրքմանն երթայր տարր և անափ, և անարգէին զսուլտանն զի արար սէր ընդ նոսա՝ որ պաշարեալ էին 'ի ձեռս նոցա, և հետզհետէ քակէին յանկարծակի և ապականէին, և յափշտակէին. այլ և 'ի հեռաստանէ նետաձիգս լինէին և սպանանէին: Եւ Յոյնք ասէին ընդ ամիրայսն որ տանէին ըզնոսա, թէ՝ «Ի ձե՞նջ է ծառայութիւն մեր՝ թէ յապականեցայց: » Եւ նոքա երդմունքն թէ՝ «Ոչ է 'ի մեզ, այլ անհնարինք և վայրենամիտք են և ոչ լսեն մեզ: » Եւ մինչ 'ի Կոստանդնուպօլիս պակասեաց 'ի նոցանէ քան հազար այր: Եւ այսպէս պակասեալ 'ի զօ-

րաց և ըն ամենթով զնոսա Սանիկըն յերկիր խուայն որ Չմնայր երեւելի պատերազմաւ յաղթել աշխարհի, և իմանալի խորհրդով՝ ուղղափառաց եկեղեցւոյ։ Յետ այնորիկ առաքեաց զանձն բազումս առ սուլտանն, և զընեաց զկենդանիս միաբանեալսն ՚ի զօրաց իւրոց որ կային ՚ի պետութեան. և եղև այս ՚ի թուին Յունաց ՌՆԿԸ (1468) և Հայոցն ՈԺԷ (617)[1].

Զայսու ժամանակաւ քրիստոնեայք որ կային ՚ի Սպանիոյ՝ անկեան ՚ի մեծ նեղութիւն յերկուց պատճառաց, ՚ի սովոյ և ՚ի չարութենէ, և ՚ի խուժան բարուց ամիրայից իւրեանց՝ որ միաբանեալ էր յաղագս Փռանչմանաց. և այդ պատճառին նոցա եկեղեցականքն, եթէ թշուառութիւնս այս ՚ի մեղաց է. զի կատարեալ է բանն Տեառն առ մեզ որ ասէ թէ՝ «Վտարանդեսցին ընդ հեթանոսս և ուսան ըզգործս նոցա, և եղեւ նոցա ՚ի գայթակղութիւն»։ Արդ եկայք դարձցուք ՚ի չարեաց մերոց, և աղաչեսցուք զերկնաւոր ողորմածն Աստուծոյ, զի ապրեսցուք, պահպանեսցուք, խապառ ընկեսցուք։ Եւ բուռն ժողովուրդքն և սկսան պահել և ազօթել արտասուօք, և հրակել և պաղատել առ Աստուած։ Եւ դադարեաց Տէր ՚ի բարկութենէ իւրմէ, և էառ կ

(1) Սմբատ. (յեր. 103). յիշէ համառօտ զպատերազմ թիւն Մանուէլի ՚ի խմբ— Արսլանայ, և զհաշտն զոր ընդ նմա կնռեաց։

՚ի սիրտ ամիրային և զզջացաւ ՚ի գործս իւր . և առաքեաց առ սուլտանն և առ ՚ի նմանէ գանձս և ետ ՚ի նա զՍնլտինն, և ինքն ել և գնաց ՚ի Խարբերդ . և եղեւ մեծ դիւ-քութիւն քրիստոնէից և առատութիւն հա-ցի, և ամենայն իրաց ընդարձակութիւն ։

Ի Թուին Նորուոց ՌՆՁԹ (1489), ել Ալա-լահադինն յԵգիպտոսէ երեսուն հազար հա-գած հեծելով, զատ ՚ի սոսկականացն և ՚ի հետեւակացն, և յիսուն և երկու հազար բեռնակիրս զինաբարձս զկնի իւր ։ Եւ եկն ՚ի Պաղեստինէ, և կալաւ Գուանդ մի և զե-նեաց և արեամբ նորա լուացաւ աղօթից՝ և աղօթեաց, և պատրաստեցաւ պատերազմի և աւերման երկրին ։ Իսկ Թագաւորն Երու-սաղէմի Պաղտինն (Դ.) ժողովեաց զաւկաւ զօրսն իւր ; և առաջի նոցա անկաւ ՚ի վերայ երեսաց իւրոց ընդդէմ՝ արեւելից . արարին և զօրքն նոյնպէս . և լացին և կարդացին առ Տէր սրտի մտօք . և երդուան զօրքն առաջի Աստուծոյ և առաջի Թագաւորին ոչ դարձու-ցանել Թիկունս ՚ի Թշնամեաց, այլ մեռա-նել յօժարութեամբ ՚ի վերայ սուրբ Եկե-ղեցւոյ . և գնացին ՚ի վերայ նոցա ։ Եւ յոր-ժամ տեսին զքաջութիւն . . . նոցա և հայեցան ՚ի սակաւութիւն իւրեանց, իջան դարձեալ յերիվարացն, և մոխրամած երեսօք արտասուեցին և պաղատեցին առ Տէր, և

կազմեցան այնոք հուսատով, և դիմեցին ՚ի վերայ նոցա իբրև զարծուիս յերամս կաքաւացս։ Եւ էր Յիսուս Քրիստոս Աստուածըն քրիստոնէից եհան հողմն մրրկեալ ընդհետ նոցա ընդդէմ երեսաց Այլազգեացն. և թափէր զնոսա յերիվարացն, և դարձուցանէր զնոսա ՚ի փախուստ առաջի նոցա. և նոքա կոտորէին զնոսա յանխնայ և ոչ ապրեցուցանէին ՚ի նոցանէ։ Եւ փախեան և ցրուեցան Այլազգիքն ընդ կողմն հարաւոյ յանապատն. և յառաւօտէ մինչև ՚ի մտանել արեգականն ոչ դարձան ՚ի նոցանէ։ Նոյնպէս և ՚ի վաղիւն, և մինչև ՚ի հինգ օրն երթային և գտանէին ՚ի նոցանէ լքեալ ՚ի սովոյ և թաքուցեալս. և առին զամենայն ծանրութիւն ուղտուց նոցա և զկահ և զկարասի, և լցան և փարթամացան. և ուրախ արար Տէր զհաւատացեալս իւր, և ՚ի համբաւս յայս եբեկ զմէջս . . . նացն։ Իսկ Սալահադինն յոյժ տակաւուք անկաւ ՚ի Մսր, և զգեցաւ սեաւ, և փակեցաւ ՚ի տան խաւարի աւուրս բազումս։

Եւ ՚ի սոյն ամի ամիրայն որ կայր ՚ի Հերիմն, կասկածեաց ՚ի Հալպայ թէ խորհեցան նմա չարիս՝ սպասաւորքն զնա. և խօսեցաւ ընդ բրինձն Մնոսրայ, և պահանջեաց ՚ի նմանէ երդումն զի մի հանիցէ զնա ՚ի բերդէն, և կացցէ նմա ՚ի հնազանդութիւն.

և երդուաւ նմա 'ի խաչն և յԱւետարանն ։ Եւ ամիրայն դարձաւ 'ի Հալպայ և ապստամբեաց և եղև ընդ Մնտաքու ։ Բայց յետոյ զըղջացաւ բրինձն , և ստեաց երդմանն , և եբեր աղաչանօք զՄոբէն Կիլիկիոյ իշխանն, և գնաց 'ի վերայ Հերմին . և ոչ ետ Տէր 'ի ձեռս նորա վասն ստութեան նորա , այլ բազումք անկան 'ի զօրացն Փռանգաց և դարձաւ ամօթով, և զՀերիմն դարձուցին 'ի Հալպ՝ առեալ երդումն 'ի նոցանէ ։

Ի թուին Յունաց ՌՆՂ (1490) և Հայոցն ՈԺԷ (617), ժողովեցան Փռանգք 'ի Պաղեստինէ , և գնացին 'ի վերայ Յորդանանու իջան , և սկսան շինել անդ քաղաք 'ի տեղին որ կոչի անդ Յակոբայ, զի նովաւ առցեն զԴամասկոս ։ Եւ լուաւ Սալահադինն , և ժողովեաց դարձեալ զօրս և եկն 'ի Դամասկոս ։ Եւ զի ամիրայն Բալբաքու որ կոչի Արեգական քաղաք, որ է Իլուպօլիս , ապստամբեալ էր , գնաց 'ի վերայ , և երդմամբ և սիրով և խոստմամբ առ զնա և զօրացաւ ։ Եւ գնաց 'ի վերայ նոր քաղաքին , զոր շինեալ էին Փըռանգք . և զօրքն Փռանգաց մինչեւ 'ի գալն Սալահադնին՝ լսեցին զհամբաւ գալոյ նորա, և գնացին ընդդէմ նորա և փախուցին զնա մինչեւ 'ի Դամասկոս . և եկն զօրն Փռանգաց մինչեւ 'ի դուռն Դամասկոսի , և գերեաց զերկիրն ։ Եւ Սալահադինն քաջալե-

րեալ եւլաւ զհետ նոցա, և կալաւ 'ի նոցանէ հարիւր փրեր. և դարձեալ սրտապնդեալ չոգաւ 'ի վերայ քաղաքին զոր շինէին՝ և կալաւ 'ի նոցանէ հարիւր փրեր, և պաշարեաց զքաղաքն և յաղթեաց նոցա, և ընկէց հուր 'ի քաղաքն և տուաւ այրել. և կային անդ հինգ հարիւր փրեր Սետարաւն(1) իւրեանց։ Եւ նոքա յորժամ տեսին թէ պարտեցան և յաղթեցան, ընկեցին զանձինս 'ի հուրն և 'ի գետն՝ զի մի անկցին 'ի ձեռս . . . նացն և զմնացեալսն 'ի նոցանէ կոտորեաց Սալահադինն։

Ի թուին Ասորւոց ՌՆՂԱ (1491) և Հայոցըն ՈԺԸ (618), մեռաւ թագաւորն Յունաց Մանիլն՝ թագաւորեալ ամս երեսուն և եւթն, և առ զթագաւորութիւնն Ալէքս (Բ) որդի նորա ամաց երկոտասանից. և երկոտասան իշխան կարգաւորէին զթագաւորութիւնն։ Եւ մայր նորա եղև հաւատաւոր, բայց ընդ ձեռամբ ունէր զտունս զանձուցըն. և յետոյ անկաւ 'ի պոռնկութիւն ընդ մի յիշխանացն երկոտասանից, և յայտնեցաւ գործն, և խորհեցան մետասան իշխանքըն սպանանել զմայրն և զորդին, և դնել թագաւոր զդուստր Մանիլին, որ էր յառա-

(1) Մէտր նշանակէ բառ հին գաղղիերէն լեզուին՝ գլխաւոր, պետ կամ տէր, որով իմանի գլուխն կամ կառավարն կարգի Տաճարականաց որք Ձիաւորք կոչէին։

զինս կնաջէն յօրինաւորէն, և ոչ հարացին։ Այլ
լուան մայրն և որդին, և ջանացին ըմբռնել
զնոսա. և փախեան մետասան իշխանքն յե-
կեղեցին մեծ. և զեւթն օր կային ամբոխ
զ.քաղաքն, և սկսան ծեծել զեկեղեցին փե-
լիկոնաւն (1). և յետ եւթն աւուր էառ ըզ-
նոսա յերաշխիս Պատրիարքն, և եհան յե-
կեղեցւոյն և տարաւ յարքունիսն, զի կա-
ցեն 'ի խաղաղութեան և յանհոգութեան,
զի առեալ էր երդումն 'ի նոցանէ։ Իսկ Թա-
գաւորն և մայրն ստեցին երդմանն և հանին
զաչս նոցա։ Այլ բարկացաւ Պատրիարքն
Թէոդորոս (Թէոդոս) անուն և անէծ զ.քա-
ղաքն, և ետքն ելաւ և գնաց 'ի քաղաքէն.
և անմխութեամբ սորա անիծելով զ.քաղա-
քըն և զամենեսեան. որ և ութ ամիս պատա-
րագ ոչ մատեաւ 'ի նմա, և մեռեալ ոչ հա-
ղորդեցաւ և թաղեցաւ։

Ի թուին Յունաց ՌՆՂԲ (1492) և Հայո-
ցըն ՈԽԹ (619), եղեւ պատերազմ ընդ սուլ-
տանն և ընդ Նորադինն ընդ տէրն Հարան-
քէփայ և Բ.եանոյ, զի առեալ Նորադինն ըզ-
դ.ուստրն սուլտանին որ էր կին նորա, և յու-
սացաւ 'ի Սալահադինն։ Այլ սուլտանն չոգաւ
քակեաց զԲ.եասուն. և եկեալ Սալահադինն
ընդդէմ սուլտանին առնուլ զվրէժ Նորադ-

(1) Փելիքոն կամ Փիլիքոնան, է գործի պատերազմական, որով հարկէին զմեծամեծ քարինս 'ի կործանել զպարիսպս քա-ղաքաց։

նին, և Հասան ամիրային իմաստուն բանիւք արար խաղաղութիւն. և ոչ կռուեցան, և դարձան խաղաղութեամբ 'ի տեղիս իւրեանց:

Ի սոյն ամի ամիրայն Ուռհայոյ և Խառանայ ապստամբեցան 'ի Սուլթոյն և հնազանդեցաւ Ալահադնին, և այսու պատճառաւ եղեւ Միջագետք Ալահադնին. զի ժողովեցան Սուլթեք և ոչ իշխեցին կռուել ընդ Ալահադնին, և հնազանդեցան նմա. և գը-նաց Ալահադինն և էառ զՄ՝միթ, և ետ ըզ-նա Նորադնին որ խոստացեալ էր նմա:

Ի թուին Ասորւոց ՌՆՂԹ (1493) և Հայոց ՈԻ (620), մեռաւ Մելիք Սալէհն տէրն Հալպայ. մեռաւ և Մեփադինն տէրն Մօսլայ, և առաւ Հալպ և Մօսլ ազգին Մեփադնեին. և Նջադինն ետ զՀալպ եղբօր իւրում, և էառ 'ի նմանէ զՍնճարն:

Ի թուին Ասորւոց ՌՆՂԴ (1494) և Հայոց ՈԻԱ (621), Անդրոնիկոս անօրէն սպանողն պարոն Ալեքսանէի, որ շրջեցաւ չարութեամբ 'ի տեղիս տեղիս, եմուտ այժմ խաբէութեամբ 'ի Կոստանդինուպօլիս, որպէս թէ գնայ 'ի հնազանդութիւն և 'ի խնամակալութիւն թագաւորին տղայոյ. և առաջ յայտնի արար զչար կամսն չարածերն այն, և հալածեաց զՓռանգսն զօր եգիտ 'ի քաղաքին. և խեղդեաց 'ի ծովն զմայրն և զտղայն իւր, և սպան հազար այր յիշխանացն Յունաց,

և չորեքտասան հազար գիւղ և վանք աւերեաց ՚ի Յունաց . և առ զկին Աղէքսին իւր ՚ի կնութիւն . հալածեաց զՓռանկսն զոր եգիտ ՚ի քաղաքին և ՚ի գաւառին , և ինքն թագաւորեաց : Եւ խորհեցաւ սպանանել զՓիլիկոս (1) իշխանն մեծ , որ էր յազգէ թագաւորացն , և առաքեաց կոչեաց զնա . և ոչ կամեցաւ գնալ , զի ազդեցաւ նմա խորհուրդ թագաւորին : Եւ թագաւորն առաքեաց զզօրագլուխն իւր բերել զնա . և նա քամեաց զթուրն և եհար զզօրապետն և սպան զնա : Եւ ինքն երթայր յեկեղեցին , և սուրն արիւնոտ ՚ի ձեռին իւրում և աղաղակէր . "Տեսէք և լուարուք ազգք և հասակք ամենայն , զի ջնջել կամի Անդրոնիկոս զթագաւորութիւնս Յունաց :" Եւ լուան զայս , և ժողովեցան յեկեղեցին իշխանք և զինուորք և ամբոխ քաղաքին , և ամենեքեան խոցեալ էին յԱնդրոնիկեայ և բարկութեամբ կային ընդ նմա . և ասացին ցՓիլիկն (ցԻսահակն) . "Թագաւորեա դու ՚ի վերայ մեր , և անցցէ մրրիկս այս :" Եւ փութացուցանէին զՊատրիարքն օծել զնա թագաւոր . և քարոզեցաւ ընդ քաղաքն : Եւ լուաւ Անդրոնիկոս և եմուտ ՚ի նաւ և փախեաւ . և հասեալ նմա դարձուցին . և ՚ի բերելն պատառ

(1) Այն է Իսահակ Բ Անգեղոս կոչեցեալ , զի որդի էր Անդրոնիկոսի Անգեղոսի :

պատառու կոտորէին զնա, և բերեալ 'ի քա-ղաքն այրեցին զնա հրով 'ի Թուին Տեառնոյ ՌՆՂԷ (1497)։

Իսկ 'ի Թուին Տեառնոյ ՌՆՂԳ (1493) և Հայոցն ՈԽԳ (623). իշխա՛ Սալահադինն և ամենայն ամիրայքն միջագետաց 'ի վերայ Քարաքոյ(1). և ժողովեցան Փռանկք, և գը-նացին փախուցին զնոսա և ամրացուցին ըզ-քաղաքն։

Ի սոյն ամի Թագաւորն Երուսաղէմի Պաղտինն (գ.) անկաւ 'ի ցաւս գօղութեան, և արար իւր փոխանորդ զքեռորդին իւր տղայ-ատէին և նմին Պաղտինն. և յետ սակաւ ա-ւուրց մեռաւ, և Թագաւորեաց տղայ Պաղ-տինն։

Ի սոյն ամի գնաց Սալահադինն 'ի Մու-փարկինն և առ զնա. և դարձեալ գնաց 'ի Մօսլ, և ոչ կարաց առնուլ զնա. բայց յաժ-նեղեաց զնոսա, մինչեւ երդուան նմա որ

(1) Քարաքէ քերեկ քաղաքն՝ յարեւելից Երուսաղէմի, յայն-կոյս Յորդանանու. յորում կային առաջնորդքն հաստուածք 'ի Հայոց. որպէս ցուցանեն զարդ Յոյն բնակիչք անդ այժմ զեկե-ղեցիս հերեանց որ էր Հայոց. և բազմումք իսկ 'ի Յունաց խոստովանին զարդ եթէ նախահարք հերեանց էին Հայ ազ-գաւ և սակս յարեալ 'ի յունական եկեղեցին։ Գոյ 'ի գրա-տան սուրբ Յակոբայ Յայսմաւուրք ձեռագիր յիշատակ ա-րարեալ Լեւոնի Երարդոյի Աւետիկեայ եկեղեցւոյն Քերեկայ 'ի Թուին Հայոց ՉՀԹ։ Առ եկեալ Ռուբէն Բ իշխան Կիլի-կիոյ յամի 1181. առ զդուստր Ռինալդեայ տէր Շադիլեան Փը-ռանգ իշխանին։ Սիսուան. երես 103։

տան նմա հեծել և կացցեն ՚ի հնազանդութիւն։

Եւ ՚ի նոյն ամի մեռան Նորադինն և խուդբադինն (1) տէրն Ամթայ և Մերտնայ, որ էին ազգականք միմեանց Արթուխեաց անուն. զի բազում եկեղեցիս քակեաց Նորադինն ՚ի Ամիթ, վասն որոյ և հարաւ բարկութեամբ ՚ի Տեառնէ, և եառ զիշխանութիւնն հարձորդին իւր Խուդբադինն (2), և զՄերտինն եառ Հասամադինն որդին Խուդբադնին։ Եւ ՚ի մեռանելն Նորադնին, Իւմրդդինն տէրն Բալուայ եառ զԽարթբերդ։ Եւ յայսմ ժամանակի մեռաւ ամիր Միրանն տէրն Խլաթայ, որ էր այր բարեմիտ և ողորմած առ աղքատս և կարօտեալս, և բազում դիւրութիւնս առնէր եկեղեցեաց և քրիստոնէից. և յետ մահուան սորա եառ զտեղի նորա Բակտամուր (Պէք-Թիմուր) ծառայն իւր։

Եւ ՚ի սոյն ժամանակս բռնձն Ճնապքոյ արար ահր ընդ Սալահադնին, և նենգիւ որսաց զՍոբէն զտէրն Կիլիկիոյ, և ըմբռնեաց զնա և եդ ՚ի բանտի. և եմուտ ՚ի Կիլիկիա

(1) Քոթպ-էտտին Էլ-Կազի որդի էր Նէճմ-Էտտին Ալպեյ որդւոյ Դիմուրթաշայ՝ Ուրթուքեան իշխան Մերտինոյ և Մուֆարկինոյ։

(2) Իմա՝ զԱմիթն եառ մեռ խուդբադին հարձորդի Նուրէտտինի։

և յաւելեաց ամառն մի բովանդակ, և ոչինչ կարաց առնել նմա, զի պարոն Լեւոն եղբայր նորա իմաստապէս վարէր զիշխանութիւն երկրին։ Եւ բրինձն ել ամօթով յերկրէն. բայց յետոյ տուին կանանք իւրեանց ոսկի և զԹիլն և զԱտանա, և հանին 'ի բանտէ զՌոբէն. որ և յետ այնորիկ առին զտեղիս իւրեանց և արհամարհեցին զբրինձն (1).

Յայսմ ժամանակի եղեւ պատերազմ 'ի մէջ Թուրքաց և Քրդաց, և յերկարեաց շփոթն զամս ութ զկնի միմեանց. և էր պատճառն այսպիսի։ Թուրքմանքն որ խաշանօք[2] և բազօթեայք շրջին, և զձմեռնային յեղանակն դային խոտանօք իւրեանց 'ի կողմն Հարաւոյ սակս կակղութեան օդոյն, և զամառնայինս ժամանակն ելանէին 'ի կողմն Հիւսիսոյ վասն բարեխառն և անխոռշակ օդոյն. և 'ի գնալն և 'ի դառնալն գողանային զնոսա Քրդերն և զօրանային։ Եւ յայսմ ամի դը-

(1) Սմբատ ասէ (յէր. 104) եթէ Ռուբէն առ 'ի հանձնել զպետղխութիւն իւր եկեալ յԱնտիոք, ձերբակալ եղեւ յիշխանէն արկաւ 'ի բանտ. որ և ազդ արարեալ առ Բակուրան քեռն իւր՝ տէրն Պապեռոնի, առաքեցաւ մայրն Ռուբենի գնալ 'ի պատանդս փոխանակ որդւոյն՝ մինչեւ հատուսցէ ըզփրկանս իւր. և կարեաց, ասէ, Ռուբէն զեն ահձին իւրոյ և ետ զՍարաւանդիքարն, զԹիլն և զՃկերն և հազար դահեկան ոսկի։ Եւ եղեւ այս 'ի Թուին Հայոց ՈԼԴ (1185)։ —Վարդան. յէր. 174։ Միք. Չամչեան. Հտ. Գ. յէր. 141։

(2) Յօրինակին՝ խաշգանօք։

տին երկու հարիւր Բուրդ դարձեալ յերկիրն Շպղթնայ վասն միատու, և սպանին ըզնոսա. և վասն այսորիկ ժողովեցան տասն հազար Բուրդ, և Թուրքմանքն կրկին քան զնոսա, և եղեւ կռիւ մեծ յերկիրն Շպղթանայ. և յաղթեցաւ Բուրդն և խայտառ կոտորեցան: Եւ յետ այսորիկ ձայն ետուն դարձեալ ազգն Բրդաց, և ժողովեցան ՚ի կողմանցն Մծբնայ և ՚ի Տուրաւգնայ երեսուն հազար, նոյնպէս և Թուրքմանքն առանց թուոյ. և կռուեցան մերձ Մծբնայ. և դարձեալ զօրացաւ Թուրքմանն և կոտորեցին զԲուրդն հարուածս մեծամեծս յոյժ, և իսպառ սատակեցին զնոսա. և գնացին առին զբանակետղս նոցա: Եւ վասն այսորիկ հատաւ ազգն Բրդաց ՚ի Միջագետաց. քանզի սակաւ զերծեալք անկան յերկիրն Կիլիկեցւոց և յամուր տեղիս ուրեք ուրեք:

Բայց քրիստոնէից ոչ մեղանչէին Թուրքմանքն, մինչեւ գտան զոմանս Բրդեր թագուցեալ ՚ի տունս քրիստոնէից, և այսու պատճառաւ սկսան նեղել զքրիստոնեայսն ՚ի տեղիս տեղիս: Եւ էառ Թուրքմանն զԱ-րապլթիլն և զԹլպամէ (1). կոտորէին և վա-

(1) Աբուլֆարած՝ որ ՚ի Քրոնիկոնի իւրում (յեր. 406) հետեւի ասորական բնագրին Միխայելի. փոխանակ անուանց բառիցս Արամլին և Թլպամէ ունի՝ Կարապլէր և Թլպամէ, որք էին մենաստանք երկու. զորս առեալ Թուրքաց այրեցին, և զկրօնաւորսն ՚ի սուր հանին:

ձուէին զքրիստոնեայսն, մինչև ամենայն ամիրայքն սկսան զգուշանալ երկրի իւրեանց։

Ի Թուին Ասորւոց ՌՆՂԸ (1498) և Հայոցն ՈԻԵ (625). ժողովեցաւ Սալահադինն ամենայն հնազանդելովք իւրովք՝ Եգիպտացօք, Աթուրացօք, Միջագետօք, և խաղաց գնաց 'ի վերայ Փռանգին մերձ 'ի Տաբարիա (1)։ Եւ եկին Փռանգքն և Թագաւորն Երուսաղէմի ընդդէմ նոցա, և յիշեցաւ մեղք քրիստոնէից առաջի Տեառն, և քննեցաւ յարդար իրաւանց նոցա, և եղև հարուած և բարկութիւն 'ի Տեառնէ 'ի վերայ Փռանգաց։ Եւ զօրացան Աթաբէկքն և կոտորեցին և առին 'ի սուր սուսերի իւրեանց զՔրիստոսասէր զօրքն Փռանգաց. և կալան զԹագաւորն Երուսաղէմի և զամենայն Փրերսն, և

(1) Յաւուրս անտի արքային Երուսաղէմի Գաղանի զօրն կոչեցելոյ. կամեալ էին Փռանգք դաշինս ուխտի ընդ Սալահատինի. զոր Ռէնալտ ոմն Շատիլեօն իշխանն Քերեկոյ աւերելով՝ ասպատակելով զկարաւանս ուխտաւորացն Մահմետականաց որ երթային 'ի Մեքքա. վասն որոյ և Սալահատինն հրամայեաց արձակել յԵգիպտոս, յԱսորիս և 'ի Միջագետս ժողովել ամենայն խոլամաց ընդ դրօշու սրբազան պատերազմին։ Եւ Սալահատինն արշաւեաց բանակաւ իւրով 'ի Տիբերիա և առ զայն. ուր հասեալ Կիյ ոմն Լուսինեան Թագաւորն Երուսաղէմի հանդերձ իշխանօք, վանեցեալ 'ի պատերազմին անկաւ 'ի ձեռս Թշնամեաց, գերեցաւ և խաչն սուրբ։ Իսկ Ռեմոնտ կոմս Տրիպոլսի նախ քան զպատերազմ քրիստոնէից՝ փախուցեալ էր 'ի պատերազմէն. և զկնի սակաւու մեռաւ յուսահատութենէ. Վարդան, յեր. 177.

եղեւ ուրախութիւն մեծ Թուրքաց ազգին։ Բայց նախ քան զպատերազմին փոխեալ կոմսն Տրապօլեայ, և զնա սատն պատճառ քրիստոնէից կործանման, զի բանս եդեալ էր յառաջագոյն ընդ . . . ոն։ Իսկ Սալահադինն էառ զՏաբարիա, և կոտորեաց և աւերեաց զնա. և այնն ձեռօք իւրովք ըզՌենալտոն զբրինձն Անտաքոյ և երեք հարիւր Փրեր, և լուացաւ արեամբ նոցա. և ապա գնաց 'ի յԱքքայ, և իշխանքն որ կային անդ, փախեան նաւով 'ի Տիւր. և էառ զԱքքայ, և էառ գերի բազում յոյժ։ Եւ Կեսարիա և Նազարէթ և Յոպպէ թողին զքաղաքսն, և դիւրաւ տիրեաց 'ի վերայ նոցա Սալահադինն։ Եւ ոչ ոք կարէ պատմել զնախատինսն քրիստոնէից՝ զլթուք եւ զանհարութիւն . . . նացն։

Իսկ Սալահադինն գնաց 'ի յԱսքալան և երդուաւ նոցա թողուլ զնոսա կենդանւոյն ուր և կամիցին գնալ։ Եւ ետ նոցա զթագաւորն Երուսաղէմի, և առ զքաղաքն. և բնակիչքն առին զթագաւորն և գնացին 'ի Տիւր։ Եւ ապա եկեալ Սալահադինն 'ի վերայ Երուսաղէմի, և աւուրս ինչ պաշարեաց զնա. և զի ոչ գոյր նոցա ուստեք ակնկալութիւն, խորհեցան տալ զքաղաքն. և կարգեաց Սալահադինն գինս բնակչաց քաղաքին դահեկանս տասն, զի տացեն նմա ըստ գլխոյ և եր-

Թլիցեն յս և կամլիցին (1)։ Եւ առաւօտին արշաւէս, և ետուն զքաղաքն. և որ ոչ կարաց գնել զանձն իւր, մնաց անդէն 'ի ծառայութեան։ Եւ ոչ ոք էր բաւական ժուժալ արտասուացն զոր հեղուին քրիստոնեայքն յելանելն յաստուածընկալ քաղաքէն. և որ մնացին 'ի տեղն՝ էին թուով քան հազար արք և կանայք. և 'ի նոցանէ չորս հազար ծերս և պառաւունս ապանեաց Սալահադինն, և եօթն հազար տղայս արու և էգ բաժանեաց զօրաց իւրոց. և հինգ հազար երիտասարդս առաքեաց 'ի Մըսր գործել աղիւս 'ի շինութիւն ապարանից, և հինգ հազար եթող յԵրուսաղէմ շինել զպարիսպնարս։ Եւ զՏաճարն լուացին արեամբ քրիստոնէից, և դարձեալ լուացին վարդաջրով։ և եդին սահման ոչ մտանել 'ի նա քրիստոնէից, և որ մտանէ՝ մեռանի։ Եւ արար ըզտաճարն Յարութեան ընդ հարկաւ, զի որ մտանէ՝ տացէ կարմիր մի։ Եւ դարձաւ գնաց Սալահադինն 'ի վերայ Սրոյ (Տիւրոս)։ Եւ եկն յաւուրսն յայնոսիկ կոմս մի Մարգիսանուն (2), այր հզօր և իմաստուն, և 'ի ձեռն

(1) Վարդան ասէ՝ յարուաց սմա զանհեկնանս ասան և յերաց՝ հինգ. յեր. 177։

(2) Մարքիզն ոչ է անուն մարդոյ՝ այլ պատուոյ, և կոչէր ինքն Գոնրատոս որ Մոնֆերրատ, որոյ հայրն 'ի բանտի կայր 'ի Դամասկոս։

Նորա փրկեցաւ Սուր։ Եւ Սալահադինն գնաց և էառ զՍայդա և զՊէրութն և զՃէպէլն և զԹ·ապնին, և տիրեաց նոցա։

Ի թուին Ասորւոց ՌՇ (1500) և Հայոցն ՈԻԷ (627), էառ Սալահադինն զՇաւպաք և զՔարաք որ 'ի վերայ ծովուն (1). և գտան 'ի Քարաք քարայր մի մեծ յոյժ՝ լցեալ թերապարզ արծաթով, որ հազ մի պակաս էր առ 'ի որբել զնա ամենեւին, և ոչ կարացին 'ի պէտս առնուլ զնա, և ոչ գտաւ արուեստաւոր այնպիսի որ գիտէր զհանգամանս նորա։ Եւ անտի դարձաւ և եկն և էառ զԼա-տիկն և զՃէպէլէ և զՍեհունն և զՊաղրաս և զԴարպսակն։

Եւ 'ի սոյն ամի որդին Կիլիճ Ասլանայ ժողովեաց զօր պատերազմել ընդ հօրն. զի Հասան զօրապետն սուլտանայ զայրացուցեալ էր զսուլտանն 'ի վերայ որդւոյն. և յորժամ կամէին դիպիլ միմեանց պատերազմաւ, Աքսարայ սուլտանին, տէրն Եզնկային, անցաւ 'ի մէջ և արար խաղաղութիւն. և քաղաքն որ ընդ որդւոյն էին, ամաչեցին 'ի ծերութենէ սուլտանին, և խափանեցաւ պատերազմն. բայց յետոյ սուլտանն կոտորեաց 'ի Թուրքէն որ միաբանեալ էին ընդ

(1) Քերեկ է անդր քան զՄեռեալ ծով. իսկ Շաւպաք 'ի հարաւոյ նորա։ Զայսոսիկ քաղաքս ոչ Սալահատտին՝ այլ Մալէք—Ադէլ եղբայր նորա առ. ասէ Իպն—Ալադիր։

որդւոյն՝ չորս հազար անձինս, և զՀասան զօրապետն սպանին Թուրքն։ Եւ 'ի նոյն ամի տիրեաց Սելտինոյ մի 'ի յորդւոցն սուլտանայ, որում անուն էր Խայըր շահ Ազադին (1)։

Ի Թուին Ասորւոց ՌՇԱ (1501) և Հայոցն ՈԻԸ (628), շարժեցաւ տունն Փռանգաց, և եկին ընդ ծով առանց Թագաւորի բազմութիւն ազգաց յոյժ, և իջան 'ի վերայ Աքայոյ, և պատերազմեցան ընդ քաղաքն, և ոչ կարէին առնուլ զնա, զի կային անդ հարիւր հազար պատերազմող. և Սալահադինն ոչ իշխէր պատերազմիլ ընդ նոսա։ Եւ շինեցին Փռանգքն տունս բազումս և եկեղեցիս և չորս հազար ջաղացս։ Յետոյ եկն և Թագաւորն Ալամանաց 'ի վերայ Կոստանդինուպօլսի և պատերազմեցաւ ընդ նոսա, և ապա յետոյ արար ընդ նոսա սէր, և անց յայսկոյս. և եկին ընդ անջուր և ընդ դժուար ճանապարհ առաջնորդութեամբ Յունաց, և կուտեցան 'ի վերայ Թուրքմանք և կոտորեցին զբազումս։ Եւ սուլտանն արար սէր, և ետ նոցա ճանապարհ, և եկին 'ի Սելեւկիա. և անդ Թագաւորն նոցա խեղդեցաւ 'ի գետն, և բերաւ մարմին նորա Անտաք (2)։ Յետոյ

(1) Խայըրշահ—Ազադին. այն է Մոեզ—էտտին Քայսար—Շահ. էր որդի Խըլըճ—ասլանայ Բ։

(2) Փրետերիկոս Ա. Պարպարոսսա հռչակեալ, որ 'ի լողա֊

եկին երկու թագաւոր այլ (1) և գնացին յԱ-
քայ՝ և առին գերի բազում. և ապա խընդ-
րեցին ՚ի Սալահադնէն փոխել զծառայսն որ՚ի
Դամասկոս զՓռանգսն՝ ընդ ծառայսն զոր նո-
քա ունէին. և Սալահադինն ոչ կամեցաւ։ Եւ
ապա հանին Փռանգքն քսան և հինգ հազար
ծառայս և կոտորեցին, և կուտեցին ՚ի վերայ
միմեանց, և արարին ՚ի վերայ աղօթս՝ որպէս
և արար Սալահադինն. և եդին զքորորդին
Անկլիթեր (Անգղիոյ) (2) թագաւորին կոմս Ա-
քայոյ, և արարին խաղաղութիւն ընդ Սա-
լահադնին. զի եհաս համբաւ ինչ յերկրէն
իւրեանց և դարձան և գնացին։ Եւ Սալա-
հադինն շինեաց զպարիսպն Երուսաղէմի ամ-
րագոյն քան զառաջինն։

Ի թուին Ասորւոց ՌՇԲ (1502) և Հայոց

նայն ՚ի գետն Սելեւկիոյ, այն է Կէօք—սու, հեղձաւ յամի 1190։ Ներսէս լամբրոնացի։ — Հարայարողն Սամուէլի։ — Վարդան, յեր. 179։

(1) Կիյ Լուսինեան ազատեալ ՚ի գերութենէ, հակառակ երդմանն զոր ետ Սալահէտտնի, երթեալ պաշարէ զՊտղոմայիդ. Յայնժմ միջոցի հասին յԵւրոպիոյ նոր խաչակիրք Տանիմարգացիք, Անգղիացիք, Փլամանք, յորս կային արք իշխանաւորք և արքեպիսկոպոսն Գանդորբերի։ Հուսկ ապա հասին անդ և Փիլիպպոս արքայ Գաղղիոյ և Ռիչարտ Թագաւոր Անգղիոյ։ Վարդան, յեր. 179։ Տես զընդարձակ պարագայս առման քաղաքին. ՚ի պատմութեան խաչակրաց Միշոտի. Հտ. Բ. Գլ. Ց։

(2) Հէնրի որ Շամբաներ, որ ընտրեցաւ ապա թագաւոր Երուսաղէմի յամի 1192, և նստէր ՚ի Պտղոմայիդ (Աքքա)։

ՈԻԹ (629), եղեւ հալածական յորդւոց իւրոց Խլիճ աղան, և ժողովեցին զնա Կոնացիքն (Իկոնիացիք) առ իւրեանս. և աւագ որդի նորա ամբարձ զգլուխ իւր յԱղաքայն (1), և անհամբեր եղեալ հայրն ժողովեաց ըստ կարի զօրս գնալ 'ի վերայ որդւոյն, և 'ի ճանապարհին հիւանդացաւ և մեռաւ, և դարձուցին զնա 'ի Կոնն։ Իսկ էր ընդ նմա որդի մի կրտսեր, զոր եդին 'ի տեղի հօրն. և Խլիճ աղան մեռաւ 'ի Թուին Ասորւոց ՌԾԴ (1504), Թագաւորեալ ամս երեսուն և ութ, և մնաց Թագաւորութիւնն երկոտասան որդւոց իւրոց։

Իսկ 'ի Թուին Ասորւոց ՌԾԵ (1505) և Հայոց ՈԼԱ (631), մեռաւ և Սալահադինն 'ի Դամասկոս, և եթող քսան և երեք որդի (2), որ և զաւագ որդին կացոյց 'ի Դամասկոս և զերկրորդն 'ի Միսր, և զերրորդն 'ի Հալպ. և անուանեաց զնոսա Թագաւորս և սուլտանս, և զայլսն ընդ ձեռամբ նոցա (3)։ Իսկ կայր եղբայր նմա Մելիք Ադէլ (Մալէք Աադէլ) անուանեալ և ետ նմա զՌուհա և զԽառան

(1) Աւագ որդի Խլիճ ասլանայ էր Քութպ—էտտին Մալէք Սալէհ, որ տիրեաց Մելետինի, Կեսարիոյ և Կոզանիոյ։

(2) Սալահէտտին եԹող եւԹն և տասն որդիս և եԹ, և դուստր մի։

(3) Մալէք Աֆտալ սուլտանեցաւ 'ի Դամասկոս, տիրելով և Պաղեստինի. երկրորդն Մալէք—Ազիզ' յԵգիպտոս. երրորդն Մալէք—Դահէր' 'ի Հալէպ։

և զՍուփարկին և զՍամուսատ և զԽլձպար, և զԲարաք և զՇաւպաք, և զայս հոգացաւ մօտ 'ի կատարած կենաց իւրոց : Իսկ Մօսլայ տէրն(1) արար միաբանութիւն ընդ եղբարսն իւր ընդ տէրն Ճզիրոյ և ընդ տէրն Մերտինայ և ընդ տէրն Խաղայ և ընդ Սնձարայ, և եկն նոքօք առնուլ զԽառան. և հիւանդացաւ 'ի Ճանապարհին և դարձաւ 'ի Մօսըլ, և այլքն ցրուեցան : Եւ Մելիք Յետըն գնաց և էառ զՄծբին և զԽաղա և զՊապուրն, և այլ ամիրայքն հնազանդեցան նմա որպէս և եղբօր իւրում Սալահադնին : Եւ գնաց Մելիք Յետըն 'ի կողմանս Հայոց 'ի Խլաթ, և ոչ կարաց առնուլ զնա, և դարձաւ : Եւ 'ի նոյն տարւոջ մեռաւ Ազադին (Ազզ—էտտին) տէրն Մօսլայ և ետ զտեղի նորա Նորադին որդին իւր :

Յայսմ ամի Լեւոն քաջ և անուանի իշխանն Հայոց ըմբռնեաց զԲրինձն Անտաքոյ (Պոէմոնտ), և արկ զնա 'ի չարչարանս՝ փոխարինել նմա զչարչարանս եղբօր իւրոյ Ռուբինոյ : Եւ եկն կոմսն Աքայոյ Սիր Հեռի (Հէնրի), մեծաւ աղաչանօք Թափեաց զԲրինձն և առաքեաց յԱնտաք(2) : Եւ ինքն արհագոյնն Լեւոն տիրեաց եւթանասուն և երկու բեր-

(1) Ազզ—էտտին Մասուտ՝ Թոռն Զանգեայ :

(2) Սմբատ, յէր. 108 :—Միշօդ, պատմութիւն Խաչակրաց. հա. Բ. Գլ. 9. յէր. 178 :

դի , էր զոր Նախնիքն իւր կալեալ էին և էր զոր յինքն էառ 'ի Յունաց և 'ի Թուրքաց։ Եւ անկաւ ահ և երկիւղ նորա 'ի վերայ ամենայն ազգաց սահմանակցաց աշխարհին իւրոյ։ Եւ ապաւինեցան 'ի նա որդիքն սուլտանաց . և եկն առ նա 'ի հնազանդութիւն Մելիքն Աբլասթին (Ալփսլթան) որ տիրէր վերադոյն աշխարհացն . և ել մեծն Լեւոն և էառ բերդ մի մերձ Կեսարիոյ և ետ նմա ։

Իսկ Թագաւորն Մսրայ Մելիք Ազիզն եկն 'ի Դամասկոս 'ի վերայ եղբօրն (Աֆտալայ), և գնաց հօրեղբայրն Մելիք Յետլն առնել խաղաղութիւն 'ի մէջ նոցա , և արար նենգութիւն մեծ , զի դեղեաց զՄելիք Ազիզն , որ և ընդ հասանելն 'ի Մսր մեռաւ . և առ զԵգիպտոս 'ի յինքն և զՄելիք Սալէհն խաբեաց թէ՝ « Դու կացիր խաղաղութեամբ 'ի հանդարտագոյն վայրսն 'ի Սամուսատ և 'ի յՈւռհա և 'ի Խառան և յՍիաղա , և ես կացից ընդդէմ Փռանգին և այլոց ազգաց ։» Եւ հաւանեցաւ նմա և ասէ . « Առլից զգանձ հօր իմոյ և գնացից . և դու կալ զԴամասկոս ։» Եւ նա ասաց . « Արի գնա , և ես զամենն բառնամ և առ քեզ յղարկեմ ։» Եւ ել և գնաց 'ի յՍիաղա և ոչ ընկալան և ոչ յՈւռհա և ոչ յայլսն . և գնացեալ 'ի Սամուսատ , և զայն ետուն 'ի ձեռս նորա , զի այնպէս էր պատուիրեալ ծածկաբար ։ Եւ Մելիք Յետլն

չոքեալ և տեսեալ զտունս գանձուցն Սալահադնին՝ ագահեցաւ և ոչ ետ . այլ մտեալ 'ի տուն մի լցեալ մատուտակ , և զայն եբարձ քսան բեռն և մատնեհարեաց ծածկաբար և առաքեաց առ նա ։ Եւ յորժամ ետես (Մելիք Սալէհ) զխաբէութիւնն, խոցեցաւ անմխիթար և ամաչեաց յոյժ . այլ ոչ էր ձեռնհաս առնել նմա ինչ , և ընկէց զդատաստանն յԱստուած որ յամենայնի բաւական է հատուցանել ։

Իսկ պարոնն Լեւոն որդին Ստեփանէ օր ըստ օրէ երթայր և զօրանայր Աստուծով յաջողեալ և յամենեցունց փառաւորեալ . և յայնժամ յորժամ ակարացոյց Աստուած շուրջանակի զթշնամիս նորա և 'ի կոր կործանեաց զամենայն հակառակորդս նորա , տիրեաց նա լիով երկուց Կիլիկեաց լերամբք և դաշտօք , քաղաքօք և ամրական դղեկօք . և առ քաջութեամբ իւրով և զհասարակն Ասորացւոց և մասունս ոչ սակաւս յերկրորդ Կապադովկացւոց , յԵրրորդ Հայոց , զոր ամանք Առաջին անուանեն Հայք . զրաւեաց ընդ իւրով իշխանութեամբ և յԱսորեստանեաց գաւառաց ։ Եւ ցուցաւ ինքնագլուխ և ճոխ իշխանութեամբ , զի ոչ ոք տիրէր 'ի վերայ նորա . և համբաւ արիութեան նորա թուլացուցանէր զջիլս անօրինաց և պարզէր զերեսս քրիստոնէից և լնոյր խնդութեամբ

և ուրախութեամբ, վասն որոյ փութային պատուել զնա թագիւ. Թագաւորն Յունաց վասն պատճառին՝ զի Թերևս հնար լիցի նովաւ յաղթել Թուրքացն որ բռնացեալ կային զիշխանութիւն նորա. իսկ Թագաւորն Փռանգաց վասն դաշանց սիրոյն զոր ունէին ընդ Հայս ուխտիւք 'ի հին ժամանակաց. և վասն այսորիկ երկոքին առաքեցին նմա թագ ոսկիակազմ, և պսակեցին զնա յաղթութեան պսակաւն ըստ վայելման և պատշաճի արժանաւորութեան իւրում (1): Իւ այսպէս վերստին նորոգեցաւ թագաւորութիւն Արամեան զաւակին, և Թագն Հայկազանց և Սենեքերիմանց եդաւ 'ի գլուխ արժանաժառանգ զարմին Լեւոնի 'ի ՈԽԵ (645) թուին Հայոց. այր քաջ և. ազատամիտ և արիական և հեզ և մեծահաւատ, որ և բազմացոյց զարդիւնս աստուածպաշտութեան, ելից վանօրայիւք և անապատաւորօք զաշխարհս իւր, և շինուածօք եկեղեցեաց, ընդմասն ազնիւ և զպարարտութիւն երկրի իւրոյ տալով նոցա և նուիրելով Աստուծոյ արձանագրութեամբ և կտակօք անլուծիւք: Իւ էր ահագին առ օտարսն և քաղցր բարեմիտ առ

(1) Սմբատ. յեր. 108—109: —Վահրամ. յեր. 215 — Կիրակոս (յեր. 91) պատմէ հանդերձ պարագայիւք զպատմանս որով հաճեցաւ կայսրն Ալամանաց և պապն Հռովմայ պատուել զԼևոն արքայական թագիւ:

իւրոն. ահաւոր առ անիրաւեալսն և ողորմած առ որբս և այրիս և առ աղքատս. և հեզ և խոնարհ առ ամենեսեան: Եւ այսպէս դրուատիւք Թագաւորեալ ամս քսան երեք[1] հանգեաւ ՚ի Քրիստոս բարի անուամբ և ուղղափառ հաւատով կենցաղավարեալ. Թողլով ժառանգ Թագաւորութեանն դուստր մի Զապէլ անուն, յանձնելով զնա մեծ իշխանին Սիր Ատնայ[2] սոսկալի երդմամբ տալ զնա որդւոյ Թագաւորին Ռընկուայ՝ մկրտելով զնա Հայ դաւանութեամբ, զի դեռ երախայ էր, որոյ Նենգել Ատնիկ[3] ըստ բնական ատելութեանն Յունաց ընդ ազգիս Հայոց, քանզի Հոռոմ էր ազգաւ, խորհէր ՚ի միտս յինքն առնուլ զիշխանութիւնն. վասն որոյ փութապէս ՚ի խնամոցն Աստուծոյ առնու զարժանն պատուհաս, սպանաւ ՚ի Հաշիշեացն սակաւ ժամանակս ինչ կալեալ զպայլութիւնն: Եւ յետ նորա առաւնա որդւոյ բրինձին Անտիոքու Փիլիպ անուն,

(1) Լեւոն Բ. Թագաւորեաց ամս 24. և ամենայն ամք իշխանութեան նորա եղեն 34. տեւեալ յամէ 1185—1219։

(2) Սիր Ատամ էր պայլ և տէր Պաղրասայ, զորմէ ասէ Միխայէլ որպէս և Կիրակոս (յէր. 109) թէ էր ազգաւ Յոյն. և սպանեալ ՚ի Հաշիշեացն՝ անց ՚ի տեղի նորա Կոստանդին տէր Բարձրբերդոյ. Իսկ անուն Ռընկուայ, որով նշանակի ազգն ուսկառացւոց, թուի եթէ սխալ իցէ օրինակչաց։

(3) Յօրինակին գնի ոխարին, որ յայտնի սխալ է փոխանակ գնելոյ Անտիոք ըստ օրուամ եղաք. և է Ատան այսյն։

որ տէրութեամբ գնայր ընդ Հայոց՝ ՚ի խըրատս հօր իւրոյ խաղեալ, և. թագաւորեալ ամս երկու՝ (1) վախճան էառ ՚ի կապանս։

Այլ թերևս կամք վերին խնամոցն տնօրինէր և դարձուցանէր զմարդկօրէն անհաստատութիւնն և զչարաբարութիւն ոմանց ՚ի բարիս. քանզի զայն գաւազանն փոքրիկ զոր ետ Աստուած հայկազանց ՚ի մխիթարութիւն լըքեալ և խոնարհեալ ազգին՝ փոխան բարձրացեալ թագաւորութեան նոցա, զայն ոչ կամեցաւ տալ ՚ի ձեռն օտար ազգի. վասն որոյ յետ բազում ժխորմանց և ամբոխից և վիճմանց՝ ընտրեցաւ որդին Պարոն Կոստանդեայ ՚ի թագաւորութիւն, զոր ընտրեալ էր Տէր յորովայնէ գեղեցիկ հասակաւ և բարի խորհրդով, մեծահոգի և երկայնամիտ, հեզ և հանդարտ ՚ի տիս մանկութեան. և տուաւ նմա յամուսնութիւն շառաւիղն օրհնութեան ազատուհին Զապէլ, անթերին ՚ի գովութենէ աստուածապաշտ և երկիւղած կնոջ, ողջախոհ և ցածուն և անզարդասէր և լռին, լիահաւատ և մեծայոյս, Քրիստոսասէր և սրբասէր, աղօթասէր, և ծերունի հանճարով ՚ի տղայութեան հասակի. և լըցաւ բանն Սողոմոնի թէ՝ Ի տեառնէ պատշաճի կին առն դ. զի վայելեն նոքա ՚ի մի

(1) Կիրակոս դնէ ամս չորս, յեր. 109. իսկ Վարդան դնէ համաձայն Միխայէլի ամս երկու. յեր. 185.

մարմին կատարիլ ՚ի Քրիստոս օրինօք ։ Վասն որոյ սիրեաց զնոսա Տէր և եհան ՚ի միջոյ նոցա զմեքենայսն սատանայի , որ զառաջինն հակառակէր ըստ բնական իւրոյ չարութեանըն . և յաջողեաց նոցա Տէր յամենայնի , և ետ նոցա ուստերս և դստերս (1) ։ Եւ է այժըմ թիւն Հայոց ՈՂԵ (695) (2) ։

Այլ որ ինչ ՚ի միջոցի աստ եղեն , և զայն ասասցուք համառօտ ։

Ի ժամանակս Թագաւորութեանն Հայոց Լեւոնի , յորում էր թիւն Հայոց ՈԿԵ (665) և ՚ի տէրութեանն Կապադովկացւոց աշխարհին Խոսրով շահ սուլտանին (3) և ՚ի ժամանակս Մելիք Յետլ սուլտանին որ բանացեալ ունէր զԵգիպտոս և զԵրուսաղէմ և զԴամասկոս և զՄիջագետս Ասորւոց և զԽլաթայ իշխանութիւնն , ելին զօրքն Փռանգաց յԱքայ հրամանաւ պապուն Հռոմայ , առնուլ ՚ի Տաճկաց զաստուածակոխ քաղաքն Երու-

(1) Կիրակոս , յեր . 110 . — Վարդան , յեր . 185—186 ։

(2) Միւս Թարգմանութիւնն աստանօր աւարտէ զպատմութիւն իւր , օրհնութիւնս մաղթելով Նորապսակ ամուսնացն Թագաւորելոց ։ Իսկ որ ինչ յետ այսորիկ՝ պատմի հանդերձ կրկնութեամբ ՚ի ժամանակակից արանց ։ Իսկ Հայոց թիւն ՈՂԵ թուի թէ առաջին օրինակողին իցէ , որում համարի յաւելեալ և որ ինչ զՋապելէ և զՀեթմոյ պատմի , քանզի բանք պատմութեան Միխայէլի հասանէ մինչև ցառաջին ամ թագաւորութեան Լեւոնի Բ ։

(3) Կայխաթ — եառին Քայխոսրու որդի Խլճ — Ասլանայ Բ.

սաղէմ(1). զոր լուեալ զհամբաւ ելիցն նոցա ազգքն . . . նաց՝ սրտաբեկեալ լինէին. խսկ որդի Մելիք Ատել սուլտանին գնացեալ յԵրուսաղէմ քակեաց զսուրբ Սիոն՝ որ կոչի մայր եկեղեցւոյ, և այլ բազում ուխտեր և եկեղեցիք, և զՆազարեթայ եկեղեցին, և Թողին զսուրբ գերեզմանն Քրիստոսի Աստուծոյ մերոյ՝ զՅարութիւնն և զԳողգոթայն, և զԲեթղահէմի եկեղեցին և զայլն ամենայն, և զպարիսպն Երուսաղէմի առ հասարակ քակեցին(2): Եւ հայր նորա Մելիք Ատելն արարեալ ժողով ամենայն զօրաց իւրոց առ ծովուն Տիբերիական բանակեալ կոեղի առնոյր: Եւ լուեալ Հոռոմայեցի զօրացն՝ դի-

(1) Յայսմ արշաւանի զօրանէր և իշխանն Կիպրոսի Լուսինեան և Թագաւորն Ունկարիոյ Անդրէաս, որոց տեսեալ զանյաջող ելս պատերազմին, առաջինն մինչ խորհէր դառնալ յետս՝ մեռաւ անդէն յԱսորիս. և երկրորդն դարձաւ յերկիր թագաւորութեան իւրոյ: Յետ մեկնելոյ նոցա հասին 'ի Պաղեստին այլ զօրք խաչակրաց. Հոլանտացիք, Գաղղիացիք, Իտալացիք, և մտին ընդ դրօշու Լէոպոլտի դքսին Աւստրիոյ, և անցին անտի նաւուք յարձակել 'ի վերայ Տիմիաթու, յամի 1217:

(2) Ըստ պատմութեան խաչակրաց Մալէք Մուազամ—Իսա որդին Մալէք—Ատէլայ յետ առնելոյ փռանգաց Տիմիաթու. 'ի դիմել նորա յԵգիպտոս յօգնութիւն եղբօր իւրոյ Մալէք—Քամէլայ, չոգաւ նախ յԵրուսաղէմ և կործանեաց զամուրսն նորա և զաշտարակսն զորս Սալահէտտին շինեալ էր. բաց յամրոցէն Դաւթի. նոյնպէս և զամրոցն որ 'ի Թափօրական լերին և զայլ բերդորայս որ գտանէին 'ի Պաղեստին. իսկ 'ի կործանմանէ եկեղեցեաց ոչ ինչ յիշատակեն:

մեցին գնալ 'ի վերայ նոցա պատերազմել. և որչափ սոքա մօտենային 'ի բանակն նոցա, նոքա օԹեւանօք մի ընդ կրունկն դարձեալ հեռանային։ Եւ յերկարէր այս 'ի բազում աւուրս, մինչեւ ձանձրացեալ քրիստոնէիցն կամեցան յետս դառնալ՝ երկուցեալք 'ի խաբէութեանց նոցա. և յաղագս անծանօԹութեան աշխարհին խորհեցան դառնալ յԱկքայ, և համախմբութեամբ ամենայն զօրագլխացն խորհուրդ առեալ իջին յԵգիպտոս. և հասեալք 'ի քաղաքն որ կոչի Տիմիաթ պաշարեցին զնա և 'ի ներքս արկեալ ընդ յերկար, մինչեւ երրորդ մասն քաղաքին սատակեալ լինէր 'ի սովոյ և 'ի տարաժամ մահուանէ որ անկաւ 'ի նոսա. և ապա առին զքաղաքն և կոտորեցին զմնացեալսն առ հասարակ, և առին յաւարի զմԹերս գանձուց նոցա, և լցան առ հասարակ ոսկւով և արծաԹով։

Եւ յայսմ ամի մեռաւ Մէլիք Ադելն. և որդիք նորա Մէլիք Քէմլն սուլտանն Եգիպտոսի և Աշրաֆն (1), և սուլտանն Դամասկոսի Մուղատամն (2), և այլ եղբարք նոցա

(1) Մալէք—Աշրաֆ էր եղբայր Մալէք—Քամելայ և սուլտան Միջագետաց. Կիրակոս, յեր. 111.

(2) Անդրանիկն յորդիս Մալէք—Ադելայ՝ Մալէք—Քէմլն (Քամէլ) սուլտանացաւ յԵգիպտոս, երկրորդն Շէրիֆ—Էտտին Մալէք—Մոազամ—Իսա, զոր պատմիչք մեր Մուղատամ

առ հասարակ արարեալ ժողով բազում և անհամար զօրաց ։ Եւ 'ի Թուին Հայոց ՈԿԶ (666) մտին Եգիպտոս, բայց յերկիւղէ լեալ ոչ իշխէին պատերազմել ընդ քրիստոնեայսն. և նոյն իսկ քրիստոնեայքն իբրև առին զՏիմիաթն(1), կամեցան երթալ առնուլ և զայլ քաղաքսն։ Եւ էր ընդ նոսա Թագաւորն Աքայոյ Ռէտձուանն(2) փեսայն Հայոց Թագաւորին Լեւոնի և Դամիէն և Սափիթայն, և այլք բազումք յիւրաքանչիւր կողմանց յարելոց 'ի նոսա. և գնացեալ բազմութիւն զօրացն բանակեցան առ ափն Նեղոս գետոյ, 'ի հարթայատակ դաշտի միում։ Եւ իմացեալ . . . նացն լուծին զկապս ջրաբուխ տեղեացն, և ելեալ ջուրն շրջապատեաց զզօրսն և Սահմետականքն յարձակեալք 'ի վերայ նետաձգութեամբ սկսան

անուանեն, եկաց իշխան Դամասկոսի. և այլք յորդւոց Մալէք—Ատելայ իշխանեցան 'ի վերայ Բասրայու, Արեգ քաղաքի (Բաալբէք), Միջագետաց, և այլն։

(1) Տիմիաթ առաւ 'ի փռանգաց յամի 1219 յամսեանն նոյեմբերի.

(2) Ժան տը Պրիէն, զորմէ խօսի Միխայէլ կոչելով զնա Ռէտձուան, էր թագաւորն Երուսաղէմի, որ ամուսնացաւ ընդ դստեր Ամաւրեայ, որ էր ժառանգուհի անկեալ թագաւորութեանն Երուսաղէմի։ Եթող նա զՏիմիաթ 'ի Մալէք—Քամէլ՝ դաշնաւորեալ ընդ նմա և առեալ փոխարէն զփայտ խաչին որ կայր առ նոսա 'ի գերութեան յաւուրց անտի պատերազմին որ 'ի Տիբերիա ընդ Սալահէտտինի, և դարձաւ յետս 'ի Պտղոմայիդ.

խոցոտել զամենեսեան մինչեւ անդոյս լինելոյ քրիստոնէից 'ի մրկութենէ . տուրին զքաղաքն զոր տուին , և յանձն առին դառնալ յիւրեանց աշխարհն. և դաշինս եդեալ հաստատութեամբ մնալ 'ի նոյնն . երդուան և սուլտանայքն նոցա անխախտ պահել զամենեսեան ։ Եւ այսպիսի շփոթս հասեալ զօրացն քրիստոնէից՝ դարձան 'ի տուն իւրեանց ։

Իսկ Մելիք Յետոյն 'ի վախճանելն իւրում զաւագ որդին զՌէժմն կացոյց իշխան 'ի վերայ այլոցն , և ամենեքեան հնազանդեցան նմա, զի էր բարեբարոյ և իմաստուն և առատաձեռն առ ամենեսեան . նոյնպէս և իւր եղբայրն Նշրաւին, որք կալան զիշխանութիւն հօրն իւրեանց բազում ժամանակս (1)։

Ի թուին Հայոց ՈԿԷ (667) Քէքաուզ սուլտանն Հոռոմոց , որդի Խոսրով շահ սուլտանին , յաղթող եղեալ քան զհայրն իւր , լինի պատճառ շմորի ընդ թագաւորն Հայոց Լեւոն . և բազում զօրս ժողովեալ հասանէ 'ի Կոկիսոն Հայոց, և պաշարէ զամուր դղեկն որ կոչի Կապան , և բազում աւուրս մարտուցեալ ոչ կարաց առնուլ զնա ։ Եւ թագաւորն Հայոց Լեւոն զիւրոյ աշխարհին զօրքն գումարէր և փութայր ելանել ընդ

(1) Այս Աշրաֆ որ զկնի մահուան հօրն տիրացաւ Խըլաթայ , առ 'ի կնութիւն զդուստր Իւանէի զԹամթա. Վարդան , յեր . 182 ։ — Կիրակոս , յեր . 96 ։

առաջ նորա, և նորին զօրագլուխն Պարոն Կոստանդին գունդստապլն, որ էր քեռորդի Թագաւորին Լեւոնի, առեալ սակաւ ինչ գունդս 'ի զօրացն, յառաջ մատուցեալ 'ի կիրճս լերանցն, և պատահեալ գնդի միում 'ի զօրացն Թուրքաց, և անկեալ 'ի վերայ՝ զամենեսեան կոտորեաց, և ըմբռնեաց 'ի նոցանէ արս գլխաւորս՝ որք ազդեցին նմա զբուն գալուստ զօրացն սուլտանին, և աղաչէին դառնալ և բաւական համարել զյաղթութիւնն զոր արար։ Իսկ նորա ոչ անսացեալ բանիցն նոցա և առաւել ևս յամառեալ և քաջալերեալ զզօրսն՝ հանդիպի ծանր զօրու կուռ վառելօք զինու, և 'ի պարտութիւն մատնի գունդստապլն և զօրքն որ ընդ իւր, և ըմբռնեցան ինքն և պարոն Կոստանդին լամբրոնցին և Կեռասակն (1) և այլ մեծամեծ իշխանք. Թող զորս կոտորեցան 'ի նմին տեղւոջ իբրև հազար այր պատերազմող, և ըմբռնեալ զնոսա դարձաւ 'ի Կեսարիա։ Իսկ Թագաւորն Լեւոն իբրև լուաւ զկոտորումն զօրացն և զըմբռնումն իշխանացն, առեալ զզօրս իւր արշաւէր 'ի միւս այլ կողմն աշխարհին Հոռոմոց, և բերէր աւար անթիւ և կոտորէր իբրեւ զաւազ առ ափն ծովու. և յետ սակաւ

(1) Կեռասակն. Թուի ասել Կիռ Սահակ, էր իշխան և տէր Մաղվոյ և Սիկոյ բերդից, որ առաջիկայ գոլով և հանդիսի Թագադրութեան Լևոնի. Սմբատ, յեր. 112։

աւուրց արարեալ սէր ընդ միմեանս, եւ Թագաւորն Հայոց [Լեւոն զերրորդն] լուսյ, և Թափեաց զիշխանսն որ ըմբռնեալ էին, և խոստացաւ տալ Հռոմոց սուլտանին յամենայն ամի երեք հարիւր այր 'ի ծառայութիւն, և հնազանդեցաւ նմա. և այս լինէր 'ի ծերութենէ և յանկարութենէ մարմնոյն, և իշխանքն ոչ էին ընդ նմա ուղիղ(1)։

Եւ 'ի սոյն իսկ յայսմ ամի արարեալ ժողով սուլտանն Կէքաուզ՝ զօրաց, առեալ և 'ի Թագաւորէն Հայոց օգնականութիւն,

(1) Սմբատ և Վահրամ փոքր մի տարբեր պատմեն զայսմանէ։ Սմբատ (յեր. 117), թէ Ալղ—էտտին Քայքաւուզ սուլտանն Իկոնիոյ որ 'ի Սելճուկեանց, 'ի ծերութեան Լեւոնի կամեցաւ քինախնդիր լինել վասն հանելոյ նորա յիւրմէ զԱնտիոք և զԼարենդա քաղաքս. եկն և պաշարեաց զԿապան։ Եւ Լեւոն առաքեաց 'ի վերայ նորա զպարոն Կոստանդին սպարապետն իւր և զպարոն Ադամ բազմութեամբ զօրաց. որք անխորհրդաբար 'ի մարտ մտեալ գերի անկանին Կոստանդին սպարապետ և Կեռասին և այլք յիշխանաց և 'ի հեծելազօրաց. և բազումք 'ի զօրացն խորտակին։ Իսկ Քայքաւուզ առեալ զգերիսն դառնայ յԻկոնիոն, և պահէ զնոսա 'ի բանտի ամ մի և ամիսս չորս. մինչեւ գթացեալ 'ի նոսա Լեւոն, տայ սուլտանին զԼուլվայ բերդ և զգետն Իսաւրիոյ և զայլ տեղիս և զիշխանսն իւր ազատէ 'ի գերութենէ։ Եւ Վահրամ ասէ եթէ տեսեալ Լեւոնի զպարտութիւն՝ զօրաց իւրոց, ոչ ինչ ընդ այն տխրեալ, դիմէ մղոցեալ զօրքն իւրովք յերկիրն սուլտանին. և տապաստակեալ բազում աւարաւ և գերութեամբ դառնայ։ Լուեալ սուլտանին զաւեր աշխարհին իւրոյ, երդումն տայ Լեւոնի 'ի խաղաղութեան կալ ընդ նմա. և զիշխանսն Հայոց յետս դարձուցանէ։ (Յեր. 216)։

գայ յերկիրն Հալպայ 'ի Սապան, և առ ըզնա. և անտի գնացեալ 'ի Թլպաշար, առնու և զԹլպաշար և զԱյնթապ։ Եւ կամեցաւ գնալ 'ի վերայ Հալպայ. և երեք ամաւ յառաջ սուլտանն Հալպայ վախճանեալ էր՝ Մելիք Տահրն, և որդի նորա Մելիք Ազիզն մանուկ գոլով ամաց հնգից՝ ունելով զիշխանութիւնն։ Եւ էր նորա աթապակ մի յոյժ իմաստուն, առաքեաց առ Թագաւորն Հայոց Լեւոն, և խնդրեաց 'ի նմանէ օգնական լինել, թերեւս զերծանիցին հնարիւք նորա 'ի հասեալ բարկութենէն. և խոստացան նմա տալ բազում գանձս ոսկւոյ։ Եւ Թագաւորն Հայոց այնուհետեւ 'ի հոգս անկեալ խորհուրդ կորովամիտ իմաստութեամբն, առաքեաց զանխլաբար առ սուլտանն Հոռոմոց մինչ 'ի սահմանս Թլպաշարայ էր, գրեալ առ նա այսպիսի օրինակաւ. «Թագաւոր Հայոց Լեւոն, եղբօր մերոյ Քէքաւուզ սուլտանիդ՝ 'ի տէր խնդալ։ Յուշ լիցի քեզ իբրեւ սիրելւոյ մերում, զի իմացեալ հաստատեցաք եթէ քառասուն ամիրայ 'ի զօրաց քոց դաշինս եդեալ են տալ զքեզ 'ի ձեռն Աշրափուն. և դու այսուհետեւ զօգուտ անձին քո խորհեաց, զի մի անկցիս 'ի ձեռս ատելեաց քոց. ողջ լեր։» Եւ իբրեւ ընթերցան առաջի նորա զպատճէն նամակին, խակոյն զարհուրեալ ահիւ մեծաւ, հրաման

տայր զօրացն դառնալ անդրէն. փութանակի. և ինքն յառաջ անցեալ աճապարէր գնալ։ Զոր իմացեալ Աշրափուն և զհետ մտեալ՝ արար փախստական. և ինքն դարձեալ էառ զՄապան և զԹըլպաշար և դարձոյց 'ի Հալպ. և այսպիսի օրինակաւ այնքան մեծ սուլտանն չփոթեալ 'ի պարտութիւն մատնէր. և հասեալ 'ի Կեսարիա՝ զամիրայն զայնոսիկ զքառասուն խաշել հրամայէր։

Նոյն յայսմ ամի եկն դեղին մարախ, և ծածկեաց զերկինս և զդաշտս, և եկեր զամենայն ծառ սահմանաց մերոց մինչև խապառ զերիս և զչորս ամս։

Ի ՌԿԸ (668) Թուականին Հայոց Լևոն Թագաւորեալ ամս քսան և երեք մեռաւ, և յանձն արարեալ զիշխանութիւն աշխարհին. և զդուստր իւր զԶապէլն 'ի Միր Նտանն, որ էր ազգաւ Հոռոմ, և զկնի սուղ ժամանակի սպանաւ 'ի Հաշխշեացն, որպէս վերագոյնն գրեցաւ. և առնու զհոգաբարձութիւն աշխարհին պարոն Կոստանդին, որ էր քեռորդին Թագաւորին Հայոց Լևոնի։

Յայսմ ժամանակի ոմանք յիշխանացն Հայոց ապստամբեալք եղեն ընդ Ռոբինայ բրինձին Անտիոքու (1), կամելով զնա Թագա-

(1) Ռուբէն բրինձ (իշխան) Անտիոքու՝ էր որդի Պալտնոյ (Պատուէն) որդւոյ Պեմնդայ (Պոհեմոնդ) կոմսին Անտիոքայ։ Եւ էր ծնեալ Ռուբէն 'ի հայազգի մօրէ Աղխա (Ա-

ուրեցուցանել, յորոց էր Ղօշէն մարաջախտ և Լեւոն Կապնուն տէրն և Կեռասակն, և այլք․ որք առեալ զբրինձն Ռուբէն և մտին 'ի Տարսուս և ամրացան։ Իսկ պարոն Կոստանդին և տէր Յովհաննէս կաթուղիկոսն գնացին զօրօք և պաշարեցին զնոսա սուղ ինչ ժամանակս, և յաղթեցին նոցա և առին ըզքաղաքն, և ըմբռնեցին զապստամբսն որ և ամենեքեան բանտարգեալք եղեալ վախճանեցան 'ի կապանս, և հանդարտեցաւ երկիրն (1)։ Իսկ տէր Յովհաննէս կաթողիկոսն յառաջ քան զառնուլ քաղաքին վախճանեցաւ 'ի թուին Հայոց ՈԿԹ (669). և ապա միաբանութեամբ ամենայն իշխանացն և եպիսկոպոսացն ընտրեցաւ յամենեցունց տէր Կոստանդին (Ա) որ էր եպիսկոպոս Սլիճոյն (2).

լիս) անուն, դուստր Ռուբենի Բ․ զոր առեալ էր Գալանոյ այսու դաշամբ, զի Գեմանոս հայր նորա զկնի վախճանին իւրոյ զնա ինքն զԳալանին կարգեսցէ յաջորդ փոխանակ երեց եղբօրն Ֆիլիպի․ որ ամուսնացաւ յետոյ ընդ Զապելի դստեր Լեւոնի․ և իշխեաց Հայոց ամս երկուս։ Գրէ Վահրամ ըստ մասաց Միխայելի, եթէ Ռուբէն բաղում իշխանս յինքն յանգուցեալ՝ դայ և առնու նախ զՏարսոն, և յառաջ մինչև 'ի Մսիս․ և Կոստանդին զօրավար դիմեալ զօրօք 'ի վերայ նորա, զբռնամբ ածէ զՌուբէն 'ի Տարսոն քաղաքի և զհամախոհս իւր և արկանէ զնոսա 'ի բանտ, ուր և մեռանին։ (Յեր․ 217—218)։

(1) Այս դէպք կարեւոր ոչ յիշատակի 'ի գիրս պատմութեան Միքայէլ վարդապետի Չամչեան․ նոյնպէս և ոչ գործք Քայքայուղ սուլտանին որ նախ քան զմահն Լեւոնի։

(2) Կոստանդին կաթողիկոս էր 'ի Բարձրբերդոյ, սնեալ 'ի վանս Մաշքեւանոյ։

և եղաւ յաԹոռ հայրապետուԹեանն Հայոց 'ի Թուին ՌՃ (670)․ և եղեւ ուրախուԹիւն ամենեցուն յաղագս առաջինւոյ և բարեբարոյ և խաղաղասէր մտացն, որով ամենեցուն հռչակաւոր լինէր։ Իսկ իշխանացն Հայոց բազում՝ անմիաբանուԹիւն լինէր վասն ընտրելոյ Թագաւոր, զի ոչ հաւանէին միմեանց, և ապա 'ի մի կամս եկեալ ընտրեցին զորդին բրինձին Անտիոքու Թագաւորեցուցանել, զոր և արարին իսկ, և ետուն զդուստր Թագաւորին Հայոց Լեւոնի նմա 'ի կնուԹիւն. և Թագաւորեցուցին 'ի վերայ Հայոց 'ի Թուին Հայոց ՌՃԲ (672), և անուանեցին զնա Փիլիպ Թագաւոր։

Ի Թուին Հայոց ՌՃԲ (672) եղեւ երաշտ սաստիկ և յերկարեաց յոյժ, մինչ զի 'ի Դեկտեմբերի հասարակն նշենիք ծաղկեալ եղեն 'ի ջերմուԹենէ օդոյն՝, և անպատմելի վշտօք տառապէր երկիր զերիս և զչորս ամս։ Յայսմ ժամանակի մեռաւ սուլտանն Քէքաւուզն, և առնու զսուլտանուԹիւնն կրսեր եղբայր նորա Ալադինն (1)։

Ի Թուին Հայոց ՌՃԳ (673) Փիլիպ Թագաւորն Բոփըրոնդ հօր իւրոյ (Պեմունդայ) կամեցաւ ըմբռնել զերկուս մեծամեծ իշխանսն, զպարոն Կոստանդին որ էր Թագա-

(1) Ալա—էտտին Քէյքապատ.

ւորահայրն և զպարոն Կոստանդին Լամբրու-
նին տէրն (1). զոր խմացեալ յառաջեաց պա-
րոն Կոստանդին (Թագաւորահայրն), և ըմ-
բռնեաց զնա 'ի Թիլն Համտնոյ, և տարաւ
'ի Նարծրբերդ և անդ վախճանեցաւ (2)։ Իսկ
հայր նորա բրինձն Նորիզքու լուեալ՝ տրտ-
մեցաւ յոյժ. և զի անկարանայր առնուլ ըզ-
վրէժ որդւոյն, առաքէ առ Նղադին սուլ-
տանն Հռոմոց, որոյ եկեալ էառ զՃանձին
և զԿանչին, և զՄազոտ խաչն (3), և արար
վնաս բազում 'ի լեռնակողմանս. և բրինձն
ժողովեալ զօրս եմուտ յերկիրն, եկն ընդ-
դահմանան որ կոչի Ճ'կեր, և եհաս մինչեւ
'ի Թիլն Համտնոյ, և ոչ ինչ օգտեալ դար-
ձաւ ամօթով յՆտաք։

Ի Թուին Հայոց ՈՀԵ (675) միաբանու-
թեամբ ամենայն իշխանացն տուին զԶա-
պէլ դուստր Լեւոն Թագաւորին 'ի կնու-
թիւն Հեթմոյ որդւոյ պարոն Կոստանդեայ,
և Թագաւորեցուցին 'ի վերայ Հայոց, որ էր
տղայ հասակաւ. և հայր նորա կարգաւորէր
զԹագաւորութիւնն, որ և արար սէր ընդ

(1) Այս Կոստանդին էր որդի պարոն Հեթմոյ՝ որդւոյ Օշնի, որք էին տեարք ամրական ամրոցին Լամբրոնի. վասն որոյ և ազատամեծք էին միշտ ազգային իշխանութեան, զորս Լեւոն Բ նուաճեալ՝ առեալ 'ի նոցանէ զամրոցն։

(2) Սմբատ. յեր. 121։

(3) Ճանճի և Կանչի և Մազոտ խաչ էին առանձին ամրոցք, որոց իշխէին Պարոնք։

Աշադին սուլտանն և հնազանդեցաւ նմա՝ տալով նմա յամենայն ամի երեք հարիւր այր ՚ի ծառայութիւն (1)։

Յայսմ ժամանակի լուաք զհամբաւ երկուց ազգաց անաստուածից և գազանաբարոյից, որոց անուանքն խորազմ և Տաթար, որք իբրև հուր ընդ խոտի ընթացեալ ապականեցին զերկիր ուր և հասան, և ոչ ոք ընդդիմացաւ նոցա, և սարսեցին ՚ի համբաւոյ նոցա ամենայն որ ՚ի ներքոյ երկնից։ Այլ սկիզբն ելից նոցա ՚ի բուն աշխարհէն իւրեանց ՚ի վաղուց ժամանակաց է, և զբազում աշխարհս և զազգս և զթագաւորութիւնս աւերեալ և քանդեալ հասին յաշխարհն արեւելից։

Նա յայսմ ժամանակի Թագաւորէր Վրաց դուստր Թամարին Ռուսուդուքան, և էր աթաբակ նորա Իւանէ՝ եղբայրն Զաքարիայի, որ էին ազգաւ Հայք, և ՚ի հրապուրանաց Թամարին Վրացի եղեւ Իւանէ, և ՚ի հակառակս դառնայր կրօնից Հայոց (2)։ Նա յայսմ ժամանակի ՚ի գաւառն Բժնոյ եղեւ նշան ինչ. զի կրօնաւոր մի սուրբ և ընտրեալ վախճանեալ, Հայ ազգաւ (3), որոյ գերեզմա-

(1) Սմբատ ասէ. թէ յանձն առ պարտս Կոստանդին հայր նորա տալ ամ յամէ չորեքհարիւր հեծեալ։

(2) Կիրակոս. յեր. 96։

(3) Վարդան (յեր. 188), ասէ թէ էր երէց Պարկեշտ

ւորն երկնաւոր լուսովն մկրտեցաւ և փառա-ւորեցաւ, որ ամենեքեան տեսին. և ել համբաւ նորա ընդ ամենայն երկիրն։ Իսկ Իւանէի նախանձ շարժեալ ամենայն Վրացեօքն, նախատէին և Թշնամանէին. և յետոյ զոսկերս սուրբ կրօնաւորին հրամայէին այրել հրով. և 'ի տեղի պատուական ոսկերացն սատակեալ շուն Թաղել։ Եւ եպիսկոպոսն Բջնոյ տէր Յովհաննէս բազում բանիւք յանդիմանէր զանաստուածն Իւանէ. իսկ նա սպառնայր կամ դարձուցանել 'ի վրացութիւն զամենայն Հայս, և կամ հանել յաշխարհէն։

Եւ մինչ յայսոսիկ էին, եհաս համբաւ Խորազմին (1), և նոքա փութով ժողովեալ զօրս կամէին ելանել ընդդէմ նոցա 'ի դաշտամէջն Գառնի քաղաքի (2), զոր շինեաց մեծ արքայն Հայոց Տրդատ, բերդ և սարաւոյթ 'ի մեծամեծ վիմաց Թագաւորութեան իւրոյ, որ կայ անխախտելի մինչեւ ցայսօր։

անուն, յորոյ զերեզմանին վերոյ կառուցաւ յետոյ եկեղեցի։

(1) Խորազմիա է աշխարհ 'ի հիւսիսոյ Խորասանու, յորոյ անուն և բնակիչքն կոչին Խորազմիք, կամ Խորազմեցիք։ Զայսու ժամանակաւ տիրէր այսմ երկրի Մոհամմէտ Խորազմշահ՝ հայր Ջալալադնի, որ և Ճէլալէտտին, որ կործանեաց զԹագաւորութիւնն Խորազմեայց։

(2) Գառնի քաղաք շինեցաւ նախ 'ի Գեղամայ նահապետէն և անուանեցաւ Գեղամի, յետոյ նորոգեալ 'ի Թոռանէ նորին Գառնկայ անուն՝ կոչեցաւ Գառնի։ Մովսէս Խորենացի, Ա. 12։ Իսկ Տրդատ շինեաց անդ տուն հովանոց զարմանաշէն յանուն քեռ իւրոյ Խոսրովիդխտոյ։ Անդ. Բ. 87։

Իսկ ամբարիշտն Իւանէ ամենայն զօրօքն Վրաց գնաց և իջաւ 'ի լեառն Գառնոյ, որ կոչի Աղուէջերին. և ապա խորհեցան միաբան առաքել զմեծ իշխանն քաջ և անուանի զԻւանէ զեղբայր Շալուային(1) փոքր ինչ զօրօք ընդ առաջ Խորազմին. որոյ հասեալ 'ի դաշտըն Գառնոյ որ կայր առաջի իւրեանց հարիւր մղոնօք 'ի զատէ. ապա ընդդէմ ելին անօրէն Խորազմիքն, և սկսան պատերազմել ընդ նմա. և յորժամ խառնեցան 'ի միմեանս Իւանէ եղբայր Շալուային(2) և Խորազմիքն, յայնժամ առաքեաց զմի 'ի զօրաց իւրոց առ մեծ զօրհեծելոյն գալ փութանակի յօգնութիւն նմա. և նա 'ի գնալն ձայնէր որպէս սովորութիւն է, թէ՝ շուտով հասիք։ Եւ ձայնն ձիաւորին ոմանց լսելի լինէր թէ՝ փախիք և մի՛ գայք, զի չե՛նք կարող դիմանալ սոցա. և ոմանց լսիւր թէ՝ փութանակի հասիք, կարող ենք յաղթել։ Եւ մինչ 'ի յայս էին,

(1) Իւանէ և եղբայր իւր Շալուէ էին իշխանք աւագք Վրաց։

(2) Կիրակոս որ զայս պատերազմ պատմէ, (յեր. 131) ասէ զայսոր Իւանեայ, եթէ ուխտ եդեալ էր ընդ Թագաւորին Վրաց, զի թէ յաղթեսցեն Խորազմեայց, զամենայն Հայս որ ընդ իշխանութեամբ իւրեանց կային, դարձուսցեն բռնի 'ի կրօնս Վրաց։ Այլ ընդ հակառակն զօրք նոցա անկեալ 'ի գերութիւն՝ բռնաբար թլփատեցան 'ի Խորազմեայց։ Եւ եղեւ այս ըստ Կիրակոսի 'ի թուին Հայոց ՈՀԴ. այն է 1225.

փախեաւ աթաբակն Իւանէ անկանիլ յամուրս երկրի իւրոյ, և բազմութիւն զօրացն փախստեամբ անկանէին 'ի գիւղաքաղաքն Գառնի, որ շինեալ է 'ի վերայ բարձր քարախորամի, և գետ յորդ անցանէր ընդ տակ խորամին: Եւ յորժամ 'ի փախուստ դարձան անկանիլ յամուրս ամրոցացն, նոյն ժամէն մրրիկ փոշւոյ մթացոյց զաչս փախուցելոցն. և առ հասարակ լցան ընդ բարձր և ընդ յորձ ահագին խորամն Գառնոյ 'ի գետն յորձանուտ: Եւ խորազմիքն յետոյ հասեալ զմնացեալսն որոյ մնանէին, և ասացին թէ՝ ալամ (1) վրացւոյն հրով այրեցաւ, նշանակեալ թէ՝ աստուածային է բարկութիւնն: Իսկ զքաջ իշխանն Շալւէ ըմբռնեցին կենդանւոյն, և տարան առ սուլտանն իւրեանց: Եւ այսպիսի ահագին վրէժ էառ Աստուած յամբարտաւան և 'ի կենցաղասէր ազգէն Վրաց, վասն անարգելոյ նոցա զհաւատս Հայոց:

Իսկ Պարսիկքն որ 'ի Դուին քաղաք, լուեալ զպարտութիւն Վրացւոյն, ըմբռնեցին զգլխաւորս քաղաքին և սպանին, և ապա սուր եդեալ կոտորեցին զամենայն քրիստոնեայսն որ 'ի քաղաքին: Եւ զայստիկ լուեալ քաջ և անուանի իշխանն Հայոց որդին մեծին Վասակայ՝ Թոռն Հաղբակայ, Պռօշ

(1) Այն է դրօշ. Սանճաք:

անուն, և առեալ զզօրս իւր գնայ 'ի Դը-
ւին, և գտեալ պատճառս բանի մոլէ 'ի քաղա-
քըն սիրոյ պատճառաւ, և զուգէ սէր խա-
բէութեամբ, և կոչէ զամենայն մեծամեծսն
որ 'ի նմա. և 'ի սիրելն զնոսա՝ յանկարծակի
յիշէ զկոտորումն քրիստոնէիցն թէ զինչ
պատճառաւ արարին. և ապա հրամայեալ
զօրացն իւրոց, առ ժամայն սուր 'ի վերայ
եդեալ կոտորեցին առ հասարակ, և ինքն
դարձաւ խաղաղութեամբ 'ի տուն իւր։

Յայսմ ժամանակի եկին Խորազմիքն և
պաշարեցին զմեծ քաղաքն Վրաց զՏփխիս.
և Պարսիկքն որ կային 'ի քաղաքին, ետուն ըզ-
քաղաքն 'ի ձեռս Խորազմեացն. և Խորազմիքն
խոստացան թողուլ զՊարսիկսն խաղաղու-
թեամբ ստացուածօք իւրեանց։ Եւ ապա ա-
ռեալ զքաղաքն կոտորեցին զամենայն քրիս-
տոնեայսն որ 'ի նմա, նոյնպէս և զՋհուտան
և զամենայն ազգ բաց 'ի Պարսիցն (1). և ա-
ւարեալ ընդ ձեռամբ իւրեանց զքաղաքն
գնացին։ Եւ 'ի գալն գառնանային ժամա-
նակին, եկն Թագաւորն Վրաց 'ի Տփխիս,
և կոտորեաց զՊարսիկսն որ 'ի նմա. և մը-
նաց քաղաքն աւեր 'ի մարդոյ և յանասնոյ։
Յայսմ ամի աստղ մի գիսաւոր երեւեցաւ
յերկինս, և անյայտ եղեւ։

(1) Կիրակոս, յեր. 132.

Ի Թուին Հայոց ՈՀԷ (677)․ Ալամանաց Թագաւորն Ամբրուրն[1] ել բազում զօրօք 'ի Կիպրոս կղզի․ և գնացեալ յԵրուսաղէմ երկրպագեաց սուրբ տեղեացն։ Իսկ Փրերք Դամբլունա[2] ռաքեցին 'ի Քէմլն, որ էր սուլտան Մսրայ, գալ նմա զօրօք, որպէս զի առացեն զԱմբրուրն 'ի ձեռս նորա։ Իսկ Քէմլն առեալ զԹուխտ Փրերացն և յղեաց առ Ամբրուրն, և եցոյց նմա զնենգութիւն ազգին իւրոյ․ և ետ սիրով զԵրուսաղէմ յԱմբրուրըն․ և հաստատեցին ընդ միմեանս դաշն և ուխտ սիրոյ յաւիտեան։ Եւ Ամբրուրն առեալ զԳերեզմանն[3] եւ 'ի Յաանգն, և հանին զՏաճիկքն։ Եւ ինքն Ամբրուրն գնաց յաշխարհն իւր․ և յայնմ հետէ սպառնայր Դամբլուն քակել զտունս նոցա որ յայնկոյս ծովուն։

(1) Այն է կայսրն (Ամբրուր․ Empreur) Փրետերիկոս Բ, որդին Հենրիկոսի Զ։

(2) Դամբլուն փրերք՝ են եղբարքն Տաճարականաց կարգի, որք մղէին և պատերազմէին ընդդէմ Այլազգեաց․ և զօրաւորք էին յայնժամ քանակաւ և մեծութեամբք․

(3) Ոչ միայն Գերեզմանն սուրբ, այլ և բովանդակ քաղաքն Երուսաղէմ առաւ Փրետերիկոսի 'ի սուլտանէն հանդերձ պայմանաւ և դաշամբ սիրոյ տասն ամաց և վեց ամսոց․ Իսկ կայսրն պսակեալ անդ առաջի Գերեզմանին Թագաւոր Երուսաղէմի՝ առանց եկեղեցական արարողութեան, քանզի նզովեալ էր 'ի պապէն, թողեալ և զՏաճարն սուրբ Յարութեան և զքաղաքն՝ չոգաւ 'ի Պտղոմայիդ․ Տես 'ի Միշօ․ Պատմ․ Խաչակրաց․ Հտ․ Գ․ Գլ՝ 13․

Ի Թուին Հայոց ՈՀԸ (678), Քէմլն էառ զԴամասկոս ՚ի Մելիք Նասրէն, և ետ եղբօր իւրում Աշրափուն, և տայ նմա տեղիս բնակութեան զՃաւպաք և զԲարրաք և ըզՍամլուղ և այլ բազում տեղիս. իսկ զՄիջագետս Ասորւոց զՈւռհա և զԽառան և զՍըրուճ, որ էր եղբօրն իւրոյ Աշրափուն, յինքըն առնու Քէմլն։

Յիշատակարան հին գրչագրիս

Ի Թուականին Հայոց ՈՀԸ, կատարեցաւ աշխարհապատում պատմութիւնս Տէր Միխայելի սուրբ պատրիարքին Ասորւոց, զոր ստուգիւ գրեաց ծայրաքաղ առնելով յաստուածաստեղծ մարդոյն Ադամայ. սկիզբըն առնելով ասաց մի ըստ միոջէ զկարգ և զծնունդ և զշինութիւն արարածոց զոր նախքան զջրհեղեղըն աշխարհակործան, և զոր յետոյ ջրհեղեղին յորդւոցն Նոյի շինել և աճել ըստ հրամանի և ուխտին ամենակալին Աստուծոյ՝ որ ետ ընդ նոսա յետ ջրհեղեղին։ Եւ ՚ի վերայ այսորիկ զկարգ. և զԹիւ թագաւորացն Հոռոմոց և Պարսից. և զկնի Պարսից թագաւորութեանն վճարելոյ՝ սկիզ-

քըն առնէ թագաւորութեանն Արաբկաց որ են Տաճիկք․ և'ի կատարածի սոցա զԹուրքաց սուլտանութիւնն և զտիրելն բազում աշխարհաց և գաւառաց, զոր դեռ այժմ ունին բռնացեալք ընդդէմ բազում ազգաց և ազանց։ Որ են թիւք ամացն յելլիցն Ադամայ մինչեւ 'ի ժամանակ կատարելոյ գրոցս 'ի ձեռն Միխայելի Ասորւոց պատրիարքի, ամք վեց հազար չորս հարիւր և երեսուն․ և այժմ է թիւս Հայոց ՉԻԲ, որ գրեցաւ գիրքս ձեռամբ տառապեալ Գրիգորոյ․ զոր կամաւքն Աստուծոյ գրեսցուք և մեք զպակասութիւն սորա ամաց քառասուն և չորից։



ՆՈՐԻՆ

# ՏԵԱՌՆ ՄԻԽԱՅԵԼԻ ԱՍՈՐԻՈՅ

ՅԱՂԱԳՍ

# ՔԱՀԱՆԱՅՈՒԹԵԱՆ

# ՆՈՐԻՆ
# ՏՆ. ՄԻԽԱՅԵԼԻ ՊԱՏՐԻԱՐՔԻ
# ԱՍՈՐԻՈՑ

Ցաղագս քահանայութեան թէ ուստի՛ սկսանի եւ ո՛ւր կատարի, եւ թէ զի՛նչ է քահանայութիւնն։

*Սկիզբն քահանայութեան Աստուած է, անսկզբնաբար եւ տիրապէս ունելով զնա եւ ոչ յումեքէ առեալ, եւ ոչ զոք ունելով վերագոյն, որում քահանայացէ եւ փառաւորեսցէ․ եւ վասն այնորիկ միայն բաշխելով եւ պարգեւելով է քահանայութիւն, եւ ոչ է ընդ հարկիւ։ Իսկ արդ համարձակելի է մեզ ՚ի ծանօթութենէ գրոց իշխել եւ ասել զամենասուրբն Հայր քահանայել զանհասական ծնունդն Որդւոյ, եւ ՚ի բղխումն Հոգւոյն անթարգմանաբար եւ անսկզբնապէս, անժամանակ, անմիջնորդ, անհատապէս եւ անախտաբար, յէութենէ եւ ՚ի բնութենէ իւրմէ․ անձինք եւ դէմք կատարեալք, եւ ՚ի նոյն բնութեան եւ յաստուածութեան եւ ՚ի մի զօ-*

րութեան և 'ի համագոյութեան և 'ի համակամութեան կացեալ և մնացեալ, անբաժանապէս բաժանեալք և անխառնաբար միաւորեալք: Այս է առաջին և անսպարական և 'ի բնութենէ քահանայութիւն, անվերագոյն և աննուաստական, հաւասարապէս և միափառ, որ ոչ առի անդ գործ և սպասաւորութիւն 'ի Հօրէ քահանայութիւն:

Իսկ երկրորդ քահանայագործութիւն ըսկսանի 'ի Որդւոյ և 'ի Հոգւոյ առ զօրս հրանիւթս հրեշտակաց. զի նախ իմանալի զհրեշտակական զօրութիւնսն և զերկնայինսըն, և իմաստքն գործ լինէին բանիւ կատարեալ և հոգւով լցեալ ըստ Դաւթայ. «Բանիւ Տեառն երկինք հաստատեցան, և հոգւով բերանոյ նորա ամենայն զօրութիւնք նոցա:» Եւ թէ զինչ է սպասիձանք նոցա, նոյն 'ի Դաւթայ ուսանիմք. «Արար, ասէ, զհրեշտակս իւր հոգիս, և զսպասաւորս իւր 'ի հուր կիզելոյ:» Որք են հզօր զօրութեամբ, որք սպասաւորեն Աստուծոյ փառաւորելով զնա. և առաքին 'ի սպասաւորութիւն այնոցիկ որ ժառանգելոց են զփրկութիւնն, և զնուաստագոյնսն դայեկաբար սնուցանեն իմանալի կերակրօք Աստուծոյ քահանայացեալք և քահանայագործեալք. և միշտ ըստ կարգի իմաստից հաղորդեալք 'ի նմանէ, յերկիս երակս բաժանեալք, առա-

զին և երկրորդ և երրորդ, 'ի փառս երեքերեւեան Աստուածութեանն։ Առաջինքն 'ի նմանէ հաղորդեալք, և երկրորդն յառաջնոյն, և երրորդն 'ի միջնոյն. և 'ի նոցունց առ մարդիկ իջեալ, և սոսա կատարեալ և ընդարձակեալ, զի այլ բանական 'ի վայր քան զմեզ ոչ գոյ. և Ադամ զնոցա բարբառն լըւաւ յԱստուածոյ առ նա բերեալ, և անուանեաց զնոսա հրեշտակս, որք են պատգամաւորք. այլ անուն բնութեան նոցա և թիւ համարոյ նոցա և ընդարձակութիւն իմաստից նոցա և փառք էութեան նոցա անգիտելի և անհաս մնաց 'ի մէնջ վարագուրածածկեալք։

Արդ քահանայութիւնն կարգ է բարձր և աստիճան սուրբ, որով բարձրանայ առ Աստուած ըստ կարի և լինի վերագոյն քան զայնոսիկ որոց քահանայէ. և միջնորդութիւն է ընդ վերնագոյնն և ընդ խոնարհականս։ Եւ ոչ է կարելի քահանայութիւն ումեք արարածականի անձամբ առնուլ զնա ըստ Առաքելոյ, այլ պարգեւ և շնորհ է աստուածային և երկնաւոր, տալով և ոչ առնլով, բայց 'ի յՈրդւոյ և 'ի Հոգւոյ, որ անսկզբնաբար և բնաւորաբար ընդ ծնունդն անաստական և ընդ ելումն անիմացական իմանամք զքահանայութիւն նոցա սեպհականապէս։ Իսկ արարածականքս 'ի պարգեւացն Աստուծոյ

կոչին և առնուն . որ և միանայ ընդ արժանաւորան շնորհն , կարգն և պարգևուն տէրունական , որպէս հուր յերկաթ և լոյս ընդ օդ , և 'ի ներքուստ 'ի ներքս խօսի զկամս Տեառն Աստուծոյ . Այլ քահանայութի ըստ Ասորւոց լեզուին հարստութիւն Թարգմանի, որ է փարթամութիւն երկնաւոր և հոգևոր բարեաց, բանալի և փակ երկնից արքայութեն, ծնօղութիւն հոգևոր և անախտ երկանց, դաստիարակութիւն և սնունդ աստուածային կենաց , նմանութիւն երջանիկ և բարեբաստիկ փառացն Աստուծոյ : Իսկ ըստ Հայոց լեզուին՝ քաւիչ Թարգմանի , կի քաւէ զանձն և զորս ընդ ձեռամբ ունի : Այլ Նախ տուաւ յատակ և անախտ և կուսական բնութեան հրեշտակաց . և անտի 'ի խոնարհ իջուցեալ զնա եւ պատկերի իւրոյ ձեռաստեղծի Ադամայ մարմնոյ և արեան մշձակելոյ , վասն որոյ և ցուցաւ մարդասէր երիս աստիճանօք բարձրագունիւք պատուելով զնա քահանայական և արքունական և մարգարէական փառաւորութեամբ . որ թէպէտ և ոչ զգուշացաւ 'ի պահելն , այլ յանարատութեան էառ ըղնա . և զկորուստ նորա անդրէն դարձոյց Տէր նորա , որ ողորմութեամբ եղեւ որդի նորա 'ի լրման աւուրց . և երկրորդ եղեալ Ադամ յուզեալ 'ի խնամոց իւրոց , և զանձըն պատարագեալ նոր և հրաշափառ ըն-

ծայիւք զպարտս նորա վճարելով։

Իսկ ՚ի յԱդամայ ճանապարհորդեաց կարգըս այս ընդ ամենայն դարս. որ և զկնի Ադամայ Աբէլ քահանայական շնորհօք զարդարեալ մատուցանէր յանքանից պատարագ Աստուծոյ հաճոյական, նշանակ արժանաւոր քահանայից. այլ և անձամբ մատեաւ պատարագ յօրինակ Տեառն մերոյ անարժան ձեռօքն Կայենի պեղծ քահանային. բայց ըզԿայէն և զզոհել ընծայս նորա ՚ի պտղոյ երկրին ոչ ընկալաւ Աստուած, անարժան քահանայութեանն շնորհի զնա համարեալ։ Ըն-տրեաց Կայէն լայն և մոլար և կորստեան ճանապարհ, և առանձնացաւ որդւովք իւրովք յԱստուծոյ և ՚ի զաւակաց Ադամայ։

Իսկ զկնի Աբէլի երևեցաւ շնորհն այն յԵնովս, որ յուսով կոչեաց զԱստուած յօգնութիւն ակարացեալ բնութեանն, և զյոյսըն պատարագեաց Աստուծոյ։ Եւ յետ նորա Ենովք ցուցաւ յատուճանս յայս, որ քահանայագործեաց Աստուծոյ պահք և խոնարհութիւն և աղօթս. և փոխեալ յարժանաւոր տեղիս, մնայ քահանայ ՚ի Տէր։ Եւ յետ նորա ծածկեցաւ յանարժանիցն և ծագեցաւ Նոյիւ, որ արդար և կատարեալ կոչեցաւ։ Սա նախ զկուսութիւնն և զարդարութիւնն Աստուծոյ ընծայեաց, և յետ ջրհեղեղին մատոյց դարձեալ յանասնոց սրբոց զԱբե-

լի պատարագն, որ է ստուերականն. և հա-տուցիլ առ Աստուծոյ անուշահոտ վարուք և բարուքն Նոյի քան անբանիցն ճենճերօք: Նա խոյս ետ դարձեալ և ամփոփեցաւ յա-նարժանիցն կռապաշտից՝ քահանայութիւնն, և բացափայլեաց առ Յոբ յորդւոց անտի Յեկտանայ, որ յաւուր աւուր քահանայա-գործէր ըստ թուոյ որդւոցն. և մատոյց զան-ձրն փորձութեամբն 'ի փառս Աստուծոյ. և զկնի փորձանացն հրամանաւ Աստուծոյ մա-տոյց պատարագ 'ի հաշտութիւն և 'ի քա-ւութիւն բարեկամացն:

Նա յետ այնորիկ առաւել բացափայլեաց 'ի Մելքիսեդեկ, զոր և գիրն քարոզէ զնա քահանայ Աստուծոյ բարձրելոյ: Նա սա մատուցանէր պատարագ Աստուծոյ զճշմար-տութեանն զոհսն, հաց և գինի. զոր և Աբրահամու ընծայեաց և օրհնեաց զնա Աս-տուծոյն երկնի և երկրի 'ի բարձրելոյն. զոր ասեն զնա յորդւոցն Քանանու, որոյ ոչ պատ-մի ազգ և ոչ հայր և մայր, վասն օրինակի Տեառն մերոյ. և զի թէպէտ և ունէր հայր և մայր և ազգ, այլ ոչ գրեցաւ, և ոչ որ գի-տէ զստոյգն: Մելքն թագաւոր ասի, և Սեդեկն արդար և կամ քահանայ՝ 'ի խոր-հուրդ Տեառն մերոյ:

Մնացաւ շնորհս այս և առ Աբրահամ, որ զորդին քահանայագործէր Աստուծոյ և

զՄիածինն, նմանեալ Հօրն երկնաւոր։ Եւ Իսահակ պատարագ Աստուծոյ անձամբ եղեւ 'ի Հօրէն, և զկեանս իւր երկիւղիւ միշտ ընծայէր Աստուծոյ զկնի Հօրն։ Եւ Յակոբ օծանէր արձան 'ի խորհուրդ եկեղեցւոյ, և 'ի դառնալն յԱսորւոց պատարագէր Աստուծոյ ըստ խոստմանն և ուխտին իւրոյ։ Այլ և Յովսէփ ընկալաւ զշնորհս զայս տեսլեամբ խորհրդոյն. և զողջախոհութիւնն մատոյց Տեառն Աստուծոյ իւրոյ 'ի փառս անուան նորա։ Եւ յայնմ հետէ ոչ երեւեցաւ շնորհըս այս 'ի մտանելն նոցա յԵգիպտոս, որ է Մսր, որ ըստ մեզ Թարգմանի մեղք։ Եւ չէ գրեալ թէ մատուցին անդ պատարագ Աստուծոյ, առ 'ի ցուցանելոյ թէ ոչ է արժան 'ի մէջ մեղաց պատարագ մատուցանել։ Բայց մերձ 'ի յելս նոցա բազմացաւ շնորհս այս, և տուաւ յԱստուծոյ ամենայն ազգին առհասարակ. և մատուցին զառնս 'ի մէջ Եգիպտոսի, ստուերագրելով զճշմարիտ զառնըն Աստուծոյ զերկնաւորն՝ որ 'ի մէջ մեղաւոր ժողովրդոց և 'ի մէջ դժոխոց մատեաւ Հօր 'ի հոտ անուշից։ Եւ յելանելոյ անտի որդւոցն Իսրայէլի եղեւ գառնազենութիւնըն այն 'ի կրօնս Իսրայէլի առնել միշտ յազգըս իւրեանց զստուերականն, որպէս նոքա Իսրայէլ զճշմարտութիւնն զօրհանապազ։

Իսկ յութսունևեւթն ամին Մովսիսի ըն-

կալաւ Ահարոն եղբայր նորա զպատիւ քահանայութեանն յԱստուծոյ կոչեցեալ. և Մովսէս ընկալաւ գիր և լեզու նոր 'ի Տեառնէ, և ձեռամբ և միջնորդութեամբ նորա տուաւ ամենայն ժողովրդեանն Իսրայէլի։ Եւ 'ի նոցանէ առին դպրութիւն Փիւնիկեցիք. և 'ի Փիւնիկեցւոցն առին Յոյնք 'ի ձեռն Կադմոսի։ Իսկ Ահարոն կեցեալ 'ի քահանայութեան ամս երեսուն և ութ, և ապա ետ զքահանայութիւնն Եղիազար. և Նաբաթ և Աբիուդ այրեցան առաջի Տեառն հուր օտար մատուցանելով։ Եւ դուստրն Ամինադաբայ տուաւ 'ի տունն Ղեւեայ Եղիազարու. և պաշտելով զքահանայութիւնըն Եղիազարու ամս քառասուն, փոխեաց զնա նախանձաւորն Աստուծոյ Փենեհէս, որ սպան զԲազքի և զԱմրի. և կեցեալ 'ի քահանայութեանն երեսուն և ութ ամ, և որդի նորա Եղիազար ամս յիսուն և վեց, և յետ նորա որդի իւր Փենեհէս ամս ութսուն։ Եւ զկնի նորա ապա Յեսու նոյնպէս յորդւոցն Ահարոնի, ամս յիսուն և հինգ։ Եւ յետ նորա Աւագին, ամս վաթսուն. և էր սա 'ի ժամանակս Բարակայ և Դեբովրայ։ Եւ յետ սորա Ազարի՝ ամս քառասուն և երկու։ Եւ զկնի սորա Օարեհ՝ ամս յիսուն և երկու. և է սա եւթներորդ յԱհարոնէ։ Եւ յետ սորա Մարու, զոր Մերովբ կոչեն, ա-

մի յիսուն ։ Եւ զկնի նորա Մարիա , ամս երեսուն և երկու ։ Եւ յետ նորա Աքիտովփ ամս քսան ։ Եւ յետ նորա Փենեհէս և Մարիա՝ ամս քառասուն և երկու ։ Զկնի սոցա Հեղի և որդիք իւր ամս քսան , իսկ այլք քառասուն ամեն ։ Յետ նոցա Աքիտովփ և Աբիաթար և Յովհաննէս և Փենեհէս և Աբիսաւ և Բոզի և Ոզիէլ և Ազարիա և Ամրայիլ և Մարիա , և զկնի սոցա ապա թէ Սամուէլ , զի յառաջ քան զՍամուէլ չփոխեցան այնք ամենայն ։ Եւ զԱքիմելէք գտաք յետ Սամուէլի , զոր եսպան Սաւուղ հարիւր յիսուն իւք . ամեն թէ ՚ի Բեթնաւբայ կատարեցան ։ Զկնի նորա Աբիաթար հնգետասաներորդ . և զհետ սորա Ակիտոբ . և ըզհետ նորա Սադովկ երկոտասան ամ ։ Եւ զՍադովկ ամեն թէ չէ ՚ի տանէն Ահարոնի յԱմրամայ , այլ ՚ի ցեղէն Կահաթու , զի ըստ սպառնալեացն Աստուծոյ առ Հեղի՝ փոխեցաւ ՚ի տունն Կահաթու ։

Այլ և ՚ի Դաւիթ երեւեցաւ երրակի շնորհն Աստուծոյ քահանայութիւնն. զի եկեր զհացն քահանայական , և վերացոյց զեփուդն որ է ծածկոյթ ներքնոյն , և եհարց նովաւ ՚ի Տեառնէ . զի վասն կասկածի և երդմանն ոչ ետ քահանայիցն հարցանել , և մանաւանդ վասն Աստուածահայր լինելոյն ոչ մեղադրեցաւ , զի ընդ օրինօք ոչ եմուտ իբրեւ զծա

ռայ։ Եւ սա կարգեաց Սաղմոսացս քսան և չորս դասս. և երգել հրամայէր յերրորդ ժամուն և 'ի վեցերորդ ժամուն և 'ի յին-ներորդ. և այս եղաւ յեկեղեցի սուրբ։ Եւ Սադովկ պաշտեաց զքահանայութիւնն ամս քննևուսան։ Զկնի նորա Ազարիա և Սողոմ և Սոմխիա և Եղիկա և Սիւրիա և Ազարիա և Սադովկ. և ոչ գոյ ժամանակ սոցա ար-կեալ ընդ գրով։

Եւ 'ի ժամանակս Ռոբովամու որդւոյ Նա-բաթայ Աքիմելէք էր քահանայապետ. և զկնի նորա Սադովկ՝ ամս քսան։ Եւ յետ նո-րա Սադուկ և Ազարիա և Ահիմելէս և Աքի-մելէք և Իոդա և Իսադաք և Յեսու և Յի-սուդաք և Եղիշէ և Սողոմ և Յովկիդա հայ-րըն Զաքարիա մարգարէի։ Եւ ապա Սա-նաւէ և Ամովսիա և Ազարիա և Անանիա և Շմաւոն և Սերայի և Յովսադաք և Ազա-րիա զոր սպան Զաքարիա որդի Բարաքեայ,որ յանդիմանեաց զՕզիա Թագաւոր, և 'ի տա-ճարին սպանաւ 'ի ժողովրդենէն։ Զկնի սորա Փաւղաւ, և զհետ սորա Ուրիա և Յովհան-նէս և Անգրոմաքոս, և Տիրիա այր պատուա-կան և գովելի, և Եղեկիա և Շմաւոն զոր ամենայն այր (1) արդար և երկեղած. և զսա ասեն թէ զԴրխասոս եբարձ 'ի գիրկն։ Այ-սոքիկ որ կարգեցաք քահանայապետ վասն

(1) Թերևս ընթեռնլի է զոր ասէն այր։

յաճախ շփոթմանն Հրէից ոչ գրեցաւ 'ի պատմագրացս ստուգիւ, այլ մեք աշխատ եղեալ գտաք զկարգն, զի գիտասջիք թէ պարգեւքս այս ոչ շիջաւ յաշխարհէ իսպառ՝ մինչեւ 'ի ճշմարիտն Քահանայապետ։

Զհետ Շմաւոնի Ամարիա եւ Ազարիա։ Այս Ազարիա եկեալ 'ի գերութենէ հրամանաւ Աղմանասարայ 'ի Սամարիա, ետ նոցա զհինգ գիրքն Մովսիսի։ Զհետ սորա Ամորիա եւ Աքիտովք եւ Սադովկ եւ Սաղում եւ. Եղեկիա եւ Ազարիա եւ Քեղկի հայրն Երեմիայ մարգարէի 'ի ժամանակս Ովսիայ Թագաւորի որ եգիտ զերկրորդ օրէնսն։ Զհետ սորա Ուրիա որդի Սամիայ, որ եւ սպանաւ 'ի Յովակիմայ 'ի Թագաւորէ Յուդայ։ Եւ զհետ սորա Սարրի եւ Յովսեդեկ, որ գնաց 'ի գերութիւն յաւուրս Սեդեկիայ։ Եւ եղեւ գերութիւնն Հրէից չորս անգամ, եւ Թագաւորութիւնն բարձաւ յԵրուսաղէմէ. բայց քահանայութիւնն ոչ բարձաւ, զի գնացին ոմանք 'ի քահանայիցն զհետ ժողովրդեանն, եւ ոմանք 'ի տեղն Թողան։

Եւ յերկրորդ ամին Նաբուգոդոնոսորայ ետես Դանիէլ զտեսիլն, եւ 'ի հինգ ամի գերութեանն Յեքոնիայ ետես Եզեկիէլ զհրաշալի տեսիլն, եւ յայնժամ սպանին զերեւելի իշխանսն Յուդայ, եւ ընդ նոսա սպանին զԱւսեդեկ եւ զՇիրիա եւ զՍոփոնիա. եւ յետ նո-

րա եդին քահանայապետ զՅեսու որդի Նա-
րայ Երուսաղէմ. և զկնի տարան եզնա 'ի Բա-
բելոն. և 'ի դառնալն Հրէից ել ընդ Զօ-
րաբաբելի յԵրուսաղէմ: Զկնի Յեսուայ
Յովակիմ. յաւուրս սորա շինեցաւ տաճարն
յԵրուսաղէմ. և զկնի նորա Եղիշէ որդի նորա,
և ապա Յովիդա որդի նորա. և յաւուրս սորա
կատարեցաւ շինութիւն տաճարին. և յետ
նորա Յովհաննէս և Յովիդա, և ապա Յով-
հաննէս որ ապրեցաւ մինչև 'ի ժամանակս
Արտաշէսի Թագաւորին Պարսից. զկնի նորա
Յովիդա: Եւ կայր քրմապետ մի Արտաշէսի
Անդրոմաքոս անուն, յոյժ բարեկամ Հրէից.
Զկնի նորա Մանասէ. սա շինեաց տաճար
մի 'ի լեառն Գարիզին: Զհետ սորա Անդ-
րոմաքոս. սա էր յաւուրս Աղեքսանդրի Մա-
կեդոնացւոյ, որ պատուեաց զԱղեքսանդր և
սպանաւ 'ի Սամարացւոց, և ինքեանք կոտորե-
ցան յԱղեքսանդրէ: Զհետ սորա Ոնիա, և
զհետ նորա Շմաւոն որդի նորա, և զհետ սո-
րա Եղիազարոս եղբայր նորա. առ սա առա-
քեաց Պտղոմէոս և խնդրեաց զգրեանն, և
առաքեցին ոսկի գրով: Զհետ սորա Մա-
նասէ. զկնի նորա Ոնիա. յետ նորա Յովսե-
պոս, և զհետ նորա Շմաւոն. սա է հայր
Յեսու Սիրաքայ: Նորին զայս Շմաւոն ա-
սեն բարձող Քրիստոսի, երկերիւր և վեշ-
տասան ամ կեցեալ յետ կապելոյն: Եւ յետ

սորա եղեն քահանայապետք Մենեղայոս, Յասոն, Ղազարոս: Եւ Մենեղայոս եղեւ չար կամօք ընդդէմ օրինաց. և չէր սա յազգէն Ղեւեայ. և վասն սմա Օնիա որդի քահանայապետին Օնիայ գնաց յԵգիպտոս, և շինեաց անդ տաճար նման տաճարին որ յԵրուսաղէմ, և քաղաք: Եւ Յակիմոս քահանայապետ մարտեաւ ընդ Յուդայի և հարաւ բարկութեամբ ՚ի Տեառնէ և մեռաւ: Եւ առ Յուդա զքահանայապետութիւնն. և զհետ նորա Մատաթիա, և զկնի նորա Յուդա որդի նորա. և սա նորոգեաց զտաճարն և սպանաւ: Զհետ նորա Յովնաթան եղբայր նորա, և սպանաւ ՚ի Տրիփոնայ: Եւ զհետ նորա Շմաւոն եղբայր նորա և սպանաւ ՚ի Պտղոմեայ: Եւ զհետ նորա որդի նորա Յովհաննէս, որ է Հիւրկանոս: Յետ նորա Արիստաբուլոս. սա թագ եդ ՚ի վերայ քահանայութեանն զկնի չորեքհարիւր եւթանասուն և եւթն ամի բառնալոյն:

Եւ ՚ի Յուդայէ մինչեւ ՚ի սա զօրապետք և քահանայապետք էին, և աստ սկսաւ դարձեալ թագաւորութիւն և քահանայութիւն յԱրիստաբուլոս, և կալաւ զթագաւորութիւնն նորա տարի մի, և սպանաւ ձեռամբ եղբօր իւրոյ Անտիգոնեայ, և առ ընդ տեղի նորա միւս եղբայրն Յովհաննէս, որ կոչեցաւ Աղէքսանդրոս. և զկնի սորա կին

նորա Աղեքսանդրա, և չփոխեցաւ կարգն քահանայութեան՝ կնոջ եղեալ քահանայապետ. բայց յետոյ զքահանայապետութիւնն ետ Հիւրկանեայ որդւոյ իւրոյ, և եղբօր նորա Արիստաբուլեայ ետ զԹագաւորութիւնըն, որ և յետոյ գնաց 'ի գերութիւն 'ի Հըռոմ. և զՀիւրկանոս գերեցին 'ի Հայս:

Եւ Հերովդէս երթեալ 'ի Հռոմ Թագաւորեաց Հրէից, որ և եկեալ սպան զԱնտիգոնոս միւս եղբայրն Հիւրկանեայ. և յետոյ և զՀիւրկանոս եւս եսպան որ եկն 'ի գերութենէն Հայոց, և ետ քահանայապետս զԱնանիէլ: Եւ զկնի Զաքարիա, և ապա ըզՇմաւոն, ամ ամի փոփոխելով զնոսա կաշառօք. և ապա զԱննա և զԿայիափա. և ապա փոխեցաւ հին քահանայութիւնն և ստուերականն 'ի նորս և 'ի ճշմարիտս Քրիստոսիւ: Քանզի 'ի ծնանելն նորա Թագաւորն այլազգի էր Հերովդէս, զի ըստ Յակովբայ նահապետին եկն որ իւր է Թագաւորութիւնըն. և յորժամ բաշխեաց զպաշտօն պատարագի նոր քահանայութեան՝ զմարմին և զարիւն իւր, սկսաւ նորս և լռեաց հինն. որ Թէև կային այլ քահանայք, այլ ոչ ըստ կամացն Աստուծոյ, և ոչ համարեալ է 'ի կարգս լաւացն. վասն զի յանձնեաց Տէրն զԹագաւորութիւնն 'ի յարքայն հեթանոսաց՝ հաւատացեալն 'ի նա մերձ 'ի չարչարանսն կատա[illegible]

ւոր ։ Զի յայնժամ եկին պատգամաւորքն Թագաւորին Հայոց և Ասորւոց, և աղաչէին զՏէրն գնալ և թագաւորել ընդ նոսա, և լի-նել բաժանակից և կցորդ իշխանութեան ա-թոռոյ նոցա ։ Իսկ Տէրն երանեաց զնա, և նախա յանձնեաց զարքայութիւնն որ տուա-Ադամայ ըստ կամացն Աստուծոյ՝ հաւատացե-լոցն 'ի նա և 'ի հայր նորա. և զաստիճան քա-հանայութեն որ կարգեալ գայր 'ի ծնունդս Ադամայ ազգի ազգի նիւթով պատարագաց, ետ զնա յԱռաքեալն 'ի վերնատանն, փո-խեալ զնիւթ պատարագին յանձն իւր սու-կալի և քստմնելի և անճառելի իմանալեաց և զգալեաց, այն որ անսկզբնաբար 'ի ծոցոյ Հօր քահանայացաւ, և նստի յերկինս երկնից ընդ աջմէ Հօր, քահանայ մշտնջենաւոր ։ Նո-սա կատարեցաւ խորհուրդն հայրենի և գլխաւորեցաւ, գագաթն էառ քահանայու-թիւնն, որ ոչ է այնուհետեւ այլ և այլ պա-տարագ և ոչ բազմութիւն քահանայից վասն մահու արգելման, և ոչ տաճար ձեռագործ և ապականացու, այլ նոյն և մի պատարագ և պատարագիչ և քահանայ. և տաճար է անձեռագործ վերինն Երուսաղէմ՝, որոյ գա-ւիթ է ձեռագործս այս և նիւթաւոր եկե-ղեցի և օրինակ ճշմարտին. և հաւատն է հանրական կաթողիկէ, որ ժողովէ զտիեզերս 'ի մի յայս կոչմանս և 'ի մի դաւանութիւն և 'ի մի

հոգեւոր կերակուր։ Եւ այս առաջնորդք եկեղեցւոյ անդամք են միոյ անմահական գլխոյն Յիսուսի, անմեկնելի, անմահ և յաւիտենական, հաւատով և յուսով պաշտեն զքահանայութիւնն կատարեալ, և կենաց 'ի կեանս փոփոխեալք կատարելով զընթացսն, ընդ աշակերտեալքն նովին պատարագաւ և հաւատով և իմանալի առաջարով զտեղիս նոցա. և կատարելով Տեառն մերոյ և Աստուծոյ զքահանայութիւն տանն Աստուծոյ կենդանացուցիչ մահուամբն և փրկագործ յարութեամբն, համբարձեալ յերկինս կատարեաց և զերկնաւորացն քահանայութիւնն, որ սարկաւագունք էին մինչեւ ցայժմ. և արդ ետ նոցա Տէր զնոր պաշտօն տնօրէնութեան իւրոյ, և ձեռնադրեալ զնոսա ըստ կարգի 'ի տեղիս և յաստիճանս իւրեանց մեզ անճառելի, և ըստ իմանալի բնութեան իւրեանց աննիւթապէս. և նոքա քահանայագործեն և անմարմնաբար հաղորդեալ Յիսուսի աստուածաստեղծութեանն և աստուածարար խորհրդոյն, որպէս ասէ մեծն Դիոնէսիոս ուսեալ յաստուածընկալ առաքելոյն Պաւղոսէ, որ ամբարձեալ մինչեւ յերրորդ յերկինս՝ տեսող եղեւ անճառելեացն և լսող։ Իսկ զկնի համբարձման Տեառն մերոյ, հրամանաւ Հոգւոյն սրբոյ առաջին ձեռնադրեցաւ Երուսաղէմի եպիսկոպոս Յակոբոս

եղբայր Տեառն. և եպիսկոպոսն առաջին, որ է աստուածայնոցն. և է երից կարգաց գլուխ, քահանայից, սարկաւագաց և դպրաց։

Եւ յառաջին ամին վերացման Տեառն, աշակերտեցաւ և մկրտեցաւ ներքինին քուշայեցի Փոթանփոս անուն, 'ի Փիլիպպոսէ առաքելոյ. և նա եղեւ սկիզբն մկրտութեան հեթանոսաց։ Եւ 'ի գլուխ տարւոյն աշակերտեցաւ Պաւղոս, և յերկրորդ ամին սկիզբըն արար քարոզութեանն։ Եւ Ագրիպպաս արքայ յառաջին ամին իւրոյ սպան զՅակովբոս եղբայրն Յովհաննու։ Եւ Պետրոս եդաւ յԵրուսաղեմէ եկն յԱնտիոք աշակերտելով զհեթանոսս 'ի ճանապարհին, զերկուս ամս յամելով 'ի գաւն. և յԱնտիոք եդ հիմն եկեղեցւոյ, և ձեռնադրեաց եպիսկոպոս ըզԵւոդիոս։ Ասեն թէ զվարշամակ Տեառն ունէր, և զայն արկանէր 'ի վերայ գլխոյ ձեռնադրելոցն. և անուանեաց զաշակերտեալսն քրիստոնեայս. և եդ անդ աթոռ, և գնաց 'ի Հռոմ, և կատարեցաւ 'ի Ներոնէ Պաւղոսիւ հանդերձ, յերեքտասան ամի թագաւորութեան նորա, 'ի Մայիսի ԻԹ. և Անդրոնիկոս ասէ թէ 'ի ԻԵ, ն քանուն(1)։ Եւ զկնի Պետրոսի եկաց եպիսկոպոս 'ի Հռոմ Լինոս՝

(1) Անիմանալի է բառս, և թերեւս նշանակէ զամիսն Տաճկաց քէնուն։

առաջին եպիսկոպոս, մետասան ամ։ Եւ յԵրուսաղէմ զկնի Յակովբայ Շմաւոն Կղէոպեանց՝ ամս քառասուն և երկու։ Եւ յԱղեքսանդրիա Մարկոս աւետարանիչ քարոզեաց, շինեաց եկեղեցի. և յետ նորա եկաց Անանիա (1) ամս քսան և երկու. և զկնի նորա Աբիլոս 'ի չորրորդ ամին Դիոկղետիանոսի։ Եւ նախ քան զայլսն յետ համբարձմանն ըստ խոստման Տեառն առաքեցաւ Թադէոս 'ի Հայս. նախ 'ի Կեսարիա Հայոց եկեալ, արկ անդ հիմն եկեղեցւոյ, և ձեռնադրեաց եպիսկոպոս զԹէոփիլոս. և ապա եկն 'ի յՈւրհա. անդ բժշկեաց զԱբգար, և շինեաց եկեղեցի, և ձեռնադրեաց անդ զԱդէ, և գնաց, և կատարեցաւ 'ի Սանատրկոյ արքայէ Հայոց։ Նմանապէս և Բարթողոմէոս եկեալ և շրջեալ ընդ Հայս՝ կատարեցաւ 'ի նմին Թագաւորէ։ Եւ Յուդա Յակովբեան զհետ նոցա եկեալ 'ի Հայս, կատարեցաւ յիշխանացն Հայոց 'ի Որմի քաղաք նոցին Հայոց, և կայ անդէն։ Եւ Սիմոն մի յորդւոցն Յովսեփու կատարեցաւ 'ի Հայս։

Եւ յԱսիա և 'ի կողմանս Բիւթանացւոց և յերկիրն Շանագլեաց. գնաց Անդրէաս առաքեալ։ Եւ ասեն զմանէ՝ թէ յորժամ արկին վիճակս Առաքեալքն յետ առնլոյ զՀո-

(1) Ի գաւազանագրին փոխանակ Անանիայ գրէ Անիա.

գլին սուրբ 'ի վերնատունն , և բաժանեցին զաշխարհս 'ի մէջ իւրեանց , և անկաւ վիճակն Անդրէի հրամանաւ Հոգւոյն սրբոյ երկիրն Շանագլխաց . և դժուարեցաւ Անդրէաս և փախեաւ , և հանդիպեցաւ Փրկչին որ իջեալ կայր վրանօք որպէս վաճառական , և խօսեցաւ ընդ նմա , և ասաց զկնքն յերկրէ անտի , և թէ կամիցի գնալ՝ տանի զնա դիւրաւ , և հեշտիւ լսեն նմա ։ Եւ դարձաւ անդրէն 'ի վերնատունն , և խնդրեաց աղօթս զի գնասցէ 'ի վիճակն իւր զհետ վաճառականին . և յուղարկեցին զնա խնդութեամբ ։ Եւ գնաց Տէրն նովաւ հանդերձ 'ի Յոպպէ . և դիպեցաւ նաւ պատրաստական , և մտին 'ի նա և գնացին անդ . և վերացաւ 'ի նմանէ Տէրն յերկինս , և իմացաւ Անդրէաս և փառաւորեաց զԱստուած ։ Եւ գնացեալ դարձոյց սքանչելեօք զաշխարհն , և դարձաւ քարոզեաց 'ի Միւսիա և 'ի Բիւթանիա , և յԱսիա քարոզեաց և շինեաց եկեղեցիս 'ի մէջերկեայս , և սերմանեաց անդ զբան հաւատոյն ։ Եւ անց 'ի յԵլլադա և կատարեցաւ 'ի Սպարտա Ելլադացւոց յԵգիատայ խաչիւ . և նմա է համարեալ ասիական աթոռն , զի նա քարոզեաց զառաջինն մինչեւ եկն անդ զկնի երկոտասան ամաց Յովհաննէս յետ փոխման Տիրամօրն ։

Արդ ուր քարոզեցին Առաքեալքն երկո-

տասանք և չինեցին եկեղեցիս, աթոռք են. և 'ի կատարածի աշխարհիս նստելոց են յերկոտասան աթոռս. և այս 'ի Քրիստոսէ տըւաւ : Բայց յետոյ մարդիկ անուանեցին չորս աթոռ գլխաւոր զԱւետարանչացն : Մատթէոս, ասեն, ունի զԱնտիոք. և Ղուկաս որդի Կոստանդեայ Ասորւոյ և մօր Յունի, սա ունի զՀռոմ, որ էր անտիոքացի և արուեստիւ բժիշկ: Իսկ զԱղէքսանդրիա ունի Մարկոս. և զԵփեսոս Յովհաննէս, որ յետոյ Անդրէի եկն յԵփեսոս. և զԵրուսաղէմին Յակոբոս եղբայր Տեառն: Եւ մեք աղիւսակօք կարգեսցուք զհնգից Աթոռակալացս ըստ կարգի լուսաւորապէս, զի դիւրաւ կացցեն 'ի վերայ ուսումնասէրքն. և վասն աշխատութեանս մերոյ ակնկալցուք հատուցման աղօթից՝ որոց օգտին աստուստ 'ի փառս Աստուծոյ մերոյ, որ է օրհնեալ յաւիտեանս.

ամէն:

# ԱԹՈՌԱԿԱԼՔ ԱՆՏԻՈՔԱՑ

| | | ամք |
|---|---|---|
| Ա. | Պետրոս վէմ. | |
| Բ. | Լուգիոս. | 3 |
| Գ. | Իգնատէ. | 12 |
| Դ. | Իրոն. | 13 |
| Ե. | Կոռնելիոս. | 10 |
| Զ. | Ուրիոն. | 11 |
| Է. | Թէոփիլէ. | 17 |
| Ը. | Մաքսիմոս. | 18 |
| Թ. | Սերապիէ. | 10 |
| Ժ. | Ասկղեպ. | 12 |
| ԺԱ. | Փիլիպպոս. | 10 |
| ԺԲ. | Սաբինոս. | 12 |
| ԺԳ. | Բաբեղաս. | 30 |
| ԺԴ. | Բաւիոս. | 20 |
| ԺԵ. | Դեմետրիոս. | 8 |
| ԺԶ. | Պաւղոս սամոսատացի հերձուածող։ | |
| ԺԷ. | Դոմնոս. | 13 |
| ԺԸ. | Տիմոթէոս. | 5 |
| ԺԹ. | Կիւրղիոս. | 8 |
| Ի. | Տուրիանոս. | 1 |
| ԻԱ. | Բաղալիոս. | 8 |
| ԻԲ. | Փիլիկիոս. | 2 |
| ԻԳ. | Եւստաթէ. | 10 |
| ԻԴ. | Յուլիոս. | 1 |
| ԻԵ. | Ուալիս ախոյեան աղանդ։ | |
| ԻԶ. | Ուբրոս ախոյեանն. | |
| ԻԷ. | Փլիբոս հերետ. | |
| ԻԸ. | Ստեփանոս հերետիկոս. | |
| ԻԹ. | Լեւոնտիս հերետ. | |
| Լ. | Եւդոքսի ախոյեան էր. | |
| ԼԱ. | Մելիտոս ուղղափառ, | |
| ԼԲ. | Ուզիոս. | 2 |
| ԼԳ. | Պուլիանոս. | 1 |
| ԺԴ. | Փլաբիանոս. | 7 |
| ԼԵ. | Եւագր. | 1 |
| ԼԶ. | Պորփիրիոս. | 7 |
| ԼԷ. | Աղէքսանդրոս. | 10 |
| ԼԸ. | Յովհաննէս. | 38 |
| ԼԹ. | Թէոդիոս. | 32 |
| Խ. | Ռոմանոս ախոյեան. | |
| ԽԱ. | Մաքսիմոս ախոյեան. | |
| ԽԲ. | Ակակիոս Երկաբնակ։ | |
| ԽԳ. | Մուրտարիոս հերետ. | |
| ԽԴ. | Սուրբ Պետրէ հալածեալն. | |
| ԽԵ. | Մանիգոն. | |
| ԽԶ. | Մերտուրիոս Երկաբնակն։ | |
| ԽԷ. | Յուլիանոս. | 35 |
| ԽԸ. | Ստեփանոս. | 37 |
| ԽԹ. | Ստեփանէ հերետ. | |
| Ծ. | Բեղետոսիս հերետ. | |
| ԾԱ. | Փլաբիէ որ ընկեցաւն. | |
| ԾԲ. | Սուրիակէ ուղղափառ. | |
| ԾԳ. | Պաւղէ հրէականն աղանդ. | |
| ԾԴ. | Ուբոզիոս Երկաբնակ Ն ի եղէ Սեւերիոսի. | |
| ԾԵ. | Եփրեմ հերետ. | |
| ԾԶ. | Դամիանոս հերետ։ | |
| ԾԷ. | Սարգիս. | 7 |
| ԾԸ. | Պաւղէ ոէկան. | |
| ԾԹ. | Պետրէ կարգալուծն. | |
| Կ. | Յուլիանէ. | 40 |

| | | ամք |
|---|---|---|
| ԿԱ. | Աթանասիոս. | 41 |
| ԿԲ. | Յովհաննէս. | 42 |
| ԿԳ. | Դիոգորոս. | 43 |
| ԿԴ. | Սեւերիանոս. | 44 |
| ԿԵ. | Յուլիէ. | 45 |
| ԿԶ. | Եղիա. | |
| ԿԷ. | Աթանաս. | |
| ԿԸ. | Յովհան. | |
| ԿԹ. | Իսահակ. | |
| Հ. | Աթանաս. | |
| ՀԱ. | Գէորգ. | |
| ՀԲ. | Յովսէփ. | |
| ՀԳ. | Կիրակոս. | |
| ՀԴ. | Դիոնէսիոս. | |
| ՀԵ. | Յովհաննէս. | |
| ՀԶ. | Իգնատիոս. | |
| ՀԷ. | Դիոգոս. | |
| ՀԸ. | Դիոնէսիոս | |
| ՀԹ. | Յովհան. | |
| Ձ. | Վասիլիոս. | |
| ՁԱ. | Յովհաննէս. | |
| ՁԲ. | Յովհան. | |
| ՁԳ. | Դիոնէսիոս. | |
| ՁԴ. | Աբրահամ. | |
| ՁԵ. | Յովհաննէս | |
| ՁԶ. | Աթանաս | |
| ՁԷ. | Յովհաննէս. | |
| ՁԸ. | Դիոնէսիոս. | |
| ՁԹ. | Յովհաննէս. | |
| Ղ. | Աթանաս. | |
| ՂԱ. | Յովհաննէս. | |
| ՂԲ. | Վասիլիոս. | |
| ՂԳ. | Աբրոն. | |
| ՂԴ. | Դիոնէսիոս. | |
| ՂԵ. | Աթանաս. | |
| ՂԶ. | Յովհան. | |
| ՂԷ. | Գրիգոր. | |
| ՂԸ. | Յովհան. | |
| ՂԹ. | Աթանաս. | |
| Ճ. | Միխայլ են։ | |

---

# ԱԹՈՌԱԿԱԼՔ ՀՌՈՎՄԱՅ

| | | ամք |
|---|---|---|
| Ա. | Պետրոս [illegible]. | 25 |
| Բ. | Լինոս. | 12 |
| Գ. | Անիտոս. | 11 |
| Դ. | Կղեմէս. | 9 |
| Ե. | Ուարոստոս. | 8 |
| Զ. | Աղէքսանդրիոս. | 12 |
| Է. | Քսեստոս. | 30 |
| Ը. | Տաղէսփորոս. | 11 |
| Թ. | Սիղուինանոս. | 4 |
| Ժ. | Փիոս. | 15 |
| ԺԱ. | Անիկետոս. | 11 |
| ԺԲ. | Սովտեր. | 9 |
| ԺԳ. | Եպուրիոս. | 8 |
| ԺԴ. | Կեղեստիոս. | 5 |
| ԺԵ. | Ալութորոս. | 15 |
| ԺԶ. | Բեկտոր. | 70 |
| ԺԷ. | Ուրբանոս. | 9 |
| ԺԸ. | Բունդիանոս. | 5 |
| ԺԹ. | Անտերոս. ամիս | 8 |
| Ի. | Բաւբիանոս. | 13 |

| | | ամք | | | ամք |
|---|---|---|---|---|---|
| ԻԱ. | Կուռնելիոս. | 2 | Խ. | Անոկենտիոս. | 15 |
| ԻԲ. | Լուկիոս. | 4 | ԽԱ. | Զոսիմոս. | 7 |
| ԻԳ. | Ստեփանոս. | 1 | ԽԲ. | Կեղեստինոս. | 9 |
| ԻԴ. | Քսեստոս. | 11 | ԽԳ. | Լեւոն երկոքեանքն. | |
| ԻԵ. | Դիոնեսիոս. | 8 | ԽԴ. | Գաղղոս. | 8 |
| ԻԶ. | Գրիմէսիոս. | 8 | ԽԵ. | Իղարիոս. | 7 |
| ԻԷ. | Ուտուկիոս. | 1 | ԽԶ. | Սիմպլիկոս. | 1 |
| ԻԸ. | Գայիոս. | 2 | ԽԷ. | Անաստասիոս. | 11 |
| ԻԹ. | Մարագլոս. | 1 | ԽԸ. | Սիմաքէ. սորա յառաջ երկոքեանքն են. | |
| Լ. | Եւսեբի. | 1 | ԽԹ. | Թորմիսդաս. | 2 |
| ԼԱ. | Մելտիադոս. | 21 | Ծ. | Որմիսդէս. | 10 |
| ԼԲ. | Սեղբեստրոս. | 23 | ԾԱ. | Յովհան. | 14 |
| ԼԳ. | Մարկոս. | 2 | ԾԲ. | Փելիքս. | 35 |
| ԼԴ. | Սիլլոս. | 15 | ԾԳ. | Բոկիլոս. | 20 |
| ԼԵ. | Լիբերիոս. | 4 | ԾԴ. | Ագապոս. | 1 |
| ԼԶ. | Փիլիքսիոս. | 1 | ԾԵ. | Սեղբեստրոս. | 1 |
| ԼԷ. | Դամասոս. | 18 | ԾԶ. | Պղակիոս. | 3 |
| ԼԸ. | Սիրիկիոս. | 5 | ԾԷ. | Մարտինոս. | |
| ԼԹ. | Անաստաս. | 3 | | | |

## ԱԹՈՌԱԿԱԼՔ ԱՂԵՔՍԱՆԴՐՈՒ

| | | ամք | | | ամք |
|---|---|---|---|---|---|
| Ա. | Մարկոս | 22 | ԺԲ. | Դեմետրիոս. | 63 |
| Բ. | Անկիոս. | 22 | ԺԳ. | Իդիմոս. | 16 |
| Գ. | Միլոս. | 13 | ԺԴ. | Դիոնեսիոս. | 7 |
| Դ. | Գարտոնիոս. | 11 | ԺԵ. | Մաքսիմոս. | 18 |
| Ե. | Փրուգիոս. | 12 | ԺԶ. | Թէովնաս. | 19 |
| Զ. | Յուստոս. | 11 | ԺԷ. | Պետրոս. վկայն է առ | 10 |
| Է. | Ամենիոս. | 13 | ԺԸ. | Աքիլլաս. | 6 |
| Ը. | Մարկիանոս. | 10 | ԺԹ. | Աղեքսանդր. առ է ժողովն Նիկիոյ. | 20 |
| Թ. | Կալերոս. | 14 | Ի. | Աթանաս. | 46 |
| Ժ. | Ագրիպաս. | 12 | ԻԱ. | Պետրոս | 7 |
| ԺԱ. | Յուլիոս. | 14 | | | |

| | | ամփ |
|---|---|---|
| ԻԲ. | Ղուկիոս արխանոս ղեղծ. | |
| ԻԳ. | Տիմոթէ. Եղէսայի Պէտրոսի. | 4 |
| ԻԴ. | Թէոփիլոս. | 28 |
| ԻԵ. | Կիւրեղ Մեծ. սա է ժողովն Եփեսոսի. | 26 |
| ԻԶ. | Դիոսկորոս. | 7 |
| ԻԷ. | Պրոտեր հերետ. | |
| ԻԸ. | Տիմոթէոս հերետ. | 20 |
| ԻԹ. | Տիմոթէոս սպիտակ. | 3 |
| Լ. | Յովհաննէս հերետ. | |
| ԼԱ. | Պետրոս. | 12 |
| ԼԲ. | Աթանասիոս. | 7 |
| ԼԳ. | Յովհաննէս. | 9 |
| ԼԴ. | Յովհան. | 11 |
| ԼԵ. | Դէոսկորոս. | 1 |
| ԼԶ. | Տիմոթէոս. | 11 |
| ԼԷ. | Դիադորոս. | 38 |
| ԼԸ. | Պետրոս. | 1 |
| ԼԹ. | Գայիանէ հերետ. | |
| Խ. | Պաւղոս. | 40 |
| ԽԱ. | Զուկլիոս. | 1 |
| ԽԲ. | Ապողինարիոս | 2 |
| ԽԳ. | Թէոդորէ. | 3 |
| ԽԴ. | Պետրէ. | 1 |
| ԽԵ. | Յովհան Երկրպագնով. | 7 |
| ԽԶ. | Դամիանէ. | 7 |
| ԽԷ. | Անաստաս. | 1 |
| ԽԸ. | Անդրոնիկոս. | 2 |
| ԽԹ. | Բենիամին. | 30 |
| Ծ. | Կարբա պաղեստինի. | |
| ԾԱ. | Ագաթոն. | 1 |
| ԾԲ. | Յովհան. | 2 |
| ԾԳ. | Շմաւոն. | 3 |
| ԾԴ. | Սահակ. | 1 |
| ԾԵ. | Աղէքսանդրոս. | 2 |
| ԾԶ. | Կոզմա. | 40 |
| ԾԷ. | Յովհան. | |
| ԾԸ. | Մարկոս. | |
| ԾԹ. | Յակոբ. | |
| Կ. | Շմաւոն. | |
| ԿԱ. | Յովսէփ. | |

---

## ԱԹՈՌԱԿԱԼՔ ԵՓԵՍՈՍԻ

| | | ամփ |
|---|---|---|
| Ա. | Անդրէաս. | 12 |
| Բ. | Եստիոս. | 10 |
| Գ. | Տիմոթէոս. | 14 |
| Դ. | Պօլիկարպոս. | 17 |
| Ե. | Պուլիդ. | 15 |
| Զ. | Սապքէ. | 8 |
| Է. | Դիոգինիս. | 8 |
| Ը. | Անտաթէ. | 15 |
| Թ. | Ալեթարոս. | 9 |
| Ժ. | Փիլիպպոս. | 10 |
| ԺԱ. | Պօլիկարպոս. | 11 |
| ԺԲ. | Ուղիոս. | 5 |
| ԺԳ. | Լաւրանտիոս. | 8 |
| ԺԴ. | Ալուբանոս. | 7 |
| ԺԵ. | Պրոտոնիկոս. | 18 |

| | | ամ. |
|---|---|---|
| ԺԶ. | Մարկոս. | 13 |
| ԺԷ. | Կիւրեղ. | 10 |
| ԺԸ. | Կուռնելիոս. | 8 |
| ԺԹ. | Դիզոս. | 7 |
| Ի. | Դոմետիոս. | 11 |
| ԻԱ. | Պրոբոս, սա յոյնե-յաս (անուանեալ Եփեսոսի) ՚ի Կոստանդնուպօլիս: | |

## ԱԹՈՌԱԿԱԼՔ ԿՈՍՏԱՆԴՆՈՒՊՕԼՍԻ

| | | ամ. |
|---|---|---|
| | Պրոբոս. | 5 |
| ԻԲ. | Աղեքսանդրոս. | 23 |
| ԻԳ. | Պաւղոս. | 1 |
| ԻԴ. | Մակեդոն. | |
| ԻԵ. | Եւսեբիոս. | 1 |
| ԻԶ. | Եւդոքսի հերետ. | |
| ԻԷ. | Եւագրիոս հերետ. | |
| ԻԸ. | Դիմոփիլէ հերետ. | |
| ԻԹ. | Գրիգոր Նազիան-զացին: | 10 |
| Լ. | Նեկտարիոս. | 8 |
| ԼԱ. | Յովհան ոսկեբերան. | 7 |
| ԼԲ. | Երեւսկիոս. | 1 |
| ԼԳ. | Ատտիկոս. | 10 |
| ԼԴ. | Սիսինոս. | 2 |
| ԼԵ. | Նեստոր չարափառ. | |
| ԼԶ. | Մաքսիմիանոս. | 2 |
| ԼԷ. | Պրոկղոս. | 12 |
| ԼԸ. | Փլաբիոս հերետ. | |
| ԼԹ. | Անատոլ հերետ. | |
| Խ. | Իգնատիոս հերետ. | |
| ԽԱ. | Ակակիոս. | 2 |
| ԽԲ. | Պլաւիտոս. | 4 |
| ԽԳ. | Ուփիմիոս հերետ. | |
| ԽԴ. | Մակեդոն հայհոյիչ հոգւոյն: | |
| ԽԵ. | Տիմոթէոս. | 5 |
| ԽԶ. | Յովհաննէս երկա-բնակ: | |
| ԽԷ. | Եպիփան. | 23 |
| ԽԸ. | Անթիմոս. | 1 |
| ԽԹ. | Յոհան. ՚ի սմանէ յա-ռաջ երկաբնակք էին: | |
| Ծ. | Յովհաննէս. | 1 |
| ԾԱ. | Կիւրիակէ. | 1 |
| ԾԲ. | Սարգիս. | 1 |
| ԾԳ. | Մինաս. | 3 |
| ԾԴ. | Գերմանիոս. | 17 |
| ԾԵ. | Նուգոսոս. | 7 |
| ԾԶ. | Բուրոս. | 1 |
| ԾԷ. | Պաւղոս. | 1 |

# ԱԹՈՌԱԿԱԼՔ ԵՐՈՒՍԱՂԷՄԻ

ամք

Ա. Յակովբոս.
Բ. Շմաւոն. 42
Գ. Յուստոս.
Դ. Զաքէ.
Ե. Տուբիա.
Զ. Բենիամին.
Է. Յովհան.
Ը. Մատթէոս.
Թ. Փիլիպպոս.
Ժ. Սենեկէս.
ԺԱ. Յուստոս.
ԺԲ. Ղեւի.
ԺԳ. Եփրեմ.
ԺԴ. Յովսէփ.
ԺԵ. Յուդա, ամենեքեան հրէայք էին։
ԺԶ. Նարկէսոս, (՞).
ԺԷ. Մարկոս.
ԺԸ. Կասիանոս.
ԺԹ. Պուպղիոս.
Ի. Մաքսիմոս.
ԻԱ. Յուլիանոս.
ԻԲ. Գայիոս.
ԻԳ. Սիմաքոս.
ԻԴ. Գայիոս.
ԻԵ. Յուլիանոս.
ԻԶ. Կիպիտոս.
ԻԷ. Վաղէս.
ԻԸ. Դքխիանոս.
ԻԹ. Նարկէսոս.
Լ. Դիոս.
ԼԱ. Գերմանիոն.
ԼԲ. Գորգորիոս, (Գորդիանոս).

ամք

ԼԴ. Նարկէսոս վերստին.
ԼԴ. Աղեքսանդրոս.
ԼԵ. Մզաբենոս.
ԼԷ. Հիմենոս.
ԼԸ. Ըզբերդա, (Զաբդաս).
ԼԹ. Հերմոն.
Խ.: Դապատոս, (՞).
ԽԱ. Հերմոն, սա է ճրգ-նաւորն սրբոյն Գրի-գորի Լուսաւորչին։
ԽԲ. Մակար.
ԽԳ. Մաքսիմոս, զորոյ աչ-սն հանին անօրէնք։
ԽԴ. Կիւրեղ, ԾԷ ամ, և աքսորեցաւ.
ԽԵ. Ակակի, որ զԿիւրեղ աքսորեաց։
ԽԶ. Սեւերիանոս, սա եղեւ փոխանակ Աբա-նայի, որ ՅԷ եղբա-յրոյս։
ԽԷ. Դամասոս.
ԽԸ. Կիւրեղ, սա որոյ ըն-կալաւ ընծայութեանն։
ԽԹ. Յովհաննէս. 22
Ծ. Պրաւլիոս.
ԾԱ. Պրովալիս. 5
ԾԲ. Յոբնաղ. 40
ԾԳ. Թէոդոս, զսա եդին աղանդաւորացն փոխանակ Յոբնաղի։
ԾԴ. Անաստասիոս առաջ-նորդ։

| ամփ | ամփ |
|---|---|
| ԾԵ. Մերկուրիոս հերե-տիկոսն. | ԾԹ. Պետրոս. |
| ԾԶ. Սեղբեստրոս հերետ. | Կ. Մակար, որ վերջ նշեալ շնան տաճա-րացոյն. |
| ԾԷ. Վելիսս. | ԿԱ. Եւստաթէոս։ |
| ԾԸ. Յովհաննէս. | |

Մինչեւ ցայժմ գրեցաք զաթոռակալքս հինգ աթոռոցս, զի կային 'ի նոցանէ ոմանք որք ողջունէին զուղղափառութիւն, և դեռ սակաւ էր չարն։ Իսկ վասն զի Մարտինոս հռոմայեցի յաւել 'ի վերան Քաղկեդոնի, և հաստատեաց զհաւատսն Յովհաննիսի գրամատի և զԱքսիմոսի, և բազմապատկեալ բզ-չարն 'ի վերայ երկու բնութեանն՝ ասաց երկու կամս և երկու ներգործութիւնս, և վասն բուռն իշխանութեանն Հոռոմոց տարածեցաւ անօրէնութիւնն յասացեալ աթոռքս, և չմնաց յոյս բժշկութեան և միաբանութեան սիրոյ առ միմեանս. այսուհետեւ զինչ հարկ է մեզ գրել զստարացեալսն, զի ոչ կոչել արժան է մեզ զնոսա հայրապետս, և ոչ թուել զնոսա 'ի շար առաջին սրբոցն, և ոչ զապականեալ նիւթսն դնել 'ի վերայ սուրբ հիմանն։

Այլ եթող մեզ շնորհ գթութեանն Քրիստոսի զաւակ կենդանութեան և սերմն ազնուական անձման սրբութեան զկոյսն սուրբ՝ զեկեղեցին Հայաստանեայց, զանեալն յանախտ արմատոյն և զպատկերեալն 'ի նմին

խակ 'ի փրկչէն մերմէ անդրանիկ հաւատով 'ի ձեռն Աբգարու, որ ունէր զհայս և զԱսորիս թագաւորդեալ ճոխութեամբ, և նըստէր 'ի Միջագետս յՈւռհա քաղաք, թագաւորեցուցեալ 'ի կողմն արեւելից զՍանատրուկ քեռորդի իւր, որ և խնդրեաց 'ի ձեռըն հաւատոց և զերկնաւոր արքայութիւնն. Քանզի լուաւ նա զլուր սքանչելեաց Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի զոր կատարէր յերկիրն Հրէաստանի, և առաքեաց թղթով զԱնանէ հաւատարիմ իւր՝ արամբք առ Տէր աղաչել զնա գալ առ նա և թագաւորել ընդնմա 'ի յՈւռհա անհոգութեամբ, և ապրել 'ի սպանող և յապստամբ ազգէն Հրէից։ Եւ զայս մարգարէացաւ կանխագոյն Երեմիա և ասէ. « Յաւուրսն յայնոսիկ եկին արք տասն յԱրուսաղէմ խնդրել զՏէր կարօտութեամբ 'ի սէր ջերմութեանն ։ » Եւ զայն յիշէ Յովհաննէս աստուածաբան և ասէ. « Մատեան առ Փիլիպպոս և ասեն. կամիմք զՅիսուս տեսանել. և Փիլիպպոս ասէ զԱնդրէաս, և Անդրէաս և Փիլիպպոս ասեն զՅիսուս։ Եւ Յիսուս պատասխանի ետ և ասէ. Եհաս ժամ զի փառաւորեսցի Որդի մարդոյ։ » Այսինքն թէ՝ արքայն հեթանոսաց երաց դուռն հաւատոյ ամենայն աշխարհի փառաւորել զնա ։ Եւ դարձեալ զխաչն նշանակեաց թէ եկեալ հասեալ է ժամանակ չարչարանաց իւրոց զոր ասա

կատարելոց եմ. և չէ ժամ գնալոյ աստի։ Եւ հրամայեաց Թովմայի առաքելոյն դրել պատասխանի Աբգարու. և երանեաց զնա և խոստացաւ յետ յարութեան իւրոյ առաքել առ նա զմի յաշակերտաց իւրոց բժշկել զնա 'ի ցաւոցն զոր ունէր. և տալ նմա և աշխարհին իւրոյ կեանս յաւիտենականս 'և անդորրումն. զոր և արար իսկ, առաքեաց զԹադէոս, որ եկն 'ի Կեսարիա Հայոց զառաջինն, և արկ անդ հիմն եկեղեցւոյ. և ձեռնադրեաց անդ եպիսկոպոս Թէոփիլէ անուն, և գնաց 'ի յՈւռհա, և մկրտեաց զԹագաւորն և զամենայն քաղաքն, և զբազումս 'ի գաւառացն շուրջանակի. և հաստատեաց եկեղեցիս, ձեռնադրեաց իւր փոխանորդ զԱդդէ, և առեալ թուղթ առ Սանատրուկ և 'ի գաւառն Հայաստանեայց ընդ կողմամբ-քըն արեւելից գնաց, և կատարեցաւ մկաութեամբ 'ի Սանատրկոյ, թողեալ իւր փոխանորդ անդ զոմանս Զաքարիա և Եմենտոս անուն։ Քանզի յետ սակաւ ժամանակի մեռաւ Աբգար, և անհոգացաւ Սանատրուկ, և սպան զԱռաքեալն։

Եւ յետ այնորիկ Բարթողոմէոս գնացեալ 'ի նոյն վիճակ Հայաստանեաց, և 'ի նոյն թագաւորէ կատարեցաւ. և յայնժամ բարձաւ համարձակութիւն հաւատացելոցն. սակայն ոչ պակասեաց հաւատն հիմնարկեալ առա-

քերական, մինչեւ 'ի գալն Հռիփսիմեանցն եւ 'ի հաւատալն Տրդատայ արքայի 'ի նմին ցեղէ Աբգարու երանեցելոյն 'ի Տեառնէ, 'ի ձեռն մեծահանդէս նահատակին Գրիգորի, սքանչելի եւ նորանշան եւ տիեզերալոյս վկայի. որ եւ առեալ զաստիճան Առաքելոցն սրբոց Թադէի եւ Բարթողոմէի, ելից զպակասութիւն նոցա, լուսաւորելով ծայրէ 'ի ծայր զամենայն Հայաստանեայս եւ զտունն Վրաց եւ զաշխարհն Աղուանից, եւ զամենայն դաւառսն շուրջանակի Հայոց ելից գիտութեամբ ճշմարտութեանն. եւ փոխեցին ըստ կարգի որդիք նորա զհաւատս ճշմարիտս եւ զվարս նորա զամբիծս, եւ զնահատակութիւն նորա հանապազորդ ժրաջան ճգնութեամբ եւ անաչառ յանդիմանութեամբ, զանցաւորս պատուիրացն Աստուծոյ, խօսելով եւ խորհելով յօրէնս Տեառն 'ի տուէ եւ 'ի գիշերի:

Եւ թէպէտ եւ սրբութեամբ արեանաւուք նորա, պարկեշտութեան զաւակքն ժամանակաւ զտեղի առին, այլ սերմն հաւատոյ նորա ուղղափառութեան, եւ ըստ հոգւոյ ծնունդքն նորա արմատացեալ եկաց եւ մնաց յաւիտեան, նախանձաւոր գործոց բարութեան, եւ անյաղթելիք 'ի պէսպէս պատահմանց եւ 'ի դիպուածոց մնացեալք. կացեալք 'ի փոփոխական ժամանակս անխախտելս, զորս ոչ պատրեաց փառքն Յունաց

դիւրաթառամն զոր խոստանային նոցա. և ոչ գոռոզական խրոխտալն նոցա որ 'ի ժամանակի բարձրութեան իւրեանց սպառնային. այլ յուսովն Աստուծոյ և յաղօթս մեծի Լուսաւորչին տեւեցին և մնացին յառաքելադիր հիմանն: Եւ թէպէտ սակաւք 'ի նոցանէ ակարացան ըստ տեսլեան սրբոյն Գրիգորի, այլ արմատն նոցա անփոփոխելի և առողջ կացեալ տարածեցաւ վերստին կենդանութիւնն անմահական հաւատոյն. և եղեն մեզ 'ի մխիթարութիւն և 'ի սփոփանս և 'ի վկայութի: Զի թէպէտ և աթոռն Աղէքսանդրու յԵգիպտոս և ամենայն Եթէոպիա և Հնդկաստան, ազգքն ընդարձակ և բազմաթիւ և թագաւորութիւնք և ճոխութիւնք և փարթամութեամբ քան զամենեսեան զանազանեալք, այլ վասն զի նոքա և հեռաւորք և բացականք են, անկարանամ զգլուխս մեր բարձրացուցանել, և զպարծանս մեր անձցուցանել 'ի Քրիստոս: Իսկ սոքա բազում եղեն մեզ նպաստամատոյցք և ձեռնտուք, և գրեթէ նոքօք կարացաք տեւել այն ամենայն անցից որք եկին 'ի վերայ մեր, և եղեն մեզ սիւն և հաստատութիւն. և ուխտ խաղաղութեան և դաշն սիրոյ է 'ի միջի մերում մինչեւ յաւիտեան. վասն որոյ և մեր սկսեալ զխորհուրդ քահանայութեանն յԱստուծոյ Հօրէ, կատարեսցուք 'ի նոցա քահանայու-

թիւնն, որ ըստ կամացն Աստուծոյ կայ և մինայ յաւիտեան ։

Եւ քանզի երեք Առաքեալք մտին ՚ի Հայս, Թադէոս և Բարթողոմէոս և Յուդա Յակովբայն. և թէպէտ առաջինն Թադէոս եկն և ապա Բարթողոմէոս և Յուդա, այլ զի ոմանք ասեն թէ Թադէոս ՚ի յեւթանասնիցն է, վասն այնորիկ դնիցուք զլուխ քահանայութեան նոցա զԲարթողոմէոս և ապա զԹադէոս և ապա զՅուդա և զայլ առաջնորդսն ըստ կարգի, և շնորհօքն Աստուծոյ հաստատեսցուք մինչև առ մեզ. և ՚ի նոսա վըճարեսցուք զասպարէզ աշխատութեանս մերոյ, և հանգիցուք ՚ի նաւահանգիստ յուսոյ խոստմանն Աստուծոյ, որ է սկիզբն և աւարտ ամենայն բարեաց, որ է օրհնեալ յաւիտեանս յաւիտենից ։

Ա. ԲԱՐԹՈՂՈՄԷՈՍ առաքեալ, մի յերկոտասանիցն ։

Բ. ԹԱԴԷՈՍ, զոր Աւետարանն պատմէ՝ թէ զառաջինն կոչէր Ղեբէոս, և ՚ի Տեառնէ անուանեցաւ Թադէոս ։

Գ. ՅՈՒԴԱ Յակովբայն, որ և սա յերկոտասանիցն վկայի և կայ յԱրմի քաղաք Հայոց։

Դ. ՍԻՄՈՆ որդի Յովսեփու եղբայր Տեառն մերոյ, և սա քարոզեաց ՚ի Հայս. և անդէն կատարեցաւ, և կայ յԱրմի քաղաք Հայոց ։

Ե. ԱՂԻՐՃԷ և ԽՍԱԴ. երկոքին սոքա յեւթանասնիցն են, և գնացին 'ի կողմանս Աղուանից հրամանաւ Թադէի, և անդ կատարեցան:

Զ. ԹԷՈՓԻԼՈՍ, առաջին ձեռնադրութիւն Թադէոսի 'ի Կեսարիա Հայոց 'ի Կապադովկիա:

Է. ԱԴԴԷ, կերպասագործ արքային Աբգարու, զոր կացոյց 'ի Միջագետս յՈւռհա քաղաք:

Ը. ԶԱՔԱՐԻԱ, զոր ձեռնադրեաց յարեւելս փոխան իւրեան, և ասաց՝ զսա ետու ձեզ վարդապետ, զոր ելից հոգին Տեառն:

Թ. ԹԱԴԷՈՍ, մի յեւթանասնիցն, որ գնաց հրամանաւ Թադէի 'ի մեծն Հայս, և 'ի կողմանս հիւսիսոյ. և լուեալ զմահն Աբգարու, դարձաւ և եմուտ 'ի փոքր Սիւնիք, և կրօնաւորեալ անդէն ծածկաբար՝ վախճանեցաւ, և տեղին շինեցաւ վանք և յանուն նորա կոչեցաւ:

Ժ. ՍՈՒՐԲՆ ԳՐԻԳՈՐ, լուսաւորիչն բովանդակ Հայաստանեաց, զամս 30:

ԺԱ. ՍՈՒՐԲՆ ԱՐԻՍՏԱԿԷՍ, կրտսեր որդին սրբոյն Գրիգորի որ 'ի ժողովն մեծ էր, ամս 7:

ԺԲ. ՏԷՐ ՍՈՒՐԲՆ ՎՐԹԱՆԷՍ, երէց որդին մեծին Գրիգորի, ամս 17:

ԺԳ. ՏԷՐ ՍՈՒՐԲՆ ՅՈՒՍԻԿ, որդին Վրթանայ, ամս 6: Եւ Գրիգորիս եղբայր նորա Ա-

ղուանից կաթողիկոս եկաց՝ 6 ամ։

ԺԴ. Տէր ՓԱՌՆԵՐՍԵՀ, 'ի գաւառէն Տարօնոյ, յԱշտիշատոյ, ամս 3։

ԺԵ. Տէր ՍՈՒՐԲՆ ՆԵՐՍԷՍ, որդի Աթանագինեայ՝ որդւոյ Յուսկանն, ամս 34։

ԺԶ. Տէր ՅՈՒՍԻԿ, զոր կացուցին զկնի մահուան սրբոյն Ներսեսի, ամս 4։

ԺԷ. Տէր ԶԱՒԷՆ, զկնի Յուսկանն կալեալ զաթոռն ամս 4։

ԺԸ. Տէր ՇԱՀԱԿ, եղբայր Զաւենի 'ի Մանձկերտոյ, ամս 6։

ԺԹ. Տէր ԱՍՊՈՒՐԱԿԷՍ, եղբայր Շահակայ և Զաւենի, ամս 7։

Ի. Տէր ՍՈՒՐԲՆ ՍԱՀԱԿ Պահլաւ, որդի սրբոյն Ներսէսի, թոռն Յուսկանն, ամս 50։ Նու աստ կատարեցաւ ցեղն սուրբ Գրիգորի։

ԻԱ. Տէր ՍՈՒՐՄԱԿ, հակառակաթոռ սըրբոյն Սահակայ, ամ մի։

ԻԲ. Տէր ԲԱՐԴԻՍՈՒ, ազգաւ Ասորի, ամս 3։

ԻԳ. Տէր ՍԱՄՈՒԷԼ, նոյնպէս Ասորի ազգաւ, ամս 3։

ԻԴ. Տէր ՍՈՒՐԲՆ ՅՈՎՍԷՓ, յաշակերտացն սրբոյն Սահակայ, ամս 3։ Սա վկայեաց Քրիստոսի, 'ի Յազկերտէ Պարսից թագաւորէ ընդ սուրբ Ղեւոնդեայ։

ԻԵ. Տէր ԳԻՒՏ, վանանդացի, 'ի գեղջէ Օթմսոյ, ամս 10։ Սա եդ զաթոռն 'ի Դըւին քաղաքի։

ԻԶ. Տէր ՅՈՎՀԱՆ Մանդակունի, հոգեկէր, ամս 6։

ԻԷ. Տէր ԲԱԲԳԷՆ, վանանդացի, ամս 6։ Յաւուրս սորա ամենայն Յոյնք և Վիրք նզովեցին զժողովն Քաղկեդոնի. ամս 43, յաւուրս Զենոնի և Անաստասայ թագաւորաց։

ԻԸ. Տէր ՍԱՄՈՒԷԼ, ՚ի գեղջէ Արծկէոյ, ամս 10։

ԻԹ. Տէր ՄՈՒՇԷ, ՚ի գաւառէ Կոտէից, ՚ի գեղջէ Այլաբերից, ամս 8։

Լ. Տէր ՍԱՀԱԿ, ՚ի Հարքայ, ՚ի գեղջէ Ուղկայ, ամս 5։

ԼԱ. Տէր ՔՐԻՍՏԱՓՈՐ, ՚ի Բագրեւանդայ, ՚ի գեղջէ Տիրառճոյ, ամս 6։

ԼԲ. Տէր ՂԵՒՈՆԴ, ՚ի գաւառէ Առաբերանոյ, ՚ի գեղջէ Առեստոյ փոքու, ամս 3։

ԼԳ. Տէր ՆԵՐՍԷՍ, ՚ի Բագրեւանդայ, ՚ի գեղջէ Աշտարակաց, ամս 9։

ԼԴ. Տէր ՅՈՎՀԱՆՆԷՍ, ՚ի Գաբեղենից, ՚ի գեղջէ Սինեղայ, ամս 17։

ԼԵ. Տէր ՄՈՎՍԷՍ, յԱռագածոտանէ, ՚ի գեղջէ Եղիվարդայ, ամս 30։ Ի տասն ամի սորա եղաւ թուականն Հայոց։

ԼԶ. Տէր ԱԲՐԱՀԱՄ, յՌշտունեաց, ՚ի գեղջէ Աղբաթօնից, ամս 23։ Յաւուրս սորա Վիրք ՚ի բաց կացին ՚ի միաբանութենէ Հայոց, և եղեն ընդ Յոյնք Կիւրիոնիւ։

ԼԷ. Տէր ՅՈՎՀԱՆՆԷՍ, ՚ի Գոգովտայ, ՚ի

գեղջէ Բագարանէ, ամս 26: Սա եդ աթոռ ՚ի Կոտայսն, յաւուրս Մորկայ Թագաւորի:

ԼԸ. Տէր ԿՈՄԻՏԱՍ, ՚ի գեղջէ Աղցից, ամս 26. շինող:

ԼԹ. Տէր ՔՐԻՍՏԱՓՈՐ, յԱզատ տանէ, յԱբրահամեան անուանեալ տոհմէ, ամս 4:

Խ. ԵԶՐ. ՚ի Նգայ, որ ագիտութեամբ և կաշառօք հաւանեցաւ Հերակլի և քաղկեդոնիկ եղեւ., բայց մեծ մասն Հայոց և վանորայքն անշարժ մնացեն:

ԽԱ. Տէր ՆԵՐՍԷՍ, շինող մեծ եկեղեցւոյն ՚ի Վաղարշապատ, և սրբոյն Սարգսի ՚ի Դուին, և ՚ի Վիրապին:

ԽԲ. Տէր ԱՆԱՍՏԱՍ, ՚ի գեղջէ Ակոռւոյ, ամս 6:

ԽԳ. Տէր ԻՍՐԱՅԵԼ, ՚ի Վանանդայ, յՈթմուս գեղջէ, ամս 10: Սա եհան զՆերսէս ՚ի Պարտաւայ կամօք Աղուանից:

ԽԴ. Տէր ՍԱՀԱԿ, հայրենեօք ՚ի Ձորոփորոյ, ՚ի գեղջէ Արքուայ, ամս 25: Սա կատարեցաւ ՚ի Խառան:

ԽԵ. Տէր ԵՂԻԱ, ՚ի գաւառէ Աղէովտայ, ՚ի գեղջէ Արճիշոյ, ամս 13:

ԽԶ. Տէր ՅՈՎՀԱՆՆԷՍ իմաստասէրն և սքանչելագործն, յՕձնայ, ամս 11: Սա ջնջեաց զպղտորութիւն Եզրի յամենայն Հայոց:

ԽԷ. Տէր ԴԱՒԻԹ, ՚ի գաւառէ Կոտայից, ամս 13:

ԽԸ. Տէր Տրդատ, 'ի Վանանդայ, 'ի գեղջէ Օթմնու, ամս 23։

ԽԹ. Տէր Սիոն, յեպիսկոպոսութենէն անեալ 'ի կաթողիկոսարանն, ամս 8։

Ծ. Տէր Եսայի, 'ի Նգայ, 'ի գեղջէ Էղիպատրուշոյ, 'ի նոյն հայրապետանոցին սընեալ 'ի տղայութենէ, ամս 13։

ԾԱ. Տէր Ստեփաննոս, 'ի Դունայ, այր սուրբ և գիտնական, ամս 2։

ԾԲ. Տէր Յովաբ, յՈստանէ կիւրապաղատին, ամիս 6 միայն։

ԾԳ. Տէր Սողոմոն, 'ի Գեղարքունեաց Գառնոյ (1), ամ մի։

ԾԴ. Տէր Գէորգ, յԱրագածոտնէ, 'ի բիւրականեան գեղջէ, ամս 4։

ԾԵ. Տէր Յովսէփ, յԱրագածոտնէ, 'ի մայրաքաղաքէ եկեղեցւոյն սրբոյն Գրիգորի, ամս 11։

ԾԶ. Տէր Դաւիթ, 'ի Մազազայ, 'ի գեղջէ Կաղկաղայ, ամս 27։

ԾԷ. Տէր Յովհաննէս, 'ի Կոտէից, 'ի գեղջէ Ովայից, ամս 22։

ԾԸ. Տէր Զաքարիա, 'ի Կոտէից, 'ի գեղջէ Ձագ կոչեցելոյ, ամս 22։ Սմա տուաւ ետ Յիսէ, խաչ բառնալ 'ի վերայ նորա։

ԾԹ. Տէր Գէորգ (2), 'ի Գառնոյ, ամս 21։

(1) Յօրինակին 'ի Գիւղ ոչէն Գառնոյ։
(2) Յօրինակին սխալմամբ գրի Տէր Գրիգոր։

Յաւուրս սորա Թագաւորեաց Աշոտ Բագ-րատունի ։ Սա ըմբռնեցաւ ՚ի գերութիւն, և եհան զնա Թագաւորն Աղուանից Համամ ։

կ. Տէր ՄԱՇՏՈՑ, խոստովանողն, ամիս 7 ։

կա. Տէր ՅՈՎՀԱՆՆԷՍ, ամս 6 (1). ՅԽԶ Թը-ւականին Հայոց ։

կբ. Տէր ԵՂԻՍԷ. ամս 7 ։

կգ. Տէր ԹԷՈԴՈՐՈՍ. ամս 7 ։

կդ. Տէր ԱՆԱՆԻԱ. ամս 23 ։ Այր բարի և կատարեալ և լցեալ ամենայն առաքինու-թեամբ ։

կե. Տէր ՍՏԵՓԱՆՈՍ. ամ մի ։

կզ. Տէր ՍԱՐԳԻՍ. ամ մի ։ Սա կամաւ եթող զհողս հայրապետութեան, պարապե-լով աղօթից ։

կէ. Տէր ՊԵՏՐՈՍ ։ Զսա հանին և եդին ՚ի բանտի, և եդաւ Դիոսկորոս հայրն Սա-նահնին, և յետ միոյ ամի կաթողիկոսն Ա-ղուանից դարձոյց յաթոռն իւր ։

կը. Տէր ԽԱՉԻԿ. ամս 2 ։ Սա քեռորդի էր Պետրոսի, և երկուքն մեռան ՚ի Յունաց աշխարհն ։

կթ. Տէր ՎԱՀՐԱՄ, որդի Գրիգորի Մա-գիստրոսի ։ Սա գնաց ՚ի Կոստանդնուպօ-լիս ՚ի Թարգմանութիւն, և անտի ՚ի Մսր, և դարձաւ, 40 ամ կեցեալ յետ ձեռնադ-րութեանն ։

(1) Միւս Թարգմանութիւնն ուղղագոյն ևս դնէ ամս 28.

Հ. Տէր Գէորգ, ամս 3, զկնի Վահրամայ։

ՀԱ. Տէր Բարսեղ, ազգական տէր Վահրամայ, տեղապահ և կաթողիկոս կամաւ Տեառն Վահրամայ յետ գնալոյ նորա 'ի թարգմանութիւն, ամս 12։

ՀԲ. Տէր Գրիգոր, ազգական տէր Վահրամայ և տէր Բարսեղի, ամս 54։

ՀԳ. Տէր Ներսէս, շնորհաւորեալն վարդապետութեամբ, եղբայրն Տեառն Գրիգորի. ամս 7։ Սա արար յոլով երգս շարականաց։

ՀԴ. Տէր Գրիգոր, եղբօրորդի նորա, ամս 20։ Սա շինեաց զեկեղեցին գեղեցկապաճոյճ յանուն սրբոյն Գրիգորի։

ՀԵ. Տէր Գրիգորիս Տղայն, որ դիպուածով վախճանեցաւ։

ՀԶ. Տէր Գրիգորէս Ապիրատն կոչեցեալ, ամս 7։ Սա ունէր բան վարդապետութեան։

ՀԷ. Տէր Յովհաննէս, այր մեծամիտ և յաղթասէր, ամս 18։

ՀԸ. Տէր Կոստանդին, յերրորդ մասնէ Հայոց, 'ի գաւառէ և 'ի դղեկէ Բարձրբերդոյ, որ հայի ընդ հարաւ 'ի դաշտն Կիլիկիոյ և 'ի ծոցն իւր Ադրիանոս կոչեցեալ։ Որդի առն արդարոյ և օրինապահի՝ Վահրամ անուն կոչեցելոյ. յորովայնէ ընտրեալ 'ի շնորհս և յաստիճան առաքելական. որ

և օրինօք և վայելչական կենցաղավարութեամբ ճանապարհորդեալ ՚ի պատիւն բարձրագոյն, այսինքն վանից առաջնորդութեամբ և եպիսկոպոսութեամբ նախակրթեալ յառաջագոյն, արժանաւոր վարուք յաչս Աստուծոյ և մարդկան. վասն որոյ և շնորհն կոչեաց զարժանաւորն իւր յոլով թախանձանօք բռնադատեալ յեկեղեցականաց և յաշխարհականաց, յիշխանաց և յիշխեցելոց, ժառանգեաց զաթոռ սուրբ Լուսաւորչին Գրիգորի, և միաբանեալ ընդ շնորհին յերկարեցաւ ՚ի գործն յոր կոչեցաւ։ Եւ է այժմ քսան և հինգ ամ հայրապետութեան սորա, յանառիկ ամրոցիս Հռոմկլայն անուանելոյ. խաղաղութիւն կալեալ առ հեռաւորս և մերձաւորս, վկայութիւն բարի և գովութիւն բազում յարտաքնոցն ունեալ, և աղօթս առ Աստուած և փափագ բաղձանաց յընտանեացն ազգացն Հայաստանեայցս, յորոց վերայ հայրենի աղետիւք խնամարկէ, փարելով զամենեքումբք աղեխարշեալ յալքասս, յորբս և յայրիս առատաձեռնութեամբ։ Եւ առ գերեալսն անխնայ ծախիւք դարձուցանելով. ՚ի վերայ զերծելոցն թևարկելով նման հաւու ՚ի վերայ ձագուց՝ զանցուցանելով զմարմնական ծնողաց գթովք, զարդարելով և պճնելով զնոսա յամենայնի։ Որ և աքար զանձն հաղորդ ա-

միՆնոյն երկեղածաց Աստուծոյ հաւատով և պէսպէս ծախիւք 'ի վանօրայս և յանապատս, պիտոյիւք և զարդիւք եկեղեցւոյ։ Յորոց վերայ յաւել և զայս մատեան, և ետ փոխել յատրուաց 'ի հայս, զոր վճարեսցէ Աստուած բազմապատիկ փոխարինիւ աստ և 'ի հանդերձեալն։

Որ թէպէտ և գրեալ ունիմք զժամանակս յԱդամայ հետէ, այլ այնք 'ի բազում գրեանս տարածեալ կան և յոլով աւուրց կարօտանամք ընթեռնլոյ. իսկ այս 'ի բազում պատմագրաց հաւաքեալ և համառօտեալ, ախորժելի և պիտանի է ուսումնասիրաց։ Զի ոչ որպէս այլք 'ի պատմագրաց միկուսի գնայ ընդ ազգ մի կամ ընդ թագաւորութիւն մի, և կամ սակաւ ինչ տանելով զքանն բովանդակէ թուով սուղ ժամանակաց. այլ սա բուռն հարկանելով զԱստուածաշունչ գրոց՝ բերէ ընդդապէս, քաղելով զամենայն աշխարհաց և զթագաւորութեանց զրոյց 'ի մի շար. և յամենայն ժամանակաց վերայ քայլելով զարժանաւորսն յիշատակի հաւաքելով հատուցանէ մինչեւ առ մեզ։ Եւ բազում բանս անծանօթս գտաք 'ի սմա, և յոլով տարակոյս մեր լուծաք. վասն որոյ զյոլովիւք զանց արարաք զոր առ մեզ գիւտ էր, և ոչ գրեցաք՝ զի մի աւելորդս թուիցիմք աշխատել. և էր որ կրկնեցաք զայլոց գրոց

տառացելոյն կարճառօտիւք՝ վասն զանեղին ընլոյ և զոճն պահելոյ։ Նա ընդ անծանօթ բանիցն որ աստ՝ մի՛ զարմասցուք և սուտ կարծեսցուք. զի ազգն Ասորւոց մօտաւոր և ընտանի է միշտ լեալ Հրէից աշխարհաւ և ազգաւ և լեզուաւ, քան զամենայն ազգս և յարուեստից իմաստնոց (*), և վարժք 'ի յուսումն. զի և ինքեանք Քաղդէացիք են, և որպէս աստ գտանես՝ առաջին լեզու և գիր։ Նաեւ որ զայս քաղածոյս աշխատեալ է Տէր Միխայէլ, 'ի Յունաց և Եգիպտացւոց և Եբրայեցւոց և 'ի Հռոմայեցւոց և Ասորւոց պատմագրաց է ժողովեալ, վասն որոյ առաւել սիրելի և հաւատարիմ է. որոյ յեշատակն օրհնութեամբ յեկեղեցիս, և վարձըն բազմապատիկ առաջի Աստուծոյ։

Արդ՝ 'ի յամի անժամանակն Աստուծոյ ընդ ժամանակաւ լինելոյն ՌՄԽԸ (1248) Թըւահամարութեանս, և 'ի ՈՂԷ Թուաբերութեանս Հայոց, փոխեցաւ գիրքս այս յասորւոց 'ի հայս հրամանաւ Տեառն Կոստանդեայ, 'ի քսան և հինգ ամի հայրապետութեան իւրոյ, և 'ի քսան և հինգ ամի թագաւորութեան Հայոց Հեթմոյ. որոց Տէր Աստուած փառաւորեսցէ զհոգիս նոցա, և սուրբ հայրապետացն և թագաւորացն պսակակից և թագակից արասցէ յիւր արքայութիւնն. որում փառք և զօրութիւն

և երկրպագութիւն ամենասուրբ Երրորդութեան, այժմ՝ և միշտ և յաւիտեանս յաւիտենից. ամէն:

---

## Յիշատակարան երկրորդ:

Բազմադիմի է շնորհք մարդասիրին և բարերարին Աստուծոյ առ ազգս մարդկան, զի յորդորէ հանապազ զբնութիւն մարդոյ 'ի գործս բարիս և 'ի շինութիւն հաւատոյ, այսինքն 'ի սէր և 'ի պարծանս ամենասուրբ անուան իւրոյ. վասն զի որպէս ինքն Արարիչն և ամենազօրն Աստուած բնութեամբ բարի է, նոյն և սիրող է բարեսիրաց և բարեգործաց ազգի մարդկան, ըստ այնմ որ ասէ. "Բարի առնէ սէր բարեաց." և դարձեալ թէ՝ "Բարի է Աստուած և բարեաց արժանաւորացն տուող:" Եւ արդ՝ զինչ է պտուղն բարւոյն, եթէ ոչ խաչն և եկեղեցին և դիրքն, որով յորդորին աստուածասէր և բանաւոր մարդիկ գործել և սիրել զբարիս վասն յիշատակի և փոխարինի հանդերձելոցն բարեաց: Վասն զի ոմանք շինեն եկեղեցիս՝ հրեշտակաց բնակարան և մարդկան քաւարան: Ոմանք կազմեն խաչս յոսկւոյ սրբոյ, և զարդարեն պատուական և պայծառ ակամբք վասն յիշատակի և սիրոյ խա-

չերլոյն Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի , որ արար խաղաղութիւն յերկինս և յերկրի արեամբ խաչին իւրոյ ։ Մեք զուգեն գիրք . այսինքն գրելով զյիշատակս մարտիւրոսաց յաղագս բարեխօսութեան առաջի անհեղ ատենին Քրիստոսի ։ Մեք արձանագրեն զյաղթութիւն և զպատերազմունս Թագաւորաց աշխարհակալաց , յուշ առնելով ազգի մարդկան առ ժամանակ մի լինել զԹագաւորութիւն մահկանացու Թագաւորացն, իսկ անմահ Թագաւորին Քրիստոսի Աստուծոյ մերոյ Թագաւորութիւնն անանց և յաւիտենական ։

Արդ՝ ես նուաստս յամենայնի Ստեփաննոս հայր Աքանց անապատիս , ետու գրել զպատմութիւն Տեառն Միխայելի պատրիարքի Ասորւոց , զոր է գրել ծայրաքաղ յԱդամայ մինչեւ ՚ի ծնունդն Քրիստոսի Աստուծոյ մերոյ . և ՚ի ծննդենէն Քրիստոսի մինչեւ ՚ի Հայոց Թուականին ՈՀԸ . և զպատմութիւն Տաթարին , այսինքն ազգին Նետողաց ԽԴ ամաց գործելոց մինչեւ առ մեզ վասն իմանալոյ զանցաւորութիւն սուտ և պատրող կենցաղոյս ընթերցողացդ և լսողացդ . զի ոչ Թագաւորութիւն , ոչ իշխանութիւն , ոչ այլ ինչ արարածական մնալոց է յայսմ աշխարհիս , այլ ամենն է ունայնութիւն ունայնութեանց , որպէս ասաց իմաստունն

Սողոմոն, անցանելով և տեսանելով զամենայն կենցաղս սուտ և ոչինչ, խաբող և անցաւոր ։

Արդ՝ ես եղկելի դրիչս Գրիգոր, աղաչեմ զպատահեալսդ ՚ի սմա, յորժամ ընթեռնույք զարարածապատում պատմութիւնս, ասացէք՝ Տէր Աստուած ողորմեսցի հօր Ստեփաննոսի առաջնորդի սուրբ ուխտին Ակներոյս և ամենայն ննջեցելոց իւրոց ։ Ողորմեսցի Քրիստոս Աստուած փակակալ Վարդանայ և ծնողաց իւրոց ։ Տէր Աստուած ողորմեսցի ամենայն գործաւորաց և սպասաւորաց սրբոյ Ուխտիս, առաջնոցն և միջնոցս, այլ և վերջնոցն որ գալոց են զկնի մեր ։ Ողորմեսցի Քրիստոս Աստուած Կոստանդ և Սիոն քահանայիցն և համաշունչ եղբարցն որ ըղթուղտս կոկեցին ։ Եւ ՚ի վերայ այսր ամենայնի յիշեցէք յողորմութիւնն Աստուծոյ զտառապեալ գրիչս, զի բազում աշխատանօք և տկար մարմնով գրեցի ։ . . . Յիշեցէք ՚ի Քրիստոս և զպատուական քահանայն զՅովհաննէս, որ զվերջին տետրս գրեաց, զի մեք էաք յոյժ տկար և անխել ։ Յիշեցէք և զտէր Թադէոս զհայր Աւագ անապատին, որ զօրինակս շնորհեաց ։ Եւ Քրիստոսի Աստուծոյ մերոյ փառք յաւիտեանս յաւիտենից . ամէն ։



# ՑԱՆԿ ԱՆՈՒԱՆՑ



Համառօտագիրք. բ. բերդ. գղ. գիւղ. գտ, գետ. գւ. գաւառ. եպ. եպիսկոպոս լ. լեառն. թգ. թագաւոր. կթ. կաթողիկոս. մգ. մարգարէ. պտ. պատրիարգ. ս. սուրբ. վդ. վարդապետ. ք. քաղաք.

(*) Աստղանիշք ցուցանեն զծանօթութիւնս.

րաց եւ լի ամենթով զնոյն Սանիքին յերկիր խաւ-
այն որ Ջանայր երեւելի պատերազմաւ յաղ-
թել աշխարհի, եւ խմանալի խորհրդով՝ ուղ-
ղափառաց եկեղեցւոյ. Յետ այնորիկ առա-
քեալ գանձս բազումս առ ամուսինն, եւ զըն-
նեալ զկենդանիս միաբանեցան 'ի զօրաց իւրոց
որ կային 'ի պետութեան. եւ եղեւ այս 'ի թուին
Ասորւոց ՌՆՁԸ (1488) եւ Հայոցն ՈԺԷ (617)[1].

Զայսու ժամանակաւ քրիստոնեայք որ կային 'ի Սեբաստիոյ՝ անկան 'ի մեծ նեղութիւն յերկիւղ պատճառաց, 'ի սովոյ եւ 'ի չարութենէ, եւ 'ի խռովս բարուց ամիրայից իւրեանց՝ որ միաբանեալ էր յաղթելն Դանիշմանեայ. եւ ազդ արարին նոցա եկեղեցականքն, եթէ թշուառութիւնս այս 'ի մեղաց է. զի կատարեալ է բանն Տեառն առ մեզ որ ասէ թէ՝ «Խառնեցան ընդ հեթանոսս եւ ուսան զգործս նոցա, եւ եղեւ նոցա 'ի գայթակղութիւն:» Որք եկեալք դարձեալ 'ի չարեաց մեղաց, եւ աղաչեալք զերեսս ողորմածին Աստուծոյ, զի սպառեսցէ, պակասեսցէ, իսպառ ջնջեսցէ: Եւ լուան ժողովուրդքն եւ սկսան պահել եւ աղօթել արտասուօք, եւ հրակել եւ աղաղակել առ Աստուած: Եւ դադարեաց Տէր 'ի բարկութենէ իւրմէ, եւ էարկ

(1) Սմբատ. (յեր. 103), յիշէ համառօտ զպատմութիւն Մանուէլի 'ի Խլիճ—Արսլանայ, եւ զպարտն զոր ընդ նմա կռուեցաւ.

՚ի սիրտ ամիրային և զղջացաւ ՚ի գործս իւր. և առաքեաց առ սուլտանն և սա ՚ի նմանէ գանձս և ետ ՚ի նա զՍելտրինն, և ինքն ել և գնաց ՚ի Խարթբերդ. և եղեւ մեծ դիւրութիւն քրիստոնէից և առատութիւն հացի, և ամենայն իրաց ընդարձակութիւն։

Ի թուին Ասորւոց ՌՆՁԹ (1489), ել Սալահադինն յԵգիպտոսէ երեսուն հազար հագած հեծելով, զատ ՚ի սոսկականացն և ՚ի հետեւակացն, և յիսուն և երկու հազար բեռնակիրս զինաբարձս զինի իւր։ Եւ եկն ՚ի Պաղեստին, և կալաւ Գիւանդ մի և զենեաց և արեամբ նորա լուացաւ ազօթից՝ և աղօթեաց, և պատրաստեցաւ պատերազմի և աւերման երկրին։ Իսկ թագաւորն Երուսաղէմի Պաղտինն (Դ.) ժողովեաց զսակաւ զօրսն իւր; և առաջի նոցա անկաւ ՚ի վերայ երեսաց իւրոց ընդդէմ՝ արեւելից. արարին և զօրքն նոյնպէս. և լացին և կարդացին առ Տէր սրտի մտօք. և երդուան զօրքն առաջի Աստուծոյ և առաջի թագաւորին ոչ դարձուցանել թիկունս ՚ի թշնամեաց, այլ մեռանել յօժարութեամբ ՚ի վերայ սուրբ Եկեղեցւոյ. և գնացին ՚ի վերայ նոցա։ Եւ յորժամ՝ տեսին զբազմութիւն . . . նոցին և հայեցան ՚ի սակաւութիւն իւրեանց, իջան դարձեալ յերիվարացն, և մոխրամած երեսօք արտասուեցին և պաղատեցին առ Տէր, և

կազմեցան այնմ հաւատով, և դիմեցին 'ի վերայ նոցա իբրև զարծուիս յերամս կաքաւաց։ Այլ տէր Յիսուս Քրիստոս Աստուածըն քրիստոնէից եհան հողմն մրրկեալ ընդդէմ նոցա ընդդէմ երեսաց Այլազգեացն, և թափէր զնոսա յերիվարացն, և դարձուցանէր զնոսա 'ի փախուստ առաջի նոցա. և նոքա կոտորէին զնոսա յանխնայ և ոչ աղբեցուցանէին 'ի նոցանէ։ Այլ փախեան և ցրուեցան Այլազգիքն ընդ կողմն հարաւոյ յանապատն. և յառաւօտէ մինչև 'ի մտանել արեգականն ոչ դարձան 'ի նոցանէ։ Այնպէս և 'ի վաղիւն, և մինչև 'ի հինգ օրն երթային և գտանէին 'ի նոցանէ լքեալ 'ի սովոյ և թաքուցեալս. և առին զամենայն ծանրութիւն ոսկւոյ նոցա և զկահ և զկարասի, և լցան և փարթամացան. և ուրախ արար Տէր զհաւատացեալս իւր, և 'ի համբաւս յայս եբեկ զմէջս . . . նոցա։ Իսկ Սալահադինն յոյժ սակաւուք անկաւ 'ի Միսր, և զգեցաւ սեաւ, և փակեցաւ 'ի տան խաւարի աւուրս բազումս։

Այլ 'ի սոյն ամի ամիրայն որ կայր 'ի Հէրիմն, կասկածեալ 'ի Հալպայ թէ խորհեցան նմա չարիս՝ սպանանել զնա. և խօսեցաւ ընդ բրինձն Անտաքոյ, և պահանջեաց 'ի նմանէ երդումն զի մի հանցէ զնա 'ի բերդէն, և կացցէ նմա 'ի հնազանդութիւն.

և երդուաւ նմա 'ի խաչն և յԱւետարանն ։ Ապա ամիրայն դարձաւ 'ի Հալպայ և ապստամբեաց և եկն ընդ Նոտաքու ։ Բայց յետոյ զղջացաւ բրինձն, և ստեաց երդմանն, և եբեր աղաչանօք զՌուբէն Կիլիկիոյ իշխանն, և գնաց 'ի վերայ Հերմին. և ոչ ետ Տէր 'ի ձեռս նորա վասն ստութեան նորա, այլ բազումք անկան 'ի զօրացն Փռանգաց և դարձաւ ամօթով, և զՀերիմն դարձուցին 'ի Հալպ՝ առեալ երդումն 'ի նոցանէ ։

Ի թուին Ասորւոց ՌՆՂ (1490) և Հայոցն ՈԺԷ (617), ժողովեցան Փռանգք 'ի Պաղեստինէ, և գնացին 'ի վերայ Յորդանանու իջան, և սկսան շինել անդ քաղաք 'ի տեղին որ կոչի անդ Յակոբայ, զի նմա առցեն զԴամասկոս ։ Ապա լուաւ Սալահադինն, և ժողովեաց դարձեալ զօրս և եկն 'ի Դամասկոս ։ Ապա զի ամիրայն Բալբաքու որ կոչի Արեգական քաղաք, որ է Իլիուպօլիս, ապստամբեալ էր, գնաց 'ի վերայ, և երգմամբ և սիրով և խոստմամբ առ զնա և զօրացաւ ։ Ապա գնաց 'ի վերայ նոր քաղաքին, զոր շինեալ էին Փռռանգք. և զօրքն Փռանգաց մինչեւ 'ի գալն Սալահադինին՝ լսեցին զհամբաւ գալոյ նորա, և գնացին ընդդէմ նորա և փախուցին զնա մինչեւ 'ի Դամասկոս. և եկն զօրն Փռանգաց մինչեւ 'ի դուռն Դամասկոսի, և դերեաց զերկիրն ։ Ապա Սալահադինն քաջալե-

բեալ եղաւ զհետ նոցա, և կալաւ 'ի նոցանէ հարիւր փրեր. և դարձեալ սրտապնդեալ չոգաւ 'ի վերայ քաղաքին զոր շինէին՝ և կալաւ 'ի նոցանէ հարիւր փրեր, և պաշարեաց զքաղաքն և յաղթեաց նոցա, և ընկէց հուր 'ի քաղաքն և սկսաւ այրիլ. և կային անդ հինգ հարիւր փրեր Մեսարաւն(1) իւրեանց: Եւ նոքա յորժամ տեսին թէ պարտեցան և յաղթեցան. ընկեցին զանձինս 'ի հուրն և 'ի դետն՝ զի մի անկցին 'ի ձեռս . . . Նացն և զմնացեալսն 'ի նոցանէ կոտորեաց Մալահադինն:

Ի Թուին Ասորւոց ՌՆՂԱ (1491) և Հայոցըն ՈԺԸ (618), մեռաւ թագաւորն Յունաց Մանիլն՝ թագաւորեալ ամս երեսուն և եւթն, և առ զթագաւորութիւնն Ալէքս (Բ) որդի նորա ամաց երկոտասանից. և երկոտասան իշխան կարգաւորէին զթագաւորութիւնն: Եւ մայր նորա եղև հաւատաւոր, բայց ընդ ձեռամբ ունէր զոմանս զանձուցըն. և յետոյ անկաւ 'ի պոռնկութիւն ընդ մի յիշխանացն երկոտասանից, և յայտնեցաւ գործն, և խորհեցան մետասան իշխանքըն սպանանել զմայրն և զորդին, և դնել թագաւոր զդուստր Մանիլին, որ էր յառա-

(1) Մէսար նշանակէ ըստ հին գաղղիերէն լեզուին՝ գլխաւոր, պետ կամ տէր, այսով իմանի գլուխն կամ կառավարն կարգի Տաճարականաց որք Ֆրէրք կոչէին:

զնա կնաջէն յօրինաւորէն, և ոչ կարացին։ Եւ լուան մայրն և որդին, և ջանացին ըմբռնել զնոսա. և փախեան մետասան իշխանքն յեկեղեցին մեծ. և զեւթն օր կալաւ ամբոխ զքաղաքն, և սկսան ծեծել զեկեղեցին փելիկոնաւն[1]. և յետ եւթն աւուր էառ ըզնոսա յերաշխի Պատրիարքն, և եհան յեկեղեցւոյն և տարաւ յարքունիսն, զի կացեն 'ի խաղաղութեան և յանհոգութեան, զի առեալ էր երդումն 'ի նոցանէ։ Իսկ Թագաւորն և մայրն առեցին երդմամբ և հանին զաչս նոցա։ Եւ բարկացաւ Պատրիարքն Թէոդորոս (Թէոդոս) անունն և անէծ զքաղաքն, և ինքն ելաւ և գնաց 'ի քաղաքէն. և անմիաբանութեամբ սորա անիծելով զքաղաքըն և զանմեղան. որ և ութ ամիս պատարագ ոչ մատուցաւ 'ի նմա, և մեռեալք ոչ հաղորդեցան և թաղեցան։

Ի Թուին Յունաց ՌՆՂԲ (1492) և Հայոցըն ՈԺԹ (619), եղեւ պատերազմ ընդ սուլտանն և ընդ Նորադինն ընդ տէրն Հարանքէմոյ և Կեսնոյ, զի առեալ Նորադինն ըզդուստրն սուլտանայ որ էր կին նորա, և յուսացաւ 'ի Սալահադինն։ Եւ սուլտանն չոգաւ քակեաց զԿեսուն. և ելեալ Սալահադինն ընդդէմ սուլտանայ առնուլ զվրէժ Նորադ-

(1) Փէլլիկոն կամ Փիլիկոնան, է գործի պատերազմական, որով ձգէին զմեծամեծ քարինս 'ի կործանել զպարիսպս քաղաքաց։

նին, և Հասան ամիրայն իմաստուն բանիւք արար խաղաղութիւն. և ոչ կռուեցան, և դարձան խաղաղութեամբ 'ի տեղիս իւրեանց։

Ի սոյն ամի ամիրայն Ուռհայոյ և Խառանայ ապստամբեաց 'ի Մօսլցոյն և հնազանդեցաւ Մալահադնին, և այսու պատճառաւ եղեւ Միջագետք Մալահադնին. զի ժողովեցան Մօսլցիք և ոչ իշխեցին կռուել ընդ Մալահադնին, և հնազանդեցան նմա. և գնաց Մալահադինն և եառ զԱմիթ, և եառ ըզնա Նորադնին զի խոստացեալ էր նմա։

Ի թուին Ասորւոց ՌՆՂԳ (1493) և Հայոց ՈՒ (620), մեռաւ Մէլիք Սալէհն տէրն Հալպայ. մեռաւ և Սեփադինն տէրն Մօսլայ, և առաւ Հալպ և Մօսլ ազգին Սեփադնին. և Նզադինն եառ զՀալպ եղբօր իւրում, և եառ 'ի նմանէ զՍնճարն։

Ի թուին Ասորւոց ՌՆՂԴ (1494) և Հայոց ՈՒԱ (621), Անդրոնիկոսն անօրէն, սպանողն պարոն Ստեփանէի, որ շրջեցաւ չարութեամբ 'ի տեղիս տեղիս, եմուտ այժմ խաբէութեամբ 'ի Կոստանդնուպօլիս, որպէս թէ գնայ 'ի հնազանդութիւն և 'ի խնամակալութիւն թագաւորին տղայոյ. և առեալ յայտնի արար զչար կամսն չարածերն այն, և հալածեաց զՓռանգսն զոր եգիտ 'ի քաղաքին. և խեղդեաց 'ի ծովն զմայրն և զտղայն իւր, և սպան հազար այր յիշխանացն Յունաց,

և չորեքտասան հազար գիւղ և վանք աւերեաց 'ի Յունաց. և առ զկին Ալէքսին իւր 'ի կնութիւն. հալածեաց զՓռանկսն զոր եգիտ 'ի քաղաքին և 'ի գաւառին, և ինքն թագաւորեաց: Եւ խորհեցաւ սպանանել զՓսիկոս(1) իշխանն մեծ, որ էր յազգէ թագաւորացն, և առաքեաց կոչեաց զնա. և ոչ կամեցաւ գնալ, զի ազդեցաւ նմա խորհուրդ թագաւորին: Եւ թագաւորն առաքեաց զզօրագլուխն իւր բերել զնա. և նա քամեաց զթուրն և եհար զզօրապետն և սպան զնա: Եւ ինքն երթայր յեկեղեցին, և սուրն արիւնոտ 'ի ձեռին իւրում և աղաղակէր. "Տեսէք և լուարուք ազգք և հասակք ամենայն, զի ջնջել կամի Անդրոնիկոս զթագաւորութիւնս Յունաց:" Եւ լուան զայս, և ժողովեցան յեկեղեցին իշխանք և զինուորք և ամբոխ քաղաքին, և ամենեքեան խոցեալ էին յԱնդրոնիկեայ և բարկութեամբ կային ընդ նմա. և ասացին ցՓսիկն (ցԻսահակն). "Թագաւորեա դու 'ի վերայ մեր, և անցցէ մորիկս այս:" Եւ փութացուցանէին զՊատրիարքն օծել զնա թագաւոր. և քարոզեցաւ ընդ քաղաքն: Եւ լուաւ Անդրոնիկոս և եմուտ 'ի նաւ և փախեաւ. և հասեալ նմա դարձուցին. և 'ի բերելն պատառ

(1) Այն է Իսահակ Բ Անգեղոս կոչեցեալ, զի որդի էր Անդրոնիկոսի Անգեղոսի:

տան նմա հեծել և կայցեն 'ի հնազանդութիւն։

Եւ 'ի նոյն ամի մեռան Նորադինն և խուրդբադինն (1) տէրն Ամթայ և Մերտնայ. որ էին ազգականք միմեանց յԱրթուխեանց անտի. զի բազում եկեղեցիս քակեաց Նորադինն 'ի յԱմիթ, վասն որոյ և հարաւ բարկութեամբ 'ի Տեառնէ, և էառ զիշխանութիւնն հարձորդին իւր խուրդբադինն (2), և զՄերտինն էառ Հասամադինն որդին խուրդբադնին։ Եւ 'ի մեռանելն Նորադնին, Սեմրդդինն տէրն Բալուայ էառ զԽարթբերդ։ Եւ յայսմ ժամանակի մեռաւ ամիր Սիրանն տէրն Խլաթայ, որ էր այր բարեմիտ և ողորմած առ աղքատս և կարօտեալս, և բազում դիւրութիւնս առնէր եկեղեցեաց և քրիստոնէից. և յետ մահուան սորա էառ զտեղի նորա Բակտամուր (Պէք—Թիմուր) ծառայն իւր։

Եւ 'ի սոյն ժամանակս բրինձն Անտաքայ արար սէր ընդ Սալահադինին, և նենգիւ որսաց զՌուբէն զտէրն Կիլիկիոյ, և ըմբռնեաց զնա և եդ 'ի բանտի. և եմուտ 'ի Կիլիկիա

(1) Քութպ—էտտին Իլ—Կազի որդի էր Նէճմ—էտտինի Ալբայ որդւոյ Դիմուրթաշայ՝ Օրդուքեան իշխան Մերտինոյ և Մուփարկինոյ։

(2) Իմա՝ զԱմիթն էառ միւս խուրդբադին հարձորդի Նուրէտտինի։

և յամեաց ամառն մի բովանդակ, և ոչինչ կարաց առնել նմա, զի պարոն Լեւոն եղբայր նորա իմաստապէս վարէր զիշխանութիւն երկրին։ Եւ Բրինձն ել ամօթով յերկրէն. բայց յետոյ տուին կամաւ իւրեանց ոսկի և զԹիլն և զՃաստանս, և հանին 'ի բանտէ զՌուբէն. որ և յետ այնորիկ առին զտեղիս իւրեանց և արհամարհեցին զԲրինձն[1]։

Յայսմ ժամանակի եղեւ պատերազմ 'ի մէջ Թուրքաց և Քրդաց, և յերկարեաց շփոթն զամս ութ զկնի միմեանց. և էր պատճառն այսպիսի։ Թուրքմանքդ որ խարանօք[2] և բազօթեայք շրջին, և զձմեռնային յեղանակն գային խոտանօք իւրեանց 'ի կողմն Հարաւոյ սակս կակղութեան օդոյն, և զամառնային ժամանակն ելանէին 'ի կողմն Հիւսիսոյ վասն բարեխառն և անխորշակ օդոյն. և 'ի գնալն և 'ի դառնալն գողանային զնոսա Քրդերն և զօրանային։ Եւ յայսմ ամի գը-

(1) Սմբատ ասէ (յեր. 104) եթէ Ռուբէն առ 'ի հանել զպետութիւն իւր եկեալ յԱնտիոք. ձերբակալ եղեալ յիշխանէն արկաւ 'ի բանտ. որ և ազդ արարեալ առ Բակուրանն քեռի իւր՝ տէրն Պապեռոնի, առաքեցաւ մայրն Ռուբենի միով 'ի պատանդի փոխանակ որդւոյն՝ մինչև հատուսցէ ըզփրկանս իւր. և կարկեաց, ասէ, Ռուբէն զգին անձին իւրոյ և ետ զՍարաւանդիքարն, զԹիլն և զՃկերն և հազար դահեկան ոսկի։ Եւ եղեւ այս 'ի թուին Հայոց ՈԼԴ (1185)։ — Վարդան. յեր. 174։ Միք. Չամչեան. Հա. Գ. յեր. 141։

(2) Յօրինակին՝ խարգահոք։

տին երկու հարիւր Բուրդ դարձանեալ յերկիրն Շղղթնայ վասն մնասու, և սպանին բռնաւս . և վասն այսորիկ ժողովեցան տասն հազար Բուրդ , և Թուրքմանքն կրկին քան զնոսա, և եղեւ կռիւ մեծ յերկիրն Շղղթանայ, և յաղթեցաւ Բուրդն և խայտառ կոտորեցան ։ Եւ յետ այսորիկ ձայն ետուն դարձեալ ազգն Բրդաց , և ժողովեցան 'ի կողմանցն Ածբնայ և 'ի Տաւրաւզնայ երեսուն հազար , նոյնպէս և Թուրքմանքն առանց թուոյ . և կռուեցան մերձ Ածբնայ. և դարձեալ զօրացաւ Թուրքմանն և կոտորեցին զԲուրդն հարուածս մեծամեծս յոյժ , և խապառ սատակեցին զնոսա . և գնացին առ ին զքանակետղն նոցա։ Եւ վասն այսորիկ հատաւ ազգն Բրդաց 'ի Միջագետաց . քանզի սակաւ զերծեալք անկան յերկիրն Կիլիկեցւոց և յամուր տեղիս ուրեք ուրեք ։

Բայց քրիստոնէից ոչ մեղանչէին Թուրքմանքն , մինչեւ գտան զոմանս Բրդեր թաքուցեալ 'ի տունս քրիստոնէից , և այսու պատճառաւ սկսան նեղել զքրիստոնեայսն 'ի տեղիս տեղիս ։ Եւ էառ Թուրքմանն զՌրապթիլն և զԹլպաշ (1). կոտորէին և վա-

(1) Ալպուլֆարաճ' որ 'ի Քրոնիկոնի իւրում ( յեր. 406) հետեւի ասորական բնագրին Միխայելի . փոխանակ անուանց բառիցս Արամինէ և Թլպաշ ունի՝ Կարապեր և Թլպաշ . որք էին մենաստանք երկու . զորս առեալ Թուրքաց այրեցին, և զկրօնաւորսն 'ի սուր հանին ։

ճառէին զքրիստոնեայսն, մինչեւ ամենայն ամիրայքն սկսան զզուշանալ երկրի խուժանաց։

Ի թուին Նորուաց ՌՆՂԸ (1498) եւ Հայոցն ՈԻԵ (625), ժողովեցաւ Սալահադինն ամենայն հնազանդելովք իւրովք՝ Եգիպտացօք, Ա-թուրացօք, Միջագետօք, եւ խաղաց գնաց ի վերայ Փռանգին մերձ ի Տաբարիա (1)։ Եւ եկին Փռանգքն եւ Թագաւորն Երուսաղէմի ընդդէմ նոցա, եւ յիշեցաւ մեղք քրիստոնէից առաջի Տեառն, եւ քննեցաւ յարդար իրաւանց նորա, եւ եղեւ հարուած եւ բարկութիւն ի Տեառնէ ի վերայ Փռանգաց։ Եւ զօրացան Այլազգիքն եւ կոտորեցին եւ առին ի սուր սուսերի խուժանց զՔրիստոսասէր զօրքն Փռանգաց. եւ կալան զԹագաւորն Երուսաղէմի եւ զամենայն փրերսն, եւ

(1) Յաւուրց անտի առաքելին Երուսաղէմի Գաղղիոյ զօրն կռուեցելոյ, կալեալ էին Փռանգք զաշխա ուխտի ընդ Սալահատինի. զոր Ռէյնալդոս որ Շադիյեօն իշխանն Քերեկոյ ուերեայ՝ ասպատակելով զկարաւանն ուխտաւորացն Մահմետականաց որ երթային ի Մէքքա. վասն որոյ եւ Սալահէտտին հրամանս արձակեաց յԵգիպտոս, յԱսորիս եւ ի Միջագետս ժողովել ամենայն խալամանց ընդ դրօշու սրբազան պատերազմին։ Եւ Սալահէտտին արշաւեաց բանակաւ իւրով ի Տիբերիա եւ առ զայն, ուր հասեալ Կին որ Լուսինեանն Թագաւորն Երուսաղէմի հանդերձ իշխանօք, վառանդեալ ի պատերազմին անկաւ ի ձեռս թշնամեաց, գերեցաւ եւ խաչն սուրբ։ Իսկ Ռէյմոնտ կոմս Տրապոլսի նախ քան զպարտել քրիստոնէից՝ փախուցեալ էր ի պատերազմէն, եւ զկնի սակաւու մեռաւ յուսահատութեամբ. Վարդան, յէջ. 177։

եղեւ ուրախութիւն մեծ Թուրքաց ազգին։ Բայց նախ քան զպատերազմին փախեաւ կոմսն Տրապօլեայ, և զնա առեն պատճառ քրիստոնէից կործանման, զի բանս եդեալ էր յառաջագոյն ընդ . . . ոն։ Իսկ Սալահադինն էառ զՏաբարիա, և կոտորեաց և աւերեաց զնա. և այսու ձեռօք խուրմք ըն- Արնաղոն զբրինձն Անտաքոյ և երեք հարիւր Փրեր, և լուացաւ արեամբ նոցա. և ապա գնաց 'ի յԱքքայ, և իշխանքն որ կային անդ, փախեան նաւով 'ի Սուր. և էառ զԱքքայ, և էառ զերի բազում յոյժ։ Եւ Կեսարիա և Նազարէթ և Յոպպէ թողին զքաղաքսն, և դիւրաւ տիրեաց 'ի վերայ նոցա Սալահադինն։ Եւ ոչ ոք կարէ պատմել զնախատինսն քրիստոնէից՝ զլթուք եւ զանհարութիւն . . . նացն։

Իսկ Սալահադինն գնաց 'ի յԱսկալոն և երդուաւ նոցա թողուլ զնոսա կենդանույն ուր և կամիցին գնալ։ Եւ ետ նոցա զԹագաւորն Երուսաղէմի, և առ զքաղաքն. և բնակիչքն առին զԹագաւորն և գնացին 'ի Սուր։ Եւ ապա եկեալ Սալահադինն 'ի վերայ Երուսաղէմի, և աւուրս ինչ պաշարեաց զնա. և զի ոչ գոյր նոցա ուստեք ակնկալութիւն, խորհեցան տալ զքաղաքն. և կտրեաց Սալահադինն զգինս բնակչաց քաղաքին դահեկանս տասն, զի տացեն նմա ըստ գլուխս և եր-

թիցեն յոր և կամիցին (1)։ Եւ արարին այն–պէս, և ետուն զքաղաքն. և որ ոչ կարաց գնել զանձն իւր, մնաց անդէն 'ի ծառայու–թեան։ Եւ ոչ ոք էր բաւական ժուժալ ար–տասուացն զոր հեղուին քրիստոնեայքն յե–րանելին յաստուածընկալ քաղաքէն. և որ մը–նացին 'ի տեղին՝ էին թուով քան հազար արք և կանայք. և 'ի նոցանէ չորս հազար ծերս և պառաւունս ազատեաց Սալահա–դինն, և եօթն հազար տղայս արու և էգ բաժանեաց զօրաց իւրոց. և հինգ հազար երիտասարդս առաքեաց 'ի Մսր գործել ա–ղիւս 'ի շինութիւն պարսպաց, և հինգ հա–զար եթող յԵրուսաղէմ շինել զպարիսպ նորա։ Եւ զՏաճարն լուացին արեամբ քրիս–տոնէից, և դարձեալ լուացին վարդաջրով. և եդին սահման ոչ մտանել 'ի նա քրիստո–նէից, և որ մտանէ՝ մեռանի։ Եւ արար ըզ–տաճարն Յարութեան ընդ հարկաւ, զի որ մտանէ՝ տացէ կարմիր մի։ Եւ դարձաւ գը–նաց Սալահադինն 'ի վերայ Սրոյ (Տիւրոս)։ Եւ եկն յաւուրսն յայնոսիկ կոմս մի Մարքիս–անուն (2), այր հզօր և իմաստուն, և 'ի ձեռն

(1) Վարդան ասէ՝ յարանց մին. դահեկանս տասն և կի–նաց՝ հինգ. յեր. 177։

(2) Մարքիզն ոչ է անուն մարդոյ՝ այլ պատուոյ, և կո–չէր ինքն Գոնրատոս առ Մոնֆերրա. որոյ հայրն 'ի բանտի կայր 'ի Դամասկոս։

նորա փրկեցաւ Սուր։ Եւ Սալահադինն գնաց և էառ զՍայդա և զՊէրութն և զՃէպէլն և զԹիպնին, և տիրեաց նոցա։

Ի թուին Յունաց ՌՇ (1500) և Հայոցն ՈԻԷ (627), էառ Սալահադինն զՇաւպաք և զՔարաք որ 'ի վերայ ծովուն (1). և գտան 'ի Քարաք քարայր մի մեծ յոյժ՝ լցեալ թերապարգ արծաթով, որ հալ մի պահաս էր առ 'ի սրբել զնա ամենեւին, և ոչ կարացին 'ի պէտս առնուլ զնա, և ոչ գտաւ արուեստաւոր այնպիսի որ գիտէր զհանգամանս նորա։ Եւ անտի դարձաւ և եկն և էառ զԼատիկն և զՃէպէլէ և զՍեհունն և զՊաղրաս և զԴարպսակն։

Եւ 'ի սոյն ամի որդին Կըլիճ ասլանայ ժողովեաց զօր պատերազմել ընդ հօրն. զի Հասան զօրապետն սուլտանայ զայրացուցեալ էր զսուլտանն 'ի վերայ որդւոյն. և յորժամ կամէին դիպիլ միմեանց պատերազմաւ, Սարհամ շահն փեսայ սուլտանին, տէրն Եզնկային, անցաւ 'ի մէջ և արար խաղաղութիւն. և բազումք որ ընդ որդւոյն էին, ամաչեցին 'ի ծերութենէ սուլտանին, և խափանեցաւ պատերազմն. բայց յետոյ սուլտանն կոտորեաց 'ի Թուրքէն որ միաբանեալ էին ընդ

(1) Քերեկն է անդր քան զմեռեալ ծով. իսկ Շաւպաք 'ի հարաւոյ նորա։ Զայսոսիկ քաղաքս ոչ Սալահատին՝ այլ Մալէք—Ադէլ եղբայր նորա առ, ասէ Իպն—Ալաթիր։

որդւոյն՝ չորս հազար անձինս, և զՀատան զօրապետն սպանին Թուրքն։ Եւ ՚ի նոյն ամի տիրեաց Սեղտինոյ մի ՚ի յորդւոցն սուլտանայ, որում անուն էր Խայր շահ Ազադին (1)։

Ի Թուին Ասորւոց ՌՇԱ (1501) և Հայոց ՈՒԸ (628), շարժեցաւ ուժն փռանգաց, և եկին ընդ ծով առանց Թագաւորի բազմութիւն ազգաց յոյժ, և իջան ՚ի վերայ Աքայոյ, և պատերազմեցան ընդ քաղաքն, և ոչ կարէին առնուլ զնա, զի կային անդ հարիւր հազար պատերազմող. և Սալահադինն ոչ իշխէր պատերազմիլ ընդ նոսա։ Եւ շինեցին փռանգքն տունս բազումս և եկեղեցիս և չորս հազար ջաղացս։ Յետոյ եկն և Թագաւորն Աղամանաց ՚ի վերայ Կոստանդինուպօլսի և պատերազմեցաւ ընդ նոսա, և ապա յետոյ արար ընդ նոսա սէր, և անց յայսկոյս. և եկին ընդ անջուր և ընդ դժուար ճանապարհ առաջնորդութեամբ Յունաց, և կոտեցան ՚ի վերայ Թուրքմանք և կոտորեցին զբազումս։ Եւ սուլտանն արար սէր, և ետ նոցա ճանապարհ, և եկին ՚ի Սելեւկիա. և անդ Թագաւորն նոցա խեղդեցաւ ՚ի գետն, և բերաւ մարմին նորա յԱնտաք (2)։ Յետոյ

(1) Խայրշահ—Ազադին. այն է Մուէզ—էտտին Քայսար—Շահ. էր որդի Խլիճ—Ասլանայ Բ։

(2) Փրետերիկոս Ա Պարպարոսսա կոչեցեալ, որ ՚ի լոգա-

եկին երկու թագաւոր այլ(1) և գնացին յԱ-քայ՝ և առին գերի բազում. և ապա խընդ-րեցին 'ի Սալահադնէն փոխել զծառայսն որ 'ի Դամասկոս զՓռանգսն՝ ընդ ծառայսն զոր նո-քա ունէին. և Սալահադինն ոչ կամեցաւ։ Եւ ապա հանին Փռանգքն քսան և հինգ հազար ծառայս և կոտորեցին, և կուտեցին 'ի վերայ միմեանց, և արարին 'ի վերայ աղօթս՝ որպէս և արար Սալահադինն. և եդին զքորորդին Անկլիթեր (Անգղիոյ)(2) թագաւորին կոմս Ա-քայոյ, և արարին խաղաղութիւն ընդ Սա-լահադնին. զի եհաս համբաւ ինչ յերկրէն իւրեանց և դարձան և գնացին։ Եւ Սալա-հադինն շինեաց զպարիսպն Երուսաղէմի ամ-րագոյն քան զառաջինն։

Ի թուին Ասորւոց ՌՇԲ (1502) և Հայոց

նաւն 'ի գետն Սելեւկիոյ, այն է Կէօք—սու. հեղձաւ յամի 1190։ Ներսէս Լամբրոնացի։ — Հարայարողն Սամուէլի։ — Վարդան, յեր. 179։

(1) Այս Լուսինեան ազատեալ 'ի գերութենէ, հակառակ երդմանն զոր ետ Սալահէտտինի, երթեալ պաշարէ զՊտղոմայիդ. Յայնմ միջոցի հասին յԵւրոպիոյ նոր խաչակիրք Տանիմարգացիք. Անգղիացիք. Ֆլամանդք. յորս կային արք իշխանաւորք և արքեպիսկոպոսն Կանդորբերի։ Հուսկ ապա հասին անդ և Փիլիպպոս արքայ Գաղղիոյ և Ռիչարտ թագաւոր Անգղիոյ։ Վարդան, յեր. 179։ Տես զընդարձակ պարագայս առման քաղաքին. 'ի պատմութեան խաչակրաց Միշոտի. Հտ. Բ. Գր. Ծ։

(2) Հենրի որ Շամբանեւլ, որ ընտրեցաւ ապա թագաւոր Երուսաղէմի յամի 1192. և նստէր 'ի Պտղոմայիդ (Ակքա)։

ՈԻԹ (629), եղեւ հալածական յորդւոց իւրոց Խլիճ առլան, և ժողովեցին զնա Կօնացիքն (Իկոնիացիք) առ իւրեանս. և աւագ որդի նորա ամբարձ զգլուխ իւր Պղաւրայն[(1)], և անհամբեր եղեալ հայրն ժողովեաց ըստ կարի զօրս գնալ 'ի վերայ որդւոյն, և 'ի ճանապարհին հիւանդացաւ և մեռաւ, և դարձուցին զնա 'ի Կօնն։ Նա էր ընդ նմա որդի մի կրտսեր, զոր եդին 'ի տեղի հօրն. և Խլիճ առլան մեռաւ 'ի Թուին Ասորւոց ՌՇԴ (1504), թագաւորեալ ամս երեսուն և ութ, և մնաց թագաւորութիւնն երկոտասան որդւոց իւրոց։

Իսկ 'ի Թուին Ասորւոց ՌՇԵ (1505) և Հայոց ՈԼԱ (631), մեռաւ և Սալահադինն 'ի Դամասկոս, և եթող քսան և երեք որդի[(2)], որ և զաւագ որդին կացոյց 'ի Դամասկոս և զերկրորդն 'ի Միսր, և զերրորդն 'ի Հալպ. և անուանեաց զնոսա թագաւորս և սուլտանս, և զայլսն ընդ ձեռամբ նոցա[(3)]։ Նա կայր եղբայր նմա Մելիք Յետլ (Մալեք Ադէլ) անուանեալ և ետ նմա զՈւռհա և զԽառան

(1) Աւագ որդի Խլիճ առլանայ էր Քութպ-էտտին Մալէք Շահ, որ տիրեաց Մելիտինի, Կեսարիոյ և Կողոնիոյ։

(2) Սալահէտտին եթող եւթն և տասն որդիս և եթ, և դուստր մի։

(3) Մալէք Աֆտալ սուլտանացաւ 'ի Դամասկոս, տիրելով և Պաղեստինի. երկրորդն Մալէք-Ազիզ՝ յԵգիպտոս. երրորդն Մալէք-Դահեր՝ 'ի Հալպ։

և զՄուփարկին և զՍամուսատ և զԽլձպար, և զԹարաք և զՇաւպաք, և զայս հոգացաւ մօտ 'ի կատարած կենաց իւրոց։ Իսկ Մօսլայ տէրն(1) արար միաբանութիւն ընդ եղբարսն իւր ընդ տէրն Ճզիրոյ և ընդ տէրն Մերտինայ և ընդ տէրն Խաղայ և ընդ Սնճարայ, և եկն նոքօք առնուլ զԽառան. և հիւանդացաւ 'ի ճանապարհին և դարձաւ 'ի Մօսըլ, և այլքն ցրուեցան։ Եւ Մելիք Յեւոլն գնաց և եառ զՄծբին և զԽաղա և զԴապուրն, և այլ ամիրայքն հնազանդեցան նմա որպէս և եղբօր իւրում Սալահադինին։ Եւ գնաց Մելիք Յեւոլն 'ի կողմանս Հայոց 'ի Խլաթ, և ոչ կարաց առնուլ զնա, և դարձաւ։ Եւ 'ի նոյն տարւոջ մեռաւ Ազադինն (Ազզ—էտտին) տէրն Մօսլայ և առ զտեղի նորա Նորադին որդին իւր։

Յայսմ ամի Լեւոն քաջ և անուանի իշխանն Հայոց ըմբռնեաց զԲրինձն Անտաքոյ (Պոէմոնտ), և արկ զնա 'ի չարչարանս՝ փոխարինել նմա զչարչարանս եղբօր իւրոյ Ռուբինայ։ Եւ եկն կոմսն Աքայոյ Սիր Հեռի (Հենրի), մեծաւ աղաչանօք թափեաց զԲրինձն և առաքեաց յԱնտաք(2)։ Եւ ինքն արխադոյնն Լեւոն տիրեաց եւթանասուն և երկու բեր-

(1) Ազզ—էտտին Մասուտ՝ թոռն Զանգեայ։

(2) Սմբատ, յեր. 108։—Միշոդ, պատմութիւն խաչակրաց. հտ. Բ. Գլ. 9. յեր. 178։

դի , էր զոր նախնիքն իւր կալեալ էին և էր զոր ինքն էառ 'ի Յունաց և 'ի Թուրքաց. Եւ անկաւ ահ և երկիւղ նորա 'ի վերայ ամենայն ազգաց սահմանակցաց աշխարհին իւրոյ։ Եւ ապաւինեցան 'ի նա որդիքն սուլտանայ . և եկն առ նա 'ի հնազանդութիւն Մելիքն Բալաթին (Ալփխաթան) որ տիրէր վերադոյն աշխարհացն. և ել մեծն Լեւոն և էառ բերդ մի մերձ Կեսարիոյ և ետ նմա ։

Իսկ Թագաւորն Մսրայ Մելիք Նզիզն եկն 'ի Դամասկոս 'ի վերայ եղբօրն (Աֆտալայ), և գնաց հօրեղբայրն Մելիք Յետոյն առնել խաղաղութիւն 'ի մէջ նոցա , և արար նենգութիւն մեծ , զի դեղեաց զՄելիք Նզիզն , որ և ընդ հասանելն 'ի Մսր մեռաւ . և առ զԵգիպտոս 'ի յինքն և զՄելիք Սալէհն խաբեաց թէ՝ « Դու կացիր խաղաղութեամբ 'ի հանդարտագոյն վայրսն 'ի Սամուսատ և 'ի յՈւռհա և 'ի Խառան և յԻսաղս , և ես կացից ընդդէմ Փռանգին և այլոց ազգաց ։ » Եւ հաւանեցաւ նմա և ասէ . « Ելից զգանձ հօր իմոյ և գնացից . և դու կալ զԴամասկոս ։ » Եւ նա ասաց . « Արի գնա , և ես զամենն բառնամ և առ քեզ յղարկեմ ։ » Եւ ել և գնաց 'ի յԻսաղս և ոչ ընկալան և ոչ յՈւռհա և ոչ յայլսն . և գնացեալ 'ի Սամուսատ, և զայն ետուն 'ի ձեռս նորա , զի այնպէս էր պատուիրեալ ծածկաբար ։ Եւ Մելիք Յետոյն

շրջեալ և տեսեալ զտունս գանձուցն Սալահադինին՝ ագահեցաւ և ոչ ետ․ այլ մտեալ ՚ի տուն մի լցեալ մատուտակ, և զայն եբարձ քսանի բեռն և մատնեհարեաց ծածկաբար և առաքեաց առ նա։ Եւ յորժամ ետես (Մելիք Սալեհ) զխաբէութիւնն, խոցեցաւ անմխիթար և ամաչեաց յոյժ․ այլ ոչ էր ձեռնհաս առնել նմա ինչ, և ընկէց զդաստանն յԱստուած որ յամենայնի բաւական է հատուցանել։

Իսկ պարոնն Լեւոն որդին Ստեփանէ օր ըստ օրէ երթայր և զօրանայր Աստուծով յաջողեալ և յամենեցունց փառաւորեալ․ և յայնժամ յորժամ տկարացոյց Աստուած շուրջանակի զթշնամիս նորա և ՚ի կոր կործանեաց զամենայն հակառակորդս նորա, տիրեաց նա լիով երկուց Կիլիկէից լերամբք և դաշտօք, քաղաքօք և ամրական դղեկօք․ և առ քաջութեամբ իւրով և զհասարակն Ասորացւոց և մասունս ոչ սակաւս յերկրորդ Կապադովկացւոց, յԵրրորդ Հայոց, զոր ոմանք Առաջին անուանեն Հայք․ զրաւեաց ընդ իւրով իշխանութեամբ և յԱսորեստանեաց գաւառաց։ Եւ ցուցաւ ինքնագլուխ և ճոխ իշխանութեամբ, զի ոչ ոք տիրէր ՚ի վերայ նորա․ և համբաւ արիութեան նորա թուլացուցանէր զքիլս անօրինաց և պարզէր զերեսս քրիստոնէից և լնոյր խնդութեամբ.

և ուրախութեամբ, վասն որոյ փութային պատուել զնա Թագիւ, Թագաւորն Յունաց վասն պատճառին՝ զի Թերևս հնար լիցի նովաւ յաղթել Թուրքացն որ բռնացեալ կալան զիշխանութիւն նորա. իսկ Թագաւորն Փռանգաց վասն դաշանց սիրոյն զոր ունէին ընդ Հայք ուխտիւք 'ի հին ժամանակաց. և վասն այսորիկ երկոքին առաքեցին նմա Թագ ոսկիակազմ, և պսակեցին զնա յաղթութեան պսակաւն ըստ վայելման և պատշաճի արժանաւորութեան իւրում (1)։ Եւ այսպէս վերստին նորոգեցաւ Թագաւորութիւն Արամեան զաւակին, և Թագն Հայկազանց և Սենեքերիմանց եդաւ 'ի գլուխ արժանաժառանգ զարմին Լեւոնի 'ի ՈԽԵ (645) Թուին Հայոց. այր քաջ և ազատամիտ և արիական և հեզ և մեծահաւատ, որ և բազմացոյց զարդիւնս աստուածպաշտութեան, ելից վանօրայիւք և անապատաւորօք զաշխարհս իւր, և շինուածօք եկեղեցեաց, ընդ մամբ ազնիւ և զպարարտութիւն երկրի իւրոյ տալով նոցա և նուիրելով Աստուծոյ արձանագրութեամբ և կտակօք ոնլուծիւք։ Եւ էր ահագին առ օտարսն և բարեմիտ առ

(1) Սմբատ, յեր. 108—109։ — Վահրամ, յեր. 215 — Կիրակոս (յեր. 91) պատմէ հանդերձ պարագայիւք զայս. մինչ որով հաճեցաւ կայսրն Ալամանաց և պապն Հռոմէից պատուել զԼեւոն արքայական Թագիւ։

իւրոյն . ահաւոր առ անիրաւեալսն և ողոր-
մած առ որբս և այրիս և առ աղքատս . և
հեզ և խոնարհ առ ամենեսեան ։ Նա այսպէս
դրուատիւք Թագաւորեալ ամս քսան երեք[1]
հանգեաւ 'ի Քրիստոս բարի անուամբ և
ուղղափառ հաւատով կենցաղաւարեալ .
Թողլով ժառանգ Թագաւորութեանն դուստր
մի Զապէլ անուն , յանձնելով զնա մեծ իշ-
խանին Միր Ադամայ[2] սոսկալի երդմամբ տալ
զնա որդւոյ Թագաւորին Անկռաց՝ մկրտե-
լով զնա Հայ դաւանութեամբ , զի դեռ ե-
րախայ էր , որոյ նենգել Ադամին[3] ըստ բնա-
կան ատելութեանն Յունաց ընդ ազգիս
Հայոց , քանզի Հոռոմ էր ազգաւ , խորհէր
'ի միտս յինքն առնուլ զիշխանութիւնն .
վասն որոյ փութապէս 'ի խնամոցն Աստու-
ծոյ առնու զարժանն պատուհաս , սպանաւ
'ի Հաշիշեացն սակաւ ժամանակս ինչ կա-
լեալ զպայլութիւնն ։ Նա յետ նորա տուաւ
նա որդւոյ բրինձին Անտիոքու Փիլիպ անուն,

(1) Լեւոն Բ. Թագաւորեաց ամս 24. և ամենայն ամք իշխանութեան նորա եղեն 34. տեւեալ յամէ 1185—1219։

(2) Միր Ադամ էր պայլ և տէր Պաղրասայ. զորմէ ասէ Միխայէլ որպէս և Կիրակոս (յեր. 109) թէ էր ազգաւ Յոյն. և սպանեալ 'ի Հաշիշեացն՝ անց 'ի տեղի նորա Կոստանդին տէր Բարձրբերդոյ։ Իսկ անունն Անկռաց, որով նշանակի ազգն ունկառացւոց, թուի եթէ սխալ իցէ օրինակչաց։

(3) Յօրինակին գնի սխալն. որ յայտնի սխալ է փոխանակ գնելոյ Ադամին ըստ օրում եդաք. և է Ադամն պայլն։

որ առնելութեամբ գնայր ընդ Հայոց՝ 'ի խը-
րատս հօր իւրոյ խաբեալ, և թագաւորեալ
ամս երկու՝ (1) վախճան էառ 'ի կապանս։

Այլ թերևս կամք վերին խնամոցն տնօրի-
նէր և դարձուցանէր զմարդկօրէն անհաստա-
տութիւնն և զչարաքարութիւն ոմանց 'ի բա-
րիս. քանզի զայն գաւազանն փոքրիկ զոր ետ
Աստուած հայկազանց 'ի մխիթարութիւն լը-
քեալ և խոնարհեալ ազգին՝ փոխան բարձ-
րացեալ թագաւորութեն նոցա, զայն ոչ կա-
մեցաւ տալ 'ի ձեռն օտար ազգի. վասն որոյ
յետ բազում ժխորմանց և ամբոխից և վիճա-
մանց՝ ընտրեցաւ որդին Պարոն Կոստանդեայ
'ի թագաւորութիւն, զոր ընտրեալ էր Տէր
յորովայնէ գեղեցիկ հասակաւ և բարի խոր-
հրդով, մեծահոգի և երկայնամիտ, հեզ և
հանդարտ 'ի տիս մանկութեան. և տուաւ
նմա յամուսնութիւն շառաւիղն օրհնու-
թեան ազատուհին Զապէլ, անթերին 'ի
գովութենէ աստուածապաշտ և երկիւղած
կնոջ, ողջախոհ և ցածուն և անզարդասէր և
լռին, լիահաւատ և մեծայոյս, Քրիստոսա-
սէր և սրբասէր, աղօթասէր, և ծերունի
հանճարով 'ի տղայութեան հասակի. և լը-
ցաւ բանն Սողոմոնի թէ՝ «Ի տեառնէ պատ-
շաճի կին առն». զի վայելեն նոքա 'ի մի

(1) Կիրակոս գնէ ամս չորս. յեր. 109։ Իսկ Վարդան գնէ համաձայն Միխայէլի ամս երկու. յեր. 185։

մարմին կատարիլ ՚ի Քրիստոս օրինօք։ Վասն որոյ սիրեաց զնոսա Տէր և եհան ՚ի միջոյ նոցա զմեքենայսն սատանայի, որ զառաջինն հակառակէր ըստ բնական իւրոյ չարութեանն. և յաջողեաց նոցա Տէր յամենայնի, և ետ նոցա ուստերս և դստերս (1)։ Եւ է այժմ թիւն Հայոց ՈՂԵ (695) (2)։

Այլ որ ինչ ՚ի միջոցի աստ եղեն, և զայն ասասցուք համառօտ։

Ի ժամանակս թագաւորութեանն Հայոց Լևոնի, յորում էր թիւն Հայոց ՈԿԵ (665) և ՚ի տէրութեանն Կապադովկացւոց աշխարհին Խոսրով շահ սուլտանին (3) և ՚ի ժամանակս Մելիք Յետլ սուլտանին որ բռնացեալ ունէր զԵգիպտոս և զԵրուսաղէմ և զԴամասկոս և զՄիջագետս Ասորւոց և զԽլաթայ իշխանութիւնն, ելին զօրքն Փռանգաց յԱքայ հրամանաւ պապուն Հռոմայ, առնուլ ՚ի Տաճկաց զաստուածակոխ քաղաքն Երու-

(1) Կիրակոս, յեր. 110. — Վարդան, յեր. 185—186։

(2) Միւս թարգմանութիւնն աստանօր առաւել զպատմութիւն իւր, օրհնութիւնս մաղթելով նորապսակ ամուսնացն թագաւորելոց։ Իսկ որ ինչ յետ այսորիկ՝ պատմի հանդերձ կրկնութեամբ ՚ի ժամանակակից արանց։ Իսկ Հայոց թիւն ՈՂԵ թուի թէ առաջին օրինակողին իցէ, որում համարի յաւելեալ և որ ինչ զԶապելէ և զՀեթմայ պատմի, քանզի բանք պատմութեան Միխայէլի հասանէ մինչև յառաջին ամ թագաւորութեան Լևոնի Բ։

(3) Կայիաթ—էտտին Քայխոսրու որդի Խլըճ—Ասլանայ Բ։

սաղէմ (1). զոր լուեալ զհամբաւ ելիցն նոցա ազգքն . . . նաց՝ սրտաբեկեալ լինէին. իսկ որդի Մելիք Յետլ սուլտանին գնացեալ յԵրուսաղէմ քակեաց զսուրբ Սիոն՝ որ կոչի մայր եկեղեցւոյ, և այլ բազում ուխտեր և եկեղեցիք, և զՆազարեթայ եկեղեցին, և թողին զսուրբ գերեզմանն Քրիստոսի Աստուածոյ մերոյ՝ զՅարութիւնն և զԳողգոթայն, և զԲէթղահէմի եկեղեցին և զայլն ամենայն, և զպարիսպն Երուսաղէմի առ հասարակ քակեցին (2). Եւ հայր նորա Մելիք Յետլն արարեալ ժողով ամենայն զօրաց իւրոց առ ծովուն Տիբերական բանակեալ զտեղի առնոյր: Եւ լուեալ Հռոմայեցի զօրացն՝ դի-

(1) Յայսմ արշաւանի գտանէր և իշխանն Կիպրոսի Լուսինեան և Թագաւորն Ունկարիոյ Անդրէաս, որոց տեսեալ զանյաջող ելս պատերազմին, առաջինն մինչ խորհէր դառնալ յետս՝ մեռաւ անդէն յԱսորիս. և երկրորդն դարձաւ յերկիր թագաւորութեան իւրոյ: Յետ մեկնելոյ նոցա հասին 'ի Պաղեստին այլ զօրք խաչակրաց. Հոլանտացիք, Գաղղիացիք, Իտալացիք, և մտին ընդ դրօշու Լէոպոլտի դքսին Աւստրիոյ, և անցին անտի նաւուք յարձակել 'ի վերայ Տիմիաթու, յամի 1217:

(2) Ըստ պատմութեան խաչակրաց Մալէք Մուազամ—Իսա որդին Մալէք—Ադիլայ յետ առնլոյ փռանգաց Տիմիաթու. 'ի դիմել նորա յԵգիպտոս յօգնութիւն եղբօր իւրոյ Մալէք—Քամելայ, չոգաւ նախ յԵրուսաղէմ և կործանեաց զամուրսն նորա և զաշտարակսն զորս Սալահէտտին շինեալ էր, բաց յամրոցէն Դաւթի, նոյնպէս և զամրոցն որ 'ի Թափօրականն լերին և զայլ բերդորայս որ գտանէին 'ի Պաղեստին. իսկ զկործանումն եկեղեցեաց ոչ ինչ յիշատակեն:

մեցին դնալ 'ի վերայ նոցա պատերազմել. և որչափ սոքա մօտենային 'ի բանակն նոցա, նոքա օթևանօք մի ընդ կրունկն դարձեալ հեռանային։ Եւ յերկարէր այս 'ի բազում աւուրս, մինչև ձանձրացեալ քրիստոնէիցն կամեցան յետս դառնալ՝ երկուցեալք 'ի խաբէութեանց նոցա. և յաղագս անծանօթութեան աշխարհին խորհեցան դառնալ յԱքքայ, և համախմբութեամբ ամենայն զօրագլխացն խորհուրդ առեալ իջին յԵգիպտոս. և հասեալք 'ի քաղաքն որ կոչի Տիմիաթ պաշարեցին զնա և 'ի ներքս արկեալ ընդ յերկար, մինչև երրորդ մասն քաղաքին սատակեալ լինէր 'ի սովոյ և 'ի տարաժամ մահուանէ որ անկաւ 'ի նոսա. և ապա առին զքաղաքն և կոտորեցին զմնացեալսն առ հասարակ, և առին յաւարի զմթերս գանձուց նոցա, և լցան առ հասարակ ոսկւով և արծաթով։

Եւ յայսմ ամի մեռաւ Մելիք Ատըլն. և որդիք նորա Մելիք Քէմլն սուլտանն Եգիպտոսի և Աշրաֆին (1), և սուլտանն Դամասկոսի Մուազատամն (2), և այլ եղբարք նոցա

(1) Մալէք—Աշրաֆ էր եղբայր Մալէք—Քամելայ և սուլտան Միջագետաց. Կիրակոս, յեր. 111.

(2) Անդրանիկն յորդիս Մալէք—Ատելայ՝ Մալէք—Քէմլն (Քամէլ) սուլտանացաւ յԵգիպտոս, երկրորդն Շէրիֆ—էդ-տին Մալէք—Մուազամ—Իսա, զոր պատմիչք մեր Մուազատամ

*առ հասարակ արարեալ ժողով բազում և անհամար զօրաց ։ Եւ ՚ի թուին Հայոց* ՈԿԶ (666) *մտին Եգիպտոս, բայց յերկիւղի լեալ ոչ իշխէին պատերազմել ընդ քրիստոնեայսն. և նոյն իսկ քրիստոնեայքն իբրև առին զՏիմիաթն* (1), *կամեցան երթալ առնուլ և զայլ քաղաքսն ։ Եւ էր ընդ նոսա թագաւորն Աքայոյ Ուէտձուանն* (2) *փեսայն Հայոց թագաւորին Լեւոնի և Դամիէն և Սապիթայն, և այլք բազումք յիւրաքանչիւր կողմանց յարելոց ՚ի նոսա. և գնացեալ բազմութիւն զօրացն բանակեցան առ ափն Նեղոս գետոյ, ՚ի հարթայատակ դաշտի միում։ Եւ իմացեալ . . . նացն լուծին զկապս ջրաբուխ տեղեացն, և ելեալ ջուրն շրջապատեաց զզօրսն և Մահմետականքն յարձակեալք ՚ի վերայ նետաձգութեամբ սկսան*

անուանեն, եկաց իշխան Դամասկոսի. և այլք յորդւոց Մալէք—Ադելայ իշխանեցան ՚ի վերայ Բասրայու, Արեգ քաղաքի (Բաալբէք), Միջագետաց, և այլն։

(1) Տիմիաթ առաւ ՚ի փռանգաց յամի 1219 յամսեանն նոյեմբերի.

(2) Ժան տը Պրիէն, զորմէ խօսի Միխայէլ կոչելով զնա Ուէտձուան, էր թագաւորն Երուսաղէմի, որ ամուսնացաւ ընդ դստեր Ամաւրեայ որ էր ժառանգուհի անկեալ թագաւորութեանն Երուսաղէմի։ Եթող նա զՏիմիաթ ՚ի Մալէք—Քամէլ՝ դաշնաւորեալ ընդ նմա և առեալ փոխարէն զփայտ խաչին որ կայր առ նոսա ՚ի գերութեան յաւուրց անտի պատերազմին որ ՚ի Տիբերիա ընդ Սալահէտտնի, և դարձաւ յետս ՚ի Պտղոմայիդ.

խոցոտել զամենեսեան մինչեւ անյոյս լինելոյ քրիստոնէիցն 'ի փրկութենէ . տուին զքաղաքն որ առին , և յանձն առին դառնալ յիւրեանց աշխարհն. և դաշինս եդեալ հաստատութեամբ մնալ 'ի նոյնն . երդուան և սուլտանայքն նոցա անվնաս պահել զամենեսեան : Եւ այսպիսի շփոթս հասեալ զօրացն քրիստոնէից՝ դարձան 'ի տուն իւրեանց :

Իսկ Մելիք Յետոյն 'ի վախճանելն իւրում զաւագ որդին զՌէմլն կացոյց իշխան 'ի վերայ այլոցն , և ամենեքեան հնազանդեցան նմա, զի էր բարեբարոյ և իմաստուն և առատաձեռն առ ամենեսեան . նոյնպէս և իւր եղբայրն Աշրափին, որք կալան զիշխանութիւն հօրն իւրեանց բազում ժամանակս (1):

Ի թուին Հայոց ՈԿԷ (667) Քէքաւուզ սուլտանն Հոռոմոց , որդի Խոսրով շահ սուլտանին, յաղթող եղեալ քան զհայրն իւր , լինի պատճառ շփոթի ընդ թագաւորն Հայոց Լեւոն . և բազում զօրս ժողովեալ հասանէ 'ի Կոկիսոն Հայոց, և պաշարէ զամուր դղեկն որ կոչի Կապան , և բազում աւուրս մարտուցեալ ոչ կարաց առնուլ զնա : Եւ թագաւորն Հայոց Լեւոն զլուրոյ աշխարհին զօրքն գումարէր և փութայր ելանել ընդ

(1) Այս Աշրափ որ զկնի մահուան հօրն տիրացաւ Խլաթայ , ա՛ռ 'ի կնութիւն զդուստր Իւանէի զԹամթա Վարդան , յեր . 182 : — Կիրակոս , յեր . 96 :

ռուաջ նորա, և նորին զօրագլուխն Պարոն Կոստանդին գունդստապլն, որ էր քեռորդի Թագաւորին Լեւոնի, առեալ սակաւ ինչ գունդս 'ի զօրացն, յառաջ մատուցեալ 'ի կիրճս լերանցըն, և պատահեալ դնդի միում 'ի զօրացն Թուրքաց, և անկեալ 'ի վերայ՝ զամենեսեան կոտորեաց, և ըմբռնեաց 'ի նոցանէ արս գլխաւորս՝ որք ազդեցին նմա զբուն գալուստ զօրացն սուլտանին, և աղաչէին դառնալ և բաւական համարել զյաղթութիւնն զոր արար։ Այլ նորա ոչ անսացեալ բանից նոցա և առաւել եւս յամառեալ և քաջալերեալ զզօրսն՝ հանդիպի ծանր զօրու կուռ վառելոց զինու, և 'ի պարտութիւն մատնի գունդստապլն և զօրքն որ ընդ իւր, և ըմբռնեցան ինքն և պարոն Կոստանդին լամբռունցին և Կեռսակն (1) և այլ մեծամեծ իշխանք, թող զորս կոտորեցան 'ի նմին տեղւոջ իբրև հազար այր պատերազմող, և ըմբռնեալ զնոսա դարձաւ 'ի Կեսարիա։ Իսկ Թագաւորն Լեւոն իբրև լուաւ զկոտորումն զօրացն և զըմբռնումն իշխանացն, առեալ զզօրս իւր արշաւէր 'ի միւս այլ կողմն աշխարհին Հոռոմոց, և բերէր աւար անթիւ և կուտէր իբրեւ զաւազ առ ափն ծովու. և յետ սակաւ

(1) Կեռսակն, թուի ասել Կիռ Սահակ, էր իշխան և տէր Մաղվայ և Սիկոյ բերդից, որ առաջիկայ գտաւ և հանդիսի Թագադրութեան Լեւոնի։ Սմբատ, յեր. 112։

աւուրց արարեալ սէր ընդ միմեանս, եւ Թագաւորն Հայոց | Լեւոն զերրորդն | լուայ, և Թափեաց զիշխանսն որ ըմբռնեալ էին, և խոստացաւ տալ Հռոմոց սուլտանին յամենայն ամի երեք հարիւր այր 'ի ծառայութիւն [և] հնազանդեցաւ նմա. և այս լինէր 'ի ծերութենէ և յանկարութենէ մարմնոյն, և իշխանքն ոչ էին ընդ նմա ուղիղ(1)։

Եւ 'ի սոյն իսկ յայսմ ամի արարեալ ժողով սուլտանն Բէքաւուզ զօրաց, առեալ և 'ի Թագաւորէն Հայոց օգնականութիւն,

(1) Սմբատ և Վահրամ փոքր մի տարբեր պատմեն զայսմանէ։ Սմբատ (յեր. 117), ասէ Ազզ—էտտին Քայքաւուզ սուլտանն Իկոնիոյ որ 'ի Սելջուկեանց, 'ի ծերութեան Լեւոնի կամելով քինախնդիր լինել վասն հանելոյ նորա յիւրմէ զԱրակլիա և զԼարենդա քաղաքս, եկն և պաշարեաց զԿապան։ Եւ Լեւոն առաքեաց 'ի վերայ նորա զպարոն Կոստանդին սպարապետն իւր և զպարոն Ատան բազմութեամբ զօրաց. որք անխորհրդաբար 'ի մերձ մտեալ գերի անկանին Կոստանդին սպարապետ և Կեռսակն և այլք յիշխանաց և 'ի հեծելազօրաց. և բազումք 'ի զօրացն խորտակին։ Իսկ Քայքաւուզ առեալ զգերիսն դառնայ յԻկոնիոն, և պահէ զնոսա 'ի բանտի ամ մի և ամիս չորս. մինչև գթացեալ 'ի նոսա Լեւոն, տայ սուլտանին զԼուլվայ բերդ և զգետն Իսաւրիոյ և զայլ տեղիս և զիշխանսն իւր ազատէ 'ի գերութենէ։ Եւ Վահրամ ասէ եթէ տեսեալ Լեւոնի զպարտութիւն՝ զօրաց իւրոց, ոչ ինչ ընդ այն տխրեալ, դիմէ [illegible]ցեալ զօրօքն իւրովք յերկիրն սուլտանին. և ասպատակեալ բազում աւարաւ և գերութեամբ դառնայ։ Լուեալ սուլտանին զաւեր աշխարհին իւրոյ, երդումն առ Լեւոնի 'ի խաղաղութեան կալ ընդ նմա. և զիշխանսն Հայոց յետ դարձուցանէ։ (Յեր. 216)։

գայ յերկիրն Հալպայ 'ի Սապան, և առ ըզ-նա. և անտի գնացեալ 'ի Թլպաշար, առնու և զԹլպաշար և զԱյնթապ: Եւ կամեցաւ գնալ 'ի վերայ Հալպայ. և երեք ամաւ յա-ռաջ սուլտանն Հալպայ մախճանեալ էր Մելիք Տահրն, և որդի նորա Մելիք Ազիզ մանուկ գոլով ամաց հնգից՝ ունելով զիշխա-նութիւնն: Եւ էր նորա աթապակ մի յոյժ իմաստուն, առաքեաց առ Թագաւորն Հա-յոց Լեւոն, և խնդրեաց 'ի նմանէ օգնական լինել, թերևս զերծանիցին հնարիւք նորա 'ի հասեալ բարկութենէն. և խոստացան նը-մա տալ բազում գանձս ոսկւոյ: Եւ Թագա-ւորն Հայոց այնուհետեւ 'ի հոգս անկեալ իւրով կորովամիտ իմաստութեամբն, առա-քեաց զանխլաբար առ սուլտանն Հոռոմոց մինչ 'ի սահմանս Թլպաշարայ էր, գրեալ առ-նա այսպիսի օրինակաւ. «Թագաւոր Հայոց Լեւոն, եղբօր մերոյ Քէքաուզ սուլտանիդ՝ 'ի տէր խնդալ: Յուշ լիցի քեզ իբրեւ սի-րելոյ մերում, զի իմացեալ հաստատեցաք եթէ քառասուն ամիրայ 'ի զօրաց քոց դա-շինս եդեալ են տալ զքեզ 'ի ձեռն Աշրա-փուն. և դու այսուհետեւ զգուշ ան-ձին քո խորհեաց, զի մի անկցիս 'ի ձեռս ա-տելեաց քոց. ողջ լեր:» Եւ իբրեւ ընթեր-ցան առաջի նորա զպատճէն նամակին, իս-կոյն զարհուրեալ ահիւ մեծաւ, հրաման

տայր զօրացն դառնալ անդրէն. փութանակի. և ինքն յառաջ անցեալ աճապարէր գնալ։ Զոր իմացեալ Աշրափուն և զհետ մտեալ՝ արար փախստական. և ինքն դարձեալ էառ զՍապան և զԹլպաշար և դարձոյց ՚ի Հալպ. և այսպիսի օրինակաւ այնքան մեծ սուլտանն չփոթեալ ՚ի պարտութիւն մատնէր. և հասեալ ՚ի Կեսարիա՝ զամիրայն զայնոսիկ զքառասուն խաչել հրամայէր։

Եւ յայսմ ամի եկն դեզին մարախ, և ծածկեաց զերկինս և զդաշտս, և եկեր զամենայն ծառ սահմանաց մերոց մինչև խապառ զերկիր և զչորս ամս։

Ի ՈԿԸ (668) Թուականին Հայոց Լեւոն Թագաւորեալ ամս քսան և երեք մեռաւ, և յանձն արարեալ զիշխանութիւն աշխարհին. և զդուստր իւր զԶապէլն ՚ի Սիր Ատանն, որ էր ազգաւ Հոռոմ, և զկնի սուղ ժամանակի սպանաւ ՚ի Հաշիշեացն, որպէս վերագոյնն գրեցաւ. և առնու զհոգաբարձութիւն աշխարհին պարոն Կոստանդին, որ էր քեռորդին Թագաւորին Հայոց Լեւոնի։

Յայսմ ժամանակի ոմանք յիշխանացն Հայոց ապստամբեալք եղեն ընդ Ռուբինայ բրինձին Անտիոքու (1), կամելով զնա Թագա-

(1) Ռուբէն բրինձ (իշխան) Անտիոքու՝ էր որդի Պալտնոյ (Պատուէն) որդւոյ Պեմնդայ (Պոհեմոնդ) կոմսին Անտիոքայ։ Եւ էր ծնեալ Ռուբէն ՚ի հայազգի մօրէ Ալիսա (Ա-

ւորեցուցանել, յորոց էր Ռօպէն մարաջախտ և Լեւոն Կապնուն տէրն և Կեռասն, և այլք. որք առեալ զբրինձն Ռուբէն և միւս 'ի Տարսուս և ամրացան։ Իսկ պարոն Կոստանդին և տէր Յովհաննէս կաթուղիկոսն գնացին զօրօք և պաշարեցին զնոսա սուղ ինչ ժամանակս, և յաղթեցին նոցա և առին ըզքաղաքն, և ըմբռնեցին զապստամբսն որ և ամենեքեան բանտարգեալք եղեալ վախճանեցան 'ի կապանս, և հանդարտեցաւ երկիրն(1)։ Բայց տէր Յովհաննէս կաթողիկոսն յառաջ քան զառնուլ քաղաքին վախճանեցաւ 'ի Թուին Հայոց ՈԿԸ (669), և ապա միաբանութեամբ ամենայն իշխանացն և եպիսկոպոսացն ընտրեցաւ յամենեցունց տէր Կոստանդին (Ա) որ էր եպիսկոպոս Մլիճոյն(2).

լիս) անուն, դուստր Ռուբենի Բ., զոր առեալ էր Գալանոյ այսու դաշամբ, զի Գեմուանդ հայր նորա զկնի վախճանին իւրոյ զնա ինքն զԳալանին կարգեսցէ յաջորդ փոխանակ երէց եղբօրն Փիլիպի, որ ամուսնացաւ յետոյ ընդ Զապէլ դստեր Լեւոնի, և իշխեաց Հայոց ամս երկուս։ Գրէ Վահրամ ըստ մտաց Միխայէլի, եթէ Ռուբէն բաղձամ իշխանս յինքն յանգուցեալ՝ գայ և առնու նախ զՏարսոն, և յառաջէ մինչև 'ի Մսիս. և Կոստանդին զօրավար գումարեալ զօրս 'ի վերայ նորա. զբռնամբ ածէ զՌուբէն 'ի Տարսոն քաղաքի և զհամախոհս իւր և արկանէ զնոսա 'ի բանտ, ուր և մեռանին։ (Ցեր. 217—218)։

(1) Այս դէպք կարեւոր ոչ յիշատակի 'ի գիրս պատմութեան Միքայէլ վարդապետի Ջամչեանն. նոյնպէս և ոչ գործք Բայքայուղ ուսլատանին որ նախ քան զմահն Լեւոնի։

(2) Կոստանդին կաթողիկոս էր 'ի Բարձրբերդոյ, անկեալ 'ի վանս Մաշրիանոյ։

և եղաւ յաթոռ հայրապետութեանն Հայոց 'ի թուին ՈՀ (670). և եղեւ ուրախութիւն ամենեցուն յաղագս առաջինի և բարեբարոյ և խաղաղասէր մտացն, որով ամենեցուն հռչակաւոր լինէր։ Իսկ իշխանացն Հայոց բազում՝ անմիաբանութիւն լինէր վասն դնելոյ թագաւոր, զի ոչ հաւանէին միմեանց, և ապա 'ի մի կամս եկեալ ընտրեցին զորդին բրինձին Նախիջու թագաւորեցուցանել, զոր և արարին իսկ, և ետուն զդուստր թագաւորին Հայոց Լեւոնի նմա 'ի կնութիւն. և թագաւորեցուցին 'ի վերայ Հայոց 'ի թուին Հայոց ՈՀԲ (672), և անուանեցին զնա Փիլիպ թագաւոր։

Ի թուին Հայոց ՈՀԲ (672) եղեւ երաշտ սաստիկ և յերկարեաց յոյժ, մինչ զի 'ի Դեկտեմբերի հասարակն նշենիք ծաղկեալ եղեն 'ի ջերմութենէ օդոյն՝ և անպատմելի վշտօք տառապէր երկիր զերիս և զչորս ամս։ Յայսմ ժամանակի մեռաւ սուլտանն Քէքաուզն, և առնու զսուլտանութիւնն կրսեր եղբայր նորա Ալադինն (1)։

Ի թուին Հայոց ՈՀԳ (673) Փիլիպ թագաւորն Բոպղոն հօր իւրոյ (Պեմունդայ) կամեցաւ ըմբռնել զերկուս մեծամեծ իշխանսն, զպարոն Կոստանդին որ էր թագա-

(1) Ալա—էտտին Քէյքապատ.

ւորահայրն և զպարոն Կոստանդին Լամբրոնին տէրն (1) . զոր իմացեալ յառաջեաց պարոն Կոստանդին (Թագաւորահայրն), և ըմբռնեաց զնա 'ի Թիլն Համտնոյ, և տարաւ 'ի Նարձրբերդ և անդ վախճանեցաւ (2)։ Իսկ հայր նորա բրինձն Անտիօքու լուեալ՝ տրտմեցաւ յոյժ . և ել անկարանայր առնուլ ըզվրէժ որդւոյն, առաքէ առ Սալադին սուլտանն Հռոմոց, որոյ եկեալ էառ զՃանճին և զԿանչին, և զՄազոտ խաչն (3), և արար վնաս բազում 'ի լեռնակողմանս . և բրինձն ժողովեալ զօրս եմուտ յերկիրն, եկն ընդ սահմանսն որ կոչի Ճկեր, և եհաս մինչեւ 'ի Թիլն Համտնոյ, և ոչ ինչ օգտեալ դարձաւ ամօթով յԱնտաք։

Ի Թուին Հայոց ՈՀԵ (675) միաբանութեամբ ամենայն իշխանացն տուին զԶապէլ դուստր Լեւոն Թագաւորին 'ի կնութիւն Հեթմոյ որդւոյ պարոն Կոստանդեայ, և Թագաւորեցուցին 'ի վերայ Հայոց, որ էր տղայ հասակաւ . և հայր նորա կարգաւորէր զԹագաւորութիւնն, որ և արար սէր ընդ

(1) Այս Կոստանդին էր որդի պարոն Հեթմոյ՝ որդւոյ Օշնի, որք էին տեարք անառիկ ամրոցին Լամբրոնի . վասն որոյ և ապստամբք էին միշտ ազգային իշխանութեանն, զորս Լեւոն Բ նուաճեալ՝ առեալ 'ի նոցանէ զամրոցն։

(2) Սմբատ . յեր . 121։

(3) Ճանճի և Կանչի և Մազոտ խաչ էին առանձին ամրոցք, որոց իշխէին Պարոնք։

Ալադին սուլտանն և հնազանդեցաւ նմա՝ տալով նմա յամենայն ամի երեք հարիւր այր ՚ի ծառայութիւն (1)։

Յայսմ ժամանակի լուաք զհամբաւ երկուց ազգաց անաստուածից և գազանաբարոյից, որոց անուանքն Խորազմ և Տաթար, որք իբրեւ հուր ընդ խոտ ընթացեալ ապականեցին զերկիր ուր և հասան, և ոչ ոք ընդդիմացաւ նոցա, և սարսեցին ՚ի համբաւոյ նոցա ամենայն որ ՚ի ներքոյ երկնից։ Այլ ոմանք ելից նոցա ՚ի բուն աշխարհէն իւրեանց ՚ի փոքուց ժամանակաց է, և զբազում աշխարհս և զազգս և զթագաւորութիւնս աւերեալ և քանդեալ հասին յաշխարհն արեւելից։

Եւ յայսմ ժամանակի թագաւորէր Վրաց դուստր Թամարին Ռուսուդուքան, և էր աթաբակ նորա Իւանէ՝ եղբայրն Զաքարիայի, որ էին ազգաւ Հայք, և ՚ի հրապուրանաց Թամարին Վրացի եղեւ Իւանէ, և ՚ի հակառակս դառնայր կրօնից Հայոց (2)։ Եւ յայսմ ժամանակի ՚ի գաւառն Իձնոյ եղեւ նշան ինչ. զի կրօնաւոր մի սուրբ և ընտրեալ վախճանեալ, Հայ ազգաւ (3), որոյ գերեզմա-

(1) Սմբատ ասէ. թէ յանձն առ պարոն Կոստանդին հայր նորա տալ ամ յամէ չորեքհարիւր հեծեալ։

(2) Կիրակոս. յէր. 96։

(3) Վարդան (յէր. 188). ասէ թէ էր երէց Պարկեշտ

ւորահայրն և զպարոն Կոստանդին Լամբրունին տէրն (1) . զոր իմացեալ յառաջեաց պարոն Կոստանդին (Թագաւորահայրն), և ըմբռնեաց զնա 'ի Թիլն Համտնոյ, և տարաւ 'ի Բարձրբերդ և անդ վախճանեցաւ (2)։ Իսկ հայր նորա բրինձն Անտիոքու լուեալ՝ տրտմեցաւ յոյժ . և զի անկարանայր առնուլ ըզվրէժ որդւոյն, առաքէ առ Ալադին սուլտանն Հռոմոց, որոյ եկեալ էառ զՃանճին և զԿանչին, և զՄաղոտ խաչն (3), և արար վնաս բազում 'ի լեռնակողմանս . և բրինձն ժողովեալ զօրս եմուտ յերկիրն, եկն ընդ սահմանան որ կոչի Ճկեր, և եհաս մինչեւ 'ի Թիլն Համտնոյ, և ոչ ինչ օգտեալ դարձաւ ամօթով յԱնտաք ։

Ի Թուին Հայոց ՈՀԵ (675) միաբանութեամբ ամենայն իշխանացն տուին զԶապէլ դուստր Լևոն Թագաւորին 'ի կնութիւն Հեթմոյ որդւոյ պարոն Կոստանդեայ, և Թագաւորեցուցին 'ի վերայ Հայոց, որ էր տղայ հասակաւ . և հայր նորա կարգաւորէր զԹագաւորութիւնն, որ և արար սէր ընդ

(1) Այս Կոստանդին էր որդի պարոն Հեթմոյ՝ որդւոյ Օշնի, որք էին տեարք անառիկ ամրոցին Լամբրոնի . վասն որոյ և ապստամբք էին միշտ ազգային իշխանութեանն, զորս Լևոն Բ նուաճեալ՝ առեալ 'ի նոցանէ զամրոցն։

(2) Սմբատ . յեր . 121 ։

(3) Ճանճի և Կանչի և Մաղոտ խաչ էին առանձին ամրոցք, որոց իշխէին Պարոնք ։

Ալադին սուլտանն և հնազանդեցաւ նմա՝ տալով նմա յամենայն ամի երեք հարիւր այր ՚ի ծառայութիւն (1)։

Յայսմ ժամանակի լուաք զհամբաւ երկուց ազգաց անաստուածից և գազանաբարոյից, որոց անուանքն Խորազմ և Տաթար, որք իբրեւ հուր ընդ խոտ ընթացեալ ապականեցին զերկիր ուր և հասան, և ոչ ոք ընդդիմացաւ նոցա, և սարսեցին ՚ի համբաւոյ նոցա ամենայն որ ՚ի ներքոյ երկնից։ Այլ ոմնք ելից նոցա ՚ի բուն աշխարհէն իւրեանց ՚ի վաղուց ժամանակաց է, և զբազում աշխարհս և զազգս և զթագաւորութիւնս աւերեալ և քանդեալ հասին յաշխարհն արեւելից։

Ի սոյն յայսմ ժամանակի թագաւորէր Վրաց դուստր Թամարին Ռուսուդուքան, և էր աթաբակ նորա Իւանէ՝ եղբայրն Զաքարիայի, որ էին ազգաւ Հայք, և ՚ի հրապուրանաց Թամարին Վրացի եղեւ Իւանէ, և ՚ի հակառակս դառնայր կրօնից Հայոց (2)։ Ի սոյն յայսմ ժամանակի ՚ի գաւառն Գձնոյ եղեւ նշան ինչ. զի կրօնաւոր մի սուրբ և ընտրեալ վախճանեալ, Հայ ազգաւ (3), որոյ գերեզմա-

(1) Սմբատ ասէ. թէ յանձն առ պարտս Կոստանդին հայր նորա տալ ամ յամէ չորեքհարիւր հեծեալ։

(2) Կիրակոս. յեր. 96։

(3) Վարդան (յեր. 188). ասէ թէ էր երէց Պարկեշտ

նըն երկնաւոր լուսովն վկայեցաւ և փառաւորեցաւ, որ ամենեքեան տեսին. և եղ համբաւ նորա ընդ ամենայն երկիրն։ Իսկ Իւանէի նախանձ շարժեալ ամենայն Վրացեօքն, նախատէին և Թշնամանէին. և յետոյ զմարմինն սուրբ կրօնաւորին հրամայէին այրել հրով. և 'ի տեղի պատուական ոսկերացն սատակեալ շուն Թաղել։ Եւ եպիսկոպոսն Բջնոյ տէր Յովհաննէս բազում բանիւք յանդիմանէր զանաստուածն Իւանէ. իսկ նա սպառնայր կամ դարձուցանել 'ի վրացութիւն զամենայն Հայս, և կամ հանել յաշխարհէն։

Եւ մինչ յայսոսիկ էին, եհաս համբաւ Խորազմին (1), և նոքա փութով ժողովեալ զօրս կամէին ելանել ընդդէմ նոցա 'ի դաշտամէջն Գառնի քաղաքի (2), զոր շինեաց մեծ արքայն Հայոց Տրդատ, բերդ և սալաւոյթ 'ի մեծամեծ վիմաց Թագաւորութեան իւրոյ, որ կայ անխախտելի մինչև ցայսօր։

անուն, յորոյ գերեզմանին վերայ կառուցաւ յետոյ եկեղեցին։

(1) Խորազմիա է աշխարհ 'ի հիւսիսոյ Խորասանու, յորոյ անուն և բնակիչքն կոչէին Խորազմիք, կամ Խորազմեցիք։ Զայսու ժամանակաւ տիրէր այսմ երկրի Մուհամմէտ Խորազմշահ՝ հայր Ջալալադինի, որ և Ճէլալէտտին, որ կանգնեաց զԹագաւորութիւնն Խորազմեայց։

(2) Գառնի քաղաք շինեցաւ նախ 'ի Գեղամայ նահապետէն և անուանեցաւ Գեղամի, յետոյ նորոգեալ 'ի Թոռանէ նորին Գառնկայ անուն՝ կոչեցաւ Գառնի։ Մովսէս Խորենացի, Ա. 12։ Իսկ Տրդատ շինեաց անդ տուն հովանոց զարմանաշէն վասն քեռ իւրոյ Խոսրովիդխտոյ։ Անդ. Բ. 87։

Իսկ ամբարիշտն Իւանէ ամենայն զօրօքն Վրաց գնաց և իջաւ 'ի լեառն Պռանոյ, որ կոչի Արուջերթն. և անդ խորհեցան միաբան առաքել զմեծ իշխանն քաջ և անուանի զԻւանէ զեղբայր Շալուային (1) փոքր ինչ զօրօք ընդդառաջ Խորազմին. որոյ հասեալ 'ի դաշտին Պռանոյ որ կայր առաջի իւրեանց հարիւր մղոնօք 'ի զատէ. ապա ընդդէմ ելին անօրէն Խորազմիքն, և սկսան պատերազմել ընդ նմա. և յորժամ խառնեցան 'ի միմեանս Իւանէ եղբայր Շալուային (2) և Խորազմիքն, յայնժամ առաքեաց զմի 'ի զօրաց իւրոց առ մեծ զօրհեծելուն գալ փութանակի յօգնութիւն նմա. և նա 'ի գնալն ձայնէր որպէս սովորութիւն է, թէ՝ շուտով հասիք։ Եւ ձայնն ձիաւորին ոմանց լսելի լինէր թէ՝ փախիք և մի՛ գայք, զի չե՛նք կարող դիմանալ ոցա. և ոմանց լսիւր թէ՝ փութանակի հասիք, կարող ենք յաղթել։ Եւ մինչ 'ի յայս էին.

(1) Իւանէ և եղբայր իւր Շալուէ էին իշխանք աւագք Վրաց։

(2) Կիրակոս որ զայս պատերազմ պատմէ, (երր. 131) ասէ զայսր Իւանէի, եթէ ուխտ եդեալ էր ընդ Թագաւորին Վրաց, զի թէ յաղթեսցեն Խորազմեայց, զամենայն Հայս որ ընդ իշխանութեամբ իւրեանց կային, դարձուսցեն բռնի 'ի կրօնս Վրաց։ Այլ ընդ հակառակն զորս նոցա անկեալ 'ի գերութիւն՝ բռնաբար Թլփատեցան 'ի Խորազմեայց։ Եւ եղեւ այս ըստ Կիրակոսի 'ի Թուին Հայոց ՈՀԴ. այն է 1225.

փախեաւ աթաբակն Իւանէ անկանիլ յաձուրս երկրի իւրոյ, և բազմութիւն զօրացն փախստեամբ անկանէին 'ի գլուղաքաղաքն Դառնի, որ շինեալ է 'ի վերայ բարձր քարախարամի, և գետ յորդ անցանէ ընդ տակ խորամին։ Եւ յորժամ 'ի փախուստ դարձան անկանիլ յաձուրս տեղեացն, նոյն ժամէն մրրիկ փոշւոյ մթացոյց զաչս փախուցելոցն, և առ հասարակ լցան ընդ բարձր և ընդ յորձ ահագին խորամն Դառնոյ 'ի գետն յորձանուտ։ Եւ խորագոյնքն յետոյ հաւաքեալ զմնացեալսն որոց մեռանէին, և առացին թէ՝ այսմ (1) վրացւոյն հրով այրեցաւ, նշանակեալ թէ՝ աստուածային է բարկութիւնն։ Իսկ զքաջ իշխանն Շալւէ ըմբռնեցին կենդանւոյն, և տարան առ սուլտանն իւրեանց։ Եւ այսպիսի ահագին վրէժս էառ Աստուած յամբարտաւան և 'ի կենցաղատէր ազգէն Վրաց, վասն անարգելոյ նոցա զհաւատս Հայոց։

Իսկ Պարսիկքն որ 'ի Դւին քաղաք, լուեալ զպարտութիւն Վրացւոյն, ըմբռնեցին զգլխաւորս քաղաքին և սպանին, և ապա սուր եդեալ կոտորեցին զամենայն քրիստոնեայսն որ 'ի քաղաքին։ Եւ զայսոսիկ լուեալ քաջ և անուանի իշխանն Հայոց որդին մեծին Վասակայ՝ Թոռն Հաղբակայ, Պռօշ

(1) Այն է դրօշ. Սանճաք։

անուն , և առեալ զզօրս իւր գնայ 'ի Դը-
ւին, և գտեալ պատճառս բանի մտէ 'ի քաղա-
քըն սիրոյ պատճառաւ , և զուգէ սէր խա-
բէութեամբ , և կոչէ զամենայն մեծամեծսն
որ 'ի Նմա . և 'ի սիրելն զնոսա՝ յանկարծակի
յիշէ զկոտորումն քրիստոնէիցն թէ զինչ
պատճառաւ արարին . և ապա հրամայեալ
զօրացն իւրոց , առ ժամայն սուր 'ի վերայ
եդեալ կոտորեցին առ հասարակ , և ինքն
դարձաւ խաղաղութեամբ 'ի տուն իւր ։

Յայնմ ժամանակի եկին խորազմիքն և
պաշարեցին զմեծ քաղաքն Վրաց զՏփխիս .
և Պարսիկքն որ կային 'ի քաղաքին, ետուն ըզ-
քաղաքն 'ի ձեռս խորազմեացն . և խորազմիքն
խոստացան թողուլ զՊարսիկսն խաղաղու-
թեամբ ստացուածովք իւրեանց ։ Եւ ապա ա-
ռեալ զքաղաքն կոտորեցին զամենայն քրիս-
տոնեայսն որ 'ի Նմա , Նոյնպէս և զՋհուտսն
և զամենայն ազգ բայց 'ի Պարսիցն (1) . և ա-
րարեալ ընդ ձեռամբ իւրեանց զքաղաքն
գնացին ։ Եւ 'ի գալն գառնանային ժամա-
նակին , եկն Թագաւորն Վրաց 'ի Տփխիս ,
և կոտորեաց զՊարսիկսն որ 'ի Նմա . և մը-
նաց քաղաքն աւեր 'ի մարդոյ և յանասնոց ։
Յայնմ ամի աստղ մի գիսաւոր երեւեցաւ
յերկինս , և անյայտ եղեւ ։

(1) Կիրակոս , յեր . 132 .

Ի Թուին Հայոց ՌՀԷ (677)։ Ալամանաց Թագաւորն Ամբրուրն[1] ել բազում զօրօք 'ի Կիպրոս կղզի. և գնացեալ յԵրուսաղէմ երկրպագեաց սուրբ տեղեացն։ Իսկ Փրերք Դամբլուն[2] առաքեցին 'ի Քէմլն, որ էր սուլտան Մսրայ, գալ նմա զօրօք, որպէս զի տացեն զԱմբրուրն 'ի ձեռս նորա։ Իսկ Քէմլն առեալ զԹուխտ Փրերացն և յղեաց առ Ամբրուրն, և եցոյց նմա զնենգութիւն ազգին իւրոյ. և ետ սիրով զԵրուսաղէմ յԱմբրուրըն. և հաստատեցին ընդ միմեանս դաշն և ուխտ սիրոյ յաւիտեան։ Իսկ Ամբրուրն առեալ զԳերեզմանն[3] ետ 'ի Փռանգն, և հանին զՏաճիկքն։ Իսկ ինքն Ամբրուրն գնաց յաշխարհն իւր. և յայնմհետէ սպառնայր Դամբլուն քակել զտունս նոցա որ յայնկոյս ծովուն։

(1) Այն է կայսրն (Ամբրուր. Empreur) Փրետերիկոս Բ, որդին Հենրիկոսի Զ։

(2) Դամբլուն փրերք՝ են եղբարքն Տաճարականաց կարգի, որք մղէին և պատերազմէին ընդդէմ Այլազգեաց. և զօրաւորք էին յայնժամ բանիւ և մեծութեամբ.

(3) Ոչ միայն Գերեզմանն սուրբ, այլ և բովանդակ քաղաքն Երուսաղէմ տուաւ Փրետերիկոսի 'ի սուլտանէն հանդերձ պայմանաւ և դաշամբ սիրոյ տասն ամաց և վեց ամսոց։ Իսկ կայսրն պսակեալ անդ առաջի Գերեզմանին թագաւոր Երուսաղէմի՝ առանց եկեղեցական արարողութեան, քանզի նզովեալ էր 'ի պապէն, թողեալ և զՏաճարն սուրբ Յարութեան և զքաղաքն՝ չոգաւ 'ի Պտղոմայիդ։ Տես 'ի Միշոյ. Պատմ. Խաչակրաց. Հտ. Գ. Գլ. 13.

Ի թուին Հայոց ՈՀԸ (678), Թէմին էառ զԻմանակոս 'ի Միլիք Նաւրէն, և եւս եղբօր իւրում Շըլափուն, և տայ նմա տեղիք բնակութեան զՃաւպաք և զԲարաք և ըզՍամլուզ և այլ բազում տեղիս. իսկ զՄիջագետս Ասորւոց զՈւռհա և զԽառան և զՍըրուճ, որ էր եղբօրն իւրոյ Շըլափուն, յինքըն առնու Թէմին։



Յիշատակարան ծին գրչագրիս

Ի թուականին Հայոց ՈՀԸ, կատարեցաւ աշխարհապատում պատմութիւնս Տէր Միխայելի սուրբ պատրիարքին Ասորւոց, զոր ստուգիւ գրեաց ծայրաքաղ առնելով յաստուածաստեղծ մարդոյն Ադամայ. սկիզբըն առնելով ասաց մի ըստ միոջէ զկարգ և զծնունդ և զշինութիւն արարածոց զոր նախ քան զՋրհեղեղն աշխարհակործան, և զոր յետոյ Ջրհեղեղին յորդւոցն Նոյի շինել և աճել ըստ հրամանի և ուխտին ամենակալին Աստուծոյ՝ որ եւ ընդ նոսա յետ Ջրհեղեղին։ Եւ 'ի վերայ այսորիկ զկարգ և զԹիւ Թագաւորացն Հոռոմոց և Պարսից. և զկնի Պարսից Թագաւորութեանն վճարելոյ՝ սկիզ-

բըն առնէ Թագաւորութեանն Արշակաց որ են Տաճիկք . և՚ի կատարածի սոցա զԹուրքաց սուլտանութիւնն և զտիրելն բազում աշխարհաց և գաւառաց , զոր դեռ այժմ ունին բռնացեալք ընդդէմ բազում ազգաց և աղանց : Որ են Թիւք ամացն յելիցն Ադամայ մինչեւ ՚ի ժամանակ կատարելոյ գրոցս ՚ի ձեռն Միխայելի Ասորւոց պատրիարքի , ամք վեց հազար չորս հարիւր և երեսուն . և այժմ է Թիւս Հայոց ՉԻԲ , որ գրեցաւ գիրքս ձեռամբ տառապեալ Գրիգորոյ . զոր կամաւքն Աստուծոյ գրեացուք և մեք զպակասութիւն սորա ամաց քառասուն և չորից :



ՆՈՐԻՆ

ՏԵԱՌՆ ՄԻԽԱՅԵԼԻ ԱՍՈՐԻՈՅ

ՅԱՂԱԳՍ

ՔԱՀԱՆԱՅՈՒԹԵԱՆ

# ՆՈՐԻՆ
# ՏՆ. ՄԻԽԱՅԵԼԻ ՊԱՏՐԻԱՐՔԻ
# ԱՍՈՐԻՈՅ

## Յաղագս քահանայութեան թէ ուստի՛ սկսանի եւ ո՛ւր կատարի, եւ թէ զինչ է քահանայութիւնն։

Սկիզբն քահանայութեան Աստուած է, անսկզբնաբար եւ տիրապէս ունելով զնա եւ ոչ յումեքէ առեալ, եւ ոչ զոք ունելով վերագոյն, որում քահանայացէ եւ փառաւորեսցէ. եւ վասն այնորիկ միայն բաշխելով եւ պարգեւելով է քահանայութիւն, եւ ոչ էընդ հարկիւ։ Իսկ արդ համարձակելի է մեզ 'ի ծանօթութենէ գրոց իշխել եւ ասել զամենասուրբն Հայր քահանայել զանհասական ծնունդն Որդւոյ, եւ 'ի բղխումն Հոգւոյն անթարգմանաբար եւ անսկզբնապէս, անժամանակ, անմիջնորդ, անհատապէս եւ անախտաբար, յէութենէ եւ 'ի բնութենէ իւրմէ. անձինք եւ դէմք կատարեալք, եւ 'ի նոյն բնութեան եւ յաստուածութեան եւ 'ի մի զօ-

րութեան և ՚ի համագոյութեան և ՚ի համա-
կամութեան կացեալ և միացեալ, անբաժա-
նապէս բաժանեալք և անխառնաբար միա-
ւորեալք։ Այս է առաջին և անպարագական
և ՚ի բնութենէ քահանայութիւն, անմիջա-
գոյն և աննուաստական, հաւասարապէս և
միափառ, որ ոչ ասի անդ գործ և սպասա-
ւորութիւն ՚ի Հօրէ քահանայութիւն։

Իսկ երկրորդ քահանայագործութիւն ըս-
կըսանի ՚ի Որդւոյ և ՚ի Հոգւոյ առ զօրս
հրանիւթս հրեշտակաց. զի նախ իմանայր
զհրեշտակական զօրութիւնն և զերկնային-
սին, և իմաստքն գործ լինէին բանիւ կա-
տարեալ և հոգւով լցեալ ըստ Դաւթայ.
«Բանիւ Տեառն երկինք հաստատեցան, և
հոգւով բերանոյ նորա ամենայն զօրութիւնք
նոցա։» Եւ թէ զինչ է աստիճանք նոցա,
նոյն ՚ի Դաւթայ ուսանիմք. «Ասաց, ասէ,
զհրեշտակս իւր հոգիս, և զսարկաւագունս
իւր ՚ի հուր կիզելոյ։» Որք են հզօր զօրու-
թեամբ, որք սարկաւագեն Աստուծոյ փա-
ռաւորելով զնա. և առաջին ՚ի սպասաւո-
րութիւն այնոցիկ որ ժառանգելոց են զփրկ-
կութիւնն, և զնուաստագոյնն դայեկաբար
սնուցանեն իմանալի կերակրօք Աստուծոյ
քահանայացեալք և քահանայագործեալք.
և միշտ ըստ կարգի իմաստից հաղորդեալք
՚ի նմանէ, յերկիս երակս բաժանեալք, առա-

ջին և երկրորդ և երրորդ, 'ի փառս երեքերեւեան Աստուածութեանն։ Առաջինքն 'ի նմանէ հաղորդեալք, և երկրորդն յառաջնոյն, և երրորդն 'ի միջնոյն. և 'ի նոցունց առ մարդիկ իջեալ, և աստ կատարեալ և ընդարձակեալ, զի այլ բանական 'ի վայր քան զմեզ ոչ գոյ. և Ադամ զնոցա բարբառն լուեալ յԱստուծոյ առ նա բերեալ, և անուանեաց զնոսա հրեշտակս, որք են պատգամաւորք. այլ անուն բնութեան նոցա և թիւ համարոյ նոցա և ընդարձակութիւն իմաստից նոցա և փառք էութեան նոցա անգիտելի և անհաս մնաց 'ի մէնջ վարագուրածածկեալք։

Արդ քահանայութիւնն կարգ է բարձր և աստիճան սուրբ, որով բարձրանայ առ Աստուած ըստ կարի և լինի վերագոյն քան զայնոսիկ որոց քահանայէ. և միջնորդութիւն է ընդ վերնագոյնն և ընդ խոնարհականս։ Եւ ոչ է կարելի քահանայութիւն ումեք արարածականի անձամբ առնուլ զնա ըստ Առաքելոյ, այլ պարգեւ և շնորհ է աստուածային և երկնաւոր, տալով և ոչ առնլով, բայց 'ի յՈրդւոյ և 'ի Հոգւոյ, որ անսկզբնաբար և բնաւորաբար ընդ ծնունդն անժամական և ընդ ելումն անիմացական իմանամք զքահանայութիւն նոցա սեպհականապէս։ Իսկ արարածականքս 'ի պարգեւացն Աստուծոյ

կոչին և առնուն. որ և միանայ ընդ արժանա-
ւորան շնորհն, կարգն և պարգեւն աստուա-
ծականն, որպէս հուր յերկաթ և լոյս ընդ օդ,
և 'ի ներքուստ 'ի ներքս խօսի զկամս Տեառն
Աստուծոյ: Եւ քահանայութիւն ըստ Ասորւոց
լեզուին հարստութիւն թարգմանի, որ է փար-
թամութիւն երկնաւոր և հոգեւոր բարեաց,
բանալի և փակ երկնից արքայութե̃ն, ծնօղու-
թիւն հոգևոր և անախտ երկանց, դաստիարա-
կութիւն և սնունդ աստուածային կենաց,
նմանութիւն երջանիկ և բարեբաստիկ փա-
ռացն Աստուծոյ: Իսկ ըստ Հայոց լեզուին՝
քաւիչ թարգմանի, կի քաւէ զանձն և զորս
ընդ ձեռամբ ունի: Եւ նախ տուաւ յատակ
և անախտ և կուսական բնութեան հրեշ-
տակաց. և անտի 'ի խոնարհ իջուցեալ զնա
ետ պատկերի խորոյ ձեռաստեղծի Ադամայ
մարմնոյ և արեան վ՚ձակերոյ, վասն որոյ և
ցուցաւ մարդասէր երիս աստիճանօք բարձ-
րագունիւք պատուելով զնա քահանայական
և արքունական և մարգարէական փառաւո-
րութեամբ. որ թէպէտ և ոչ զգուշացաւ
'ի պահելն, այլ յանարատութեան էառ ըզ-
նա. և զկորուստ նորա անդրէն դարձոյց
Տէր նորա, որ ողորմութեամբ եղեւ որդի
նորա 'ի լրման աւուրց. և երկրորդ եղեալ
Ադամ յուզեալ 'ի խնամոց լուրոց, և զան-
ձըն պատարագեալ նոր և հրաշափառ ըն-

ծայիւք պլպարտս նորա վճարելով։

Իսկ ՚ի յԱդամայ ճանապարհորդեաց կարգըս այս ընդ ամենայն դարս. որ և զկնի Ադամայ Հաբէլ քահանայական շնորհօք զարդարեալ մատուցանէր յանբանից պատարագ Աստուծոյ հաճոյական, նշանակ արժանաւոր քահանայից. այլ և անձամբ մատեաւ պատարագ յօրինակ Տեառն մերոյ անարժան ձեռօքն Կայենի պղծ քահանային. բայց ըզԿայէն և զզոհել ընծայս նորա ՚ի պտղոյ երկրին ոչ ընկալաւ Աստուած, անարժան քահանայութեան շնորհի զնա համարեալ։ Աւերաց Կայէն լայն և մոլար և կորստեան ճանապարհ, և առանձնացաւ որդւովք իւրովք յԱստուծոյ և ՚ի զաւակաց Ադամայ։

Իսկ զկնի Հաբելի երևեցաւ շնորհն այն յԵնովս, որ յուսով կոչեաց զԱստուած յօգնութիւն տկարացեալ բնութեանն, և զյոյսըն պատարագեաց Աստուծոյ։ Եւ յետ նորա Ենովք ցուցաւ յաստիճանս յայս, որ քահանայագործեաց Աստուծոյ պահօք և խոնարհութիւն և աղօթս. և փոխեալ յարժանաւոր տեղիս, մնայ քահանայ ՚ի Տէր։ Եւ յետ նորա ծածկեցաւ յանարժանիցն և ծաղկեցաւ Նոյիւ, որ արդար և կատարեալ կոչեցաւ։ Սա նախ զկուսութիւնն և զարդարութիւնն Աստուծոյ ընծայեաց, և յետ ջրհեղեղին մատոյց դարձեալ յանասնոց սրբոց զՀաբե-

լի պատարագն, որ է սուտերականն. և հո-
տոտիլ առի Աստուծոյ անուշահոտ վարուք
և բարուքն Նոյի քան անբանիցն ճենճերօք։
Եւ խոյս ետ դարձեալ և ամփոփեցաւ յա-
նարժանիցն կռապաշտից՝ քահանայութիւնն,
և բացափայլեաց առ Յովբ յորդւոց անտի
Յեկտանայ, որ յաւուր աւուր քահանայա-
գործէր ըստ թւոյ որդւոցն. և մատոյց զան-
ձին փորձութեամբն 'ի փառս Աստուծոյ. և
զկնի փորձանացն հրամանաւ Աստուծոյ մա-
տոյց պատարագ 'ի հաշտութիւն և 'ի քա-
ւութիւն բարեկամացն։

Եւ յետ այնորիկ առաւել բացափայլեաց
'ի Մելքիսեդեկ, զոր և գիրն քարոզէ զնա
քահանայ Աստուծոյ բարձրելոյ։ Եւ նա
մատուցանէր պատարագ Աստուծոյ զճշմար-
տութեանն զօրինակն, հաց և գինի. զոր և
Աբրահամու ընծայեաց և օրհնեաց զնա Աս-
տուծոյն երկնի և երկրի 'ի բարձրելոյն. զոր
ասեն զնա յորդւոցն Քանանու, որոյ ոչ պատո-
մի ազգ և ոչ հայր և մայր, վասն օրինակի
Տեառն մերոյ. և զի թէպէտ և ունէր հայր
և մայր և ազգ, այլ ոչ գրեցաւ, և ոչ որ գի-
տէ զատոյգն։ Մելքին թագաւոր ասի, և
Սեդեկն արդար և կամ քահանայ՝ 'ի խոր-
հուրդ Տեառն մերոյ։

Մեծացաւ շնորհս այս և առ Աբրահամ,
որ զորդին քահանայագործէր Աստուծոյ և

զՄիածինն, նմանեալ Հօրն երկնաւոր։ Եւ Խաչակ պատարագ Աստուծոյ անձամբ եղեւ 'ի հօրէն, և զկեանս իւր երկիւղիւ միշտ ընծայէր Աստուծոյ վկնի Հօրն։ Եւ Յակոբ օծանէր արձան 'ի խորհուրդ եկեղեցւոյ, և 'ի դառնալն յԱսորւոց պատարագէր Աստուծոյ ըստ խոստմանն և ուխտին իւրոյ։ Այլ և Յովսէփ ընկալաւ զշնորհս զայս տեսլեամբ խորհրդոյն. և զողջախոհութիւնն մատոյց Տեառն Աստուծոյ իւրոյ 'ի փառս անուան նորա։ Եւ յայնմ հետէ ոչ երբեւեցաւ շնորհըս այս 'ի մտանելն նոցա յԵգիպտոս, որ է Մսր, որ ըստ մեզ Թարգմանի մեղք։ Եւ չէ գրեալ թէ մատուցին անդ պատարագ Աստուծոյ, առ 'ի ցուցանելոյ թէ ոչ է արժան 'ի մէջ մեղաց պատարագ մատուցանել։ Բայց մերձ 'ի յելս նոցա բազմացաւ շնորհս այս, և տուաւ յԱստուծոյ ամենայն ազգին առհասարակ. և մատուցին զառինս 'ի մէջ Եգիպտոսի, ստուերագրելով զճշմարիտ զառնըն Աստուծոյ զերկնաւորն՝ որ 'ի մէջ մեղաւոր ժողովրդոց և 'ի մէջ դժոխոց մատեաւ Հօր 'ի հոտ անուշից։ Եւ յելանելոյ անտի որդւոցն Իսրայելի եղեւ զառնազենութիւնըն այն 'ի կրօնս Իսրայէլի առնել միշտ յազգըս իւրեանց զստուերականն, որպէս նորա Իսրայէլ զճշմարտութիւնն զօրհանապազ։

Իսկ յուղղութեանն Մովսիսի ըն-

կալաւ Ահարոն եղբայր նորա զպատիւ քահանայութեանն յԱստուծոյ կոչեցեալ. և Մովսէս ընկալաւ գիր և լեզու նոր ՚ի Տեառնէ, և ձեռամբ և միջնորդութեամբ նորա տուաւ ամենայն ժողովրդեանն Իսրայէլի։ Եւ ՚ի նոցանէ առին դպրութիւն Փիւնիկեցիք. և ՚ի Փիւնիկեցւոցն առին Յոյնք ՚ի ձեռն Կադմոսի։ Իսկ Ահարոն կեցեալ ՚ի քահանայութեան ամս երեսուն և ութ, և ապա առ զքահանայութիւնն Եղիազար. և Նաբաթ և Աբիութ այրեցան առաջի Տեառն հուր օտար մատուցանելով։ Եւ դուստրն Ամինադաբայ տուաւ ՚ի տունն Պետեայ Եղիազարու. և պաշտելով զքահանայութիւնըն Եղիազարու ամս քառասուն, փոխեաց զնա նախանձաւորն Աստուծոյ Փենեհէս, որ սպան զՔազբի և զԱմրի. և կեցեալ ՚ի քահանայութեանն երեսուն և ութ ամ, և որդի նորա Եղիազար ամս յիսուն և վեց, և յետ նորա որդի իւր Փենեհէս ամս ութսուն։ Եւ զկնի նորա ապա Յեսու նոյնպէս յորդւոցն Ահարոնի, ամս յիսուն և հինգ։ Եւ յետ նորա Աւագին, ամս վաթսուն. և էր սա ՚ի ժամանակս Բարակայ և Դեբովրայ։ Եւ յետ սորա Ազարի ամս քառասուն և երկու։ Եւ զկնի սորա Զարեհ ամս յիսուն և երկու. և է սա եւթներորդ յԱհարոնէ։ Եւ յետ սորա Մարու, զոր Մերովբ կոչեն, ա-

մին յիսուն ։ Իսկ զկնի նորա Ամարիա, ամս երեսունևերկու ։ Իսկ յետ նորա Աքիտովբ ամս քսան ։ Իսկ յետ նորա Փենեհէս և Ամարիա՝ ամս քառասուն և երկու ։ Զկնի սոցա Հեղի և որդիք իւր ամս քսան, իսկ այլք քառասուն ասեն ։ Յետ նոցա Աքիտովփ և Աբիաթար և Յովհաննէս և Փենեհէս և Աբիսաւ և Բոզի և Ոզիէլ և Ազարիա և Ամրայիլ և Ամարիա, և զկնի սոցա ասպա թէ Սամուէլ, զի յառաջ քան զՍամուէլ չփոխեցան այնք ամենայն ։ Իսկ զԱբիմելէք գտաք յետ Սամուէլի, զոր եսպան Սաւուղ հարիւր յիսուն իւք. ասեն թէ 'ի Բեթնաւբայ կատարեցան ։ Զկնի նորա Աբիաթար հնգետասաներորդ . և զհետ սորա Ակիտոբ . և ըզհետ նորա Սադովկ երկոտասան ամ ։ Իսկ զՍադովկ ասեն թէ չէ 'ի տանէն Ահարոնի յԱմրամայ, այլ 'ի ցեղէն Կահաադու, զի ըստ սպառնալեացն Աստուծոյ առ Հեղի՝ փոխեցաւ 'ի տունն Կահաադու ։

Այլ և 'ի Դաւիթ երեւեցաւ երրակի շնորհն Ադամայ քահանայութիւնն. զի եկեր զհացն 'քահանայական, և վերացոյց զեփուդն որ է ծածկոյթ սեղանոյն, և եհարց նովաւ 'ի Տեառնէ . զի վասն կասկածի և երդմանն ոչ ետ քահանայիցն հարցանել, և մանաւանդ վասն Աստուածահայր լինելոյն ոչ մեղադրեցաւ, զի ընդ օրինօք ոչ եմուտ իբրեւ զծառ

ւայ։ Եւ սա կարգեաց Սաղմոսացս քան և չորս դասս. և երգել հրամայէր յերրորդ ժամուն և 'ի վեցերորդ ժամուն և 'ի յիններորդ. և այս եղաւ յեկեղեցի սուրբ։ Եւ Սադովկ պաշտեաց զքահանայութիւնն ամս իննևտասն։ Զկնի նորա Ազարիա և Սողոմ և Մովսիա և Եղիկա և Սիւրիա և Ազարիա և Սադովկ. և ոչ գոյ ժամանակ սոցա արկեալ ընդ գրով։

Եւ 'ի ժամանակս Ռոբովամու որդւոյ Նաբատայ Աբիմելէք էր քահանայապետ. և զկնի նորա Սադովկ՝ ամս քսան։ Եւ յետ նորա Սադուկ և Ազարիա և Ահիմէէս և Աբիմելէք և Իոդա և Իսադաք և Յեսու և Յիսուդաք և Եղեչէ և Սողոմ և Յովիդա հայրըն Զաքարիա մարգարէի։ Եւ ապա Մանասէ և Ամովսիա և Ազարիա և Անանիա և Շմաւոն և Մերարի և Յովսադաք և Ազարիա զոր ասեն Զաքարիա որդի Բարեքեայ, որ յանդիմանեաց զՈզիա թագաւոր, և 'ի տաճարին սպանաւ 'ի ժողովրդենէն։ Զկնի սորա Իաւդաւ, և զհետ սորա Ուրիա և Յովհաննէս և Անդրոմաքոս, և Ոնիա այր պատուական և գովելի, և Եղեկիա և Շմաւոն զոր ամենայն այր (1) արդար և երկեղած. և զսա ասեն թէ զՔրիստոս եբարձ 'ի գիրկն։ Առաջիկ որ կարգեցաք քահանայապետ վասն

(1) Թերևս ընթեռնլի է զոր ասեն այր։

յաճախ չփոթմանն Հրէից ոչ գրեցաւ 'ի պատմագրացս ստուգիւ, այլ մեք աշխատ եղեալ գտաք զկարգն, զի գիտասջիք թէ պարգեւքս այս ոչ չիջաւ յաշխարհէ խաղաղ՝ մինչեւ 'ի ճշմարիտն Քահանայապետս։

Զհետ Շմաւոնի Սմարիա և Սզարիա։ Այս Սզարիա եկեալ 'ի գերութենէ հրամանաւ Սաղմանասարայ 'ի Սամարիա, ետ 'նոցա զհինգ գիրքն Մովսիսի։ Զհետ սորա Սմարիա և Սքիտովք և Սադովկ և Սողոմ և Ելեկիա և Սզարիա և Քեղկի հայրն Երեմիայ մարգարէի 'ի ժամանակս Ովսիայ թագաւորի որ եգիտ զերկրորդ օրէնսն։ Զհետ սորա Ուրիա որդի Սամիայ, որ և սպանաւ 'ի Յովակիմայ 'ի թագաւորէ Յուդայ։ Եւ զհետ սորա Սարրի և Յովսեդեկ, որ գնաց 'ի գերութիւն յաւուրս Սեդեկիայ։ Եւ եղեւ գերութիւնն Հրէից չորս անգամ, և թագաւորութիւնն բարձաւ յԻսրայելէ. բայց քահանայութիւնն ոչ բարձաւ, զի գնացին ոմանք 'ի քահանայիցն զհետ ժողովրդեանն, և ոմանք 'ի տեղն թողան։

Եւ յերկրորդ ամին Նաբուգոդոնոսորայ ետես Դանիէլ զտեսիլն, և 'ի հինգ ամի գերութեանն Յեքոնիայ ետես Եզեկիէլ զհրաշալի տեսիլն, և յայնժամ սպանին զերուելի իշխանսն Յուդայ, և ընդ նոսա սպանին զՍէսեդեկ և զՇիրիա և զՍոփոնիա. և յետ նո-

րա եղին քահանայապետ զՅեսու որդի Նա-
րայ Երուսաղէմ. և զկնի տարան և զնա՚ի Բա-
բելոն. և ՚ի դառնալն հրէից ել ընդ Զօ-
րաբաբելի Երուսաղէմ: Զկնի Յեսուայ
Յովակիմ. յաւուրս սորա շինեցաւ տաճարն
Երուսաղէմ. և զկնի նորա Եղիշէ որդի նորա,
և ապա Յովիդա որդի նորա. և յաւուրս սորա
կատարեցաւ շինութիւն տաճարին. և յետ
նորա Յովհաննէս և Յովիդա, և ապա Յով-
հաննէս որ ապրեցաւ մինչեւ ՚ի ժամանակս
Արտաշէսի Թագաւորին Պարսից. զկնի նորա
Յովիդա: Եւ կայր քրմապետ մի Արտաշէսի
Անդրոմաքոս անուն, յոյժ բարեկամ հրէից.
Զկնի նորա Մանասէ. սա շինեաց տաճար
մի ՚ի լեառն Գարիզին: Զհետ սորա Անդ-
րոմաքոս. սա էր յաւուրս Աղէքսանդրի Մա-
կեդոնացւոյ, որ պատուեաց զԱղէքսանդր և
ապանաւ ՚ի Սամարացւոց, և ինքեանք կատարե-
ցան յԱղէքսանդրէ: Զհետ սորա Ոնիա, և
զհետ նորա Շմաւոն որդի նորա, և զհետ սո-
րա Եղիազարոս եղբայր նորա. առ սա առա-
քեաց Պտղոմէոս և խնդրեաց զգրեանն, և
առաքեցին ոսկի գրով: Զհետ սորա Մա-
նասէ. զկնի նորա Ոնիա. յետ նորա Յովսե-
պոս, և զհետ նորա Շմաւոն. սա է հայր
Յեսու Սիրաքայ: Նորիք զայս Շմաւոն ա-
սեն բարձող Քրիստոսի, երկերիւր և վեց-
տասան ամ կեցեալ յետ կալելոյն: Եւ յետ

սորա եղեն քահանայապետք Մենեղայոս , Յասոն , Ղազարոս : Իսկ Մենեղայոս եղեւ չար կամօք ընդդէմ օրինաց . և չէր սա յազգէն Ղեւեայ . և վասն սմա Անիա որդի քահանայապետին Անիայ գնաց յԵգիպտոս , և շինեաց անդ տաճար նման տաճարին որ յԵրուսաղէմ, և քաղաք : Իսկ Յակիմոս քահանայապետ մարտեաւ ընդ Յուդայի և հարաւ բարկութեամբ 'ի Տեառնէ և մեռաւ : Իսկ առ Յուդա զքահանայապետութիւնն . և զհետ նորա Մատաթիա , և զկնի նորա Յուդա որդի նորա . և սա նորոգեաց զտաճարն և սպանաւ : Զհետ նորա Յովնաթան եղբայր նորա , և սպանաւ 'ի Տրիփոնայ : Իսկ զհետ նորա Շմաւոն եղբայր նորա և սպանաւ 'ի Պտղոմեայ : Իսկ զհետ նորա որդի նորա Յովհաննէս , որ է Հիւրկանոս : Յետ նորա Արիստաբուղոս . սա թագ եդ 'ի վերայ քահանայութեանն զկնի չորեքհարիւր եւթանասուն և եւթն ամի բառնալոյն :

Իսկ 'ի Յուդայէ մինչեւ 'ի սա զօրապետք և քահանայապետք էին , և աստ սկսաւ դարձեալ թագաւորութիւն և քահանայութիւն յԱրիստաբուղոս , և կալաւ զթագաւորութիւնն նորա տարի մի, և սպանաւ ձեռամբ եղբօր իւրոյ Անտիգոնեայ , և առ ընդ տեղի նորա միւս եղբայրն Յովհաննէս , որ կոչեցաւ Աղեքսանդրոս . և զկնի սորա կին

թուԹեան և 'ի համագոյուԹեան և 'ի համա-
կամուԹեան կացեալ և միացեալ, անքակտա-
նալէս բաժանեալք և անխառնաբար միա-
ւորեալք: Այս է առաջին և անպարագրական
և 'ի բնուԹենէ քահանայուԹիւն, անմերձա-
գոյն և աննուաստական, հաւասարապէս և
միափառ, որ ոչ առի անդ գործ և սպասա-
ւորուԹիւն 'ի Հօրէ քահանայուԹիւն:

Իսկ երկրորդ քահանայագործուԹիւն բա-
կրանիս 'ի Որդւոյ և 'ի Հոգւոյ առ զօրս
հրամանիւԹս հրեշտակաց. զի նախ իմանալը
զհրեշտակական զօրուԹիւնսն և զերկնային-
սըն, և իմաստըն գործ լինէին բանիւ կա-
տարեալ և հոգւով լցեալ ըստ Դաւթայ.
«Բանիւ Տեառն երկինք հաստատեցան, և
հոգւով բերանոյ նորա ամենայն զօրուԹիւնք
նոցա:» Եւ Թէ զինչ է սատիձանք նոցա,
նոյն 'ի Դաւթայ ուսանիմք. «Արար, ասէ,
զհրեշտակս իւր հոգիս, և զսարկաւագունս
իւր 'ի հուր կիզելոյ:» Որք են հզօր զօրու-
Թեամբ, որք սարկաւագեն Աստուծոյ փա-
ռաւորելով զնա. և առաջին 'ի սպասաւո-
րուԹիւն այնոցիկ որ ժառանգելոց են զփրկու-
ԹիւնՆ, և զնուաստագոյնս դայեկաբար
սնուցանեն իմանալի կերակրօք Աստուծոյ
քահանայացեալք և քահանայագործեալք.
և միշտ ըստ կարգի իմաստից հաղորդեալք
'ի նմանէ, յերիս երակս բաժանեալք, առա-

ջին և երկրորդ և երրորդ, 'ի փառս երեքերեւեան Աստուածութեանն։ Առաջինքն 'ի նմանէ հաղորդեալք, և երկրորդն յառաջնոյն, և երրորդն 'ի միջնոյն. և 'ի նոցունց առ մարդիկ իջեալ, և աստ կատարեալ և ընդարձակեալ, զի այլ բանական 'ի վայր քան զմեզ ոչ գոյ. և Ադամ զնոցա բարբառն լըլուալ յԱստուծոյ առ նա բերեալ, և անուանեաց զնոսա հրեշտակս, որք են պատգամաւորք. այլ անուն բնութեան նոցա և Թիւ համարոյ նոցա և ընդարձակութիւն իմաստից նոցա և փառք էութեան նոցա անգիտելի և անհաս մնաց 'ի մէնջ վարագուրածածկեալք։

Արդ քահանայութիւնն կարգ է բարձր և աստիճան սուրբ, որով բարձրանայ առ Աստուած ըստ կարի և լինի վերագոյն քան զայնոսիկ որոց քահանայէ. և միջնորդութիւն է ընդ վերնագոյնն և ընդ խոնարհականս։ Եւ ոչ է կարելի քահանայութիւն ումեք արարածականի անձամբ առնուլ զնա ըստ Առաքելոյ, այլ պարգեւ և շնորհ է աստուածային և երկնաւոր, տալով և ոչ առնլով, բայց 'ի յՈրդւոյ և 'ի Հոգւոյ, որ անսկզբնաբար և բնաւորաբար ընդ ծնունդն անաստական և ընդ ելումն անխմացական իմանամք զքահանայութիւն նոցա սեպհականապէս։ Իսկ արարածականքս 'ի պարգեւացն Աստուծոյ

կոչին և առնուն. որ և միանայ ընդ արժանաւորան շնորհն, կարգն և պարգեւն տէրունական, որպէս հուր յերկաթ և լոյս ընդ օդ, և 'ի ներքուստ 'ի ներքս խօսի զկամս Տեառն Աստուծոյ։ Եւ քահանայութի՛ ըստ Ասորւոց լեզուին հարստութիւն թարգմանի, որ է փառթամութիւն երկնաւոր և հոգևոր բարեաց, բանալի և փակ երկնից արքայութե՛ն, ծնօղութիւն հոգևոր և անախտ երկանց, դաստիարակութիւն և սնունդ աստուածային կենաց, նմանութիւն երջանիկ և բարեբաստիկ փառացն Աստուծոյ։ Իսկ ըստ Հայոց լեզուին՝ քաւիչ թարգմանի, զի քաւէ զանձն և զորս ընդ ձեռամբ ունի։ Եւ նախ տուաւ յստակ և անախտ և կուսական բնութեան հրեշտակաց. և ապա 'ի խոնարհ իջուցեալ զնա ետ պատկերի իւրոյ ձեռաստեղծի Ադամայ մարմնոյ և արեան վիճակելոյ, վասն որոյ և ցուցաւ մարդասէր երիս աստիճանօք բարձրագունիւք պատուելով զնա քահանայական և արքունական և մարգարէական փառաւորութեամբ. որ թէպէտ և ոչ զգուշացաւ 'ի պահելն, այլ յանարատութեան էառ ըզնա. և զկորուստ նորա անդրէն դարձոյց Տէր նորա, որ ողորմութեամբ եղեւ որդի նորա 'ի լրման աւուրց. և երկրորդ եղեալ Ադամ յուզեալ 'ի նմանից իւրոց, և զանձըն պատարագեալ նոր և հրաշափառ ըն-

ծայիւք զպարտս նորա վճարելով։

Իսկ 'ի յԱդամայ ճանապարհորդեաց կարգըս այս ընդ ամենայն դարս. որ և զկնի Ադամայ Հաբէլ քահանայական շնորհօք զարդարեալ մատուցանէր յանբանից պատարագ Աստուծոյ հաճոյական, նշանակ արժանաւոր քահանայից. այլ և անձամբ մատեաւ պատարագ յօրինակ Տեառն մերոյ անարժան ձեռօքն Կայենի պեղծ քահանային. բայց ըզԿայէն և զզոհել ընծայս նորա 'ի պտղոյ երկրին ոչ ընկալաւ Աստուած, անարժան քահանայութեան շնորհի զնա համարեալ։ Եւ եբաց Կայէն լայն և մօլար և կորստեան ճանապարհ, և առանձնացաւ որդւովք իւրովք յԱստուծոյ և 'ի զաւակաց Ադամայ։

Իսկ զկնի Հաբելի երևեցաւ շնորհն այն յԵնովս, որ յուսով կոչեաց զԱստուած յօգնութիւն տկարացեալ բնութեանն, և զյոյսըն պատարագեաց Աստուծոյ։ Եւ յետ նորա Ենովք ցուցաւ յաստիճանս յայս, որ քահանայագործեաց Աստուծոյ պահք և խոնարհութիւն և աղօթս. և փոխեալ յարժանաւոր տեղիս, մնայ քահանայ 'ի Տէր։ Եւ յետ նորա ծածկեցաւ յանարժանիցն և ծաղկեցաւ Նոյիւ, որ արդար և կատարեալ կոչեցաւ։ Սա նախ զկուսութիւնն և զարդարութիւնն Աստուծոյ ընծայեաց, և յետ ջրհեղեղին մատոյց դարձեալ յանասնոց սրբոց զՀաբե-

լի պատարագն, որ է սուրբ երանելին. և հա-տուիլ առ Աստուծոյ անուշահոտ վարուք և բարուքն Նոյի քան անբանիցն ձենձերօք: Նա խայս ետ դարձեալ և ամփոփեցաւ յանարժանիցն կռապաշտից՝ քահանայութիւնն, և բացափայլեաց առ Յովբ յորդւոց անտի Յեկտանայ, որ յաւուր աւուր քահանայագործէր ըստ Թուոյ որդւոցն. և մատոյց զանձըն փորձութեանցն 'ի փառս Աստուծոյ. և զկնի փորձանացն հրամանաւ Աստուծոյ մատոյց պատարագ 'ի հաշտութիւն և 'ի քաւութիւն բարեկամացն:

Նա յետ այնորիկ առաւել բացափայլեաց 'ի Մելքիսեդեկ, զոր և գիրն քարոզէ զնա քահանայ Աստուծոյ բարձրելոյ: Նա սա մատուցանէր պատարագ Աստուծոյ զճշմարտութեանն զօրինակն, հաց և գինի. զոր և Աբրահամու ընծայեաց և օրհնեաց զնա Աստուծոյն երկնի և երկրի 'ի բարձրելոյն. զոր ասեն զնա յորդւոցն Քանանու, որոյ ոչ պատմի ազգ և ոչ հայր և մայր, վասն օրինակի Տեառն մերոյ. և զի Թէպէտ և ունէր հայր և մայր և ազգ, այլ ոչ գրեցաւ, և ոչ որ գիտէ զստոյգն: Մելիքն Թագաւոր ասի, և Սեդեկն արդար և կամ քահանայ՝ 'ի խորհուրդ Տեառն մերոյ:

Մեծացաւ շնորհս այս և առ Աբրահամ, որ զորդին քահանայագործէր Աստուծոյ և

զմիածինն, նմանեալ Հօրն երկնաւոր։ Եւ Իսահակ պատարագ Աստուծոյ անձամբ եղեւ 'ի հօրէն, և զկեանս իւր երկիւղիւ միշտ ընծայէր Աստուծոյ զկնի հօրն։ Եւ Յակոբ օծանէր արձան 'ի խորհուրդ եկեղեցւոյ, և 'ի դառնալն յԱսորւոց պատարագէր Աստուծոյ ըստ խոստմանն և ուխտին իւրոյ։ Այլ և Յովսէփ ընկալաւ զշնորհս զայս տեսլեամբ խորհրդոյն. և զողջախոհութիւնն մատոյց Տեառն Աստուծոյ իւրոյ 'ի փառս անուան նորա։ Եւ յայնմ հետէ ոչ երբեւեցաւ շնորհըս այս 'ի մտանելն նոցա յԵգիպտոս, որ է Մսր, որ ըստ մեզ Թարգմանի մեղք։ Եւ չէ գրեալ թէ մատուցին անդ պատարագ Աստուծոյ, առ 'ի ցուցանելոյ թէ ոչ է արժան 'ի մէջ մեղաց պատարագ մատուցանել։ Բայց մերձ 'ի յելս նոցա բազմացաւ շնորհս այս, և տուաւ յԱստուծոյ ամենայն ազգին առհասարակ. և մատուցին զառինս 'ի մէջ Եգիպտոսի, ստուերագրելով զճշմարիտ գառնըն Աստուծոյ զերկնաւորն՝ որ 'ի մէջ մեղաւոր ժողովրդոց և 'ի մէջ գժոխոց մատեաւ Հօր 'ի հոտ անուշից։ Եւ յելանելոյ անտի որդւոցն Իսրայելի եղեւ գառնազենութիւնըն այն 'ի կրօնս Իսրայելի առնել միշտ յազգըս իւրեանց զստուերականն, որպէս նորս Իսրայէլ զճշմարտութիւնն զօրհանապազ։

Իսկ յութսունևեւթն ամին Մովսիսի ըն-

կալաւ Ահարոն եղբայր նորա զպատիւ քա-
հանայութեանն յԱստուծոյ կոչեցեալ. և
Մովսէս ընկալաւ գիր և լեզու նոր 'ի Տեառ-
նէ, և ձեռամբ և միջնորդութեամբ նորա
տուաւ ամենայն ժողովրդեանն Իսրայէլի։
Եւ 'ի նոցանէ առին դպրութիւն Փիւնիկե-
ցիք. և 'ի Փիւնիկեցւոցն առին Յոյնք 'ի
ձեռն Կադմոսի։ Իսկ Ահարոն կեցեալ 'ի
քահանայութեան ամս երեսունևութ, և
տայ առ զքահանայութիւնն Եղիազար. և
Նաքաբ և Աբիութ այրեցան առաջի Տեառն
հուր օտար մատուցանելով։ Եւ դաւստրն
Ամինադաբայ տուաւ 'ի տունն Պետեայ Ե-
ղիազարու. և պաշտելով զքահանայութիւ-
նըն Եղիազարու ամս քառասուն, փոխեաց
զնա նախանձաւորն Աստուծոյ Փենեհէս,
որ սպան զՐազքի և զԱմրի. և կեցեալ 'ի
քահանայութեանն երեսունևութ ամ, և
որդի նորա Եղիազար ամս յիսունևվեց, և
յետ նորա որդի իւր Փենեհէս ամս ութ-
սուն։ Եւ զկնի նորա ապա Յեսու նոյնպէս
յորդւոցն Ահարոնի, ամս յիսունևհինգ։
Եւ յետ նորա Աւագին, ամս վաթսուն. և
էր սա 'ի ժամանակս Բարակայ և Դեբովրայ։
Եւ յետ սորա Ազարի՝ ամս քառասունևեր-
կու։ Եւ զկնի սորա Զարեհ՝ ամս յիսունև
երկու. և է սա եւթներորդ յԱհարոնէ։ Եւ
յետ սորա Մարու, զոր Մերովխ կոչեն, ա-

մըս յիսուն ։ Եւ զկնի նորա Ամարիա, ամս երեսունևերկու ։ Եւ յետ նորա Աքիտովբ ամս քսան ։ Եւ յետ նորա Փենեհէս և Ամա-րիա՝ ամս քառասուն և երկու ։ Զկնի սոցա Հեղի և որդիք իւր ամս քսան, իսկ այլք քա-ռասուն ասեն ։ Յետ նոցա Աքիտովբ և Ա-բիաթար և Յովհաննէս և Փենեհէս և Աբի-սաւ և Բոզի և Ոզիէլ և Ազարիա և Ամրայիլ և Ամարիա, և զկնի սոցա ապա թէ Սամու-էլ, զի յառաջ քան զՍամուէլ չփոխեցան այնք ամենայն ։ Եւ զԱքիմելէք դատաւք յետ Սամուէլի, զոր եսպան Սաւուղ հարիւր յի-սունիւք . ասեն թէ ՚ի Բեթնաւբայ կատա-րեցան ։ Զկնի նորա Աբիաթար հնգետա-սաներորդ . և զհետ սորա Ակիտոբ . և ըզ-հետ նորա Սադովկ երկոտասան ամ ։ Եւ զՍադովկ ասեն թէ չէ ՚ի տանէն Ահարոնի յԱմրամայ, այլ ՚ի ցեղէն Կահաթու, զի ըստ սպառնալեացն Աստուծոյ առ Հեղի՝ փոխե-ցաւ ՚ի տունն Կահաթու ։

Այլ և ՚ի Դաւիթ երևեցաւ երրակի շնորհն Ադամայ քահանայութիւնն. զի եկեր զհացն ՚քահանայական, և վերացոյց զեփուդն որ է ծածկոյթ սեղանոյն , և եհարց նովաւ ՚ի Տեառնէ . զի վասն կասկածի և երդմանն ոչ ետ քահանայիցն հարցանել, և մանաւանդ վասն Աստուածահայր լինելոյն ոչ մեղադրե-ցաւ , զի ընդ օրինօք ոչ եմուտ իբրև զծառ

ուայ։ Եւ սա կարգեաց Սաղմոսացս քսան և չորս դասս. և երգել հրամայէր յերրորդ ժամուն և 'ի վեցերորդ ժամուն և 'ի յիններորդ. և այս եղաւ յեկեղեցի սուրբ։ Եւ Սադովկ պաշտեաց զքահանայութիւնն ամս իննևտասն։ Զկնի նորա Ազարիա և Սողոմ և Սովսիա և Ելիկա և Սիւրիա և Ազարիա և Սադովկ. և ոչ գոյ ժամանակ ասցա արկեալ ընդ գրով։

Եւ 'ի ժամանակս Ռոբովամու որդւոյ Նաբատայ Աբիմելէք էր քահանայապետ. և զկնի նորա Սադովկ ամս քսան։ Եւ յետ նորա Սադուկ և Ազարիա և Ահիմէէս և Աբիմելէք և Իոդա և Իսադաք և Յեսու և Յիսուդաք և Եղիշէ և Սողոմ և Յովլիդա հայրըն Զաքարիա մարգարէի։ Եւ ապա Մանաէ և Ամովսիա և Ազարիա և Անանիա և Շմաւոն և Մերարի և Յովսադաք և Ազարիա զոր ասեն Զաքարիա որդի Բարեքեայ, որ յանդիմանեաց զՈզիա թագաւոր, և 'ի տաճարին սպանաւ 'ի ժողովրդենէն։ Զկնի սորա Փաւդաւ, և զհետ սորա Ուրիա և Յովհաննէս և Անդրոմաքոս, և Ոնիա այր պատուական և գովելի, և Եղեկիա և Շմաւոն զոր ամենայն այր (1) արդար և երկեղած. և զսա ասեն թէ զՔրիստոս եբարձ 'ի գիրկն։ Ա-ռաքիկ որ կարգեցաք քահանայապետ վասն

(1) Թուեւս ընթեռնլի է զոր ասեն այր։

յաճախ շփոթմանն Հրէից ոչ գրեցաւ 'ի
պատմագրացս ստուգիւ, այլ մեք աշխատ
եղեալ գտաք զկարգն, զի գիտասջիք թէ
պարգեւքս այս ոչ շիջաւ յաշխարհէ իսպառ՝
մինչեւ 'ի ճշմարիտն Քահանայապետ։

Զհետ Շմաւոնի Ամարիա եւ Ազարիա։
Այս Ազարիա եկեալ 'ի գերութենէ հրա-
մանաւ Սաղմանասարայ 'ի Սամարիա, ետ նոցա
զհինգ գիրքն Մովսիսի։ Զհետ սորա Ամո-
րիա եւ Աքիտովբ եւ Սադովկ եւ Սողոմ եւ Ե-
ղեկիա եւ Ազարիա եւ Քեղկի հայրն Երեմիայ
մարգարէի 'ի ժամանակս Ովսիայ թագաւորի
որ եգիտ զերկրորդ օրէնսն։ Զհետ սորա
Ուրիա որդի Սամիայ, որ եւ սպանաւ 'ի Յո-
վակիմայ 'ի թագաւորէ Յուդայ։ Եւ զհետ
սորա Սարրի եւ Յովսեդեկ, որ գնաց 'ի գե-
րութիւն յաւուրս Սեդեկիայ։ Եւ եղեւ գե-
րութիւնն Հրէից չորս անգամ, եւ թագաւո-
րութիւնն բարձաւ յԵրուսաղէմէ. բայց
քահանայութիւնն ոչ բարձաւ, զի գնացին
ոմանք 'ի քահանայիցն զհետ ժողովրդեանն,
եւ ոմանք 'ի տեղն թողան։

Եւ յերկրորդ ամին Նաբուգոդոնոսորայ
ետես Դանիէլ զտեսիլն, եւ 'ի հինգ ամի գե-
րութեանն Յեքոնիայ ետես Եզեկիէլ զհրա-
շալի տեսիլն, եւ յայնժամ սպանին զերեւելի
իշխանսն Յուդայ, եւ ընդ նոսա սպանին զՍե-
սեդեկ եւ զՇիրիա եւ զՍոփոնիա. եւ յետ նո-

րա եղին քահանայապետ զՅեսու որդի Նարա յԵրուսաղէմ. և զկնի տարան և զնա 'ի Բաբելոն. և 'ի դառնալն Հրէից ել ընդ Զօրաբաբելի յԵրուսաղէմ։ Զկնի Յեսուայ Յովակիմ. յաւուրս սորա շինեցաւ տաճարն յԵրուսաղէմ. և զկնի նորա Եղիշէ որդի նորա, և ապա Յովիդա որդի նորա. և յաւուրս սորա կատարեցաւ շինութիւն տաճարին. և յետ նորա Յովհաննէս և Յովիդա, և ապա Յովհաննէս որ ապրեցաւ մինչեւ 'ի ժամանակս Արտաշէսի Թագաւորին Պարսից. զկնի նորա Յովիդա։ Եւ կայր քրմապետ մի Արտաշէսի Անդրոմաքոս անուն, յոյժ բարեկամ Հրէից։ Զկնի նորա Սանաւէ. սա շինեաց տաճար մի 'ի լեառն Գարիզին։ Զհետ սորա Անդրոմաքոս. սա էր յաւուրս Աղէքսանդրի Մակեդոնացւոյ, որ պատուեաց զԱղէքսանդր և ապանաւ 'ի Սամարացւոց, և ինքեանք կատարեցան յԱղէքսանդրէ։ Զհետ սորա Ոնիա, և զհետ նորա Շմաւոն որդի նորա, և զհետ սորա Եղիազարոս եղբայր նորա. առ սա առաքեաց Պտղոմէոս և խնդրեաց զգրեանն, և առաքեցին ոսկի գրով։ Զհետ սորա Մանաւէ. զկնի նորա Ոնիա. յետ նորա Յովսեպոս, և զհետ նորա Շմաւոն. սա է հայր Յեսու Սիրաքայ։ Ասորէք զայս Շմաւոն ասեն բարձող Քրիստոսի, երկերիւր և վեցտասան ամ կեցեալ յետ կալելոյն։ Եւ յետ

սորա եղեն քահանայապետք Մենեղայոս, Յասոն, Ղազարոս։ Եւ Մենեղայոս եղեւ չար կամօք ընդդէմ օրինաց. և չէր սա յազգէն Ղեւեայ. և վասն սմա Ոնիա որդի քահանայապետին Ոնիայ գնաց յԵգիպտոս, և շինեաց անդ տաճար նման տաճարին որ յԵրուսաղէմ, և քաղաք։ Եւ Յակիմոս քահանայապետ մարտեաւ ընդ Յուդայի և հարաւ բարկութեամբ ՚ի Տեառնէ և մեռաւ։ Եւ առ Յուդա զքահանայապետութիւնն. և զհետ նորա Մատաթիա, և զկնի նորա Յուդա որդի նորա. և սա նորոգեաց զտաճարն և սպանաւ։ Զհետ նորա Յովնաթան եղբայր նորա, և սպանաւ ՚ի Տրիփոնայ։ Եւ զհետ նորա Շմաւոն եղբայր նորա և սպանաւ ՚ի Պտղոմեայ։ Եւ զհետ նորա որդի նորա Յովհաննէս, որ է Հիւրկանոս։ Յետ նորա Արիստաբուլոս. սա թագ եդ ՚ի վերայ քահանայութեանն զկնի չորեքհարիւր եւթանասուն և եւթն ամի դառնալոյն։

Եւ ՚ի Յուդայէ մինչեւ ՚ի սա զօրապետք և քահանայապետք էին, և աստ սկսաւ դարձեալ թագաւորութիւն և քահանայութիւն յԱրիստաբուլոս, և կալաւ զթագաւորութիւնն նորա տարի մի, և սպանաւ ձեռամբ եղբօր իւրոյ Անտիգոնեայ, և առ ընդ տեղի նորա միւս եղբայրն Յովհաննէս, որ կոչեցաւ Աղէքսանդրոս. և զկնի սորա կին

նորա Աղէքսանդրա, և շփոթեցաւ կարգն քահանայութեանն՝ կնոջ եղեալ քահանայապետ. բայց յետոյ զքահանայապետութիւնն ետ Հիւրկանեայ որդւոյ իւրոյ, և եղբօր նորա Արիստաբուլեայ ետ զթագաւորութիւնըն, որ և յետոյ գնաց 'ի գերութիւն 'ի Հռոմ. և զՀիւրկանոս գերեցին 'ի Հայս:

Եւ Հերովդէս երթեալ 'ի Հռոմ թագաւորեաց Հրէից, որ և եկեալ սպան զԱնտիգոնոս միւս եղբայրն Հիւրկանեայ. և յետոյ և զՀիւրկանոս եւս սպան որ եկն 'ի գերութենէն Հայոց, և ետ քահանայապետ զԱնանէլ: Եւ զկնի Զաքարիա, և ապա ըզՇմաւոն, ամ ամի փոփոխելով զնոսա կաշառօք. և ապա զԱննա և զԿայիափա. և ապա փոխեցաւ հին քահանայութիւնն և ստուերականն 'ի նորս և 'ի ճշմարիտս Քրիստոսիւ: Քանզի 'ի ծնանելն նորա թագաւորն այլազգի էր Հերովդէս, զի ըստ Յակոբայ նահապետին եկն որ իւր է թագաւորութիւնըն. և յորժամ բաշխեաց զպաշտօն պատարագի նոր քահանայութեանն՝ զմարմին և զարիւն իւր, սկսաւ նորս և լռեաց հինն. որ թէև կային այլ քահանայք, այլ ոչ ըստ կամացն Աստուծոյ, և ոչ համարեալ է 'ի կարգս լաւացն. վասն զի յանձնեաց Տէրն զթագաւորութիւնն 'ի յարքայն հեթանոսաց՝ հաւատացեալն 'ի նա մերձ 'ի չարչարանսն կամա

ւոր ։ Զի յայնժամ եկին պատգամաւորքն Թագաւորին Հայոց և Ասորւոց, և աղաչէին զՏէրն գնալ և Թագաւորել ընդ նոսա, և լինել բաժանակից և կցորդ իշխանութեան աթոռոյ նոցա ։ Իսկ Տէրն երանեաց զնա, և նախա յանձնեաց զարքայութիւնն որ տուաւ Ադամայ ըստ կամացն Աստուծոյ՝ հաւատացելոցն ’ի նա և ’ի հայր նորա. և զաստիճան քահանայութեն որ կարգեալ գայր ’ի ծնունդս Ադամայ ազգէ ազգէ նիւթով պատարագացեա զնա յԱռաքեալն ’ի վերնատանն, փոխեալ զնիւթ պատարագին յանձն իւր սուկալի և քստմնելի և անճառելի իմանալեաց և զգալեաց, այն որ անսկզբնաբար ’ի ծոցոյ Հօր քահանայացաւ, և նստի յերկինս երկնից ընդ աջմէ Հօր, քահանայ մշտնջենաւոր ։ Նուաստ կատարեցաւ խորհուրդն հայրենի և գլխաւորեցաւ, զագաթն էառ քահանայութիւնն, որ ոչ է այնուհետեւ այլ և այլ պատարագ և ոչ բազմութիւն քահանայից վասն մահու արգելման, և ոչ տաճար ձեռագործ և ապականացու, այլ նոյն և մի պատարագ և պատարագիչ և քահանայ. և տաճար է անձեռագործ վերինն Երուսաղէմ, որոյ գաւիթ է ձեռագործս այս և նիւթաւոր եկեղեցի և օրինակ ճշմարտին. և հաւատն է հանրական կաթողիկէ, որ ժողովէ զտիեզերս ’ի մի յոյս կոչման և ’ի մի դաւանութիւն և ’ի մի

եղբայր Տեառն. և եպիսկոպոսն տեսողլսի, որ է աստուածայնոցն. և է երից կարգաց գլուխ, քահանայից, սարկաւագաց և դպրաց:

Եւ յառաջին ամին վերացման Տեառն, աշակերտեցաւ և մկրտեցաւ Ներքինին քուշայեցի Փոթանփոս անուն, 'ի Փիլիպպոսէ առաքելոյ. և նա եղեւ սկիզբն մկրտութեան հեթանոսաց: Եւ 'ի գլուխ տարւոյն աշակերտեցաւ Պաւղոս, և յերկրորդ ամին սկիզբն արար քարոզութեանն: Եւ Ագրիպպաս արքայ յառաջին ամին իւրոյ սպան զՅակոբ եղբայրն Յովհաննու: Եւ Պետրոս ելեալ յԵրուսաղեմէ եկն յԱնտիոք աշակերտելով զհեթանոսս 'ի ճանապարհին, զերկուս ամս յամելով 'ի գաղն. և յԱնտիոք եա հիմն եկեղեցւոյ, և ձեռնադրեաց եպիսկոպոս ըզ Եւոդիոս: Ասեն թէ զվարշամակ Տեառն ունէր, և զայն արկանէր 'ի վերայ գլխոյ ձեռնադրելոցն. և անուանեաց զաշակերտեալն քրիստոնեայս. և եդ անդ աթոռ, և գնաց 'ի Հռոմ, և կատարեցաւ 'ի Ներոնէ Պաւղոսիւ հանդերձ, յերեքտասան ամի թագաւորութեան նորա, 'ի Մայիսի իթ. և Անդրոնիկոս ասէ թէ 'ի իե, ն քանուն(1). Եւ զկնի Պետրոսի եկաց եպիսկոպոս 'ի Հռոմ Լինոս՝

(1) Անիմանալի է բառս, և թերեւս նշանակէ զամիսն Տաճկաց քէնուն:

առաջին եպիսկոպոս, մետասան ամ։ Եւ յԵրուսաղէմ զկնի Յակովբայ Շմաւոն Կղէոպեանց՝ ամս քառասուն և երկու։ Եւ յԱղեքսանդրիա Մարկոս աւետարանիչ քարոզեաց, շինեաց եկեղեցի. և յետ նորա եկաց Անանիա (1) ամս քսան և երկու. և զկնի նորա Աբիլոս 'ի չորրորդ ամին Դոմետիանոսի։ Եւ նախ քան զայլսն յետ համբարձմանն ըստ խոստման Տեառն առաքեցաւ Թադէոս 'ի Հայս. նախ 'ի Կեսարիա Հայոց եկեալ, արկ անդ հիմն եկեղեցւոյ, և ձեռնադրեաց եպիսկոպոս զԹէոփիլոս. և ապա եկն 'ի յՈւռհա. անդ բժշկեաց զԱբգար, և շինեաց եկեղեցի, և ձեռնադրեաց անդ զԱդդէ, և գնաց, և կատարեցաւ 'ի Սանատրկոյ արքայէ Հայոց։ Նմանապէս և Բարթողոմէոս եկեալ և շրջեալ ընդ Հայս՝ կատարեցաւ 'ի նմին թագաւորէ։ Եւ Յուդա Յակովբեան զհետ նոցա եկեալ 'ի Հայս, կատարեցաւ յիշխանացն Հայոց 'ի յԱրմի քաղաք նոցին Հայոց, և կայ անդէն։ Եւ Սիմոն մի յորդւոցն Յովսեփու կատարեցաւ 'ի Հայս։

Եւ յԱսիա և 'ի կողմանս Բիւթանացւոց և յերկիրն Շանագլեաց. գնաց Անդրէաս առաքեալ։ Եւ ասեն զմաննէ՝ թէ յորժամ արկին վիճակս Առաքեալքն յետ առնլոյ զՀո-

(1) Ի գաւառագանագրին փոխանակ Անանիայ գրէ Անիոս։

գին սուրբ 'ի վերնատունն , և բաժանեցին զաշխարհս 'ի մէջ իւրեանց , և անկաւ վիճակն Անդրէի հրամանաւ Հոգւոյն սրբոյ երկիրն Շանագլխաց . և դժուարեցաւ Անդրէաս և փախեաւ , և հանդիպեցաւ Փրկչին որ իջեալ կայր վրանօք որպէս վաճառական, և խօսեցաւ ընդ նմա, և ասաց զինքն յերկրէ անտի , և թէ կամիցի գնալ՝ տանի զնա դիւրաւ , և հեշտիւ լսեն նմա։ Եւ դարձաւ անդրէն 'ի վերնատունն , և խնդրեաց աղօթս զի գնասցէ 'ի վիճակն իւր զհետ վաճառականին . և յուղարկեցին զնա խնդութեամբ։ Եւ գնաց Տէրն նովաւ հանդերձ 'ի Յոպպէ. և դիպեցաւ նաւ պատրաստական, և մտին 'ի նա և գնացին անդ . և վերացաւ 'ի նմանէ Տէրն յերկինս , և իմացաւ Անդրէաս և փառաւորեաց զԱստուած ։ Եւ գնացեալ դարձոյց սքանչելեօք զաշխարհն, և դարձաւ քարոզեաց 'ի Միւսիա և 'ի Բիւթանիա, և յԱսիա քարոզեաց և շինեաց եկեղեցիս 'ի մէջերկեայս , և սերմանեաց անդ զբան հաւատոյն։ Եւ անց 'ի յԵլլադա և կատարեցաւ 'ի Սպարտա Ելլադացւոց յԵգիպտոյ խաչիւ . և 'նմա է համարեալ ասիական աթոռն , զի նա քարոզեաց զառաջինն մինչեւ եկն անդ զկնի երկոտասան ամաց Յովհաննէս յետ փոխման Տիրամօրն ։

Արդ ուր քարոզեցին Առաքեալքն երկո-

տասանք և շինեցին եկեղեցիս, աթոռք են. և 'ի կատարածի աշխարհիս նստելոց են յերկոտասան աթոռս. և այս 'ի Քրիստոսէ տըւաւ։ Բայց յետոյ մարդիկ անուանեցին չորս աթոռն գլխաւոր զԱւետարանիչսն։ Մատթէոս, ասեն, ունի զԱնտիոք. և Ղուկաս որդի Կոստանդեայ Ասորւոց և մօր Յունի, աս ունի զՀռոմ, որ էր անտիոքացի և արուեստիւ բժիշկ։ Իսկ զԱղեքսանդրիա ունի Մարկոս. և զԵփեսոս Յովհաննէս, որ յետոյ Անդրէի եղև յԵփեսոս. և զԵրուսաղէմին Յակովբոս եղբայր Տեառն։ Եւ մեք աղիւսակօք կարգեսցուք հնգից Աթոռակալացս ըստ կարգի լուսաւորապէս, զի դիւրաւ կացցեն 'ի վերայ ուսումնասէրքն. և վասն աշխատութեանս մերոյ ակնկալցուք հատուցման աղօթից՝ որոց օգտին աստուստ 'ի փառս Աստուծոյ մերոյ, որ է օրհնեալ յաւիտեանս.

ամէն։

# ԱԹՈՌԱԿԱԼՔ ԱՆՏԻՈՔԱՅ

| | | ամ |
|---|---|---|
| Ա. | Պետրոս վէմ. | |
| Բ. | Եւոդիոս. | 3 |
| Գ. | Իգնատէ. | 12 |
| Դ. | Իրոն. | 13 |
| Ե. | Կոռնելիոս. | 10 |
| Զ. | Ուրիոն. | 11 |
| Է. | Թէոփիլէ. | 17 |
| Ը. | Մաքսիմոս. | 18 |
| Թ. | Սերապիէ. | 10 |
| Ժ. | Ասկղեպ. | 12 |
| ԺԱ. | Փիլիպպոս. | 10 |
| ԺԲ. | Սաբինոս. | 12 |
| ԺԳ. | Բաբելաս. | 30 |
| ԺԴ. | Բաւիոս. | 20 |
| ԺԵ. | Դեմետրիոս. | 8 |
| ԺԶ. | Պաւղոս սամոսատացի հերձուածող։ | |
| ԺԷ. | Դոմանոս. | 13 |
| ԺԸ. | Տիմոթէոս. | 5 |
| ԺԹ. | Կիւրղիոս. | 8 |
| Ի. | Տուրիանոս. | 1 |
| ԻԱ. | Բաղալիոս. | 8 |
| ԻԲ. | Փիլիկիոս. | 2 |
| ԻԳ. | Եւստաթէ. | 10 |
| ԻԴ. | Յուլիոս. | 1 |
| ԻԵ. | Ոտալիս արիոսեան աղանդ. | |
| ԻԶ. | Ուբրոս արիոսեան. | |
| ԻԷ. | Փլիքոս հերետ. | |
| ԻԸ. | Ստեփանոս հերետիկոս. | |
| ԻԹ. | Լեւոնտիոս հերետ. | |
| Լ. | Եւդոքսի արիոսեան էր. | |
| ԼԱ. | Մելիտոս ուղղափառ. | |

| | | ամ |
|---|---|---|
| ԼԲ. | Ուգլիոս. | 2 |
| ԼԳ. | Պաւլիանոս. | 1 |
| ԺԴ. | Փլաբիանոս. | 7 |
| ԼԵ. | Եւագր. | 1 |
| ԼԶ. | Պորփիրիոս. | 7 |
| ԼԷ. | Աղեքսանդրոս. | 10 |
| ԼԸ. | Յովհաննէս. | 38 |
| ԼԹ. | Թէոդիոս. | 32 |
| Խ. | Դոմանոս արիոսեան. | |
| ԽԱ. | Մաքսիմոս արիոսեան. | |
| ԽԲ. | Ակակիոս երկաբնակ։ | |
| ԽԳ. | Մուրտորիոս հերետ. | |
| ԽԴ. | Սուրբ Պետրէ հալածեալն. | |
| ԽԵ. | Մանիքոն. | |
| ԽԶ. | Մերտուրիոս երկաբնական։ | |
| ԽԷ. | Յուլիանոս. | 35 |
| ԽԸ. | Ստեփանոս. | 37 |
| ԽԹ. | Ստեփանէ հերետ. | |
| Ծ. | Բելետիոս հերետ. | |
| ԾԱ. | Փլաբիէ որ ընկեցաւն. | |
| ԾԲ. | Սուրիակէ ուղղափառ. | |
| ԾԳ. | Պաւղէ հրէականն ազգծ. | |
| ԾԴ. | Ուբոսլիոս երկաբնակ ի փեղի Սեւերիոսի. | |
| ԾԵ. | Եփրեմ հերետ. | |
| ԾԶ. | Դոմանոս հերետ։ | |
| ԾԷ. | Սարգիս. | 7 |
| ԾԸ. | Պաւղէ սեաւն. | |
| ԾԹ. | Պետրէ կորդաոլեան. | |
| Կ. | Յուլիանէ. | 40 |

| | | ամ. | | | ամ. |
|---|---|---|---|---|---|
| ԿԱ. | Աթանասիոս. | 41 | ՁԱ. | Յովհաննէս. | |
| ԿԲ. | Յովհաննէս. | 42 | ՁԲ. | Յովհան. | |
| ԿԳ. | Դիոսկորոս. | 43 | ՁԳ. | Դիոնէսիոս. | |
| ԿԴ. | Սեւերիանոս. | 44 | ՁԴ. | Աբրահամ. | |
| ԿԵ. | Յուլիէ. | 45 | ՁԵ. | Յովհաննէս | |
| ԿԶ. | Եղիա. | | ՁԶ. | Աթանաս | |
| ԿԷ. | Աթանաս. | | ՁԷ. | Յովհաննէս. | |
| ԿԸ. | Յովհան. | | ՁԸ. | Դիոնէսիոս, | |
| ԿԹ. | Իսահակ. | | ՁԹ. | Յովհաննէս. | |
| Հ. | Աթանաս. | | Ղ. | Աթանաս. | |
| ՀԱ. | Գէորգ. | | ՂԱ. | Յովհաննէս. | |
| ՀԲ. | Յովսէփ. | | ՂԲ. | Վասիլիոս. | |
| ՀԳ. | Կիրակոս. | | ՂԳ. | Աարոն. | |
| ՀԴ. | Դիոնէսիոս. | | ՂԴ. | Դիոնէսիոս. | |
| ՀԵ. | Յովհաննէս. | | ՂԵ. | Աթանաս. | |
| ՀԶ. | Իգնատիոս. | | ՂԶ. | Յովհան. | |
| ՀԷ. | Դիոդոս. | | ՂԷ. | Գրիգոր. | |
| ՀԸ. | Դիոնէսիոս | | ՂԸ. | Յովհան. | |
| ՀԹ. | Յովհան. | | ՂԹ. | Աթանաս. | |
| Ձ. | Վասիլիոս. | | Ճ. | Միխայլ եւ։ | |

## ԱԹՈՌԱԿԱԼՔ ՀՌՈՎՄԱՅ

| | | ամ. | | | ամ. |
|---|---|---|---|---|---|
| Ա. | Պետրոս ամ. | 25 | ԺԱ. | Անիկետոս. | 11 |
| Բ. | Լինոս. | 12 | ԺԲ. | Սովտեր. | 9 |
| Գ. | Անիկլետոս. | 11 | ԺԳ. | Եղուրիոս. | 8 |
| Դ. | Կղեմէս. | 9 | ԺԴ. | Կեղեստիոս. | 5 |
| Ե. | Եւարիստոս. | 8 | ԺԵ. | Ալութորոս. | 15 |
| Զ. | Աղէքսանդրիոս. | 12 | ԺԶ. | Բեկտոր. | 70 |
| Է. | Քսիստոս. | 30 | ԺԷ. | Ուրբանոս. | 9 |
| Ը. | Տեղեսփորոս. | 11 | ԺԸ. | Բունդիանոս. | 5 |
| Թ. | Սիղուինանոս. | 4 | ԺԹ. | Անտերոս. ամիս | 8 |
| Ժ. | Փիոս, | 15 | Ի. | Բաբիանոս. | 13 |

| | | ամք |
|---|---|---|
| ԻԱ. | Կոռնելիոս. | 2 |
| ԻԲ. | Լուկիոս. | 4 |
| ԻԳ. | Ստեփանոս. | 1 |
| ԻԴ. | Քսեստոս. | 11 |
| ԻԵ. | Դիոնէսիոս. | 8 |
| ԻԶ. | Գրիմէսիոս. | 8 |
| ԻԷ. | Ուտուկիոս. | 1 |
| ԻԸ. | Գայիոս. | 2 |
| ԻԹ. | Մարագլոս. | 1 |
| Լ. | Եւսեբի. | 1 |
| ԼԱ. | Մելխիտիանոս. | 21 |
| ԼԲ. | Սեղբեստրոս. | 23 |
| ԼԳ. | Մարկոս. | 2 |
| ԼԴ. | Սիլլոս. | 15 |
| ԼԵ. | Լիբերիոս. | 4 |
| ԼԶ. | Փիլիքսիոս. | 1 |
| ԼԷ. | Դամասոս. | 18 |
| ԼԸ. | Սիրիկիոս. | 5 |
| ԼԹ. | Անաստասիոս. | 3 |
| Խ. | Անաստանիոս. | 15 |
| ԽԱ. | Զոսիմոս. | 7 |
| ԽԲ. | Կեղեստինոս. | 9 |
| ԽԳ. | Լեւոն երջանիկն. | |
| ԽԴ. | Գաղոս. | 8 |
| ԽԵ. | Իղարիոս. | 7 |
| ԽԶ. | Սիբիլիտոս. | 1 |
| ԽԷ. | Անաստասիոս. | 11 |
| ԽԸ. | Սիմաքէ. տարի յառաջ երջանիկն էն: | |
| ԽԹ. | Թորմանտոս. | 2 |
| Ծ. | Որմիսդէս. | 10 |
| ԾԱ. | Յովհան. | 14 |
| ԾԲ. | Փելիքս. | 35 |
| ԾԳ. | Բեքիլոս. | 20 |
| ԾԴ. | Ագաբոս. | 1 |
| ԾԵ. | Սեղբեստրոս: | 1 |
| ԾԶ. | Պղակիոս. | 3 |
| ԾԷ. | Մարտինոս. | |

## ԱԹՈՌԱԿԱԼՔ ԱՂԷՔՍԱՆԴՐՈՒ

| | | ամք |
|---|---|---|
| Ա. | Մարկոս | 22 |
| Բ. | Ակիոս. | 22 |
| Գ. | Միլոս. | 13 |
| Դ. | Գարտոնիոս. | 11 |
| Ե. | Փրուգիոս. | 12 |
| Զ. | Յուստոս. | 11 |
| Է. | Ամոնիոս. | 13 |
| Ը. | Մարկիանոս. | 10 |
| Թ. | Կալերոս. | 14 |
| Ժ. | Ագրիպպաս. | 12 |
| ԺԱ. | Յուլիոս. | 14 |
| ԺԲ. | Դեմետրիոս. | 63 |
| ԺԳ. | Իդիմոս. | 16 |
| ԺԴ. | Դիոնէսիոս. | 7 |
| ԺԵ. | Մաքսիմոս. | 18 |
| ԺԶ. | Թէոնաս. | 19 |
| ԺԷ. | Պետրոս. վկայն է առ | 10 |
| ԺԸ. | Աքիլաս. | 6 |
| ԺԹ. | Աղէքսանդր. առ է ժողովն Նիկիոյ: | 20 |
| Ի. | Աթանաս. | 46 |
| ԻԱ. | Պետրոս | 7 |

| | | ամք |
|---|---|---|
| ԻԲ. | Ղուկիոս արխանոս ղեղծ. | |
| ԻԳ. | Տիմոթէ. Եղբայրն Պետրոսի. | 4 |
| ԻԴ. | Թէոփիլոս. | 28 |
| ԻԵ. | Կիւրեղ Դծ. առ է ժողովն Եփեսոսի. | 26 |
| ԻԶ. | Դիոսկորոս. | 7 |
| ԻԷ. | Պրոտեր հերետ. | |
| ԻԸ. | Տիմոթէոս հերետ. | 20 |
| ԻԹ. | Տիմոթէոս սպիտակ. | 3 |
| Լ. | Յովհաննէս հերետ. | |
| ԼԱ. | Պետրոս. | 12 |
| ԼԲ. | Աթանասիոս. | 7 |
| ԼԳ. | Յովհաննէս. | 9 |
| ԼԴ. | Յովհան. | 11 |
| ԼԵ. | Դէոսկորոս. | 1 |
| ԼԶ. | Տիմոթէոս. | 11 |
| ԼԷ. | Դիոդորոս. | 38 |
| ԼԸ. | Պետրոս. | 1 |
| ԼԹ. | Գայիանէ հերետ. | |
| Խ. | Պաւղոս. | 40 |
| ԽԱ. | Զուկլիոս. | 1 |
| ԽԲ. | Ապողինարիս | 2 |
| ԽԳ. | Թէոդորէ. | 3 |
| ԽԴ. | Պետրոս. | 1 |
| ԽԵ. | Յովհան Երկնախոյն. | 7 |
| ԽԶ. | Դամիանէ. | 7 |
| ԽԷ. | Անաստասիոս. | 1 |
| ԽԸ. | Անդրոնիկոս. | 2 |
| ԽԹ. | Բենիամին. | 30 |
| Ծ. | Կաւրա տաճկերանիւն. | |
| ԾԱ. | Ագաթոն. | 1 |
| ԾԲ. | Յովհան. | 2 |
| ԾԳ. | Շմաւոն. | 3 |
| ԾԴ. | Սահակ. | 1 |
| ԾԵ. | Աղեքսանդրոս. | 2 |
| ԾԶ. | Կոզմա. | 40 |
| ԾԷ. | Յովհան. | |
| ԾԸ. | Մարկոս. | |
| ԾԹ. | Յակովբ. | |
| Կ. | Շմաւոն. | |
| ԿԱ. | Յովսէփ. | |

---

## ԱԹՈՌԱԿԱԼՔ ԵՓԵՍՈՍԻ

| | | ամք |
|---|---|---|
| Ա. | Անդրէաս. | 12 |
| Բ. | Եստիոս. | 10 |
| Գ. | Տիմոթէոս. | 14 |
| Դ. | Պօլիկարպոս. | 17 |
| Ե. | Պուլիդ. | 15 |
| Զ. | Սոսքէ. | 8 |
| Է. | Դիոգինէս. | 8 |
| Ը. | Անտաթէ. | 15 |
| Թ. | Ալոթորոս. | 9 |
| Ժ. | Փիլիպպոս. | 10 |
| ԺԱ. | Պօլիկարպոս. | 11 |
| ԺԲ. | Ուղիոս. | 5 |
| ԺԳ. | Լաւրանտիոս. | 8 |
| ԺԴ. | Ալուբանոս. | 7 |
| ԺԵ. | Պրոտանիկոս. | 18 |

| | | ամք |
|---|---|---|
| ԺԶ. | Մարկոս. | 13 |
| ԺԷ. | Կիւրեղ. | 10 |
| ԺԸ. | Կուռնելիոս. | 8 |
| ԺԹ. | Դիոգոս. | 7 |
| Ի. | Դոմետիոս. | 11 |
| ԻԱ. | Պրոբոս, առ որ փոխեցաւ (աթոռն Եփեսոսի) ՚ի Կոստանդնուպօլիս։ | |

## ԱԹՈՌԱԿԱԼՔ ԿՈՍՏԱՆԴՆՈՒՊՕԼՍԻ

| | | ամք |
|---|---|---|
| | Պրոբոս. | 5 |
| ԻԲ. | Աղեքսանդրոս. | 23 |
| ԻԳ. | Պաւղոս. | 1 |
| ԻԴ. | Մակեդոն. | |
| ԻԵ. | Եւսեբիոս. | 1 |
| ԻԶ. | Եւդոքսի հերետ. | |
| ԻԷ. | Եւագրիոս հերետ. | |
| ԻԸ. | Դիմոփիլէ հերետ. | |
| ԻԹ. | Գրիգոր Նազիանզացին։ | 10 |
| Լ. | Նեկտարիոս. | 8 |
| ԼԱ. | Յովհան Ոսկեբերան. | 7 |
| ԼԲ. | Երսակիոս. | 1 |
| ԼԳ. | Ատտիկոս. | 10 |
| ԼԴ. | Սիսինիոս. | 2 |
| ԼԵ. | Նեստոր չարափառ. | |
| ԼԶ. | Մաքսիմիանոս. | 2 |
| ԼԷ. | Պրոկղոս. | 12 |
| ԼԸ. | Փլաբիոս հերետ. | |
| ԼԹ. | Անատօլ հերետ. | |
| Խ. | Իգնատիոս հերետ. | |
| ԽԱ. | Ակակիոս. | 2 |
| ԽԲ. | Պլաւիտոս. | 4 |
| ԽԳ. | Ուփիմիոս հերետ. | |
| ԽԴ. | Մակեդոն հայհոյիչ հոգւոյն։ | |
| ԽԵ. | Տիմոթէոս. | 5 |
| ԽԶ. | Յովհաննէս երկաբնակ։ | |
| ԽԷ. | Եպիփան. | 23 |
| ԽԸ. | Անթիմոս. | 1 |
| ԽԹ. | Յոհան. ՚ի սմանէ յառաջ երկաբնակք էն։ | |
| Ծ. | Յովհաննէս. | 1 |
| ԾԱ. | Կիւրիակէ. | 1 |
| ԾԲ. | Սարգիս. | 1 |
| ԾԳ. | Մինաս. | 3 |
| ԾԴ. | Գերմանիոս. | 17 |
| ԾԵ. | Նուդոտոս. | 7 |
| ԾԶ. | Բուրոս. | 1 |
| ԾԷ. | Պաւղոս. | 1 |

նորա Աղեքսանդրա, և չփոխեցաւ կարգն քահանայութեան՝ կնոջ եղեալ քահանայապետ. բայց յետոյ զքահանայապետութիւնն ետ Հիւրկանեայ որդւոյ իւրոյ, և եղբօրն նորա Արիստաբուլեայ ետ զթագաւորութիւնըն, որ և յետոյ գնաց 'ի գերութիւն 'ի Հըռոմ. և զՀիւրկանոս գերեցին 'ի Հայս:

Եւ Հերովդէս երթեալ 'ի Հռոմ թագաւորեաց Հրէից, որ և եկեալ սպան զԱնտիգոնոս միւս եղբայրն Հիւրկանեայ. և յետոյ և զՀիւրկանոս եւս եսպան որ եկն 'ի գերութենէն Հայոց, և եդ քահանայապետ զԱնանիէլ: Եւ զկնի Զաքարիա, և ապա ըզՇմաւոն, ամ ամի փոփոխելով զնոսա կաշառօք. և ապա զԱննա և զԿայիափա. և ապա փոխեցաւ հին քահանայութիւնն և ստուերականն 'ի նորս և 'ի ճշմարիտս Քրիստոսիւ: Քանզի 'ի ծնանելն նորա թագաւորն այլազգի էր Հերովդէս, զի ըստ Յակոբայ նահապետին եկն որ իւր է թագաւորութիւնըն. և յորժամ բաշխեաց զպաշտօն պատարագի նոր քահանայութեանն՝ զմարմին և զարիւն իւր, սկսաւ նորս և լռեաց հինն. որ թէև կային այլ քահանայք, այլ ոչ ըստ կամացն Աստուծոյ, և ոչ համարեալ է 'ի կարգս լուսացն. վասն զի յանձնեաց Տէրն զթագաւորութիւնն 'ի յարքայն հեթանոսաց՝ հաւատացեալն 'ի նա մերձ 'ի չարչարանսն կա[illegible]

ւոր ։ Զի յայնժամ եկին պատգամաւորքն
Թագաւորին Հայոց և Ասորւոց, և աղաչէին
զՏէրն գնալ և Թագաւորել ընդ նոսա, և լի-
նել բաժանակից և կցորդ իշխանութեան ա-
Թոռոյ նոցա ։ Իսկ Տէրն երանեաց զնա, և
նախ յանձնեաց զարքայութիւնն որ տուաւ
Ադամայ ըստ կամացն Աստուծոյ՝ հաւատացե-
լոցն ՚ի նա և ՚ի հայր նորա ։ և զաստիճան քա-
հանայութեան որ կարգեալ գայր ՚ի ծնունդս
Ադամայ ազգի ազգի նիւթով պատարագաց,
ետ զնա յԱռաքեալսն ՚ի վերնատանն, փո-
խեալ զնիւթ պատարագին յանձն իւր սու-
կալի և քստմնելի և անճառելի իմանալեաց
և զգալեաց, այն որ անսկզբնաբար ՚ի ծոցոյ
Հօր քահանայացաւ, և նստի յերկինս երկնից
ընդ աջմէ Հօր, քահանայ մշտնջենաւոր ։ Եւ-
աստ կատարեցաւ խորհուրդն հայրենի և
գլխաւորեցաւ, գագաթն էառ քահանայու-
թիւնն, որ ոչ է այնուհետեւ այլ և այլ պա-
տարագ և ոչ բազմութիւն քահանայից վասն
մահու արգելման, և ոչ տաճար ձեռագործ
և ապականացու, այլ նոյն և մի պատարագ
և պատարագիչ և քահանայ ։ և տաճար է
անձեռագործ վերինն Երուսաղէմ, որոյ գա-
ւիթ է ձեռագործս այս և նիւթաւոր եկե-
ղեցի և օրինակ ճշմարտին ։ և հաւատն է
հանրական կաթողիկէ, որ ժողովէ զտիեզերս ՚ի
մի յոյս կոչման և ՚ի մի դաւանութիւն և ՚ի մի

Հոգեւոր կերակուր։ Եւ այս առաջնորդք եկե-
ղեցւոյ անդամք են միոյ անմահական գլխոյն
Յիսուսի, անմեկնելի, անմահ և յաւիտենա-
կան, հաւատով և յուսով պաշտեն զքահանայ-
ութիւնն կատարեալ, և կենաց 'ի կեանս փո-
փոխեալք կատարելով զընթացսն, ընդ ա-
շակերտեալքն նովին պատարագաւ և հա-
ւատով և իմանալի տաճարով զտեղիս նոցա.
և կատարելով Տեառն մերոյ և Աստուծոյ
զքահանայութիւն տանն Ադամայ կենդա-
նացուցիչ մահուամբն և փրկագործ յարու-
թեամբն, համբարձեալ յերկինս կատարեաց
և զերկնաւորացն քահանայութիւնն, որ սար-
կաւագունք էին մինչեւ ցայժմ. և արդ եւս
նոցա Տէր զնոր պաշտօն անօրէնութեան իւ-
րոյ, և ձեռնադրեալ զնոսա ըստ կարգի 'ի
տեղիս և յաստիճանս իւրեանց մեզ անճա-
ռելի, և ըստ իմանալի բնութեան իւրեանց
աննիւթապէս. և նոքա քահանայագործեն և
անմարմնաբար հաղորդեալ Յիսուսի աստ-
ուածաստեղծութեանն և աստուածաբար
խորհրդոյն, որպէս ասէ մեծն Դիոնէսիոս
ուսեալ յաստուածընկալ առաքելոյն Պօ-
ղոսէ, որ ամբարձեալ մինչեւ յերրորդ յեր-
կինս՝ տեսող եղեւ անճառելեացն և լսող։
Իսկ զկնի համբարձման Տեառն մերոյ, հրա-
մանաւ Հոգւոյն սրբոյ առաջին ձեռնադրե-
ցաւ Երուսաղէմի եպիսկոպոս Յակոբոս

եղբայր Տեառն. և եպիսկոպոսն առ սող լսի, որ է աստուածայնոցն. և է երից կարգաց գլուխ, քահանայից, սարկաւագաց և դպրաց:

Եւ յառաջին ամին վերացման Տեառն, աշակերտեցաւ և մկրտեցաւ ներքինին քուշայեցի Փոթանիփոս անուն, 'ի Փիլիպպոսէ առաքելոյ. և նա եղեւ սկիզբն մկրտութեան հեթանոսաց: Եւ 'ի գլուխ տարւոյն աշակերտեցաւ Պաւղոս, և յերկրորդ ամին սկիզբն արար քարոզութեանն: Եւ Ագրիպպաս արքայ յառաջին ամին իւրոյ սպան զՅակովբոս եղբայրն Յովհաննու: Եւ Պետրոս ելեալ յԵրուսաղեմէ եկն յԱնտիոք աշակերտելով զհեթանոսս 'ի Ճանապարհին, զերկուս ամս յամելով 'ի գաւառն. և յԱնտիոք եդ հիմն եկեղեցւոյ, և ձեռնադրեաց եպիսկոպոս ըզԵւոդիոս: Ասեն թէ զմարշամակ Տեառն ունէր, և զայն արկանէր 'ի վերայ գլխոյ ձեռնադրելոցն. և անուանեաց զաշակերտեալսն քրիստոնեայս. և եդ անդ աթոռ, և գնաց 'ի Հռոմ, և կատարեցաւ 'ի Ներոնէ Պաւղոսիւ հանդերձ, յերեքտասան ամի թագաւորութեան նորա, 'ի Մայիսի ԻԹ. և Անդրոնիկոս ասէ թէ 'ի ԻԵ, Ն քանուն(1): Եւ զկնի Պետրոսի եկաց եպիսկոպոս 'ի Հռոմ Լինոս՝

(1) Անիմանալի է բառս, և թերեւս նշանակէ զամիսն Տաճկաց գէնանն:

առաջին եպիսկոպոս, մետասան ամ։ Եւ յԵր-
րուսաղէմ զկնի Յակովբայ Շմաւոն Կղէո-
պեանց՝ ամս քառասուն և երկու։ Եւ յԱ-
ղէքսանդրիա Մարկոս աւետարանիչ քարո-
զեաց, շինեաց եկեղեցի. և յետ նորա եկաց
Անանիա (1) ամս քսան և երկու. և զկնի նորա
Աբիլոս ՚ի չորրորդ ամին Դիոկղետիանոսի։
Եւ նախ քան զայլսն յետ համբարձմանն ըստ
խոստման Տեառն առաքեցաւ Թադէոս ՚ի
Հայս. նախ ՚ի Կեսարիա Հայոց եկեալ, արկ
անդ հիմն եկեղեցւոյ, և ձեռնադրեաց ե-
պիսկոպոս զԹէոփիլոս. և ապա եկն ՚ի յՈւր-
հա. անդ բժշկեաց զԱբգար, և շինեաց ե-
կեղեցի, և ձեռնադրեաց անդ զԱդէ, և
գնաց, և կատարեցաւ ՚ի Սանատրկոյ արքայէ
Հայոց։ Նմանապէս և Բարթողոմէոս եկեալ
և շրջեալ ընդ Հայս՝ կատարեցաւ ՚ի նմին
Թագաւորէ։ Եւ Յուդա Յակովբեան զհետ
նոցա եկեալ ՚ի Հայս, կատարեցաւ յիշխա-
նացն Հայոց ՚ի յԱրմի քաղաք նոցին Հայոց,
և կայ անդէն։ Եւ Սիմոն մի յորդւոցն Յով-
սեփու կատարեցաւ ՚ի Հայս։

Եւ յԱսիա և ՚ի կողմանս Բիւթանացւոց
և յերկիրն Շանագլխաց. գնաց Անդրէաս ա-
ռաքեալ։ Եւ ասեն զսմանէ՝ թէ յորժամ ար-
կին վիճակս Առաքեալքն յետ առնլոյ զՀո-

(1) Ի գաւազանագրին փոխանակ Անանիայ գրէ Անիա։

ցին սուրբ 'ի վերնատունն, և բաժանեցին զաշխարհս 'ի մէջ իւրեանց, և անկաւ վիճակն Անդրէի հրամանաւ Հոգւոյն սրբոյ երկիրն Շանագլխաց. և դժուարեցաւ Անդրէաս և փախեաւ, և հանդիպեցաւ Փրկչին որ իջեալ կայր վրանօք որպէս վաճառական, և խօսեցաւ ընդ նմա, և ասաց զինքն յերկրէ անտի, և թէ կամիցի գնալ՝ տանի զնա դիւրաւ, և հեշտիւ լսեն նմա։ Եւ դարձաւ անդրէն 'ի վերնատունն, և խնդրեաց աղօթս զի գնասցէ 'ի վիճակն իւր զհետ վաճառականին. և յուղարկեցին զնա խնդութեամբ։ Եւ գնաց Տէրն նովաւ հանդերձ 'ի Յոպպէ. և դիպեցաւ նաւ պատրաստական, և մտին 'ի նա և գնացին անդ. և վերացաւ 'ի նմանէ Տէրն յերկինս, և իմացաւ Անդրէաս և փառաւորեաց զԱստուած։ Եւ գնացեալ դարձոյց սքանչելեօք զաշխարհն, և դարձաւ քարոզեաց 'ի Միւսիա և 'ի Բիւթանիա, և յԱսիա քարոզեաց և շինեաց եկեղեցիս 'ի մէջերկեայս, և սերմանեաց անդ զքան հաւատոյն։ Եւ անց 'ի յԵլլադա և կատարեցաւ 'ի Սպարտա Ելլադացւոց յԵգիպատայ խաչիւ. և նմա է համարեալ ասիական աթոռն, զի նա քարոզեաց զառաջինն մինչեւ եկն անդ զկնի երկոտասան ամաց Յովհաննէս յետ փոխման Տիրամօրն։

Արդ ուր քարոզեցին Առաքեալքն երկո-

տասանք և շինեցին եկեղեցիս, աթոռք են. և 'ի կատարածի աշխարհիս նստելոց են յերկոտասան աթոռս. և այս 'ի Քրիստոսէ տըւաւ: Բայց յետոյ մարդիկ անուանեցին չորս աթոռ գլխաւոր զԱւետարանչացն: Մատթէոս, ասեն, ունի զԱնտիոք. և Ղուկաս որդի Կոստանդեայ Ասորւոյ և մօր Յունի, սա ունի զՀռոմ, որ էր անտիոքացի և արուեստիւ բժիշկ: Իսկ զԱղէքսանդրիա ունի Մարկոս. և զԵփեսոս Յովհաննէս, որ յետոյ Անդրէի եկն յԵփեսոս. և զԵրուսաղէմն Յակոբոս եղբայր Տեառն: Եւ մեք աղիւսակօք կարգեսցուք զհնգից Աթոռականացս ըստ կարգի լուսաւորապետս, զի դիւրաւ կացցեն 'ի վերայ ուսումնասէրքն. և վասն աշխատութեանս մերոյ ակնկալցուք հատուցման աղօթից՝ որոց օգտին աստուստ 'ի փառս Աստուծոյ մերոյ, որ է օրհնեալ յաւիտեանս. ամէն:

---

| | | ամ. | | | ամ. |
|---|---|---|---|---|---|
| ԿԱ. | Աթանասիոս. | 41 | ՁԱ. | Յովհաննէս. | |
| ԿԲ. | Յովհաննէս. | 42 | ՁԲ. | Յովհան. | |
| ԿԳ. | Դիոսկորոս. | 43 | ՁԳ. | Դիոնեսիոս. | |
| ԿԴ. | Սեւերիանոս. | 44 | ՁԴ. | Աբրահամ. | |
| ԿԵ. | Յուլիէ. | 45 | ՁԵ. | Յովհաննէս | |
| ԿԶ. | Եղիա. | | ՁԶ. | Աթանաս | |
| ԿԷ. | Աթանաս, | | ՁԷ. | Յովհաննէս. | |
| ԿԸ. | Յովհան. | | ՁԸ. | Դիոնեսիոս, | |
| ԿԹ. | Իսահակ. | | ՁԹ. | Յովհաննէս. | |
| Հ. | Աթանաս. | | Ղ. | Աթանաս. | |
| ՀԱ. | Գէորգ. | | ՂԱ. | Յովհաննէս. | |
| ՀԲ. | Յովսէփ. | | ՂԲ. | Վասիլիոս. | |
| ՀԳ. | Կիրակոս. | | ՂԳ. | Աբրոն. | |
| ՀԴ. | Դիոնեսիոս. | | ՂԴ. | Դիոնեսիոս. | |
| ՀԵ. | Յովհաննէս. | | ՂԵ. | Աթանաս. | |
| ՀԶ. | Իգնատիոս. | | ՂԶ. | Յովհան. | |
| ՀԷ. | Դիոդոս. | | ՂԷ. | Գրիգոր. | |
| ՀԸ. | Դիոնեսիոս | | ՂԸ. | Յովհան. | |
| ՀԹ. | Յովհան. | | ՂԹ. | Աթանաս. | |
| Ձ. | Վասիլիոս. | | Ճ. | Միխայլն եւ։ | |

## ԱԹՈՌԱԿԱԼՔ ՀՌՈՎՄԱՅ

| | | ամ. | | | ամ. |
|---|---|---|---|---|---|
| Ա. | Պետրոս վկ. | 25 | ԺԱ. | Անիկետոս. | 11 |
| Բ. | Լինոս. | 12 | ԺԲ. | Սովտեր. | 9 |
| Գ. | Անիտոս. | 11 | ԺԳ. | Եղուրիոս. | 8 |
| Դ. | Կղեմէս. | 9 | ԺԴ. | Կեզեստիոս. | 5 |
| Ե. | Ուարոս. | 8 | ԺԵ. | Ալուեթորոս. | 15 |
| Զ. | Աղէքսանդրիոս. | 12 | ԺԶ. | Բեկտոր. | 70 |
| Է. | Քսեստոս, | 30 | ԺԷ. | Ուրբանոս. | 9 |
| Ը. | Տեղեսփորոս. | 11 | ԺԸ. | Բունդիանոս. | 5 |
| Թ. | Սիգուինոս. | 4 | ԺԹ. | Անտերոս. ամիս | 8 |
| Ժ. | Փիոս, | 15 | Ի. | Բաւիանոս. | 13 |

| | | ամք | | | ամք |
|---|---|---|---|---|---|
| ԻԱ. | Կոռնելիոս . | 2 | Խ. | Անատոնիոս . | 15 |
| ԻԲ. | Լուկիոս . | 4 | ԽԱ. | Զոսիմոս . | 7 |
| ԻԳ. | Ստեփանոս . | 1 | ԽԲ. | Կեղեստինոս . | 9 |
| ԻԴ. | Քսեստոս . | 11 | ԽԳ. | Լեւոն երկրորդն . | |
| ԻԵ. | Դիոնեսիոս . | 8 | ԽԴ. | Գաղոս . | 8 |
| ԻԶ. | Գիմէոփոս . | 8 | ԽԵ. | Իլարիոս . | 7 |
| ԻԷ. | Ուտուկիոս . | 1 | ԽԶ. | Սիմպլիկոս . | 1 |
| ԻԸ. | Գայիոս : | 2 | ԽԷ. | Անաստաս . | 11 |
| ԻԹ. | Մարգելոս . | 1 | ԽԸ. | Սիմաքէ . տարի յա- ռաջ երկրորդ էին : | |
| Լ. | Եւսեբի . | 1 | | | |
| ԼԱ. | Մելխիադիանոս . | 21 | ԽԹ. | Թորմիզդաս . | 2 |
| ԼԲ. | Սեղբեստրոս . | 23 | Ծ. | Որմիզդէս . | 10 |
| ԼԳ. | Մարկոս . | 2 | ԾԱ. | Յովհան . | 14 |
| ԼԴ. | Սիլլիոս . | 15 | ԾԲ. | Փելիքս . | 35 |
| ԼԵ. | Լիբերիոս . | 4 | ԾԳ. | Բիգիլոս . | 20 |
| ԼԶ. | Փիլիքսիոս . | 1 | ԾԴ. | Ագապոս . | 1 |
| ԼԷ. | Դամասոս . | 18 | ԾԵ. | Սեղբեստրոս : | 1 |
| ԼԸ. | Սիրիկիոս . | 5 | ԾԶ. | Պղակիոս . | 3 |
| ԼԹ. | Անաստաս . | 3 | ԾԷ. | Մարտինոս . | |

---

## ԱԹՈՌԱԿԱԼՔ ԱՂԵՔՍԱՆԴՐՈՒ

| | | ամք | | | ամք |
|---|---|---|---|---|---|
| Ա. | Մարկոս | 22 | ԺԲ. | Դեմետրիոս . | 63 |
| Բ. | Անկիոս . | 22 | ԺԳ. | Իրակլիս . | 16 |
| Գ. | Միլոս . | 13 | ԺԴ. | Դիոնեսիոս . | 7 |
| Դ. | Գարտոնիոս . | 11 | ԺԵ. | Մաքսիմոս . | 18 |
| Ե. | Փրումիոս . | 12 | ԺԶ. | Թէոնաս . | 19 |
| Զ. | Յուստոս . | 11 | ԺԷ. | Պետրոս. վկայն է սա. | 10 |
| Է. | Ումենիոս . | 13 | ԺԸ. | Աքիլաս . | 6 |
| Ը. | Մարկիանոս . | 10 | ԺԹ. | Աղէքսանդր. սա է ժողովն Նիկիոյ : | 20 |
| Թ. | Կալերոս . | 14 | | | |
| Ժ. | Ագրիպպաս . | 12 | Ի. | Աթանաս . | 46 |
| ԺԱ. | Յուլիոս . | 14 | ԻԱ. | Պետրոս | 7 |

| | | ամփ |
|---|---|---|
| ԻԲ. | Ղուկիոս արքանոս պերձ. | |
| ԻԳ. | Տիմոթէ. եղբայրն Պետրոսի. | 4 |
| ԻԴ. | Թէոփիլոս. | 28 |
| ԻԵ. | Կիւրեղ Մեծ. առ որ է ժողովն Եփեսոսի. | 26 |
| ԻԶ. | Դիոսկորոս. | 7 |
| ԻԷ. | Պրոտեր հերէփ. | |
| ԻԸ. | Տիմոթէոս հերէփ. | 20 |
| ԻԹ. | Տիմոթէոս ուղղոյն. | 3 |
| Լ. | Յովհաննէս հերէփ. | |
| ԼԱ. | Պետրոս. | 12 |
| ԼԲ. | Աթանասիոս. | 7 |
| ԼԳ. | Յովհաննէս. | 9 |
| ԼԴ. | Յովհան. | 11 |
| ԼԵ. | Դէոսկորոս. | 1 |
| ԼԶ. | Տիմոթէոս. | 11 |
| ԼԷ. | Դիոդորոս. | 38 |
| ԼԸ. | Պետրոս. | 1 |
| ԼԹ. | Գայիանէ հերէփ. | |
| Խ. | Պաւղոս. | 40 |
| ԽԱ. | Զուկլիոս. | 1 |
| ԽԲ. | Ապողինարիս | 2 |
| ԽԳ. | Թէոդորէ. | 3 |
| ԽԴ. | Պետրէ. | 1 |
| ԽԵ. | Յովհան Էլէհմոն. | 7 |
| ԽԶ. | Դամիանէ. | 7 |
| ԽԷ. | Անաստասիոս. | 1 |
| ԽԸ. | Անդրոնիկոս. | 2 |
| ԽԹ. | Բենիամին. | 30 |
| Ծ. | Կաւրոս քաղկեդոնիկ. | |
| ԾԱ. | Ագաթոն. | 1 |
| ԾԲ. | Յովհան. | 2 |
| ԾԳ. | Շմաւոն. | 3 |
| ԾԴ. | Սահակ. | 1 |
| ԾԵ. | Աղէքսանդրոս. | 2 |
| ԾԶ. | Կոզմա. | 40 |
| ԾԷ. | Յովհան. | |
| ԾԸ. | Մարկոս. | |
| ԾԹ. | Յակոբ. | |
| Կ. | Շմաւոն. | |
| ԿԱ. | Յովսէփ. | |

---

## ԱԹՈՌԱԿԱԼՔ ԵՓԵՍՈՍԻ

| | | ամփ |
|---|---|---|
| Ա. | Անդրէաս. | 12 |
| Բ. | Եսաիաս. | 10 |
| Գ. | Տիմոթէոս. | 14 |
| Դ. | Պօլիկարպոս. | 17 |
| Ե. | Պուլիք. | 15 |
| Զ. | Սաւքէ. | 8 |
| Է. | Դիոգինիս. | 8 |
| Ը. | Անտաթէ. | 15 |
| Թ. | Ալեթորոս. | 9 |
| Ժ. | Փիլիպպոս. | 10 |
| ԺԱ. | Պօլիկարպոս. | 11 |
| ԺԲ. | Ուզլոս. | 5 |
| ԺԳ. | Լաւրանտիոս. | 8 |
| ԺԴ. | Աղուրանոս. | 7 |
| ԺԵ. | Պրոտանիկոս. | 18 |

| | | ամք | | | ամք |
|---|---|---|---|---|---|
| ԺԶ. | Մարկոս. | 13 | Ի. | Դոմետրիէ. | 11 |
| ԺԷ. | Կիւրեղ. | 10 | ԻԱ. | Պօղոսս, որ քակե-ցաւ (անուան Եփփեսոսի) ՚ի Կոստանդնուպօլիս։ | |
| ԺԸ. | Կոռնելիոս. | 8 | | | |
| ԺԹ. | Դիոգոս. | 7 | | | |

## ԱԹՈՌԱԿԱԼՔ ԿՈՍՏԱՆԴՆՈՒՊՕԼՍԻ

| | | ամք | | | ամք |
|---|---|---|---|---|---|
| | Պրոբոս. | 5 | ԽԱ. | Ակակիոս. | 2 |
| ԻԲ. | Աղեքսանդրոս. | 23 | ԽԲ. | Պղատիոսոս. | 4 |
| ԻԳ. | Պաւղոս. | 1 | ԽԳ. | Ուփիմիոս հերետ. | |
| ԻԴ. | Մակեդոն. | | ԽԴ. | Մակեդոն հայհոյիչ հոգւոյն։ | |
| ԻԵ. | Եւսեբիոս. | 1 | ԽԵ. | Տիմոթէոս. | 5 |
| ԻԶ. | Եւդոքսիոս հերետ. | | ԽԶ. | Յովհաննէս երկա-բնակ։ | |
| ԻԷ. | Եւագրիոս հերետ. | | ԽԷ. | Եպիփան. | 23 |
| ԻԸ. | Դիմոփիլէ հերետ. | | ԽԸ. | Անթիմոս. | 1 |
| ԻԹ. | Գրիգոր Նաղիա-նզացին։ | 10 | ԽԹ. | Յոհան. ՚ի սմանէ յա-ռաջ երկաբնակք էին։ | |
| Լ. | Նեկտարիոս. | 8 | Ծ. | Յովհաննէս. | 1 |
| ԼԱ. | Յովհան ոսկեբերան. | 7 | ԾԱ. | Կիւրիակէ. | 1 |
| ԼԲ. | Երեսկիոս. | 1 | ԾԲ. | Սարգիս. | 1 |
| ԼԳ. | Ատտիկոս. | 10 | ԾԳ. | Մինաս. | 3 |
| ԼԴ. | Սիսինիոս. | 2 | ԾԴ. | Գերմանիոս. | 17 |
| ԼԵ. | Նեստոր չարափառ. | | ԾԵ. | Նուգոստոս. | 7 |
| ԼԶ. | Մաքսիմիանոս. | 2 | ԾԶ. | Բուրոս. | 1 |
| ԼԷ. | Պրոկղոս. | 12 | ԾԷ. | Պաւղոս. | 1 |
| ԼԸ. | Փլաբիոս հերետ. | | | | |
| ԼԹ. | Անատօլ հերետ. | | | | |
| Խ. | Իգնատիոս հերետ. | | | | |

# ԱԹՈՌԱԿԱԼՔ ԵՐՈՒՍԱՂԷՄԻ

| | | ամք |
|---|---|---|
| Ա. | Յակովբոս. | |
| Բ. | Շմաւոն. | 42 |
| Գ. | Յուստոս. | |
| Դ. | Զաքէ. | |
| Ե. | Տուբիա. | |
| Զ. | Բենիամին. | |
| Է. | Յովհան. | |
| Ը. | Մատթէոս. | |
| Թ. | Փիլիպպոս. | |
| Ժ. | Սենեկէս. | |
| ԺԱ. | Յուստոս. | |
| ԺԲ. | Ղեւի. | |
| ԺԳ. | Եփրեմ. | |
| ԺԴ. | Յովսէփ. | |
| ԺԵ. | Յուդա, ամենեքեան հրէայք էին։ | |
| ԺԶ. | Նարկէսոս, (°). | |
| ԺԷ. | Մարկոս. | |
| ԺԸ. | Կասիանոս. | |
| ԺԹ. | Պուպղիոս. | |
| Ի. | Մաքսիմոս. | |
| ԻԱ. | Յուլիանոս. | |
| ԻԲ. | Գայիոս. | |
| ԻԳ. | Սիմաքոս. | |
| ԻԴ. | Գայիոս. | |
| ԻԵ. | Յուլիանոս. | |
| ԻԶ. | Կապիտոս. | |
| ԻԷ. | Վաղէս. | |
| ԻԸ. | Դոլիխիանոս. | |
| ԻԹ. | Նարկէսոս. | |
| Լ. | Դիոս. | |
| ԼԱ. | Գերմանիոն. | |
| ԼԲ. | Գորդիոս, (Գորդիանոս). | |
| ԼԳ. | Նարկէսոս վերստին | |
| ԼԴ. | Աղեքսանդրոս. | |
| ԼԵ. | Մազաբենոս. | |
| ԼԷ. | Հիմենոս. | |
| ԼԸ. | Ըմբերդաս, (Զաբդաս). | |
| ԼԹ. | Հերմոն. | |
| Խ. | Դապատոս, (°). | |
| ԽԱ. | Հերմոն, սա է ձեռնադրողն սրբոյն Գրիգորի Լուսաւորչին։ | |
| ԽԲ. | Մակար. | |
| ԽԳ. | Մաքսիմոս, զորոյ աչացն հանին անօրէնք։ | |
| ԽԴ. | Կիւրեղ, ժէ ամ, և տարաբերեցաւ. | |
| ԽԵ. | Ակակի, որ զԿիւրեղ տարաբերեաց։ | |
| ԽԶ. | Սեւերիանոս, սա եղեւ ժողովոյն Արիանոսի, որ ՃՅԸ եպիսկոպոս։ | |
| ԽԷ. | Դամասոս. | |
| ԽԸ. | Կիւրեղ. սա արար ընկալումն ընծայութեանս | |
| ԽԹ. | Յովհաննէս. | 22 |
| Ծ. | Պրաւլիոս. | |
| ԾԱ. | Պրովալիս. | 5 |
| ԾԲ. | Յոբնաղ. | 40 |
| ԾԳ. | Թէոդոս, զոր եղին աղանդաւորքն փոխանակ Յոբնաղի։ | |
| ԾԴ. | Անաստասիոս ուղղափառ։ | |

| ամք | | ամք | |
|---|---|---|---|
| ԾԵ. | Մերաուրիոս հերե-փէջեան. | ԾԹ. | Պետրոս. |
| ԾԶ. | Սեբաստիոս հերեփ. | Կ. | Մակար, որ նզովեցաւ ի վեցերորդ ժողովոյն. |
| ԾԷ. | Վելիոս. | ԿԱ. | Եւստաթէոս։ |
| ԾԸ. | Յովհաննէս. | | |

Մինչեւ ցայժմ գրեցաք զաթոռակալքս հինգ աթոռոյս, զի կային 'ի նոցանէ ոմանք որք ողջունէին զուղղափառութիւն, և դեռ սակաւ էր չարն։ Իսկ վասն զի Մարտինոս հռոմայեցի յաւել 'ի վերան Քաղկեդոնի, և հաստատեաց զհաւատոն Յովհաննիսի գրամատի և զՄաքսիմոսի, և բազմապատկեալ ըզչարն 'ի վերայ երկու բնութեանն՝ սաստ երկու կամս և երկու ներգործութիւնս, և վասն բուռն իշխանութեանն Հռոմոց տարածեցաւ անօրէնութիւնն յաստցեալ աթոռքս, և չմնաց յոյս բժշկութեան և միաբանութեան սիրոյ առ միմեանս. այսուհետեւ զի՞նչ հարկ է մեզ գրել զստարացեալսն, զի ոչ կոչել արժան է մեզ զնոսա հայրապետս, և ոչ թուել զնոսա 'ի շար առաջին որբոցն, և ոչ զապականեալ նիւթսն դնել 'ի վերայ սուրբ հիմանն։

Այլ եթող մեզ շնորհ գթութեանն Քրիստոսի զաւակ կենդանութեան և սերմն ազնուական աճման որբութեան զկոյսն սուրբ՝ զեկեղեցին Հայաստանեայց, զանեալն յառնախտ արմատոյն և զպատկերեալն 'ի նմին

իսկ 'ի Փրկչէն մերմէ անդրանիկ հաւատով 'ի ձեռն Աբգարու, որ ունէր զհայս և զԱսորիս Թագազարդեալ ճոխութեամբ, և նըստէր 'ի Միջագետս յՈւռհա քաղաք, Թագաւորեցուցեալ 'ի կողմն արեւելից զՍանատրուկ քեռորդի իւր, որ և խնդրեաց 'ի ձեռըն հաւատոց և զերկնաւոր արքայութիւնն։ Քանզի լուաւ նա զլուր սքանչելեաց Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի զոր կատարէր յերկիրն Հրէաստանի, և առաքեաց Թղթով զԱնանէ հաւատարիմ իւր՝ արամբք առ Տէր աղաչել զնա գալ առ նա և Թագաւորել ընդնմա 'ի յՈւռհա անհոգութեամբ, և ապրիլ 'ի սպանող և յապստամբ ազգէն Հրէից։ Եւ զայս մարգարէացաւ կանխագոյն Երեմիա և ասէ. « Յաւուրսն յայնոսիկ եկին արք տասն յԵրուսաղէմ խնդրել զՏէր կարօտութեամբ 'ի սէր ջերմութեանն ։ » Եւ զայն յիշէ Յովհաննէս աստուածաբան և ասէ. « Մատեան առ Փիլիպպոս և ասեն. կամիմք զՅիսուս տեսանել. և Փիլիպպոս ասէ ցԱնդրէաս, և Անդրէաս և Փիլիպպոս ասեն ցՅիսուս։ Եւ Յիսուս պատասխանի ետ և ասէ. Եհաս ժամ զի փառաւորեսցի Որդի մարդոյ։ » Այսինքն Թէ՝ արքայն հեթանոսաց եբաց դուռն հաւատոյ ամենայն աշխարհի փառաւորել զնս ։. Եւ դարձեալ զխաչն նշանակեալ Թէ եկեալ հասեալ է ժամանակ չարչարանաց իմոց զոր տաս

կատարելոց եմ. և չէ ժամ գնալոյ աստի։
Եւ հրամայեաց Թումայի առաքելոյն գրել
պատասխանի Աբգարու. և երանեաց զնա
և խոստացաւ յետ յարութեան իւրոյ առա-
քել առ նա զմի յաշակերտաց իւրոց բժշ-
կել զնա 'ի ցաւոցն զոր ունէր. և տալ նմա
և աշխարհին իւրոյ կեանս յաւիտենականս
'և անտրտումս. զոր և արար իսկ, առաքեաց
զԹադէոս, որ եկն 'ի Կեսարիա Հայոց զա-
ռաջինն, և արկ անդ հիմն եկեղեցւոյ. և ձեռ-
նադրեաց անդ եպիսկոպոս Թէոփիլէ անուն,
և գնաց 'ի յՈւռհա, և մկրտեաց զԹագա-
ւորն և զամենայն քաղաքն, և զբազումս 'ի
գաւառացն շուրջանակի. և հաստատեաց
եկեղեցիս, ձեռնադրեաց իւր փոխանորդ
զԱդդէ, և առեալ թուղթ առ Սանատրուկ
և 'ի գաւառն Հայաստանեաց ընդ կողման-
քըն արեւելից գնաց, և կատարեցաւ վկա-
յութեամբ 'ի Սանատրկոյ, թողեալ իւր փո-
խանորդ անդ զոմանս Զաքարիա և Եմեն-
տոս անուն։ Քանզի յետ սակաւ ժամանակի
մեռաւ Աբգար, և անհոգացաւ Սանատրուկ,
և սպան զԱռաքեալն։

Եւ յետ այնորիկ Բարթողոմէոս գնացեալ
'ի նոյն վիճակ Հայաստանեաց, և 'ի նոյն թա-
գաւորէ կատարեցաւ. և յայնժամ բարձաւ
համարձակութիւն հաւատացելոցն. սակայն
ոչ պակասեաց հաւատն հիմնարկեալ առա-

քերթական, մինչեւ 'ի գալն Հռիփսիմեանցն եւ 'ի հաւատալն Տրդատայ արքայի 'ի նմին ցեղէ Աբգարու երանեցելոյն 'ի Տեառնէ, 'ի ձեռն մեծահանդէս նահատակին Գրիգորի, սքանչելի եւ նորանշան եւ տիեզերալոյս վկայի. որ եւ առեալ զաստիճան Առաքելոցն սրբոց Թադէի եւ Բարթողոմէի, ելից զպակասութիւն նոցա, լուսաւորելով ծայրէ 'ի ծայր զամենայն Հայաստանեայս եւ զտունն Վրաց եւ զաշխարհն Աղուանից, եւ զամենայն գաւառս շուրջանակի Հայոց ելից գիտութեամբ ճշմարտութեանն. եւ փոխեցին ըստ կարգի որդիք նորա զհաւատս ճշմարիտս եւ զվարս նորա զամբիծս, եւ զնահատակութիւն նորա հանապազորդ ժրաջան ճգնութեամբ եւ անաչառ յանդիմանութեամբ, զանցաւորս պատուիրացն Աստուծոյ, խօսելով եւ խորհելով յօրէնս Տեառն 'ի տուէ եւ 'ի գիշերի։

Իսկ թէպէտ եւ սրբութեամբ արեանա-
ռուք նորա, պարկեշտութեան զաւակքն ժամանակաւ զտեղի առին, այլ սերմն հաւատոյ նորա ուղղափառութեան, եւ ըստ հոգւոյ ծնունդքն նորա արմատացեալ եկաց եւ մնաց յաւիտեան, նախանձաւոր գործոց բարութեան, եւ անյաղթելիք 'ի պէսպէս պատահմանց եւ 'ի դիպուածոց մնացեալք. կացեալք 'ի փոփոխական ժամանակս անփոփոխելս, զորս ոչ պատրեաց փառքն Յունաց

դիւրաթառամն զոր խոստանային նոցա . և ոչ գոռոզական խրոխտալն նոցա որ 'ի ժամանակի բարձրութեան իւրեանց սպառնային . այլ յուսովն Աստուծոյ և յաղօթս մեծի Լուսաւորչին տեւեցին և մնացին յառաքելադիր հիմանն : Նաև թէպէտ սակաւք 'ի նոցանէ տկարացան ըստ տեսլեան սրբոյն Գրիգորի , այլ արմատն նոցա անփոփոխելի և առողջ կացեալ՝ տարածեցաւ վերստին կենդանութիւնն անմահական հաւատոյն . և եղեն մեզ 'ի մխիթարութիւն և 'ի սփոփանս և 'ի վկայութի : Զի թէպէտ և աթոռն Աղեքսանդրու Եգիպտոս և ամենայն Եթէոպիա և Հնդկաստան , ազգքն ընդարձակ և բազմաթիւ և թագաւորութիւնք և ճոխութիւնք և փարթամութեամբ քան զամենեսեան զանազանեալք , այլ վասն զի նոքա և հեռաւորք և բացականք են , անկարանան զգլուխս մեր բարձրացուցանել , և զպարծանս մեր աճեցուցանել 'ի Քրիստոս : Իսկ սոքա բազում եղեն մեզ նպաստամատոյցք և ձեռնտուք , և գրեթէ նոքօք կարացաք տեւել այն ամենայն անցից որք եկին 'ի վերայ մեր , և եղեն մեզ սիւն և հաստատութիւն . և ուխտ խաղաղութեան և դաշն սիրոյ է 'ի միջի մերում մինչեւ յաւիտեան . վասն որոյ և մեր սկսեալ զխորհուրդ քահանայութեանն Աստուծոյ Հօրէ , կատարեսցուք 'ի նոցա քահանայու-

թիւնն, որ ըստ կամացն Աստուծոյ կայ և մնայ յաւիտեան ։

Եւ քանզի երեք Առաքեալք մնին 'ի Հայք, Թադէոս և Բարթողոմէոս և Յուդա Յակովբայն. և թէպէտ առաջինն Թադէոս եկն և ապա Բարթողոմէոս և Յուդա, այլ զի ոմանք ասեն թէ Թադէոս 'ի յեւթանասնիցն է, վասն այնորիկ դիցուք գլուխ քահանայութեան նոցա զԲարթողոմէոս և ապա զԹադէոս և ապա զՅուդա և զայլ առաջնորդսն ըստ կարգի, և շնորհօքն Աստուծոյ հաստուսցուք մինչև առ մեզ. և 'ի նոսա վճարեսցուք զասպարէզ աշխատութեանս մերոյ, և հանգիցուք 'ի նաւահանգիստ յուսոյ խոստմանն Աստուծոյ, որ է սկիզբն և աւարտ ամենայն բարեաց, որ է օրհնեալ յաւիտեանս յաւիտենից ։

Ա. ԲԱՐԹՈՂՈՄԷՈՍ առաքեալ, մի յերկոտասանիցն ։

Բ. ԹԱԴԷՈՍ, զոր Աւետարանն պատմէ՝ թէ զառաջինն կոչէր Ղեբէոս, և 'ի Տեառնէ անուանեցաւ Թադէոս ։

Գ. ՅՈՒԴԱ Յակովբայն, որ և սա յերկոտասանիցն վկայի և կայ Արմի քաղաք Հայոց։

Դ. ՍԻՄՈՆ որդի Յովսեփու եղբայր Տեառն մերոյ, և սա քարոզեաց 'ի Հայս. և անդէն կատարեցաւ, և կայ Արմի քաղաք Հայոց ։

Ե. ԱՂԻՃԷ և ԽԱԴ. *երկոքին սոքա յեւթանասնիցն են, և գնացին 'ի կողմանս Աղուանից հրամանաւ* Թադէի, *և անդ կատարեցան ։*

Զ. ԹԷՈՓԻԼՈՍ, *առաջին ձեռնադրութիւն Թադէոսի 'ի Կեսարիա Հայոց 'ի Կապադովկիա ։*

Է. ԱԴԴԷ, *կերպասագործ արքային Աբգարու, զոր կացոյց 'ի Միջագետս յՈւռհա քաղաք ։*

Ը. ԶԱՔԱՐԻԱ, *զոր ձեռնադրեաց յարեւելս փոխան ինքեան, և ասաց՝ զսա ետու ձեզ վարդապետ, զոր ելից հոգին Տեառն ։*

Թ. ԹԱԴԷՈՍ, *մի յեւթանասնիցն, որ գնաց հրամանաւ* Թադէի *'ի մեծն Հայս, և 'ի կողմանս հիւսիսոյ. և լուեալ զմահն Աբգարու, դարձաւ և եմուտ 'ի փոքր Սիւնիք, և կրօնաւորեալ անդէն ծածկաբար՝ վախճանեցաւ, և տեղին շինեցաւ վանք և յանունն նորա կոչեցաւ ։*

Ժ. ՍՈՒՐԲՆ ԳՐԻԳՈՐ, *լուսաւորիչն բովանդակ Հայաստանեայց, զամս* 30 ։

ԺԱ. ՍՈՒՐԲՆ ԱՐՍՏԱԿԷՍ, *կրտսեր որդին սրբոյն Գրիգորի որ 'ի ժողովն մեծ էր, ամս* 7 ։

ԺԲ. ՏԷՐ ՍՈՒՐԲՆ ՎՐԹԱՆԷՍ, *երէց որդին մեծին Գրիգորի, ամս* 17 ։

ԺԳ. ՏԷՐ ՍՈՒՐԲՆ ՅՈՒՍԻԿ, *որդին Վրթանայ, ամս* 6 ։ *Սա Գրիգորիս եղբայր նորա Ա-*

զուանից կաթողիկոս եկաց՝ 6 ամ։

ԺԴ. Տէր ՓԱՌՆԵՐՍԷՀ, ՚ի գաւառէն Տարօնոյ, յԱշտիշատու, ամս 3։

ԺԵ. Տէր ՍՈՒՐԲՆ ՆԵՐՍԷՍ, որդի Աթանագինեայ՝ որդւոյ Յուսկանն, ամս 34։

ԺԶ. Տէր ՅՈՒՍԻԿ, զոր կացուցին զկնի մահուան սրբոյն Ներսեսի, ամս 4։

ԺԷ. Տէր ԶԱՒԷՆ, զկնի Յուսկանն կալեալ զաթոռն ամս 4։

ԺԸ. Տէր ՇԱՀԱԿ, եղբայր Զաւենի ՚ի Մանծկերտոյ, ամս 6։

ԺԹ. Տէր ԱՍՊՈՒՐԱԿԷՍ, եղբայր Շահակայ և Զաւենի, ամս 7։

Ի. Տէր ՍՈՒՐԲՆ ՍԱՀԱԿ Պահլաւ, որդի սրբոյն Ներսէսի, թոռն Յուսկանն, ամս 50։ Եւ աստ կատարեցաւ ցեղն սուրբ Գրիգորի։

ԻԱ. Տէր ՍՈՒՐՄԱԿ, հակառակաթոռ սրբոյն Սահակայ, ամ մի։

ԻԲ. Տէր ԲԱՐԴԻՍՈՅ, ազգաւ Ասորի, ամս 3։

ԻԳ. Տէր ՍԱՄՈՒԷԼ, նոյնպէս Ասորի ազգաւ, ամս 3։

ԻԴ. Տէր ՍՈՒՐԲՆ ՅՈՎՍԷՓ, յաշակերտացն սրբոյն Սահակայ, ամս 3։ Սա վկայեաց Խրիստոսի, ՚ի Յազկերտէ Պարսից թագաւորէ ընդ սուրբ Ղեւոնդեայ։

ԻԵ. Տէր ԳԻՒՏ, վանանդացի, ՚ի գեղջէ Ոթմսու, ամս 10։ Սա եդ զաթոռն ՚ի Դըւին քաղաքի։

ԻԶ. Տէր ՅՈՎՀԱՆ Մանդակունի. հոգեկիր, ամս 6։

ԻԷ. Տէր ԲԱԲԳԷՆ, վանանդացի, ամս 6։ Յաւուրս սորա ամենայն Յոյնք և Վիրք նզովեցին զժողովն Քաղկեդոնի. ամս 43, յաւուրս Օհանի և Անաստասայ թագաւորաց։

ԻԸ. Տէր ՍԱՄՈՒԷԼ, ՚ի գեղջէ Արծկեայ, ամս 10։

ԻԹ. Տէր ՄՈՒՇԷ, ՚ի գաւառէ Կոտէից, ՚ի գեղջէ Այլաբերից, ամս 8։

Լ. Տէր ՍԱՀԱԿ, ՚ի Հարքայ, ՚ի գեղջէ Ուղկայ, ամս 5։

ԼԱ. Տէր ՔՐԻՍՏԱՓՈՐ, ՚ի Բագրեւանդայ, ՚ի գեղջէ Տիրառճոյ, ամս 6։

ԼԲ. Տէր ՂԵՒՈՆԴ, ՚ի գաւառէ Առուբերանոյ, ՚ի գեղջէ Առեստոյ փոքու, ամս 3։

ԼԳ. Տէր ՆԵՐՍԷՍ, ՚ի Բագրեւանդայ, ՚ի գեղջէ Աշտարակաց, ամս 9։

ԼԴ. Տէր ՅՈՎՀԱՆՆԷՍ, ՚ի Գաբեղենից, ՚ի գեղջէ Մինեղայ, ամս 17։

ԼԵ. Տէր ՄՈՎՍԷՍ, յԱրագածոտանէ, ՚ի գեղջէ Եղիվարդայ, ամս 30։ Ի տասն ամի սորա եդաւ թուականն Հայոց։

ԼԶ. Տէր ԱԲՐԱՀԱՄ, յՌշտունեաց, ՚ի գեղջէ Աղբաթօնից, ամս 23։ Յաւուրս սորա Վիրք ՚ի բաց կացին ՚ի միաբանութենէ Հայոց, և եղեն ընդ Յոյնս Կիւրիոնիւ։

ԼԷ. Տէր ՅՈՎՀԱՆՆԷՍ, ՚ի Գոկովտայ, ՚ի

գեղջէ Բագարանէ, ամս 26։ Սա եդ աթոռ 'ի Կոտայսն, յաւուրս Մորկայ Թագաւորի։

ԼԸ· Տէր ԿՈՄԻՏԱՍ, 'ի գեղջէ Աղցից, ամս 26. շինող։

ԼԹ· Տէր ՔՐԻՍՏԱՓՈՐ, յԱպատ տանէ, յԱբրահամեան անաւանեալ տոհմէ, ամս 4։

Խ· ԵԶՐ, 'ի Նգայ, որ ագիտութեամբ և կաշառօք հաւանեցաւ Հերակղի և քաղկեդոնիկ եղեւ., բայց մեծ մասն Հայոց և վանորայքն անշարժ մնացեն։

ԽԱ· Տէր ՆԵՐՍԷՍ, շինող մեծ եկեղեցւոյն 'ի Վաղարշապատ, և որբոյն Սարգսի 'ի Դուին, և 'ի Վիրապին։

ԽԲ· Տէր ԱՆԱՍՏԱՍ, 'ի գեղջէ Ակոռւոյ, ամս 6։

ԽԳ· Տէր ԻՍՐԱՅԵԼ, 'ի Վանանդայ, յՈթմսու գեղջէ, ամս 10։ Սա եհան զՆերսէս 'ի Պարտաւայ կամօք Աղուանից։

ԽԴ· Տէր ՍԱՀԱԿ, հայրենեօք 'ի Ձորափորոյ, 'ի գեղջէ Արքուայ, ամս 25։ Սա կատարեցաւ 'ի Խառան։

ԽԵ· Տէր ԵՂԻԱ, 'ի գաւառէ Աղէովտայ, 'ի գեղջէ Արճիշոյ, ամս 13։

ԽԶ· Տէր ՅՈՎՀԱՆՆԷՍ իմաստասէրն և սքանչելագործն, յՕձնայ, ամս 11։ Սա ջընջեաց զպղտորութիւն Եղիի յամենայն Հայոց։

ԽԷ· Տէր ԴԱՒԻԹ, 'ի գաւառէ Կոտայից, ամս 13։

ԽԸ. Տէր Տրդատ, ՚ի Վանանդայ, ՚ի գեղջէ Օթմսու, ամս 23։

ԽԹ. Տէր Սիոն, յեպիսկոպոսութենէն մնեալ ՚ի կաթողիկոսարանն, ամս 8։

Ծ. Տէր Եսայի, ՚ի Նգայ, ՚ի գեղջէ Եղապատրշոյ, ՚ի նոյն հայրապետանոցին սնեալ ՚ի տղայութենէ, ամս 13։

ԾԱ. Տէր Ստեփանոս, ՚ի Դունայ, այր սուրբ և գիտնական, ամս 2։

ԾԲ. Տէր Յովաբ, յԽոտանէ կիւրապաղատին, ամիսս 6 միայն։

ԾԳ. Տէր Սողոմոն, ՚ի Գեղարքունեաց Գառնոյ (1), ամ մի։

ԾԴ. Տէր Գէորգ, յԱրագածոտանէ, ՚ի բիւրակեան գեղջէ, ամս 4։

ԾԵ. Տէր Յովսէփ, յԱրագածոտանէ, ՚ի մայրաքաղաքէ եկեղեցւոյն սրբոյն Գրիգորի, ամս 11։

ԾԶ. Տէր Դաւիթ, ՚ի Մազազայ, ՚ի գեղջէ Կաղկաղայ, ամս 27։

ԾԷ. Տէր Յովհաննէս, ՚ի Կոտէից, ՚ի գեղջէ Ովայից, ամս 22։

ԾԸ. Տէր Զաքարիա, ՚ի Կոտէից, ՚ի գեղջէ Ձագ կոչեցելոյ, ամս 22։ Սմա ալամ ետ Յիսէ, խաչ բառնալ ՚ի վերայ նորա։

ԾԹ. Տէր Գէորգ (2), ՚ի Գառնոյ, ամս 21։

(1) Յօրինակին ՚ի գիւղ ուրէն Գառնոյ։
(2) Յօրինակին սխալմամբ գրի Տէր Գրիգոր։

Յաւուրս սորա Թագաւորեաց Աշոտ Բագրատունի ։ Սա ըմբռնեցաւ 'ի գերութիւն, և եհան զնա Թագաւորն Աղուանից Համամ ։

Կ. Տէր ՄԱՇՏՈՑ, խոստովանողն, ամիս 7 ։

ԿԱ. Տէր ՅՈՎՀԱՆՆԷՍ, ամս 6 (1). ՅԽԶ Թըւականին Հայոց ։

ԿԲ. Տէր ԵՂԻՍԷԷ. ամս 7 ։

ԿԳ. Տէր ԹԷՈԴՈՐՈՍ. ամս 7 ։

ԿԴ. Տէր ԱՆԱՆԻԱ. ամս 23 ։ Այր բարի և կատարեալ և լցեալ ամենայն առաքինութեամբ ։

ԿԵ. Տէր ՍՏԵՓԱՆՈՍ. ամ մի ։

ԿԶ. Տէր ՍԱՐԳԻՍ. ամ մի ։ Սա կամաւ եԹող զհոդս հայրապետութեան, պարապելով աղօԹից ։

ԿԷ. Տէր ՊԵՏՐՈՍ. Զսա հանին և եդին 'ի բանտի, և եդաւ Դիոսկորոս հայրն Սանահնին, և յետ միոյ ամի կաԹողիկոսն Աղուանից դարձոյց յաԹոռն իւր ։

ԿԸ. Տէր ԽԱՉԻԿ. ամս 2 ։ Սա քեռորդի էր Պետրոսի, և երկուքն մեռան 'ի Յունաց աշխարհն ։

ԿԹ. Տէր ՎԱՀՐԱՄ, որդի Գրիգորի Մագիստրոսի ։ Սա գնաց 'ի Կոստանդինուպօլիս 'ի Թարգմանութիւն, և անտի 'ի Մսր, և դարձաւ, 40 ամ կեցեալ յետ ձեռնադրութեանն ։

(1) Մխս Թարգմանութիւնն ուղղագոյն և ս դնէ ամս 28.

Հ. Տէր Գէորգ, ամս 3, զկնի Վահրամայ։

ՀԱ. Տէր Բարսեղ, ազգական տէր Վահրամայ, տեղապահ և կաթողիկոս կամաւ Տեառն Վահրամայ յետ գնալոյ նորա 'ի Թարգմանութիւն, ամս 12։

ՀԲ. Տէր Գրիգոր, ազգական տէր Վահրամայ և տէր Բարսեղի, ամս 54։

ՀԳ. Տէր Ներսէս, շնորհաւորեալն վարդապետութեամբ, եղբայրն Տեառն Գրիգորի, ամս 7։ Սա արար յոլով երգս շարականաց։

ՀԴ. Տէր Գրիգոր, եղբօրորդի նոցա, ամս 20։ Սա շինեաց զեկեղեցին գեղեցկապաճոյճ յանուն սրբոյն Գրիգորի։

ՀԵ. Տէր Գրիգորիս Տղայն, որ դիպուածով վախճանեցաւ։

ՀԶ. Տէր Գրիգորէս Ապիրատն կոչեցեալ, ամս 7։ Սա ունէր բան վարդապետութեան։

ՀԷ. Տէր Յովհաննէս, այր մեծամիտ և յաղթասէր, ամս 18։

ՀԸ. Տէր Կոստանդին, յերրորդ մասնէ Հայոց, 'ի գաւառէ և 'ի գեղջէ Բարձրբերդոյ, որ հայր ընդ հարաւ 'ի դաշտն Կիլիկիոյ և 'ի ծովն իւր Ադրիանոս կոչեցեալ։ Որդի առն արդարոյ և օրինապահի՝ Վահրամանուն կոչեցելոյ. յորովայնէ ընտրեալ 'ի շնորհս և յաստիճան առաքելական. որ

և օրինօք և վայելչական կենցաղավարութեամբ ճանապարհորդեալ 'ի պատուին բարձրագոյն, այսինքն վանից առաջնորդութեամբ և եպիսկոպոսութեամբ նախակրթեալ յառաջագոյն, արժանաւոր վարուք յաչս Աստուծոյ և մարդկան. վասն որոյ և շնորհն կոչեաց զարժանաւորն իւր յոլով թախանձանօք բռնադատեալ յեկեղեցականաց և յաշխարհականաց, յիշխանաց և յիշխեցելոց, ժառանգեաց զաթոռ սուրբ Լուսաւորչին Գրիգորի, և միաբանեալ ընդ շնորհին յերկարեցաւ 'ի գործն յոր կոչեցաւ։ Այս է այժմ քսան և հինգ ամ հայրապետութեան սորա, յանառիկ ամրոցիս Հռոմկլայն անուանելոյ. խաղաղութիւն կալեալ առ հեռաւորս և մերձաւորս, վկայութիւն բարի և գովութիւն բազում յարտաքնոցն առեալ, և աղօթս առ Աստուած և փափագ բաղձանաց յընտանեացն ազգացն Հայաստանեայցս, յորոց վերայ հայրենի աղէտիւք խնամարկէ, փարելով զամենեքումբք աղեխարշեալ յաղքատս, յորբս և յայրիս առատաձեռնութեամբ։ Այլ առ գերեալսն անխնայ ծախիւք դարձուցանելով. 'ի վերայ զերծելոցն թևարկելով նման հաւու 'ի վերայ ձագուց՝ զանցուցանելով զմարմնական ծնողաց գթովք, զարդարելով և պճնելով զնոսա յամենայնի։ Որ և արար զանձն հաղորդ ա-

մենայն երկեղածաց Աստուծոյ հաւատով և պէսպէս ծախիւք 'ի վանօրայս և յանապատս, պիտոյիւք և զարդիւք եկեղեցւոյ։ Յորոց վերայ յաւել և զայս մատեան, և ետ փոխել յասորւոց 'ի հայս, զոր վճարեաց Աստուած բազմապատիկ փոխարինիւ աստ և 'ի հանդերձեալն։

Որ Թէպէտ և գրեալ ունիմք զժամանակս յԱդամայ հետէ, այլ այնք 'ի բազում գրեանս տարածեալ կան և յոլովաւուրց կարօտանամք ընԹեռնլոյ. իսկ այս 'ի բազում պատմագրաց հաւաքեալ և համառօտեալ, ախորժելի և պիտանի է ուսումնասիրաց։ Զի ոչ որպէս այլք 'ի պատմագրաց մեկուսի գնայ ընդ ազգ մի կամ ընդ Թագաւորութիւն մի, և կամ սակաւ ինչ տանելով զքանն բովանդակէ Թուով սուղ ժամանակաց. այլ սա բուռն հարկանելով զԱստուածաշունչ գրոց՝ բերէ պնդապէս, քաղելով զամենայն աշխարհաց և զԹագաւորութեանց զրոյց 'ի մի շար. և յամենայն ժամանակաց վերայ քայլելով զարժանաւորսն յիշատակի հաւաքելով հաստուցանէ մինչև առ մեզ։ Եւ բազում բանս անծանօԹս գտաք 'ի սմա, և յոլով տարակոյս մեր լուծաք. վասն որոյ զյոլովիւք զանց արարաք զոր առ մեզ գիտէր, և ոչ գրեցաք՝ զի մի աւելորդս Թուիցիմք աշխատել. և էր որ կրկնեցաք զայլոց գրոց

ստացեալն կարճառօտիւք՝ վասն զանեղին ճնլոյ և զոճն պահելոյ։ Եւ ընդ անծանօթ բանիցն որ աստ՝ մի զարմասցուք և սուտ կարծեսցուք. զի ազգն Ասորւոց մտաւոր և ընտանի է միշտ լեալ Հրէից աշխարհաւ և ազգաւ և լեզուաւ, քան զամենայն ազգս և յարուեստից իմաստնոց (*), և վարժք 'ի յուսումն. զի և ինքեանք Քաղդէացիք են, և որպէս աստ գտանես՝ առաջին լեզու և գիր։ Նաեւ որ զայս քաղածոյս աշխատեալ է Տէր Միխայէլ, 'ի Յունաց և Եգիպտացւոց և Եբրայեցւոց և 'ի Հռոմայեցւոց և Ասորւոց պատմագրաց է ժողովեալ, վասն որոյ առաւել սիրելի և հաւատարիմ է. որոյ յեշատակն օրհնութեամբ յեկեղեցիս, և վարձըն բազմապատիկ առաջի Աստուծոյ։

Արդ՝ 'ի յամի անժամանակն Աստուծոյ ընդ ժամանակաւ լինելոյն ՌՄԽԸ (1248) Թըւահամարութեանս, և 'ի ՈՂԵ Թուաբերութեանս Հայոց, փոխեցաւ գիրքս այս յասորւոց 'ի հայս հրամանաւ Տեառն Կոստանդեայ, 'ի քսան և հինգ ամի հայրապետութեան իւրոյ, և 'ի քսան և հինգ ամի թագաւորութեան Հայոց Հեթմոյ. որոց Տէր Աստուած փառաւորեսցէ զհոգիս նոցա, և սուրբ հայրապետացն և թագաւորացն պսակակից և թագակից արասցէ յիւր արքայութիւնն. որում փառք և զօրութիւն

*և երկրպագութիւն ամենասուրբ Երրորդութեան, այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից. ամէն։*

---

## Յիշատակարան երկրորդ։

*Բազմադիմի է շնորհք մարդասիրին և բարերարին Աստուծոյ առ ազգս մարդկան, զի յորդորէ հանապազ զբնութիւն մարդոյ 'ի գործս բարիս և 'ի շինութիւն հաւատոյ, այսինքն 'ի սէր և 'ի պարծանս ամենասուրբ անուան իւրոյ. վասն զի որպէս ինքն Արարիչն և ամենազօրն Աստուած բնութեամբ բարի է, նոյն և սիրող է բարեսիրաց և բարեգործաց ազգի մարդկան, ըստ այնմ որ ասէ. “Բարի առնէ տէր բարեաց.” և դարձեալ թէ՝ “Բարի է Աստուած և բարեաց արժանաւորացն տուող։” Եւ արդ զինչ է պտուղն բարւոյն, եթէ ոչ խաչն և եկեղեցին և գիրքն, որով յորդորին աստուածասէր և բանաւոր մարդիկ գործել և սիրել զբարիս վասն յիշատակի և փոխարինի հանդերձելոցն բարեաց։ Վասն զի ոմանք շինեն եկեղեցիս՝ հրեշտակաց բնակարան և մարդկան քաւարան։ Ոմանք կազմեն խաչս յոսկւոյ սրբոյ, և զարդարեն պատուական և պայծառ ակամբք վասն յիշատակի և սիրոյ խա-*

չելոյն Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի, որ տրար խաղաղութիւն յերկինս և յերկրի արեամբ խաչին իւրոյ։ Ոմանք զուգեն գիրք, այսինքն գրելով զյիշատակս մարտիրոսաց յաղագս բարեխօսութեան առաջի ահեղ ատենին Քրիստոսի։ Ոմանք արձանագրեն զյաղթութիւն և զպատերազմունս թագաւորաց աշխարհակալաց, յուշ առնելով ազգի մարդկան առ ժամանակ մի լինել զթագաւորութիւն մահկանացու թագաւորացն, իսկ անմահ թագաւորին Քրիստոսի Աստուծոյ մերոյ թագաւորութիւնն անանց և յաւիտենական։

Արդ՝ ես նուաստս յամենայնի Ստեփաննոս հայր Ականց անապատիս, ետու գրել զպատմութիւն Տեառն Միխայելի պատրիարքի Ասորւոց, զոր է գրել ծայրաքաղ յԱդամայ մինչեւ 'ի ծնունդն Քրիստոսի Աստուծոյ մերոյ. և 'ի ծննդենէն Քրիստոսի մինչեւ 'ի Հայոց թուականին ՈՀԸ. և զպատմութիւն Տաճարին, այսինքն ազգին Նետողաց ԽԴ ամաց գործելոց մինչեւ առ մեզ վասն իմանալոյ զանցաւորութիւն սուտ և պատրող կենցաղոյս ընթերցողացդ և լսողացդ. զի ոչ թագաւորութիւն, ոչ իշխանութիւն, ոչ այլ ինչ արարածական մնալոց է յայսմ աշխարհիս, այլ ամենն է ունայնութիւն ունայնութեանց, որպէս ասաց իմաստունն

Սողոմոն, անցանելով և տեսանելով զա-
մենայն կենցաղս սուտ և ոչինչ, խաբող և
անցաւոր։

Արդ՝ ես եղկելի գրիչս Գրիգոր, աղա-
չեմ զպատահեալսդ ՚ի սմա, յորժամ ըն-
թեռնոյք զարարածապատում պատմութիւ-
նս, ասացէք՝ Տէր Աստուած ողորմեսցի հօր
Ստեփաննոսի առաջնորդի սուրբ ուխտին
Սկներոյս և ամենայն ննջեցելոց իւրոց։ Ո-
ղորմեսցի Քրիստոս Աստուած փակակալ
Վարդանայ և ծնողաց իւրոց։ Տէր Աստուած
ողորմեսցի ամենայն գործաւորաց և սպասա-
ւորաց սրբոյ Ուխտիս, առաջնոցն և միջնոցս,
այլ և վերջնոցն որ գալոց են զկնի մեր։ Ողոր-
մեսցի Քրիստոս Աստուած Կոստանդ և Սիոն
քահանայիցն և համաշունչ եղբարցն որ ըղ-
թուղտս կոկեցին։ Եւ ՚ի վերայ այսր ամե-
նայնի յիշեցէք յողորմութիւնն Աստուծոյ
զտառապեալ գրիչս, զի բազում աշխատանօք
և տկար մարմնով գրեցի։ . . . Յիշեցէք ՚ի
Քրիստոս և զպատուական քահանայն զՅով-
հաննէս, որ զվերջին տետրս գրեաց, զի մեք
էաք յոյժ տկար և անխել։ Յիշեցէք և զտէր
Թադէոս զհայր Աւագ անապատին, որ զօրի-
նակս շնորհեաց։ Եւ Քրիստոսի Աստուծոյ մե-
րոյ փառք յաւիտեանս յաւիտենից. ամէն։



# ՑԱՆԿ ԱՆՈՒԱՆՑ



Համառօտագիրք. բ. բերդ. դղ. գիւղ[illegible]գա, գետ. գւ. գաւառ. եպ. եպիսկոպոս լ. լեառն. թգ. թագաւոր. կթ. կաթողիկոս. մգ. մարգարէ. պտ. պատարագ. ս. սուրբ. վդ. վարդապետ. ք. քաղաք.

(*) Աստղանիշք ցուցանեն զծանօթութիւնն.

